# ՑԱՆԿ

կարան ստացողին և աշխատասիրաբար նորոգողին, ըստ պատշաճի վերջաւորութեան գրոցն ընդարձակ պատմաբանօրէն »։

Նոյն ցուցակին մէջ կը յիշուի յանուն Ոսկեբերանի նաև Երեմիայ մարգարէական գրոց մեկնութիւն մը (Թիւ գրչ. 1405)։

---

եթէ անմոռաց ունիս»։ Այս երկրորդիս թարգմանութիւնն ալ եղած է 'ի Լամբրոնեցւոյն։

Երրորդ Թուղթ Կղեմայ քահանայապետի «ուղղեալ առ պարոն մեր Լեւոն՝ որ 'ի ժամանակին իշխող էր Կիլիկիոյ և Սաւրիոյ, և լերանց նոցին։ Կղեմէս եպիսկոպոս... մեր սիրեցեալ որդւոյ մեծապատիւ իշխանի Լեւոնի Լեռնցւոյ, ողջոյն և առաքելական աւրհնութիւն։ Խրատ»։ (Թարգմանչին յիշատակարանը տես յ'էջ 500 մեր այս երկասիրութեան)։

Յ'էջ 560. ** «Թուղթ հայրապետին և պապուն Հռովմայ՝ առ տէր մեր Գրիգորիս կաթուղիկոս Հայոց. ընդ որ առաքեցաւ և այս ձեռնադրութեան գիրքս 'ի նոյն հայրապետէն առ մեզ։ Լուսիոս եպիսկոպոս... Անապական հաւատոյ խոստովանութիւն... Գրեցաւ Նամակս 'ի Վրաւն ('ի Վերոնա Իտալիոյ) դեկտեմբ. գ»։

Յ'էջ 572 (յաւելլի). «Թուղթ զոր առաքեաց Յակոբոս եպիսկոպոս Երուսաղեմի առ Կոդրատոս, զի ցուցցէ նմա թէ զինչ հրամանաւ Տիբերիոս կայսր վասն Հրէիցն որ 'ի խաչ հանին զՔրիստոս։ — Յակոբոս եպիսկոպոս Երուսաղեմի, առ Կոդրատոս անունդ բարի, և հաւատացեալ 'ի տէր, ողջոյն։ Լուայ ես և ուրախ եղէ թէ քանի փոյթ ունիս դու վասն քարոզութեան աւետարանին Քրիստոսի, թէ որպէս խնդութեամբ ընդունիս զայնոսիկ որ կան 'ի ստուգութեան և 'ի ճշմարտութեան »...։

Յ'էջ 584. Ի դարանս մատենից Էջմիածնի, բաց 'ի մեզի արդէն ծանօթ՝ Գործոց կամ առաքելական Պըրակաց խմբագիր մեկնութենէն, կը յիշատակուի (թիւ 1330) Ոսկեբերանի ընծայուած նաև ամբողջական մեկնութիւն մը նոյն գրոց «Մեծագիր, բոլորագիր, — կ'ըսէ ցանկողն, — գրեալ 'ի Թուղթ բամբակի, 'ի թագաւորութեան Միքայելի Դուկի 'ի թուին Հայոց ՇԻԵ (= 1076). ունի վերջն զյիշատա-

լոց քոց Քրիստոս աստուած, բժշկեա զհոգւոյ և ըզ-մարմնոյ հիւանդութիւն ծառայի քո Հեթմոյ անուան Կաւաիկաւսոյ՝ ստացողի բժշկարանիս, և պահեա զնա իւրովքն ամենեքումք անփորձ կրկին կենդանութեամբք, կենդանովս և անկենդանեաւն՝ զերկաքանչիւրն ըստ քում հաճոյից կառավարելով. զի մեալով նշխար յաւուրջնեալ նախապետէն աւրհնաժառանգթոռն՝ անփոփոխելի ունելով իւրայովքն ըստ Աբրաամու 'ի փառս քո »:

Իսկ երրորդ բժշկարանն՝ ընդարձակագոյն է քան զերկուս առաջինսն, բաժնուած յ'իննսուն և մի գըլուխս. և յետոյ միւս այլ յիշատակարան. « Զստացող բժշկարանիս զմեծ սեւաստիաւս և թագաւորազն և բարեհամբաւ զայրն զպարոն Հեթում տէր Կաւաիկաւսոյ, և զիւրսն ամենայն՝ զկենդանիս և զհանգուցեալս, յիշեսջիք ողորմութեան Աստուծոյ արժանանալ. և որպէս յիշէքդ՝ և ձեզ շնորհեսցի. գրեցաւ 'ի թուին ՉԽԳ 'ի թագ" Հեթմոյ և 'ի հայր" Գրիգորի »:

Իսկ Ամիրտովլաթ, Պունիաթ, Ասար՝ և այլք, բըժիշկք՝ և իրենց արուեստին վրայ թարգմանաբար երկասիրողք յարաբ և 'ի տաճիկ գրոց, մեր նոր մատենագրութեան վերաբերելով, գրուածքիս շրջանին մէջ չեն մտներ:

Յ'էջ 559. « Թուղթ հայրապետին Հռովմայ զոր գրեաց ընդ զաւրան և ընդ թագաւորան, որք եկին յայսկոյս ծովու փրկել զքաղաքն Երուսաղէմ. յետ երից ամաց գերութեանն: — Կղեմէս եպիսկոպոս՝ ծառայ ծառայից Աստուծոյ... Խրատն զոր յԱստուծոյ արդար դատաստանէն »:

Ուրիշ համառօտ թուղթ մ'ալ նոյն քահանայապետին առ. նոյն կաթուղիկոս, գրեալ 'ի նմին աւուր յորում և առաջինն՝ յառաջ քան զչորրորդ կաղանդացն յունիսի. « Կղեմէս եպիսկոպոս... Հաւատամք

ԲԺՇԿԱՐԱՆՔ (յ'էջ 345)․ Բժշկական արուեստի վերաբերեալ այլեւայլ երկասիրութիւնք կան 'ի մեր լեզու, յորոց շատք՝ թարգմանաբար յօրինուած, և ընդհանրապէս մեր նոր ու աշխարհիկ լեզուի մատենագրութեան վերաբերելով, կամ թէ՝ երեքտասներորդ դարէն վերջը։ Բայց ՉԽԳ թուականն ունեցող գրչագրի մը մէջ՝ երեք բժշկարանաց կը հանդիպինք, որ մեզի ծանօթ համանուն երկասիրութեանց մէջ՝ հնագոյնք և ընտրելագոյնք թուին։

Այս գրչագրին յիշատակարանն է՝ (յ'էջ 14 գըրոցն)․ «Զթագաւորացն այր՝ զքրիստոսապաշտ խոհեմ և քաջի արանց պարոն՝ զբարեհամբաւն Հեթում, տէր Կոռիկոսոյ, յիշեսջիք 'ի Քրիստոս՝ որ Քրիստոսի էք վիճակեալք, որոյ հրամանաւ սկիզբն արարի գրութեան յոգնահանճար և յամենայնի պիտանացու և հարկաւոր տառիս բժշկարանի, ես անպիտան ծերունիս Վարդ. Մըրտըրշցի։ Սկիզբն 'ի թու" Հայոց ՉԽԳ յամսեանն յունուարի 'ի քսանեւութ»։

Անմիջապէս յետոյ յ'էջն 15․ «Բժշկարան զոր փոխած է 'ի տաճիկ լեզուէ 'ի հայս, 'ի ժամանակս յաղթող թագաւորին Հայոց Գագկայ»։ Երեսուն և հինգ գլուխք բանից։

Ապա արդէն մեզի ծանօթ բժշկարանն Հերացւոյն, քսաներորդ առաջներորդ գլխէն անդին այլով շարագրութեամբ, և երեսուն գլուխք ընդ ամենայն։ Իսկ յ'էջ 143 մեր տպագրին (1832) դրուած գլուխն «Վասն եթէ քանի գիմաք մարթի բժիշկն զհիւանդն սատածել և բժշկել» առնուած է 'ի բուն և Գագկայ արքայի հրամանաւ գրուած բժշկարանէն, զոր յիշեցինք, և է գլուխն չորրորդ։

Հերացւոյն բժշկարանէն առջը ուրիշ յիշատակարան․ «Որ բարձեր զցաւս հոգւոց և մարմնոց հաւատացե

Արգիտայի տարւոյ, որ եկեալ էր 'ի Սամնոյ 'ի Սա-րեփթա վանիցն. և այլք ընդ նմա. որ եղեն 'ի նմանէ եպիսկոպոսք. և զՓիլոքսենոսի եպիսկոպոսի Նա-բուկ քաղաքի. և զՏիմոթէի Աղեքսանդրացւոյ՝ կուզն կոչեցելոյ, զգրեանն թարգմանեցին 'ի հայ, որ ունի չարափառութիւն զժողովոյն, և զսուրբ աստուածն. խաչեցար գրին. և 'ի Յունաց նզովիւք 'ի բաց կացին. և Խոսրով թագաւորին Պարսից խնդրոյ ....

Յ'էջ 449. (Ի Համաբարբառն Եփրեմի յաւելուած) Variae ac prorsus contrariae fuerunt eruditorum sententia tam de auctore, tam de indole Harmoniae a Vittore vulgatae, donec G. Moesinger, an 1876, ex armena lingua, in qua tantum supererat, latinitati donavit S. Ephraemi Syri Commentarium in Tatiani Diatessaron, qua versione vulgata, omnes peritiores critici in sententiam venere Victoris in Harmonia Tatiani Diatessàron contineri. — Revera opus a Moesinger editum, esse fœtus S. Ephraemi, syriace primitus exaratum super Tatiani Diatessaron, praeter argumenta permulta, quibus id evincit cl. editor, liquet in primici ex Dionysio Barsalibi, qui floruit saec. XII, quemque prae oculis habuisse S. Ephraemi Commentarium, ita ipsius verba apertissime ostendunt: « Tatianus, scribit Dionysius, discipulus Justini philosophi et martyri, elegit ex quator Evangeliis et connexit et confecit Evangelium, quod Diatessaron nuncupat; :. e. miscellaneum. Hoc scriptum interpretatus est a S. Ephraem (A. CIASCA, *Tatiani Evangelorum Harmoniae arabice*. Romae, 1888).

*Bibliothek*), Հէրբստ. (*Einlertung*). Մեսրոպայ իրեն գործակից ունեցաւ զերկուս յաշակերտացն՝ զՅովհան Եկեղեցային և զՅովսէփ Պաղնացի, զորս և յղեց յԱղեքսանդրիա՝ առ ուսանել եւս հմտանալ 'ի հելլէն դպրութիւն։ Իրենց աշխատասիրութիւնը կը ներկայացընէ խառն բնագիր մը (texte mêlé), բայց չունի Փէշիտտայէ 'ի փոխ առնուած յաւելուածներ։ Այս կարծեաց առիթ տուած է Բար-Հեբրէոսի մէկ ենթադրութիւնն (*Schol. ad Psalm. XVI.*) առ Ուէլթընի, 'ի Նախաքանութիւնն) և զոր հերքած են Ուայզմէն և Հռոգ. (Gregorii Bar Hebræi *Scholia in Ps. V et XVIII*). սակայն կ'ընդունի Լամի. (Ներած. Ա. 180). Հաւանական չէ, ինչպէս Լաքրոզ կը ջանայ՝ հաւատարմացընել. թէ յերեքտասաներորդ դարու՝ վուլկաթայի վրայ սրբագրուած ըլլայ։ Հին կտակարանին հայ թարգմանութեան համար գործածուած յոյն բնագիրը՝ ուրիշ գրչագրաց հետ բաղդատուած և քննութեամբ ընդունուած օրինակ մը չերևնար. այլ նորոյն ընթերցուածք և բնագիր ամենահաւատարիմք են »։

Ց'էջ 273. ՁՀ Թուականին 'ի Գլաձոր մենաստանի Վայոցձորոյ գրչագրեալ օրինակի մը մէջ, և հիմայ 'ի մատենադարանի Ս. Երուսաղէմի (Թիւ 1414) հետևեալ յիշատակարանը կը գտնենք. «... Թէոդոս ննջեալ և յաջորդեալ Մարկիանոս, կատարէ զժողովն 'ի Քաղկեդոն, յետ ՆԿԲ ամի յարութեան տեառն, յետ հնգետասան ամի Սահակայ պատրիարքին փոխելոյ 'ի տէր. յորում ամի Վարդանանքն պսակեցան. 'ի հայրապետութեան տեառն Մանդակունւոյ. և չէին պարապ գալ 'ի ժողովն. բայց հակառակութիւն ոչ գոյր՝ հարիւր չորս ամ. մինչ 'ի վերջին Ներսէս. 'ի սկիզբն Թուականին Հայոց 'ի չորեքտասաներորդ ամի Յուստինիանոսի և 'ի չորրորդն Խոսրովու Պարսից. որ արար ժողով 'ի Դուին, 'ի ձեռն

— Յունական օրինակն ալ գտնուեցաւ անցեալ տարի 'ի մատենադարանին Վատիկանու, և հրատարակուելու վրայ է։

Յ'էջ 202. Երանելւոյն Նիկոդիմոսի ասացեալ յաղագս ննջման և փոխման Կուսին. «Սուրբ կոյսն Մարիամ աստուածածին էր յԵրուսաղէմ. և եկն հրեշտակն տեառն և ասէ ցնա. Յարուցեալ երթիցես 'ի լեառն Ձիթենեաց, և ասացից քեզ զբանն տեառն, թէ որպէս առաքեաց զիս։ Եւ յարուցեալ փութանակի երանելի կոյսն՝ գնաց 'ի լեառն Ձիթենեաց, որպէս ասաց նմա»։ Կը գտնուի և առ այլս նման՝ բայց անվաւեր սեպուած գրուած մը, և կը յիշատակուի 'ի վճռագրին Գելասիոսի քահանայապետի (De dormitione vel transitu Mariae).

Յ'էջ 205 Թէոդոր Տաշեան՝ որուն բազմահմուտ երկասիրութիւն յիշեցինք Պրոխորոնի վրայ խօսած ատեննիս, սրբոյն Յովհաննու Հանգստեան վրայ այսպէս կը գրէ. (20 ապրիլ, 1886). Vous m'avez obligé en me donnant le tître de la brochure de M. Katergian, qui jusq'alors était échappé à ma connaissance. Quoique cet homme savant n'ait pas su, que le récit de la mort de S. Jean, dont il a publié la version arménienne, était déjà imprimé en grec et en syriaque, il a bien mérité de la littérature écclesiastique.

Յ'էջ 245. Քիչ յառաջ յիշատակուածն Թրոշեան 'ի նոյն գիրս. «Ի հինգերորդ դարու, սուրբն Մեսրոպայ՝ բաց յայբուբենից տուաւ Հայոց՝ նաև զթարգմանութիւն աստուածաշունչ գրոց ըստ եօթանասնից, բաց 'ի Դանիելէ՝ որ Թէոդոտիոնի թարգմանութեան վրայ եղած է։ Լաքրոզ ըսած էր թէ հայկական թարգմանութիւն՝ աղեքսանդրեան օրինակին համեմատ է. Նոյնպէս իրեն համամիտ են Լամի, Պրիւսթոն, Վիկուրու. բայց կը հակառակի Բրէգէնգամփ (*Allg.*

ծին մէջ պահուած էին այս նամակները. և էր Ղերուբնա։ 1852ին, հայրն Ալիշան՝ Փարիզի ազգային ձեռագրաց մէջ գրուած մը գտաւ՝ որոյ հեղինակը Լերուբնա կը կոչուի, յորում բաց 'ի Թղթոյն Աբգարու և 'ի պատասխանւոյն Քրիստոսի՝ կ'աւանդի նաև պատմութիւն դարձի եդեսացւոց քարոզութեամբ Ադդէի. Քիչ ետքը՝ Գիւրըթոն, բրիտանական թանգարանին մէջ՝ յերկու ասորական ձեռագիրս չորրորդ և հինգերորդ դարուց՝ ասորի սկզբնագրին հատուածները գտաւ, որոց թարգմանութիւն է հայկականն. իսկ 'ի Փեթրպուրկ ամբողջ գրութիւն ալ գտնուեցաւ և հրատարակուեցաւ՝ նոյնպէս յասորի լեզու, 'ի Ֆիլլիպսէ։ Ըստ կարծեաց Ալիշանի, Գիւրըթոնի, Պիքէլի, Ֆիլլիպսի՝ առաջին դարու քրիստոնէութեան կը պատկանի այս գրուած, թէպէտև կըրելով այլևայլ կերպարանափոխութիւններ 'ի յետնոց։ Իսկ այլք կը համարին թէ այս թղթերը յօրինուած ու յարմարցուած ըլլան քրիստոնէի մը ձեռքով՝ որ ուզեր է անոնցմով փառաւորել սկզբնաւորութիւն մը աւազ Եդեսիոյ եկեղեցւոյն, հաւանականաբար 'ի չորրորդ կամ 'ի հինգերորդ դարու»։ — Փարիզու ազգային մատենադարանին ձեռագրաց մէջ (Mss. gr. 950, f. 341) կայ նամակ մը Ցիսուսի Քրիստոսի՝ գտեալ 'ի Հռոմ 'ի տաճարի սրբոյն Պետրոսի. քննելի է թէ արդեօք ունի՞ նմանութիւն ընդ Թղթոյն առ Աբգար»։

Ց'էջ 173. Մեր թարգմանութեանց մէջ գտնուած Նախադրութեանց նման աշխատասիրութիւն մը կայ յասորի լեզու յԱմբրոսեան մատենադարանի 'ի Միլան։ Թերևս փոխադրութիւն է յոյն սկզբնագիր աշխատասիրութեան մը, որ հիմայ կորսուած, կամ դեռ ձեռուընիս հասած չէ։

Ց'էջ 188. Նորագոյն հրատարակութիւն մ'ալ 'ի լատին. Oppenheim, G. *Fabulae Josephi et Asenethae*, apocrypha, ex libro syriaco latine versa. 1884 :

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

Յ'էջ 12. Ուրիշ նոր երկասիրութիւններ ալ աբգարեան թղթոյն վրայ. Matthes (K. C. A.) Die Edesseniche Abgarsage auf ihre Fortbildung untersucht. (Leipzig, 1882) — Hall (C. P.) Syriac version of Epistle of King Abgar to Jesus (1885): — Caspari (C. P.) Iesu apokryfische Brev til den Edesssenks Konge Abgarus i udvidet mittel alderling Skikkelse bestemt til at tjene som Amulet. Theol. Tidskriftt. (1886): — Bonet Maury; La légende d'Abgar et de Taddeé, et les missions chrétiennes à Edesse (Revue de l'Histoire des Réligions) 1887. — L. J. Tixeront, Les origines de l'Eglise d'Edesse et la légende d'Abgar, étude critique suivie de deux textes orientaux inédits.

Գաղղիացի աստուածաբան վարդապետն Թրոշոն, երկու տարի յառաջ հրատարակած հմուտ գրուածքի մը մէջ (La Sainte Bible, — Introduction générale, I, 496) հետեւեալ խօսքերու մէջ կը համառօտէ արեւմտեան բանասիրութեան կարծիքը այս խնդրոյն վրայ. «Գելասիոս քահանայապետին վճիռը ընդ անվաւեր գրութիւնս կը դասէ Քրիստոսի տեառն թուղթը առ Աբգար: Սակայն ոմանք ի նորաւանդեց՝ Գրաբ, Կավ և Պարքեր՝ անտարակուսելի համարելով անոր վաւերականութիւնն, առաջարկեցին ինչուան Նոր կտակարանաց կանոնին մէջ ալ անցընել: Նորագոյն գիւտ մը՝ աւելի կշիռ մը տալ թուեցաւ անոնց կարծեաց: Խորենացին կը յիշատակէ զանուն Աբգարու ժամանակակցի մը, որուն մէկ գրուա-

տոնէից և մոլիմանաց. այս ինքն հռոմայեցոց. հելլենացոց, ասորոց, եգիպտացոց, արաբացոց, պարսից և այժմու իշխողացս թուրքաց: Ինքնիր եկին ապա առ հայրապետս 'ի Հայաստանեայց՝ արթունք, կղերիկոսք և աշխարհականք. խնթկեալք յայլոց ազգաց և նախանձեալք զբարուոքն, և խուզեալ ընդ նա մեր յարկեղս գրոց կոթուղինկոստարանին՝ ոչ պատք ուրէն. բայց միայն զկանոնականն՝ որ 'ի սուրբ հարցն ժողովելոց էր գրեալ. և որ 'ի նոյն յարեցաւ 'ի նոցանէ կանոնս զգուշաւորս եկեղեցւոյ: Իսկ քաղաքի աւրէնս ոչ գըտաւ 'ի մէջ Հայոց, ոչ յեկեղեցիս և ոչ առ իշխանս: Եւ կարի վշտացեալ հայրապետն խնդիր առնէր առ այլ ազգս. և պատահեալ անդ յասորոց Թէոդոս անուն կիրթ յիմաստութեան քահանայ, յայտնեաց տեառնս զի գոյր առ ինքն այս համառաւտ աւրէնագրութիւնս, և հրաման տուեալ ինձ տառապեալ իւր ձեռնասուն որդւոյ Ներսեսի յեղաշրջեցաւ 'ի հայս, նմին յիշատակ բարի, և զկնի եկելոցդ ուղղութիւն ընթացից: Յետ որոյ ապա և 'ի հելլենացւոց գրոց արարի թարգմանութիւն մովսիսական աւրինացդ և Լեոնի և Կոստանդեայ աւրինացդ, 'ի նմանէ թարգմանեցի և զքննուորական աւրէնքդ. և ընծայեցի որոց սիրեին վարիլ սովաւ և հաճոյ գտանիլ Աստուծոյ, և կառավարիչք քաղաքաց և գաւառաց »:

## ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԹԱԳԱՒՈՐԻ (Տես ԿԱՐԳԱՑ ԳԻՐ)

***

Իսկ Թարգմանչին՝ սրբոյ Լամբրոնեցւոյն յիշատա-
կարանը հետեւեալն է.

« Զայս ծայրաքաղ աւրհնագրութիւնքս տառա-
պեալ եպիսկոպոս Տարսոնի Թարգմանեցի 'ի ծերա-
ցեալ հելլենացի մատենէ, թուին ՈԽԵ. 'ի նորաշէն
ամուրն Լուլուայ, որ է գլուխ դրանն Կիւլիկոյ.
զոր 'ի բազմաժամանակեայ յամայութենէն մարդա-
բնակ արար մի յեղբարց իմոց Շահնշահ. և զկործա-
նեալ շինուածն յունաց յիսմայէլացւոց՝ շինեաց ամ-
րագոյն. և ընդարձակեաց նովաւ զՀայաստանեայս՝
Թագաւորի Լեւոնի ձեռն որ 'ի Կիլիկեայս և Ասոր-
ւոց գաւառացն տիրէ. և նովաւ կարողացաւ եր-
կրորդ Կապադովկիոյ, յորում մայրաքաղաք Տիանայ.
արտահանեալ զնորաշէն ամուրն 'ի փառս Քրիստոսի
և 'ի զաւրութիւն քրիստոնէից: Դարձայ և 'ի մեծ
եկեղեցին Տարսոնի, յղեցի զԹարգմանեալն աստ
գրչութեամբ և աւանդեցի Հայոց:

« Յամս քահանայապետութեանն Հայոց Գրիգորի,
որ երրորդ էր նախնեացն իւրոց 'ի Հռոմկլայն, յա-
ջորդ աթոռոյն, թուին ՈԽԲ. յութեւտասներորդ
ամի նորին հայրապետութեան, խնդիր եղև առ նոյն
սրբազանն 'ի քաղաքաց և 'ի գաւառաց բնակչաց՝
քաղաքական աւրինացն. զի որք Իսմայելացւոցն էին
իշխանք 'ի քաղաքս և գաւառս, զդատ Հայաստա-
նեայցս ոչ դատէին. այլ զխնդրողսն իրաւանց՝ առ իւ-
րեանց աւրէնս առաքէին. զի այս էր 'ի նախգլուխ Մե-
լիքացն հրաման առ դատաւորս քաղաքաց՝ յիւրեանց
աւրինացն դատ թողուլ զնոսին: Եւ եկեալ ոսոխք յե-
կեղեցին՝ հարցանէին աւրէնս 'ի քահանայից և 'ի
քահանայապետաց. ոչ ունէին գիրս որով ընտրեա-
ցեն զիրաւունս. զոր և այլոց ազգաց տեսանէին՝ քրիս-

ժողովելոց մեզ. և զգուշութեամբ ուսանել և քըն-նել, և 'ի նոցանէ զուղղութիւն պարզեան մեզ ար-տաքս հանել գրով. որք և զսահման հրամանի մեր ե-րագապէս կատարեցին, և ընդաւրինակեցին զդա-տաստանս և զիրաւունս թագաւորաց, որով գտանին զքաղաքս: Եւ այսպէս զորս ծարաւի էին զովացու-ցաք, և զնրբութիւն լուսաւորեցաք. հայելի արարաք բարեպաշտից զգիրք աւրինացս, և որք 'ի հնոյն ըն-թերցումն տագնապին՝ սատ եւս գտանեն: Արդ 'ի գարշութիւն զընկղմեալսն՝ աւրինաւք վերականգ-նեցաք. և զմարդկան չարչարանս 'ի բաց քեցեցաք: Եւ որք 'ի ձեռն ունուն զսա՝ զգուշասցին յառաջ ածել ճշմարտութեամբ զիրաւունս և զդատաստանս: Մի զաղքատս արհամարհել, և մի զհզաւրս անիրաւել. յուզել զեղանակ արդարութեան, և սքանչելի առնել զհաւասարութիւն. զգործս մախանաց մի ընդունել միակողմանի, այլ զերկուս դատախազս հաւասար կա-ցուցանել. և այսպէս որոշել զնոսա. ընդ որում ճա-նաչէք՝ ուր գտանէք զթերութիւն իրաւանց իբրև զկաշառաւք ապականեալսն, որք վասն շնորհակալու-թեան տան զշնորհսն. այլ զճշմարտութիւն և զար-դարութիւն պատուեցէք: Մի թշնամութեամբ ընդ-դէմ կալ դատեցելոյն, և մի բռնութեամբ յաղթել... Արդ իմանալ արժան է զիրաւունս, և հրամայել զճըշ-մարտութիւն հանդերձ յայտնի վկայութեամբ. ըստ որում և սահմանեցաք սատ խոհականութեամբ, զի զորս ենն յերկմտութեան դրունսն՝ կացուսցէ 'ի հաստատութեան հաւասարութեամբ... Արդ մի յայս աղարտեալ շահս զբաղիք. այլ փութացեալ բար-ձրացէք յարդարութիւն.... Բարեխոհ Սակիլեոսի հրամայեցաք նշանագրել և ընդաւրինակել յամենայն դատաստանացն գլխոց, զի բարի վարձս ընկալցի 'ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ:....

թիւն հաստատեալ կայ սահման. և իւրաքանչիւրոցն չափէ ըստ իւրոց արժանեաց. վասն զի երկինք և երկիր անցցեն, և բանք նորա ոչ անցանեն. ըստ որում և աւետարանն սուրբ հրամայէ:

« Սոյնպէս սոյն աստուածազաւրութիւն՝ Թագաւորաց հաճեցաւ տալ և իմաստնացուցանել աւժանդակ իւրոց աւրինաց զհրամանս զայս ահաւորս. և մեք նորին սիրոյն հպատակ կամք ըստ գլխաւորի առաքելոյն Պետրոսի, հովուել զհաւտս զոր հաւատաց մեզ: Եւ ոչ 'ի մէնջ իրաւունք դատաստանաց և ոչ վրէժխնդրութիւնք չարագործաց, այլ 'ի նմանէ ամենայն անիրաւութիւնք լուծանին. և մեզ է ուղղել զիրաւունս նորա, և վրէժս և տոյժս պահանջել յանհնազանդիցն, ըստ հրամանի (կարգի) սպասաւորութեան. քանզի սուսերաւ որ ընդ մէջ ածաք՝ սպասաւորեմք Աստուծոյ. և զդժուարին կապ անիրաւութեան արձակեմք, և զչարագործն դաստիարակեմք. և զայս պահելով 'ի վերայ թշնամեացն յաղթութեամբ՝ ամենակարող ձեռն պահէ զմեզ. և զհանդերձեալ պսակն բազմազան և պայծառ պատրաստէ, ըստ խոստման հրամանի իւրոյ: Արդ խաղաղութեամբ և քաղաքավարութեամբք խոկալ մեզ արժան է՝ զոր հաճոյն է Աստուծոյ. և զմիաբանութեան վերաբերէ մեզ զգեստս, և արդարութիւն՝ ամենայն աշխարհաւոր իրացս ունելով կառավար, յերկնայինն պատրաստեալ աւթեվանացն մտցուք 'ի հանգիստ: Որք յառաջագոյն թագաւորեցինն, բազում գիրս գրեալ՝ զի աւրինագրութիւնս արարին. զորով մանուածեալ բանսն ընդ ողաւս իմանամք, կամ բնաւ անգիտանամք. մանաւանդ որք արտաքոյ այսմ աստուածապահ թագաւորական քաղաքիս տարին զհամանագրութիւնս. կոչեցաք զՆիկեփորոս փառաւորեալ պատրիգն, և զՄարինոն և զՄարինոս փառաւորեալ հիւպատոսքն. և հրամայեցաք զամենայն գրեանն

Այսպէս նշանակուած և դասակարգուած կը գըտնենք 'ի վերջ չորեքտասաներորդ դարու գրուած օրէնսգրքի մը մէջ որ 'ի մերում մատենադարանի։ Անկէ աւելի հնագոյն մը, 'ի սկիզբն նոյն դարու՝ վասն տեառն Աւշնի գաղափարուած՝ հետևեալ դասաւորութիւնն ունի. 1). Օրէնք յ'Ելից. ընտրութեամբ. խառն և 'ի Ղևտականաց։ 2). Լևոնի և Կոստանդիանոսի բարեպաշտ թագաւորաց քաղաքական օրինագրութիւնք. զորս նորոգ կարգաւորեց Յուստինիանոս մեծն։ Իննևտասն տիտղոսք՝ բաժնուած 'ի զանազան համառօտ գլուխս. և ապա անոնց քաղուածը՝ յայլևայլ տիտղոսից։ 3). Օրինագրութիւն Եռինէ Թագուհւոյ՝ մօր Կոստանդեայ։ 4). Հաւաքումն յօրինաց Յուստինիանոսի։ 5). Գլուխք օրինագրութեան 'կարճ 'ի կարճոյ՝ ընտրութեամբ 'ի թագաւորական սահմանաց. 6). Համառօտ ժողովումն օրինաց։ 7). Վասն զինուորաց սահմանագրութեան։

***

Դնենք նախ զյառաջաբան օրինաց գրոցս, և ապա զյիշատակարան թարգմանչին։

Յառաջաբանութիւն քաղաքական աւրինադրութեանըս աստուածային և մարդկային. « Տէրն և արարիչ Աստուած մեր ստեղծ զմարդն 'ի պատիւ անիշխանութեան. աւրէնս ետ նմա յաւգնականութիւն. ըստ մարգարէին, և ըստ որում՝ զամենայն ինչ վասն նորա հաստատեաց. նմանապէս և աւրինացն էած զնա 'ի գիտութիւն, որ ոմանց եղև 'ի փրկութիւն աստընջական, և ապստամբիցն տանջանացն պատճառ. որք ոչ աւրինացն զգուշացան՝ եղեալք ապստամբք յարդարութենէ, որոց վրէժխնդիր լինի Աստուած. որ կանխաւ բացատրեաց 'ի գիտութիւն նոցին զաւրէնս և զանիրաւութիւն. քանզի նորա բանին զաւրու-

'ի լատին թարգմանութեան, մինչ մերն չունի անոր ամբողջութիւնն և թուի համառօտուած։

# ՕՐԷՆՔ ԹԱԳԱՒՈՐԱՑ

(LIVRE DES LOIS)

---

Ազգային համարուած օրինաց ընտիր և հմուտ խըմբագրութիւն մը, Մխիթարայ Գօշի աշխատասիրութեամբ, որգէն մեզի ծանօթ է։ Թագաւորական օրինաց գիրքը, որուն վրայ համառօտիւ պիտի խօսինք, բոլորովին տարբեր երկ մ'էր, բիւզանդական արքունեաց մէջ յայլևայլ ժամանակս և 'ի զանազան կայսերաց, — որոց անուանք ալ յիշատակուին 'ի խորագիրս, — հաստատուած և վաւերացած օրինաց և կարգաց հաւաքում մը, զոր յասորւոյն և 'ի յունականէ թարգմաներ է 'ի հայ, — ինչպէս պիտի կարդանք յինքնագիր յիշատակարանին, — բազմերախտ և բազմավաստակ սուրբ հայրն մեր Ներսէս Լամբրոնացի։

Այս հետաքննական հաւաքման խորագիրն է. Աւրէնք յաղթող թագաւորաց քրիստոնէից, Կոստանդիանոսի, Թէոդոսի և Լեւոնի. թագաւորաց քրիստոնէից. և սկզբնաւորութիւնն. «Զաւրէն բարի և զճշմարիտ տէր Աստուած 'ի սկզբանէ ետ»։ Հարիւր յիսուն գլուխք բանից՝ հանդերձ վերնագրովք, և կը ճառեն և կը սահմանեն քաղաքական օրինաց և կարգաց վրայ։ Ասկէ ետքը՝ երկրորդ հաւաքում մը՝ Համառաւտ ժողովումն աւրինաց վերատիւ խորագրով, ութսուն և վեց գլուխք բանից։ Ապա Աւրէնք և գիրք 'ի ձեռն Մովսիսի, յ'Ելից գրոց, յիսուն և մի գլուխ։ Ցետոյ չորրորդ օրինագիրք մը՝ քաղուած 'ի Ղեւտական գրոց, 'ի քսան և վեց գլուխս։

Առ կաթողիկոսն գրած թուղթն. «Թուղթ Փապայ պատրիարքի առ Զաքարիա կաթուղիկոս Հայոց, վասն երկու միաւորեալ բնութեանց մի անձնաւորութիւն գոլոյ տէառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և վասն Ճշմարտախոհութեան ժողովոյ սուրբ հարցն որ 'ի Քաղկեդոն: — Յուներժահրաշից արանց »:

ՔՍԻՍՏՈՍ (SIXTE, LE PAPE) — Քսեստոսի պապին թուղթ: Այսպէս կը նշանակուի 'ի ցուցակի գրչագրաց մատենադարանին Էջմիածնի (թիւ 1688), յորում և թուղթ Կաղիստինոսի պապին:

ՔՐԻՍՏՈՍ (SIXTUS). Վրիպակաւ այսպէս նշանակուածն 'ի մեր գրչագիրս, է Քրիստոս կամ Քսեստոս անն՝ որուն ընծայուած է համառօտ գրուած մը և հայկական թարգմանութիւն մ'ալ ունեցած: Լատինականն ալ կայ այս երկասիրութեան՝ 'ի յունականէ, որ կորսուած է. Թարգմանեալ 'ի Հռուփինոսէ 'ի վեցերորդ դարու: Խորագիրն է. Sixti *sive* Xysti *sive* Sexti Enchiridion: latine versum a Rufino: Թարգմանիչն մասնաւոր ընծայականաւ մը կ'ուղղէ զայն առ Ապրոպիանէ՝ կոչելով զնա դուստր իւր ըստ հոգւոյ, նոյն ընծայութեան գրոյն մէջ՝ հեղինակին համար կ'աւանդէ թէ եպիսկոպոսական աստիճանն ունեցող անձ մը ըլլայ, և վկայական մահուամբ նահատակուած: Այդ նախաբան՝ բնականաբար չկայ 'ի մեր թարգմանութեան, որ 'ի յունէ եղած է բաւական ընտիր ոճով և լեզուով. չենք գիտեր երբ և որու ձեռքով: Հին իմաստասիրաց խօսքերուն հատընտիր քաղուած մ'է այս հաւաքածոյն, և որոց հետքը կ'երևնան առ Պորփիւրի, Դեմոփիլեայ, Պիւթագորայ, Դեմոկրիտեայ, Քսենոփանի, Որոգինի և այլոց. չորս հարիւր քսան և եօթն առածք կամ վճռական խօսք

այնչափ հռչակուած էր իր անունն և մեծարեալ երկասիրութիւնքն ։*

## ՓՈՏ ՊԱՏՐԻԱՐՔ

### (PHOTIUS, PATRIARCHE)

---

Կոստանդնուպոլսոյ Փոտ պատրիարքին՝ որ այնչափ նշանաւոր եղաւ արեւելեան եկեղեցւոյ ու քաղաքավար տեսչութեան մէջ, երկու թուղթ միայն ունինք առ Աշոտ Թագաւոր մեր Բագրատունի և առ Զաքարիա կաթողիկոս՝ թարգմանեալ 'ի հայ ։ Առաջնոյն խորագիրն է. «Պատճէն թղթոյ հայրապետին Կոստանդինուպոլսի Փոտայ առ Աշոտ իշխանաց իշխան ։ — Քաղջայայտ բարեպաշտութեամբ, բարձրագոյնդ 'ի համասեռս. Աշոտ իշխանիդ Հայոց, Փոտ՝ շնորհիւն Աստուծոյ գլուխ եպիսկոպոսաց Նոր Հռոմայ, և պատրիարք հանուրց » ։

Այս թղթոյն պատասխանը գրեց Սահակ վարդապետ. «Պատասխանի թղթոյն Փոտայ՝ գրեալ Սահակայ Հայոց վարդապետի, հրամանաւ Աշոտեայ իշխանաց իշխանի ։ — Քահանայապետ զգաւնացեալ՝ պարկեշտ և առաքինասէր որ 'ի Քրիստոս վարիւք Փոտ, վերադիտող թագաւորական մեծ քաղաքիդ Նոր Հռովմայ պատրիարք, Աշոտ իշխանաց իշխան Հայոց մեծաց ։ Զգիր հանճարեղ խոհականութեան ձերոյ, ո՛վ աստուածարեալդ, ընթերցայ. և յոյժ բարեբանեցի ուրախութեամբ զերկնաւորն զՔրիստոս զփըրկիչ մեր » ։

1 Մատենախօսական տեղեկութիւնք տես 'ի ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԵԱՆ յէջ 689 ։

զանապակն ըմպելով, թմբրեալք և թրջեալք և զմբրեալք »։

Ի պատմութենէ Եղիշէի օրինակ մը մէջ բերինք. յաւելունք և միւս այլ՝ զոր նոյն սուրբ վարդապետ կը դնէ 'ի բերան Ղեւոնդեայ երիցու. «Որոյ ոչ է տեսեալ զմեծ թագաւորն, պատուաւորացն մատուցանէ զերկրպագութիւն». որ Փիլոնի խօսք է՝ 'ի Լինելութեան գիրքն. «Որք միանգամ զմեծ թագաւորն ոչ տեսին, նախարարին՝ և որ ընդ նովաւն՝ գնեն զաւագնոյն թագաւորին զարժանաւորութիւնն»։ Դարձեալ առ նոյն Եղիշէի. «Որպէս և ասացին իսկ ոմանք 'ի քաջ պատմագրաց. զուգութիւն է մայր բարեաց, անզուգութիւն ծնող չարեաց». որ հետեւողութիւն է Փիլոնի խօսքին ('ի Լինելութեան). «Զուգութիւն արդարութիւն ծնաւ... անզոյգն աղբիւր է չարեաց»։ Այսպէս Փիլոն ըսած էր (յԱյլաբանականն). «(Աստուած) ինքն իւր է տեղի. և ինքն ինքեամբ լի և բաւական. ինքն ինքեամբ Աստուած». և Եղիշէ. «Ոչ սկիզբն առեալ յումեքէ լինել աստուած. այլ՝ ինքն ինքեամբ մշտնջենաւոր. ոչ 'ի տեղւոջ ուրեք, այլ ինքն ինքեան տեղի»։

Ժամանակաւ իրենցմէ կրտսերագոյնք, Անանիա Շիրակացի, Յովհաննէս Իմաստասէր, Թովմա Արծրունի, Խոսրով եպիսկոպոս Անձեւացեաց, Գրիգոր Մագիստրոս, Շնորհալին Ներսէս և Լամբրոնացի, Սարգիս մեկնիչ կաթուղիկեայ թղթոց՝ յաճախ իրենց գրուածոց մէջ վկայութիւն կը բերեն Փիլոնի խօսքերէն՝ մեզի արդէն ծանօթ թարգմանութեամբ. իսկ յերեքտասաներորդ դարու Երզնկացին Յովհաննէս՝ Լուծմունք մ'ալ յօրինած է փիլոնեան գրոց։

Տարակոյս չիմնար, որ հինգերորդ դարու թարգմանութիւն է, և հաւանականաբար Խորենացւոյն՝ կամ իրեն ուսմնակցաց՝ Մամբրէի կամ Անյաղթի. հանդիպելով Փիլոնի գրուածոց յԱղեքսանդրիա, ուր

կոչուած գրքէն։ Նոյնպէս Փիլոնի են. «Թոյլ փքմամբ համբարձեալք կարծեցուք, որպէս ասեն քերթողքն, եղեալ աստուածոց մերձաւորմանք և մօտաւորք». և ուրիշ տեղ մ'ալ. «Զի որպէս քերթողքն ասեն, մերձաւորեալք և մօտաւորք են և նոյնաւորմանք աստուածոց՝ իշխանք». զոր կ'երկրորդէ Խորենացի 'ի պատմութեան. (Գ. կէ). «Ոչ որպէս քերթողքն ասեն, մերձաւորեալ և մօտաւորք գոլ և նոյնաւորմանք աստուածոց՝ իշխանք»։ – Նոյն գրոց մէջ (Բ. իթ) Խորենացւոյն այս խօսք. «Որզան վախճան միոյն՝ միւսոյն լինին սկզբունք» յ'Այլաբանականացն Փիլոնի 'ի փոխ առնուած է. «Վախճանք նոցա այլոց են սկզբունք. որզան տուընջեան վախճան՝ գիշերոյ է սկիզբն»։ – Առ Խորենացւոյ (Գ. ԻԶ). «Հիւանդացեալ անդ՝ մաշարական ախտիւք ջերանի հիւծմամբ»։ Փիլոն 'ի Նախախնամութեանն. «Մաշարան ախտիւ ջերանել հիւծմամբ»։ — Խորենացի. (Գ. ԾԵ) «Եւ զայս ասացեալ՝ քամահաբար 'ի ձիարձակարանէն արփայագնաց լինէր». Փիլոն 'ի գիրս Յաղագս հոգւոյ կենդանեաց. «Կարի յոյժ քամահաբար արփեգնաց լինին»։

Նոյն պատմահօր ընծայուած Պիտոյից գրոց մէջ. «Զքաջուղէշ և զպտղեղ զՅովաբայն... անդաստան»։ Փիլոն 'ի Լինելութեանն. «Երկու են ծառոց առաքինութիւնք. քաջուղէշ գոլ և պտղեղ»։ — Պիտոյից. «Զնոյնս նուագաւոր երգ և երաժշտական զուգաբարբառ հնչմամբ պարաւորակք եղեալ յերկուս բաժանէին դասս»։ Փիլոն 'ի Տեսականն կեանս. «Նուագօք զուգահնչմամբք և զուգաբարբառովք... նուագաւոր բաղաձայնութիւն կատարէր, և արդարև երաժշտական»։

Մամբրէ՝ 'ի Ճառին Ղազարու յարութեանն. «Միթէ 'ի մանրագործաց թմբրեալ իցէ, և կամ 'ի սաստիկ անապականաց զմրեալ իցէ»։ Փիլոն. «Իբրև զմանրագոր՝

ճառակարանը կը կարգանք. «Մաղթանս աղաչանաց մատուցանեմք վերլուծողաց այսմ մատենի մեծ իմաստնոյն Փիլոնի։ Որք առ 'ի նմանէ ուղղութիւնս ինչ գտանէք՝ Թողութիւն յանցանաց հայցեցէք յԱստուծոյ յոգնիմաստ հռետորին, որոյ անուն կոչի Յոհաննէս բաբունի, և մականուն Եզնկայեցի, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց... և անարժան գըծողիս պիտականուն քահանայ Վարդան սպասաւոր բանի»։

***

Ասոնք են՝ 'ի մեր նախնեաց առ մեզ հասած Փիլոնի երկասիրութիւնք՝ ընտիր թարգմանութեամբ։ Բայց անոնց թարգմանչին վրայ, որ մեզի հետաքննականն է, չենք կրնար որոշ տեղեկութիւն մը տալ՝ եթէ ոչ լոկ ենթադրութեամբ։ Քիչ յառաջ տեսանք որ կըրտսերագոյն դասու թարգմանչաց միոյն, Եղիշէի, անծանօթ չէին. նոյնպէս ալ իր ուսումնակցաց, Խորենացւոյ և Մամբրէի, ինչպէս բուն իրենց գրքերէ առնուած վկայութեամբք պիտի հաւաստացընենք։ Հետևաբար անտարակուսելի կ'ըլլայ՝ որ ինչպէս ուրիշ բազմաթիւ յոյն գրուածոց, անոնց ալ թարգմանութիւն՝ հինգերորդ դարու կը պատկանի։ Լեզուի ընտրութիւնն, ու հելլենականին կատարեալ նմանութիւն զայն կը հռչակեն։

Սկսինք 'ի Խորենացւոյն։ Իր պատմութեան երրորդ գրքին մէջ, 'ի գլուխն ԿԲ, Աղեքսանդրիա քաղաքին վրայ խօսած ատեն, կ'ըսէ. «Յորոց օդոցն բարեխառնութիւն փչեցեալ, որ 'ի լճէն բերանք արձակին 'ի ծովն, և որք 'ի ծովէքն մատելոյ՝ որ ելանեն ատէպք աղոխք օդոյ անօրունք, այն որ 'ի ծովէն. և թանձրունք որ 'ի լճէն»։ Այս տողերը առնուած են Փիլոնի Յաղագս վարուց տեսականերն կամ Յեսսեանց

հակայ խօսքերն են. « Մտան է (արեգակն) աշխարհիս արարածոց... 'ի ձեռն օդոյ հրամանաւ Աստուծոյ տարածանէ զճառագայթս իւր. և հրոյին մասամբ ջեռուցանէ զամենայն գոյացեալս իւրոյ կայանին... քանզի իբրև յաման արկեալ է զլոյս 'ի գունդնորա. և 'ի վայր կոյս հեղու բերանացեալ՝ 'ի պէտս ներքնոցն վայելչութեան »:

** Փիլոնի յաղագս զԱստուած 'ի բարեգործութեան հուր ծագող անուանել՝ 'ի տեսլեան երից մանկանցն, որ առ Աբրահամ, յորժամ նստէր 'ի միջօրէին... «Քանզի այն՝ որ համեմատեալ են յըստ Աստուծոյն, մեծօգնոցն աչացն տեսանի »:

— Փիլոնի յաղագս երկոտասանիցն. « Էր երբեմն ժամանակ յորժամ իմաստասիրութեան պարապեալ էի »:

— Փիլոնի յաղագս բագնին իրաց (De Ara). « Հուր, ասէ, 'ի վկայ բագնին այրեացի հանապազօրդ անշէջ: Վայելչապէս կարծեմ և արժանապէս. վասն զի Աստուծոյ շնորհք յաւետախաղաց են և անպակաս »:

— Փիլոնի յաղագս Թէ ոչ շնայցես. «Զի կարծեմ ամենայն ուրեք յաշխարհի՝ մեծ փքահեշտ ցանկութիւն. և ոչ ինչ մասն 'ի զօրութենէ սորա ճողոպրել կարէ »:

— Փիլոնի յաղագս քահանայից (De Sacerdotibus). « Տոհմք են ազգին երկոտասան. և մին յամենեցունց որ ղաւագոյնն է՝ ընտրեցաւ քահանայել »:

— ** Փիլոնի յաղագս բան ունել և անասուն կենդանեացդ (ըստ Աղեքսանդրի). (ἔπι τε ὁ Ἀλέξανδρος: ἤ περὶ τοῦ λόγος ἔχειν τὰ ἄλογα ξώα). « Ցիշես զերեկեան բանսն, ով Լիսիմաքոս, զոր Աղեքսանդրոս եղբաւրորդին մեր պատմեաց »:

Երեքտասաներորդ դարու գրչագրի մը մէջ՝ յորում կան և Լուծմունք գրոց Փիլոնի, հետևեալ մի-

և չորս խնդիրք. և 'ի վերջն. («Կատարեցաւ») Փիլոնի այնոցիկ որ յ'Ելսն է խնդրոց և լուծմանց. և յաղագս տապանակին և խորանին: »

* Երկրորդ գրքիս առաւելագոյն հատուածք սկզբնագրին կը գտնուին առ Նախնիս, և որ նըշանակուած են 'ի ստորեւս իջից մեր տպագրին:

— ** Փիլոնի՝ առանց պատրաստութեան 'ի Սամփսոնէ. (Philonis sine praeparatione in Sampson). « Այդ եբրև 'ի յորձանաց գիջութեան կորզեալ հեղեղեցաւ, և 'ի խորխորատն ընկղմեցաւ ցանկութեան, ոչ եւս էր կարող 'ի վեր հայել»: Ի վերջն. ( « Կատարեցաւ ) առանց պատրաստութեան 'ի Սամփսոնէ). Առանց պատրաստութեան խորագրին (ἀπαρασεύος) համար կընշանակուի 'ի գիրս Լուծմանց. — Մին՝ որ անզարդ է 'ի սկսանելն ճառն. և երկրորդ՝ զի չէր յառաջ խորհեալ՝ 'ի խնդրել ժողովոյն յաւուր շաբաթու 'ի նմանէ վասն Սամփսոնի, անպատրաստ սկսաւ »:

— ** Փիլոնի յաղագս Յովնանու. (Philonis de Jona). «Այնոցիկ որ զմարգարէսն ընթեռնուն, օմանք ընդ պիտանացուն մարդկան արմանան, և ոմանք ընդ մարգարէութիւն նոցա հիանան »: *

* Առ Եղիշէի՝ Փիլոնի այս գրոց իմաստի մը հետեւողութիւն կը գտնենք՝ զոր կը դնէ 'ի բերան Սահակայ եպիսկոպոսի յատենին Յազկերտի: Փիլոն կ'ըսէ. « Ո՞չ էր բաւական արեգակն ծանուցանել զկառավարն, յորժամ չափաւոր ունելով զբնութիւն՝ յաներեւոյթ ուրումն յաջոյ սփռեալ տարածանի յամենայն աշխարհ: Յայն որ կիզուն բնութիւն՝ 'ի ներքըս 'ի սկուտեղն արգել փակ. և զայն որ ջեռուցանէն՝ զպէտսն 'ի ճառագայթիցն ոռոգանէ: Իսկ սակայն ճառագայթքն արուեստագիտին Աստուծոյ՝ անբոլորելի սկուտեղն, լցեալ բոլորեն՝ շուրջ զաշխարհաւ զճառագայթսն ձգելով»: Իսկ սրբոյն Սա-

հարց առնուլ, գոյցէ մարդկային մարմնոյ զկազմածն »։ Ութսուներկու խնդիրք։

— Փիլոնի այնոցիկ... բան երրորդ. « Զինչ է. Ես եմ տէր Աստուած քո որ հանի զքեզ յերկրէն քաղդէացւոց, մինչ զի տալ քեզ զերկիրս զայս ժառանգել։ Ճառիդ յայտնոյ, զայն որ 'ի կարծիս բնութիւնն՝ հաստուցանելի է այսպէս »։ Վաթսուներկու խնդիրք։

— Փիլոնի այնոցիկ... բան չորրորդ. « Ընդէ՞ր ասէ. Եւ երեւեցաւ տէր աստուած Աբրահամու 'ի կաղնւոջն Մամբրէի... Ճառդ յայտնագոյն գոլ թուի ինձ. բայց ծառս միայն այլաբանեալ է... ծառ՝ ըստ Հերակլիտեայ՝ բնութիւնս մեր՝ զաւղել և թաքչել սիրէ »։ Այս վերջին խօսքը 'ի վկայութիւն կը բերուի յ'Եղիշեայ՝ 'ի Ճառին որ Յաղագս Միանձանց. « Բնութիւնս մեր ղուղակ է սիրէ ծածկել զմերկութիւն »։ Երկու հարիւր քառասուն և հինգ խնդիրք, և 'ի վերջն. « Կատարեցաւ, Փիլոնի այնոցիկ որ 'ի լինելութեանն, խնդրոց և լուծմանց՝ բան չորս »։

— ** Փիլոնի այնոցիկ որ յ'Ելան է խնդրոց և լուծմանց. (Philonis earum quae sunt in Exodo questionum solutionumque). Բան առաջին. « Ամիսս այս ձեզ՝ սկիզբն ամսոյ... Ի գարնանային հաւասարակաւորութեանէ զշրջագայս ամսոյն կարծէ պարտ թուել ».* Քսանուիրեք խնդիրք։

* Այս գրուածքիս ալ սկզբնագիրը կորսուած է. յիշատակութիւնն և հատուածք կը գտնուին առ հինս և առ Դամասկացւոյն (Φιλωνος, εκ τοῦ αί τῶν εν 'Εξόδῳ).

— Փիլոնի այնոցիկ որ յ'Ելան է... բան երրորդ. « Զինչ է, եթէ ձեռին գործին արկեր 'ի վերայ նորա, և պղծեալ է։ Որք 'ի բնութիւնն ձեռնարկեալ իշխեն և զգործս բնութեանն ձեռնարկութեամբ իւրեանց փոխեալ կերպարանեն, զանպիղծն »։ Հարիւր քառն

զերանեմ Աստուծով զաստուածաւէր գասս արքայանից և մակացու մանկանց նորոյ Սիոնի, և ամենայն հաւատացելոց Աստուծոյ՝ որք խրախանայք և լուսաւորիք իմաստախոհ վերծանութեամբ սորին. և կամ աւրինակաւ աւգտիք՝ յիշել 'ի բարին Քրիստոս և յաղաւթս ձեր մաքուր զստացաւղ սորա զհիրաւզէն ամենայն հանճարոյ իմաստութեան զպարոն Հեթում. և զնորոգ ածեալն արքայ զՍմբատ. համայն եղբարբք և ծնաւղաւք և համաւրէն զարմիւք: Զի արժանացին ամենեքեան ողորմութեանն Աստուծոյ և արդարութեան նորա 'ի փառս անուան իւրոյ:

« Աղաչեմ և ես Թշուառական այրս և ախմար գըրիչս Վասիլ՝ յիշել 'ի մեղաց Թողութիւն և զիմ անարժանութիւն»....:

— ** Փիլոնի այնոցիկ որ 'ի Լինելութեանն խընդրոց և լուծմանց. (Φιλόνος τῶν εν Γενέσει ζητηγάτων καὶ" λύσεων) Բան առաջին. « Ընդէ՞ր զաշխարհարարութիւնն ընդ միասածելով և հաշուելով ասէ. Այս գիր լինելութեան երկնի և երկրի. յորժամ եղև »: *

* Հարիւր Թուով խնդիրք և լուծմունք: Փիլոնի այս գրքին յունական սկզբնագիրն կորուսած է, և միայն մեր հայկական Թարգմանութիւնն ծանօթ: Կը յիշատակէն զայն՝ Եւսեբիոս յԵկեղեցական պատմութեան (Բ. ԺԸ). և Փաբրիկիոս 'ի Յունական մատենադարանի (Դ. 4): Հատուածք ևեթ ընագրին պահուած են առ Դամասկացւոյն, Յովհաննու Մոնախոսի, սրբոյն Մաքսիմոսի, և առ այլս 'ի հնոց: Արևմտեան եկեղեցւոյ հին վարդապետաց գրուածոց մէջ ալ յաճախ 'ի վկայութիւն բերուած են Փիլոնի այս երկասիրութենէն զանազան հատուածք:

— Փիլոնի այնոցիկ որ Լինելութեանն է խնդրոց և լուծմանց, բան երկրորդ. « Զինչ է Նոյի կողմանն: Զատպանս զայս եԹէ կամիցի ոք ընականագոյն 'ի

կան տիոց հետէ վարժեալ կրթութեամբ՝ յաստուածային աւրինացն ընթերցումն, որ գիտէ լաւ սնուցանել զ՚ի նա անկեալսն, քան զյանձանձումն մարց և գայեկաց, սիրեաց զիմաստութիւն և սիրեցաւ ՚ի նմանէ. վասն որոյ լաւ քան զոսկի և զականս պատուականս համարեալ անձին իւրում, որ և քաղցրացաւ քան զմեղու խորհուս ՚ի կոկորդս նորա. ուստի բաց և համարձակահայեաց ակամբ ոգւոյ ծանեաւ զիսկապէս և զարգարն բարին, և այնուհետև սկիզբն արարեալ գործնական առաքինութեան, միշտ աղաւթից և ընթերցման գրոց պարապեալ զուարթ և արթուն հայեցածով. մինչ զի բնութիւն զսովորութիւնն արարեալ, խնամ տանելով և դարմանելով զսուրբսն՝ որ են գաւք աղքատաց և որբոց. պայծառացուցանելով զսուրբ եկեղեցիս Աստուծոյ և աճեցուցանելով զդասս քահանայից. հանապազ պաշտամամբք համաձայնեալք երկնայնոցն խմբից՝ աւրհնութիւնս Աստուծոյ վերառաքէին. և համանգամայն զամենայն տեսակս առաքինութեան յինքն բերելով զոր սկարանամ ՚ի պատմել զբովանդակն. զի ժողովել հրամայեաց հանճարեղ արուեստաւորս յայլեւայլ աշխարհաց այլալեզու արանց՝ գաղատոսաց դասս, և կանգնեաց զսքանչարժան եկեղեցին ՚ի մայրաքաղաքին Սամուեստիա. զարդարեալ ազգի ազգի նկարաւք փորուածաւք ՚ի քարանց կճէից յանուն մաւր տեառն մերոյ Մարիամու աստուածածնին. և կարգեաց ՚ի նմա դասս պաշտաւնէից ըստ պատշաճի աշտիճանաց. որ և հրամայեաց իմոյ նուաստութեանս Բասլի, որ երբեմն սարկ". գրել զսոյն զայս տառ. և իմ թէպէտ և թերավարժ գոլով յարուեստ գրչութեան՝ սակայն զհարկն պատշաճաւոր յանձն առնլով ձեռնարկեալ շարագրեցի զսա խոշոր գրով՝ միայն ստուգութեանն ուշունելով աւարտմամբ յանգ հանեալ՝ արգահատութեամբ և վերակացութեամբ սըր-

*վարիլ 'ի մարմնի. և յետ սատակայս՝ մասնակից լի- նել Թագաւորացն որոց մշտնջենաւոր Թագաւո- րութեանն. Վասիլ գրիչ յիշեսցի յընթերցողաց սո- րին »։*

— *Փիլոնի կեանք վարուց իմաստնոց. « Տերու- նեան աւրինացն 'ի հինգ գիրս վերագրելոց, առա- ջինն կոչի և մակագրի լինելութիւն աշխարհիս. 'ի լինելութենէ առեալ զանուանութիւն »։*

— *(Ի վերջ ճառին). « Փիլոնի կեանք վարուց ըստ վարդապետութեանն կատարելոց կամ անգիր աւ- րինաց ». և յետոյ հետևեալ յիշատակարանն. « Զատա- ցաւ տառիս զբարեպաշտ Թագաւորն Հայոց Հե- թում յիշեսջիք յաղաւթս իմաստասիրաց վերծանողք. արժանանալ ողորմութեանն Աստուծոյ. զի և դուք յիշեսջիք 'ի տեառնէ Աստուծոյ մերոյ. և զանյար- մար գրիչս Վասիլ՝ աղաչեմ արժանի առնել յիշ- ման, որ 'ի բազում հոգս և 'ի ծուփ տարաբերիմ սակս անբաւ յանցանաց իմոց։ Գրեցաւ 'ի Թու.* **ՉԽԵ** »։

— *Փիլոնի աստուածային աւրինացն այլաբանու- թեան։*

— *(Ի վերջն). « Փառք... Յամի եւթնհարիւ- րերորդի քառասներորդի հինգերորդի Թուականիս Հայոց՝ եղեւ գրութիւն այսմ տառի, զոր է ոգեալ մեծ իմաստասիրին Փիլոնի միանգամայն եւթն գլխոյն 'ի միասին եդելոյ, հրամանաւ աստուածազարդ և հան- ճարաշատ Թագաւորին Հայոց Հեթմոյ որդւոյ Լեւոնի որդւոյ Հեթմոյ Թագաւորացն Հայոց. 'ի վայելումն և 'ի մխիթարութիւն մարմնոյ իւրոյ և յիշատակ հոգւոյ։*

*« Արդ այս Հեթում զկնի մահուան հաւր իւրոյ Թագաւորին Լեւոնի յաջորդեաց զաթոռ հայրենի և նախնի՝ այլ ոչ պսակեցաւ Թագի. սակս որոյ ոչ է պատշաճ զանց առնել զպատճառան. զի 'ի մանկա-*

թեւաց, 'ի մարաց և յելիմացւոց, 'ի միջագետաց, 'ի փռիւգացւոց, 'ի պամփիւլացւոց և յայլոց եւս ե-կեղեց անդր, 'ի մաւտաւորաց և 'ի հեռաւորաց. և որք ընդ Անտիփանոսի յԱղեքսանդրիայ վիճէին, որք ջատագով զինքեանս աւրինացն կարծեցուցանէին. յայնցանէ իմանի և այս. քանզի քաղաքապետ էր զայնու ժամանակաւ յԱղեքսանդրեայ, և հրեշտա-կութեամբ չոգաւ ևս 'ի Հռոմ առ Գայիոս կայսր, և դարձաւ անդրէն անարգանաւք. և այս 'ի ժամա-նակի թագաւորութեան Պետրոսի 'ի Հռոմ, զորմէ պատմէ Եւսեբիոս Պամփիւլեայ»:

***

Փիլոնի գրուածոց այլեւայլ թարգմանութիւններն ունինք 'ի նախնեաց, յորոց ոմանց յունական բնա-գիրք կորուսած են:

Ասոնց մէջ ամենէն աւելի հետաքննական են երկու ճառք ** Յաղագս Յառաջախնամութեան (περὶ τοῦ προνοίᾳ). Առաջնոյն խորագիրն է. «Փիլոնի յաղագս Յառաջախնամութեան առ Աղեքսանդրոս, բան առա-ջին. — Յորժամ յաղագս զնախախնամութեան բանդ կամէի քննութեամբ հարցանել, և անցեալ դիպէի զյաղագս իւրաքանչիւր ուրուք այնոցիկ»: Իսկ երկրորդին. «Փիլոնի յաղագս Նախախնամութեան՝ բան երկրորդ. — Այդ՝ դեռ եւս խորին է, մինչ միայն ճանաչել զայնոսիկ, որ պատահենն, սիրելիք և ազ-գայինք. ճշգրտագոյն իմն տեսանեմ աչաւք տարա-ծեալ». յորոյ 'ի վերջ հետեւեալ յիշատակարանը կը գտնենք՝ մեր մատենադարանին ընտիր գրչագրի մը մէջ. «Աստացողի սորա Թագաւորին Հայոց Հեթմոյ՝ որ արհամարհեալ զերկրաւորս՝ փափաքանաւք փու-թայ զերկնայինն գտանել արքայութիւն՝ ողորմեա տէր. և պարգեւեա նմա ըստ քոյին կամաց քաղաքա-

պատճառս հրեշտակութեանն վտանգի մէջ ալ դնելով իր կեանքը։

Փիլոն երկրորդ անգամ դարձաւ 'ի Հռովմ առ կայսերութեամբն Կղաւդեայ. և ոմանք 'ի հնոց կարծեցին թէ այն առթիւ բարեկամացած կամ ծանօթացած ըլլայ ընդ սրբոյն Պետրոսի. Փոտ կ'ըսէ թէ այն միջոցին ընդուներ է նաև զքրիստոնէական կրօնս զոր յետոյ թողած 'ի պատճառս դժգոհութեանց կամ անհամաձայնութեանց զոր ունեցեր է ընդ քրիստոնէից։ Բայց այս կարծիք վաւերական ստուգութիւն մը չունի։ Անտարակուսելի կը սեպուի իր ծանօթութիւնն ընդ Յիսուսի փրկչի, որուն աստուածութեանն ալ հակառակամարտ կ'երևնայ Մնասոնի դէմ չարագրած գրուածոց մէջ։ Ինչպէս ծննդեանն՝ ասանկ ալ մահուան թուականն անծանօթ է։

***

Իր անձին և վարուց վրայ հետևեալ տեղեկութիւնները կուտան մեր նախնիք 'ի գլուխ գրոց հայկական թարգմանութեանն. «Մեծիմաստն Փիլոն՝ եբրայեցւոց գոլով. այլ ոչ երևի թէ յորո՛ց ցեղից յերկոտասանիցն իցէ. զի ցիր և ցան եղեն 'ի գերչաց անտի ընդ ժամանակս ժամանակս. զի թէպէտ և դարձան յաւուրս Կիւրոսի և Դարեհի և Արտաշեսի, Զորաբաբելիւ՝ Եզրաաւ և Նէեմիւ. սակայն 'ի թագաւորելն Անտիոքայ յաւուրս Մակաբայեցւոցն՝ վերստին ցիր և ցան եղեն. կէսք 'ի Լիբաստան և յԱղեքսանդր Եգիպտոսի, և այլք յայլեւայլ կողմանս ըստ հանդիպման. և վասն այնորիկ խառն 'ի խուռն չփոթէին կարգք ազգացն նոցա, ուր և տունս և ժառանգութիւնս ստանային 'ի գաւառսն յոր գերեցանն. զորոց և Պրակացն պատմութիւն ցուցանէ. զի ելանէին յԵրուսաղէմ 'ի գալ տաւնիցն, 'ի պար-

# ՓԻԼՈՆ ՀԵԲՐԱՅԵՑԻ

( PHILON, LE JUIF )

---

Փիլոն՝ զոր սուրբն Հերոնիմոս կը դասէ ընդ մատենագիրս եկեղեցւոյ՝ հրէայ էր ազգաւ 'ի քահանայական ցեղէ, և յընտրելագոյն տոհմից Աղեքսանդրիոյ։ Երիտասարդ հասակէն եւեթ եղաւ գեղեցիկ դպրութեանց և իմաստասիրական ուսմանց, յորս և հռչականուն հանդիսացաւ. և կ'աւանդեն թէ առաւել քան զամենայն իմաստունս իր դարուն խելամուտ եղած ըլլայ 'ի հմտութիւն վարդապետութեանց Պղատոնի և Պիւթագորայ, որոց հետեւող էր և զարմացող։ Իր ոճոյն և կարծեաց համաձայնութեանն համար ընդ պղատոնականաց. միւս այլ Պղատոն կոչուած է 'ի հնոց և կամ Պղատոն հրեայ. և յԱղեքսանդրիա՝ ուր փայլեցաւ, սովոր էին ըսել 'ի գովութիւն նորա թէ կամ Պղատոն կը նմանի Փիլոնի և կամ Փիլոն Պղատոնի. Սոզոմեն՝ պիւթագորեան կը կոչէ զնա, շատ տեղ 'ի գրուածս Փիլոնի հանդիպելով յոյն փիլիսոփային կարծեաց, ոճոց և իմաստից։ Բայց իրեն ամենէն մեծ պարծանքն է սուրբ գրոց խորին գիտութիւնն և հմտութիւնն։ Ծննդեանը թուականն յայտնի չէ. բայց ինքն իսկ կ'ըսէ թէ արդէն հասակն առած էր՝ երբ յաւուրս կայսերութեանն Գայիոսի, Քրիստոսի քառասներորդ թուականին եկաւ 'ի Հռովմ, ուր յղեցին զնա աղեքսանդրացի հրէայք 'ի պաշտպանութիւն իրենց իրաւանց յատենի կայսեր։ Բայց այդ ճանապարհորդութիւնը փափաքելի ելքը չունեցաւ, մանաւանդ թէ 'ի

**ՏԻՐԱՆՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ**. — *Յառաջին կիւրակէին (աղուհացից) Տիրանոսի եպիսկոպոսի ասացեալ յաւետարանին մեկնութենէ*։

**ՓԵԼԻՔՍԻԱՆՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ**. (PHÉLIX, ÉVÊQUE). — *Բանք երանելւոյն Փելիքսիանոսի Յերապօլսի եպիսկոպոսի, զոր գրեաց 'ի խնդրոյ եղբաւր որ աղաչեաց զնա ուսանել զսկիզբն ընթացից միայնակեցաց և զկատարումն որոց լաւեն 'ի սենեակ. «Քանզի տեսի զհոգի քո, ով անդրանիկ ոգւոյ իմոյ, զի ընթանայ ուսանել զճանապարհ կենաց, զոր ուսոյց և հորդեաց տէրն աշակերտաց իւրոց»*։*

* Ի *մատենադարանս Էջմիածնի կը յիշատակուին (Թիւ գրչ.* 513) «*Թուղթք Փիլիքսիանոսի եպիսկոպոսի վասն եղանելոյ յաշխարհէ*»։

**ՓԻԼԱՔՍԻԱՆՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ**. (PHILAXIUS), — *Փիլաքսիանոսի Նաբովկայ սրբոյ եպիսկոպոսի պատճառ հաւատոյ՝ վասն տիեզերական սուրբ ժողովոյն Եփեսոսի, և վասն անօրէն հայհոյութեանն Նեստորի, 'ի խնդրոյ տեառն Կոմիտասայ Հայոց կաթողիկոսի*»։

կամելով կոչեաց զՄարիամ՝ զաղքատն, այլ և զհաւատարիմն »: — Ըստ այլ ձեռագրի. «Խաւսք Տիմոթէոսի աստուածասէր քահանայի 'ի սուրբ Աստուածածինն և 'ի նորին ողջոյնն »:

— Ի պատմութենէ վարուց սրբոյն Աթանասի, զոր ասացեալ է Տիմոթէի աշակերտի նորին և աթոռակցի Աղեքսանդրացւոյ. ( Vie de St. Athanase ). « Ի ժամանակս թագաւորութեանն Դիոկղետիանոսի՝ երանելիք ոմանք Մարկեղոս և Սողոմի, աւրինաւք Աստուծոյ հաւատացեալ յԱստուած՝ ծնանին 'ի կամս Աստուծոյ որդի մի, և նուիրեցին զնա 'ի պաշտաւն Աստուծոյ »:

**ՏԻՄՈԹԷՈՍ ԱՆՏԻՈՔԱՑԻ** ( TIMOTHÉE D'ANTIOCHE ). — Տիմոթէի Անտիոքացւոյ պատասխանիք առ հարցմունս թագաւորին Տաճկաց:

— Պատասխանիք առ հարցմունս Աճարոնի թագաւորին:

**ՏԻՏՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԿՐԵՏԱՑԻՈՑ**. ( TITE, EVÊQUE DE CRÈTE ). — Տիտոսի եպիսկոպոսի Կրետացւոյ յառակ դրամոյն. ( Sur la parabole du dénier de l'évangile ). «Որք առակացն լսող են, յայտ է թէ և մեկնութեանն փափաքին »:

— *Նորին ասացեալ. « Տասն դրամօք առակաւորանին՝ զթիւ տասն դասուց հրեշտակացն զեկուցանէ. վասն այսորիկ մի տասն դասուց ասաց զմարդկային բնութիւն »: *

* Ի Ճառընտիրն Իէ ('ի մեր մատենադարանի) 'ի տօրին լուսանցսն՝ ստացողն Գրիգոր կաթուղիկոս կամ եպիսկոպոս կը գրէ. « Ջայսպիսի մեկնութիւն բանիս բազում իրօք ստգտանէ մեծն Իգնատիոս, զի արտաքոյ քան զսահմանս ընթանայ, և ոչ երևի միտք բանին ըստ կարգին պատշաճի »:

# ՏԻՄՈԹԷՈՍ ԱՂԵՔՍԱՆԴՐՈՒ

(TIMOTHÉE, ÉVÊQUE D'ALEXANDRIE)

---

Տիմոթէոս Աղեքսանդրիոյ՝ սոսկ քահանայ մ'էր, երբ առաջիկայ գտնուեցաւ ժողովոյն գումարելոյ 'ի Տիւրոս (335), ջատագով և պաշտպան հանդիսանալով սրբոյն Աթանասի։ Իր եղբօրը Պետրոսի հայրապետին Աղեքսանդրիոյ մահուընէն ետքը՝ Եգիպտոսի եպիսկոպոսաց համաձայն հաճութեամբ և գոհութեամբ յաջորդեց յաթոռն (381), զոր և կառավարեց խոհական իմաստութեամբ մինչև ցմահն (385)։

Սոզոմենոս կ'ըսէ թէ հօրն Ապողոնի և ուրիշ Թեբայիդայ անապատասուն ճգնաւորաց վարքը շարադրած ըլլայ Տիմոթէոս, որ մեր ձեռքն հասած չէ։ Միայն անկորուստ մնացած են 'ի յոյնն՝ Թուղթն առ Դիոդորոս եպիսկոպոս Տարսոնի, և միւս ալ թուղթ կանոնական, որ չեն երևիր 'ի մեր մատենագրութեան, որ նոյն Աղեքսանդրիոյ հայրապետին անուամբ պահած է և աւանդած մինչև առ մեզ հետևեալ գրուածք որ անծանօթ են առ այլս։ Ասոնք են

— ** Տիմոթէոսի աղեքսանդրացւոյ 'ի խորհուրդ Տեառնընդառաջին. (Sur le mystère de la présentation de N. S. au temple). «Զայս որդի Դաւթի ընկալաւ Սիմէոնն 'ի գիրկս իւր. 'ի սուրբ հոգւոյն ածեալ 'ի տաճարն՝ զի տեսցէ զաւծեալն Տեառն»։

— ** Ի սուրբ Կոյսն և յողջոյն Եղիսաբեթի. (Sur la sainte Vierge, et la salutation d'Elisabeth). «Մի արգելուք վայրապար ինչ մայր ինքեան՝ մարմնանալ

տըն սրբոյն Պաւղոսի. ( Statutum monasticum a S. Patris Benedicti discipulis confectum, in quo regularum suarum observatio minutim describitur: statutum hoc a magistro Berenger in Italia fuit exaratum in monasterio Fiscamense; qui inde digressus perrexit Antiochiam, ubi celebrem S. Pauli congregationem ad haec instituta direxit.) Ութ գլուխք կրօնաւորական կարգաց և սահմանաց. զոր սուրբն Լամբրոնացի 'ի լատինէ փոխադրեր է 'ի հայ։ Բնագիրն կորուսած է, մեր թարգմանութիւնն ալ թերի 'ի վերջոյ։ Տես Ս. ԲԵՆԵԴԻԿՏՈՍԻ ԿԱՆՈՆՔ և ԳՐԻԳՈՐ Ա ՄԵԾՆ քահանայապետ Հռովմայ։ Հայերէնն՝ լատինական նոր թարգմանութեամբ հրատարակուած է 'ի մեր տպարանի ( 1880 )։

ՏԱՏԻԱՆՈՍ ( TATIEN ). Կը յիշատակուի սրբոց Ոսկեանց հին վկայաբանութեան մէջ. « Գտի միւս եւս այլ պատմագիր 'ի կողմանս Յունաց. այր մի ընթերցասէր Տատիանոս անուն, որ լեալ է յաւուրս Վաղանդիանոսի կայսեր. բաղում ինչ պատմեաց նա մեզ 'ի յունական մատենից. որոյ գրեանն՝ անթիւ շատաբանութեամբ զրուցաց՝ և այժմ 'ի միջի մերում գտանի. զոր իմ իսկ բաղում անգամ ընթերցեալ՝ գտի 'ի ճառս նորա, եթէ արք ոմանք որք յաշակերտաց գրեալ են մեծին Թադէի առաքելոյ, որոց գըլխաւորի անունն էր Քռիւսի, այր յազգէ գռիկ » ( յոյն )։ *

* Հրատարակեալ 'ի շարս Հայկական Սոփերաց (Հատ. ԺԹ)։

գի և 'ի չորրորդում ամի շրջաբերութեան Հայոց տումարի, 'ի թագաւորութեանս Հայոց Լեւոնի՝ 'ի վերջացեալ և 'ի նուազեալ դառն ժամանակի, յաւուրս աստուածապատիւ և հոգևոր տեառն Յոհաննիսի Հայոց կաթողիկոսի, յաշխարհս Պաղեստին՝ 'ի մէջ գերութեանս Երուսաղեմի՝ ընդ հովանեաւ սուրբ Յակովբայ առաքելական աթոռոյս, 'ի Յոհաննէս գրչէ՝ 'ի խնդրոյ Յովհաննու ճգնաւորի»: Չորեքտասաներորդ դարու գրչութեամբ ուրիշ ճառընտիր մ'ալ «... 'ի թուականութեան հայկազեան տումարիս ՉՂԱ (= 1342)... յԵկեղեաց գաւառս՝ 'ի մայրաքաղաքս աստուածապահ Եզնկայ՝ ընդ հովանեաւ սուրբ և երկնանման տաճարիս՝ սուրբ կաթուղիկէի. և սուրբ առաքելոցն և սրբոյն Սարգսի և սուրբ Աստուածածնին»: Կը թողունք յիշատակել ուրիշ օրինակներն որ առաջիններուն թուականի հնութիւնը չունին:*

* Հնագոյնք և ընտիրք 'ի վկայաբանութեանցս հըրատարակեալէն 'ի շարս մատենագրութեան նախնեաց՝ 'ի Ս. Ղազար Վենետիկոյ, յամի 1874:

ՎԱՀԱՆ ՆԻԿԻՈՅ (VAHAN OU JEAN DE NICÉE) որ մերթ Յովհան ալ կոչուած է, և որոյ կայ Թուղթ առ Զաքարիա կաթողիկոս, զոր Գրիգոր սկեւռացի յերկոտասաներորդ դարու թարգմանեց 'ի հայ՝ հրամանաւ Լեւոնի առաջնոյ ռուբինեան թագաւորի:

ՎՐԸՆՋԷՐ (BÈRENGER). ** «Սահման վանից սըրբոյ հօրն Բենեդիկտոսի, մանրամասն զգուշութեան օրինաց նորին. զոր գրեաց վարդապետն Վըրընջէր 'ի կողմ Իտալիոյ, 'ի վանքն Փիսկանի, և բերեալ յԱնտիոք՝ ուղղեաց ըստ այսմ օրինաց զհռչակաւոր ուխ-

տուն և աւելի օրինակք կան Ճառընտիր գրոց, յորոց ոմանք նորագոյն ընդօրինակութիւնք՝ ուրիշ մատենագարանաց կամ հաւաքմանց մէջ գտնուածներուն։ Առաջինն գրուած է 'ի ՈՀԳ (=1224) Թուականին յանապատն Լուսաւորչի, այբուբենի կարգաւ՝ 'ի Թադէոս գրչէ, ունենալով նաև զայլ գործակիցս և օգնականս, որոց անուանք ալ կընշանակուին՝ գրքին մէջ տեղ տեղ գտնուած յիշատակարանաց մէջ, և են հայր Կոստանդին, Ղազար, Վարդան և այլք։ Այսպէս տեղ մը. «Տէր Աստուած, աւգնեա հայր Պետրոսի և Սարգսի նուիրակի. զի հրամանաւ սորա գրեցաւ 'ի դուռն սուրբ Լուսաւորչիս 'ի ՈՀԳ Թուականիս»։ Ուրիշ տեղ մ'ալ. «... Ողորմեա նուաստ ծառայից քոց եղբարց՝ Ղազարու վարդապետի և Գրիգորի և Աստուածատրոյ, որք են սպասաւորք եկեղեցւոյ անապատի սուրբ Լուսաւորչին»։ Դարձեալ. «... ողորմեա հայր Կոստանդեայ և Թադէոսի գրչի, և որք 'ի ծաղկելն աւժանդակեցին՝ Վարդան 'ի Կապոսոյն վանից, և Ղազար գրիչ... նաև ամենայն հաւով միաբանաց սուրբ Լուսաւորչիս գերեզմանիս»։ Յ'ետ 150 կը յիշուի Բարսեղ հայր «մեծահռչակ անապատի Կողըյն»։ Մերթ ընդ մերթ ալ՝ 'ի ստորեւս իջից կամ 'ի լուսանցս կը յիշատակուին որք նուիրաբերք եղեր են անապատին կամ յիշատակ մը Թողեր. այսպէս՝ օրինակ իմն. «Գրիգոր միայնակեաց, այր խարազնազգեաց, որ շրջէր յաշխարհի ըեշկ մաշկով. նա՝ առ սէրն զոր ունէր, յիշատակեաց 'ի գամբարանս սուրբ Լուսաւորչիս նշխարս երկուս. զսկաւառակն սուրբ Վարդանայ և զմեծ բազուկն, և զմիւս բազուկն Փիլիպպոսի առաքելոյն, և միաբանեցաւ հոգւով....»։ Ճառընտիր մ'ալ գրչութիւն երկոտասաներորդ դարու, երրորդ մ'ալ Երուսաղեմի կոչուած, Ճոխագոյն քան զայլս՝ Ճառիւք և վկայաբանութեամբք սրբոց, և միւս ալ՝ գրեալ «Յամի վեցհարիւրորդի վաթսներոր-

տակարանն է. «Ցեւթն հարիւրերորդի եօթանասներորդի հայկազեան տումարի՝ գրեցաւ սաստուծաշարդ Ճառընտիրս այս, ձեռամբ մեղսաթաւալ և յոգնամեղ անձին Վահանայ անարժան քահանայի 'ի վանքս Դրազարգի, 'ի մեծափառ և հռչակաւոր անապատն, 'ի դուռն տաճարի մօրս լուսոյ Աստուածածնի, 'ի թագաւորութեան աղայ արքայի Լեւոնի որդի Աւշին թագաւորի, 'ի հայրապետութեան տեառըն Կոստանդեայ... ես ողորմելիս Վահան խաւարեալ աչօք 'ի հալալ արդեանց իմոց և աշխատութեամբ գրեցի զսա պաշար կենաց իմոց և յոյս համարձակութեան առ Աստուած բազմաբիծ անձին իմոյ... մանաւանդ Զապլունին դստեր Լեւոն արքայի Հայոց և ամենայն եղբայրութեանս... Եւ արդ ծանուցանեմ ձեզ սուրբ հարք մեր և եղբարք՝ բնակիցք սուրբ ուխտիդ բնակչաց, երկրամերձ դիմօք աղաչեմ, զի կամէի գալ և լինել երկրպագութեան արժանի աստուածային գերեզմանին ու չյաջողեցաւ... ես զինչ աղէկ գիրք գտայ 'ի վանքս... պատմութիւն՝ ես ձեզ գրեցի որ ընթեռնուք, ուրախանայք ու զիս յիշէք»...: — Ուրիշ գրչագիր մ'ալ նոյնպէս բոլորգիր, 'ի թուին ՉԼԹ «ձեռամբ Բարսեղ քահանայի 'ի թագաւորութեան քրիստոսասիրի և բարեպաշտին Հեթմոյ՝ որդւոյ Լեւոնի»: — Բաւական հնութիւն և նիւթոց ճոխութեամբ ընտրելագոյն գրչագիր մ'ալ կայ, որուն թուականը կը պակսի՝ 'ի սկիզբն և 'ի վերջ քանի մը թերթ ինկած ըլլալով: Ասոր նման ճոխ՝ բայց աւելի նորագոյն օրինակ մ'ալ: Ամենէն կրնայ ընտիր սեպուիլ Մանուէլ վարդապետի և Յովհաննու Երզնկացւոյ գրչութեամբ ընդօրինակուած մեծադիր Ճառընտիր մը՝ 'ի չորս ընդարձակ հատորս, որոյ գրչութեան սկզբնաւորութիւնն եղած է 'ի ՊԿԶ (= 1417) և աւարտումն 'ի ՊԿԸ (= 1419): — Ի մեր մատենադարանի գրեթէ երե-

ցակէն, տասուերկու օրինակք կը նշանակուին Ճառընտրաց, յորս հնագոյնքն 'ի ՉԻԷ, ՊՁԱ և ՊՂԱ. իսկ այլքն՝ կամ անթուականք և կամ նորագոյնք. եօթներորդն՝ որ Հրաշափառ տօնական անունը կը կրէ, հետևեալ յիշատակարանն ունի. «Յիշեցէք 'ի բարի զգերագրական հարազատն իմ զսրբասնեալ վանականն, զԻգնատիոս զանխուլ խարազն, արթնական ճգնազգեցն և զԵսային բանիբուն փիլիսոփայն, և անհաս նկարող. որ երփն երփն գունով, ծաղկափթիթ զարդարեաց զհրաշափառ մեծ աշուք տօնականս, և կազմեալ զսա արար զձեռագործ սլտրուկ վասն հեգ փանաքիս Մատթէոսի, պատարուն լիապէս կատարելունակ. զոր գրեալ կայր սա զամս իբրև քսանից»: Յետ յիշելոյ զԹադէոս քահանայ և զՍտեփանոս և զհարազատն Արիստակէս և Յուսիկ, կը յաւելու. «այլ և զկուսութեամբ ճգնեալ և զծնաւղին պահօղ քոյր սոցին և սաղմոսող, օրհնութեան արժանի արարէք: Գրեցաւ հրաշափառ տօնականս 'ի վերի նորավանս թուին ՋԵ 'ի փառս Հօր և Որդւոյ»: — Ուրիշ համառօտ յիշատակարանք ալ յընթացս գրոցն. որպէս 'ի վերջ Ներբողենի Ոսկեբերանին 'ի Լուսաւորիչն սուրբ. «Ովերանեալ հայր պատուական — Գրիգորիոս տիպ տիրական, — Ծմաւոն պետին մեր սրբազան — Մասն շնորհեա ողորմութեան. — Զի զհրաշալիս զայս տօնական, — Որ զարդարէ զտօն տէրունական — Ետ օրինակ մեզ ըղձական, — Ինքն լիցի 'ի փառս հրճուական»: — Ուրիշ տեղ մ'ալ. «Ողորմեա... յոգնիմաստ արփիափայլ րաբունւոյ մեծի Ծմաւոնի, և հանճարամիտ համշիրաքին իւր Մարտիրոս փակակալին, որ զայս հրաշալի սուրբ գիրքս՝ հեգոյս Մատթէոսի օրինակ շնորհեցին»:

Ի մատենադարանին որ յԵրուսաղէմ կը գտնուի բոլորգիր Ճառընտիր մը գրեալ 'ի ՉՀ թուին. և յիշա-

թեամբ, Հոգւոյն սրբոյ ձրիւք, իբրեւ զգործասէր մեղու ամբարեալ հաւաքեցին 'ի հոգեւոր սեննակս ըզծաղկազարդ վարդապետութիւն աստուածաբանութեամբ, անշարժութեամբ հաւատոց, անարատ խոստովանութեամբ համագոյ Երրորդութեանն եւ բովանդակ անաւրէնութեան մարդացելոյ Բանին, բազմութեամբ ճառից որ 'ի սմա կան արձանագրեալք հաստատութեամբ հաւատոց ընթերցուածոց գրութեան տաւնական տաւնից տէրունականաց, եւ 'ի խաչակիր վկայից եւ սրբոց առաքելոց եւ մարգարէից բովանդակեալ 'ի ծննդենէն Քրիստոսի մինչեւ յաւարտումն բովանդակ տարւոյն, որ է կատարումն ընթերցուածոյ՝ տաւն սրբոց առաքելոցն որդւոց Որոտման. լի եւ լոյ հոյծ եւ պատարուն լուսայեղց եւ բազմաժողով, որով բարգաւաճեալ լուսաւորին ընդհանուր ծնունդք որովայնի քո. այս ինքն ազգն քրիստոնէութեան բոլոր սեռի ոգեշահ մխիթարութեամբ, անկապուտ ճոխութեամբ զմայլեալ 'ի մեծութեան սորա՝ նորոգին փառաց 'ի փառս... Արդ եղեւ զըրաւ գրութեան սորա 'ի թուաբերութեան Հայոց 'ի ՈԻԳ. 'ի հայրապետութեան տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի 'ի մանկական տիոց Տըղայ կոչեցեալ, յեպիսկոպոսութեան տեառն Թէոդոսի, առ սահմանաւք անմատոյց բերդիս որ կոչի Տիւրիւկի, 'ի գեաւղս որ կոչի Նեղկուկ. եւ կատարեցաւ ձեռամբ իմով տառապեալ եւ յոգնամեղ եւ անմար գրչի Ստեփանոսի, որ յաւժարութեամբ սրտի եւ անվեհեր փութով գրէի. որ մեծաւ աշխատութեամբ գործ 'ի ձեռս առեալ ջանայայ եւ յաւարտումն ածի. եւ ես անարժան այսմ սպասաւորութեան՝ ջան զանձամբ առեալ կատարեցի ոչ իմով զաւրութեամբս, այլ զաւրացուցչին իմոյ Քրիստոսի եւ առաջնորդութեամբ Հոգւոյն սրբոյ»:

Ի մատենադարանին Էջմիածնի՝ ըստ տպագիր ցու-

կանն, առաքեցաք քեզ և հանուրց եկեղեցեաց Հայաստանեաց՝ գանձ երկնային և հոգեւոր, որ ծածկեալ էր յոգարակի այլալեզու արանց»: — Իրեն ընծայուած են դարձեալ Տարագոսի և Պրոքոսի վարք «Թարգմանեալ 'ի մեր Թուին ՈՋ 'ի Ներսիսէ Շնորհալւոյ՝ յարմարութեամբ բանի և գրութեամբ բառի. իսկ 'ի յունականէն յեղեալ է ձեռամբ Կոստանդեայ քահանայի»: — Վարք և քաղաքավարութիւն երիցս երանեալ Ճգնազգեաց վկային Քրիստոսի սրբոյն Պարսամու միայնակեցի. «Թարգմանեալ 'ի Գրիգոր քահանայէ և յետոյ հայկաբանեալ 'ի Ներսիսէ Շնորհալւոյ»: Ի վերջ վկայութեան սրբուհւոյն Թեկղի յիշատակարան մը կայ յանանուն թարգմանչէ. «Կատարեցաւ գիրք Թեկղի երանելւոյ: Փառք Աստուծոյ ամենակալի և աւծելոյ իւրոյ և հոգւոյն սրբոյ, որ ետ զաւրութիւն թարգմանչի և գրչի»:

Ասոնք մեզի ծանօթքն, յորոց ոմանք անշուշտ վրիպած մեր տեսութենէն կամ 'ի քննութեանց:

***

Ընդհանրապէս Ճառընտիր կոչուած գրոց մէջ զետեղուած են այս վկայաբանութիւնք. և ինչպէս յայլս 'ի գրչագրաց՝ ասոնց մէջ ալ ընտրելագոյնք անոնք են որ աւելի հնութիւն ունին ժամանակի: Քիչ չեն այսպիսի Ճառընտիրք թէ 'ի մեր մատենադարանի և թէ յայլս. բայց մասնաւոր մտադրութեան արժանի է յազգային գրատան Փարիզու պահուածն՝ երկաթագիր, որոյ յիշատակարանն է. «...Բազում քաղձանաք... հրաբեր սրտիւ եկի բերել մաւր իմոյ հաւատոց, այս ինքն քեզ՝ կաթողիկէ սուրբ եկեղեցի, զնազելին և զյոյժ ախորժելի զգերապայծառ զայս հոգեւոր վերագիտողացն՝ աստուածարեալ հարցն՝ արանցն աստուածասիրաց աստուածեղէն իմաստու-

յաշխատութիւն հոգեւորաց և Աստուծոյ սիրելեաց, հոգ եդ 'ի վախճանելն իւրում՝ մի անփոյթ առնել զմանէ. այլ յանկել ընթերցուածովք ըստ արժանին, զոր և արարի »:...

***

Ներսեսի Շնորհալւոյ ալ ընծայուած են քանի մը թարգմանութիւնք կամ սրբագրութիւնք վարուց սրբոց: — Սրբոյն Սարգսի և իր որդւոյն Մարտիրոսի վկայաբանութեան վերջը կը կարդանք. «Թարգմանեցաւ ճառս յասորւոյն 'ի մերս 'ի ձեռն Միխայելի ուրումն կրօնաւորի քահանայի ասորւոյ, և յարմարեցաւ ըստ կարի՝ մերում լեզուի շարագրութեամբ 'ի Ներսիսէ եպիսկոպոսէ՝ յեղբօրէ կաթողիկոսի Հայոց Գրիգորիսի, 'ի թուաբերութեանս Հայոց ՈԷ »: Ինքն Շնորհալին՝ 'ի թղթին առ Գէորգ արևելեան եպիսկոպոս՝ առաջնորդ Հաղբատայ կը գրէ. «...Առաքեցաք առ եղբայրս գերահռչակ ուխտին ասորւոց՝ որ յանուն սրբոյ միայնական ճգնաւորին Մաւր Պարսամայի՝ առ սահմանաւն Մելիտինւոյ Հայոց, որպէս զի 'ի յարկեղս մատենից իւրեանց հետազօտեալ քննեսցեն, և եթէ գտցի նշանակեալն՝ (վարք սրբոյն Սարգսի) թարգմանեալ տացեն մեզ զխնդրելին... Եւ նոցա ընկալեալ զառ 'ի մէնջ ցուցեալ անուն, և թարգմանեալ՝ որքան էր կարողութիւն՝ ջերմեռանդն սիրով, 'ի ձեռն ուրումն իմաստնոյ Միխայէլ անուն կոչեցելոյ, ազատաբար՝ զմերս գիտողի գիտութիւն, առաքեցին առ մեզ. որ թէպէտ և 'ի յարմարութիւն բանից և 'ի շաղկապս բառից՝ ոչ զուգիւր ընդ մերում լեզուի, սակայն զբնութիւն բանին և զկարգ պատմութեանն ամբողջ ունէր յինքեան: Զոր և մեր ընկալեալ, և ըստ չափու զօրութեան յղկեալ զգիրս բանիցն և զպատմողա-

չեմ սրբովք վկայիւքս՝ զամենեսեան առ հասարակ՝ մի անփոյթ առնել զմեր աղէտանջ երկս աշխատութեան. այլ ընդաւրինակել գաղափարաւ, և գրելով պահել յամենայն սուրբ եկեղեցիս. և անխափան առանց յերկուանալոյ կատարել զկանոն ընթերցուածիս, 'ի տաւնս յիշատակի սրբոցն: Եւ որ ոք գրէ զգիրս զայս, աղաչեմ գրել 'ի գլուխս գրոցն ըզգոյզն բան յիշատակի մերոյ՝ և աղաւթիւք յիշել 'ի 'ի Քրիստոս զարարող գրոցս, և զԳրիգորիս համանուն իմ և համազգի, որ և գրիչ և յաւրինիչ գրոցս»:

Այս յիշատակագրիս վրայ կը յաւելու և Կիրակոս վարդապետ՝ աշակերտ և գործակից Վկայասիրին՝ զհետևեալս. «Ես Կիրակոս տրուպ գիտնական և անարժան ծառայ Աստուծոյ՝ ծանուցանեմ ձեզ վասն սուրբ կտակիս՝ տաւնամակի եկեղեցւոյ սրբոյ և աստուածայնւոյ յիշատակի. որպէս գիտէք 'ի սկըզբանէ հաւատոց մերոց, մեր ուղղադաւան ազգիս արամեան՝ որդիացեալք աշակերտութեամբ սրբոյն Գրիգորի, աստուածանման լուսաւորչին մերոյ, համաւրէն ամենայն սրբովք՝ որ եղէն յազգս մեր հաճոյ Աստուծոյ, զայս գրոյ եկեղեցւոյ անփոյթ արարին վասն ժամանակին. և մեծ և աստուածային տաւնքն խաչի կամ աստուածածնի, վկայից և սուրբ հայրապետաց, հարցն և ճգնաւորաց և կուսանաց վըկայից՝ անփառաւոր և անկատար և անյարմար լինէր առանց այս գրոց: Ապա հոգին սուրբ ազդեաց սուրբ հայրապետին Գրիգորիսի՝ աստուածասիրի և վկայասիրի. և նոր սկսեալ՝ յաւրինեաց զսա ըստ ամենայն տաւնից՝ արժանապէս, 'ի դէպ սաղմոսիւք և ընթերցուածովք աստուածախաւսիւք: Բայց ոչ 'ի գլուխ աւարտեաց զամենայն, զոր պարտ և արժան էր տաւնելոյ: Ապա ինձ որ միշտ ընդ նմա էի, և յամենայն իրս աստուածայինս կցորդ և յորդորիչ, և փոյթ

սրբազան կաթուղիկոսի Հայոց մեծաց, զոր տէր տատուած պատկակից արասցէ սրբոցս»...։ — Ոնոփրիոսի սրբոյ հօրն վարք. որուն յիշատակարանը տես յ՚էջ 542։ — Վարք սրբոյն Գենարիոսի եպիսկոպոսին Բենեւենտոյ քաղաքի, որոյ թարգմանութիւնը Վկայասէրին կ՚ընծայուի յերուսաղեմեան ճառընտրի՝ գրչագրելոյ յԵրզնկացւոյն։ Այսպէս նաև վարք և վկայաբանութիւն Պարասկեւեայ կուսի, Լաւրենտի և Ագրիպպայ, Եւդոքսիայ և Ռոմելայ, Վառվառեայ և Յուլիանեայ՝ նման յիշատակագրութեամբք, զորս աւելորդ սեպեցինք կրկնել։

***

Գտնենք հօս նաև զինքնագիր յիշատակարան Վկայասիրին. «Գրիգոր, ամենաթշուառ գրիչ, զամենայն ժողովեալքս աղաչեմ... Այս ինչ կայ 'ի գիրս։ Եւ այս է յիշատակարան տաւնից տէրունականաց, և սրբոց Աստուծոյ. ցուցմամբ աւուրց հռոմի ամսոց ըստ իւրաքանչիւր սրբոց հանդիպմամբ չարչարանաց կատարման, և կամ ըստ խաղաղական ելից հանգըստեան մարտիրոսաց և հայրապետաց սրբոց որք հաճոյացան Աստուծոյ՝ նեղ և անձուկ ճանապարհաւն Յիսուսի։ Զոր ես Գրիգորիս ծառայ Աստուծոյ և գիտապետ հայաստան ազգիս, համարձակեալ վասն սիրոյ վկայից Քրիստոսի՝ յաւելի 'ի նախակարգեալ տաւնին հռոմի ամսոց՝ ընտրեալ 'ի տաւնամակաց, յոքունց՝ զսակաւս, որ 'ի բազմաց անփոյթ էր լեալ, և մեք աշխատեալ՝ զայսպիսի համառաւտահաւաք տաւնամակս գրեցաք, 'ի պայծառութիւն եկեղեցւոյ... զոր մի ոք աւելորդ վարկցի՝ զորոց զվարս քաղաքավարական պատմութեանց զոր ոչ գոյր առ մեզ հայ գրով՝ մեք աշխատութեամբ թարգմանեցաք 'ի յունականէն 'ի մերս գիր և բառ։ Վասն որոյ աղա-

Վարդան մեծն. «Այս սքանչելի հայրապետս՝ Թարգմանեաց բազում ճառս վկայից Աստուծոյ. և ճառս քերթողական 'ի յունաց և յասորւոց»: – Գրուածքիս մէջ (324) յիշեր ենք նաև այլոց պատմչաց վկայութիւնները:

Մեր ձեռքը գտնուած վկայաբանութեանց մէջ՝ մասնաւոր յիշատակարանաւ՝ Վկայասիրի կ'ընծայուին Սրբոյն Գէորգայ զօրավարին. «Իրագործեցաւ գործ սքանչելեացս 'ի ժամանակս Փոկասու Տիրանոսի կայսերն Յունաց. և Թարգմանեաց 'ի հոռոմոց 'ի հայս սուրբ քահանայապետն Հայոց մեծաց Գրիգորիոս վկայասէր»: — Վարք և քաղաքավարութիւն սրբոյ հօրն մերոյ Գրիգորի աստուածաբանի Ազիանզու եպիսկոպոսի, զոր գրեաց քահանայ Գրիգոր Կեսարու կապադովկացւոց եկեղեցւոյն, զոր Թարգմանեաց սուրբ գիտապետն Հայոց Գրիգոր վկայասէր 'ի մերս. և սկզբնաւորութիւնն է. «Այսօր հրաւիրեաց զմեզ, ով եղբարք, մեծն Գրիգորիոս, աստուածաբանութեամբ ճոխացեալն»: Ուրիշ ձեռագրի մը խորագրին մէջ կը նշանակուի թէ 'ի յունականէ եղած է թարգմանութիւնն, և սկիզբն է. «Արդ պատմեցից զգօրութիւն և զսքանչելիս»: — Վկայաբանութիւն սրբոյն Ստեփաննոսի Հռովմայ հայրապետի և որոց ընդ նմա, և 'ի վերջին յիշատակարան. «Յամին հինգհարիւրերրորդի քառասներրորդի իններորդի Թուականութեանս Հայոց, Թարգմանեցաւ պատմութիւնս հանդերձ այլ բազում ներբողական և վկայական ճառիւք 'ի յունականէն 'ի մերս՝ 'ի ձեռն սուրբ քահանայապետին Աստուծոյ տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի»: – Վկայաբանութիւն սրբոցն Ղամպէոսի և Ղամպէոսեանց ձգնազգեաց վկայիցն Քրիստոսի. «Յամին հինգհարիւրերրորդի յիսներորդի երկրորդի 'ի Թուականիս Հայոց՝ Թարգմանեցաւ վկայութիւն սրբոցս այսոցիկ 'ի յունականէն 'ի մերս՝ 'ի ձեռն Գրիգորիսի վկայասիրի

*ումամբք ճարտարօք, և աւանդէր եկեղեցւոյ սրբոյ, կարգէր տօնս վկայից և արանց սրբոց և պատուէր զնոսա պայծառագոյն տօնախմբութեամբ, և նորագոյն թարգմանեալ ճառիւք: Եւ ինքն վառեալ 'ի հուր սիրոյ նոցին՝ խառնէր զիւրն մշտաթոր արտասուս ընդ սուրբ և պատուական արիւնս նոցա. որ և ըստ ջերմեռանդն սիրոյն, զոր ունէր առ սուրբ վկայսն՝ զվկայասէր անունն ընկալաւ. զոր մինչ վերագոչէ եկեղեցի յամենեցուն լսելիս զպարծանաց յորջորջումն»:*

*Ուրիշ տեղ մ'ալ. «(Գրիգորիս) գագարեալ անդ ('ի Կոստանդնուպոլիս) բազում ժամանակս՝ և առեալ թարգմանէր զվարս սրբոց հարց և զպատմութիւնս վկայից, և զմատեանս ուղղափառ վարդապետաց, և զճառս ներբողենից որ 'ի տօնս տէրունիս և յիշատակս սրբոց. և տայր ցայնոսիկ որ ընդ նմայն էին՝ արք ճարտարք և իմաստունք, յարագագիր գրչութիւն և 'ի գիտութիւն բանի. զոր առեալ վաղվաղակի փոխարկէին, սրբաբանեալ ըստ մերում բանի, աղորկս ամենեւին և քերեալս ըստ քերթողացն արհեստի»:*

*«Գրիգորիս՝ որդի Գրիգորի Մագիստրոսի պահլաւունի ազգաւ, որ թողեալ զհայրենի պատիւն՝ կրօնաւորութեան հետեւեցաւ.... բազում ճառս սրբոց վկայից 'ի յունականէն թարգմանեաց 'ի մերս»:*

*Ուրիշ մ'ալ. «Սա էր տիեզերական վարդապետ (Գրիգորիս). և բազում պատմութիւն վկայից 'ի հռոմայեցւոց և 'ի յունաց և յասորոց թարգմանեաց 'ի մերս»:*

*Շնորհալի 'ի վիպասանականին.*

*«Երկրորդ Մեսրովպ մեզ երեւեալ,*
*Զգիրս բազումս թարգմանեալ*
*Առ 'ի յունաց և յասորոց*
*Ճառս սրբոց վերաբերեալ»:*

թեանց, վկայաբանութեանցս մէջ ալ յաճախ թարգմանչին անունը անծանօթ կը մնայ մեզ։ Բայց 'ի մետասաներորդ դարու մեր դպրութեան կը փայլի Գըրիգոր վկայասէր Հայրապետ, որուն վերագիր անունըն իսկ կը յայտնէ թէ սրբագիր այս մատենագրութեան մէջ որչափ ջանք և արդիւնք ունեցած է 'ի լըրացուցանել ինչ որ պակաս մնացած էր 'ի նախնեաց. ժամանակին պատմիչք ալ զայն կը հաւաստարմացընեն, ինչպէս քիչ ետքը պիտի լսենք բուն իրենց խօսքերովը։ Սակայն իրմէ յառաջ ալ յանուանէ յիշատակուած կը գտնենք զԳրիգոր ոմն կրօնաւոր՝ որ զվարս Ստեփաննոսի ուլնեցւոյ թարգմաներ է 'ի յունականէ 'ի հայ 'ի Կոստանդնուպոլիս՝ օգնութեամբ Կալոժենայ երիցու. — զհայր Գագիկ և Գրիգոր սարկաւագ՝ որ յասորւոյն թարգմանեցին 'ի մեր զվարս սըրբոյն Մարութայի, ինչպէս կ'ակնարկեն 'ի յիշատակարանին թէ «Թարգմանեցաք յասորւոյն 'ի հայ զվկայութիւն (Մարութայի) ես Գագիկ և Գրիգոր սարկաւագ իմ ընդ իս»։ — Ի վերջկոյս վկայական նահատակութեան Արգլմսեհի՝ հետագայ յիշատակարանին կը հանդիպինք. «Թարգմանեալ է յասորի գրոց 'ի հայ՝ հրամանաւ տեառն Գուրգենայ արծրունւոյ 'ի թուականութեանս Հայոց ՅԻԲ (-873) 'ի բարեխօսութիւն անձին իւրոյ, Ատոմայ որդւոյ իւրոյ։ Եւ աւանդեաց նոյն ինքն Գուրգէն տօնախմբել զօր յիշատակի նորա 'ի մեհեկի ամսոյ երկու»։

***

Վկայասիրին համար կը վկայէ հին գրիչ վարուց Շնորհալւոյն Ներսիսի. «Ունէր (Գրիգորիս) շնորհ թարգմանութեան և միշտ քննէր զգիրս ամենայն ազգաց, և զպիտանիսն՝ զոր ըստ մերս թերի գտանէր, թարգմանէր աշխատասիրաբար ինքեամբ և այլովք

րեթէ անգատին 'ի ժամանակակցացն. երբ Սանատրը-
կոյ սուրն և ատելութիւն կը հալածէր զնորածին
քրիստոնէութիւն, անոր աստուածահրաշ խանձա-
րուրքը արեան լճերու և մահուան սառուերաց մէջ ու-
զելով թաղել։ Թէ այդ բարի սովորութիւն՝ ընթեռ-
նըլոյ 'ի լոյս և 'ի քաջալերս հաւատացելոց զվարս սըր-
բոց, կը շարունակէր ուր որ սրբութեան կրօնք կըր-
ցեր էին ապաւինի տեղ մը գտնել, մինչև 'ի ժամանակս
Լուսաւորչին և իրմէ ետքը. կը հաւատարմացընեն
մեր պատմագիրք։ Թարգմանչաց արդիւնաւոր վաս-
տակն եղաւ այլ և այլ փոխադրութեամբք յօտարաց
ալ աւելի ընդարձակութիւն տալ այդ գովելի սովո-
րութեան. բայց ինչպէս իրենց ուրիշ երկասիրու-
թիւնք՝ ասոնք ալ մասամբ եւեթ կրցան մեր ձեռքն
հասնիլ, և ոչ միշտ ազատ յօտար ձեռնձգութեանց։

*
* *

Հոգեսէր ընթերցողը անոնցմէ ամենէն աւելի հը-
նագունից մէջ՝ նորահրաշ քաղցրութեան վայելք մը,
սրտի սփոփանք և սնունդ մը կը գտնէ. առերևոյթ
պարզութեան մէջ՝ ոճոյ այնպիսի վայելչութիւն մը
որ կը յափշտակէ և կը զմայլեցընէ, և յորում կար-
ծես թէ հեղինակին գրիչը ոչ այնչափ մելանաւ, այլ
նոյն իսկ սրբոց՝ որոց վարքն ու նահատակութիւնը կը
պատմէ, անմահաբար արեամբ խառնուած է, արքա-
յութեան բուրմամբ։ Աւելի նորագունից մէջ՝ այս
յատկութիւնք կընուազին, կամ նոյն առատութեամբ
չեն երևար, և զարմանալին՝ երբեմն իր օրինաւոր
սահմանէն անդին կ'անցնի։ Գաղափարողաց ալ կըր-
նանք ընծայել զայս, որ բազմաթիւք էին, և ոչ միշտ
հաւասարք 'ի գիտութեան և յերկիւղած զգուշա-
ւորութեան։

Ինչպէս մեր նախնեաց բազմաթիւ երկասիրու-

տութիւնը. ժամանակի հեռաւորութիւնն՝ հարկ էր որ անոնց մէջ ալ երևցընէր իր ազդեցութիւնը։

Բարեբաղդաբար մեր ազգին մատենագրութեան համար՝ այն իրեք դարուց միջոցին որ ընդ երրորդն և ընդ վեցերորդ, կը փայլէր պայծառութեամբ հինգերորդն՝ ոսկեդէն դար մեր լեզուին։ Թարգմանիչք՝ յերկար յուսմնական գեգերանսն՝ մտադիւր փութով եռանդ եղեր էին 'ի հետազօտութիւն և 'ի քըննութիւն դիւանաց և մատենադարանաց. հմուտք և տեղեակք յոյն և ասորի լեզուաց՝ ամէն տեղ մեծարուած էին և սիրելիք. Եդեսիա, Աղեքսանդրիա, Բիւզանդիոն և ուրիշ գլխաւոր քաղաքք արևելից՝ դիւրացուցեր էին անոնց ամէն միջոց, կարծես թէ գուշակելով թէ Հայաստան մեծապէս երախտապարտ պիտի ըլլար իրենց՝ պահելով այնչափ և այնպիսի մատենագրական ճոխութիւնք՝ որ անգիւտ կորստեան պիտի դատապարտուէին իրենց բուն հայրենեաց մէջ։

Այսպիսի գրուածոց կարգէն են և վկայաբանութիւնք, յորոց բազմագոյնք 'ի յունէ փոխագրուած են 'ի հայ, և ոմանք նաև յասորականէ։ Արդէն քրիստոնէութեան կրօնից 'ի Հայաստան սկզբնաւորելէն՝ աստուածաշունչ գրոց ընթերցման հաւասար՝ սիրելի եղած էին, և ինչուան յեկեղեցիս մուտ ունեցած սրբոց վարուց կարդացմունք. առաջնոյն խօսքերով և վարդապետութեամբ՝ իրենց հաւատքը և անոր վրանին գրած պարտքերը կը սորվէին, երկրորդին մէջ ալ՝ հրաշալի ու քաջալերիչ օրինակներ կը տեսնէին, որ կերպով մը կը մոռցընէր իրենց զերկիր, կը խեղդէր սրտերնուն մէջ՝ անոր հաճոյից ու հրապուրանաց պատրանքը, ու կը խրախուսէր զաչս հոգւոյն դարձընել յերկինս՝ 'ի բուն և 'ի ճշմարիտ հայրենիս։ Տեսանք թէ որպիսի՝ սրտով ու գրչով արձանագրուած են Հայաստանի առաքելոյն ու անոր վկայակցին՝ սըրբուհւոյն Սանդխտոյ մահ և նահատակութիւն՝ գը-

նող սրբոց և վկայից, իսկ միւսն մասնական: Առաջինն էր վկայաբանութիւն այն ամենայն մարտիրոսաց՝ որ պսակեցան 'ի ժամանակս այլ և այլ կայսերաց և իշխանաց և 'ի զանազան տեղիս և 'ի գաւառս՝ մանաւանդ 'ի սահմանս հռովմէական ընդարձակածաւալ կայսերութեան, և զոր կոչեց Հաւաքումն պատմութեան մարտիրոսաց հնոց: Այսպիսի աշխատասիրութիւն մը դժուարին չէր Եւսեբեայ համար, որուն բացուած էին զանազան քաղաքաց մէջ գտնուած մատենադարանք. և որ կրցեր էր ուսումնասիրաբար հետազօտել գրեթէ ամենայն գլխաւոր եկեղեցեաց դիւանները, և յորս սովորաբար խնամով կը պահպանուէին սրբոց վարք և վկայաբանութիւնք: Եւսեբեայ երկրորդ աշխատասիրութիւնն էր Հատընտիր մը վարուց սրբոց որ վկայեցին 'ի պաղեստինացւոց աշխարհին:

Առաջինն արդէն կորսուած էր 'ի վեցերորդ դարու. վասն զի յայնմ ժամանակի կը գրէր պատրիարքն Կոստանդնուպոլսի Եւլոգիոս առ մեծն Գրիգոր քահանայապետ եկեղեցւոյն Հռովմայ թէ այդ գրուածքին օրինակը ինչպէս ոչ 'ի Հռովմ՝ ասանկ ալ չէր գըտնուէր 'ի մատենադարանս Կոստանդնուպոլսի: Վրայ հասան բարբարոսաց արշաւանք, որ ողողեցին՝ տակնուվրայ ըրին զսահմանս կայսերութեան, ու քանդելով տապալելով հրոյ ճարակ տուին զմատենադարանս Հռովմայ և զամենայն արևելից. որով անհետացան բարձան ամենայն հաւաքմունք վկայաբանութեանց սրբոց: Այս մեծ կորուստը դարմանելու համար՝ հարկ եղաւ որ միջին դարուց մէջ իմաստունք և սրբասէրք ետևէ ըլլան նոր ջանքով և հետազօտութեամբք՝ անկորուստ մնացածներն հաւաքել, և պակասը 'ի նորոյ լեցընել: Այսպիսի երկրորդ աշխատասիրութիւն մը՝ 'ի հարկէ չէր կրնար ունենալ առաջնոյն ամբողջութիւնն և վաւերական հարազա-

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆՔ

## ( MARTYROLOGES )

---

*Մեր երանաշնորհ նախնեաց նուիրական ձեռաց մեծագին ընծայք պէտք է համարուին բազմաթիւ վարք և վկայաբանութիւնք. որոց՝ հին դարուց երկիւղած աւանդութեամբ հասած առ մեզ։*

*Ասոնցէ բազմագոյնք՝ արևելեան և արևմտեան սրբագիր պատմութեանց կարևոր մէկ պակաս մը լեցընելով իրաւամբք նախանձելի և հետաքննական են՝ թէ՝ ամբողջութեամբ և թէ մանաւանդ փափաքելի հաւատարմութեամբ։ Վասն զի այս նիւթով զբաղող նոյն իսկ արևմտեան բանասիրաց վկայութեամբ՝ յոյն և լատին եկեղեցեաց մէջ գտնուածներն՝ գրեթէ պատառիկք են հին քրիստոնէութեան մէջ ամբարուած ճոխ գանձարանին. հազիւ անաղարտ հասած ըլլալով մինչև առ մեզ՝ սակաւաթիւ յիշատակք որ յաջողեր են խալըսիլ յաւերածոց ժամանակաց. 'ի մոլեգնակրօն սաստկութենէ հալածանաց. ու երբեմն նաև յանհոգութենէ և կամ 'ի դիւրահաւանութենէ քրիստոնէից։*

*Եւսեբեայ կեսարացւոյ համար կ'աւանդեն թէ առաջին եղած ըլլայ 'ի հաւաքել զվկայաբանութիւնս մարտիրոսաց. իրմէ առաջ ալ Դիոնեսիոս եպիսկոպոս Աղեքսանդրիոյ յերրորդ դարու, որ գրի վրայ առնելով՝ աւանդեց 'ի դիւանս իր եկեղեցւոյն՝ Դեկոսի հալածանաց ժամանակ յԵգիպտոս վկայողաց պատմութիւնը. բայց ասիկայ պարզապէս տեղական ու մասնաւոր հաւաքմունք մ'էր. ուր Եւսեբիոսի երկասիրածը կրկին էր. մին՝ ընդհանուր եկեղեցւոյ պատկա-*

նենք առ Խորենացւոյն (Բ. կգ)։ Ց'էջ 41. «Քանզի զքաղաքն դեռ եւս անդր լինելով Աղեքսանդրու շինէր 'ի տուրք քան և հինգէն. և զնոյն ինքն զմեհեան օձին՝ ուստի զօձս զայսոսիկ պաշտեն բարապանք»։ (Տես Խորենացի, Գ. կԲ)։ Դարձեալ 'ի նոյն էջ 41, և 'ի նոյն գլուխ պատմութեան Խորենացւոյ. «Եւ գըտեալ 'ի վեր հինգ բարձրագունից բարձրաւանդակաց զերկիրն, որ է արեգականն և Եթիովպիայ սիւնք, և զդիւցազինն տաճար, խնդրէր և զսերապեան տաճարին յետ հրամանի պատասխանւոյն որ տուաւ նմա յԱմոնայ, և զայն որ քան զամենայն հզօրագոյն աստուածն է։ Քանզի ասաց այսպէս հրաման պատասխանւոյն աստուածոց. եթէ ով թագաւոր, քեզ Փիւգոս (յոյնն Փեբոս) խոյեղջիւր (յոյնն μιλοχέρος) ասեմ. զի թէ կամիս յաւիտեան անծերանալի կալ մնալ, շինեա քաղաք նշանաւոր Պրոգիագայ կղզւոյ, որոյ առաջոյ անցեալ Նասի Պղուտոնիոս հինգակատար գագաթամբք զանսպառ աշխարհ»։ Աւելորդ կը սեպենք նոյն Խորենացւոյ ընծայուած Պիտոյից գրոց մէջ գտնուած նմանութիւններն յառաջ բերել։

Ի մեր մատենադարանի պահուած գրչագրաց նկարագիրը տրուած է արդէն յընդարձակ և 'ի համառ յառաջաբանի տպագրին։ Ուրիշ մատենադարանաց ցուցակներու մէջ՝ անոնցմէ աւելի հնագոյն օրինակաց յիշատակութեան չենք հանդիպած։

οὐδέν. Λέγουσι γάρ ὅτι ὁ Νεκτεναβὼ τῆς βασιλικης τιμῆς ἐξέπεσε, καὶ μχγικὴ δυνάμει χρώμενος καὶ αστρονομιας ἀκριβῶς ὢν πεπαιδευμένος . . . Ասանկ՝ գրեթէ բովան-դակ գրուածին հետ համեմատ կ'ընթանայ, որուն քննութիւնն կը թողունք աւելի ձեռնհաս բանասի-րաց: Հարկ է միայն յիշեցընել՝ որ ինչպէս սկզբնա-գրին, ասանկ ալ և աւելի՝ անոր վրայէն եղած հին թարգմանութեանց մէջ յաճախ կը գտնուին գրչաց քմահաճ փոփոխութիւնք և յաւելուածք: Մեր օրի-նակաց մէջ ալ քիչ չեն այսպիսիք, չպահելով միշտ թարգմանչին սկզբնական հարազատութիւնը:

***

Ո՞րուն արդեօք կրնանք պատշաճեցընել մեր հայ-կական թարգմանութիւնը:

Հինգերորդ դարու, կրտսերագոյն դասու թարգ-մանչաց աշխատասիրութիւնն ըլլալը տարակոյս չի վեր-ցըներ: Բայց անոնցմէ որո՞ւն ըլլալուն՝ ստուգութեամբ բան մը չենք կարող ըսել: Ոմանք ենթադրեցին թէ Խորենացւոյն երկասիրածն ըլլայ, մինչ այլք չեն հա-մարիր զայն հաւանական: Այս միայն քաջայայտ է որ Խորենացւոյ ծանօթ էր, և կը հաւատարմացընեն այլևայլ հատուածք որ 'ի նոյն գրոց առնուած և զօ-գուած են 'ի պատմութեան նորա: Այսպէս յ'էջ 28 մեր տպագրին Աղէքսանդրի պատմութեան. «Եւ էր գէմ յանդիման տեսանել զԼապիթեայցն և զԿուշկա-պարկացն կռիւս, և 'ի վերայ Պերիթեայ հարսա-նեաց եղեալսն. քանզի ոմանք 'ի նոցանէ ընդ գահո-յանովն մտանէին, և ոմանք սեղանօքն իբրու զինուք պարէին, և այլք 'ի խաւարին տեղիս դիմեալ անկա-նէին: Եւ անդ էր տեսանել նոր ոմն Ոդիսեւս և ըզ-Պենելովպայ սեղեխսն զի սատակելով ելանէր»: Այս հատուածը գրեթէ բառական ճշդութեամբ կը գտ-

թիւնն է՝ զոր վերը յիշուած ուրիշ հեղինակաց գը-րուածոց հետ՝ գրչագրաց բաղդատութեամբ հրատա-րակեց Կ. Միւլլեր: Pseudo-Callisthenes primum edidit Carolus Muller, 'ի ստորեւ իջից յոյն բնա-գրին աւելցընելով նաեւ զլատին թարգմանութիւն: Հմուտ և ընդարձակ ներածութեամբ կը ջանայ հա-ւաստարիմ առնել թէ աղեքսանդրեան ամէն առա-պելախառն պատմութեանց գլխաւոր աղբիւր՝ Կալ-լիսթենեայ ընծայուած այս երկասիրութիւնն է: Ե-զովպոսի կարծուելուն պատճառ զայն կը բերէ, նաեւ ուրիշ հմտից խօսքովը, որ ընդհանրապէս համա-նուն առակախօսին գրուածոց հետ միայար կը գա-ղափարուէր 'ի գրչագրաց այս առասպելախառն պատ-մութիւն. և որպիսի օրինակք դեռ եւս պահուած են՝ կ'ըսէ. յազգային մատենադարանին Փարիզու, 'ի գը-րատան համալսարանին որ 'ի Լէյտա և այլուր: Իսկ զՅուլիոս Վալերիոս՝ կեղծ անուն մը կը սեպէ:

Տասուերեք յունական իրարմէ նուազ կամ առա-ւելագոյն հնութիւն ունեցող գրչագրաց բաղդատու-թեամբ ըրած է Միւլլեր իր տպագրութիւնը: Ասոնց մէջ օրինակ մը կայ որ միւսներէն աւելի նմանութիւն ունի հայկական թարգմանութեան հետ. և որուն ընթերցուածները զետեղեր է 'ի ստորեւ իջից 'ի ծա-նօթութեանն, բնագրին մէջ փարուելով աւելի հնա-գոյն կամ վաւերական սեպուած օրինակաց հետեւո-ղութեամբ: Իրեն ընդունելի յունական գրչագրաց սկզբնաւորութիւնը՝ մինչեւ չկէս առաջնոյ գլխոյն կը տարբերի 'ի մերոյն. մինչ Փարիզու ազգային մատե-նադարանին չորրորդ (E.) գրչագիրն, — և է այն՝ որ ինչպէս ըսինք, աւելի համեմատ է մերոյն, գրեթէ ճիշդ հայկական թարգմանութեանս սկզբնաւորու-թեամբ է: Οἱ γὰ σοφώτατοι τῶν Αἰγυπτίων, θεῶν ὄντες ἀπόγονοι, οὐρανίους ἀστέρας ἀριθμήσαντες, γῆς καὶ θα-λάσσης μέτρα καταλαβότες, ἔδοξε τούτοις μὴ λανθάνειν

***

Մեր հայկական տպագրէն քիչ ետքը՝ Կարոլոս Միւլլեր գերմանացի՝ հնութեան առ մեզ աւանդած մեծին Աղեքսանդրի վարուց և քաջութեանց պատմըչաց գիտնական հաւաքմունք մը հրատարակեց առ Տիտոյի ’ի Փարիզ (1846)։ Այս ճետաքննական և բազմահմուտ խմբագրութեան խորագիրն է. Reliqua Arriani, et Scriptorum de rebus Alexandri Magni fragmenta collegit, Pseudu — Callisthenis historiam fabulosam ex tribus codicibus nunc primum edidit . . . Carolus Muller. Երկրորդ մասին ալ՝ որ աւելի վերաբերութիւն ունի մեր նիւթին հետ. Scriptores rerum Alexandri Magni fragmenta collegit, disposuit, vertit, annonatione instruxit, de vitis scriptisque auctorum disseruit, indicem plenissimum adjecit Carolus Mullerus. Այս հատորին մէջ ամփոփուած կը գտնենք երեսունուիրեք յոյն հեղինակաց պատմութիւնք և հատուածք՝ Աղեքսանդրի մեծին վարուց վրայ. և որոց ’ի գլուխ դրուած է Կալլիսթենի անունը և երկասիրութիւն։

Կալլիսթենէս՝ Աղեքսանդրի և Արիստոտելեայ ժամանակակից իմաստասէր մ’էր յՈղիւնթոսէ, Դեմոսթենեայ՝ կամ ըստ այլոց՝ իրեն համանուն հօր որդի։ Ոմանք կ’աւանդեն թէ աշակերտակից և ուսմնակից ալ եղած ալ ըլլայ Աղեքսանդրի առ ստագիրացւոյն. և յետոյ աշխարհակալ Մակեդոնացւոյն մտերիմ բարեկամութեամբն ալ պատուեալ, անբաժան ’ի նմանէ նաև ’ի դաշտս և ’ի վտանգս մարտից և պատերազմաց։ Տեսող և վկայ իր մեծամեծ և քաջարի նահատակութեանց՝ անոնց պատմութիւնը հաւաքեր և գրի վրայ առեր է Կալլիսթենէս՝ ըստ ոմանց նոյն իսկ Աղեքսանդրի կամքովը և առաջարկութեամբ։ Այս պատմու-

ծութիւն փառացն՝ զթագ արքայութեան։ Երդնում քեզ, Դարեհ, 'ի վերնական նախախնամութիւնն և յաստուածսն ամենայն, զի ճշմարտութեամբ և ոչ կեղծեալ խաբէութեամբ ասեմ զայս քեզ. քանզի քեզ միայն ըղձիւք խնդրեմ զթագդ և զկայսերական գաւազանդ լինել՝ զոր ունէիր... Արդ արի՛ յոտն կաց և կալ զքո աշխարհ. կանգնեա զքեզ 'ի քաջալերութիւն յանձն առնլով, զի ոգւով ոչ է պարտ եւս թագաւորի թշուառացելոյ տրտմել»։

Իսկ Դարեհ մահուան ու պարտութեան տագնապէն առիւծաբար հեծեծագին մռընչելով, ինչուան այն վայրկենին թշնամի ձեռուըները կը կորկառէ առ Աղէքսանդր, «և պատառեալ զնովաւ ասաց. Աղէքսանդրէ, մի երբէք գուցէ բարձրասցիս հպարտութեամբ ընդվզեալ 'ի թագաւորական փառսդ. քանզի յորժամ զգործ հանդիպաստուած գործեսցես, և յերկինս ձեռօք թուեսցիս հասանել, ընդ միտ ած և գիտա զհանդերձեալսն. քանզի դիպուած բախտի ոչ գիտէ զթագաւոր և ոչ զիշխան... տես թէ որպիսի՛ ինչ էի աշխարհակալ, և այժմ զինչ եղէ թշուառականս. տեարս երկրի, որ և ոչ անձինս տէր եղեալ մեռանիմ»։ Եւ կը յաւելու պատմիչն. «Զայսքան ասացեալ Դարեհի բանս անդարձականս՝ եհան զոգին 'ի գիրկս աշխարհակալին Աղեքսանդրի։

Այս սրտաշարժ գրուագին վրայ յերկարեցինք կամաւ, գրքին ու անոր հայկական թարգմանութեանն գոյզն ճաշակ մը տալու դիտմամբ։ Աւելցընենք ըսել՝ թէ այսպիսի է բովանդակ երկասիրութեանս մատենագրական ոճոյն ընթացքը, յորում և իր արժանաւոր յարգը, և մեր հայկական մատենագրութեան մէջ գրաւած տեղը։

խրատ խնդրել անոնցմէ թէ ինչ պէտք է ընել. «Որպէս տեսանեմ, կ՚ըսէ, ըստ յառնելոյ պատերազմել յառաջ անցանէ Աղեքսանդրոս գալ ՚ի վերայ մեր. բայց ես զնմանէ աւազակաբար իբրս կարծէի ընդ միտ ածել. սա աւանիկ թագաւորական գործս առաջի արկեալ գործէ։ Եւ որքան մեզ մեծ գոլ թուիմք պարսիկքս, մեծ եւս Աղեքսանդրոս համարձակութիւն յանձն առեալ իրեւի... կատարելապէս խրատեալ. ՚ի վերայ իմ հասեալ վարդապետիս իւրոյ՝ գայ բոլորից յաղթել։ Բայց եկայք խորհեսցուք զօգուտն հասարակաց. երկուցեալ եմ մի գուցէ մեծն քան զնուազն նկուն գտցի ՚ի ժամանակի, և վերին նախախնամութիւնն զփոփոխումն թագիս նմա փոխանորդեալ առնէ»։ Արքայից արքային ահարեկ երկիւղն ու տագնապ՝ իրականութիւն մը պիտի ըլլար. կենացը հետ՝ իր փառաւոր թագն ալ պիտի տեսնէր խորտակուած փշրած՝ թշնամւոյն յաղթական զինուց առջև։ Կ՚իմանայ Աղեքսանդր թէ դաւաճանք և մատնիչք՝ ՚ի նախարարաց Դարեհի, ՚ի մահ վիրաւորեր են իրենց տէրն ու թագաւորը, և անտեղեակք իր սրտին և հոգւոյն մեծութեան՝ վատութեամբ կարծեր են Աղեքսանդրի հաճոյական ու վարձուց և պարգևաց արժանի գործ մը ըրած, կը վազէ. կը փութայ յապարանս արքունի. կը գտնէ զնա կիսամահ, ու այն աղէտալի տեսարանէն գրգռուած, կը մոռնայ զատելութիւն. «արտասուօք յակնաղբերէն գետաբար հոսելով, — կ՚ըսէ պատմիչն — տխրեալ ծմրէր. և քղամիդաւն ծածկեալ զմարմինն Դարեհի, իբրու զի թագաւոր էր, ՚ի վերայ թագաւորի թշուառութեանցն տխատէր տրտմեալ. զձեռն եդեալ ՚ի վերայ Դարեհի լանջացն ողորմութեամբ լի, այսպիսի բանս առ նա խօսեցաւ. Արի կաց ՚ի քումմէ երկրէդ ով արքայ Պարսից մեծդ Դարեհ. և քոյոյդ տէր լեր դարձեալ. կալ զքո թագաւորաստան բազմութիւնսդ. առ ՚ի քեզ զքոյ մե-

Թէպէտ այլեւայլ տեղ զառասպելս խառնուած կը գտնենք ընդ ստուգութեան, բայց յաճախագոյն եւս՝ Արիստոտելի տրուած սոյն առաջին մասին մէջ. և չենք կարծեր որ մեծանուն իմաստասէրը այդպիսի անարժան միջոցի մը դիմած ըլլայ՝ իր նախկին աշակերտին փառքը և մեծութիւնը յաճախելու, որուն կարօտ ալ չէր Աղեքսանդր. և որ ինչպէս կ'աւանդուի առ հինսն, աւելի կը փափաքէր Հոմերեան քերթուածոյն մէջ Թերսիդէս մը ըլլալ, քան հետեւակ և շողոքորթ մատենագրաց քով՝ որպէս կ'առաջարկէին իրեն, Աքիլլեւս: Այս զգօնական միտք և խորհուրդը՝ իր սրտին մէջ նախկին ազդողն եղած է անշուշտ ինքն Արիստոտէլ. և յորմէ ինքն չէր կրնար պակսիլ: Իր անըստգիւտ վարքն և թողած երկասիրութիւնք ալ՝ երաշխաւորութիւն են մեր այս կարծեաց:

Սակայն այսպիսի անպատեհութեամբն ալ՝ գըրուածքիս առաջին մասը՝ բովանդակ երկասիրութեան ամբողջութեան ազնուագոյններէն մէկն է՝ նաև իբր մատենագրութիւն, զոր մտադիր ընթերցողը յայտնապէս կը տեսնէ, և որուն պսակ կրնայ սեպուիլ՝ Իսմենէս քերթողին յօրինած և 'ի լուր յաղթող աշխարհակալին կարդացած «գորովալի տաղը և աղէտակոծ երգը»:

Պատմութեանս երկրորդ մասը կը պարունակէ Աղեքսանդրի մուտքն 'ի Պղատէա և յԱթէնս. ամէն տեղ իր համբաւոյն և քաջագործութեանց արժանաւոր մեծարանօք, ուր և պատգամք աստուածոց 'ի տաճարս և 'ի մեհեանս՝ կը գրուատեն և անոր պահուած մեծագոյն ապագայն կը գուշակեն: Կը պատրաստուի ապա արշաւել 'ի վերայ Դարեհի, խորտակել վանել պարսկական աննկուն կարծուած բանակներն և զօրքը. և այնպէս ընդարձակել իր թագաւորութեան սահմաններն: Կ'ահաբեկի Դարեհ, կը գումարէ կը ժողովէ իր զօրագլուխներն. խորհուրդ՝

տենադարանին մէջ. որ գրեթէ բոլորովին համաձայն կ'երթայ մեր թարգմանութեան և վաւերեան երկասիրութեան հետ, թէպէտ այս վերջինս միշտ նախընտիր մնալով իր առաւելագոյն ճշգրտութեամբը։ Ասով գրեթէ անտարակուսելի կրնար սեպուիլ որ մեր հայկական թարգմանութեան սկզբնագիրն ըլլայ Եսովպոսի աշխատասիրութիւնն. և այս կարծիքն ընդունուած է նաև 'ի հրատարակողաց մեր տպագրին (1842)։

***

Քիչ առաջ յիշեցուցինք թէ ի՛նչպէս ենթադրութիւն մ'ալ եղած է առ նախնիս թէ Աղեքսանդրի վարուց և պատմութեան առաջին գրիչն եղած ըլլայ ստագիրացի իմաստասէրն։ Մեր թարգմանութեան մէջ՝ զառաջին մասն եւեթ երկասիրութեանն՝ իրեն ընծայուած կը գտնենք, 'ի վերջ հարիւրերորդ երեսներորդ չորրորդ գլխոյն կարգալով հետևեալ տողերը. «Կատարեցան ծնունդք և գործք Աղեքսանդրի մակեդոնացւոյ, գրեալ յիմաստնոյն յԱրիստոտելէ։ Արդ սկսանիմք և զգալն 'ի Պղատեայ քաղաք Աթենացւոց»։ Տարակոյս չիկայ որ այս տեղեկութիւնը թէպէտև միայն մեր թարգմանութեան մէջ կը գտնուի, պակասելով թէ՛ 'ի յոյն և թէ 'ի լատին օրինակս, բայց թարգմանչին կողմանէ եղած յաւելուած մը չէ, և չիկրնար ըլլալ. հարկ էր որ դիմացը գտնուած սկզբնագրին մէջ գտնուէր, և յորմէ առեր է հայ թարգմանիչը։

Բայց արդեօք ստուգապէս Արիստոտելի՞ է պատմութեանս այն մասը՝ որ իրեն կ'ընծայուի։ Ողջամիտ բանասիրութիւն դիւրաւ և վստահութեամբ չկրնար ընդունիլ զայդ թուիս, գէթ իրեն ամբողջութեամբը։ Վասն զի աղեքսանդրեան այս կենսագրութեան մէջ

խոյզ՝ Աղեքսանդրի Մեծին վարուց պատմըչաց թուարկութիւնն ըրած ատեն, որ սիրեցին առասպելեօք պաճուճել զկենսագրութիւն քաջին աշխարհակալին. կը յիշէ զԵսովպոս ամն յոյն, և յետ նորա զԿալլիսթենէս՝ 'ի նոյն ազգէ: Անոնց հետևող կը համարի և 'ի լատինաց զՎալերիոս, որ նոյնպիսի ոճով և հանգամանօք շարագրած է մակեդոնացի աշխարհակալին վարքը լատին լեզուով:

Ենթադրեցին հետագայ դարուց բանասէրք թէ Վալերեայ այս երկասիրութիւնը թարգմանաբար հետևողութիւն կամ նմանութիւն մը ըլլայ մեր հիմայ յիշած երկու յոյն մատենագրաց. այս զանազանութեամբ միայն որ ոմանք Եսովպոսի թարգմանիչ կարծեցին զնա, իսկ այլք Կալլիսթենեայ: Առաջիններուն կարծիքը աւելի հաւանական կ'երևնար: Մեր դարուն հռչականուն ծիրանաւորն Մայ՝ որուն ջանից և բազմահմուտ հետազօտութեանց այնչափ պարտական է ուսումնական բանասիրութիւն, այս կարծեաց հետևող եղած է. մանաւանդ զի Միլանոյ ամբրոսեան կոչուած մատենադարանին մէջ՝ իններորդ դարու գրչագիր մը յաջողեցաւ գտնել, որ 'ի գլուխ մատենին յայտնի և որոշ կերպով կը կրէր Վալերիոսի անունը:

Բաղդատելով զմեր թարգմանութիւն Վալերիոսի անունը կրող այս երկասիրութեան հետ, որուն սկզբնաւորութիւնը կը պակսի առ հնութեան գըրչագրին, իրարու մեծ նմանութիւն կը գտնենք, բաց 'ի քանի մի տարբերութեանց, և պատմական դիպաց դասակարգութեանց փոփոխութիւններէ: Մայ՝ անանուն հեղինակ մ'ալ յաջողած էր գտնել՝ որ կը լրացընէր վալերեան գրչագրին թերութիւններն և պակասը, որուն իտալական թարգմանութիւնն և հին տպագրութիւն մ'ալ 'ի Վենետիկ (1477) գըտնուեցաւ նոյն քաղաքին մարկոսեան կոչուած մա-

զբաղումն 'ի հին մատենագրաց՝ 'ի յունաց և 'ի հռոմայեցւոց, ոչ լոկ զարմացող՝ այլ և գրիչ ունեցած է իր բազմարկածեան կենաց և քաջայաղթ արութեանցը: Աւանդութիւն մը կ'ուզէ հաւատարմացընել թէ առաջին շարագրիչ իր վարուց եղած ըլլայ նոյն ինքն Արիստոտելէս՝ մանկութեանը խնամատուն և իմաստասէր դաստիարակը:

Չենք կրնար զրուցել թէ որչափ է այս կարծեաց և աւանդութեան ստուգութիւնը: Միայն նոյն իսկ բանիբուն և ուղղախոհ անձանց վկայութեամբ, թէ առ հինսն և թէ մանաւանդ առ նոր քննագատս, սահպուած ենք խոստովանիլ թէ իր անուանը և գործոց հռչակը օրինաւոր սահմանի մէջ չմնալով, շողոքորթք ոմանք ժամանակակիցք՝ և դիւրահաւան հետագայք, առասպելական կերպարանք մը տուած են իր վարուց պատմութեան, անդստին իր ծննդեանը պարագաներուն և ընդհանրապէս ամեն գործոց մէջ ուզելով աստուածոց նաև նիւթական գործակցութիւն և միջամտութիւն երևցընել: Հնութեան մեզի աւանդած այսպիսի երկասիրութիւնք՝ հաւատարիմ հաւաստիք են այս կարծեաց, որ ինչպէս ըսինք՝ ընդհանրապէս շատ բանասիրաց հաւանութեան և կարծեաց դրոշմը կը կրէ:

Այսպիսի ոճով գրուած աղեքսանդրեան պատմութիւն մը կը գտնուի նաև 'ի մեր հայկական մատենագրութեան, հին և ընտիր թարգմանութեամբ 'ի հելլեն սկզբնագրէ:

Որո՞ւն արդեօք կը վերաբերի այս հեղինակութիւն, կամ ո՞վ է անոր հայ թարգմանիչը:

Մթին և անորոշ է հայկական բանասիրութեան այս կարևոր խնդրոյն նկատմամբ ունեցած տեղեկութիւնը, որով հարցասիրաց և քննադատից տալու լոյսը և պատասխանը:

Փրէյնսհէյմիոս, հելլենագէտն և բազմահմուտ հնա-

նականս կարգել անուանս՝ եթէ 'ի յունէ անտի թարգմանէր. իսկ եթէ յիշէ ուրեք այսպէս կամ այնպէս կոչիլ յունարէն՝ անդ արտաքսացի թարգմանին է բանն զոր կրկնէ հայն: Ոչ է մեզ ծանօթ փափագելին այն արտաքսացի թարգմանութիւն, յորմէ մարթ էր անկասկած ստուգել զամենայն բառս հայկականս. այլ զի գիտեմք զառաջին եռանդն ուսմանց և մակացութեանց նուազել յարտաքսացիս յաւուրս Կոստանդնի, 'ի դէպ թուի յառաջ քան զնորա ժամանակս (քան զկէս Ժ դարու) համարել զնոցայն թարգմանութիւն. որում երաշխաւոր համարիմ և զասորի հին թարգմանութիւն գրոցս, որոյ գտաւ օրինակ գրեալ յ'Թ դարու. և այս եւս յաւելու փաստս զբնագիր գրոցս յառաջեցուցանել քան զայժմու յոյն բնագիրն, և հաստատել հարազատագոյն գործ Անատոլեայ: Ի թարգմանել հայոյն առընթերակայ թուի և արտաքսացի լեզուագէտ, կամ երկոցուն միաբան թարգմանեալ...

«Առաւել եւս ըղձալի է մեզ գիտել զստոյգ տեղի և ժամանակ և զանձն հայերէն թարգմանչին, զոր զըլանան մեզ երեքին եւս օրինակք գործոյս՝ որք 'ի ձեռին մերում նորագիրք և անյիշատակք: Համարիմք յաւուրս տիրապետութեան Ռուբինեանց երկասիրեալ, և 'ի Կիլիկիա... Իսկ ժամանակ թարգմանութեան կարծեմ զԺԴ դար՝ վաղագոյն քան թէ անագան »...

## ՎԱՐՔ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ

### (ԿԱԼԼԻՍԹԵՆԷՍ · PSEUDO-CALLISTHÈNE)

---

Ալեքսանդր Մեծն Մակեդոնացի, անուանի իր քաջագործութեամբք և աշխարհահռչակ համբաւով,

կարգաւ մի ըստ միոջէ զվաստակոց երկրի և զմշակելեացն այգեաց և տնկոց, և զանասնոց. իսկ մերս՝ թէպէտև գրեաթէ զնոյն ունի, բայց ոչ է տրոհեալ 'ի գիրս. որով մարթ էր որոշակի ընտրել և նիւթոց ճառելեացն. այլ 'ի գլուխս աւելի քան զ'300, կամ 'ի դրուագս՝ որպէս գրեալ էր յընտրելագոյն օրինակին՝ որում հետևեցաք։ Պակասեն 'ի մերումս երկուց վերջին գրոց բնագրին խրատք, որ զերեոց և զձկանց և զեռնոց, որպէս և զհաւուց՝ որ 'ի ԺԴ գիրս բնագրին, այլ և զծաղկանց և զպարտիզի ծառոց՝ որ 'ի ԺԱ գիրս, զորոց ըղձալի էր մեզ ունել թարգմանութիւն. ոչ այնքան վասն բանիցն ճառելեաց, որքան վասն բառից և լեզուին։ Զանց արարեալ է մերս և ըզգրեաթէ զողջոյն Ա գրովք, որ զօգոց ճառէ և զօգերևութից, և զլուսաւորաց և զյեղանակաց տարւոյ, որք արդարև չեն այնքան կարևորք և ոչ ամենայն կլիմայից պատշաճք. և զայս յայտ առնէ մերս 'ի ըսկըզբան բանիցն. «Աստանօր այժմ համարեցաք զառաջակայիցն զերկարաբանութեանց զանց առնել»... Այլ և 'ի բանս և 'ի խրատս գլխոյն՝ գտուն ուրեք համակարգ և բառական է թարգմանութիւնն. այլ յաճախ յետ և յառաջ, աւելի կամ պակաս. և որպէս զբազումիւնք զանց արարեալ է, ունել ունի և հայերէնն առաւելութիւնս որ ոչ գտանին 'ի յոյն բնագրին... Բովանդակ մատեան հայ թարգմանութեանս՝ իբրև չորիր լոկով մասամբ չափ նուազ է քան զյունականն. թերևս ոչ շատ ինչ աւելի ունէր և օրինակն՝ յորմէ փոխեցաւն 'ի մեր լեզուս։

«Օրինակն այն՝ առանց երկբայութեան էր արաբերէն թարգմանութիւն յունականին, որպէս քաջայայտ երևի յարաբիկ անուանց համաստեղութեանց, զոր մերթ թարգմանելով և մերթ ոչ՝ կրկնէ մերս, և 'ի բուսոց և կենդանեաց ոմանց՝ զորոց չէ գտեալ ըզբնիկ հայեցի կոչմունս. ըստ որոց հարկ էր նմա զյու-

է։ Իսկ ինքն Անատոլ որ 'ի Պերիթեայ քաղաքէ Փիւնիկիոյ, (որոյ և աթոռն ըստ ծագման,) հաչակի զկիսով չորրորդ դարու, իբրև հմուտ իրաւագէտ, քաղաքագէտ և բանասէր, որ և մեծարեալ 'ի կայսերաց 'ի Հռովմ և նախարար Լիւրիկիոյ կարգեալ, առաքեցաւ երբեմն յԱթէնս (իբր յամի 345) պատուասիրել 'ի կայսերական գահուց զգերահաչակն 'ի սոփեստէսս ժամանակին և պարագլուխ Ճարտարասանից, զմերս հայազն Պրոյերես, զօրապետութեան պատուով։ Արդ այս Անատոլի՝ եթէ ինքնին իցէ հաւաքող և գրող և եթէ այլոյ ձեռամբ, իրաւունքք են ընծայել զհեղինակութիւն մատենիս՝ քան այլում ումեք։ Բայց բուն բանիցն և խրատուցն հեղինակք՝ օտարք են և բազումք, որպէս վերագոյնդ ազդեցաք, ոչ միայն յոյնք և լատինք, այլ եթէ արժան իցէ հաւատալ ամենայն գրելոցն, և բակարիացի և պարսիկ ոք Զրադաշտ և Ցուբաս Նումիդացւոց արքայ յԱփրիկոյ. զորս զանց առնեմք մեք թուել աստանօր. քանզի սակաւք 'ի բազմացն յիշին 'ի մերում Թարգմանութեան... Ի բնագրին՝ ընդ իւրաքանչիւր խորագրաւ գլխոց նշանակեալ են անուանք հեղինակացն։... Արժան է յիշեցուցանել աստ 'ի կարգի անուանցն՝ զյիշատակեալն 'ի մերոյս 'ի վերջէ ամենեցուն՝ զ'ընտրեալն Նիկոլիոս, որ ոչ բնաւ յիշի 'ի բնագրին, և ոչ այլ անուն՝ նմին նմանաձայն. հմտագունից այսմ փիտութեան և գրագրութեան՝ թողումք հաւաստել զայս. իսկ մեք փաստ մի և աստի առնումք զսկզբնագիր օրինակ մերոյս Թարգմանութեան՝ որեւ և երիցագոյն համարել քան զընծայեալն յարգեաց Կասսիանոսի Բասսոսի և զհրատարակեալ 'ի Նիկլասայ։

« Եւ սա արդ, որպէս վերագոյն ասացաք, 'ի քսան գիրս բաժանեալ է. և իւրաքանչիւր գիրք 'ի գլուխս աւելի կամ պակաս թուով. որք ոճով իմն Ճառեն և

ձայնեալ։ Բայց այլոց եւս ոմանց, ընդ որս և մեզ, ոչ թուի և այս. քանզի ոչ միայն կանխաւ այլում ընծայեալ է գործն յականէ յանուանէ, զոյգ հայումն 'ի Փոտայ, այլ զի ընթերցասէրս այս խորագէտ գարու միով երիցագոյն էր քան զծիրանածինն Կոստանդին, ապա գիրքն հաւաքածոյ երիցագոյն էր քան ըղկայսրն և զընծայող Սկոլաստիկոսն. կամ ո ոք և իցէ յետին յերիւրող և ժողովողն գործոյն. և զի սորա ոչ մեծ ինչ փոփոխութիւն արարեալ քան զոր Փոտն ընթեռնոյր՝ յայտ անտի է, զի գրեթէ համաձայն բան առ բան ըստ իւրումն գրեցելոյ և սպառագրելոյն գանին յիշատակք և հատուածք գրոցն առ Պալլադիոսի լատին հեղինակի անգատին 'ի Ե դարէ։ Հարկ ուրեմն է և գրոցս հաւաքման լինել յառաջ քան զայս Թուականն, այս ինքն քան զ'Ե դար. նա զի և Կասսիանոս անուն բժիշկք և բուսաբանք յիշատակին յառաջին անդ դարս քան զհինգերորդն. այլ և 'ի սմին իսկ մատենի յիշատակի Կասսիանոս, որ ասէ զինքն լինել 'ի Մարաթոնիմայ գեղջէ (Բիւթանիոյ). ապա ոչ է նա ժողովող գրոցս՝ այլ այլ ոք. որ գուցէ զնախնոյ ժողովողին արոհեալն յ'ԺԲ հատորս, որպէս Փոտ ասէ, և ԺԴ ըստ մերոյս, 'ի քսան գիրս բաժանեաց, յաւելով ինչ ինչ և յարմարելով կլիմայի կայսերանիստ քաղաքին և Նորին սահմանաց։

«Ստոյգ ուրեմն և առաջին հաւաքող գրոցս Վաստակոց է Անատոլի Պերիթացի, յորոյ անուն և հայրենեաց միաբանին Փոտ և հայ Թարգմանս. իսկ յաւելլ անուանն՝ ոչ. և ոչ դիտեմ ո՛ ստոյգ կամ մերձ 'ի ստուգութիւն. զի Պոնիրոս կոչումն հայոյն ոչ ուրեք լսի իսկ Վինդանիոս՝ կից Անատոլ անուան ըստ Փոտայ՝ ոչ կարի հաւանական... Իսկ ուստի՞ արդեօք սպրդեաց Պոնիրոս անուն 'ի հայումս, ոչ ունիմ ասել. բայց միայն զի յապականութենէ իմեքէ յոյն բնագրին ձեռլոյ յարաբացի լեզու, յորմէ մերն փոխաբերեալ

խագրութեան հայերէն թարգմանութեանն (որ յօրինակին կարգեալ էր յաւարտ գրոցն), բացայայտ ծանուցանի ս՛ և յորմէ զգիրսն համառօտեալ. «Պօճիոս Անատոլիոս որ 'ի քաղաքէն Պէրութայ». զոր սակաւ ինչ այլայլութեամբ վաղ ուրեմն յ'Թ դարու բազմահմտան Փոտ նշանակեր յիւրում Բիւրամատենի, ընթերցեալ զՎինդանիոսի Անատոլեայ Պերիթացւոյ Մշակական խրատս, հանդերձ երիւք կամ չորիւք յիշեցելովքն 'ի հայումս, յայլոց եւս վեցից հեղինակաց, որոց ոմանց յիշին անուանք և 'ի կարգի գրոց հայ թարգմանութեանն. իսկ 'ի յոյն բնագրին որ այժմս գտանի՝ 'ի յառաջաբանին և 'ի խորագրի գլխոցն կամ գլանց՝ յիշին այլ եւս հեղինակք, ընդ բնաւ իբրև քսան. բայց անուն հաւաքողին ոչ նշանակի: Վասն այսորիկ հմուտք եւրոպեացիք որք զկիսով ԺԶ դարու նախ հրատարակեցին զգիրսն, և որք ըզհետ նոցին ճառեցին զայնմանէ, և որ հուսկ և ընտրելագոյն բնաւից տպագրեաց հանդերձ լատին թարգմանութեամբ՝ Նիկոլաոս Նիկլաս (ի Լիբսիա, յամի 1781). յայլ և այլ կարծիս եղեն. ոմանք՝ Կոստանդեայ կայսեր վերագրեցին երկասիրութիւն, այնու՝ զի շողոմարար հաւաքող գրոցս 'ի շնորհուկս կայսեր՝ ասէ, 'ի վերայ բազմապատիկ մեծագործութեանց և յաղթութեանցն յաւելեալ և զհաւաքումն մատենից. այլ արդ ոչ օք 'ի քաջախոհից այսմ հաւանի. իսկ կայսերըն Կոստանդին զոր և ոմանք հնագոյն ոմն կարծեցին, աներկբայ ստուգի ծիրանածինն գոլ, ըստ յունականին Պերփիեռուժէն, 'ի մերս, 'ի Ժ դարու կացեալ. որ արդարև ուսումնասէր յոյժ գոլով է ինչ զի ինքնին գրեաց և է ինչ բազում զոր այլոց եւս գրել. ընդ որս դասի և այս մատեան. ապա և հաւաքողն էր ոմն նմին ժամանակակից, զոր Նիկլաս հրատարակողն ծանօթարար և յոլովագոյնք 'ի գիտնոց՝ Ճանաչեն Կասսիանոս Բասսոս Մեկնաբան (Սքոլաստիկոս) մակա-

Գոնիոսի Անագալիոսի՝ որ 'ի քաղաքէն Պէրութայ, զոր շինեաց յաղագս անկոց և վաստակոց մարգկան, և անուանեաց զնա Վաստակոց գիրք։ Եւ համառօտեաց 'ի Ֆլորնդիոսէ և 'ի Լաղնդիոսէ և 'ի Դարըննդիոսէ և յայլոց բազմաց, յոյժ պիտանի, և 'ի յընտրելոյն Նիկոլիոսէ։ Եւ բաժանեաց զնա 'ի չորեքտասան գլուխս »։ Այս չափ ինչ միայն հնար է ապահովութեամբ հետևցընել այս խօսքէն՝ թէ ունինք առաջի մեր թարգմանութիւն մի, որոյ սկզբնագիրն յունարէն է։ Իսկ թէ թարգմանութիւնն եղած չէ ուղղակի նոյն սկզբնագրէն՝ այլ արաբական հին թարգմանութեան վրայէն, այն ևս ստոյգ կ'երևայ հայ գրութեան լեզուէն և յայլոց պարագայից։ Սոյն համոզուելու համար՝ բաւական է միտ դնել որ գրոցս իւրաքանչիւր Հատածին վրայ՝ փոխանակ սովորական Գլուխ բառին՝ գրուած է Դուռն, որ զուտ արաբական է, կամ արաբերէն Պապ բառին նիւթական թարգմանութիւն. ինչպէս կը գտնենք յարաբերէնէ թարգմանեալ գրոց մէջ։

Գրոցս սկզբնական կազմութեան, հեղինակին հայրենեաց և ժամանակին, արաբական թարգմանութեան և նմանեաց վրայ, հնախոյզ բանասիրաց հետազօտութիւնքը հաճելու բաւական են մեր ապագային (1877) ընդարձակ յառաջաբանը՝ զոր կը համառօտենք, և յորում կը նշանակուի ենթագրութեամբ նաև ժամանակ թարգմանութեանն 'ի հայ։ *

« Հաւաքածոյ խմբագիր է մատեանս 'ի յոլովից գիտնոց բանից, որք զերկրագործութենէ կամ զմշակութենէ գրեցին, և որ յառաջ քան զգալուստ փրկչին մերոյ, (որպէս անուանեալն Զրադաշտ, և մեծագիտնականն Վարրոն), և է որ սուղ յետոյ. յառաջին չորեսին դարս նորին թուականի։ Ի համառօտ նա-

* ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ (1889, Թիւ 1)։

«Իսկ թագուհիք և 'ի նշանաւոր երկիւղած արանց ըմբռնեալք տանջէին. զի ոչ կամէին վայելել 'ի հաղորդութենէ նոցա։ Իսկ յետ չարչարանացն՝ բռնութեամբ հաղորդել 'ի խորհրդոցն հարկաւորէին. քանզի փայտիւ բացեալք զբերան արանցն, արկանէին զխորհուրդն։ Իսկ զայս կրաւղքն՝ մեծագոյն եւս քան զայլ պատժոցն տանջանս զայս համարէին. կանայս և մանկունս ըմբռնեալք՝ պղծել հարկաւորէին։ Իսկ եթէ ոք հրաժարէր. կամ այլ ազգ ինչ ընդդիմաբանէր. նոյն ժամայն հետևէին վէրք. և յետ վիրացն կապանք և կապարանք, և այլքն գժնդակք. յորոց մի կամ երկուս յիշեալ. յայտնագոյն զչարագործութիւնսն և ըզ-սխալանսն Մակեդոնի և զորոց յայնժամ անձնելոցն յոյն լաւուղացն կարգեցից. վասն զի կանանցն ոչ առեալ յանձն հաղորդիլ նոցայոյն. զատիկս նոցա եգեալ 'ի տապանակի աղոցէին. և աւտարագոյն քան զհեթանոսացն պատիժս այս 'ի քրիստոնէիցն կոչեցելոց լինէր։ Իսկ ես զայս 'ի թագմանէ Աղեքսանդրեալուայ, զոր յառաջնումն յիշեցի 'ի գիրս. որ էր քահանայ Նաւատիանոսացն աղանդոյ»։

Այս գրչագրին թուականն մեզի անծանօթ ըլլալով, չենք կրնար որոշ գաղափար մը տալ հնութեանը կամ ժամանակին. միայն հարկ կը սեպեմք յիշեցընել որ ընդարձակագոյն ոճովը աւելի համաձայն կ՚ընթանայ ընդ յոյն բնագրին։

## ՎԱՍՏԱԿՈՑ ԳԻՐՔ

### (GÉOPONIQUE)

---

Հաւանականաբար յոյն հեղինակի երկասիրութիւն մ՚է գրուածքս. զի և զայն թուին ակնարկել 'ի գլուխ գրոցն գրուած հետագայ տողք. «Այս գիրք

Թիւնն կը պահուի, ինչպէս լսեր ենք՝ յերուսաղէմեան ազգային մատենադարանի:

Դնենք հատուած մը՝ երկուց Թարգմանութեանց իրարմէ տարբերութեանն յայտարար:

Ըստ մեր գրչագրաց. « Իսկ Մակեդոն՝ հոգեմարտ և աստուածամարտ, կոչեցեալ 'ի սարկաւագութենէ յեպիսկոպոսութիւն Կոստանդնուպաւլսի՝ հակառակ Պաւղոսի: Սա բազում չարիս եցոյց 'ի Կոստանդնուպաւլիս և 'ի մերձաւոր յաշխարհն և 'ի քաղաքսն: Բազմութիւն 'ի նշանաւոր արանց ըմբռնեալ տանջէին, որ ոչ կամէին ընդ նմա հաղորդիլ. և յետ չարչարանաց բռնութեամբ փայտիւ բացեալ զբերանն հաղորդութիւն նոցա տային. որք չար քան զտանջանս զայն վարկանէին. և զկանայս 'ի պղծութիւն զենուարաց հրամայէր. և որք ընդդիմանային՝ հարուածք նոցա լինէին. և զկիսոց՝ զստինս նոցա հատանէին, և կիսոց այլ ինչ գառն տանջանս առնէին. և այս էր նորա փոյթ զի զամենեսեան աստուածամարտութեանն արասցէ հաղորդս. և ևս չարագոյն քան զհեթանոսացն առնէր տանջանս. և զգործիս տանջանացն կազմէր սրով և հրով և փայտիւ. և ոչ դադարէր 'ի չար բռնաբարութենէն և յաստուածամարտութենէն Մակեդոն: Սակայն ոչ եթող զնա Աստուած առանց վրէժխնդրութեան »:

Նոյն հատուածը՝ ըստ միւս Թարգմանութեան զոր յիշեցինք. « Բայց Թէ որպէս Մակեդոն զշուրջ Կոստանդինուպոլսի զաշխարհսն և զքաղաքս քանդէր, այժմ ճառեցից: Քանզի նա՝ որպէս ասացի, ըմբռնեալ յեպիսկոպոսութեան, բիւր չարիս առնէր չխորհողացն զնորայն. և ոչ միայն զեկեղեցւոյն իւր զխղճաւորս վարէր, այլ և զՆաւատեանոսս: Տեսեալ զնոսա զհամագոյութիւնն խորհելով, ընդ նոսին ապա վարգէին և նոքա, և ընդ նոսին կրէին զանաւղղայսն. փախչի ապա և եպիսկոպոսն նոցա Ագաեղիոս անուն:

ծովք։ Իսկ ոմանց՝ յամենայնէ արժանացելոցն գե-
տել։ Բայց մեր սատանաւր ուրեք զպատմութիւնս
դադարեցուցաք»։

Այս վերջաբանին վրայ՝ հայ Թարգմանիչն անմիջա-
պէս կը յարէ զիւրն ուղղեալ առ Ներսէս Կամսարա-
կան խնդրող երկասիրութեանն. «Ո՜վ տէր Ներսէս
Կամսարական, ամենիմաստ պատրիկ, որ եկեղեցեաց
ես շինող միշտ, զհաւատադրութիւն կալցես 'ի Քրիստոսէ,
որ առաջին է խաղաղութեան. հանապազ զնախանձ առ-
ցես զբարեպաշտ թագաւորացն, հաստատել 'ի քում
անձին զբարեպաշտութեան ջանս. մի և մի իւիք առել
պատճառս, և կորնչեցես 'ի ճանապարհացն արդարու-
թեան, և մի ընդդիմակացացն որ 'ի վայր բերեցէ՝ քար-
շեալ և խոտորեալ. այլ զվերինն խորհելով՝ փախիցես
'ի զբաղմանցն. և երթիցես զհետ արդարութեան. ըղ-
հաւատոյ և զսիրոյ. բուռն հարկանելով զկենացն յա-
ւիտենականացն՝ որպէս բարեպաշտագոյն թագաւորն
Թէոդոս. և զամենայն զոր ինչ արասցես՝ յաջողեսցէ
քեզ. և պատերազմ վանի աղաւթիւք, զոր լուար 'ի
պատմութեննէս. զի և խաղաղութիւն Քրիստոսի բնա-
կեսցէ 'ի քեզ առատապէս, և յեկեղեցիսքո և յաշ-
խարհի, զորոց ցանկացար պատմութեանս թարգ-
մանել, ընդ նոյն ճանապարհ թագաւորաց և երթի-
ցես...»։

Ի վերջ գրոցն՝ հետեւեալ տողը կը կարդանք, 'ի գըր-
չէն օտար՝ բայց հնագիր տառիւք. «Սոկրատայ ծին
պատմութիւնս՝ սոուդութեան ունի ցուցակու-
թիւն»։

Աւելի հետաքննական մեր մատենագրութեան
համար այն է՝ որ սոկրատեան գրոցս կրարմէ տար-
բեր երկու հայ թարգմանութեան հանդիպած ենք.
երկուքն ալ բաւական ընտիր լեզուով և գեղով. այլ
մին համառօտագոյն քան զմիւսն։ Այս երկրորդ՝ կամ
ինչուան հիմա ծանօթ եղածներէն ուրիշ թարգմանու-

Կոստանդիանոսի մինչև յեօթնևտասներորդ ամ բը-
գէշխութեան փոքուն Թէոդոսի։ Այս բաժանմունք
չեն տեսանելի 'ի մեր գրչագիրս։

Հեղինակին վերջաբանն է. «Արդ զհրամանս քո, քա-
հանայդ Աստուծոյ, կատարեցի զոր 'ի Կոստանդինու
ժամանակացն սկիզբն ունելով նշանաւոր պատմութեանս
կատարեցի. բայց մի՛ ոք մեզ մեղադիր լիցի և ազարտե-
ցէ՝ թէ զպատմութիւն սրբոցն հարեւանցի պատմեցի,
և ոչ գեղեցկաբանութեամբ հալեալ 'ի գովութիւնս։
Երկուս պատճառս ունիմ ասել. զի զսրբոցն պատմու-
թիւնս լիապէս ունի եկեղեցի Աստուծոյ, զեպիսկո-
պոսաց և զթագաւորաց և զամենայն առաքինեաց ան-
ձանց. և դարձեալ՝ թերեւս 'ի բաց անգանիմք 'ի գիտ-
մանէն. և դարձեալ՝ որպէս զի ոչ կարասցուք ըստ հը-
նոց պատմագրաց պատմել և ճառել. որով զքաջան
գովութեամբ վերաբերեալ և զվարթաբան բացայայ-
տել, որ զբազումս յորդորելով առ բարեպաշտու-
թեանն ջանս։

« Արդ զի մի յերկոցունցս անշահ իրողութիւն լիցի
բարեխրատեցն. զի ոչ արժանական ըստ հին պատ-
մութեանցն համեմատել կարասցուք. իսկ ազի-
տացն զի ոչ կարեն կալ 'ի վերայ իրացն ճառասացու-
թեան յայտնագոյն՝ ընդ միջինն ունելով՝ այսօրինակ ա-
ղագաւ արարաք զպատմութիւնս. զի ոչ ընդ գովու-
թեամբ զանուանս սրբոցն որ սիրեն 'ի կիր արկաք,
և կամ զգործս նոցա մեծացուցաք. զի որպէս աս-
ցի՝ իւրաքանչիւր պատմութեանցն թողաք. զի ոչ զե-
պիսկոպոսաց, և ոչ զթագաւորաց, որքան ինչ էր, և
որքան էր նոցա պատիւ. այլ սուղ ինչ անցի՝ զոր ես
տեսի, և զոր 'ի տեսողացն կարացի ուսանել. ընտրե-
լով զճշմարիտն շարագրեցի. զոր ոչ փոխեալ ըստ
պատմութեանցն՝ զպատմողսն զայնօսիկ խորհրդա-
բար ինչ և ճշմարիտ ծանուցեալ լինէր բազմաց և յօ-
լովից պատմելոց, և որոյ աւընթեր գոլ ասելոյ գոր-

*այնչափ մեծ նշանակութիւն ունին արեւելեան – յոյն եկեղեցւոյ պատմութեան համար, և զորս յառաջ մեկգի թողեր էր՝ խորշելով, ինչպէս ինք կ'ենթադրէր, յերկարաբանութենէ։*

*Այս գրուածին հայերէն հին թարգմանութիւնն ալ ունինք՝ յեօթներորդ դարէ մեր դպրութեան, 'ի ձեռն Փիլոնի Տիրակացւոյ։ Ասողիկ կ'ըսէ. «Ի սորա աւուրս (Անաստաս կաթուղիկոսի) էր Փիլոն Տիրակացի, որ զՍոկրատայ պատմութիւնն թարգմանեաց 'ի հայ լեզու»։* 1

*Մեր գրչագրաց խորագիրն է. «Պատմութիւն Սոկրատայ՝ ըստ Հռովմայեցւոց նահանգին եպիսկոպոսաց և թագաւորաց, և որ 'ի նոյն յարմարին ժանք, սրբոց և անսրբոց՝ զոր բացայայտէ պատմութիւնս։ Սկիզբն Սեղբեստրոսի պատմութեան արարցուք, որ կոչեցաւ յաթոռ հայրապետութեան Պետրոսի և Պաւղոսի՝ մեծի քաղաքին Հռովմայ՝ որ յոլովս ունի պատմութիւնս 'ի Հռովմ։ Այս սկզբնաւորութիւն է գրոցս ըստ հայ թարգմանութեան և ոմանց 'ի գրչագրաց, և զոր չենք գտներ 'ի յոյն բնագրին։ Վասն զի յունականըն՝ որուն կը հետեւին նաև ոմանք յընտրելագոյն գրչագրաց մերոց՝ այսպէս կը սկսի. «Եւսեբի Պամփիլեայ 'ի տասն (կամ տասներորդ) գիրսն եդեալ է զեկեղեցւոյ պատմութիւնն։ Լռեաց 'ի ժամանակս Կոստանդիանոսի Մեծի. և որ 'ի Դիոկղետիանոսէ եղև հալածանք քրիստոնէից՝ գրեաց նա. նա և զվարս Կոստանդիանոսի 'ի տէր՝ բարձրասացութեամբ՝ զոր փոքր ինչ աստանաւր յիշեսցուք»։*

*Սոկրատայ գիրքը յեօթն գիրս կամ դպրութիւնս բաժնուած է 'ի բնագրին, և կ'ամփոփէ հարիւր երեսուն և չորս տարուան պատմութիւն, 'ի դադարելոյ հալածանացն Դիոկղետիանոսի և թագաւորելոյ*

1 ՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՆ ԴՊՐՈՒԹԻՒՆ, Բ. տպագր. յէջ 456։

ժամ'ի ձմեռնային սառամանեաց »: (Ի գործս Ոսկ. Հատ. Ժ. Մոնֆոքոն 813).

# ՍՈԿՐԱՏ ՍԿՈԼԱՍՏԻԿՈՍ

## (SOCRATE, LE SCHOLASTIQUE)

---

Սոկրատ, յետ Եւսեբեայ կեսարացւոյ համբաւեալ պատմիչ եկեղեցւոյ, ծնաւ 'ի Բիւզանդիոն յառաջին ամս թագաւորութեան մեծին Թէոդոսի (380): Իր դաստիարակութիւնն ընդունեցաւ 'ի հայրենի քաղաքին՝ ուսուցիչ ունենալով զԱմմոնիոս և զՀելլադիոս, որ էին 'ի նշանաւոր քրմաց Աղեքսանդրիոյ, և իրենց աստուածոց տաճարաց ու բագնաց քարուքանդ ըլլալէն ետքը առանձնացեր էին 'ի Կոստանդնուպոլիս: Քերականական ուսմանց ընթացքը կատարելով՝ պարապեցաւ ճարտարախօսականին հրահանգացը, յորում և փայլեցաւ հռչակաւ և գովութեամբ: Թէոդոս կայսեր հրամանաւն և բանագատելով յօրինած է զիւր Պատմութիւնն:

Ընդհանրապէս Կոստանդնուպոլսոյ եկեղեցւոյն պատմութեամբ կը պարապի հեղինակն իր այս երկասիրութեան մէջ թէ աւելի իրեն ծանօթագոյն ըլլալուն, և թէ այն դիպուածոց կարևորութեան պատճառաւ: Առջի երկու գրոց մէջ աւելի Հռուփինոսի հետևող կ'երևի. բայց յետոյ սրբոյն Աթանասի գրուածոց ընթերցմամբ՝ հասու ըլլալով Հռուփինոսի անճշդութեանց թէ՛ 'ի պատմականս և թէ մանաւանդ 'ի ժամանակագրականին, հարկ սեպեց կրկին դառնալ անոնց վրայէն: Այն առթով ուրիշ կատարելութիւն մ'ալ ուզեց տալ իր երկասիրութեան՝ աւելցնելով կայսերաց և հայրապետաց նամակներն որ

տոս բազմաժամանակեայ յամելոյն... իսկ յետոյ 'ի ձեռն մարգարէին գոչէր. Ի բաց արա յինէն զհնչումն երգոց քոց, և զձայն քնարաց քոց ես ոչ լուայց »:

— « Զոր 'ի ձեռն սաղմոսօգին մարգարէի երեւի յառաջագոյն ասացեալ ինքն փրկիչն, և զմարմնով իւր գալուստն նախայայտեալ, և զարարքս ընկեցումն հնոյն... 'ի վերին ազատութիւնն մեզ առիթ՝ և որդի փոխանակ ծառայից արարեալ »:

— « Զճարպն որպէս պարարիչ մարմնոյ և վաւաշոտութիւն յարձակեցուցիչ. իսկ զարիւնն որպէս զգազանային և վայրենի »:

— « Վասն զի որ 'ի ձեռն Մովսիսի տուեալն օրէնքն զհինն մատուցանելով... կամ թէ ետես կամ թէ իրագէտ իցէ եթէ ոչ հանիցէ 'ի վեր և մեղս ընկալցի »:

— « Հաւաստեաւ ցուցանի 'ի ձեռն այսոցիկ. զի որ ոք աստուածայնովս սիրով ոչ է հրացեալ.... զի ամենայն զոհ քահանային ողջակէզ եղիցի և ոչ կերիցի »:

— « Մովսէսափոյթ աւրինաւքն զորս 'ի թանձրագոյնան կային բարբարոսականաւք բարոյիւք.... առաւել լուայ զիս յանաւրէնութենէ, և 'ի մեղաց իմոց մաքրեայ զիս. սիրտ սուրբ ստացուոյ յիս աստուած »:

— Սեւերի արքեպիսկոպոսի Անտիոքու. « Այսպէս էր փարիսեցւոյն աղաւթքն և խնդրուածքն որ յըՂուկայ աւետարանին ամբաստանի »: (Հատուած ճառի 'ի խմբագիր մեկնութեան կաթուղիկեայ թղթոց: Փարիզեան ազգային մատենադարան. Suppl 48):

— Սեւերի 'ի Ղուկասու աւետարանին մեկնութենէ: « Տղայոցն մանկաւէր մարքն ». (Մատենադարան Երուսաղեմի. 'ի ճառընտրի գրչագրելոյ 'ի Յ. Երզնկացւոյն. թիւ 442):

— Սեւերոսի երիցու 'ի ծնունդն Քրիստոսի. « Յոգ

**ՍԵՂԲԵՍՏՐՈՍ ՀՌՈՎՄԱՑ.** (S. SYLVESTRE, PAPE). «Խաւսք Սեղբեստրոսի Հռովմայ հայրապետին՝ ասացեալ վասն կիւրակէի»։ Անհարազատ։

**ՍԵՂԲԻԱՆՈՍ.** (SYLVIEN?). «Սեղբիանոս եպիսկոպոսի Մծբին քաղաքի՝ յաղագս Ճրագալուցին»։
— Համանուն ուրիշ անձի՝ կ՚ընծայուի նաև «Սեղուիանոսի հռովմայեցւոյ գիրք որ Կանոնական լըրմունք կոչի»։ Գիրքը տեսած չենք, բայց հաւանականաբար մեր մատենագրութեան յետին գարուց արգիւնք կը թուի։

## ՍԵՒԵՌԻՈՍ ԱՆՏԻՈՔԱՑ

(SEVÉRE, D'ANTIOCHE)

---

Սեբերիանոսի վրայ խօսած ատեննիս՝ յիշեցինք և զՍեւերիոս Անտիոքայ։ Իր անունով հասած են առ մեզ հետևեալ հատուածք բանից 'ի խմբագիր Մեկնութենէ Ղեւտական գրոց (յէջ 558), որոց սկզբնաւորութիւնն և վերջը մէջ բերենք՝ 'ի գիտութիւն բանասիրաց։

— Սեւերիոսի եպիսկոպոսապետի Անտիոքու 'ի թղթոյ նորա առ Միսայէլ ներքինի. «Քանզի բոլորեցս Աստուած՝ զորս յԻսրայէլէն յեգիպտացւոցն կռապաշտութիւն չեղեալք, և սովորեալս բազմաց զոհել և սուտանուն աստուածոց.... և զմարմնական թլփատութիւն անարգեն. զհոգիսն թլփատել 'ի չարութենէ փոխանակեալս»։

— «Վասն զի անկատարք էին որդիքն Իսրայելի. և առ կռապաշտութիւն էին չեղեալք, վասն յԵգիպ-

բանոցէդ. խօսքդ յօդս տարածեսցի, և ոչ հեղցի արիւնդ յերկիր։ Նա ոչ զերկիւղ մահու զմտաւ ածեալ, և ոչ զշողիւն սուսերին, լռութեամբ արիանայր. և զհեռուորին վաղվաղակի ածեալ առաջի Թագաւորին կացուցանէր։ Ապա նորա այնուհետև սկիզբն արարեալ պատասխանւոյ »։

Թագաւորին այլ և այլ հարցմանց պատասխանները կուտայ Սեկունդոս։ Հայ Թարգմանութեան խորագիրն է. Խրատք Սեկունդոսի իմաստասիրի առ Ադրիանոս կայսեր. յունական սկզբնագրին ալ, Σεκοῦνδου τοῦ Ἀδρίανου σόφου γνόμαι. Առաջին հարցումն է, Զինչ է աշխարհ. Τὶ ἐστι κόσμου։ Իսկ յոյնն՝ ինն և տասն են հարցմունք Ադրիանոսի, և իմաստասիրին պատասխանները. Մեր Թարգմանութեան մէջ քանի մի գլուխք աւելի։*

* Յոյն սկզբնագիրն՝ համդերձ լատին Թարգմանութեամբ, հրատարակած է Փաբրիկիոս յիւրում Մատենադարանի (Bibliotheca Graeca). իրմէ ետքն ալ Օրէլլի ի գիրսն Opuscula Graecorom veterum sententium et moralia, 'ի Լայպցիկ (1819–21)։ Ընտրելագոյն է Տիտոյի հրատարակութիւնն 'ի Փարիզ 'ի 1860, 'ի Fragmenta philosophorum Graecorum; collegit, recensuit, vertit Fr. Gul. Aug. Mullachius. Հայերէնն ալ 'ի շարս Սոփերաց (Ա հատոր) ի սուրբ Ղազար Վենետիկոյ։

Հելլէն ուրիշ նախնի իմաստասիրաց այլ և այլ զգօնութեան խրատուց և Թելադրութեանց՝ հայերէն ընտիր Թարգմանութիւնք ալ կան ցրուած՝ մանաւանդ յՍսկեփորիկ գիրս։ Ասոնց մէկ ճաշակը հրատարակուած է 'ի շարս նոյն Սոփերաց՝ 'ի հատորն առաջին. բայց գրչագրաց մէջ գտնուածներն աւելի բազմաթիւք են և ճոխք իրենց պարունակութեամբ, Թէպէտ ոչ միշտ նոյն ընտրութեամբ լեզուի և հաւատարմութեամբ։

# ՍԵԿՈՒՆԴՈՍ

(SECUNDUS)

---

*Ադրիանոս կայսեր ժամանակակից հելլէն իմաստասէր, որուն անուամբ համառօտ հաւաքում մը իմաստասիրական բանից աւանդած է մեզ հայ մատենագրութիւն՝ հաւանական կարծեօք Թարգմանութիւն ոսկեղէն դարու։ Յոյն բնագիրն ալ կը գտնուի, ինչպէս նաև լատին հին փոխադրութիւնք, ընդհանրապէս նման հայկականիս։ Միայն չենք հանդիպած նախաբան տեղեկութեանն՝ զոր ունի հայերէնն, ևյորում կ'աւանդի թէ երբ և ինչ առթով արտասանած է զայնոսիկ իմաստասէրն։*

*Մէջ բերենք զայն, նաև հայ լեզուին ընտրութեան ճաշակ մը տալու նպատակաւ։*

*«Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ, յորում Անդրիանոս 'ի Պարսս երթայր, և իբրև եկն յԱթէնս, լուաւ զՍեկոնդէ թէ կորովի իմաստասէր, և անխօսութեամբ զինքն համձարեալ է. որով և կոչեալ առ ինքն՝ բազում աշխատանօք մաքառեալ 'ի հարցմունս առակաց. և նա ոչինչ ետ պատասխանի։ Եւ թագաւորն զայրացեալ ընդ անմեծարանսն առաջի սինկղիտոսին, կոչեաց զսուրհանդակն զի սպանցէ զնա. և պատուէր տուեալ ասէ. Երթ նախ բանադատեա. եթէ խօսի՝ սպան. եթէ ոչ՝ կենդանւոյն այսր ածջիր։ Եւ դահճապետին վաղվաղակի զհրամանն կատարեալ, տարեալ, 'ի նպատակն սպանանել. և ասէր. Հասեալ է օր մահու և կենաց. և զմահաբեր վաղակաւորն 'ի վերայ խաղացուցեալ փայլակնաձեւ՝ յեղյեղէր ասելով. Բան հաս 'ի բերանոյդ, և ոչ բարձցի գլուխդ 'ի պա-*

(Փարիզեան ազգային մատենադարան, Suppl. 48)։

— Սեւերիանոսի յաւետարանին մեկնութենէ որ ըստ Ղուկայ. «Երկու պարտապանք էին. փոխատու զենքն նշանակէ. որ 'ի պատկեր իւր գոյացոյց զմարդկային բնութիւնս»։

— Սեւերիանոսի յաւետարանին մեկնութենէ. «Այր մի իջանէր յԵրուսաղեմէ... Արդ յորժամ արար Աստուած զերկինս», ...

— Սեբէոսի եպիսկոպոսի վասն գալստեան Յովհաննու 'ի գժոխս։* (Ի ցուցակս մատենից Էջմիածնի)։

* Սեբերիանոսի տասն ճառից գրչագիր օրինակ մը յ'Էջմիածին' այս յիշատակարանով. «Յամի վեցհարիւրերորդի վաթսներորդի չորրորդի Թուականութեանս Հայոց գրեցաւ ...'ի գերահռչակ անապատս որ կոչի Ակներ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ առաքելոցս, հրամանաւ երիցս երանեալ հաւրն Թորոսոյ ...։ Ի Թագաւորութեանն Հայոց Լեւոնի յաղթողի և բարեպաշտի. և 'ի հայրապետութեան տեառն Յովհաննիսի Հայոց կաթողիկոսի ... յիշեսջիք և զանպիտան անձն Պետրոսի գրչի. և զհարազատ եղբայրն իմ զՍիմէոն ... մեղապարտ անձն կազմողի սորա Ըռոբինա»։ Պատմական յիշատակ մ'ալ. «Ի Թուին ՈԿԸ մեռաւ Թագաւորն Հայոց Լեւոն, ... և յայսմ ամի տապալեցին ... Տաճիկք զԵրուսաղէմ 'ի հիմանց, զբովանդակ եկեղեցիսն և զպարիսպն շուրջանակի, և զամենայն շինութիւն քաղաքին ...»։

եհան զմեզ Քրիստոս։ Որսորդաւք՝ յանտառակութեան ցանկութեանցն ցածուցեալ կորզեաց զմեզ. զի Նոքաւք և անուշացոյց. քանզի եցոյց զնոսա մեզ աղ։ Նոքիմբք և լուսաւորեաց. քանզի կոչեաց զնոսա լոյս աշխարհի։ Փոքունք և Նուաղք էին քարոզքըն. այլ արդարութիւնն մեծազաւր։ Առանց գըպրութեան ազէտք՝ այլ Նոքաւք յայտնեցաւ Աստուծոյ իմաստութիւնն։ Առանց կարծեաց մնացէ քարոզութիւնն՝ մի մարդկեղէն պարկեշտութեամբք զարդարեալ » ...։

« Ցետ Եւսեբի՝ 'ի բնագրին Նովաւ գրչաւ գտանէին գրեալ ճառք Սեւերիանոսի եպիսկոպոսապետի. բովանդակեալ 'ի հինգ գլուխս՝ այսպէս.

Ա. Վասն հաւատոյ.

Բ. Ցարժանաւոր երկրպագութիւն. « Երրորդութիւն հանգիտապատիւ է. և զի ամենակալ է Որդի »։

Գ. Ի Փարաւոն և յԱռաքելոյ բանն Թէ Որում կամի ողորմի և ում կամի խստանայ։

Դ. Եւ Թէ չիք առանձին երեսք զայս իրք և խրատուց քաջութիւնք։

Ե. Ցաւանակն և 'ի Դաւիթ »։

Այսոնցմէ զատ՝ ճառընտրաց մէջ կը հանդիպինք նաև հետևեալներուն Սեւերիանոսի անուամբ։

— Ի բանն՝ Ջոր կապիցէք յերկրի. « Մի է ձայնս և բազում որոշմունս »։

— Ցայղակերպութիւն տեառն. « Ոչ փոխեցաւ տէրն 'ի մարմինն, և ոչ յառնուլն զմարմինն՝ եղև խափան Նմա մարմինն. այլ ինքն լուսաւորեաց զմարմինն »։

— Ի համբարձումն. « Քանզի շնորհօքն Աստուծոյ »։

— Սեւերիանոսի հատուած ճառի 'ի մեկն. կաթ. Թղթոց. « Այս է զոր ասէ, Թէ փափաքէ և ցանկայ հոգիս որ առ մեզ է՝ Աստուծոյ մտերիմ լինել »։

ընծայուած այս ճառին յունական սկզբնագիրն ալ կայ առ Մոնֆոքոնի (Հատ. Ե. 1229) այս խորագրով. Սեբերիանոսի Գաբաղացւոց եպիսկոպոսի (յումանց 'ի գրչաց Ոսկեբերան հայրապետի) 'ի պատուական և 'ի կենարար խաչն. և յայն թէ Դու՞ ես որ գալոցն ես, եթէ այլում ակն կալցուք. և 'ի կոյրն և 'ի համրն. և 'ի բանն Ամբակումայ. Տէր զլուր քո լուայ և երկեայ»։ Սկզբնաւորութիւնն. «Գեղեցկապէս մեզ և իմաստութեամբ' յառաջագնացն լեզու, զխաչին ճառագայթս ցուցանէ. քարոզեաց ըղխաչն, որ ըստ անուանն դուզնաքեայ ինչ, և ըստ զօրութեանն և ազդեցութեան մեծ»։

— ԺԵ. Երանելւոյն Եւսեբիոսի եպիսկոպոսի 'ի նոյն խորհուրդ մատնութեան. (Beati Eusebii, lege, *Seberiani*) Episcopi in idem mysterium (de Juda traditore). «Փութասցուք 'ի խաչն Քրիստոսի, ոչ զի 'ի խաչ ելանիցեմք, այլ զի երկիր պագանիցեմք»*։

* Յոմանց' Եւսեբեայ կեսարացւոյ կընծայուի։

Բանասիրաց անհաճոյ չենք համարիր հետագայ տեղեկութիւնը' զոր մեր տպագրին հրատարակութենէն քանի մը տարի ետքը' կու տար Ասպահանի Հայոց ուղղափառաց առաջնորդ' բանասէր և բանիբուն վարդապետն Յովհաննէս Տէրտէրեան Արմաղանեանց։ Իր ձեռքն ընկած է գրչագիր մը' Եւսեբի եպիսկոպոսի Եմեսու խօսք խորագրով. «քաղեալ — ինչպէս կ'ենթադրէ, — 'ի բանից նորին, երևի լինել 'ի վախճան չորրորդ դարու, ընտիր թարգմանութեամբ նախնեաց, գուցէ յ'Ընձակայ, որ վասն թարգմանութեան գնաց 'ի Պաղեստին։ Սկզբնագիրն անթուական' գրեալ գլխագրով, 'ի թուղթ բամբակեայ, առանց ինչ բանաւոր յիշատակարանի։ Հեղինակն ազդու և հզօր փաստիւք յաղթահարէ զհերետիկոսս իւրոյ ժամանակի։ Սկզբնաւորութիւնն. «Որսորդաւք իւրովք յամպարշտութենէն ձգեաց

չէին. « Եղբարք իմ, զայս Յաճախապատումս օրինակն Սոսյ գրքատանէն առաք. 'ի մեր Թուականն ԳՃՀԸ Թիւն էր, այժմոյս մեք գրոյք մեր օրինակած ժամանակին. Թիւն էր մեր ՌՃԻԲ »:

— ԺԱ. Սրբոյն Սեւերիանոսի Եմեսու եպիսկոպոսի 'ի գալուստ տեառն յովանակաւ յԵրուսաղէմ. (De adventu Domini super pullo in Jerusalem). « Եւտես տէր զփրկիչ և զաստուած կենարար՝ Թշնամին Ճշմարտութեան, քարոզեալ, և խռովեցաւ »:

— ԺԲ. Երրորդ կիւրակէի, երանելւոյն Սեբերիանոսի եպիսկոպոսի ասացեալ յաւետարանին մեկնութենէ. (Tertia dominica, Quadragesimae, beati Severiani Episcopi homilia dicta ex evangelii commentario). « Այր մի իջանէր յԵրուսաղեմէ յԵրիքով, և անկաւ 'ի ձեռս աւազակաց. որք մերկացուցին զնա, և վէրս մեծամեծս եդին 'ի վերայ նորա »:

— ԺԳ. Երանելւոյն Սեբերիանոսի եպիսկոպոսի 'ի Թզենին որ ցամաքեցաւ: (In ficulneam arefaçtam). « Ակն տեսանելով ծառ ծաղկազգեաց, և կամ աղբիւր ջրաբուղխ. նովին տեսութեամբն ընձեռէ և զսիրան, և զմիտսն զարձուցանէ անդր »* :

« Ոսկեբերանի ընծայեալ յոմանց (Հատ. Ը. 106), և զոր այլք՝ աւելի հաւանականաբար Սեբերիանոսի կուտան. « Այս վերջինոյս ընծայել չեմ համարձակիր, կ'ըսէ հրատարակողն Մոնֆոքոն, սակայն զրուցուածքի ոճովը շատ մերձաւոր կը գտնեմ Սեբերիանոսի »:

— ԺԴ. Երանելւոյն Եմեսու եպիսկոպոսի 'ի չարչարանս Քրիստոսի. ( Beati Emesensis Episcopi in passionem Christi ). « Իսկ զչարչարանացն Քրիստոսի լսել ոչ պարտիմք. քանզի առնու յանձն և տեղիս, Թէ վասն մեր մեռաւ, մեք զչարչարանսն ոչ պատմիցեմք »* :

* Յոմանց Ոսկեբերանի և յայլոց Սեբերիանոսի

ճանայ երկինք, յորժամ աստեղք 'ի մէջ աստեղաց ծագեն, և նաւահանգիստք՝ յորժամ մանր նաւքն 'ի մէջ մեծամեծ նաւացն շողայցեն »։

— Թ. Ի բանն աւետարանին որ ասէ. Հայր, եթէ հնար իցէ՝ անցցէ բաժակս այս. բայց ոչ որպէս ես կամիմ, այլ որպէս դու. (In verbum evangelii, quod dicit: Pater, si fieri potest, transeat a me calix iste: verum tamen non sicut ego, sed sicut tu)· « Յորժամ մեզ եղբարք վասն ողորմութեան քարոզէին օրէնք, յորժամ վասն աղքատսիրութեան և հիւրընկալութեան 'ի հանգիստ անցանէր բանն »։

— Ժ. Նորին սրբոյն Սեբերիանոսի 'ի հրաւիրեալս 'ի մկրտութիւն. (Ejusdem S. Severiani ad invitatos in Baptismum). « Ո՞չ զի իմաստուն էր Սողոմոն, ըստ իբրս աշխարհիս կենաց զժամանակս յայտնի արար »*։

* Տասներորդ ճառիս թուի թէ կրկին թարգմանութիւնք կան նախնեաց. մին յանուն Սեբերիանոսի, միւսն յանուն սրբոյ Բարսղի կեսարացւոյ. առաջինն ընտիր հայկաբանութեամբ հինգերորդ դարու, երկրորդն խառն հելլենաբանութեամբ, Պիտոյից դրոց ու Փիլոնի ոճով. արդէն մեր տպագրին 'ի սկիզբն տասներորդ ճառին գրուած ծանօթութիւն մը կը վկայէ թէ « այս ճառ կայ և 'ի կարգս մատենից սրբոյն Բարսղի (Հատ. Բ. 113, տպ. Փարիզու 1722)»։ Ահաւասիկ պատառիկ մը 'ի նոյն ճառէ. դնենք նախ յանուն Սեբերիանոսի գտնուածը (194 էջ տպ.). և յետոյ Բարսղի։ — « Գիշերք առանց քնոյ են այնոցիկ որ հսկեն յաղօթս. այլ դժուարագոյն եւս է այնոցիկ որ հսկեն 'ի մեղս »։ — « Գիշերք անքունք որք կանխեսնն յաղօթս 'ի գիշերի. այլ յոյժ դժնդակագոյնք և ազնեցելոցն յանդրանալն » *։

* Յիշատակարան գրչին՝ 'ի վերջ տասնեակ ճառիցս յորում և Յաճախապատում գիրք սրբոյ Լուսաւոր-

Զինչ այլում կենաց, քան կենացն սպասել կայ-ցէ »։ *

* Ի գործս Ոսկեբերանի՝ առ Մոնֆոքոնի, (Հատ. ԺԲ, 403). Severiani sermo de sigillo Librorum. և սկզբնաւորութիւնն. « Մեծ պաշար ճանապարհի 'ի փրկութիւն՝ սուրբ ուսմունք. քանզի երկաթ՝ զեր-կաթ սրէ, և բանն աստուածեղէն՝ զհոգին նրբէ. հա-ցիւ մարմին սնանի, և աստուածեղէն բանիւ հոգին հաստատի... որչափ ստուերն 'ի մարմնոյ, և երազն 'ի ճշմարտութենէ, այնչափ հեռի է 'ի ճշմարիտ ի-մաստութենէ աշխարհականն իմաստութիւն »։

— Է. Նորին Սեբերիանոսի ասացեալ 'ի նոյն կը-րօնս. (Ejusdem S. Severiani in eadem dogmata). « Զարմացայ ընդ ձեզ, ով քրիստոնեայքդ, զի նոր շնորհք աւետարանիս՝ հին կտակարանօք քարոզե-ցան » *։

* Կը գտնուի ճառս 'ի չորս գործոց Ոսկեբերանի առ Մոնֆոքոնի (Հատ. Զ. 569), այս խորագրով. Eίς τὸ ρτηὸν τοῦ Αβραάμ, τὸ λέγον. Θεὶς τὴν χεῖρα του ὑπὸ τὸν μηρον μοῦ, καὶ εἰς διαφόρους μάρτυρας. Հայ լա-տին տպագրին Սեբերիանոսի ճառից հրատարակողն (Աւգերեան Հ. Մկրտիչ Վ.) կը ծանօթարանէ. « Մոնֆոքոն՝ անվաւեր կամ անհարազատ ճառից թուոյն մէջ դասելով, իրաւամբ կը տարակուսի Ոս-կեբերանի ընծայել զայն, թէպէտև Սաւիլիոսի հա-մաձայն վկայելով թէ ճարտարախօս գրութիւն է, և հնութեան հետքը կը կրէ վրան. բայց չհաւանիր Տիւփէնի՝ որ Սեբերիանոսի Գաբաղացւոյ կ'ընծայէ։ Մեր հայկական թարգմանութիւնը, որ 'ի նմին դա-րու հեղինակին եղած է, այս տարակոյսը կը լուծէ »։

— Ը. Նորին ասացեալ 'ի սուրբ վկայն յԱկակ մարտիրոս. ուր և ած զՅովսէփ յօրինակ Քրիստոսի. (Ejusdem in sanctum martyrem Acacium; ubi et Josephum adducit in exemplum Christi). « Զուար-

— Բ. Երանելւոյն Սեւերիանոսի Եմեսու եպիսկոպոսի ասացեալ ('ի Տնօրէնութիւն փրկչին). (Beati Severiani Emesensis Episcopi (De Incarnatione). « Զորդիս լուսոյ լուսաւորեն ճառագայթք, և լուսոյն պատգամքն պայծառացուցանեն »:

— Գ. Վասն կրօնից և մկրտութեան. և զՄովսէս և զԱհարոն, և զերկոտասան ականցն առ լանջօն բերեալ. սրբոյն Սեւերիանոսի Եմեսու եպիսկոպոսի. (De Religione Baptismoque, una cum memoria Moysis et Aaronis, adductis etiam in exemplum duodecim gemmis circa pectus pendentibus, cæteris quoque lapidibus pretiosis. S. Severiani Emesensis Episcopi). « Երբեմն զմեզ կենարարին վերանալ՝ վայելուչ և տօնական պատկօք պատկեաց »:

— Դ. Նորին Սեւերիանոսի եպիսկոպոսի ասացեալ վասն Առաքելոցն 'ի կրօնս. (Ejusdem Severiani Episcopi de Apostolis pro dogmate dicta). « Երեկի ճառն վասն ականն մարմնոյ՝ զարմացոյց զմեզ. զգեղ բնութեանն մեկնէր, և ընդ իմաստութիւն ճարտարապետին զարմանայր »:

— Ե. Երանելւոյն Սեւերիանոսի խօսք վասն Զատկի կաթարոսաց, որ կոչին անարատք, և վասն խոհակերաց. ('ի գրչագրին Էջմիածնի. « և վասն խ"հ"կերաց որ կոչին անարատք). (Beati Severiani sermo de Paschà, deque Càtharis, qui mundi vocitantur; atque Magaeris, sive coqui). « Երբեմն՝ յորժամ նախամեծարքն արարին շնորհքն Աստուծոյ՝ զաստուածապաշտօնութեան հնչէին, ընդ ձեզ էաք և մեք ամենեքին »:

— Զ. Նորին երանելւոյն Սեւերիանոսի Եմեսու եպիսկոպոսի ասացեալ 'ի բանն Թէ Դպրութիւնք բացան. (Ejusdem beati Severiani Emesi Episcopi in verbum, Libri aperti sunt). « Ոչխարք իմ, ասէ կենարարն, ձայնի իմում լսեն, և զհետ իմ գան...

ւէրն՝ եթէ տրտում է անձն իմ մինչև 'ի մահ՝ համա-բերեցաւ 'ի մեռս իւր » և այլն։

Սեբերիանոսի համար՝ որում ճարտասան և աս-տուածախօս գրուածոց թարգմանութիւնն ունինք՝ ոսկեղէն դարու հայերէն լեզուով, կը վկայէ Գեննա-դիոս 'ի գիրսն որ Յաղագս եկեղեցական ճառտարա-խօսաց. « Սեւերիանոս՝ Գաբաղացւոց եկեղեցւոյն եպիսկոպոս՝ կրթեալ 'ի հրահանգս և յուսումն աս-տուածային գրոց, և 'ի մարդկայինսն՝ ատենախօս սքանչելի. վասն որոյ և յաճախ 'ի Յովհաննէ (Ոսկե-բերան) եպիսկոպոսէ և յԱրկադեայ կայսերէ հրա-ւիրանաւ կոչեցեալ՝ խօսել ճառս և ուսուցանել 'ի Թագաւորանիստ քաղաքին։ Ընթերցեալ է իմ զՄեկ-նութիւն առ Գաղատացիս Թղթոյն զյօրինեալն 'ի նմանէ. դարձեալ և զՃառս որ յաղագս մկրտութեան և աստուածային յայտնութեան՝ զընտիրսն և զախոր-ժականս։ Մեռաւ նա յաւուրս փոքուն Թէոդոսի »։

Մոլանոս՝ 'ի Սրբազան մատենադարանի. « Սեւե-րիանոս եպիսկոպոս Գաբաղայեցւոց, որում Ոսկեբե-րան յանձն առնէր զհօտ եկեղեցւոյն Բիւզանդիոնի յառաջքին աքսորանսն, գրեաց ճառս պէսպէս, յորոց ոմանք կան 'ի գործս Ոսկեբերանի և Ոսկիարանի, և հատուածք բազումք 'ի գիրս Նախնեաց »։

Մեր մատենագրութեան մէջ պահուածներն, և ո-րոց շատին յոյն բնագիրքը կը պակսին, հետևեալքն են.
— « Ի մեծի աւուր Ճրագալուցին, երանելւոյն Սե-բերիանու Եմեսու եպիսկոպոսին խօսեցեալ յԵրու-սաղէմ, վասն հաւատոց, և 'ի հօրէ ծննդեան Բանին հօր (ըստ այլ ձձ. ասացեալ յաղագս ծննդեան Բա-նին Աստուծոյ ». In magna die Luminum, beati Se-veriani Emesensis Episcopi, Jerosolymis prolata, de Fide, deque generatione (Filii) ex Patre. « Ի մէջ քրիստոսասիրաց զՔրիստոսէ խօսեցայց ճառել. զի և ես ըստ իմում չափու քրիստոնեայ եմ »։

Սոկրատ․ և Եւսեբիոս եմեսացի կամ եմեսացի, — կ'առանձնեն հնաւանդ տարեգիրք եկեղեցւոյ․ — 'ի չորրորդ դարու զարդարեաց զքրիստոսական եկեղեցի․ 'ի քաղաքէն և 'ի գաւառէն Եդեսիոյ ծագեալ․ և 'ի պատկառելեացն քաղաքին աշակերտեալ Եւսեբեայ կեսարացւոյ և Պատրոփիլոսի սկիւթոպօլսեցւոյ, այնչափ և այնպիսի ստացաւ համբաւ՝ մեծագոյն թարգմանչի գրոց սրբոց և ճարտարախօս հռետորի, մինչև արժանաւոր երևել յառաջնորդութիւն կոչելոյ ոչ միայն եկեղեցւոյն անտիոքացւոց, այլ և աղեքսանդրացւոց քաղաքին․ յորժամ Աթանասիոս մերժեալ հալածեցաւ անտի 'ի հակառակորդաց իւրոց և 'ի թշնամեաց ճշմարտութեան։ Բայց Եւսեբիոս՝ իմաստուն խորհրդով, յերկոցուն միանգամայն հրաժարեաց խոյս ետ․ այլ ապա ոչ կարացեալ մինչև 'ի սպառ ընդդէմ դառնալ ուժգին թախանձանաց և բռնադատ կամաց բարեկամացն, և մանաւանդ Գէորգեայ լաւոդիկեցւոյ, ուստի տայր խոնարհէր՝ ընդունել զեպիսկոպոսութիւն լաւոդիկեցւոց 'ի Փիւնիկեցւոց աշխարհին։ Իր գրուածներէն հայերէն մատենագրութեան մէջ չենք հանդիպած․ և չենք կարծեր որ մեր նախնիք՝ անոնց թարգմանութեանը զբաղած ըլլան, հակառակորդք իրեն վարդապետական կարծեաց։ Յոյն ձեռագրաց մէջ՝ ճառ մը կը գտնենք իր բուն անուամբ, և որոյ խորագիրն է․ Մեծի ուրբաթու քարոզ՝ եմեսացւոյն Եւսեբիոսի 'ի բանսարկուն և 'ի դժոխս, և յաղագս մատնչին Յուդայի զատկին։ Նոյնը ուրիշ գրչագրի մը մէջ․ Սրբոյ հօրն մերոյ Եւսեբիոսի եպիսկոպոսի՝ առ հրէայսն ընդդիմադրութիւն։ Սկըզբնաւորութիւնն․ « Պարտ և պատշաճ է մեզ այսօր, սիրելիք, զերեկեան զգնացելոյ աւուր զընթացս բանին առնուլ 'ի քննութիւն, գիտել տեսանել զբանսարկուին չարախորհուրդ նենգութիւն ընդդէմ տեառն։ Քանզի յորժամ լուաւ և ծանեաւ զի տէր

թենէն վասն աստեղն երևելոյ՝ 'ի Մատթէոսի աւետարանէն. « Ահա այս գիտելի է ձեզ սակս ազգածնութեանցն առաջնոց, որ թուեալ գայ հասանէ մինչև 'ի մարմնաւորն ծնունդ բանին Աստուծոյ »: (Մատենագարան Էջմիածնի. թիւ 320, Է. Ճառընտիր):

Կայ նաև Ցայսմաւուրաց օրինակի մը մէջ ալ՝ որ գտնուի այժմ յԱնգղիա, և սկսանի « 'ի քառասներորդ երկրորդ ամի թագաւորութեան Աւգոստեայ »:

# ՍԵՒԵՐԻԱՆՈՍ ԳԱԲԱՂՈՒ

## (SÉVÉRIEN DE GABALE)

---

Արևելեան յունական եկեղեցւոյ առաջին դարուց մէջ երևցած և փայլած են Եւսեբիոս Եմեսու, Սեբերիանոս Գաբաղու և Սևերոս Անտիոքայ. երեքն ալ նշանաւորք իրենց վարդապետական ուսմամբ և գիտութեամբ: Ունեցած են նաև այլ և այլ երկասիրութիւնք, որոց փոքրիկ մասն մի եւեթ հասուցած են առ մեզ ժամանակն բազմածախ և հնութիւն. և զորս իրարու հետ յաճախ շփոթած են գրիչք, մէկունը միւսին ընծայելով՝ անուանց իրարու հետ պատահական նմանութեան պատճառաւ: Սակայն քննադատ և առողջ բանասիրութիւնք՝ զանոնք իրարմէ զանազանած ատեննին՝ այս սխալն ալ ուզած են դարմանել, ամէն մէկուն յատուկ գրուածքը իրեն ընծայել ջանալով:

Ասոնցմէ առաջինն՝ Եմեսու եպիսկոպոսն Եւսեբիոս, որ մերթ արիոսեանց կուսակից և մերթ ալ անոնց պարագլուխ հանդիսացաւ, անուանի հոգևորական և սուրբ գրոց գիտութեամբ, ծաղկեցաւ 'ի չորրորդ դարու, ինչպէս կը վկայեն Հերոնիմոս և

« Երկուս և եթ գիտեմ օրինակս այսր հայերէն թարգմանութեան յիշատակեալ առ բանասէրս, զմինն 'ի ԺԲ Ճառընտրի վանացս, որ է ընդօրինակեալ 'ի 1830 ամի, 'ի հին բոլորագիր անթուական օրինակէ, գտելոյ յայնժամ առ Կարապետ վարդապետի առաջնորդին կարնեցւոց. և զերկրորդ՝ զգտեալն 'ի Պրոսէ 'ի վանս Էջմիածնի, գրեալ՝ ըստ վկայութեան նորին, 'ի միջոց ժամանակի ամացն 1279–1311։ Եւ զի յերկոսին ևս օրինակսն՝ պատմագրութեանն հասեալ մինչև ցամն 1125, վճարի նովին թերատ բանիւս Եւսառուց... մարթ է կարծել թէ գուցէ և թարգմանչին չիցէ աւարտեալ զթարգմանութիւնն. և կամ զի մի և նոյն լեալ իցէ բնագիր երկուց օրինակողացս՝ յընդօրինակողէ իսկագրին թերի թողեալ. բայց այս որպէս և իցէ, յայտ է զի յամէն 1125, յորում թերի մնայ պատմութիւնն, մինչև ց1279-1311, յորում ժամանակի եղև օրինակութիւն ձեռագրին, չէր մարթ մասին պակասելոյ այլ ևս ընդարձակ ժամանակաւ յառաջ խաղալ 'ի պատմագրութեանց »։

« Բազմահմուտն վրացի պատմութեանց՝ Պրոսէ, 'ի թարգմանութեան անդ իւրում Քաղուածոյ պատմութեանն վրաց 'ի Վախթանգէ, եյեղ և զմերս զայս 'ի գաղղիերէն. զետեղեալ ծանօթութեամբք 'ի Յաւելուածսն՝ յերրորդում հատորի, խորագրաւս Chronique arménienne. (Հրատարակողք տպագրին որ 'ի Վենետիկ յամի 1884, 'ի յառաջաբանի) »։

**ՌՈՄԱՆՈՍ ԿԱՅՍՐ** (ROMANUS, EMPEREUR). — Ռոմանոսի (կայսեր) թուղթ առ Գագիկ թագաւոր Հայոց. (Lettre de l'empereur Romanus, à Gagigh roi d'Arménie, առ Մատթէի Ուռհայեցւոյ)։

**ՍԱՀԱԿ** (?) — Սրբոյն Սահակայ յասորոց մեկնու-

Բանասիրաց ուշադրութեան կը յանձնենք կրտսերոյն Պրոսէի գաղղիացւոյ զանազան և հմուտ աշխատասիրութիւնները այս գրուածին վրայ։ Ռուսաց տէրութեան և Փեթրպուրկի կայսերական ճեմարանին ծախքովը և օժանդակութեամբ եղած այս հրատարակութիւնք, և մանաւանդ իր մատենագիտութեամբն և սիրով առլեցուն, դպրութիւն և պատմութիւն Վրաց, հեղինակութիւն մը կրնայ համարուիլ այս նիւթին նկատմամբ։

Համառօտենք՝ մեր նոր տպագրին յառաջաբանէն քաղելով՝ հետագայ տեղեկութիւնները։ «Պատմութեանս Վրաց... ոչ է յայտ թէ ով եղեալ մատենագիր. թէ և 'ի բազմաց հաւաստի՝ թարգմանութիւն լինել երկասիրութեանն Ջուանշէրի (Ջուանշերի) վրաց պատմչի, որ եղեալ առ ժամանակօք՝ որպէս թուի Արչիլ Բ (688-718). զի և յիշատակի անուն նորին 'ի պատմութեանս. քանզի յետ յառաջ ածելոյ զվկայական կատարած Արչիլ Բ յաւելու. «Եւ գտաւ պատմութիւնս համառօտ 'ի ժամանակաշփոթմանն, և եգաւ 'ի գիրքս՝ որ կոչի Քարթլիս Ցխօրեպա, որ է Պատմութիւն Քարթլաց. և եգիտ զսա Ջուանշեր, գրեալ մինչև ցՎախթանկ Թագաւոր. և մինչև ցայսվայր ինքն յաւել Ջուանշեր, և զգալոցն՝ յանձնեաց տեսողացն և պատահելոց 'ի ժամանակին»։ Արդ ըստ այսմ վկայութեան՝ հնութիւն գրոցս ելանէ մինչև ցդարս Է-Ը. իսկ թարգմանութիւն սորին 'ի հայումս՝ ոչ կրսեր քան զդարն ԺԳ. քանզի յիշատակի սա 'ի պատմութեան Ստեփաննոսի Ուռպելեան, որ եղեալ յաւուրս Գրիգորի Անաւարզեցւոյ, 'ի վերջ կոյս ԺԴ դարու, որպէս և յոճոյ շարադրութեանն երևի չլինել երիցագոյն քան զԺ-ԺԱ դարս։ Յիշատակեալ գտանեմք և միւս այլ Պատմութիւն վրաց՝ անյայտ առ մեզ, 'ի բառարանին Ստեփաննոսի Կամենիցացւոյ, որ և երևի զատ յայսմանէ լինել։

թեանց յաւելուածով։ Ցուցարէն սկզբնագրին խորագիրն է. Πορφυρίου εἰς τοὺς Ἀριστοτέλους κατηγορίας κατὰ πεῦσιν καὶ ἀπόκρισιν. սկզբնաւորութիւնն ալ. Ἐροτησις. Διά τί κατηγορία ᾽εν τῇ συνηθέια, καλουγένης τῆς έν εγκλήματι πρός τάς δικαιολογίας...

Ինչպէս հայկական շատ հնագոյն թարգմանութեանց՝ ասանկ ալ Պորփիւրի գրուածոց յարգը՝ հեղինակին և թարգմանչին իրարու մերձաւոր ժամանակաց մէջ ապրելու հանգամանքն է. մինչդեռ այլոց քով գտնուածներուն քով կը պակսի այն, մեզի աւելի մերձաւոր դարուց փոխագրութեամբը։ Անյաղթի աշխատութիւնը օգտակարագոյն կ'ըլլար եթէ աւելի անխառն ըլլար իրեն ոճորական հելլենաբանութենէն։

Մերոյ մատենագրութեան առաջին դարերու մէջ՝ շատերն եղած են Անյաղթի հետեւողք և Պորփիւրի իմաստասիրական գրոց վերլուծութեամբն զբաղողք, և որոց երկասիրութիւնք հասած են առ մեզ. ասանկ Գրիգորի Տաթեւացւոյ, Առաքելի Սիւնեաց, Սիմէոն կաթողիկոսի, Համանուն Գառնեցւոյն և այլոց։

## ՋՈՒԱՆՇԻՐ

(THCTOUANCHIR)

---

Ջուանշիրի անուամբ՝ Վրաց համառօտ պատմութիւն մը հասած է առ մեզ. հետաքննական իր նիւթովը և մէջը խառնուած հայկական պատմութեանց նշխարներովը ու յիշատակօք։ Հեղինակն կամ հաւաքող՝ հաւանականաբար նոյն ազգէն է՝ որուն պատմութիւնը կ'ընէ. և որ ապա թարգմանեցաւ 'ի մեր լեզու։

# ՊՈՐՓԻՒՐ

## (PORPHYRE)

---

Քրիստոսի երկրորդ դարուն ապրած է Պորփիւր, որ նախ աշակերտեցաւ Որոգինի 'ի Տիւրոս կամ 'ի Կեսարիա պաղեստինացւոց, և յետոյ անցնելով յԱթէնս՝ յաճախեց 'ի լսարանս Ապողոնիոսի և Լոնգինոսի։ Քսանամեայ գնաց 'ի Հռովմ, ապա յԱսիա և յԵգիպտոս, ուստի միւսանգամ դառնալով 'ի Հռովմ աշակերտեցաւ Պլոտինեայ, և սիրող ու զարմացող անոր հանճարոյն և փիլիսոփայական գրութեան, ետեւէ եղաւ հաւաքել անոր գրուածները, և ծաւալել վարդապետութիւնը։ Յուզեալ և անհանգիստ կեանք մը վարելով, մեռաւ 'ի 303 Թուականին, կամ ըստ այլոց քանի մը տարի ետքը, 'ի հասակի եօթանասուն կամ եօթանասունուերկու ամաց։ Ոմանք հրեայ կարծեցին զնա հաւատքով, բայց սուրբն Աւգոստինոս և եկեղեցւոյ պատմագիրն Սոկրատ կ'ըսեն թէ քրիստոնեայ էր, Թէպէտև չկրնալով յարատեւել, և յաճախ հակառակամարտ երևնալով իր վարքովը և գրուածներով անոր սրբութեան բարոյականին և վարդապետութեանց։

Դաւթի Անյաղթի Թարգմանութեամբ՝ անդստին 'ի հինգերորդ դարէ, Պորփիւրի Ներածութեան գիրքը հասած է առ մեզ. որոյ վրայ աւելցուցած է Անյաղթ նաև Վերլուծութիւնք։ Ասանկ նաև Արիստոտելի Ստորոգութիւնք կոչուած երկասիրութեան։ Մեր տպագիրն (1833) տեղ տեղ Թերի կը մնայ. ամբողջն յետոյ ձեռուընիս հասած է յարևելից և յարևմտից՝ գրեթէ քսան և աւելի պրակք բանից և մեկնու-

սրբոց քոց առաքելոցն, յորժամ յարեւելից լուսածագեցիս։ Ընդ նմին եւ զիս զանարժան ծառայս քո զԱւետիք, եւ զննջեցեալսն իմ, եւ զայնոսիկ որ զմեզ հաւատով յիշեն »....։

« Քրիստոս որ լոյս ես աշխարհի,
Եւ արարիչ ամենայնի,
Ախտացելոց բժիշկ բարի
Կենաց տըւող ամենայնի.
Քաւիչ մեղաց լեր Թորոսի
Եւ հալածիչ ախտից ժանտի.
Ոչ այնու միայն որ երեւի,
Այլ եւ ներքնոյն որ իմանի.
Հանգոյն շնորհին այնըմ մեծի
Զոր արարեր անբաւ բարի.
Պարգեւս անճառս անպատմելի
Դու՝ Աբգարու Թագաւորի.
Ընդ նմին եւ ինձ անարժանի,
Եւ որդւոյ քո ծառայի,
Աւետե՛ց մեղաւորի .
Եւ սուտանուն քահանայի »։

Աւելի հնագոյն է միւս գրչագիրն, յորմէ զգլխակարգութիւնսն նշանակեցինք, եւ կը պահուի 'ի մատենադարանին Էջմիածնի. (Թիւ գրչ. 322) եւ է ըստ Կարենեան ցուցակին « Ճառընտիր երկաթագիր քառածալ՝ 'ի մագաղաթանման թուղթ բամբակի, գրեալ 'ի Սիմէոն քահանայէ ումեմնէ՝ ըստ խնդրոյ քահանայի որումն Մարկոս անուն 'ի թուին Հայոց ՉԻԷ ». 1277 . եւ Պրոխորոնի գրուածոյն առաջին գլխոյն համար կ'ակնարկուի թէ պակաս ըլլայ սկզբնաւորութիւնը։ Կը գտնուին օրինակք նաեւ յԵրուսաղէմ եւ առ մեզ։

unique, nommé Sosipater, âgé de vingt-quatre ans):

— Թ. Յաղագս Յովհաննու աւետարանչին թէ որ-պէս պատմեցաւ 'ի Յովհաննէ, կամ յորժամ տեղւոջ ընկալան հաւատացեալք զպարգեւս 'ի տեառնէ 'ի ձեռն Յովհաննու. (Chap. XLV. Par la grace de Nôtre Seigneur Jesus-Christ attribuée à Jean, presque tous les habitants de Pathmos, écoutant les prédications de l' Apôtre, crurent en Dieu).

— Ժ. Յաղագս տեսլեան Յովհաննու. (Chap. XLVI. Au temps où j' écrivais l' Évangile, Jean prêchait l' Évangile au peuple dans l' île entière).

— ԺԱ. Յայտնութիւն տեսլեանն Յովհաննու:

Պրոխորոնի երկասիրութեանս հայ թարգմանու-թեան գրչագիր մը կայ 'ի Բրիտանական թանգարանին Լոնտոնի (թիւ. գրչ. 19728), գրեալ 'ի սկիզբն չորեք-տասաներորդ դարու, յորում հետագայ յիշատակա-գիրք:

« ... Գրեցաւ գիրքս այս որ կոչի Պրոխառն. որ ունի առ ինք հաւաքեալ զամենայն բանս և զգործս Յովհաննու աւետարանչի եղբաւր տեառն' 'ի սուրբ ուխտս Մլիճի, ընդ հովանեաւ Տիրամաւր սուրբ Աստուածածնի և այլ սրբոցս, մաւտ յանառիկ դղեա-կըս Պապառաւն: Արդ ստացաւ Կոստընդին քահա-նայ յիշատակ իւր և ծնողաց իւրոց, և ամենայն զար-մից իւրոց: Արդ աղաչեմ զամենեսին և առ ոտս ձեր անկանիմ. գրեցաւ 'ի թվ. Ջերորդի յիններորդի վե-ցերորդի »:

— « Լոյս Ճշմարիտ և Ճառագայթ անշիջանելի Քրիստոս Աստուած, որ զլոյս աստուածութեան քո փայլեցեր այսաւր 'ի Թափաւր լերին, յաւրինակ արդարոց 'ի վերջնում աւուրն. արժանաւորեա յայն-ժամ զծառայն քո զԹորոս և զծնողսն իւր, զնոյն լոյս զգենուլ և ընդ առաջ քեզ ելանել 'ի հանդի-պումն տեսլեան աստուածային փառաց քոց ընդ

— Բ. Յաղագս Մեռենոսի, և ամենայն եղելոց 'ի ձեռն Յովհաննու յամենայն տան նորա. (Աբ. Մինեի, *Dictionnaire des Apocryphes*, Chap. XX. Il y avait à Patmos un homme fort riche nommé Myron).

— Գ. Յաղագս Վասլի և կնոջ նորա եթէ որպէս լուսաւորեցան 'ի Յովհաննէ։ ( Chap. XXII. Il y avait dans la même ville un homme riche, qui se nommait Basile).

— Դ. Յաղագս Խռուսոսի և կնոջ նորա՝ թէ որ-պէս լուսաւորեցան 'ի Յովհաննէ. ընդ նոսին և որ-դին. (Chap. XXIV. Il y avait dans la même ville un homme nommé Crésus, qui etait juge, et sa femme se nommait Séline).

— Ե. Յաղագս Կենոպասայ և չարաբուեստ կա-խարդութեանն զոր արար առաջի Յովհաննու 'ի ձեռն չարածնունդ մարդկան. (Chap XXIV. Tandisque l'Apôtre faisaint ces choses à Patmos, il y avait dans cette île un magicien nommé Cynops, et il residait dans un désert).

— Զ. Յաղագս գիւղին որ 'ի կերպարանս գայլոյ ե-րևէր քաղաքացեացն այնմիկ, և էին չար բնակիչք քաղաքին. (Chap. XXXVI. Nous demeurâmes trois ans dans une maison sur la place de la ville, et nous en sortîmes ensuite pour aller dans une autre ville éloignée de cinquante stade).

— Է. Յաղագս Նասիանոսի և ամենայն տան նորա. զոր արար Յովհաննէս առ նոսա։ Վերջին թուղթն անդ գրի. (Chap. XL.) Il y avait dans cette ville un homme nommé Nadien dont la femme s'appelait Flore).

— Ը. Յաղագս Սոսիպատրոսի և մաւր նորա Պրոկ-ղիանէի և ամենայն եղելոցն առ նա. (Chap. XLII. Il y avait dans cette ville, une femme riche, nommée Prodiane, fort belle et veuve, qui avait un fils

antérieure au VIII siècle et probablement au VII même.

*Հայերէն օրինակաց խորագիրք են. « Պատմութիւն սքանչելի գործոց, և վարդապետութիւն սրբոյ առաքելոյն և աւետարանչին Յովհաննու, զոր արար յԵփեսոս և 'ի Պատմոս կղզւոջն. և բազում նեղութիւնք և չարչարանք զոր կրեաց 'ի Դոմետիանոսէ կայսերէ ամս երեքտասան, յորժամ աքսորեաց զնա 'ի Պատմոս կղզին. և յետ յիսուն և երկու ամի չարչարանաց Փրկչին՝ դարձաւ 'ի քաղաքն Եփեսոս յարտասահմանելոյն՝ յաւուրս Ներուասայ և կամ Տրայիանոսի. զկնի յիսուն և երեք ամի համբարձման Փրկչին գրեաց զաւետարանն 'ի յԵփեսոս 'ի յոյն լեզու, և եկաց ամս հնգետասան, և բովանդակ եօթանասուն և երկու. և յետոյ քան զամենայն առաքեալսն փոխեցաւ 'ի Քրիստոս. արարեալ աշակերտի իւրոյ Պրոխորոնի, և բաժանեալ 'ի գլուխս մետասան »: — Ի Ճառընտիրս մեր կոչի և Պռոխոր, յորում գրուած է համառօտութիւն վարուց սրբոյ աւետարանչին.* Ի Պրոխորեայ պատմութեանն, յաղագս աւետարանչին Յովհաննու և յաղագս Յայտնութեան նորին, և յաղագս փոխման նորին յաշխարհէս. *« Յետ ննջման ամենաւրհնեալ կուսին Մարիամու մաւր տեառն՝ երանելի առաքեալն և աւետարանիչն Յովհաննէս »:*

*Թէոդորի Ծահն յոյն սկզբնագրին հրատարակութեան մէջ՝ միահետ և միայար կը գտնենք զպատմութիւնն, ուր այլք՝ ինչպէս նաև մերն՝ ունին զբաժանմունս գլխոց. այս տարբերութեամբ՝ որ հայկականն 'ի մետասան գլուխս բաժնուած է, իսկ յոյնն և լատին առաւել թուով գլուխներու. ունելով նաև առաւել ընդարձակութիւննիւթոյ. Մեր ձեռագրացը՝ հետևեալքն են.*

*— Ա. Պատմութիւն սուրբ աւետարանչին Յովհաննու, և յաղագս աքսորանաց նորա:*

կրնան սեպուիլ՝ իրենց իմաստուն և հնախոյզ պարունակութեամբ՝ Սեբաստիան Կաստալիոնի (Castalion) հրատարակութիւն յոյն բնագրին 'ի Բասիլէա 'ի 1563, հետևեալ խորագրով. Προχόρου τοῦ ἐπὶ ταῖς χρείας τὸν ἑπτά κατασταθέντων, ἀνεψιοῦ Στεφάνου τοῦ πρωτομάρτυρος περὶ τοῦ Ἰοάννου τοῦ θεολόγου καὶ εὐαγγελιστοῦ ἱστορία. Զորս տարի ետքը ուրիշ արտագրութիւն մը ըրաւ հելլենագէտն Միքայէլ Նէանտեր՝ նոյնպէս 'ի Բասիլէա. յոյն բնագրին վրայ աւելցընելով նաև լատինական թարգմանութիւն. Prochoris, qui unus ex septem ministris fuit, Stephani protomartyris consobrinus, de Joanne theologo et evangelista historiam, nunquam hactenus in lucem editam; græco-latina, descripta, exposita et edita studio et opera Michaelis Neandri Sorauiensis, 1567. Մեզի ծանօթ նորագոյն և ամենահմուտ հրատարակութիւնն է Թէոդոր Ծահն աստուածաբանութեան վարդապետի ջանքով եղածն յԷրլանկէն Պաւարիոյ, ընդարձակ յառաջաբանով 'ի գերման լեզու. Acta Joannis unter Benutzung von C. v. Tischendorf's Nachlass bearbeitet von Theodor Zahn, D. u. o. Professor der Theologie in Erlangen, 1880.

Թէ որչափ և որպիսի է գրուածքիս հարազատութիւն, կամ ժամանակք ի՛նչ ազդեցութիւն ըրած են անոր հիմնական ամբողջութեանն վրայ, քննելը մեր նպատակէն դուրս է։ Յիշեցընենք միայն թէ Պրոխորոնի ընծայուած երկասիրութեանս հայկական թարգմանութիւնն ալ կայ 'ի մեր մատենագրութեան, և բաւական հնութիւն և յարգ ունեցող թարգմանութիւն մը, զոր հմուտք ինչուան յեօթներորդ և յութերորդ դար կը հանեն. ինչպէս կը յիշատակէ Ծահն յ'էջ XXIII իր յառաջաբանին, ազգային արգէ ամենէն աւելի նշանաւոր բանասիրաց միոյն վկայութեամբ. La traduction arménienne en tout cas est

գրել առ մեզ, զոր բուն իր խօսքերովը մէջ բե-րենք, յայտարարք իր հմտութեանն 'ի մեր լեզու-նախնեաց. « Աստուածաբանութեան Պրոկղոսի Դիա-դոքոսի զերկու գաի թարգմանութեանն զգրու-թիւնս. զոմն որ հին թարգմանչաց գործք է, և զոմն որ 'ի վրաց լեզուէ 'ի միջին դարու յարդարեալ է. ամենայնք, — բայց եթէ մի, — օրինակք յէջմիածին պահեալքն՝ 'ի վրաց լեզուէ յօրինակեալ են. և հը-նագոյն թարգմանութիւնն առաւել հաւատարմու-թեամբ արարեալ է քան զայլս. առանց երկմտու-թեան վրացի թարգմանութիւն 'ի հայոց լեզուէ ինքն յարդարեալ է, և վերստին հայերէն թարգմանեալ »: Մենք այս նախնական թարգմանութեան տեղեկու-թիւն չունինք. և յարգելով իսկ մեր բարեկամին են-թադրութիւնը՝ հաւանական չենք համարիր. զի Գա-նեցին Սիմէոն՝ իր թարգմանութեան բուն պատճառը՝ յայլոց ինչուան իր ատեն 'ի հայ լեզու փոխուած չըլլալը կը դնէ:

## ՊՐՈԽՈՐՈՆ

(PROCHORUS)

---

Պրոխորոն, մի յառաքելընտիր թուոյ եօթանցս ար-կաւագաց, աշակերտ կոչուած է սրբոյն Յովհան-նու աւետարանչի և գրիչ իրեն վարուց, համարելոյ 'ի շարս անվաւեր կամ անհարազատ գրոց: Այսպի-սի կարեւոր հնութիւն ունեցող գրուածք մը, նաև իր հետաքննական նիւթովը՝ բնականաբար բանասիրաց քննադատութեանց ընդարձակ ասպարէզ մը պիտի ըն-ծայէր: Եւ կը գտնենք շատերը յեւրոպական գիտ-նոց, մանաւանդ մեզի մերձաւոր դարերու մէջ, անոր հրատարակութեամբ և քննութեամբ զբաղողք: Ա-սոնց մէջ մասնաւոր մենագրութեան արժանաւորք

սա թարգմանեալ 'ի մեր լեզու. և սա է մայր աստուածաբանութեան առաջին: Մովսէս զայս ուսեալ զգպրութիւն, և 'ի սորա բանից կարգեաց զիւրն աստուածաբանութիւն. և Դիոնեսիոս արիսպագացին և Նուսթէոս զիւրեանց գրեանքն բովանդակ 'ի սմանէ գրեցին. Նոյնպէս և Գրիգոր աստուածաբան զիւր աստուածաբանութիւն 'ի սմանէ խօսեալ է. և բոլորովիմբ ներքս (?) զամենայն աստուածաբանութիւնս իւրեանց 'ի սմին ոլորմանց բանիցս բխեցին. և սա է հիմն և արմատ և մայր ամենայնի. 'ի սմանէ առին նոքա բովանդակ. իսկ այնք փոքր հատորք ելով. և ես յայն սակս թարգմանեցի, զի մի պակաս եղիցի սա յազգէս մերմէ »:

Էջմիածնի մատենադարանին տպագիր ցուցակին մէջ քանուերկու գրչագիրք կը գտնենք Պրոկղի ընծայուած իմաստասիրական երկասիրութեանս, որոնք չունին զկարևոր հնութիւն թուականի. խորագիրք ալ ընդհանրապէս նման մեր գրածին, կամ անկէ քիչ տարբերելով, յորս ամենեւին թարգմանիչ կը կոչուի Սիմէոն Գառնեցի, և միւս ալ համանուն Երեւանեցի վարդապետ մը՝ որ թարգմանչէն շատ ետքը յօրիներ է զլուծմունս գրոցն Պրոկղի: Գրչագիր մը 'ի նմին մատենադարանի, երկոտասաներորդն ըստ ցուցակին, այս խորագիրն ունի. « Պրոկղի աստուածաբանութիւն շաղկապաց մեկնութեան Հոմեղախոսի... Նորագիր... 'ի նահանգին Կարբւոյ 'ի վանս Յաւշոյ սուրբ Սարգսի 'ի վանահայրութեան տեառն Ոսկանայ վարդապետի Երեւանեցւոյ թարգմանչի ըստ գաղմատերէնի 'ի Կարապետէ, 'ի թուին Հայոց ՌՃԼԷ (= 1688) »:

Բազմահմուտ բանասէրն և հայագէտ՝ անգղեացին Փ. Գոնիբիր, ուսուցիչ յօքսֆորտեան համալսարանին, անցեալ տարի 'ի Հայս ըրած ուսումնական ճանապարհորդութեան վերադարձին՝ հետևեալ տողերը կը

մահուընէն առջը՝ ինքն եղաւ գլուխ պղատոնական
դպրոցի յԱթէնս, ուր այլևայլ գրքեր շարագրեց.
պղատոնական և արիստոտելեան վարդապետութեան
հետ զուգելով նաև զկարծիս Որփէոսի, Պիւթա-
գորայ, Պղոտինի, Պորփիւրի և Յամբլիքոսի: Մեռաւ
յԱթէնս 'ի 487: Իր անուամբ ինչուան առ մեզ
անկորուստ մնացած երկասիրութիւնք՝ բաց 'ի մաս-
նական տպագրութեանց, ամբողջ հրատարակուեցան
'ի Փարիզ՝ Վիկտոր Գուզէնի ձեռքով՝ 'ի հինգ հատորս
(Procli philosophi platonici opera, e cod. mss.
bibliothecae regiae Parisiensis, 1819-23).

Իրեն ընծայուած է նաև Սահմանք կամ Հրահանգք
աստուածաբանականք (Institutiones theologicae)
կոչուածը, իմաստասիրական գրութիւն մը, որուն
հայկական թարգմանութիւնն ըրած է Սիմէոն ամե-
կրօնաւոր Գառնեցի: Հրատարակեց զայս Տիրոյ
գաղղիացի յիւրում Հաւաքման յոյն ձեռագրաց:
Գրուածքին խորագիրն է ըստ գրչագրաց. « Պրոկղի
Դիադոխոսի պղատոնական իմաստասիրի շաղկապք
աստուածաբանականք, հատորս ՄԺԱ »: Կից են
ասոր հետ « Ոմիլախոսի իմաստասիրի և հռետորի
աթենացւոց եպիսկոպոսի՝ լուծմունք Պրոկղի դիա-
դոխոսի պղատոնական իմաստասիրի »:

Թարգմանչին յիշատակարանն. « Թարգմանեցաւ
գիրքս որ է շաղկապ և գլուխ աստուածաբանու-
թեան Պրոկղի դիադոխոսի պղատոնական իմաստա-
սիրի, ձեռամբ Սիմէոնի անպիտան քահանայի կրօ-
նաւորի 'ի վրաց լեզուէ 'ի հայ լեզու, յերկիրս
Հայոց 'ի վանս վրաց որ կոչի Պղնձահանք, յաւիտե-
նից թուականին ՑՉԾԶ (6756): Աղաչեմ զձեզ, ով
եղբարք, զի յոյժ աշխատութեամբ թարգմանեցի.
նախ զի ոչ էի արժանի այսպիսի սպասաւորութեան,
սակս շաղախեալ գոլ մեղօք. երկրորդ զի յոյժ ծե-
րացեալ էի և տկարացեալ յաչաց և 'ի մտաց և 'ի
զօրութենէ. զի զվաթսունամենիւք էի. այլ զի ոչ էր

che trovasi qui pure inscritta, con questo preciso titolo: *Ejusdem S. Procli ex epistola secunda ad Armeniis destinata*. Quantunque non rimanga alcuna traccia oggidì di tale documento, è certa però la sua esistenza sì dalle testimonianze di Giovanni Antiocheno presso Facondo, e da Dionisio stesso nella sua lettera a Feliciano, premessa alla mia versione dell' Epistola a S. Proclo, ove dice chiaramente: Venerationis vestrae jussionis comunitus B. Procli Ep. Urbis Cp. literas ad Armenios destinatas latino eloquio vestris auribus exhibendum curavi, non parum praesentibus aestimans pro futuras. — Della lettera poi di S. Innocenzo ci sono fornito le spiegazioni più circonstanziate di questa seconda Epistola di S. Proclo agli Armeni. — Questo documento è interessantissimo per la storia ecclesiastica degli Armeni. (AMELLI GUERRINO, *S. Leone Papa e l' Oriente*, 1882, յ' էջ 27).

## ՊՐՈԿՂ. ԻՄԱՍՏԱՍԷՐ

(PROCLUS, LE PHILOSOPHE)

---

*Պրոկղ՝ իմաստասէր պղատոնական, ծնեալ ինչպէս հաւանական կը թուի 'ի սկիզբն հինգերորդ դարու 'ի Կոստանդնուպոլիս, յառաջին պատանեկութեան յղեցաւ յԱղեքսանդրիա յուսումն իմաստասիրականին առ համբաւեալ վարդապետս ժամանակին՝ Որիոն քերական և Լէոնաս հռետոր. պարապեցաւ ապա 'ի ներվարժմունս ընտրական փիլիսոփայութեան: Քսանամեայ հասակին գնաց յԱթէնս՝ առ Պլուտարք Նեստորի, որ մեկնեց նմա զՓեդոն Պղատոնի և Արիստոտելի քանի մը գրքերը: Սիրիանոսի*

ներն, որոնց նպատակն էր Եւնոմիոսի և Ապողինարի մոլորութիւններն հերքել, թարգմանել 'ի հայ, յասորի և 'ի պարսիկ, և այն լեզուները խօսող քրիստոնեայ ժողովրդոց մէջ սփռել: Այսպիսիք էին Դիոդորի Տարսոնացւոյ, Թէոդորի Մոպսուեստացւոյ և այլոց նմանեաց՝ կամ իրենց յատուկ, և կամ ենթագրեալ գրքերը: Հայաստանի եպիսկոպոսունք չփոթելով անոնց մէջ յայտնուած զանազան կարծեաց վրայ, որոց ուղղափառ եկեղեցւոյ վարդապետութեանց համաձայն ըլլալուն իրաւամբ կը տարակուսէին, գրեցին առ սուրբն Պրոկղ, փափաքելով լսել իր կարծիքն: Պրոկղ մտադիւր փութով քննեց իրեն առաջարկուած գրքերը, ու Հայաստանի եպիսկոպոսաց պատասխան չտուած՝ 'ի ժողով գումարեց զեպիսկոպոսակիցս որ գտնուեցան 'ի ժամանակին 'ի թագաւորական քաղաքին, և անոնց համաձայնութեամբ գրեց առ Հայս, զգուշացընելով 'ի գրոցն և 'ի վարդապետութեանց նոցա: — Այս է ահաւասիկ առաջին թուղթն Պրոկղի առ եպիսկոպոսունս մեր, որոյ հայկական թարգմանութեանն դեռ հանդիպած չենք:

Միայն հասած է՝ երկրորդ նամակ մը նոյն Պրոկղի, մեր վերը յիշած խորագրով, ուղղեալ առ երկոսին սրբասուն և աստուածարեալ հարս հայերէն դպրութեանց, այսպիսի սկզբնաւորութեամբ. « Երանի որ հանապազորդ լինիցին 'ի քաղցրահայեաց տեսիլ երեսացդ. և զի ասեմ հանապազ. այլ գոնեա յաւուրս կամ յամիսս կամ 'ի տարեկանս »*:

* Պրոկղի այս երկու թղթոց վրայ՝ հետաքննական են իտալացի արդի բանասիրի մը տուած հետեւեալ տեղեկութիւնք. Credo non spiacerà agli eruditi un' altra buona novella, assai importante per la storia e letteratura sacra, e che consiste in un brano della seconda lettera di S. Proclo agli Armeni,

sur le livre de Zacharie, le prophète). « *Եւ զարթոյց զիս հրեշտակն անուան* »:

— ** *Յաստուածայայտնութիւն*. (Sur la Théophanie). « *Քրիստոս աշխարհի յայտնեցաւ, և զանզարդ աշխարհս* »:

— ** *Ի Մկրտութիւնն Քրիստոսի*. (Homélie sur le Baptême de J. Ch.) « *Արդ յորժամ եկն տէրն մեր* »:

— ** *Պրոկղի 'ի ծնունդ Յովհաննու Մկրտչի*. (Discours sur la naissance de St. Jean Baptiste « *Այսաւր ծագեցաւ ուրախութիւն նախաստեղծին* »:

— *Պրոկղի Կոստանդնուպոլսոյ պատրիարքի ներբողեան 'ի սուրբն Յովհան Ոսկեբերան*. (Panégiryque sur saint Jean, le Chrysostôme). « *Զոր աւրինակ արք ոսկեսէրք* » *:

* *Հայերէն թարգմանութիւն ճառիս եղած է 'ի մետասաներորդ դարու՝ Գրիգորի վկայասիրի ձեռքով*:

— ** *Պրոկղի եպիսկոպոսի յաղագս կաղանդաց*. (Sur les calendes). (*Մատենագարան Էջմիածնի, Թիւ գրչ*. 1730):

— ** *Թուղթ Պրոկղեայ եպիսկոպոսի առ Սահակ հայրապետ Հայոց և առ սուրբն Մաշտոց*. (Lettre de l'evêque Proclus à Sahagh, patriarche des Arméniens, et à saint Machtuoz). *Եկեղեցւոյ տարեգրաց և արևելեան ու արևմտից սրբազան մատենագրութեան մէջ նշանաւոր է Թուղթն որոյն Պրոկղի առ եպիսկոպոսունս Հայոց մեծաց*. (Lettre aux evêques de la grande Arménie).

*Նամակիս գրութեան պատճառն հետևեալն է, ինչպէս կ՚աւանդի յօտարաց: Նեստորի համախոհք չհամարձակելով բուն իրենց մոլորանուն առաջնորդին գրուածներով ծաւալել և ընդհանուր ընել իր կարծիքը, եւակէ եղան աւելի հնութիւն և մեծարանք վայելող անձանց վարդապետական երկասիրութեան-*

ըխամ, և ծնեալն 'ի նմանէ՝ ոչ աստուած մերկ և ոչ աստուած սոսկ, այլ Էմմանուէլ. այս է՝ Աստուած և մարդ յերկուց բնութեանց միացեալ՝ առանց խառնակութեանց, և առանց փոփոխմանց. և մի աստուած՝ տէր մեր Յիսուս Քրիստոս. (Discours sur la très-sainte Vierge Marie). « Կուսական տաւնս այս այսաւր, եղբարք, զլեզուս մեր 'ի բարեբանութիւն կոչէ. և մերձաւոր տաւնիս 'ի միասին աւգտութեամբ լինի ասպնջական. և յաւէտ յիրաւի. վասն զի զսրբութիւն ունի զպատճառս, և կանանց ազգի պարծանս »: Ի գլուխ Գործոց (Actes) Եփեսոսի սուրբ ժողովոյն գրուած է այս ճառ:

** Երանելւոյն Պրոկղի Կոստանդնուպոլսոյ եպիսկոպոսի ասացեալ 'ի խորհուրդ տէրունական խաչին. (Sur la sainte Croix) « Վասն այսորիկ կոչեմք զնա թագաւոր, քանզի զնա տեսանեմք 'ի խաչ ելեալ. և թագաւորի է փառք յորժամ 'ի վերայ զօրաց իւրոց մեռանիցի »: (Մատենագ. Էջմ. 920):

— ** Երանելւոյն Պրոկղի Կոստանդնուպոլսի եպիսկոպոսի 'ի յաւետիս սուրբ Աստուածածնին. (Sur l'annonciation de la très-sainte Vierge). « Այսաւր արեգականն արդարութեան՝ և պայծառաջագոյն ծագեալն ծածկեաց. փրկեցայ 'ի խաւարէն, և ոչ տանիմ ճառագայթիցն: Մնաւ ինձ դարձեալ լոյսն, և ընդաղաւտացայ երկիւղիւ: Ընդ ծնունդն ցնծամ, և ընդ եղանակն վրդովիմ »: Նոյն ճառ՝ այլով թարգմանութեամբ. « Ծագեաց այսաւր արեգակն. և որ յառաջագոյն ծագեալն է՝ ծածկեաց. փրկեցայ 'ի խաւարէն և ոչ տանիմ ճառագայթիցն: Մնաւ ինձ դարձեալ լոյս, և շլանամ յերկիւղէն. ընդ ծնունդն ցընծամ, և ընդ եղանակն վրդովիմ »:

— ** Երանելւոյն Պրոկղի եպիսկոպոսի 'ի մեկնութենէն Զաքարիայ 'ի բերան ճրագաց աշտանակի 'ի խորհուրդ Կուսին. (Fragment d'un Commentaire

մութիւն, թէ որչափ ժամանակս թագաւորեցին յետ Աղեքսանդրի Մակեդոնացւոյ. « Պտղոմէոս Ղագոսեայ՝ ամս քառասուն։ Պտղոմէոս Փիլադելփոս ամս երեսուն և ութ »։ (Փարիզեան մատենադարան ազգային)։

## ՊՐՈԿՂՈՍ

### (PROCLUS)

---

Պրոկղի անուամբ՝ որ աշակերտ և յաջորդ էր սրբոյն Ոսկեբերանի (390), ջաղխիչ Նեստորի և իրեն մոլորութեանց գրով և բանիւ թէ 'ի Կոստանդնուպոլիս և թէ յԵփեսոս, հետևեալ ճառերն կամ հատուածք ճառից ունիմք թարգմանութեամբ նախնեաց, յորոց ոմանք Թարգմանչաց դարուն կամ գրչին կրնան վերաբերիլ. ոմանք ալ արծաթի դարու մեր դպրութեան։

— Երանելւոյն Պրոկղի եպիսկոպոսին Կոստանդնուպոլսի՝ աշակերտի և աթոռակալի Յովհաննու Ոսկեբերանի ներբողեան 'ի ծնունդն Քրիստոսի և 'ի նախավկայն սուրբ Ստեփանոս որ այսաւր տաւնի. (Discours sur la nativité de Jesus-Christ, et sur saint Etienne, le protomartyr). « Երեւելի արեգական ընդ երկնիւք ծագելով »։

— ** Պրոկղի Կոստանդնուպոլսոյ եպիսկոպոսապետի ներբողեան 'ի սուրբ աւետարանիչն Ղուկաս. (Discours panégiryque sur saint Luc, l'evangéliste). « Մերձակայ տաւնիս խորհուրդ արգեամբք գերազանցեալ քան զբան, ընդդէմ միմեանց՝ զգործ և զբան տեսանեմք »։

— Խաւսք ասացեալ 'ի Կոստանդնուպաւլիս՝ 'ի նստելն Նեստորի 'ի մեծ եկեղեցւոջն 'ի Կոստանդնուպաւլիս՝ թէ աստուածածին է սուրբ կոյսն Մա-

արդեւք հակառակութեան »․ ուր բնագիրն կ՚ըսէ․ « Եւ զի՞ է որ զքաղաքն յարդարիցէ․ արդեւք յարտաքի՞ն պատերազմն նայելով եւեթ՝ զկենցաղն զարդարիցէ, եթէ 'ի պատերազմն որ յինքեան գործի հանապազօր, որ և կոչի ապստամբութիւն »։ Այսոնք միայն քանի մը էջերէ առնուած անճշդութիւնք կամ մթութիւնք հայ թարգմանչին, որ թերեւս ընդօրինակողին անհմտութեանն ալ արդիւնք ըլլան․ վասն զի միակ օրինակ մը կայ Պղատոնի գրուածոց թարգմանութեան 'ի Մեր մատենադարանի, և ուրիշ տեղուանք գտնուած օրինակաց տեղեկութիւն չունինք, չհանդիպելով անոնց Մեզի ծանօթ ցուցակաց մէջ։

**ՊՈԼՈԲԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ** (POLOBIUS, ÉVÊQUE). — Պոլոբիոսի եպիսկոպոսի՝ 'ի սքանչելիս Եպիփանու Կիպրացւոյ. « Փառք շնորհողին մեզ »։ « Պոլոբիոս աշակերտ է Յովհաննու քահանայի եկեղեցւոյն Կիպրոսի, որոյ հրամանաւ գրէ զսքանչելիսն զոր գործեաց Եպիփան։ Ընդ նմա էր և Պոլոբիոս յորժամ եկն Եպիփան յԵրուսաղէմ, ուր յանդիմանեաց զագահութիւն Յովհաննու հայրապետի »։ (Մատենադ. Ս. Երուսաղեմի, թիւ գրչ. 442, գրչագիր Երզնկացւոյն)։

**ՊՈԼՈՔՐՈՆ** (?) — (Հատուած 'ի Ղեւտական գրոց մեկնութենէ). Տես յ' էջ 558։

Պողոքրոնի. « Վասն զի գիտէի ասէ զնոսա որպէս տղայս հեշտացեալս 'ի տաւնս և նախահարցն սովորութեամբք ըմբռնեալս զոհիցն նուիրիւք... այլ յետ դարձուցի զեղեալսն և հրամայեցի զոհել և ընդունել խոստացայ »։

**ՊՏՂՈՄԵԱՆՔ** (SUR LES PTHOLOMÉES, successeurs d'Aléxandre le Grand). « Վասն Պտղոմեանցն պատ-

Արիստոտէլի քանի մը իմաստասիրական գրուածոց, և ոճոյ և լեզուի նմանութեամբ կը համարին արգաբանալ։ Մեր ձեռքն հասածներուն մէջ՝ ոճոյ և թարգմանութեան միակերպութիւն չտեսնուելով, հաւանական կ'երևնայ որ մի և նոյն գրչի արդիւնք չըլլան․ բայց ճիշդ ժամանակն որոշել, եւս առաւել թարգմանողը, դժուարին կ'երևնայ։ Միայն բաղդատելով զթարգմանութիւն մեր ընդ յոյն բնագրին, փափաքելի կ'երևնայ 'ի հայն՝ առաւելագոյն ճշդութիւն, ըմենք նաև՝ գիտութիւն յոյն լեզուի, յորում չի տեսնուիր այնչափ քաջուսումն, ուր Անյաղթի համար այս նկատմամբ հակառակ վկայութիւնն ունինք թէ 'ի մերոցն և թէ յօտարաց, և որ կ'արդարանայ իր անուամբ առ մեզ հասած թարգմանութեամբք։ Քանի մը օրինակք յ'Օրհնաց գրոց։

Թարգմանիչն մեր կ'ըսէ․ « արդ զեղբայր նորա զԴիատամանթիւս լսեմք անուն արդարոյն ընկալեալ »․ յոյն բնագիրն․ « Զեղբայր նորա զԴիատամանթիս, քանզի լսէք զանունն, զոլ արդարագոյն »։ — Հայերէնն․ « Եւ քանզի այսպիսի բարեօք օրինակօք անուցեալ էք »․ յոյնն․ « քանզի օրինական բարեօք սնեալ էք »։ — Հայն․ « Լսեմ և հանդիսաւք ըստ ճանապարհին առաջ ելոյ »․ յոյնն․ « իբրև լսեմ՝ են հանդիստ և բաւական »։ — Հայն․ « Առ հեռաւակաց ընթացսն կրթութիւն յոյժ չափաւոր »․ յոյնն․ « եւ 'ի հեռաւեակ ընթացիցն կրթութիւն յոյժ ճահաւոր »։ — Հայն․ « Անխոհեմութիւն արգելք թուի ինձ՝ ապաստան լինել զբաղմանց, իբրու ոչ ուսողաց »․ յոյնն․ « Թուի ինձ սաստ՝ զանմտութիւն ամենոց կշտամբել, իբրու ոչ ուսողաց »։ — Հայն․ « Եւ զի՞ է որ զքաղաքն չարայարմարելով առ 'ի պատերազմել․ եթէ զարտաքինն տեսանելով զկենցաղն՝ զարդարիցէ մանաւանդ, եթէ առ պատերազմ այնմիկ որ ինքեան յամենայն ժամ ելանելով որ կայի

— Պղատոնի Օրէնք կամ Օրէնսդրութիւնք մետասաներորդ. «Եւ զոր ինչ յետ այսորիկ իցէ վաճառաց, և այլոց ոմանց առ միմեանս ենթադրութեանց՝ որ կարօտանան պատշաճաւոր դատաւորութեանց, և պարզ իսկ է այս ինչ»։

— Պղատոնի Օրէնք կամ Օրէնսդրութիւնք երկոտասաներորդ. «Եթէ բարեխօս ոք կամ քարոզ սըտելով զքաղաքէն զօտարոտիս ինչ մաղթէ առ քաղաքի ուրեմն»։

— Պղատոնի յԵւթիփռոն կամ յաղագս Սրբոյ. (Τὰ τοῦ Εὐφύθρο ἢ περὴ ὁσίου)· «Զ ինչ նորագոյն, ով Սոկրատէս, եղև, զի դու թողեալ զշրջելն 'ի Լիւկիոն՝ աստանօր այժմիկ դեգերիս առ սրահս թագաւորին»։

— Պղատոնի՝ Սոկրատայ պատասխանի. (Ἀπολογία Σωκράτους)· «Զոր ինչ դուք իսկ, ո՜վ արք Աթենացիք, ախտացայք 'ի ձեռն իմոյ ջատագովիցն՝ ոչ գիտեմ»։

— Պղատոնի առ Տիմէոս՝ սակս բնութեան. (Τὰ τοῦ δεαλόγου Τιμαίου)· (Անձինք տրամախօսութեանս են Սոկրատէս, Կրիտիաս, Տիմէոս և Երմոկրատէս)։ Սոկրատէս. «Զորրորդ ելով ձեր արդեւք, որոց ընդտրամաբանութիւնդ, իբրու հիւրք եղելոյ երէկ, իսկ այսօր կոչնատէրք, ով սիրելի Տիմէոս, մին պակասեալ՝ ո՞ւր արդեւք իցէ»[1]։

Ոմանք 'ի բանասիրաց կ'ենթադրեն թէ Պղատոնի գրուածոց հայկական թարգմանութիւնք հնագոյնք ըլլան քան զՄագիստրոս և իր ժամանակը, և այլք մինչև 'ի հինգերորդ դար կը հանեն՝ ընծայելով Դաւթի Անյաղթի, որ՝ ինչպէս գիտենք, թարգմանիչ է Պղատոնի հռչականուն աշակերտին՝ Ստագիրացւոյն

1 Վերջին երեք տրամախօսութեանց հին թարգմանութիւնք հրատարակեալ են 'ի մեր տպարանի, հմուտ յառաջաբանով և բաղդատութեամբ ընդ յոյն բնագրին 'ի Հ. Արսէնէ Սուքրի (1877)։

տեսացուք, ո՞չ ապաքէն անդուստ ոք զսա տեսցէ դիւրապէս և գեղեցկագոյն »:

— Պղատոնի Օրէնսդրութիւն չորրորդ: Տրամաբանութեանս պատճառ աթենացի ոմն օտար և Կղինիաս և Մեգիլլոս: — Պղատոն. « Բեր արդ թէ որպիսի՞ պարտ է զմտաւ ածել մեզ՝ լինել քաղաքին. և տեսեմ իսկ ոչ զանունն սորա հարցանելով թէ որպիսի ինչ իցէ այժմ և յապառնի ժամանակն »:

— Պղատոնի Օրէնք կամ Օրէնսդրութիւն հինգերորդ. « Լուիցէ արդ ամենայն ոք այն իսկ՝ որ այժմ յաղագս աստուածայնոյ և սիրելի նախահարցն զասացեալսն լուաւ »:

— Պղատոնի Օրէնք կամ Օրէնսդրութիւն վեցերորդ. « Այլ յետ այսոցիկ ամենայն ասացելոցս՝ դրեթէ իշխանաց կարգաւորութիւնք պարտ է 'ի քաղաքիս լինել »:

— Պղատոնի Օրէնսդրութիւն եւթներորդ: Յաղագս անգիր սովորութեանն: « Եւ լինելով մանկանցըն արուաց և իգաց զծնունդն իսկ՝ և զխրատն որ յետ այսոցիկ է ասել ուղղագոյն եղիցի մեզ »:

— Պղատոնի Օրէնք կամ Օրէնսդրութիւն ութերորդ. « Այսոցիկ մեզ հուպ է կարգելն, իսկ օրէնսադրելն տօնք յետ այնոցիկ՝ որ 'ի Դելփիսէն դիւթութիւնք »:

— Պղատոնի Օրէնք կամ Օրէնսդրութիւն իններորդ. « Դատաստանք արդ՝ յետ այսորիկ լինելով հետևողք, յառաջագոյն ամենայն գործոցն գոլով ըստ իւրեն լինիցին գեղեցկայարմարութեանն օրինացն »:

— Պղատոնի Օրէնք կամ Օրէնսդրութիւն տասներորդ. « Յետ հարուածոցն յաղագս ամենայնի՝ ասասցի այսպիսի ինչ օրինական 'ի սակս հարստահարութեանցն յօտարացն ոչ ուրուք ոչ ինչ բերելով ածել »:

րեն յատուկ ոճոյն և լեզուով [1]։ Այսոքիկ են հետեւեալքն.

— Պղատոնի 'ի Մինովս, և յաղագս Օրինի. (Μίνος, ἢ περὶ Νόμου). Տրամաբանութեանս դէմք Սոկրատէս է, և այլ ոմն անանուն։ « Հարցումն. Օրէն մեզ զինչ է։ Պատասխանի. Զորպիսի՞ և հարցցես զօրինացն »։

— Պղատոնի Օրէնք կամ Օրէնսդրութիւն առաջին. Պատճառս տրամադրութեանն առ աթենացի ոմն օտար և առ Կղինիաս և Մեգիլոս։ — Պղատոն. « Աստուած, եթէ այլ ոք 'ի մարդկանէ ձեզ, ո՛վ օտ-րեկք, ընկալաւ զպատճառս զտրամադրութեան օրինացն »։

— Պղատոնի Օրէնք կամ Օրէնսդրութիւն երկրորդ։ — Պղատոն ասէ. « Իսկ զոր յետ այսորիկ է՝ որպէս թուի ինձ այսպէս խորհիլ. պարտ է յաղագս սորա թէ զիարդ՝ միայն զայս ունի բարի զտեսանելս »։

— Պղատոնի Օրէնսդրութիւն երրորդ։ Տրամաբանութեանս դէմքն աթենացի ոմն և Կղինիաս և Մեգիլոս։ — Պղատոն ասէ. « Այսոքիկ արդեւք այսպէս. բայց քաղաքավարութեան սկիզբն՝ զո՞ ոք երբէք լինել

[1] « Ոչ եմք դադարեալ 'ի թարգմանութենէ. եւս բազում մատեանս՝ զորս ոչ եմք գտեալ 'ի մեր լեզուս, զերկուս մատեանսն Պղատոնի. զՏիմէոսի տրամաբանութիւնն և զՓեդովնի. յորս բոլոր ճառսն նախագիտականն այն պարփակեալ կայ ». (Մխիթար 'ի Թօմաղեան)։

« ... Մագիստրոս ձեռն արկ թարգմանել զՊղատոնի գործս իւրով ընտել մտածողական և հելլենական խրթնութեամբն. վասն որոյ և մեք զամենայն ջան եդաք՝ բաղդատեալ ընդ յոյն բնագրի՝ անխիղճ ուղղագրել զվրիպակս գրչին, և զթարգմանչին՝ եթէ գտցի ուրեք. որպէս զի մի՛ և վրիպանք իմաստից և սխալ գրութիւնք յաւելցեն 'ի մթութիւն հելլենաբանութեանն. որով ոչ ընթեռնուն, ոչ հասկացեալ ինչ, անօգուտ համարիցի զվաստակ թարգմանչին և զմերս »։ (Ի յառաջաբանի մերոյ տպ. 1877)։

ալ վերագրել, Սարեկի քերթուածոյն աջող և ընտիր չափագրութիւն՝ կրնայ այդ կարծիքն ալ արդարացընել:

Վարդան վարդապետ մեծն՝ 'ի յիշատակարանի կամ 'ի վերջաբանի մեկնութեան Հնգամատենին՝ վկայութիւն կը բերէ նաև 'ի Պիսիդեայ, թէպէտ տարբերելով տեղ տեղ 'ի թարգմանութեանն կամ 'ի չափագրութեան, մեր հիմայ յիշատակած ընտրելագոյն գրչագրէն. « Եւ ասեմք զասացեալսն յիմաստնոյն Պիսիդեայ. « Ո՛ մշակդ մորենեաց և վիմաց — Եւ կամ աղտաղտ և խոխոմ գետնոյ. — Եւ ցամաքեալ երկրի ցաւոց և ժամանակօք. — Որ ծըղնագատեալ արարեք խիւս և խորշակահար հասկաց: — Սակայն զի արեգակնակոխ էր և յուսով կենդանի » [1]:

## ՊՂԱՏՈՆ

(PLATON)

---

Մեծանուն և բազմահռչակ մատենագրիս անուն և գրուածք որչափ ծանօթ և գովեալ առ նախնիս մեր՝ անդստին 'ի հինգերորդ դարէ, բայց երկասիրութեանց հին թարգմանութեանց յիշատակութեանը հանդիպած չենք. Մագիստրոս ալ յայտնապէս կ'ըսէ 'ի թղթին առ վարդապետն Սարգիս թէ անոնց թարգմանութեանն չհանդիպելով 'ի մեր լեզու, իր քաղաքական և ուսումնական բազմազբաղ պարապմանց մէջ՝ ետևէ եղած է անոնցմէ մի քանին հայացընել՝ ի-

1 Տես աւելի ընդարձակ տեսութիւնք և տեղեկութիւն զՊիսիդեան քերթուածոյս 'ի Բազմավէպ հանդիսարանի (1875 յէջ 124):

« Այլ ո՛վ երկրագործդ վիմաց և մորենեաց. — Զի սերմանես դու և 'ի վերայ վիմաց յոլովակի, — Եւ զաւակ բռնադատես ծնանել զփուշս, — Բուսուցանել պտուղս արժանաւորեա՛ և զապառաժս. — Եւ 'ի թռչնոց անյայտից թռուցելոց — Ոչ ինչ 'ի քոյոցդ աստուածայնոց սերմանց քաղեսցէ։

« Արդ ողոքեա՛ զմեզ հոսմամբ արտասուաց. — Թերեւս լինի զաւակ 'ի յամլոյ. — Դարձեալ և պտուղ իմաստուն՝ յանպտուղ սրտէ։ — Եւ քանզի փախչիս 'ի գովեստից իբրև 'ի պարսաւանաց, — Ըստ դիտմանս զանկնարկութիւնս ձկտեալ՝ աստացից 'ի քոյոց յուսացեալ աղօթից տեգս։

« Արդ աղբիւր բնաւորեցաւ բանի՛ մի. — Բայց երակք բազումք անյայտից ականց. — Որովք Դաւիթ ոռոգանէ զամենայն միտս — Զայսոսիկ գրոյ բղխելոյ հոսմանս։

« Որպէ՛ս զի մեծ է Աստուծոյ ստացուածոյս արարչագործ և իմաստուն ամենագործութիւն։ — Արդ ով իմաստո՛ւնդ օտարասերմն բանիցդ. — Լո՛ւր, Պրոկղ, և մի՛ ճոխաբաներ. — Զի 'ի քո պատճառս դիտմանդ տալոյ — Լռեսցեն Պրոկեղք և խօսեսցին վայրաբնակք »։ Ու կը յաւելու իբրու ծանօթութիւն թարգմանիչն. « Գիտելի է թէ առ Պրոկղ ոմն յարտաքին իմաստասիրացն ձկտի »։

Յայլեւայլ գլուխ բաժնուած է քերթուածը, և նախ Յաղագս օդոց, և հետզհետէ Յաղագս արեգական, Յաղագս լուսնի, և ապա ընդհանրապէս եօթն օրեայ արարչագործութեան հրաշալեաց վրայ, առանց մասնաւոր գլխակարգութեան։

Թարգմանութեան ժամանակը յառաջ կ'երևի քան զՆարեկացւոյ և Մագիստրոսի դարը, աւելի իմաստասիրին և իր ժամանակակցաց ախորժելով ընծայել, թէպէտ ոմանք ինչուան եօթներորդ դարու հնութիւն ալ ուզած են տալ։ Բայց եթէ կարծուի աւելի մերձաւոր ժամանակաց՝ Սարկաւագ Յովհաննու

**ՊԵՏՐՈՍ ՄՈՆԿՈՍ** (PIERRE MONGUS). — Պետրոսի Մոնկոսի պատրիարքի Աղեքսանդրու՝ Թղթակցութիւնք ընդ Ակակայ պատրիարքի Կոստանդնուպօլսոյ։ (Տես ԱԿԱԿ)։

## ՊԻՍԻԴԷՍ

(PISIDES)

---

Գէորգ Պիսիդէս՝ բիւզանդացի յոյն քերթող յեօթներորդ դարու, հեղինակ է ընտիր բանաստեղծութեամբ յօրինուած երկասիրութեան մը Յաղագս վեցօրեայ արարչութեանն կոչուած և որոյ հայկական թարգմանութեան մէկ պատառիկը կամ մասը միայն ծանօթ էր մեզ շատ տարիներէ 'ի վեր, և իմաստից և ոճոյ ազնուութեամբ՝ մեծապէս փափաքելի ըրած ամբողջութեան գիւտը։

Այդ ցանկալի և հայկական բանասիրութեան հետաքննական պարգևը կը հասնի մեզ Անտոնեան ուխտին մեծարգոյ հարց մատենադարանէն, զոր շնորհակալու սրտիւ ընդունելով՝ կը փութանք քիչ ատենէն ընծայել 'ի լոյս՝ յօգուտ և 'ի պարծանս հայ դպրութեան, բաղդատելով ընդ յունական սկզբնագրին, որ չափական տուեք յօրինուած է, ուր մեր թարգմանութիւնն՝ բանաստեղծական ոճով և ոգւով, այլ արձակ գրութեամբ է։

Թարգմանութեանս խորագիրն է. Պիսիդեայ իմաստասիրի վեցօրեայ։ Որպէս զի մեծ են գործք քոյ, Տէր։ Սկզբնաւորութիւնն գնենք՝ 'ի Ճաշակ բանասիրաց։

« Ենի բերելով քեզ յանապատէ սրտէ՝ պտուղս մշակեալս 'ի քոյոցդ ցօղոյ. — Քանզի ոչ էր 'ի դէպ փշօք զանգելոյ անձին՝ մշակել խորհրդականի բանի հասկ. — Եթէ ոչ հոտեալ քո զփշացն աղտեղութիւնս՝ հանէր կամ խլեցեր. — Եւ կամ սրագունեւ քոյոցդ աղօթից խոպանացուցեր սրով։

— « Վարկանիմ և զզօրայրին նշանակ՝ լուացաղականն առեալ լինել, յոլովակի այն 'ի վերայ բորոտի յորում աւուր մաքրիցի »։

— « Ջենանի հաւն յաման խեցեղէն... խոցեալ տիգաւ 'ի զաւրականէն ընդոստ աւետարանչին Յովհաննու »։

— « Որպէս ոչ է բաւական եղելոյ առաջնոյ գերծման... զհպարտութիւնն 'ի բաց եդեալ »։

— « Արդ առաջին գառն որ յաղագս յանցանացն... քահանայն որ մաքրէն զմարդն զմաքրեալն և զայն առաջի տեառն »։

— Մեկնութիւն Երգոց երգոյն « Խօսք Որոգինեսի փիլիսոփայի յ'Երգ երգոցին մեկնութիւն »։ Թարգմանութիւն աւելի նորագոյն քան զնախակարգեալ հատուածոցն։

Կը յիշատակուի 'ի տպագիր ցուցակին Էջմիածնի, (Թիւ 1608) իր անունով « Պատճառք չորեքտասան Թղթոցն Պաւղոսի յՈսկեբերանէ, յԵփրեմէ, 'ի Կիւրղէ և յՈրոգինեսէ »։

— « Յառաջաբան նախակարգեալ գրոցն Թագաւորութեանց, զորմէ ասի լինել Որոգինեայ » 'ի գրչագիր աստուածաշունչ մատեանս։

**ՊԱՊԻԱՍ-ՀԻՊՊՈՂԻՏՈՍ.** (PAPIAS-HYPPOLITE). Հատուած մի այս անունով, հայ և լատին թարգմանութեամբքաւ հրատարակեալ. (J.-B. PITRA. Spicilegium, հատոր Գ.) « Արդ է ոստայնն տեառն մերոյ իբրու չարչարանքն »։

**ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑՔ** (LES LITURGIES) տես յ'էջ 248 երկասիրութեանս։

**ՊԵՏՐՈՍ ԿՐԵՏԱՑԻ** (PIERRE DE CRÈTE). — Պետրոսի եպիսկոպոսի Կրետացւոյ յաղագս դրամին և 'ի կրտսեր որդին. (Discours sur le denier de l'évangile, et l'enfant prodigue).

երևելեացս տեսութիւն... որ առաւելագոյն ինչ գործ գործէ »:

— « Ձեռն այսոցիկ ցուցանէ թէ ոչ քահանայիցն կերեալ անկատար էր զոհն... որ ոչ վասն իւրեանց մեղացն բաւական եղեն աղաչել զԱստուած »:

— « Խաւսեցաւ տէր ընդ Մովսէսի և ընդ Ահարոնի, զի մի միայն Մովսէս և մի միայն Ահարոն ուսուսցեն մեզ... ընկեցին զազնիւն յամանս, իսկ զանպիտանն արտաքս ընկեցին »:

— « Յանասնոց որ յերկրիս են՝ են որ մաքուր են և ուտելիք. և են որ ոչ այսպէս... յորոց բազում ինչ մեզ պարգևին պիտանիք »:

— « Հիմ զոր յաղագս մաքրի և անմաքրի բազում անգամ առնէ բան... ո՛րչափ ես հակառակաբար ունիցի առաւել որ առ յԱստուծոյ կամն և գործէ զհրաժարելին »:

— « Ի վերայ հասցուք եթէ ոչ թուեցաւ բաւական որ ըստ գրոյն աւրինաց այսպէս գրել... թէ յորժամ եկն լրումն ժամակին՝ առաքեաց Աստուած զորդին իւր որ եղեւ ՚ի կնոջէ և եմուտ ընդ աւրինօք, և որ զկնին »:

— « Գտանեմք աւրէնս յաղագս բորոտութեան մարդկան կամ մարմնոյ. քանզի խորելի է յորմոյ մարդոյ վերայ ասից... տեսանել զհոգի տիրացեալ կամ վիրաւորեալ յիմեքէ յայսպիսեացս և բժըշկեալ »:

— « Ի ձեռն այսոցիկ գուշակ՝ ոչ պարտ գոլ թագուցանել զմեղս... լի ոսկերաւք մարդկան և ամենայն պղծութեամբ՝ որոյ հոգին է բորոտեալ »:

— « Իսկ զայս նշանակ գոլ որոյ հոգին իցէ բորոտեալ... արտաքոյ կալ հասարակաց ժողովոյ »:

— « Պարտ է նմա և փայտիւ մաքրել եղեւնեաւ... իսկ մանեալն կարմիր՝ տես թէ թուեսցի տիպ գոլ պատուական արեանն »:

— « Վասն այնորիկ տայ զպատարագսն Աստուած գրեթէ ասելով. Տուք յորոց ոչ են ինձ պէտք. զի պահանջեսջիք զբարեպաշտութիւնն, զոր խրատեցայք 'ի ձեռն ձայնի 'ի միջոյ մորենոյն քարոզեցելոյ »:

— « Սեղանն նուիրաց արձան ասիւր. յորոյ վերայ զոհքն և ողջակէզքն, սեղանն, խնկոց սեղանն »:

— « Զընդունելին զոհ՝ այս ինքն զհոգևորականն, որպէս ասէ Պաւղոս. Հոտ անոյշ եմք... և 'ի վերայ բերէ թէ ողջակէզ պատարագաց նորա թէ յարջառոց իցէ նոյնպիսի »:

— « Նախ խնդրելի է յաղագս ասացելոցս թէ զինչ է Եւ արասցեն յամենայն պատուիրանաց տեառն որ ոչ առնիցի... և քաւեսցէ վասն նորա քահանայն 'ի մեղաց անտի իւրոց և թողցէ նմա »:

— « Մեռելոտի ասէ զԱստուծոյ մեռեալն մարդ... ըստ ասացելոյն Զմարդիկ և զանասուն կեցուցանես դու տէր »:

— « Ունիմք ասել թէ և վասն կերակրոյ պատճառի քահանայիցն յաւէտ էին զոհքն... զի զոր ինչ զոհէ ոք՝ ոչ երկրպագէ նմա և ոչ համարի աստուած գոլ զոր զոհէն Աստուծոյ »:

— « Արիւնն՝ կեանք կենդանւոյն մահկանացուի, իսկ ճարպ՝ բարւոք ունակութիւն... և բոլորովին 'ի գաւաճանելոյ զմարդիկ »:

— « Ի ձեռն նշանակաց 'ի բաց հրաժարեցուցանէ զամենայն պատճառ թմբրեցուցիչ հոգւոյն... ոչ միայն 'ի գինւոյ՝ այլ և որ 'ի գործոյ և 'ի խորհրդոց և 'ի պարապմանց մարդկայնոց »:

— « Ոչ որպէս յանտեղւոյ հրաժարեցուցանէ, այլ զժուժկալութիւնն պիտէր զխորայեղացուցն... զգաստք եղիցեն հոգւոյ սուրբութեամբ, և նուէրք յիշմամբ Աստուծոյ »:

— « Զի զտեսութիւն սրբոյն տացեն որոշել և զատել, քան զոր յաղագս տարբերց աշխարհիս և

աշխարհի. իսկ զառաքինութիւն Աստուծոյ. և առաքինութիւն և չարութիւն 'ի միասին բնակել ոչ կարեն. ուրեմն ապա թշնամիք են »....:

— Այլ հատուած 'ի նոյն գրոց. (Autre fragment du même livre). « Որ յաղագս մեղաց սիրէ զաշխարհ, թշնամի գտանի Աստուծոյ. սոյնպէս և որ զառ Աստուած սէրն բարեպաշտութեամբ հաստատէ, վաղվաղակի թշնամի գտանի աշխարհի »:....

— Միւս այլ հատուած 'ի նոյն գրոց. (Autre fragment). Թէպէտ և պատշաճապէս զօրութիւն բանից. եգան քննութիւնքդ, սակայն հարկաւոր համարեցայ և զայս յաւելուլ վասն մեկնութեան և ունկնդրողաց ». (բաւական երկար հատուած մը):

— Հատուածք 'ի խմբագիր մեկնութեանն Ղեւտական գրոց. (Fragments du Commentaire de livre Lévitique). (Տես Ղեւտականի մեկնութիւն). « Ղեւտական գիրքս մի են 'ի հինգից գրոց զոր գրեաց Մովսէս եբրայեցւոց աւրէնսգիր. քանզի ոչ ոք նախ աւրէնս գրով առ յԱստուծոյ եառ. վասն զի զքահանայութեանն և զպատարագաց... Եւ ոչ ինչ է սքանչելի. քանզի մակագրութիւն է իւրաքանչիւր գրոց յայտնի ինչ 'ի նմայն ծայրագունից ». (ապա կարմրագեղով). « Ոչ միայն ուղղափառացն եգեալ է զմեկնութիւն, այլ և հերձուածողացն բազում ինչ համաձայն »:

— « Բազում յաղագս պատարագաց զանազանից բանի գրեցելոյ 'ի Ղեւտականիս, զոր որք ոչ անսանեն՝ արհամարհեն, կամ որպէս զանարգ աւրինադրութիւն... բայց փառաւորելով և աւրհնելով զիմացուածս նորա ասէ եւս. Պատուիրանն սուրբ և արդար և բարերար »:

— Աստուած զՄովսէս ամենայն ուրեք նախ կոչէ, որպէս և 'ի մորենւոյն. քանզի գիւային բազմութեան նուէրք կատարին՝ ըստ որում անգոանէն Պորփիւրոս »:

նայ։ Այդ ԺԶ — ԻԳ առակք՝ մասն են Աղուեսագրոց, կամ Վարդանայ առակաց»[1]։

Մեր տպագրին մէջ յանուն Ողոմպիանու հրատարակուած են հետեւեալքն՝ ըստ թուոյ առակաց. 16, 17, 18, 19 21, 22, 23. իսկ 'ի տպագրին Սէն-Մարթէնի Վարդանայ կ'ընծայուին 8, 19, 22, 23, 28, 37. նոյնպէս և յԱղուէսագիրս (տպ. 1668) 34–40 թուանշանները կրողք։

# ՈՐՈԳԻՆԷՍ

(ORIGÈNE)

---

Համբաւաւոր մատենագիր եկեղեցւոյ (185 – 253)։ Հատուածք միայն իր բազմաթիւ և իմաստուն երկասիրութեանց հասած են առ մեզ հայ թարգմանութեամբ։ Ասոր պատճառը կը համարիմք ենթադրել իր անուան և հռչակին փառաց հետ՝ գրուածոց կրած հակառակութիւնն՝ անդստին 'ի ժամանակակցաց և 'ի նախանձորդաց հեղինակին, և իրեն ընծայուած մոլորամիտ վարդապետութիւնք, յորոց նախնիք մեր ուղղախոհք՝ լաւ համարեր են զգոյշ կենալ և զգուշացընել զազգն։

Նշանակենք համառօտիւ առ մեզ գտնուած և իրեն անուանը վերագրուած հետաքննական հատուածքն՝ գնելով անոնց սկզբնաւորութիւնն և վերջը։

— Ի խմբագիր մեկնութեանց կաթուղիկէ թղթոց. (Փարիզեան ազգային Մատենադարան, Suppl. 48)։ (Fragments d’un Commentaire sur les epîtres catholiques). — « Քանզի զչարութիւն սահմանի սէր

1 ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՌԱՔՆՆՈՒԹԻՒՆ, 51։

— *Շարագրութիւն հայրապետացն Հռովմայ.* (Série des Pontifes de l'Église de Rome). *որ սկսեալ 'ի սրբոյն Պետրոսէ՝ կը ժամանէ մինչև յԻննովկենտիոս Գ... « Իննոցենց Գ. որ այժմ հովուէ. առ որ յառաջեալ երթամք հրեշտակութեամբ 'ի Թագաւորէն Հայոց 'ի Լեւոնէ, ես Նուաստ Հեղի. որ և թարգմանեցի զսա 'ի հռովմայականէն 'ի մերս. յորժամ էաք նաւարկեալ մերձ յաշխարհն Բոյլեաց, որ կոչին Լունկուպարդք, յաւուր պէնտակոստէից 'ի յունիսի 'ի հինգն. և 'ի Թուականիս Հայոց ՈԾԹ. 'ի փառս Քրիստոսի Աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս. ամէն »:*

# ՈՂՈՄՊԻԱՆՈՍ

( OLOMPIEN )

---

*Ողոմպիանոս՝ յոյն մատենագրի մը անուամբ քանի մը ընտիր և իմաստուն առակք գտնուած են 'ի հայ գրչագիրս, և որդէն ծանօթք բանասիրաց՝ հրատարակութեամբ 'ի մեր մամլոյ, Մխիթարայ Գոշի առակաց հետ* (1842):

*« Ասոնց թարգմանութեան ժամանակն յայտնի չէ. բայց կրնանք կարծել որ հինգերորդ դարէն առաջ է. վասն զի Թովմա Արծրունի իր պատմագրութեան մէջ* (*Գիրք Ա.* 137) *կը յիշէ երեքտասաներորդ առակը. վայելչութիւն դարձուածոց, ընտրութիւն բառից, համառօտ և կորովի ոճ մը, մասնաւոր համեղութիւն մը կ'ընծայեն այս հնգետասան առակաց: Հնգետասան կ'ըսեմ, վասն զի սկսեալ վեշտասաներորդէն՝ հայերէն լեզուն բոլորովին կը փոխուի, կ'անզարդանայ, կ'անշքի, պարզ ըսեմ՝ կը ռամկա-*

# ՇԱՐԱԴՐՈՒԹԻՒՆ ԻՆՔՆԱԿԱԼԱՑՆ ՀՌՈՎՄԱՑ

(SÉRIE DES EMPEREURS ROMAINS)

---

Ի չարս հայ գրչագրաց Վատիկանեան մատենադարանին 'ի Հռովմ՝ կը գտնուի այս խորագիրը ունեցող համառօտ գրուած մը կամ ցուցակ կայսերաց, 'ի լատին լեզուէ թարգմանուած 'ի մերս 'ի ՈԾԹ (= 1210)։ Կը սկսի յԱւգոստոս կայսերէ, ու կը շարունակէ կարգաւ. Նիկիոյ երկրորդ ժողովէն ետքն ալ կը յարէ զինքնակալս Գերմանացւոց, մինչեւ 'ի թուական թարգմանութեանն։ Այս վերջին մասը ինքնագիր կ'երեւնայ. և այսպէս կը յաւելու.

« Ֆիլիպն եղբայր սորա և Աւգ ընտանի և հակառակ սորա։ Ի սոյն ամի սպանաւ Ֆիլիպն յիշխանէ ումեմնէ, և մնաց ինքնակալութիւն Աւգին. առ որ ճանապարհորդեմ ես նուաստ Հէղի հրեշտակութեամբ, 'ի թագաւորէն մերմէ Լեւոնէ. առ վերոյգրեալ կայսրս Աւգ. և 'ի վերայ ծովու 'ի նաւարկութեանս մերոյ թարգմանեցի զսա 'ի հռովմէականէն 'ի մերս. 'ի թու. Հայոց ՈԾԹ։ Իսկ արարեալ մեր առ սմա նորա ամ մի և ամիս երեք, դարձոյց զմեզ հարկզք առ թագաւոր մեր, արձակելով ընդ մեզ և թագ արքայական բազմածախ և բազմագին յականց պատուականաց և 'ի մեծագին մարգարտից ընդելուզեալ։ Զոր բերեալ մեր մեծաւ ուրախութեամբ՝ ընկալաւ թագաւորն մեր և պսակեաց ընդիր պսականն գեղեցիկ զՌուբին, որդի դստերն եղբօր իւրոյ և որդի բըրինձին Անտիոքայ Ռէմնդին. 'ի թու. Հայ. ՈԿ 'ի տօն սուրբ Աստուածածնին յաւգոստոսի ԺԵ։ Եւ թագաւորէ ընդ իւր Հայոց 'ի կամս Աստուծոյ »։

*տուեալ լինէր »: — ԻԲ. « Յաղագս Պանեայ և Պրիապոսի: Յաղագս Պանեայ ասացեալ է. իսկ յաղագս Պրիապոսի ասի »: — ԻԳ. Յաղագս կտտրեալ և օշոտեալ աստուածոցն, որ ինձ թուի յաղագս ատտանայն և Դիոնիսեայ. և է ըստ այսմ յեղանակի: Պերսեփոնիայ ծնաւ զԱգդիոս և զԴիոնեսիոս »: — ԻԴ. « Յաղագս Կովկիտոսի և հրաբոց կիզանողի: Պղատոն 'ի Ճառին որ Փիգոն անուանի »: — ԻԵ. « Յաղագս Տանտաղոսի և Տիտիոսի և Իքսիոնսի: Իսկ Տանտաղոս »: — ԻԶ. « Յաղագս հարթման լերգին, և յաղագս Պոլիմիւթեայ: Այդ Պոլիմիւթոսս այս »: — ԻԷ. « Յաղագս Կիկլոպեայ պատուոյն: Կիւկլոպոսս այս ասի գիւցազն գոլ »: — ԻԸ. « Յաղագս Հերակլեան արձանացն: Հերակլէս 'ի կողմանս Գադիրոնի »: — ԻԹ. « Յաղագս Ադոնիսեայ և Աֆրոդիտեայ: Միւռիա կին Իւռոսի լեալ »: — Լ. « Յաղագս Պանտիոնի: Պանտիոն եղեւ թագաւոր աթենացոց »: — ԼԱ. « Յաղագս Պրովպոսի: Այս պատկեր ինչ է »:*

**Յաղագս որ 'ի սրբոյն Կիւրիանոսի ճառին գրեալ է հեթանոսականացն իւրաց բան.** *« Ոչ ոստ ձիթենւոյ ողոմպիական, — Ոչ իսթմիական շոճի, — Ոչ խնծորք դելփիականք խաղալիկք, — Ոչ նեմէական լախուր »: — « Այդ սակ վէհն Գրիգորիոս ցուցեալ Կիպրեանոս, ո՛վ աստուածային և քահանայական գլուխ, ոչ ինչ յայնպիսի անուտ պարգևաց մատուցանեմ քեզ. այլ բան՝ որ քան զամենայն ինչ ընտանեգոյն է բանից սպասաւորաց. և յիրաւի եւս արդեւք. քանզի չէք ինչ յարարածս ընտանեգոյն վարդապետին իբրև զբանս իւր. և մանաւանդ սուրբ լուսաւորչին Գրիգորի աստուածաբանի և իմաստուն վարդապետի »:*

դուստր էր Մինովայ »։ — Բ. « Յաղագս Սազմանե-
ան և արշաւակաչեացն որոտմանց։ Սազմանէս որդի
էր Էովլոսի »։ — Գ. « Յաղագս բաբելացոյն Զով
ափուսի։ Քանզի բազում ժամանակս մարանչելով »։
(Յոյնն յեջ 316)։ — Դ. « Յաղագս Կիւրոսի և Պաւ-
րիստայ մոր իւրոյ։ Փոքրն Դարեհ որդին Քսերքս-
եայ »։ — Ե. « Յաղագս սամեացոցն գոռոզութեան։
Իսկ Յիստէոս սամեացի էր ազգաւ »։ — Զ. « Յա-
ղագս հարիւրաձեռացն։ Ասացաւ այս յառաջնում
Ճառին »։ — Է. « Յաղագս ամբովոին։ Ամբովոն
որպէս ասացաւ »։ — Ը. « Յաղագս ասելոյն թէ ով
ընկեր՝ դու ուժգին ես 'ի նախըմբելու և 'ի կոկորդելու։
Պղատոն և ամենայն իմաստասէրքն »։ (Յոյնն յեջ
317)։ — Թ. « Յաղագս որկորամէտութեան գիւաց։
Է և այս իսկ հաւտոսի ». — Ժ. Յաղագս ոչ բար-
բառելոյ կաղնոյն և ոչ կաթսային դիւթանալոյ։
Դոդոնէ քաղաք է չինեալ 'ի ցամաքի »։ — ԺԱ.
« Յաղագս Պիւթեայ։ Փովկիդէ գաւառ է յԵլլա-
դա »։ — ԺԲ. « Յաղագս Կաստաղեայ։ Էր աղբիւր
յԱնտիոք »։ — ԺԳ. « Յաղագս անդրոյն որ 'ի նոյն
տեղւոջ, և թէ զխօրդ բարբառէր։ Պարտ է կար-
ծել զանդրիանդս զայն »։ — ԺԴ. « Յաղագս դափ-
նոյն որ Թարգմանի մարտ։ Եւ է առասպելս այս »։
— ԺԵ. « Յաղագս Դիոնիսեայ այլրակին գոլոյն։ ԶԴիո-
նիսեայ ասեն թէ զարանց իւս գործէր »։ — ԺԶ.
« Յաղագս բարձաբեկութեան Հեփեստեայ։ Կաղ էր
Հեփեստոս »։ — ԺԷ. « Յաղագս թէ որպէս Աթե-
նաս կոյս գոլով ծնաւ վիշապ։ Զեւս կամեցեալ յուզ-
ղոյն իւրմէ »։ — ԺԸ. « Յաղագս Հերակլի մոլու-
թեանն։ Մեգարէ կոչեցեալ դուստր Կրոնտոսի »։
— ԺԹ. « Յաղագս չիրմին Արամազդայ որ 'ի Կրետէ։
Ասի Զեւս 'ի Կրետանս մնանիլ »։ — Ի. « Յաղագս
պատուելոյ եգիպտացոցն զՆիղոս։ Զայսոսիկ Հե-
րովդոտոս ոչ ասէ »։ — ԻԱ. « Յաղագս Իսիս պա-

րի պատառեսցին և հրապարակեսցին գձոխք։ Եւ այս 'ի Հոմերոսի հաղներգութիւնս գրեալ է »։ — ՀԷ. « Ցաղագս մեծութեան յունիցն, և կարճութեան հերացն։ Հոմերոս 'ի ներքս մուծանէ թէ Արամազդ »։ — ՀԸ. « Ցաղագս թէ զիարդ խոցեալ լինի Արէս, կամ որպիսի պղնձախեցի զընդանեալ։ Արգ զվէրս նորա առնուլ ասէ քերթողն »։ — ՀԹ. « Ցաղագս Հեփեստոսի և Ափրոդիտեայ։ Ափրոդիտէս կին էր Հեփեստոսի »։ — Ձ. « Ցաղագս մարտիցն։ Իսկ Աթենայ և Հերայ »։ — ՁԱ. « Ցաղագս Կռոնայ և հաստմանն երկնի։ Երկին հայր լինէր Կռոնոսի »։ — ՁԲ. « Ցաղագս Արամազդայ ընդ Կռոնի հակառակութեան։ Զեւս իմացեալ թէ այնպէս »։ — ՁԳ. « Ցաղագս Կերդովս աստուածոյն։ ԶԿերդովս աստուած կոչէին Ելլենացիքն՝ որ է Հերմես »։ — ՁԴ. « Ցաղագս ամենայն ինչ լինելոյն վասն կանանց։ Ցաղագս Արամազդայ ասի թէ արծուի լեալ »։ — ՁԵ. « Ցաղագս մակահատանելոյ 'ի ցասմանէ զԱրէս. և յայտնի է այսպէս։ Քանզի ասի վերատեսուչ մարտից Արէս »։ — ՁԶ։ « Ցաղագս որբեցութեան Դիոնիսեայ։ Ասի թէ որթոյ վերատեսուչ էր Դիոնեսիոս »։ — ՁԷ. « Ցաղագս հիւրատեցութեանն Արտեմիդեայ։ Ասացաք յաղագս Իփիգենեայի »։ — ՁԸ. « Ցաղագս հրամանատրութեանն Կրիւսոսի։ Ապողոն դիւթելով ոչ հաւաստապէս »։ — ՁԹ. « Ցաղագս Հեփեստի ծաղուն անչափութեան։ Ցաղագս Հեփեստոսի յորժամ յորոգայթս »։ — Ղ. « Ցաղագս առ պարարտագոյն կերակուրսն ընթանալ Զեւսի։ Պատմէ Հոմերոս եթէ Զեւս չոքաւ յԵթովպիա »։

Նմանապէս պատմութիւն և այնոցիկ որ յերկրորդում արձանականին առասպելացն զորս յիշէ սուրբն Աստուածաբան։ — Ա. « Ցաղագս Արիադնայ պսակին և Բերենիկեայ հիւսակին. և կարապին և ցլուն և առիւծուն և օձակալին, որք են այսպէս։ Արիադնա

Որփեւս Թրակացի էր ազգաւ »: (Յոյնն 312): — ԿԳ. « Յաղագս զոհելոյն և աստեղաբաշխութեանն և երկրաչափութեանն: Ոչ է անհաւատալի եթէ ըզ-զոհելն գտին քաղդէացիք »: — ԿԴ. « Յաղագս ե-բազադիւթութեան: Տելմեսոս՝ քաղաք է լիւկիա-ցւոց »: (Յոյնն 313): — ԿԵ. « Յաղագս հմայակա-նին: Արգ. ասի փռիւգացոյն գտանել զհմայականն »: (Յոյնն 313): - ԿԶ. « Յաղագս 'ի վերայ յառնելոյն իւրեանց տերանցն: Ճարակող սկիւթացոցն մասն ինչ ելեալք յածեալք »: (Յոյնն 314): — ԿԷ. « Յաղագս Թետաղական երիվարին և ղակեդմոնացի կնոջն: Ամ-նայն քաղաք ըստ առաւելութեան ունի ինչ »: (Յոյնն 315): — ԿԸ. « Յաղագս Պղատոնի բանիւ քաղա-քացն: Պղատոն իմաստասէր շարագրեաց գիրս, զոր և քաղաքավարութիւնս անուանեաց »: (Յոյնն 316): — ԿԹ. « Յաղագս Իսիոդի աստուածածնութեանն: Իսիոդոս մի էր 'ի պերճացեալ քերթողացն, որոյ յարգեալ լինին երէք քերթուածք »: — Հ. « Յաղագս Որփեայ հանդերձ քնարաւն: Որփեւս երաժիշտ նա եղև »: — ՀԱ. « Յաղագս Փանեսի և Երիկապէոսի. (Περὶ τõυ ο Ψάνης καὶ ʻο Ἥρι καὶ ʻο Παῖος). « Յորփիա-կան քերթուածսն 'ի ներքս մուծանին »: (Յն. 315): — ՀԲ. « Յաղագս Հոմերոսի և նորին բազմահնչակ պատ-մութեան: Քանզի 'ի քերթուածսն իւրում 'ի վեր և 'ի վայր զԿռոնոս և զԱրամազդ առասպելաբանէ »: (Յոյնն 316): — ՀԳ. Յաղագս Ովկիանոսի և Թետեայ: « Եւ զայս զառասպել 'ի ներքս մուծանեն քերթող-քըն »: (Յոյնն 316): — ՀԴ. « Յաղագս ամբայարուցին Ձեւսայ առ Հերաս: Է առասպել ինչ ստեղծեալ վասն այսր: » — ՀԵ. « Յաղագս Թէ որպէս Հերա զեթերէ և զամպոց կախեալ, և երկաթի շանթիւք 'ի վայր ձգեալ: Հերա՝ որպէս բազում անգամ գիտասցաք, նա-խանձայոյզ էր Հերակլեայ »: — ՀԶ. « Յաղագս Թէ զիարդ երկիւղ էր աստուածոցն գուցէ փողելով երկ-

գոլով՝ խոկայր բազմատեսակ մտածութիւնս և տանջանարանս »։ — ԽԶ. « Յաղագս Հիւդրաայ։ Առասպելեալ եղև գազան ինչ 'ի լեռնէ »։ — ԽԷ. « Յաղագս պատրիկեցի քիմեռին։ Է լեառն յորում երևեցաւ գազան ինչ, որոյ առաջին կողմն առիւծու և վերջինն վիշապի »։ — ԽԸ. « Յաղագս Կերբերոսի։ Առասպելեալ լինի թէ է ինչ շուն, որ ունի գլուխս երիս, որ և կոչի եռանիգ »։ — ԽԹ. « Յաղագս կոչեցելոյն կորիւն։ Առասպելեալ լինի և այս. 'ի տիւռենական ծովուն գազան ինչ գոլ։ (Յն. σκύλλα, կորիւն. յէջ 160)։ — Ծ. « Յաղագս Քարիբգին։ Այս սիկելական և տիւրենական ծովուն է խոր ինչ »։ (Յն. 161)։ — ԾԱ. « Յաղագս գժոխային ծածկութին։ Հոմերոս քերթող 'ի ներքս մուծանէ զԱրամազդ »։ — ԾԲ. « Յաղագս լիւդացւոց անիծելոյն զՆիւթինաս։ Լինդոս հին քաղաք է 'ի յՌոդոս »։ — ԾԳ. « Յաղագս առ տաւրացին աւտարասպանութեան։ Այժմիկ ասացաք եթէ 'ի Սկիւթիա ազգ ինչ է »։ — ԾԴ. « Յաղագս ընկենլոյն 'ի Կինովսարգէս։ Կինովսարգէս աւքի ինչ է յԱթէնս »։ — ԾԵ. « Յաղագս Պաղամիդեայ։ Ասի թէ Պաղամիդէս եւրիացի էր ազգաւ »։ — ԾԶ. « Յաղագս Ճային և թեւոցն հաւաքման։ Ընդրութիւն էր. ասէ, յաղագս գեղեցկութեան հաւուց »։ — ԾԷ. « Յաղագս պառաւուն որոյ ուպքն սասանեցան։ Կին ոմն կոչեցեալ որպէս ոմանք ասեն Սեբելա »։ — ԾԸ. « Յաղագս կիկլոպեանցն։ Ի Սիկիլիա կղզւոջ առ լեռնակողմամբքն բնակեալ ասին Կիկլոպեանքն »։ — ԾԹ. « Յաղագս ծիրանոյն։ Ի Տիւրոս առ ծովեզերբն հովուական քած շրջելով »։ — Կ. « Յաղագս երկրագործութեան և նաւակառութեան։ Դեմետր ունէր դուստր զՊերսեփոնէ »։ (Յոյնն 172, 173)։ — ԿԱ. « Յաղագս Կելլեսիոսի և Իկարիոսի։ Արդ յաղագս Կելլեսիոսի նախ ասացուք »։ — ԿԲ. Յաղագս կրաւնս և խորհուրդս կատարելոյն։

թենի։ Անգիսթենէս չնական իմաստասէր, հարեալ և գան առեալ 'ի դէմն »։ (Յոյնն 310)։ — ԼԱ․ « Յաղագս իմաստասիրին կայելոյ յարևուն զօրն ամենայն։ Մարտուցեալ լինելով Հռոմայ 'ի բարբարոսաց »։ — ԼԲ․ « Յաղագս Պոլտիգեայ։ Պոլտիգէ քաղաք է չինեալ 'ի Թիրակ։ (Յոյնն 310)։ — ԼԳ․ « Յաղագս արկադական խնդրոյն։ Հոմերոս քերթողն Յոգաւ 'ի գաւառն արկադացոց, որ է Պելոպոնեսոս »։ — ԼԴ․ « Յաղագս Արիստոտելի և Եւրոպի։ Արիստոտելէս իմաստասէր աշակերտ լեալ Պղատոնի »։ — ԼԵ․ « Յաղագս չորհորին Կլանթեայ։ Կղլանթէս մի էր 'ի չնական իմաստասիրացն »։ — ԼԶ․ « Յաղագս Հերակլիտեայ թշուառութեանն։ Հերակլիտոս և Դիմոկրատէս, ոչ 'ի միում ժամանակի լեալք. այլ բնաբանական գոլով »։ — ԼԷ․ « Յաղագս սեւայատակացն և անյատակացն։ Եւ են ոսքա զանազան 'ի միմեանց »։ — ԼԸ․ « Յաղագս անպարկեշտին Պանեայ։ Պենելոպէ կին էր Ոդեւսիայ »։ — ԼԹ․ « Յաղագս Բիւթենայ և Հերակլեայ որ կոչեցաւ այսպէս։ Բիւթենեայ՝ որ Թարգմանի եզնաճաշակ »։ — Խ․ « Յաղագս եռերեկէին։ Ասի Հերակլէս յերիս երկուս »։ — ԽԱ․ « Յաղագս Իգոմլիանոս և Կոմսիտաւրոս կոչելոյն զՅուլիանոս։ Քանզի Յուլիանոս զանուն քրիստոնէից 'ի գալիլիացիս փոխադրեաց, արդ աստուածային Գրիգորիոս՝ կամեցեալ խաղ առնել և ասել »։ — ԽԲ․ « Յաղագս Կերդաղեայ։ Կերդաղ (κερδαλή) կոչի աղուէս. աստուստ նման ասի լեալ առ Յուլիանոսի բարքն »։ (Յն․ 183)։ — ԽԳ․ « Յաղագս սեռոտանն և Պրովտիայ։ Պրովտէոսս այս էր Թրակացի. զօրոյ զօրդիսն սպան Հերակլէս »։ (Յն․ 118,119)։ — ԽԴ․ « Յաղագս յետնացի հրոյն։ Սիկիլիա կղզի է յետնադոյն տրամակայեալ յԻտալիա »։ — ԽԵ․ « Յաղագս Էքտոսի և Փաւլաւիգոսի ամարդութեանն։ Էքտոսս այս բանաւոր էր ցամաքին. սա խատադոյն

գըս վաղիցն Կլէոմբրոտոսի։ Կլէոմբրոտոս ամբ-ծիւկեցի էր ազգաւ, որ է քաղաք հին ցամաքին »։ (Յոյնն 257)։ — ԺԷ. « Յաղագս պիթագորական ոլոռանցն։ Պիթագորականքն իմաստասէրք յառաջ եկեալք 'ի Պիթագորէ սամէացոյ »։ (Յոյնն 309)։ — ԺԸ. « Յաղագս Թէանոյ պիւթագորական կնոջ։ Կին այս Թէանովն 'ի բռնաւորէ ումեմնէ ըմբռնեալ »։ — ԺԹ. « Յաղագս Եպամինոնդայ և Սկեպիոնի։ Եպամինոնդաս Թեբայեցի էր ազգաւ՝ զաւրավար մեծագոյն »։ (Յոյնն 310)։ — Ի. « Յաղագս անոտնալըւայեցն և գետնախշտեացն։ Ի Հոմերոսէ քերթողէ գրեալ են թէ սեղք ազգք են գոգոնացեք »։ (Յոյնն 171)։ — ԻԱ. « Յաղագս Սողոնի անյագութեանն։ Սողոն աւրէնսդիր էր աթենացոցն. սա խնդրելով գնել զաւրէնսն՝ պահանջեաց 'ի քաղաքացեացն երդումն »։ — ԻԲ. « Յաղագս Սոկրատայ գեղեցկասիրութեանն։ Սոկրատէս իմաստասէր գոլով շրջէր 'ի մէջ ամբոխին, և զչնամբական յորդորէր յիմաստասիրութիւն »։ — ԻԳ. « Յաղագս Պղատոնի ագահութեանն։ Պղատոնի իմաստասիրիլ լուեալ թէ մեծաքանութիւն (այլ օր. մեծաբնութիւն) է Դիոնեսիոսի »։ — ԻԴ. « Յաղագս Քսենոկրատեայ Թոշակակերութեանն։ Քսենոկրատէս և Արիստոտէլ Պղատոնի էին աշակերտք »։ — ԻԵ. « Յաղագս Դիոգնեայ խառնախաւսութեանն։ Դիոգնէս շնական էր իմաստասէր »։ — ԻԶ. « Յաղագս բնակելոյն 'ի կարաս, զոր և բազմագիմի հնար է մեկնել, զի և այս յաղագս Դիոգնեայ է։ Արգասի թէ սա յաւուրս Ճմեռայնոյ »։ — ԻԷ. « Յաղագս Եպիկուրեայ։ Եպիկուրոս իմաստասէր էր, և այնպէս կարծէր թէ աստանաւր իրողութեանցն՝ Աստուած նախախնամութիւն ոչ առնէ »։ (Յոյնն 259)։ — ԻԸ. « Յաղագս Կրատեսի։ Կրատէս Թեբայեցի էր բիովտացի ազգաւ »։ — ԻԹ. « Յաղագս աղաբողոնին։ Ծնական իմաստասէր ոմն »։ — Լ. « Յաղագս Անգիս-

այս. զայսոսիկ խաղ արասցեն առ Նոքաւք Եմբեգոկլեանք ոմանք և Արիստեանք»։ — Բ. «Յաղագս Պոլբետայ։ Պոլբէսս այս Թրակացի էր ազգաւ, և ունէր որդիս երկու»։ (Յոյնն 118)։ — Գ. «Յաղագս Հերակլեայ խարուկին։ Ուժգին Ճառս հրատարակեալ լինի զՀերակլեայ»։ (Յոյնն 96,97)։ — Դ. «Յաղագս Պելոպայ խահագործութեան՝ զոր յառաջին ասացեալսն գրեցաւ՝ նոյն է և այս. գտանես յիններորդ կարգին համարոյ»։ — Ե. «Յաղագս աւշատամանցն փախուգացոց։ Առ փախուգացիսն պաշտեալ լինէր մայր աստուածոցն Ռիա»։ — Զ. «Յաղագս Միթրոսի։ Միթրոսս այս կարծի Պարսից արեգակն գոլ»։ (Յոյնն 386)։ — Է. «Յաղագս տաւրացոցն աւտարասպանութեան։ Տաւրոսք ազգ են սկիւթացոց, առ որս փոխադրեցաւ 'ի ձեռն Արտեմիդայ Իւփիւգինեա դուստր Ագամեմնոնի»։ (Յոյնն 181,385)։ — Ը. «Յաղագս տրովացի զենմանն Թագաւորական աղջկանն Պաւղէքսինիսի։ Պաւղէքսինէոսս այս էր դուստր Պրիամու»։ — Թ. «Յաղագս Մենուկեայ։ Մենուկեւս որդի էր Կաւնդոսի Թագաւորին Թեբայեցոցն։ — Ժ. «Յաղագս Սկեդաւոսի դստերացն։ Լակեդոմոնացիքն՝ 'ի պելոպոնեան պատերազմին՝ յետ ամենևին յաղթելոյն աթենացոց խորհեցան և ընդ մարտակիցան իւրեանց մարտնչել»։ — ԺԱ. «Յաղագս լակոնական համբակացն։ Լակեդոմոնացոցն ախորժելով ժուժկալս և արիս գոլ զիւրեանց քաղաքացիս»։ — ԺԲ. «Յաղագս արիւնաուշտ լինելոյն առ բագնաւքն Արտեմիդայ։ Կոյս գոլով և ողջախոհ աստուածուհին՝ ուրախանայր արեամբ սպանութեանն»։ — ԺԳ. «Յաղագս Կոնիոնին Սոկրատայ։ Սոկրատէս այս էր ազգաւ աթենացի»։ — ԺԴ. «Յաղագս սրուացն Եպիքիւրոսի։ Եպիքուրոսս այս իմաստասէր էր»։ (Յոյնն 206)։ — ԺԵ. «Յաղագս Անաքսարքեայ։ Անաքսարքոս իմաստասէր էր»։ (Յոյնն 206)։ — ԺԶ. «Յաղա-

գերհիւսիսային անձն էր. և են գերհիւսիսայինքն ելլենախօսք »։ (Յոյնն 181)։ — ԺԱ. « Յաղագս Պեգասոսի որ հաւասարի յաղագս Բելլերոփոնտեայ։ Քանզի պատարային քիմերին վերասին բուսանելով »։ (Յոյնն 378. Περὶ τοῦ Πηγάσου·· Τις παρικῆς χιμαίρας ἀναφυείσας)։ — ԺԲ. « Յաղագս Ալփիոսի։ Ալփիոս գետ է արկադացոց »։ (Յոյնն 198, 375)։ — ԺԳ. « Յաղագս լեւգացի կառացն որ է առակ վասն մոքառել կամողաց և հասանելով կարողաց։ Ասի յառակն այսպէս. 'ի լեւգացի կառացն սկսանելով, քանզի արագագոյնք են »... (Յոյնն 308)։ — ԺԴ. « Յաղագս Ովրեստեայ և Պիլադեսի։ Ովրեստէսս այս որդի էր Ագամեմնոնի »։ (Յոյնն 308)։ — ԺԵ. « Յաղագս մողոնէտեանց։ Մողոն էր կին անձն ընակեալ »։ (Յոյնն 224)։ — ԺԶ. « Յաղագս լամբիւրինթին։ Ի կղզիջն Կրետէ լեառն անձն է յորում է այր ինչ դժուարին և քարանձաւ »։ (Յոյնն 378)։ — ԺԷ. Յաղագս Մինովսի և Հռադամանթեայն։ Մինովս և Հռադամանթէ ասին գոլ որդի Արամազդայ »։ (Յոյնն 214, 215)։ — ԺԸ. « Յաղագս Գադիրայ։ Տեղի ինչ է 'ի կողմանս մտիցն արևու »։ (Յոյնն 379)։ — ԺԹ. « Յաղագս երիվարին որ զկապն խզէ։ Հոմերոս քերթող կամեցեալ զԴովմիդա (յն. 'Αλέξανδρον) զօրութիւնն »։ (Յոյնն 379)։ — Ի. « Յաղագս սերմանելոյն և բուսանելոյն միաւորեայ հսկայիցըն։ Ի Թեբասս բնովտացոց ասի թէ Կադմոս և կամ այլ անձն »։ (Յոյնն 379)։ — ԻԱ. « Յաղագս եւթնադրուռն Թեբայ և եգիպտացոյն։ Աստուածային Գրիգորիոս յաղագս հրաշից ասասնաւոր կամեցեալ ինչ ասել »։ (Յոյնն 379, 380)։

Մեկնութիւն այնոցիկ առասպելաց, որ և յառաջնումն Յուլիանոսի յարձանականին եղեն յիշատակեալ առ 'ի պատմութեանցն։ « Արձանական բանն պարսաւ է Յուլիանոսի գործոցն, այլ զանազանի 'ի պարսաւէ արձանականն »։ — Ա. « Առաջին պատմութիւն է

Ասոնցմէ ետքը նոր գլխակարգութիւն մը հետևեալ խորագրով. Հաւաքումն Մեկնութեանց առասպելացն զորս յիշատակեաց Գրիգոր Աստուածաբանն 'ի գերեզմանական բանին սրբոյն Բարսղի. և սկզբնաւորութիւնն. « Հռետորքն և սոփեստոսք արտաքնոցն, շատ 'ի նոցունց ներբողեալն կամելով ազնուականս ցուցանել »: (Յոյնն առ Մայի Spicilegium Romanum. Բ. 374): — Ա. « Արդ ասասցուք յառաջագոյն թէ ով ոք էր Պեղոպոս »: (Յոյնն 375): — Բ. « Իսկ յաղագս Կիկլոպսի ասել կայ ասասիկ: Կիկլոպս թագաւոր էր աթենացւոց »: (Յոյնն Περὶ τοῦ Κέκροπος, 375): — Գ. « Այլ և Ալկմէոն՝ աթենացի էր ազգաւ »: (Յոյնն 376): — Դ. « Արդ Էակոս չորրորդ մեզ ենթակայեալ լինի »: (Յոյնն 377): — Ե. « Արդ լիցի մեզ այսուհետև ենթակայեալ Հերակլէս. և սա որդի գոլ Արամազդայ »: (Յոյնն 377): — Զ. « Յաղագս եղջերուահարացն, Ովրիոնի և Ակտէոնի: ԶԱրտեմիս ասեն որսոյ և աղեղնաւորութեան վերակացու գոլ »: (Յոյնն. Περὶ τῆς Ἐλαφηβόλου, καὶ Ὠρίωνος, καὶ Ἀκταίωνος, 377): — Է. Յաղագս փոխադրութեան եզինն ընդ կուսին՝ որ է եղեալ յեւթներորդում պատմութեան արձանականին ընդդէմ Յուլիանոսի: Յորժամ յԵլլադացոցն աւարկութիւնն եղև 'ի վերայ Տրովադայ ». (Յոյնն 294): — Ը. « Յաղագս Թեսաղական այրին: Եւ է այսպէս. ծնեալ Աքիլլէսս աւանդեցաւ առ Քերոն »: — Թ. « Յաղագս շրջման սփէնգոնին (այլ օր. սէփէնտոնին) Գիւգեսի. զայս պատմութիւն յիշէ յարձանականսն 'ի յինգերորդ պատմագրութեան: Արդ Պղատոն յիւր շարագրութիւնսն 'ի քաղաքականութեան ասէ թէ Գիւգէսս այս հովիւ էր »: (Յոյնն. 314): — Ժ. « Յաղագըս Մինդասայ: Մինդաս այս թագաւոր է փռիւգացոցն »: (Յոյնն Μίδας. 302): — Ժ « Յաղագս Նետին Աքարիս զոր յիշէ Հերոդոտոս: Աքարիս այս

և զԽաչատուրվարդապետ »։ Ընտրելագոյն օրինակին յիշատակարանն անկատար, թուղթ ինկած ըլլալով 'ի գրչագրէն, որով և թուականն անորոշ. « Փառք... ետ զաւրութիւն իմոյ տկարութեանս հաւել ընդ այսպիսի յորդեռանց և գերահոս անբաւ խորոցս լուծմանց, զեկաւ եղեգնեաւ և թոյլ և տարտամ դատակաւ, բայց զաւրացուցիչ և խնամիչ հոգին ճըշմարտութեան և զաւրութեան՝ որ ազդէ 'ի կենդանս և յանկենդանս, որ և... »։ Ի սկիզբն գրոցն կը գնէ Ա տառը, նշանակելով զգլուխն առաջին՝ որով հաւանականաբար նաև զամբողջութիւն, և կը շարունակէ առանց մասնաւոր գլխակարգութեան. « Ոչ Արամազդայ այսօրիկ ծնունդքն և գողութիւնք կրետացոց բռնաւորին։ ԶԱրամազդ՝ սատուածաբանքն հելլենացոց 'ի Կռաւնոսէ ասեն ծնեալ. և ծնանելով կեցեալ այսպէս »։ — Բ. « Ոչ Փռիւգացոցն 'ի բաց հատուածն։ Եւ է այս 'ի յարձանականն գրեալ այսպէս. 'ի Փռիւգիա պաշտեցեալ եղեւ Ռէ մայր աստուածոցն »։ — Գ. Եւ աղջիկ ոք մեզ յափշտակեալ լինի։ Եւ այս պատմութիւնս գրեալ կայ յարձանականն »։ — Դ. « Ոչ Դիոնիսի այսօրիկ..., անկատար ծնունդ։ Սեմելի դուստր էր Կադմոսի՝ Թեբայեցոց թագաւորին »։ — Ե. « Ոչ Ափրոդիտեայ խորհուրդք պոռնկականք գործելիք։ Ասի թէ... երկնի Ափրոդիտէս ընկալեալ զլինելութիւն »։ — Զ. « Եւ ոչ Փալլոսք ամօնք և ոչ Ուղափաղոսք։ Ի տաւնին Դիոնէսի ձեւացուցանէին »։ — Է. « Ցաղագս Տաւրացոցն աւտարապանութեան։ Տաւրոսք ազգ է սկիւթականն, յորում էր տաճար Արտեմիդեայ »։ Այսպէս կը շարունակուի մինչև ի գլուխն քսաներորդ, և որոց յոյն սկզբնագրին չկրցանք հանդիպիլ։ Միայն այս վերջինս և հետևորդ քսաներորդ առաջներորդ, երկրորդ և երրորդ գլխոց յունականքն հրատարակուած են առ Մայի։

նէն Յուլիանոս կայսեր դէմ յօրինած երկու ճառից մէջ յիշած հեթանոսական անուանց առասպելեալ պատմութիւնը՝ զոր շարագրեց Նոննոս, Ռիքարտ Մոնտակուտիոս հրատարակեց՝ Աստուածաբանին երկասիրութեանց հետ։ Անոնցմէ դուրս մնացած ուրիշ առասպելաց՝ որ նոյնպէս Նոննոսի կ'ընծայուին, միայն մէկ մասին յունական սկզբնագիրքն ալ Վատիկանեան գրատան մէջ մեզմէ յիսուն տարի յառաջ յաջողեցաւ գտնել՝ բազմահմուտ ծիրանաւորն Մայ, և հրատարակեց յիւր Spicilegium Romanum 'ի հատորն Բ, յ' էջ 307 – 318, և դարձեալ 374 – 387։ Մեր մատենագրութեան մէջ պահուածը, ինչպէս պիտի տեսնենք, ամբողջագոյն է քան 'ի յունական բնագրին գտնուածը։

Խորագիր երկասիրութեանն Նոննոսի՝ ըստ կրկին ընտիր և հնագոյն գրչագրաց մեր Մատենադարանին՝ այսպէս կը նշանակուի։ Ի միումն՝ որ աւելի կատարեալ է և ամբողջ թէպէտև չունելով զհնութիւն միւսոյն, « Ժողովարանք պատմութեանց առասպելացն այնոցիկ զորս յիշատակեաց Աստուածաբանն 'ի ճառին մկրտութեան տեառն մերոյ՝ որ է սկիզբն . Դարձեալ իմ Յիսուս և դարձեալ խորհուրդ »։ Իսկ երկրորդն գրչագրեալ է 'ի ՈԾԷ ( = 1207 ) թուականի, որոյ առաջին թերթքն կիսեղծք և դժուարընթեռնլիք առ հնութեան։ Յիշատակարանն է. « Գրեցաւ առասպելս այս և աղճատանք հեթանոսականք զորս յիշէ Գրիգոր Աստուածաբան առ 'ի խաղ առնել զնոսա. քսանեչորս գլուխ 'ի Դարձեալ իմ Յիսուս ճառին, և ութեւտասն 'ի Բարսղի արձանականն, և այլն 'ի Յուլիանոսի և 'ի Կիպրիանոսի ճառսն. ընդ ամենայն հարիւր վաթսուն և եւթն գլուխ՝ ձեռամբ Յովանիսի յոգնամեղ կրաւնաւորի, 'ի թվ. Հայոց ՈԾԷ, 'ի հռչակեալս Սանահին։ Արդ որք կարդայք կամ ընդաւրինակէք՝ զբազմամեղս գծող յաղաւթս յիշեցէք. ընդ նմին

Իսկ Տիմոթէոս ընկալեալ զայն սուրբ յիշատակարան, եդ 'ի սուրբ եկեղեցւոջ... » *։ Հրատարակեալ 'ի վարս և վկայաբանութիւնս սրբոց. Հատ. Բ. էջ 239. 'ի Ս. Ղազար (1874)։

* B. Aubé. *Polyeucte dans l'histoire.* Etude sur le martyre de Polyeucte, d'après les documents inedits. Paris, 1882. յորում կը յիշուի նոյն հին յիշատակարանը. Après la passion de bienheureux Polyeucte, moi, Néarque, humble serviteur de Dieu, j'ai donné les (ces) mémoires à Thimotée de Cananéos, et à Saturninus, leur faisant jurer par la foi en Jésus Christ et la victoire en Christ de son martyre Polyeucte, de célébrer chaque année son anniversaire, et de les lire scrupuleusement. Timothée les reçut et les remit aux eglises, dans les quelles on les lit deux fois par an, les 4 des ides de janvier, jour où saint Polyeucte souffrit, et le 8 des Kalendes de janvier, jour où son sang fut placé dans la ville de Cananéos. Puisse le Dieu le grand bienfaiteur et qui préside à ces combats nous confirmer dans la foi et fortifier ses eglises dans le Christ Dieu incorruptible, avec l'Esprit-Saint, à qui appartiennent la gloire et la puissance dans les siècles des siècles.

ՆԻԿՈԴԻՄՈՍԻ (աւետարան). Տես յ' էջ 199 մեր այս երկասիրութեան։

## ՆՈՆՆՈՍ

(NONNUS)

---

Նոննոսի անունը, ինչպէս նաև իրեն ընծայուած գրութիւն, զոր պիտի յիշատակենք, այնչափ ծանօթ չէր արևմտեայ բանասիրութեան։ Աստուածաբա-

բագիրն ունի այն երկասիրութիւն. « Սրբոյն Նեքտարեայ Կոստանդնուպոլսի եպիսկոպոսի՝ յաղագս Թէոդորոսի սքանչելեացն զոր եցոյց ի տօնեան սուրբ զաւրավարին »:

— ** Ի Նախավկայն սուրբ Ստեփաննոս. (Panégyrique sur S.t Etienne, le protomartyr). « Տէր մեր Յիսուս Քրիստոս 'ի ձեռն փրկագործութեան »:

— **Մասնաւոր ինչ 'ի գիւտն նշխարացն Ստեփանոսի և որք ընդ նմա, Գամաղիէլ ուրենադիրն որ 'ի Գործս առաքելոցն բարիոք խրատեաց զհրեայսն, և Նիկոդիմոս՝ որ 'ի Քրիստոսէ 'ի ջրոյ և 'ի հոգւոյ առաց զարքայութիւնն ընդունել, Նեքտարի տառացեալ. « Որպէս 'ի Գործս առաքելոցն պատմի և ասի բան՝ առաջի անգեալ խնդրեցին յառաքելոցն զմարմին երանելոյն. և առեալ հրաման եկին 'ի գիշերին. և տարեալ թաղեցին յագարակին իւրեանց »: (Ազգային մատենադարան Փարիզու, թիւ 45):

## ՆԷԱՐՔՈՍ

(NÉARQUE)

---

Ի հնագիր և 'ի ստուգահաւատ վկայաբանութեան սրբոյն Պողիկտոսի, որ հասած է առ մեզ հայ թարգմանութեամբ, կը յիշատակուի թէ վկայակից սրբոյն Նէարքոս գրեց անոր յաղթական մահուան պատմութիւնը. « Յետ չարչարանաց, — կ'ըսէ, — սրբոյն Պաւղիոքտոսի, ես տառապեալս Նէարքոս՝ եառու զյիշատակարանն Տիմոթէոսի կանանացւոյ և աւկտար Նեղոսի, և երգմնեցուցի զնոսա 'ի դատաստանն Քրիստոսի և 'ի յաղթութիւն սրբոյն Պաւղիոքտոսի 'ի Քրիստոս, որպէս զի տարոյ տարոյ կատարեսցեն զաւր նորա և զյիշատակարանն ընթերցցին խնամով:

և ծանօթութեամբք (1887, յ'էջ 318...). Համառօտ տեսութիւն մ'ալ 'ի հատորն ԼԸ նոյն հանդիսին (1880 յ'էջ 326-340), յորմէ առնուած են չակերտով նշանակուած քանի մը տողք՝ զոր մէջ բերինք։

## ՆԵԿՏԱՐԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

(NECTAIRE, EVÊQUE)

---

Նեկտարիոս՝ յաջորդ սրբոյն Գրիգորի Նազիանզացւոյ յաթոռ պատրիարքութեանն Կոստանդնուպոլսոյ, ծնեալ է 'ի Տարսոն Կիւլիկիոյ, յազնուատոհմէ, և հռչականուն առ ժամանակակիցսն առաքինի վարուքն և բարեմասնութեամբք։ Դեռ երախայ էր յընտրութեանն, ուստի և շատ դժուարութիւն կրեց 'ի կողմանէ հարցն սիւնհոդոսականաց գումարելոց 'ի քաղաքին յամին 381. բայց Թէոդոս կայսեր կամքն ու հրամանն էր որ կը բռնադատէր բարձրացընել զնա յայն պատիւ հոգևոր առաջնորդութեան, ուստի և անկարելի դէմ դնել։ Մեռաւ յ' 292 թուականին, և յաջորդեց նմա Ոսկեբերան։ Իրեն կ'ընծայուի Ողորմութեան և պահոց վրայ գրուածք մը, որոյ յունականն հրատարակեցաւ 'ի Փարիզ 'ի 1554։ Մեր մատենագրութեան մէջ չենք գտներ զթարգմանութիւն ճառիս. այլ միայն հետևեալ գրուածներն՝ որոց յունական սկզբնագիրք դեռ երևցած չեն։

— ** Սրբոյն Նեկտարեայ եպիսկոպոսին Կոստանդնուպոլսոյ յաղագս տաւնի սուրբ Ճգնազգեաց վկային Թէոդորոսի, զոր յառաջնում շաբաթի քառասնորդացն տաւնեն ամենայն հաւատացեալք. (Panégyrique sur le saint martyr Théodore). « Յառաջնում ամի Յուլիանոսի կայսեր՝ մինչդեռ նորընծայ էր 'ի թագաւորութեան »։ — Ճառընտրի մը մէջ որ 'ի Ս. Սարգիս Բաղիշու՝ հետևեալ խա-

անուանց և հերձուածոց յիշատակութենէն յայտնի կ'երեւնայ թէ 378 թուականէն առաջ եղած է գրքին շարադրութիւնը։

Հայկական թարգմանութեան խորագիրն է, – Թէ՛ մեր ձեռքն և թէ ուրիշ մատենադարանաց մէջ գըտնուած ամէն ձեռագրաց մէջ, – յանուն Գրիգորի եպիսկոպոսի Նիւսացւոյ. անանուն գրչագիր մ'ալ կայ յ'Էջմիածին (Թիւ գրչ. 453)։ « Գալով թարգմանութեանն 'ի մեր լեզու, նոյն թարգմանիչն կ'երեւի ինչ որ և 'ի գործս Նիւսացւոյն, որ է Ստեփանոս Սիւնեցի. մանաւանդ թէ բուն յիշատակարանն Սիւնեցւոյն՝ այս մասին կը վերաբերի և ոչ Նիւսացւոյն ճառին [1]։ Ոճն յունաբան է, և շատ տեղ անիմանալի ». բայց մեծապէս հետաքննելի բանասիրաց թէ նիւթոյն և թէ մանաւանդ հայկական թարգմանութեան յատուկ լեզուին։ Մեր մէջ՝ մանաւանդ առ հին նախնիս՝ սակաւաթիւ են բուն ուսումնական երկք կամ անոնց փոխագրութիւնք. որով և զգալի՝ ոչ այնչափ ճոխութիւն լեզուիս 'ի ճշգրիտ բացատրութիւն այսպիսի նիւթոց։ Նեմեսիոսի անուամբ առ մեզ հասած այս երկասիրութիւն՝ մեծապէս կրնայ օժանդակել 'ի լնուլ զայս պակաս։ « Միայն այսչափս ևս կ'ուզեմք իմացընել որ թարգմանն շատ տեղ հաւատարիմ չէ իր բնագրին. և տեղ տեղ՝ ուր աւելի ցանկալի էր որ հայերէն բառից լոյս մը տար մեզ, հոն լռութեամբ կ'անցնի »։

Մեր նախնիք Լուծմունք մ'ալ յօրինած են այս երկասիրութեան, որ յոմանց Գրիգորի Սկեւռացւոյ ընծայուած է։ Նեմեսիոսի այս գրութեան հայ թարգմանութիւնն հրատարակուած է 'ի Բազմավէպ հանդիսարանի, բաղդատութեամբ ընդ յոյն սկզբնագրին

1 Սիւնեցւոյն յիշատակարանը տես յ'էջ 371 մեր այս գրուածին։

լադոյն մ՚ալ 'ի Հալլ Գերմանիոյ 'ի Քրիստիան Փր. Մատթէէ (1802): Կը բովանդակուի ամբողջ երկասիրութիւնն 'ի քառասուն և հինգ գլուխս, յորոց երկրորդն և երրորդ՝ սրբոյն Գրիգորի Նիւսացւոյ ընծայուած է յոմանց, ինչպէս նաև բովանդակ մատեանն յայլոց. Թէպէտև չկայ հաւաստիք կամ հաւանականութիւն որ երանելի հայրապետս ըլլայ անոնց հեղինակ: Հոգւոց նախագոյակ ըլլալը (préexistence) բացայայտ կը վարդապետուի 'ի գլուխն երկրորդ, ուր Նիւսացի հակառակամարտ կը հանդիսանայ այն գրութեան 'ի գիրսն Յաղագս կազմութեան մարդոյ: Այսպէս 'ի գլուխն երրորդ՝ արհամարհանօք կը խօսի Որոգինեայ վրայ, ուր Գրիգոր սիրող և մեծարող կ'երևնայ այդ նշանաւոր հանճարոյն: Երեսներորդ հինգերորդ և հետևեալ գլխոց մէջ՝ ճակատագրի վրայ խօսելով՝ կը ցուցընէ անոր անպատեհութիւնը: Պատճառ մը չկար որ Նիւսացին կրկին դառնար այնպիսի կարծեաց վրայ. զոր արդէն ըսուելի և այնչափ բացայայտ և խորիմաստ ոճով և լեզուով հերքեր էր նոյն նիւթին վրայ յօրինած մատենաւոր երկասիրութեամբ: Տարակուսական կ'երևնայ Նիւսացւոյն կամ եպիսկոպոսական աստիճան ունեցող ուրիշ որ և իցէ անձի մը վերագրել՝ անդամազննական մանրամասնութիւնքն որ 'ի գլուխն քսաներորդ հինգերորդ: Բովանդակ գրուածին մէջ հեղինակը ոչ աննշան, մանաւանդ թէ երբեմն բազմահմուտ իմաստասէր կ'երևնայ. բայց քրիստոնական կրօնից ճշմարտութեանց նկատմամբ՝ թերևս չափաւոր գիտութեամբ: Ուստի եթէ բանադատութիւնք Նեմեսիոս անունով մէկու մ'ալ ընծայել զայն, հաւանական կ'երևնայ հմտից՝ Կապադովկիոյ համանուն քաղաքապետ մը հեղինակ սեպել, որուն Աստուածաբան ուղղած է իր մէկ քերթուած, քան եպիսկոպոսական աստիճան ունեցող անձի մը: Ապողինարի և Եւնոմիոսի

նակք մեր Նեղոսի մակագրեն և զայս, այլ քաղուած է ծայր 'ի ծայր 'ի վեցերորդ ընդարձակ ճառէն Զգօն գրոց սորայն Յակոբայ երևելի փոփոխութեամբ. այլ թէ յումմէ իցէ արարեալ՝ ժամանակն յայտնեսցէ»։

— ԺԴ. Խրատք որ 'ի բաց մերժեն յապականացուացն և մերձեցուցանեն յանապական կեանսն զմարդիկ. «Ճանապարհք յառաքինութիւնս՝ հրաժարումն յաշխարհէս, է բարիոք և կարճահատ»։ (Հին և Նոր Թարգմ.)։

— ԺԵ. Խրատք որք կրօնաւորիլ կամին զփրկական կրօնաւորութիւնն. «Զերկիւղ ընկալ զԱստուծոյ, և մաքուր վկայութեամբ գիտակցութեամբ քով վարեսցիս»։ (Հին և Նոր Թարգմ.)։

— ԺԶ. Յաղագս աղօթից. «Որ ոք կամեսցի անուշահոտ խունկս կազմել, զերևելի կնդրուկն և զկասիաս և զեղունգն և զաշխն առհասարակ հանդերձեսցէ ըստ օրինացդ»։ (Հին Թարգմ.)։

— ԺԷ. Խրատ պիտանի. «Լաւ է յաւակ խորհրդով նստել, քան պիղծ խորհրդով աղօթս մատուցանել և վարձս ոչ առնուլ»*։ (Հին Թարգմ.)։

* Տպագրողք 'ի ծանօթ. «Քաղուած է կիսամասնեայ 'ի ճառէ ասոր որ յանուն Եզնըկայ երևի յօրինակս ինչ»[1]։

## ՆԵՄԵՍԻՈՍ

(NEMÉSIUS)

Նեմեսիոսի անուամբ՝ 'ի Մատենադարանի Հարց տպագրելոյ 'ի Լուգդոն Գալլիոյ՝ գրուածք մը կայ Յաղագս բնութեան մարդոյ կոչուած, և որ արդէն նախընթաց հրատարակութիւն մը ունեցած էր յԱնվերսա (1565) 'ի ձեռն Ելլեբոտիոս Նիկասիոսի և ընտրե-

1 Մատենախօսական տեղեկութիւնք 'ի ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԵԱՆ յէջ 337, 494։

թիւն ըստ բնութեան, և ոչ կայ ընդդէմ փորձութեանց արիաբար »։ (Հին Թարգմ.)։

— Է. Յաղագս սնափառութեան. « Սնափառութիւն է ախտ անբնական, և ամենայն գործոց առաքինութեան դիւրաւ շողոպատի »։ (Հին Թարգմ. և ըստ մասնէ նաև Նոր)։

— Ը. Յաղագս ամբարտաւանութեան. « Ամբարտաւանութիւն է ախտ զայրացեալ, ուռուցեալ է փքով. ուր հասանէ, պայթէ և առնէ մեծաւ ժահահոտութեամբ »։ (Հին և Նոր Թարգմ.)։

— Թ. Խրատք ոգեշահք միանձանց՝ մինչ նստէր առանձինն 'ի լերինն Սինեայ. « Սկիզբն հրաժարելոյ յաշխարհէս՝ երկիւղ տեառն. և աներկիւղն արտաքոյ դրանն օթեւցի * »։ (Հին Թարգմ.)։

* Տպագրողք 'ի ծանօթ. « Վեցեքին օրինակք մեր Նեղոսի ընծայեալ զճառս, 'ի Մատենադարանի Հայոց (Հատ. ԻԷ.466) Իպերիքեայ ընծայի. որում համաձայն վկայի և հատընտիր հատուածն Խօսք Իպերիքեայ. (Հարանց վարք. Բ. 591)։

— Ժ. Խրատք առ ճգնաւորսն. « Սկիզբն բարեաց երկիւղ տեառն։ Լաւ է քարինս ընդ վայր ձգել քան զբան »։ (Հին Թարգմ.)։

— ԺԱ. Խրատք վերակացուաց. « Նաւավար անգէտ պատրաստ է 'ի կորուստ, և վարդապետ անխրատ՝ կորուստ է աշակերտաց »։ (Հին և Նոր Թարգմ.)։

— ԺԲ. Պատուէր առ մանկունս. « Պարտ է մանկանց ճգնել և կրթել զմարմինս 'ի հնազանդութիւն պատուիրանաց »։ (Հին Թարգմ.)։

— ԺԳ. Յաղագս խրատից հեզութեան, և զգոյշ լինել, և վասն հանդերձի կենացն և յուսոյ յարութեան. « Որ շինել սկսանի՝ պարտ է կատարել, զի մի ծաղր լիցի անցաւորացն * »։ (Հին Թարգմ.)։

* Տպագրողք 'ի ծանօթ. « Թէպէտև վեցեքին օրի-

և արքունեաց վրայ կը հանէին. Արկադէոս Թագաւոր ահռաբեկ կը դիմէր առ Նեղոս՝ պատգամաւորներ փութացընելով, որպէսզի աղօթիւք՝ սպառնացեալ վտանգներէն զիրենք փրկէ. « Ի՞նչպէս կը յուսաք, ըսաւ, որ սատակիչ հրեշտակին հարուածներէն ազատ ըլլայ Թագաւորեալ քաղաքը՝ քանի որ յաքսորս է Յովհաննէս, եկեղեցւոյ սիւնը, Ճշմարտութեան ջահը, Յիսուսի Քրիստոսի փողը »:

Հայկական Թարգմանութեամբ առ մեզ հասած գրուածքը՝ Յաղագս ութ այսոցն չարութեան կը կոչուի 'ի բնագրին: Ասկէ զատ են իր այլևայլ Թուղթք առ զանազանս, և գրուածք ներանձնական հոգևոր կենաց՝ որոց Թարգմանութիւնք չկան առ մեզ:

— Սրբոյ և պատուական հօրն Նեղոսի խրատք: — Ա. Ի կարճել զմոլեկան որովայն և շահել զանձինս. « Սկիզբն պտղաբերութեան ծաղիկ, և սկիզբն առաքինութեան գործոց՝ ժուժկալութիւն պահոց »: (Թարգմ. հին և նոր):

— Բ. Յաղագս պոռնկութեան. « Զգաստութիւն ծնանի զժուժկալութիւն, իսկ որովայնամոլութիւն է մայր զեղխութեան ախտից »: (Հին և ըստ մասնէ նաև Նոր Թարգմ.):

— Գ. Վասն հոգւոյ արծաթսիրութեան. « Արմատ ամենայն չարեաց արծաթսիրութիւնն, և սնուցանէ իբրև զոստս չարեաց զամենայն ախտս »: (Հին և Նոր Թարգմ.):

— Դ. Վասն հոգւոյ բարկութեան. « Բարկութիւն է ախտ մոլեկան, և որ ունի զնա՝ ընդ իւրեաւ յիմարի »: ( Հին և Նոր Թարգմ.):

— Ե. Վասն հոգւոյ տրտմութեան. « Տրտմութիւն՝ խռովութիւն է անձին, և ժողովին 'ի խորհըրդոց բարկութենէ »: (Հին և Նոր Թարգմ.):

— Զ. Յաղագս ձանձրութեան. « Ձանձրութիւն է լքումն անձին. և լքանի անձն որ ոչ ունի պնտու-

'ի Կոստանդնուպոլսոյ, ինչպէս ոմանց թուեցաւ. Թէպէտ և այս վերջին քաղաքին մէջ արքունի և իշխանական պաշտամունք վարած։

Ամուսնական կենաց մէջ մտնելէն ու երկու որդիք ունենալէն ետքը՝ մտադիւր թողուց զաշխարհ. ըզտուն, զհայրենիս և զբարեկամս, և առանձնացաւ յանապատ, հետոյ առնըլով զԹէոդուլը՝ զմին յորդւոցն, և զմիւսն թողլով առ ամուսնոյն՝ յորմէ կը զատուէր զգաստասէր համաձայնութեամբ։ Առանձնութեան տեղի ընտրեց զՍինա լեառն՝ որ արդէն նուիրական սրբավայր մ'էր բազմաթիւ անապատական հրաժարելոց յաշխարհէ։ Հաւանելի կը թուի թէ 390 թուականին 'ի գործ դրած ըլլայ իր այս մեծ և աստուածանուէր մտածութիւնը։

Անապատի լռութեան և հանդարտութեան մէջ սիրելի և հռչակաւուն իր սրբակրօն վարքովն. երկնապարգև գիտութեամբ և հոգևոր իմաստութեամբ, մերձակայք և հեռաւորք առ նա կը դիմէին՝ լուսաւորիլ, ուսանել և քաջալերուիլ 'ի նմանէ. և վկայ հաւատարիմ իր գրուածներն, բազմաթիւք առ յոյնս՝ որոց փոքրիկ մասն եւեթ հասած է առ մեզ հայկական թարգմանութեամբ, և գլխակարգութիւնքն կը գըտնէ ընթերցողն 'ի ստորև։ Ինչպէս Հարանց վարուց, ասանկ ալ Նեղոսի խրատուց կրկին թարգմանութիւնք կան 'ի մեր մատենագրութեան. հնագոյնն անշուշտ ոսկեղէն՝ կամ անկէ ոչ այնչափ հեռու դարու պատկանելով, զի ոմանք Եզնըկայ Կողբացւոյ կը հաւանին ընծայել զայն. իսկ երկրորդն աւելի կըրտսերագոյն ժամանակաց գործ։

Աշակերտած է Նեղոս սրբոյ Ոսկեբերանի. և երբ այդ աստուածընտիր հայրապետին դէմ գլուխ վերուցին ստորաքարշ նախանձ և ատելութիւն, և յաջողեցան իր աթոռէն աքսորել զինք, և մինչ աստուածասաստ պատուհասք կայսերական քաղաքին

գործեցի. զխոշորութիւն գրոյս և զպակասութիւն աղաչեմ անմեղադիր լինել վասն ժամանակին խռովութեան. և չէր զի այլ ուրեք գտանէր օրինակն. և ոչ էր օրինակին ամորդի և չինականամիտ՝ այնպէս համարէր թէ զիւրն յափշտակէի. 'ի բազում վարանս մտեալ միայն զաւարտ գրոյն խնդրելով. 'ի բազում ձեռս փոխեցաւ գիրս 'ի Թուականութեանս Հայոց և 'ի շրջագայութեան հայազեան տումարիս 'ի ՈԴ. 'ի հայրապետութեանն տեառն Գրիգորիս Հայոց կաթողիկոսի, և յանիշխանութեանս Հայոց մինչ փայլէր բարեպաշտ և մեծ իշխանն քրիստոնէից Թորոս՝ մինչ եկն 'ի վերայ Հալպա, և բազում տեղիս և ամրոցս առեալ քանդեաց և յաղթութեամբ բազմադարձեալ 'ի բնակութիւնն իւր։

« Գրեցաւ մատեանս այս ստացուածատաց և հոգիանորոգ՝ ձեռամբ իմով Կիրակոսի անպիտան և անարժան կրաւնաւոր և առ տէր բազում յանցաւորի. 'ի յիշատակ մեղապարտ անձին իմոյ և ծնողաց իմոց »....։

## Ս. ՆԵՂՈՍ

### (SAINT NIL)

---

Սրբոյն Նեղոսի ծննդեան որոշ թուականը յայտնի չէ. բայց իր անունը կրող նամակներէն կրնայ հաւանականաբար ենթադրուիլ թէ երբ Արկադէոս կայսր 398ին հրատարակած հրամանագրով մը կը խափանէր հեթանոսական զոհագործութիւնքը՝ որոց հետք դեռ եւս մնացեր էին, և ոմանք տժգոհք՝ կը համարձակէին քրթմնջել այն հրամանին դէմ, Ճշմարտութեան պաշտպան և ջատագով հանդիսացաւ Նեղոս, գրելով առ Էնիաս իմաստասէր, և յանդիմանելով զնա՝ սեղանոց վրայ մատուցած սրբապիղծ զոհից համար։ Գաղատացի կ'երևնայ ծննդեամբ, և ոչ

զամենայն ժամանակս իւրոյ առաքելութեանն առանց գրոյ քարոզէր զաւետարանն։ Իսկ իբրեւ կարգեցան երեք աւետարանքն և գրեցան և հասին առ նա, որպէս ասի բան՝ ընդունելի եղեն նմա. և վկայեաց եթէ ճշմարիտ գրեցան. այլ պակասէ նոցա որ ինչ միանգամ գործեցանն ի սկզբան վարդապետութեանն Քրիստոսի... ուստի և աղաչեցին զՅովհաննէս առաքեալն՝ թէ այն ժամանակ որ թողաւ յայլոց աւետարանչաց որ գործեցան 'ի Տեառնէ՝ տացէ նոցա գրով. որ նախ քան զմտանելն Յովհաննու 'ի բանդ՝ եղեն 'ի Քրիստոսէ հրաշագործութիւնքն, զոր և գրեացն իսկ Յովհաննէս. « Զայս արար, ասէ, սկիզբըն նշանաց Յիսուս 'ի Կանա Գալիլեացւոց, և յայտնեաց զփառս իւր ». ցուցանելով զայն գոլ առաջին հրաշագործութիւն » ...։

Յիշատակարան գրչի. « Զոր եւ իմ մեղապարտի և յոյժ անպիտանի Կիրակոսի ըղձացեալ և եռափափաքմամբ սիրով խանդակաթ եղեալ աստուածախաւս մատենիս, և ոչ ուրեք գտանէր աւրինակ. յետոյ լըւեալ իմ թէ գտանի յԱմիթ, և բազում փոյթ ի մէջ առեալ զանձին տկարութիւն առ ոչ ինչ համարելով, զբազում վայրս հատեալ. և ըստ խնամակալութեանն Աստուծոյ սկսեալս կատարեցաւ նորին շնորհիւն. այլ ըստ ժամանակին հանդիպմանն յորս տառս կատարեցաւ՝ ձմեռն խիստ և աւդն դժնեայ, տեղիքն աւտարութեան. 'ի ցրտոյն բազում տառապանս կրեցի. զի իբրեւ զերկաթ պաղեալ մնայր ձեռքս անզգայացեալ. և զաւուրս քառասունս իբրեւ 'ի մէջ ձեանց այնպէս ընդարմացեալ մնայր բոլոր մարմինս. և խնամածոյ կամ ծանաւթ ոչ գոյր. և իմ վասն բազում ըղձիցն ոչ ինչ համարելով զտառապանս, կամ զանձին տկարութիւն առ սիրոյն միանգամայն՝ զանարհեստ և զանվարժ գրութիւն... ապաստան եղեալ յանմեղադրութիւն ընթերցողացդ, զի առ սիրոյ

միամիտ հաւատոցն որ 'ի Քրիստոս. պահպանեալ լինի 'ի վերին խնամոցն անճառ՝ առ 'ի յաւգնականութիւն չորից ուստերաց. զոր ոչ պատկառեմ սիրող Քրիստոսի անուանել և կենդանի վկայ. որ այնքան ժամանակս եբեր յանձին ժուժկալութիւն հաւատոցն: Եւ սորա այսպիսի եղելոյ՝ մի ոք յոյժ վայրի զմեզ բամբասիցէ՝ իբրեւ աւելոգործ ինչ խառնելով զմերս ընդ նորայն ջան. կամեցեալ իբրու աւատարացուցանել կամ ողարտել ինչ: Այլ զի մի անկատար և պակաս վարդապետի փոքր յաշակերտէն լինել՝ փոքր ինչ ներեսցեն մեզ լսաւղքդ. և ըստ իմաստակէր բժշկացն՝ որք ի ձեռն երակացն գիտացեալ զախտ պատճառան, հնարին այնուհետև առ բուժումն: Այսպէս պարտ է ձեզ մտաց աչաւք նայել 'ի ճառս յոր մտաք. (Ճ. մտաւք.) և եթէ իցէ ինչ արպա՝ բժշկել իբրև զհոգեկան անդամս. և միակամութեամբ սիրոյ յաւժանդակեալ հոգեկան սիրոյն շաղկապութեամբ՝ և անընդմիջաբար սիրելութեամբ 'ի բաց առնել զմախանս Թոյնաւորս և երկրաւորս. և միացեալք սիրովն որ 'ի Քրիստոս կալցուք առ միմեանս և սատուզս և լսաւղքդ՝ որպէս լոյս առ աչս՝ և բարբառ առ լսելիս՝ և հոտ առ հոտոտելիս. և եթէ իցէ ինչ արպաս ակարութիւն բանից՝ հռետորական բանիւ սերտել և պայծառացուցանել:...

« Զանց արարեալ զճառսակարաւքն յառաջիկայն ձեպեսցուք, վասն որոյ և 'ի գործ զբանս արկաք. և դուզնաքեայ ինչ վասն աւետարանչացն շարագրեսցուք զորպիսութիւն ճառիցն՝ որքան հասանելի կարեն լինել միտքս մեր. և այնպէս ճանապարհորդեալ անմոլար եկեսցուք 'ի մեկնութիւն սրբոյ աւետարանին Յովհաննու: Վասն Մատթէոսի և Մարկոսի և Ղուկայ բազումք կանխեալ ասացին յիւրաքանչիւր տեղիս. իսկ վասն Յովհաննու՝ զոր և 'ի գործ արկաք զբանս՝ ասասցուք որ ինչ միանգամ կարեւորն է: Ա

այնորիկ գործեցաւ անյիշատակ թողուլ. այլ եթէ 'ի նկարագրի փոքր ինչ ցուցանել զնորայն ճգնութիւն. ոչ իբրև ներբողելով գրուատել. զի և ոչ բազմութիւն յոյժ իմաստասիրաց 'ի մի վայր գումարելոց՝ կարող են բան ըստ նորա արժանաւորութեան հատուցանել հանգիսի. այլ միայն դոյզն ինչ բանիւք պատմութեանս թելադրել առ 'ի գիտութիւն լսողացդ: Սա ըմբռնեալ եղև 'ի մերում իսկ ժամանակի 'ի հագարական ազգացն, վասն նախանձոյ որ 'ի նմանէ բազմափայլ վարդապետութեանն. և ներհակս միշտ առաջարկելոյն, գնանի 'ի բանս հանդերձ որդւովք իւրովք. որովք բազում անգամ բանս հրապուրականս առաջի արկեալ՝ հանդերձ յոգնազան պարգևաւք, ոչ ինչ խոնարհեցոյց զանխոնարհելի խորհուրդս մտացն որ 'ի Քրիստոս: Դարձեալ յայլ տեսակ հնարից բերեալք լինէին. բանդից և կապանաց և պէսպէս տանջանաց. այլ ոչ զանգիտեալ երբէք զիջանէր 'ի բարձրագոյն հաւատոյն որ 'ի Քրիստոս. և մնացեալ 'ի բանդի անդ զբազում ժամանակս, ոչ միայն զինքն ամբողջ պահելով յամբիծ հաւատոն, այլ և բազմաց լինի առիթ փրկութեան. աներկեղաբար միշտ պահելով զարգելանաւորսն 'ի բանտին ... Եւ յետ այսորիկ այսպէս եղելոյ՝ հասեալ լինի գանձ գրոյս այսորիկ առ Մարիամ Բագրատունի Սիւնեաց տիկին 'ի ձեռն Աշոտոյ հաւր իւրոյ, մեծ և երևելի տեառն Բագրատունեաց իշխանաց իշխանի:

« Իսկ երանուհւոյս Սիւնեաց տիկնոջ փոյթ 'ի մըտի եդեալ՝ վաղվաղակի հրամայեաց երկիցս անգամ փոխաբերել 'ի հայկական լեզու առաջնորդութեամբ վերին խնամոցն. յարդարէ համառաւտաբար զաստուածային բարձրագոյն հաւատս վերագոյն ունելով ըստ իւրում քաղցր և յոյժ գովելի բարոյիցն. որ հասարակաբար ունէր առ ամենայն մարդիկ զխընամս իւրոյ սիրելի սուրբ մտացն, մանաւանդ թէ

գին պահոց և աղաւթից․ ջան ոչ փոքր յանձին բե-
րէ շրջագայութեամբ երից ամաց յածեալ ընդ անա-
պատս յերկրին Միջագետաց․ որ և յուսայր իսկ
զգիւտ գրոյ ուղղափառ վարդապետաց․ և հանդի-
պեալ խնդրոյն առաջնորդութեամբ վերին խնամոցն,
շարագրէ համառաւտաբար 'ի բազմաց հաւաքելով
մի ըստ միոջէ ոճով զմեկնութիւն յոհաննեան սրբոյ
աւետարանին, փոխաբերելով յասորի լեզուոյն 'ի
հագարական լեզու։ Իսկ յորժամ ըմբռնեալ լինէր
'ի հագարական ազգէն՝ մեծն և երևելին այն իշխանն
Հայոց վսեմամիտն․ որ և զբաւընդակն յանձին բե-
րէր ունել զգիտութիւն որ 'ի Քրիստոս հաւատոցն․
որ և նախանձ ոչ փոքրագոյն վասն Քրիստոսի միշտ
յանձին կրէր կշտամբել և յանդիմանել զհերձուա-
ծողացն դասս․ ոչ ինչ արութիւն քաջութեան այ-
նուհետև ըստ արժանի իւրոյ մեծութեանն երևե-
ցոյց․ այլ երագապէս 'ի վայր հոլովեալ յաստուա-
ծային հաւատոցն զոր ունէր, գլորեցաւ վաղվաղակի
'ի վիհ անկանգնելի կորստեան։ Եւ 'ի բաց ընկենլով
զգրոշմ ուխտի ճշմարիտ հաւատոյն, սուգ անհնա-
րին բոլոր աշխարհին Հայաստանեաց հասուցանէր․
Թէպէտև հրաշակացաւ (= հռչակեցաւ?) 'ի լսելիս
մեր 'ի խորութեան սրտին հաստատուն պահելով
զճշմարիտ հաւատոցս դաւանութիւնն։ Յայնմ ժա-
մանակի 'ի ձեռն պատահման իմն գանձ գրոցս հա-
սեալ լինի առ տէր Սմբատ Բագրատունի։ Զոր ըն-
դունեալ խնդութեամբ մեծաւ՝ հրամայէ փութով 'ի
հագարացւոցն 'ի հայկական վերաբերել լեզու, ոչ
ինչ ներելով իմոյ տկարութեանս։ Այլ զոր մեծն այն
հռետորն, կատարեալ յարուեստս և 'ի մակացու-
թիւնս՝ այնքան ջան յանձին բերելով արժանեցաւ,
ով ոք ոչ զիմս աղարտեսցէ յանդգնութիւն․ մտա-
բերել անգամ յայսքան բարձրագոյն խորհուրդ։
Զորոյ և ոչ զառաջինութիւն առնն պարտ է որ յետ

ցընենք թէ սուրբ բնագիրն ու յոյն թարգմանութիւն անհետացած են ։ Գրչագիրք որ բազմաթիւ են յայլեւայլ մատենադարանս, ընդհանրապէս հետեւեալ խորագրով կը նշանակեն զայն.

— Մեկնութիւն Յովհաննու աւետարանին ՚ի Նանայ սարկաւագապետէ ասորւոյ յաւրինեալ ՚ի խնդրոյ Բագարատայ Բագրատունւոյ, այն որ ՚ի հաւատսն վտանգեցաւ. և յասորի լեզուէ թարգմանեալ ՚ի հայ հրամանաւ Սմբատայ արքայի Բագրատունւոյ ։

Թարգմանիչն ՚ի յառաջաբան տեղեկութեան. « ... Այր ոմն սարկաւագապետ գոլով Նանայ անուանեալ. յոյժ հմուտ և վարժ ասորի դպրութեան՝ ստացաւղ բոլորից առաքինութեան. պարկեշտ վարուք, մաքուր առ ամենայն մարմնական հեշտութիւնս. աղբիւրաբար ընկալեալ զշնորհս վարդապետութեան ՚ի Հոգւոյն սրբոյ, ուղղափառ հաւատոցն որ ՚ի Քրիստոս. որ և յանդիմանեալ զոմն եռետիկոս, զայր պերճաբան և իմաստասէր, վանեալ հալածական առնէր յաշխարհէ Հայաստանեայց. որ երբեմն խոտորնակս ուսուցանէր [1] ... Զսա թախանձեալ մեծին Բագրատայ, որ ՚ի տանէն Բագրատունեաց. այր յոյժ բարձրագոյնս ստացաւ զանուն. որ և պետ իշխանաց երբեմն ՚ի բարբարոս ազգէն Հագարացւոց անուանեալ. որպէս թէ զնա այնու առաւել պատուի արժանաւոր վարկուցեալ, զորոյ և զանցս անցիցն յիւրում տեղւոջն փոքր ինչ յիշատակեսցուք ։ Եւ զինչ իցէ որդեւք աւրինակ խնդրոյն. ստանալ նմա զմեկնութիւն սրբոյ աւետարանին Յոհաննու. որոյ փոյթ ՚ի մտի եդեալ վաղվաղակի ՚ի ձեռն ուժ-

1 Ազգային ժամանակագրի մը մէջ ՚ի ՄԾ ( 250 ) թուին նըշանակուած կը գտնենք. « Եպիկուռայ ջանայր զԱշոտ իշխան քաղկեդոնիկ առնել. իսկ Բուրետ վարդապետն առաքեաց զՆանան սարկաւագն, որ յաղթեաց Եպիկուռայ, և մեկնեաց զաւետարանն Յովհաննու »։

թեան լոյն նշանակէր միով բնութեամբ և երիս անձնաւորութեամբ որոշեալ. որպէս լոյս երից աւուրցըն՝ լոյս և լոյս և լոյս » : (Անգ) :

— Զորրորդ աւուրն յընթերցուածոց մեկնութենէ. « Ի չորրորդում աւուր արար Աստուած զարեգակն և զլուսին և զաստեղս. և զարդարեաց զերեսս երկնի յետ զարդարելոյ զերեսս երկրիս » : (Անգ) :

— Հինգերորդ աւուր յընթերցուածոց մեկնութենէն. « Եւ անդ 'ի հինգերորդ աւուրն հրաման առին ջուրք բղխել զգեստս ամենայն, և ամենայն թըռչունս որ յաւդս » : (Անգ) :

— Վեցերորդ աւուր յընթերցուածոց մեկնութենէն. « Անդ 'ի վեցերորդ աւուրն հրամայեաց Աստուած. Եղիցին ցամաքային կենդանիք ամենայն. յետոյ զմարդն ստեղծեաց 'ի նոյն աւր. և եդ զնա 'ի դրախտին » : (Անգ) :

— Եւթներորդ աւուրն յընթերցուածոց մեկնութենէն. « Զեւթներորդ աւրէն գրեալ է. Աւրհնեաց Աստուած զաւուրն եւթներորդ » :

— Ութերորդ աւուրն յընթերցուածոց մեկնութենէն. « Տեսցուք ըստ կարողութեան և զխորհուրդ ութերեկի աւուրն, որ յԵրուսաղեմէ սկըսեալ՝ և դարձեալ յինքն աւարտեալ » : (Անգ) :

## Ն Ա Ն Ա Ա Ս Ո Ր Ի.

(NANA, ARCHIDIACRE SYRIEN)

---

Երկար յառաջաբան տեղեկութիւնք թարգմանչին, - զոր յառաջ կը բերենք, - լիուլի ծանօթութիւն կուտան հեղինակին վրայ, ու անոր երկասիրութեան 'ի հայ թարգմանութեան ժամանակին : Մենք աւել

**ՅՈՒՍՏՈՍ ԵՐՈՒՍԱՂԵՄԻ**. — (JUSTUS, DE JÉRUSALEM). — *Յուստոսի Երուսաղեմի եպիսկոպոսի յաղագս նորընծայ պատարագին որ 'ի վարդավառին տաւնի. և յաղագս Աղաւրհնեաց. « Այսպէս ասէ ուսուցին մեզ առաքեալքն »* :

— *Վասն աւրհնութեան Եկեղեցւոյ, Խաչի, Մատաղի* (*Յօրհնութիւնաբեր Թղթին յիշատակուած*) :

**ՅՈՒԵԹԷՈՍ**. — *Սրբոյն Յուլիթէոսի առ 'ի յաստուածաբանականաց սահքիրոնաց*, (*իբր Թերթ մի*) : (*Մատեն*. *Ս*. *Երուսաղեմի*, *Թիւ* 757) : *Տես* ԴԻՈՆԵՍԻՈՍ ԱՐԻՍՊԱԳԱՑԻ :

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ՓԱՐԱՌՆԵՑԻ (?)

(JACQUES DE PHARAN)

---

— *Յովհաննու Փարառնեցւոյ և այլոց վարդապետաց ասացեալ 'ի խորհուրդ առաջին աւուր ծննդեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ յընթերցուածոց մեկնութեննէն*. « *Յառաջնում աւուր ասաց Աստուած*. *Եղիցի լոյս* » : (*Մատենադ*. *Էջմիածնի*, *Թիւ* 920) :

— *Ի յերկրորդում աւուր ծննդեան և յայտնութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ սրբոց վարդապետացն ասացեալ յընթերցուածոց մեկնութեննէն*. « *Ի յերկրորդում աւուր արար Աստուած զհաստատութիւնն* » : (*Անդ*) :

— *Յերրորդում աւուր ծննդեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ յընթերցուածոց մեկնութեննէն*. « *Նախ զառաւելութիւն երից աւուրցն ասասցուք*. *երից աւուրցն լոյս*. *որ յարարչութեան զԵրրորդու-*

ձայն բայից և բառից տուաջին Թարգմանութեանն ըստ քերթողացն իմաստից միաշար տողելով. ի ձեռն Մատթէոսի եպիսկոպոսի որ մնեալ և վարժեալ էր ընդ մերով ձեռամբ... Աղաչեմ զուրբինագիծ գծողսըդ տայլ հրաման պատուիրանի աւանդեմ, մի ոք իշխեսցէ հատանել զյիշատակարանս աշխատողացս...»

Յիշատակարան հնագիր ձեռագրին որ'ի մեր Մատենադարանի. «Ընդ աստուածահաճոյ Վկայասիրի և ընդ սրբոյ դիտապետի ախոռակալի սուրբ Լուսաւորչին, արժանի եղիցի յիշատակի մեծապատիւ Սեւաստացին և քրիստոսասէր Պարոնս Աւշին, հանդերձ սրբասէր և ճգնազգեաց զուգակցաւն իւրով և աստուածապահ պատանեկաւքն և բարեզարմ հարազատաւքն 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր»...

Դարձեալ նոյն գրչագրին մէջ. «Քրիստոս Աստուած. 'ի քո մեծի և յոհաւոր գալստեանդ դասաւորեա զսուրբ Եպիսկոպոսապետն (զԳր. Վկայասէր) զԹարգմանաւղ Ճառիցս ընդ երանեալ հայրապետին Յովհաննու: Ընդ նմին և զմեծանուն արքայապատիւ սեւաստացն Աւշին՝ հանդերձ կենակցաւն իւրով սրբասիրի և բարեզարդ զաւակաւքն և քրիստոսասէր հարազատաւքն. ամէն:»

**ՅՈՒԼԻԱՆՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ**. — (JULIEN, ÉVÊQUE). — Յուլիանեայ եպիսկոպոսի Ալիկառնացու նախագրութիւն 'ի վերայ անձին Յովբայ. (յԱստուածաշունչ գիրս):

— Ի վերայ գրոց Յովբայ. «Նշանակ է գիրքս երանելւոյս». (Ոսկեփոր ժԱ):

**ՅՈՒԼԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ** (Հռոմայ). — JULES, PAPE). — Յուլիոսի եպիսկոպոսի Թուղթ առ Դիոնեսիոս. «Զարմանամ լսելով յաղագս ոմանց»:

գաւորաց որ գան 'ի խոստովանութիւն. (Թուով հարիւր են)։ (Մատենադ. Ս. Երուսաղէմի, թիւ 1304 [1])։

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ ՎԱՐՔ. (*Թարգմանութեամբ Գր. Վկայասէրի*)։ (Vie de St. Jean Chrysosthome, traduite par le patriarche Grégoire le Martyrophile).

*Յիշատակարան. « Յամի հազարերորդի հարիւրորդի Աստուծոյ մերոյ, և տեառն Յիսուսի Քրիստոսի գալստեան։ Եւ 'ի հինգհարիւրերորդի յիսներորդի 'ի մերում թուականութեանս և յեւթն և 'ի տասներորդի ամի թագաւորութեանն Կոմնոսն Ալեքսի բռնակալի. ես Գրիգորիս, որդի Գրիգորի Մագիստրոսի հայկազնոյ. ըստ աշխարհի պարթեւ. ըստ ժառանգութեանն Աստուծոյ պահլաւիկ... Կոչեցայ 'ի գիտապետութիւն ազգանս, 'ի բնիկ աթոռ հայրապետութեանն նախնեաց իմոց. և բազում նեղութիւն կրեալ մեր յայլասեռ ազգաց հեթանոսաց և բնակաց։ Եւ ապա յառաջ տասցեալ յամօք՝ հասաք 'ի սուրբ լեառն, զոր Սեաւ կոչեն, 'ի մեր սեպհական եկեղեցիքն յուխտն սուրբ, զոր ըստ ասորի բարբառոյ Պառլաճոյ կոչեն, որ թարգմանի դրախտ Աստուծոյ։ Եւ երեսուն և վեց ամի թագաւորութեանս, թարգմանեցի զվարս ճգնութեան մեծ և սքանչելի առնն Աստուծոյ Յովհաննու Ոսկեբերանի՝ Կոստանդինուպաւլսի եպիսկոպոսապետի 'ի ձեռն առն մի որում անուն էր Թէոփիստեայ, ազգաւ յոյն. և ապա ետու վերստին արծարծել զսա 'ի պարաքան և յաւտարա-*

2 Մատենախօսական տեղեկութիւնք Ոսկեբերանի գրուածոց՝ տես 'ի ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ ՀԱՅԿԱԿԱՆ, յէջ 530-539, աւելցընելով և զթարգմանութիւն 'ի լատին Մեխիթարեան Եպայեայ։

« Եւ 'ի սոյն գաւառ և գծնդակ և 'ի լեղալիր ժամանակի, բազում վշտակրութեամբ գրեցի առաջին հատոր սուրբ աւետարանիս Յոհաննու, և թողի յիշատակ ... Աւարտեցաւ առաջին հատորս 'ի թուաբերութեան Հայոց ՌՃԽ և մի ամին, ամսեանն փետըրվարի ԺԴ, ուր գալստեան տեառն Մերոյ Յիսուսի Քրիստոսի քառասնաւուրեայ 'ի տաճարին: Ի կաթուղիկոսութեան տեառն Նահապետի Ուռհայեցւոյ, և 'ի մերոյս առաջնորդութեան տեառն Մատթէոսի արհեպիսկոպոսի Ապրակունեցւոյ: Եւ 'ի յերկիրս Երնճակոյ, 'ի գեւղն Նորաշէն, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ Կարապետի, և սուրբ Նախավկայի տաճարիս, որ 'ի թուին ՌՃԼԶ ամին հիմն արկին բազում աշխատութեամբ և վշտակրութեամբ և յոլով ծախիւք »: ...

— ** Երանելւոյն տեառն Յովհաննու Ոսկեբերանի 'ի մարգարէն Եսայեայ մեկնութիւն, – որոյ յունական սկզբնագրին առաջին մասն եւեթ մնացած է յարեւմտեան բանասիրութեան, և հրատարակեալ 'ի Մոնֆոքոնէ 'ի վեցերորդ հատորի մատենագրութեանց սրբոյն, մինչև 'ի 102 էջ հայ տպագրին մերոյ (1880), ուր թարգմանիչն կամ գաղափարող հետագայ տեղեկութիւնը կու տայ. « Մինչեւ ցայսվայր գտաք իւրովք ձեռովք գրեալ երանելւոյն Յովհաննու յունարէն »: Հայկական ընտիր թարգմանութիւնն, գործ հինգերորդ դարու, ամբողջ պահուած և հասած է մինչեւ առ մեզ. քանի մը տեղ ընդհատութեամբ, 'ի սկզբան գրոցն և ուրեք ուրեք: Հայերենին վրայէն եղաւ լատին թարգմանութիւնն և հրատարակութիւն 'ի մեր տպարանի. և աւելորդ է ըսել թէ արեւմտեան հետաքննին ուսումնասիրութիւնն շնորհընկալ գովութեամբ ընդունեցաւ նաև զայս նոր պարգև հայկական հին մատենագրութեան:

— Կանոնք Յովհաննու Ոսկեբերանի վասն կար-

Նիրհեալ թըմբրեալս յայն գիշերի՝
Նուազեալ իւղոյս իմ լապտերի,
Երբեմըն ձեր պաշտաւնէի,
Սաստիւ մատնիմ անդ չար դահճի.
Վասըն որոյ ձեզ տեարք իմ յոգի
Աղաղակեմ այժմ ի մարմնի.
Ցիշել սովաւ զմեզ ի բարի
Քաւիչ լինել մեզ համայնի,
Երկնից բարեացն լինել ձեզ մի,
ԶԱստուած աւրհնել անլըռելի »:

Ցիշատակարան գրչի. «Քրիստոսի կարողութեամբն և առաջնորդութեամբ Հոգւոյն սրբոյ աւարտեցաւ առաջին գիրքս Մեկնութեան սրբոյ աւետարանիս Ցովհաննու, զոր բարձր քարոզն տիեզերաց Ցովհան՝ Բերանն ոսկի, արտայայտեաց 'ի զմայլումն մանկանց նոր Սիոնի, և 'ի կարկումն հերձուածողաց: Որք ընթեռնուք զսուրբ գիրս և աւգտիք 'ի սմանէ կարդալով և կամ աւրինակելով և կամ լսելով, արտի մտաւք թողութիւն մեղաց խնդրեցէք՝ ինձ բազմամեղի գծողի սորին, Մովսէս իրիցուս. որ գրեցի զսուրբ գիրս՝ ինձ պաշար յաւիտենական ճանապարհին. 'ի նեղ և 'ի դառն ժամանակիս. որ վասն ծովացեալ մեղաց մերոց մատնեալ կամք 'ի ձեռս ժանտաբարոյ ազգին Պարսից ... Եւ եղև զի 'ի նոյն ժամանակի չարագործ զաւրագլուխ ոմն յղեալ 'ի Թագաւորէն, երբև թէ կամէր զՎրաց տուն երթալ, և ժողովեաց անթիւ զաւրս 'ի վերայ իւր զմեծամեծս և փոքունս, որ իբրև զաւազ ծովու և զաստեղս յերկնից. և եկեալ մինչև եւթն ամ՝ խաբէութեամբ շրջեցաւ յերկիրս Աղուանից, Գանձայու, Գեղարքունու, Սիւնեաց և Բարգուշատու. և մասն ինչ 'ի Գողթնեաց, ոչ կայ առնելով 'ի տեղի ուրեք, և ոչ ամենեւին կասկած ունելով 'ի Թագաւորէն և կամ այլոց մեծամեծաց. և բազում սուս քրիստոնեայք, զսուրբ և զճշմարիտ հաւատս Քրիստոսի փոխանակեցին ... և միաբանեցան ընդ Պարսից ...

փառք … որ էառ կարողութիւն ապիկարս անձին հատանել յաւարտ սուրբ գանձիս … որ է աւետարան սրբոյն Յովհաննու, մեկնեալ Յովհաննու Ոսկեբերան վարդապետէ, շնորհաւք սուրբ Հոգւոյն, յոյժ համեղ բանիւք և յորդորականաւք։ Եւ յաւուրս Թագաւորայն մերոյ աստուածասիրաց (արտաքոյ տողին «Լեւոնի»), Թարգմանեալ 'ի լեզուէ յունաց և ասորւոց 'ի մեր բարբառ, 'ի կենարար գալըստեանէ տեառն մերոյ և փրկչին ՌՃԺԲ ամին, 'ի ձեռն Կիրակոսի ումեմն իմաստասիրի և առաքինւոյ» …

Հին բոլորագիր գրչագիր մը, (յԵրուսաղէմ), որոյ Թուականը կը պակսի, 'ի վերջ առաջին հատորոյն կը գնէ զյիշատակարանս. «Կատարեցաւ առաջին գիրք Յովհաննու սրբոյ Կոստանդնուպոլսի հայրապետի: Արդ որք ընթեռնոյք կամ գաղափար գնելով փարթամանայք 'ի Ճոխ և յանկապուտ մեծութեանց, յաստուածային գերունակ իմաստից, յիշեսջիք 'ի Քրիստոս զաշխատողս սուրբ կտակիս. Նախ զսրբազանն Կիրակոս վարդապետ, որ բազում աշխատութեամբ և ըղձափափագ տենչմամբ յասորւոց գրէ և լեզուէ, և 'ի յունականէն քերթողական արուեստիւ Թարգմանեալ 'ի հայ բարբառ և գիր: Ընդ նմին և զաստուածարեալ և գեղեցկանուն հայրն իմ ըստ հոգւոյ, զտէր Կոստանդին կաթողիկոս և զԳրիգորէս վարդապետս իմ և զՍտեփանոս. և զաղբիւրն իմաստից Դաւիթ և զայլ աշխատողսն յիս և կրթողս. և զուսումնակից եղբարսն և զըստ մարմնոյ սպասաւորսն և երախտաւորսն» … Ընդօրինակողն կը յաւելու ապա հետևեալ տաղաւորն որոյ սկզբնատառք կը յօդեն զանունն իւր.

Յահեղ աւուրն աներեկի
Ուր ազգք մարդկան անդ գումարի,
Հարսունք մաքուր լապտերաւք լի,
Աննիրհ արթունք մտից փեսայի.

երանելի պատրիարքին Կոստանդնուպօլսի տիեզերա-
կեցոյց, աշխարհալոյս վարդապետի Ոսկեբերան կո-
չեցելոյ մեկնութեամբ... վասն զի յարմար գոյ
յունականին բարբառ 'ի մերս ըստ թարգմանութեան:
Արդ ունկնդիր եղեալ ինձ՝ Թողեալ զԱնդրէաս երեց
սօրի զԹարգմանիչ՝ յղէ 'ի Միսապաւտամս գաւառ
առ յունական հռետոր Թէաւպիստէ կոչեցեալ. որ էր
քարտուղար և պռոտոյնոտար իշխանին Առաւն կոչե-
ցելոյ. և բազում ծախիւք առատատուր պարգե-
ւաւք նմա ետ թարգմանել զսուրբ գիրս: Եւ արդ
նա 'ի Քրիստոս փոխեալ յերանելի կեանսն՝ բազում
ժամք մնացին անթարգմանք: Յոր ես ձեռնարկեալ՝
նոյնպէս առատաբար ձրիւք զմնացեալսն ետուր ա-
ւարտել նմին առն: Եւ է ժամոյս թիւ զոր նորոգ 'ի
յայտ ածաք՝ յիսուն և հինգ ժամ. քանզի զերե-
սուն և զերիս բազում յուզիւք յառաջին մեր
թարգմանչացն գտաք թարգմանեալ: Ի սկզբան
տասն և երեք ժամ յասորի լեզուէ. բանքն իսկ ցու-
ցանեն. իսկ զքսանն 'ի յունականէն, որք լինին ե-
րեսուն և երեք ժամք: Բովանդակն էր գիրքն լեալ
թարգմանած 'ի հայս. և 'ի ծուլութենէ և յանփոյթ
առնելոյ այլքն կորուսեալ և եղծեալ էին յաւրինա-
կըս հինս՝ ուր և կայր: Եւ զայս զոր գտաք՝ 'ի յախ-
մօր և 'ի ադէտ խաւարած գրագրաց այլ և աւելի և
պակաս, անաւգուտ 'ի կարդալոյ և յիմանալոյ: Զոր
իմ Կիւրակոսի արպի և անարժանի 'ի ձեռն առեալ
ուղիղ յաւրինեցի ըստ կարի. այլ ըստ մտաց բանիցն
և այլ 'ի կրկին աւրինակաց. և ըստ այսմ զնորոգ
թարգմանեալս բազում ջանիւ և աշխատութեամբ
յերիւրեցաք յուղիղն բառ և 'ի բանս ըստ մերումս
զհաստակոտոր զխրթին բանսն. և ըստ վերադոյն գրե-
լոցն՝ ոչ աւելի և ոչ պակաս: Արդ այսպէս գրեցաք և
տուաք վերջին աւուրց վերջին դարուս» ...

Ուրիշ յիշատակարան մ'ալ. « Աւրհնութիւն և

տեառն։ — ՀԴ. Յաղագս Աստուծոյ մարդասիրու-թեանն և յորդորելով յառաքինութիւնս։ — ՀԵ. Յաղագս թէ չիք ինչ որ զառաքինութիւնն վնասիցէ, աւրինակաւ սրբոցն։ — ՀԶ. Յաղագս անհաւատ գալըստեանն Քրիստոսի։ — ՀԷ. Յաղագս տուրս տալոյ առաջնորդաց և սրբոց։ — ՀԸ. Յաղագս թէ բազում հոգովք և փորձութեամբ պաշարեալ են Թագաւորք և իշխանք, այլ երկնից արքայութիւնն է կեանք և խնդութիւն։ — ՀԹ. Յաղագս ամենեքին ոչ երդնուլ։ — Յաղագս ողորմածութեան և ոչ գանձելոյ միայն որդւոց, և չիննել և անկել. այլ զկտակարանն զմտաւ ածել և զմահն։ — Ձ. Յաղագս 'ի բանն մարգարէին որ ասէ. Ի նանիր խռովի ամենայն մարդ, գանձէ և ոչ գիտէ ում ժողովէ։

— Սրբոյ հօրն մերոյ Յովհաննու Ոսկեբերան հայրապետի Մեկնութիւն յաւետարանն Յովհաննու.

Ψπόμνημα εἰς Τὸν ἄγιον Ιωάννου απόστολον Και ἐψαγγελιστηυ.

Թարգմանչին յիշատակարանը. « Զաստուածպետականն բոլոր գոյութիւն... այլ և զանգիւտ հայկազանցս զլուսաւոր մարգարտիս զպատճառն զերանելի Լուսաւորչին մերոյ զփոխանորդ զԳրիգորիս զհոգեւոր հայրն մեր և զխնամածու յիշեցէք ի տէր։ Վասն զի նա եղև սկիզբն զաւուրս աւետարանիս մեկնութիւնս գրելոյ ի գիրս յայս ի ձեռն բազում աղաչանաց իմոց զինքն երանելին։ Որ և լուեալ ինձ ըստ աստուածասէր և պատուիրանասէր հոգւոյ իւրոյ, սկիզբն ետ առնել թարգմանութեաննախ յասորւոցն լեզուէ։ Եւ քանզի շաղփաղփ այլատարազ գոյ լեզու ասորի 'ի մերս հայկազանցս ազգ և լեզու, ըստ որում վերջատին իմ աղաչանս 'ի ձեռն առեալ վկայասէր ոգւոյն, 'ի յունականէն առնել զթարգմանութիւն գերահրաշ ճառից աստուածաբան աւետարանչի, Յովհաննու մեկնութեան, ի ձեռն հոմանուն

ժլչկութիւն բժշկաց սատանայի։ — Ծ. Յաղագս Պաւղոսի արտասուացն, և ոչ մտանել 'ի հարանիս կաքաւչաց և սատանայական երգոց։ — ԾԱ. Յաղագս անձամբ աղաւթել, և ոչ 'ի սրբոցն միայն յաղաւթսն ապաստան լինել։ — ԾԲ. Յաղագս որ յընչիցն կորուսեան ոչ երթան 'ի հարցուկս և 'ի գէտս՝ ընդ մարտիրոսացն առնուն վարձս։ — ԾԳ. Յաղագս ամենայն արդարութեան որ ընդդէմ մեղաց։ — ԾԴ. Յաղագս գեհենին տանջանաց՝ հաստատեալ աւրինակաւ Ջրհեղեղին և Սոդոմայ հրոյն, եղծանելով զոր ասեն թէ սպառնալիք միայն իցեն։ — ԾԵ. Յաղագս զգուշութեամբ գնալ ընդ նեղ ճանապարհն և մի ծուլանալ։ — ԾԶ. Յաղագս չար մարդոյ, նմանեալ գազանի և ոչ մարդոյ։ — ԾԷ. Յաղագս մոգուցն նմանել. և պահել զանձն 'ի գիջութենէ։ — ԾԸ. Յաղագս դարձի 'ի խոստովանութիւն և ապաշխարութիւն։ — ԾԹ. Յաղագս ամենայն առաքինութեանց կրթութեանց։ — Կ. Յաղագս նշանի սուրբ խաչին, և մարդասիրութեանն Աստուծոյ։ — ԿԱ. Յաղագս վաշխից։ — ԿԲ. Յաղագս պահոց և աղաւթից, և բարեկեցութեան և արբեցութեան։ — ԿԳ. Յաղագս հպարտիցն։ — ԿԴ. Յաղագս խնամ տանելոյ ընկերաց փրկութեան և որդւոց։ — ԿԵ. Յաղագս յաճախ երախտեացն Աստուծոյ անչափ, և մեր յաճախ մեղքն։ — ԿԶ. Յաղագս կուսութեան, աւրինակաւ Ներքինեաց։ — ԿԷ. Յաղագս առաւել քան տասանորդովք տալ աղքատաց։ — ԿԸ. Յաղագս ոչ լինելոյ անյոյս 'ի փրկութենէ, եթէ պոռնիկ իցէ և եթէ այլ մեղաւոր։ — ԿԹ. Յաղագս սրբոցն միայնակեցաց։ — Հ. Յաղագս մեռելոցն առնել աղաւթս և տուրս տալ, և վասն այնոցիկ որ անկենդանք գնացին։ — ՀԱ. Յաղագս ոչ բարձրամտել իւրք, այլ խոնարհ լինել։ — ՀԲ. Յաղագս ոչ բամբասել զքահանայս։ — ՀԳ. Յաղագս աւելորդ ծախուց ոսկւոյ և հանդերձից, և ամենայն զգայութեամբք ծառայել

արդարութեամբ կեալ և չարաչար գեհենին տանջանաց։ — ԻԵ. Յաղագս 'ի չափու ունել զանձն։ — ԻԶ. Յաղագս սիրոյ և զընկերն շահելոյ։ — ԻԷ. Յաղագս ոչ ողբալոյ զմեռեալս։ — ԻԸ. Յաղագս ոչ մատնելոյ անձամբ զանձինս 'ի փորձութիւն, այլ միշտ 'ի բարիսն կիրթ կալ։ — ԻԹ. Յաղագս հանդերձեալ բարութեանցն։ — Լ. Յաղագս ծերոց և մանկտւոյ զգաստանալոյ։ — ԼԱ. Յաղագս ստոյգ ապաշխարութեան։ — ԼԲ. Յաղագս ողորմածութեան և ոչ քննելոյ զարժանին։ — ԼԳ. Յաղագս ընտրութեան արքայութեանն և յորդորելով 'ի բարիսն։ — ԼԴ. Յաղագս ոչ սիրել զաշխարհս և որ ինչ յաշխարհի է, աւրինակաւ սըրբոցն։ — ԼԵ. Յաղագս 'ի չափու ունել զանձն, և առ զարդասէր կանայս։ — ԼԶ. Յաղագս ապաշխարութեան։ — ԼԷ. Յաղագս հանդերձեալ տանջանացն ստուգութեան, և ոչ խաւսել չար զումեքէ՝ այլ զանձնէ։ — ԼԸ. Ողբք յաղագս մեղուցելոցն և ոչ ապաշխարել։ — — ԼԹ. Յաղագս աւելորդ ցանկութեանցն։ — Խ. Յաղագս սատանայի և ահեղ խորհրդոց, և ոչ անարժանութեամբ հաղորդել։ — ԽԱ. Յաղագս կանանց աւելորդ պաճուճանաց և պչրանաց աշխարհականաց և կուսանաց հաւատաւորաց։ — ԽԲ. Յաղագս զորդիս և զդստերս խրատելոյ հարց և մարց՝ ըստ կամացն տեառն։ — ԽԳ. Յաղագս անձամբ տալ աղքատին, և վասն միայնակեցաց սրբոց։ — ԽԴ. Յաղագս հնազանդ լինել առաջնորդաց, և ոչ բամբասել։ — ԽԵ. Յաղագս սակաւ գողութեան և յափշտակութեան ընդ բազմի համարեալ 'ի չար կամացն։ — ԽԶ. Յաղագըս ոչ հաւատալ հմայից և հատընկեցաց, և որ ինչ սոցին նման են, զի ընդ կռապաշտութեան համարեալ է։ — ԽԷ. Յաղագս որ զանարժան ոք յեպիսկոպոսութիւն կոչէ, և ովք բամբասեն զառաջնորդն։ — ԽԸ. Յաղագս չարհամարհելոյ զառաջնորդն։ — ԽԹ. Յաղագս ոչ տանելոյ զմանուկ խաւթացեալ 'ի բը-

վասն զի որպէս աղտ և տիղմն զաւնկն մարմնոյ խը-նուն »։ (Հատուած Ճառի 'ի խմբագիր մեկնութենէ կաթուղիկէ թղթոց. 'ի Փարիզեան ազգային մատենադարանի, Suppl. 48).

Ի Մատենադարանին Երուսաղեմի (Թիւ 972) հետեւեալ ցուցակը կը գտնենք Ճառից Ոսկեբերանի, զոր արժան համարիմք գնել 'ի գիտութիւն բանասիրաց։

Ա. Յաղագս յեկեղեցին միաբան ընթանալ և աղաւթել։ — Բ. Յաղագս աղաւթելոյ։ — Գ. Յաղագս համբերութեան, աւրինակելով զՅոբ։ — Դ. Յաղագս չար նախանձու։ — Ե. Յաղագս բարեկեցութեան և որկորամոլութեան։ — Զ. Յաղագս ողորմածութեան։ — Է. Դարձեալ յաղագս ողորմածութեան։ — Ը. Յաղագս ոչ համարելոյ փոքր զյանցանս, այլ և 'ի փոքունցն զգուշանալ։ — Թ. Յաղագս ոչ բարկանալոյ։ — Ժ. Դարձեալ յաղագս ոչ բարկանալոյ։ — ԺԱ. Յաղագս Ճանաչելոյ զմեր բնութիւն, և ոչ ցանկալ գեղեցիկ գեղ կնոջ։ — ԺԲ. Յաղագս թէ ոչ 'ի հարկէ ինչ մեղք լինիցին, այլ 'ի չար կամաց։ — ԺԳ. Յաղագս արժանաւորութեամբ մերձենալ 'ի սուրբ խորհուրդն և ոչ ժամանակաւ։ — ԺԴ. Յաղագս թէ մի ինչ յառաքինութեանցն լուծանել, բաւական է հանել յարքայութենէն, և վասն տանջանացն. այլ և այլ մեղաց որ շատ և որ սակաւ։ — ԺԵ. Յաղագս առաջնոցն պընդութեան յառաքինութիւնսն, և մեր ծուլութիւն։ — ԺԶ. Յաղագս դառնալոյ 'ի չարեաց աւրինակաւ Նինուէացւոցն։ — ԺԷ. Յաղագս սիրոյն Քրիստոսի։ — ԺԸ. Յաղագս գուսանական խեղկատակութեան։ — ԺԹ. Յաղագս կռապաշտութեան, որ է ագահութիւն։ — Ի. Յաղագս առն և կնոջն սիրել զմիմեանս։ — ԻԱ. Յաղագս ծնողաց զորդիս խրատու տեառն սնուցանել։ — ԻԲ. Յաղագս միշտ յիշել զԱստուած։ — ԻԳ. Յաղագս ագահից և անարգ ծնողայ։ — ԻԴ. Յաղագս

բաստոսի. և յիշխանութեան անտառին գըրկիս Լամբրոնի աստուածասէր և բարեպաշտ իշխանաց իշխանի Հեթմոյ սեբաստոսի, ունելով իշխանակից իւր եղբարս հարազատս զԱպիրատ ու զՇահնշահ՝ յարտաքին գաւառս տիրողք. որ ունի և ծաղկեալ պաւակս զԱւշին անդրանիկ իւր, և զԿոստանդին ... Գրեցաւ յեղբայրանոցս որ 'ի գաւառիս Լամբրունի, որ գեղջուկ բարբառով 'ի հին սովորութենէն Գեմաձգեր յորջորջի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս. և յառաջնորդութեան սրբասէր և հարազատ եղբարց Աւետեաց և Յովհաննիսի: Արդ որ վայելէք՝ յիշեցէք աղաւթիւք զըստացաւղ գրոյս այսմիկ զտէր Ներսէս, աստուածային շնորհաւքն զարդարեալ և գիտութեամբ լցեալ, որ 'ի սոյն ամի հանգեաւ 'ի Քրիստոս » : ...

Ի Մատենադարանին Երուսաղեմի. (Թիւ գրչ. 972). « Անդրիանգեայ Ճառք և Ներբողեանք սրբոյն Յովհաննու ստացեալք Թարգմանեալ[1] յաւուրս հայրապետութեան տեառն Գրիգորիսի կաթուղիկոսի, և քրիստոսապսակ արքային Հայոց Լեւոնի. ըստ խնդրոյ երանելւոյն Ներսեսի Լամբրոնացւոյ. յամի տեառն 1191 և Հայոց ՋՃԻԷ ... (միւս գրչագիր 'ի նոյն Մատենադարանի, Թիւ 972, կը դնէ « յամի տեառն 1198, ՈԽԵ »): Գրչագիրն է աւրինակեալ 'ի Կոստանդնուպոլիս յամի տեառն 1714. գաղափարեալ 'ի ձեռագրէ գծելոյ ՋՃՄ Թուին Հայոց 'ի Սիս, ընդաւրինակեալ յեա (քսան և) երից ամաց Թարգմանութեանն:

— Յովհաննու Ոսկեբերանի 'ի բանէն որ վասն բարւոք վարուց և անխռով 'ի սնափառութենէ ըննելոյ այնոցիկ որք ոչ կրթին մարդկային իմաստութեամբ. « Սրբեսցուք զաղտս յունկանէ հոգւոյն.

1 Փոխանակ ըսելու ընդօրինակեալ, ինչպէս յայտնի է նաև 'ի նախընթաց յիշատակարանաց:

րարի, պատուիրանօք և հոգւով. և զբազմապատիւ զմարգարէն փոխանակ ամենեցուն, որոց ունէին երբեմն՝ փոխանակեցի, և եղէ մեծաշահ վաճառական, և զուարճանամ այսոքիւք առաւել, քան որովք բազմօք բերկրէի. և տանեմ զսա ամենայն կենաց իմոց հաղորդ, և խորհրդակից բարի և խաւսակից. և առաջնորդ վերին ճանապարհին. զի զամենայն զվայելականս անպատուեմ 'ի սորքինս կալ մնալ: Յայս ինձ ամենայն թափեցաւ սիրելութիւն զկնի Աստուծոյ: Արժան անմոռաց կանգնեցի յիշատակ հոգւոյ իմոյ ... Գրեցաւ աստուածադիր պատգամս այս 'ի թուականիս Հայոց յորում ՆՂԷ էր. 'ի գիկոտիոնէն հռոմոց, յերեքտասաներորդ ամին. 'ի թագաւորութեան Մոնոմախոս կայսեր, իսկ մեր լուսաւորութեանս եւթն հարիւր և քառասուն և չորս. և 'ի կուսածին ծագմանէն հազար քառասուն և հինգ: Իսկ եթէ համիս զճշմարիտն խուզել, զլինելութիւն արարածոցս, յԱդամայ մինչև 'ի ծնունդն Քրիստոսի լինին ամք ՐՆԻ յաւրագրելս թուական հռոմոցն՝ այսինքն ՋՃՋ լինի ՐՈ որք են տասնեակք և ամք (Մ) ՏՋ. այդ անվրէպ ժամանակագրութիւն ըստ հինգհարիւրեակ բոլորակին հոլովմամբ յետադարձութեան, վասն զի ամենայն ժամանակագրութիւնքն անմիաբան հանգիպին միմեանց մինչև ցհինգհարիւրեակ բոլորաւ (?) զոր յԱղեքսանդրիա կարգեցին երեսուն և վեց փիլիսոփայքն »:

Ի գրչագրին որ յԷջմիածին. « ... Ի շրջաբերութեան թուածին անուիս հայկազեան տոհմիս 'ի ՈԺ և եւթանց, 'ի տասներորդում ամի գերութեան քաղաքին սորա ... և 'ի թագաւորութեան Հայոց բարեպաշտ և քրիստոսապսակ արքային Լեւոնի ... 'ի 'ի հայրապետութեան տեառն Գրիգորիսի Հայոց հեզքնակի, և յարհիեպիսկոպոսութեան մայրաքաղաքիս Տարսոնի տեառն Ներսեսի որդւոյ Աւշինին ան-

րին ճանապարհին բարձրութիւնն. այլ սակայն համարձակելի է յԱստուած վերագրելով զյոյսն, որոմ քան ուխտաւորանչացն զաւրութեան. իսկ միւս պատմութիւնն՝ փոքրագոյն կենդանին ծիծառն՝ զաւրինակ իմն 'ի մեզ նկարագրէ զգարնայնոյն շնորհնմատեզծիչ գարնանայնոյն. առ որս ասէ Դաւիթ. Զգարուն և զամառն դու ստեղծեր. այս Թռչուն լուծանէ զտխրութիւն ձմերանւոյ, և ախորժելի առնէ զժամանակն ամենայն բանս հաւուցն երգովք. որք 'ի բոյնս և յանտառս հնչեն. հեշտալի ծիծառանցըն և տատրակացն 'ի լսելիս ազդեցեալ ձայն, որպէս և ծաղկաւն զուարճացեալ տեսութեամբ. և հոտոյն ուրախացեալ. զայսոսիկ պարտ վարկանիմ ոչ զերեւելի գարունս զայս նկատել, այլ հոգւոյ ակամբ տեսանել զգարունն հոգւոյ, յորժամ սառնամանոյց բնութիւնս այս սկսանի ընձիւղիլ 'ի ծագմանէ արեգականն արդարութեան. զորս միանգամայն ծագմամբ ճառագայթիւքն ջերուցանելով ընդնմին զ'ի ներքոյս կացեալ, որպէս զի ջեռեալ ոգւով, և զուարճացեալ ճառագայթիւք բանին, գարձեալ լինիցիմք Ջուր խաղացեալ 'ի կեանսն յաւիտենից. և արժանաւորապէս 'ի ժամու զպտուղն տուեալ, սաղարթալից բնակեսցուք 'ի տան տեառն, և 'ի խորանս սրբութեան նորա յաւիտեանս: Զայսոսիկ ընծայեմ Աստուծոյ գոհութիւն պատարագ ընտանեգոյն, ընծա քան զոսկի մաքուր, և քան զքարինս պատուով պայծառագոյն. քան զզոհս աւրինացն սրբագոյն, քան զանգրանիկացն պտուղս ընդունելի, հաճոյ Աստուծոյ քան զորթ մատաղ եղջերաւք և կճղակաւք, քան զխունկս, քան զողջակէզս, քան զբիւրաւոր գառանց պարարակց: Զայս երկու աստուածաբուղխ վտակս ընծայեմ Աստուծոյ, զայս նուիրեմ, զոր միայ ինձ ընքեան. Թողի որով միայն ճոխանամ: Քանզի զայլովք զամենեքումբք զանց ա-

գամոեցիք 'ի սուրբ վկայիցն յառաջագոյն յաւուրս յայս, լցայք հոգեւորական տաւնիւս, խայտացիք վբարի խայտալն պարելով» ։

— Ճառ ԽԱ. Վասն հաշտելոյ Թագաւորին ընդ քաղաքին, և որք մեղան 'ի կործանել զպատկերս անդրիանտացն. և 'ի գալուստ եպիսկոպոսին Փլաւիանոսի. ('Ομιλία κα.' Յոյնն Բ. 213)։ «Ի բանից որոց միշտ 'ի ժամանակի վտանգիցն ասացաք սիրոյ ձերում, յայնմանէ և այսաւր ականիմ և առեմ ձեզ» * ։

* Տպագրողք 'ի ծանօթութեան. «Վերջին Ճառս անդրիանտաց ըստ կարգի նախընթացիցն քսաներորդ նշանակեալ յաւրինակին մերում, քսաներորդ առաջներորդ է 'ի յունականն, որոյ քսաներորդն պակասի 'ի մերն» ։

Յիշատակարան «... Ես Տէր Պետրոս, շնորհիւն Աստուծոյ Հայոց կաթուղիկոս, ցանկացող եղեալ այսմ աստուածաճառ Ճառիցս, որքոյն Յովհաննու Ոսկեբերանի, մեծ փափաքանաւք և յորդորամիտ կամաւք, ստացա զստացուած, 'ի նշանաւոր և 'ի Ճշգրիտ գաղափարէ յիմաստնոյ Իսախիէ. առն Ճարտարի գրչի, ստացուած ոչ զառժամանակեայ, որ աւտար է բնութեանս մերոյ. այլ զստացուածն որ կայ մշտնջենաւոր զանիբացբառնալին, և առ Աստուած Ճանապարհին առաջնորդ. զայս երկու վըտակս հոսեալ յանծայրս ծովէ, ժողովեալ 'ի մի պարունակող բովանդակեցի գետ, որ ուրախ առնէ զքաղաք Աստուծոյ՝ այսինքն զբանաւոր կենդանատունգս, տնգեալք 'ի տան Տեառն. զի անհասից պատմութիւնքն՝ 'ի փափաքումն ածէ գերակատեսութեան էիցն բարեաց, և տրամութիւն ամբարեաց յոգիս մեր, աւրինակ իմն հրաժարումն առնելով անհասութեան իմաստիցն. քանզի որպէս արգեւք առանց տրամութեան լինիցի. գիտելով զայնքան վե

բայց Աստուած ոչ համեցաւ. այլ յամաւթ արար զսատանայ »:

— Ճառ ԺԵ. Դարձեալ խաւսք վասն քաղաքին իրաց. և թէ բարի է երկիւղն և ողբումն քան ըզ-ծաղր. և 'ի բանն որ ասէ. Ծանիր եթէ 'ի մէջ որո-գայթի շրջիս. և թէ քան զսպանանել՝ չար է յեր-դումն առնել զոք. ('Ομιλία ιε.' Յոյնն Բ. 151): « Պարտ է այսաւր՝ որպէս յառաջինումն շաբաթուն վասն պա-հոց սկսանել զբանս. և մի ոք աստանց ժամանակի կարծեսցէ զասացեալս »:

— Ճառ ԺԶ. Վասն համբաւոյ գալստեան իշխանին Բրեգայ, յորում ամենեքեան զփախուստ խորհէին. և 'ի գալ կռանին յեկեղեցին մխիթարել. և 'ի կա-տարեան Պաւղոսի զոր ասէ. « Պաւղոս կապեալ Յի-սուսի Քրիստոսի » և վասն երդման. ('Ομιλία ιϛ.' Յոյնն Բ. 160): « Զիշխանն իսկ գովեցի. վասն զի թու-թեանն իւրոյ որ խաւսեցաւ ետես զամենայն քաղաքա-մէր, և զամենեսեան 'ի խորհուրդ փախստեան »:

— Ճառ ԺԷ. Վասն առաքելոյ իշխանացն 'ի Թա-գաւորէն Թէոդոսէ՝ Եղեբիոս զաւրավարն և Կե-սարիոս մագիստրոսն քննել զյանցանս քաղաքին վասն պատկերին գործուցանելոյ. ('Ομιλία ιζ.' Յոյնն Բ. 171): « Ի ժամանակի պաշտեցաք ամենեքին ա-հաւասարակ, ուրհներաւ եւ տէր Աստուած Իսրայելի՝ որ առնես սքանչելիս միայն »:

— Ճառ ԺԸ. Վասն յառաջնորդեալ վտանգիցն, և վասն պահոց. և 'ի բանն Առաքելոյ. Ուրախ լե-րուք 'ի տէր յամենայն ժամ. ('Ομιλία ιη.' Յոյնն Բ. 180): « Զբազումս տեսի ուրախացեալս և ընդ մի-միմեանս ասելով. Յաղթեցաք անցաք զհասարակ պա-հոցս »:

— Ճառ ԺԹ. Խաւսք վասն կեցուցիչ կիւրակէին անոյ, և յեկեղեցին բազմութիւն. և թէ ամենեւին չէ պարտ երդնուլ. ('Ομιλία ιθ.' Յոյնն Բ. 188): « Խըն-

խարհէ և զարարչութենէն Աստուծոյ. և բնաւ 'ի բաց կալ յերգմանէ. ('Ομιλία ι.' Յոյնն Բ. 105)։ « Ուրախ եմ, և ուրախակից լինիմ ձեզ ամենեցուն, և զխրատն մեր վասն նոցա որք ոչ պահեցին զմնացեալն նախ 'ի ձէնջ այսաւր 'ի գործ մատուցանել »։

— Ճառ ԺԱ. Գոհութիւն Աստուծոյ վասն փոխարկելոյ ականակալ չարեացն և յիշելոյ զնոյն, և արհամարհանաց մարմնոյ մերոյ և նորին սանձմանն. և ուղղելոյ զշաւիղս երգմանն. ('Ομηλία ια.' Յոյնն Բ. 114)։ « Յորժամ զմտաւ ածեմ զանցեալ ձմեռն և զհատեալ հանդարտութիւնս, ոչ դադարեմ ասել՝ աւրհնեալ է Աստուած »։

— Ճառ ԺԲ. Գոհութիւն առ Աստուած, և վասն թողութեան զոր առ թագաւորն մեղան, և վասն արարածոց, և բնական աւրինաց մարդոյն, և վասն երգմանն. ('Ομιλία ιβ.' Յոյնն Բ. 123)։ « Եւ երեկ ասացի՝ աւրհնեալ է Աստուած, և դարձեալ զնոյն ասեմ »։

— Ճառ ԺԳ. Դարձեալ գոհութիւն Աստուծոյ վասն ազատելոյ 'ի խռովութեանցն, և յիշումն զոր քարշէին և տանջէին. և դարձեալ վասն մարմնոյն հրաշագործութեան, և բնական աւրէնաւք գիտութիւն գործոց, և սերտիւ ուղղել զերդումն. ('Ομιλία ιγ.' Յոյնն Բ. 133)։ « Ի նախնի բանս եկեալ և 'ի սոցին առաջաբանութիւնս զոր յերեկն և յեռանդն սկըսաք, և այսաւր զնոյն սկսանիմք և ասեմք, աւրհնեալ է Աստուած »։

— Ճառ ԺԴ. Խաւսք վասն նոյն քաղաքին իրաց. և զի ոմանք յաճախեցին զհամբաւ ահին և յանդգմանեցան. և խրատ վասն երգման և զանցանելոյ աւրինական պատմութեան Յովնաթանու, յԵփթայէ և 'ի Սաւուղայ. ('Ομιλία ιδ.' Յոյնն Բ. 140)։ « Ոչ որպէս կամէաք խռովեցոյց զքաղաքս մեր սատանայ.

* Տպագրողք 'ի ծանօթութեան. « Թուղթ ան-կեալ յօրինակէն, թերի միոյ վերջին հատուած այսր ճառի և սկիզբն վեցերորդին » ։

— Ճառ Զ. Թէ բարւոք է երկիւղ իշխանաց. և վասն գիւղուածոյ ճանապարհին որոց հանդերձեալ էին պատմել Թագաւորին. և թէ որք անպարտ գոլով չարչարեցին և գոհանան զԱստուծոյ, հաւասար են որք վասն Աստուծոյ չարչարեցին աւրինակաւ 'ի գրոց վասն երգման ։

— Ճառ Է. Խաւսք եթէ մահք և տրտմութիւնք մեղքն բերին յաշխարհս, և նովին դարձեալ բարձցին մեղքն. և եթէ. « Ի սկզբանէ արար Աստուած զեր-կին և զերկիր ». և թէ ոչ միայն պատուէ զմեզ Աս-տուած, այլ և տանջէ ըստ նմանութեան բարու-թեանց. (Ὁμιλία ζ.' Յոյնն Բ, 84). « Բազում աղ-քինութեամբ երեկ իսկ յայտնեցաք սիրոյդ ձերում. և յայնմ բազմութենէ եթէ ոչ զամենայն ունել 'ի միտս ձեր » ։

— Ճառ Ը. Յաղագս գնալոյ տեառն Աստուծոյ 'ի դրախտի անդ ընդ երեկս. և վասն փախչելոյ յերգ-մանէ. (Ὁμιλία η.' Յոյնն Բ, 91). « Իմացայք յա-ռաջագոյն եթէ զիարդ ամենայն մեղք մխիթարիչք են և ամենեցուն զմխիթարութիւն բերեն » ։

— Ճառ Թ. Գովութիւն գովասանական յաղագս ուղղելոյ ժողովրդեան չերդնուլ, և թէ զկնի կերա-կրոյ պարտ է մտանել յեկեղեցին և ունկն դնել բա-նից Աստուծոյ. և ընդէր յետ բազում ժամանակաց տուաւ գիր. և յութևտասներորդ սաղմոսէն Դաւ-թի. և թէ չէ պարտ երդնուլ. (Ὁμιλία θ.' Յոյնն Բ, 96)։ « Եւ նախ ընդ ձեզ էի, և այժմ առ ձեզ եմ. պարտ է և հանապազ իսկ կալ ընդ ձեզ, ոչ թէ ըստ մարմնոյ գոլով, այլ զաւրութեամբ սիրոյ » ։

— Ճառ Ժ. Խաւսք եթէ պարտ է յետ կերակրոյ ոչ հեռանալ յեկեղեցւոյ. և քնախաւսութիւն զաշ-

յանխիմաստութենէ. և վասն անդրէն դարձուցանելոյ զպատկեր մեծի թագաւորին Թէոդոսի. և 'ի բան Առաքելոյ. Մեծատանց պատուիրել յայսմ ժամանակի զգոյշ լինել. և վասն ագահութեան. «Զինչ ասացից կամ զինչ խօսեցայց. արտասուել զհանեալ ժամանակս՝ ոչ բանիւք, ողբերգութեամբ՝ ոչ խաւսիւք, աղաւթից յայս համարձակելոյ մեծութիւն։

— Ճառ Գ. ('Ομιλία γ.' Յոյնն. Հատ. Բ, 35)։ Յաղագս գնալոյ Փլաբիանոսի արքեպիսկոպոսի առ թագաւորն բարեխաւսել վասն քաղաքին զի դարձուցին զանդրիանդքն. և զի բարձրագոյն և մեծ է ըստ Աստուծոյ քահանայութիւն քան զթագաւորութիւն. և վասն պահոց պնդութեան աւրինակաւ Նինուէացւոցն առ անասունսն. և թէ բամբասելն և չարախաւսելն վատթար է քան զմարմին եղբաւրն ուտելն. և զի բազում պարտաւորք ազատեցան և անպարտք պատուհասեցան. «Յորժամ ընթանամ յաթոռ քահանայապետին, տեսանեմ զայս միայն անապատ և ունայն 'ի վարդապետէն. խնդամ և արտասուեմ»։

— Ճառ Դ. ('Ομιλία δ' Յոյնն. Հատ. Բ, 48)։ Մխիթարութիւն առ ժողովուրդն, և վասն ներողութեան և համբերութեան աւրինակաւ Յոբայ և երից մանկանցն. և վասն 'ի բաց կալ հանապազ 'ի բանից երդմանէ. «Աւրհնեալ է Աստուած որ մխիթարեաց զվտանգեալ անձինս ձեր, և հաստատեաց զդողացեալ սիրտս ձեր»։

— Ճառ Ե. Դարձեալ առ ժողովուրդն՝ զի քաջութեամբ տանիցին եկելոց սպառնալեացն աւրինակաւ 'ի գրոց չափաւոր պատմութիւն Յովբայ և Նինուէացւոյն. և զի քան 'ի մահուանէ՝ 'ի մեղաց պարտ է երկնչել. և թէ ամենայն ջանիւ պարտ է փախչել յերդմանէ. ('Ομιλία δ.' Յոյնն Բ, 59). «Զերից մանկանցն և զհնոցին Բաբելացւոց պատմութեամբ չափաւորութեան զիարդ պարտ իցէ մխիթարել և աղաչել զսէր ձեր՝ երեկ ասացաւ»*։

* Ի վախճան ճառին գրչագիրն որ 'ի Մատենադարանին Էջմիածնի կը յաւելու. « Զտէր Պետրոս Հայոց կաթողիկոս զատուցաւղ սուրբ գրոցս լուսաւոր վարդապետութեանս Յովհաննու յիշեսջիք 'ի Քրիստոս, որ մեծաւ փափաքանաւք ետ գրել. որպէս զի և կատարեալ վարձուց ընդ նմին արժանասցի 'ի Քրիստոսէ »։

— Ճառ Ջ. Ի նորում եկեղեցւոջն ասացեալ առ Անոմեանսն յաղագս անհասանելւոյն. ( Λόγος ια.' Յոյնն Հատ. Ա, 541). « Մի ասէր ընդ ձեզ խաւսեցայ, և յաւուրէն յայնմանէ այնպէս զձեզ սիրեցի, որպէս եթէ 'ի սկզբան և 'ի վաղուց հետէ ձեր եցեմ սննդակից »։

— Ճառ Է. Ի յարութիւնն Ղազարու. (Εἰς τὸν τετροήμερον Λάζαρον). « Այսաւր 'ի մեռելոց յարուցեալ Ղազարու, 'ի բազում և 'ի պանտողան վտանգից և 'ի վշտաց շնորհեաց մեզ մխիթարութիւն մեկնութեան »։

Անդրիական ճառք։ — Յանկք։ Վասն պատճառի գրոցս Անդրիանտաց. « Արդ յետ հրկիզն լինելոյ Վաղեսի կայսեր »։

— Ճառ Ա. (Ὁμιλία α.' Յոյն բնագիրն առ Մոնֆոքոնի. Հատ. Բ.)։ Խաւսք ասացեալ յԱնտիոք երբեմն նոր քահանայ 'ի հին եկեղեցիս. 'ի բան Առաքելոյ առ Տիմոթէոս՝ եթէ սակաւ գինի խառնեսջիր վասն ստամոքսին և ստէպ հիւանդութեանց. և որք գայթակղին վասն արդարոյն վտանգից, և մեղաւորացն 'ի բարիս վայելելոյ. (Εἰς τοὺς Ἀνδριάντας ὁμιλίαι καὶ ἐν Ἀντιοχείᾳ πρεσβυτέρου, αὐτοῦ ὑπάρχοντος, ἐν τῇ παλαιᾷ ἐκκλησίᾳ). « Լուայք զառաքելական զձայնն, զփողն երկնային, զերգն հոգևորական »։

— Ճառ Բ. (Ὁμιλία β.' Յոյնն. Հատ. Բ, 20)։ Խաւսք ասացեալ յԱնտիոք երբեմն նոր քահանայ 'ի հին եկեղեցիս յաղագս եկելոցն գայթակղութեանց

զԱստուծոյ զաւրութիւնն, անտէք զԱստուծոյ ըզ-մարդասիրութիւնն »։

— Առ Անոմեանսն, յաղագս անհասանելւոյն, 'ի բաց եղելոյ եպիսկոպոսին որ յԱնտիոք. (Τοῦ αὐτοῦ περὶ 'Ακαταλήπτου, ἀπόντος τοῦ ἐπισκόπου πρὸς Ἀνομοίους). Ճառ Ա. « Զինչ այս. հոգին ոչ է մերձ, և հաւան հանդերձ յուրով բարեկարգութեամբ կայ »* ։

* Տպագրողք 'ի ծանօթութեան. « ...Երկրորդական Ճառից յունականին (յԱնհաւտից գրոց) եւթն միայն կան առ մեզ » ։

— Ճառ Բ. Յառաջ քան զբազում աւուրս առ Անոմեանսն ասացեալ, այսպէս առ Հրեայս. և այսպէս դարձեալ յաղագս եպիսկոպոսաց և վկայից եղելոց բազմաց, այժմ դարձեալ առ Անոմեանսն յաղագս անհասանելւոյն. (Λόγος λ.' Յոյն բնագիրն առ Մոնֆոքոնի. Հատ. Ա, 452). « Երբ պատուհեալ առ անհասական Անոմեանսն մերկացուք. Թէպէտև զայրանայցեն անհաւատք ասացեալք, փախիցեն յիրացն. և ես փախչիմ յանուանէս » ։

— Ճառ Գ. Յաղագս անհասանելւոյ. և եթէ ոչ նուաստանալն Աստուծոյ' բերելի է 'ի սերովբէիցն. (Λόγος γ.' Յոյնն Հատ. Ա, 462). « Աշխատանէր մըշակք յորժամ տեսցեն ծառ անպտուղ և ընդանի աշխատութեանցն նոցա ժանտացուցիչ » ։

— Ճառ Դ. Առ Անոմեանսն' յաղագս անհասանելւոյ. ( Λόγος δ.' Յոյնն Հատ. Ա, 471 ). « Բաւական էր ցուցանելն յառաջագոյն մարդկան անհասանելի գոլ զԱստուած և հրեշտակաց և քերովբէից և սերովբէից 'ի բաց վճարեալք յիրացն » ։

— Ճառ Ե. Յաղագս անհասանելւոյն. ( Λόγος ε.' Յոյնն Հատ. Ա, 480 ). « Յորժամ հանդերձեալ ոք իցէ զերկայնագոյն պատճառէն բուռն հարկանել »* ։

— **Խաւսք** յանյայտութիւն հին կտակին և յԱս-տուծոյ մարդասիրութիւն. և յաղագս ոչ չարա-խաւսելոյ. (Ἐτὶ εἰς τὴν ἀσαφέιαν τῆς παλαιᾶς διαθήκης, καὶ εἰς τὴν τοῦ Θεοῦ φιλανθροπίαν). «Զուարճանայ անդէորդ յորժամ քաջաբուտ և պնդակազմ տեսանիցէ զիւր զարջառոցն հոյլս»։

— Զկնի կաղանդացն յաղագս արբեցութեան և ողորմութեան. և 'ի Ղազարոս և որ առ նովաւ ընչեղն, որ է տաւն հեթանոսաց. (Εἰς τὸν πτωχὸν Λάζαρον καὶ τὸν πλούσιον). «Զերէկեան աւրն՝ տաւն սատանայական՝ արարաք տաւն հոգևոր»*։

* **Տպագրողք** 'ի ծանօթութիւնս. «Ընդարձակ ճառս 'ի յոյն բնագրին՝ զեղչեալ է յօրինակին մե-րում աւելի քան զերկու հարիւր տողս յայլ և այլ տեղիս, յորս զանց առնեմք նշանակել»։

— **Ի** Ղազարոս ճառ երկրորդ. (Εἰς τὸ Λάζαρον λόγος δεύτερος). «Աքանչացայ ընդ սէրն ձեր՝ յոր-ժամ յաղագս Ղազարու յառաջագոյն չարժեցի զբանն»։

— **Ի** Ղազարոս ճառ երրորդ. (Εἰς τὸν Λάζαρον λόγος τρίτος). «Ոչ դուզնաքեայ ինչ աւգտեաց Ղա-զարու առակն զճոխս և զաղքատս»։

— **Ի** Ղազարոս ճառ չորրորդ. (Εἰς τὸν πλούσιον καὶ τὸν Λάζαρον λόγος τέταρτος). «ԶՂազարու զա-ռակիս զկատարած հարկաւոր է այսաւր ընձեռել»։

— **Յ**ասացուածս Պաւղոսի յաղագս ննջեցելոցն. «Ոչ կամիմ զձեզ անգիտանալ, եղբարք, որպէս և այլքն». (Εἰς τὸν ῥήτον τοῦ ἀποστολου, περὶ δὲ τῶν κεκοιμημένων οὐ θέλω ὑμᾶς ἀγγοιεῖν, ἀδελφοί ...). «Աւ-սուրս չորս ծախեցաք որ ըստ Ղազարու առակն էր ձեզ պատմելով. և զգանձն պեղեցաք՝ զոր գտաք 'ի վերաւորեալ մարմին ամբարեալ»։

— **Խաւսք** որ 'ի շարժմանն եղեն. (Εἰς τὸν σεῖσμον καὶ εἰς τὸν πλούσιον καὶ εἰς τὸν Λάξαρον). «Տեսէք

րոյս՝ կարծիս, տալ անզերծ լինել 'ի համարձակութենէ օտար ձեռաց, կամ հատուածոց նորա ոմանց վրիպակաւ թէ յանգգնաբար շփոթեալ ընդ այլում ճառի: Միով այսու օրինակաւ շատացեալ գա ժամըս, ստուգեսցի ժամանակաւ 'ի բազմութենէ օրինակաց որ հարազատն իցէ»:

— Յաղագս վերստին կոչման իւրոյ. (Τοῦ αὐτοῦ ἐπανελθόντος ἀπὸ τῆς προτέρας εὐξορίας ὁμιλία). «Յորժամ զՍառա յԱբրահամէ յափշտակեաց Փարաւոն, զգեղեցիկ և զբարի կինն»:

— Վասն Քանանացի կնոջն. (Εἰς τὴν ἐπίλευσιν τῆς Χαναναίας). «Յոյժ են խռովութիւնք. այլ զձեր յաւժարութիւն փութոյն չկարաց արգելուլ»:

— Ի մարգարէական բանն. Եւ եղև 'ի տարւոջն յորում մեռաւ Ոզիա արքայ. և թէ ոչ ժամանակաւ և զգրով միով զանց առնել պարտ է զգրոց. (Εἰς τὸ ῥητὸν τοῦ προφιτοῦ Ησαΐου τὸ λέγον καὶ ἐγέντο τοῦ ἐνιαυτοῦ, οὗ ἀπέθανεν Ὀξίας ὁ βασιλεύς). «Զուարճանամք, 'ի միասին ընթացեալս զձեզ տեսանելով 'ի գրոց լսելութիւն»:

— Ի բան Մնացորդացն որ ասէ. Բարձրացաւ սիրտն Ոզիայ. և յաղագս խոնարհութեան. և եթէ պարտ է ոչ վստահանալ յառաքինութիւն, և որքան չար է ամբարտաւանութիւն. «Աւրհնեալ է Աստուած. և յազգիս մերում ընծայեցան վկայք. արժանաւորք եղեաք և մեք տեսանել զմարդիկ յաղագս Քրիստոսի սպանեալս»*: Յոյն բնագիրն առ Մոնֆոքոնի, Հատ. Զ, 120:

* Ի ճառեցեալն յաղագս Ոզիայ. «Բեր այսաւր որ յաղագս Ոզիայ պատմութեանն է՝ հատուսցուք ձեզ զպարտսն»: Յոյնն, Հատ. Զ, 231:

— Ի բանն. Եւ եղև 'ի տարւոջն յորում մեռաւ Ոզիաս, և վասն ապաշխարութեան. ( Εἰς τὰ σεράφειμ). «Հազիւ ուրեմն վասն Ոզիայ հատաք անցաք զանդնդալից ծովուն զլայնութիւն»:

գաղափարելով մին 'ի ՇԻԵ (1076) թուին, և միւսն 'ի ՉԼԷ (1288).

— Ի սակաւութիւն ժողովեցելոցն և յամրութիւն Պաւղոսի կոչմանն. և զի աւգտակարագոյն է զինի յարութեանն. ('Α··αγνωσθεις περὶ κοπῆς Σαῦλ:ς δέ ἔπι εμπνέων ἀπειλης καὶ φονοῦ). « Արդեւք այսօրինակ նե-րելի. արդեւք այսօրինակ համբերելի. հանապազաւր մեր ժողովս 'ի նուաղութիւն ամփոփի »:

— Յաղագս խոնարհութեան, և 'ի բանս առաքե-լոյն. Եթէ պատճառանաւք և եթէ ճշմարտութեամբ Քրիստոս քարոզի. (Πρὸς τοὺς οὐκ εἰς δεονχρωμετύους τῶν ἀποστολικῶν ῥητῶν ...). « Զփարիսեցին և զմաքսաւորն յիշեցաք յառաջագոյն. և երկուս կառս բանիւ-լծեալ՝ յառաքինութենէ և 'ի չարութենէ »:

— Յաղագս ոչ հրապարակագոյժ առնելոյ զմե-ղանս եղբարց. և ոչ հակառակ աղաւթել թշնամեաց. (Περὶ τοῦ μὴ δημοσιεύειν τὰ ἁμαρτήματα τῶν ἀδελφῶν)· « Երանեմ զձեր փոյթդ, սիրելիք, որով 'ի հայրենի տունս 'ի միասին ընթանայք »:

— Խաւսք յԵւտրոպիոս իշխան, որ յահէ թա-գաւորին ապաւինեալ եղև յեկեղեցին. ('Ομιλία εἰς Εὐτρόπιον εὐνοῦχον πατρίκιον καὶ ὕπατον). « Միշտ, առաւել եւս այժմ, 'ի դէպ է ժամանակ ասել. Ու-նայնութիւն ունայնութեանց ամենայնն ունայն է »:

— Խաւսք յորժամ հանգերձեալ էր անկանել. ('Ο-τε ἀπήει ἐν τῇ ἐξόρια). « Մարդաւէր մեզ ժողովս, և պայծառ մեզ տաւնս է այսաւր »*:

* Տպագրողք 'ի ստորեւս իշխեն. « Ընդ երկբայա-կանս թերեւս գտանելի էր առաջակայ ճառդ յաղա-գըս անյայտ և անկցորդ հատուածոց նորա և իմաս-տից, եթէ չկայր 'ի միջի յոյն բնագիր նորա 'ի կար-գի հարազատացն. սակայն և այնպէս թերակատար մնացեալ յունականին 'ի կէսս և անդր, և մնացորդ ճառիցն ոչ ճշգրիտ համաձայնութեամբն ընդ մե-

— Ի սուրբն Մելետիոս Անտիոքայ Եպիսկոպոս և 'ի բազմութիւն ժողովոյն, որք եկին միաբան տանել զսուր կատարման նորա, որ է յամսեանն փետրուարի ԺԳ. (Εἰς τὸν ἐν ἁγίοις πατέρα ἡμῶν Μελέτιον ἀρχιεπίσκοπον Ἀντιοχείας). « Ընդ ամենայն տեսակս ժողովրդեանն շրջեցուցանեմ զաչս իմ, և զամենայն քաղաքս աստ եկեալ տեսանեմ » ։

— Ներբողեան ասացեալ 'ի սուրբն Իգնատիոս եպիսկոպոս Անտիոքայ. որ վկայեաց 'ի Հռովմ քաղաքի. և զկնի վկայութեան սրբոյն՝ նշխարք նորին շնորհեցան անտիոքացւոց քաղաքին. (Εἰς τὸν ἅγιον ἱερομάρτυρα Ἰγνάτιον τὸν Θεοφόρον). « Պատուասէր կոչնատեարքն ստէպ բազմախորտիկս և զանազանս պատրաստեն սեղանս » ։

— Ի Պետրոս և 'ի Հեղիաս. (Λόγος εἰς Πέτρον τὸν ἀπόστολον καὶ Ἠλιοῦ τὸν προφήτην). « Սակաւք են այսօր առ մեզ եկեալքս. և զինչ արդեւք իցէ պատճառ » ։

— Առ որս թողին զժողովս, և յաղագս (ոչ) զանց առնելոյ զվերագիր աստուածային գրոց, և 'ի գիր մեհենին, և 'ի նոր լուսաւորեալսն. (Πρὸς τοὺς ἐγκαλείψαντας τὴν σύναξιν τῆς ἐκκλησίας). « Զի՞նչ այս. որքան յառաջէ մեզ տաւնս, այնքան և ժողովքս նուազ լինի » ։

— Ի վերնագիր գործոց առաքելոցն. և թէ պատուականագոյնք են առաքինի վարք քան զնշանս և զսքանչելիս առնել և ունել. և ի՞ւ զանազանին առաքինութիւնք 'ի նշանաց. (Συμάξεως διὰ χρόνου... εἰς τὴν ἐπιγραφὴν τῶν πράξεων τῶν ἀποστόλων). « Յետ բազում ժամանակի առ մայրս մեր դարձեալ վերստին եկաք » * ։

* Ի տպագիր ցուցակին Էջմիածնի՝ (Թիւ 1330-31) բաց 'ի ծանօթ խմբագրէն, կը նշանակուի յանուն Ոսկեբերանի նաև ընդարձակ Մեկնութիւն Գործոց,

քեանս. և վասն նշանի պատկերաց այլազգեաց որ կապեն 'ի ձեռս բերեանց, յոտս և 'ի գլուխս. և զի աւտար է այս 'ի հաւատացելոց Քրիստոսի. (Κατηχήσεις πρὸς τοῦς μέλλοντας φοτίζεαις). « Զյառաջագոյն հաստատեալն սիրոյ ձերում, այժմ նախ մերձ եղէ զպտուղն խնդրել 'ի ձէնջ » :

— Առ այնոսիկ որ խնդրեննն ընդէ՞ր ոչ 'ի միջոյ 'ի բաց եղև սատանայ. և եթէ ոչ ինչ զմեզ վտանգէ և վնասէ նորա չարութիւն, եթէ զգուշանայցեմք. և յաղագս ապաշաւանաց. (Πρὸς τοὺς ἐγκαλοῦντας τίνον ἕνεκεν οὐκ ἐκ μέσου γέγονεν ὁ διάβολος). « Իսահակ ցանկացաւ երբեմն Ճաշ 'ի ձեռաց որդւոյն ուտել, և զորդին յորս առաքեաց 'ի տանէն » :

— Եթէ 'ի ծուլութենէ է չարութիւն և 'ի փութոյ առաքինութիւն. և ոչ ինչ՝ ոչ չար մարդիկ և ոչ ինքն սատանայ յարթունն վնասել կարէ. եցոյց այլուստ ամենայն ուստեք և յԱդամայ և Յոբայ. ('Ότι ἐκ ῥαθυμίας ἡ κακία, καὶ ἀπὸ σπουδῆς ἡ ἀρετή): « Մեք նախ զերիկեան աւրն որ յաղագս սատանայի բանք էին » :

— Յաղագս քնարանին և 'ի խաչն. (Εἰς τὸ ὄνομα τοῦ κοιμητηρίου, καὶ εἰς τὸν σταυρὸν τοῦ Κυρίου). « Բազում անգամ խնդրեցի յիս ինքեան՝ ընդէր արդեւք հարքն մեր զաղաւթարանացն տամբք որ 'ի քաղաքիս են զանց առնելով, արտաքոյ քան զքաղաքս մեր այսաւր և աստ ժողովել աւրինադրեցին » :

— Ի խաչելութիւն Տեառն. (Εἰς τὸν σταυρὸν καὶ εἰς τὸν ληστόν). « Այսաւր տէրն մեր 'ի խաչին, և մեք տաւնս առնեմք. զի ուսցիս եթէ խաչն տաւն է և ժողով հոգևորական » :

— Յաղագս յարութեան. (Περὶ τῆς τῶν νεκρῶν ἀναστάσεως ὁμιλία). « Յաղագս գործոց ընդ ձեզ յառաջագոյն խաւսեցայ, և միածնին փառաց. կարկելով որք զնա պատիւն » :

ատացուած. «Կատարեցէք զպահոց նաւարկութիւն. և 'ի նաւահանգիստս՝ Աստուծոյ շնորհաւքն այսուհետև ժամանեցաք»*։

* Բնագիրն յոյն. (Εἰς τὴν μεγάλην εβδομάδα, ἐν ᾗ διδασκαλία, τίνος χαρίν καλεῖται μεγαλη ἑβδομάς). «Ի մեծ շաբաթն, թէ ընդէ՞ր մեծ կոչեցաւ. և 'ի բանն Աւրհնեա անձն իմ զտէր. և 'ի բանտապահն որ 'ի Գործս առաքելոց»։

— Ընդդէմ արբեցութեան յառաջնում աւուր Պենտակոստէին. (Κατὰ μεθυοντῶν). «Ի բաց եդաք զպահոցն բեռն. այլ մի 'ի բաց մերժեսցուք զպահոցն շահս»։

— Առ հանդերձեալսն լուսաւորիլ. և ընդէ՞ր աւազանն՝ վերստին ծննդեան և ոչ թողութեան ասի. և եթէ վտանգաւոր է ոչ սուտն միայն երդնուլ, այլ և երդնուլն, թէպէտ և արդար երդնուցումք. (Κατήχησις πρῶτη πρὸς τοὺς μέλλοντας φοτίζευται). «Իբրև՜ զի ցանկալի և փափաքելի է մեզ նորոց եղբարցս սէր»։

— ** Յառաջնում աւուր վարդապետութեանն խաւսելով յաղագս երդմանցն զայս ասաց. 'ի նոյն պատճառ դարձեալ ուսուցանելով թէ ոչ երդնուլն միայն, այլ և բոլորոք երդնլոյն պատիժս ունիմք. և թէ այցելապէս Քրիստոս յերրորդում աւուրն յարեաւ. «Հալածիցէ՞ք արդեւք 'ի բաց 'ի բերանոյ ձերոյ զչար երդմանցն սովորութիւն»*։

* Տպագրողք 'ի ծանօթութեան. «Թէպէտև յոյն բնագիր այսր ճառի կորուսեալ իցէ, այլ հարազատութիւն նորա և անուն իսկ յայտ է՝ զի զոր խոստացաւն 'ի նախընթացին ասել յաղագս պատճառի որոշման ժամանակի մկրտութեան և այլոց կարևոր գիտելեաց՝ կատարէ 'ի սմա»։

— Խրատ առ որս հանդերձեալ էին մկրտել. և վասն կանանց որ աւելորդ զարդուք զարդարեն զին-

մուծին մեզ, և առ պղերգացեալսն որք լսեն և ոչ պատուեն զծնողս. (Ὅτι δουλείας τρόπους τρεῦς εἰσηγάγεν ἡ ἁμαρτία). Լուայք երեկ զհարց. առար Թագաւոր և իշխան գաղանաց զմարդն Աստուած. և որպէս 'ի Թագաւորութենէն զնա արտաքս ընկէց »:

— Եթէ ոչ յաղագս Ադամայ պատժիմք. և եթէ մեծագոյն քան զվնաս նորա 'ի ներքս եմուտ արտմութիւն՝ քաղցրութիւն, և եթէ յանձինս հայեցիմք. և ընդդէմ այնոցիկ որ զանց առնեն զաղքատովք. (Ὅτι οὐ διὰ τὸν Ἀδάμ κολαζόμεθα, καὶ ὅτι μείζονα τὴν δι' ἐκείνου εἰσενεχθέντων λυπηρῶν τὰ χρήστα). « Դուք Թերեւս կարծիցէք արդեւք Թէ որ յաղագս տէրութեան ձեզ բանն ամենայն աւարտեցաւ »:

— Եթէ նախ քան զուտելն գիտէր Ադամ զինչ բարի և զինչ չար. և Թէ պարտ է 'ի տան կրԹել զասացեալսն յեկեղեցւոջ. (Περὶ τοῦ ξύλου, εἰ διὰ ἐκείνου γέγονεν ἡ γνώσις τοῦ καλοῦ). « Սիրեմք զպահս, զի մայր է ողջախոհութեան և աղբիւր ամենայն իմաստութեան »:

— Ընդէ՞ր փայտ ճանաչելոյ բարւոյ և չարի կոչի փայտն. և զինչ արդեւք « Այսաւր ընդ իս իցես 'ի դրախտին ». (Διὰ τί ξύλον γνωστὸν καλοῦ καὶ πονηροῦ). « Յաւէտ աղաչեցի երեկ զձեր սէրդ յիշել զասացեալն, և կրկին սեղան յերեկորին մերձ դնել զկերակրոցն և զբանից »:

— Յաւուրն ձմեռնային և 'ի ժողովս եպիսկոպոսաց և 'ի տուրս աւրհնացն Ադամայ. և Թէ յոլով խնամակալութեան էր (այլ ձ. խնամարկութիւն էր) զաւրէնս տանել. (Εἰς τὴν ἡμέραν χειμέριον οὖσαν, καὶ εἰς τὴν σύνοδον τῶν ἐπισκόπων). « Ամպոց խուռն ընթացք զաւուրս մեզ տխրագոյնս արարին. բայց մերձաւորութիւն վարդապետին պայծառագոյն զսա գործեաց ».

— Ի սաղմոսն երկշաբաթին երկրորդ կերակէին

Տպագրողք կը ծանօթաբանեն. « Սորա եղեալ մարթ էր երկրորդ թարգմանութիւն կոչել, եթէ անխոտոր և ճշգրիտ զշարս իմաստիցն պահէր ընդ վերնոյն, համաձայն եղելոյ ընդ յոյն բնագրին. այլ յայտնապէս երևի զի պարզաբանութիւն է նորա հանդերձ յաւելուածով ուրեք ուրեք. Թէպէտև ոչ յետին դարուց յօրինուած, յորմէ կայ երկաթագիր օրինակ մի հնագոյն, և այլ չորք բոլորագիրք »:

— Յաղագս ապաշխարութեան. (Περὶ μετανίας, κα' εἰς τὴν σκυθρωπότητα βασηλέως Ἀχαάβ, καὶ εἰς Ἰωνᾶν). « Տեսէ՞ք յառաջնումն կիւրակէին զպատերազմն և զյաղթութիւնն. զպատերազմն սատանայի, և զյաղթութիւնն Քրիստոսի »:

— Ի սկզբան քառասնորդաց ասացեալ յաղուհացամուտն ('ի ցուցակին Էջմիածնի՝ յաղագս պահոց), և թէ վասն էր յերկնէ և յերկրէ սկիզբն առնոր զպատմութիւնն Մովսէս. (Λόγος α.' Λεχθεῖς εν ἀρχῆ τῆς τεσσαράκοστης). « Հեշտալի նաւավարաց է գարունն. ախորժելի և երկրագործաց »:

— Ընդէ՞ր յաղագս արեգական և լուսնի, երկնից և երկրի և այլոցն ասաց՝ եղիցին. իսկ վասն մարդոյն՝ արասցուք. և զինչ ըստ պատկերին. (Λόγος β'. Τι δήπετε ἐπὶ μετὰ ἡλίου καὶ σελήνης καὶ ουρανοῦ καὶ τῶν ἄλλων ἐιπε, γενηθήτω). « Յիշիցէ՞ք զխնդիրն որ յառաջագոյն եդաւ մեզ առաջի »:

— Զինչ է՝ ըստ նմանութեանն. և ընդէ՞ր ասացեալ Աստուծոյ մեզ՝ իշխեսցեն գազանաց, և ոչ իշխեմք. և զի բազում խնամակալութիւն է այս. (Λόγος γ'. Τί ἐστὶ τὸ, καθ' ὁμοίωσιν, καὶ τίνος ἕνεκεν, τοῦ Θεοῦ εἰπόντος τῶν θηρίων ἡμας ἀρχεῖν). « Զոր աւրինակ սերմանողացն՝ այն աւգուտ ոչ ինչ է յորժամ 'ի ճանապարհս զսերմն ընկենուցուն »:

— Եթէ ծառայութեան երիս աւրինակս 'ի ներքս

տասուս և զհառաչանս գոյր հնար 'ի ձեռն գրոյս յայտնել » ։

Մատենադարան Էջմիածնի, թիւ գրչ. 887. «Ճառընտիր մեծագիր բոլորագիր, գրեալ 'ի թղթի 'ի կաթուղիկոսութեան տեառն Գրիգորիսի՝ յարքեպիսկոպոսութեան մայրաքաղաքին Տարսոնի տեառն Ներսեսի որդւոյ Աւշնի, 'ի թագաւորութեան Լեւոնի յաղթողի, 'ի վայելումն Ներսեսի. ունի յիշատակարան թերի 'ի վերջն, զոր քիչ ետքը մէջ պիտի բերենք. և յորում պարունակին Յովհաննու Ոսկեբերանի երեսուն և չորս ճառք։ Առջի երկուքին վրայ, զոր յիշեցինք.

1.° Պատմութիւն ժողովոյն

2.° Առ Թէոդորոս, և այլն

Էջմիածնի Մատենադարանին օրինակը կը յաւելու.

3.° Խրատ որ կրաւնաւորիլ կամին զփրկական կրաւնաւորութիւնն. «Զերկիւղ ընկալ զԱստուծոյ և մաքուր վկայութեամբ գիտակցութեամբ քով վարեսցիս. զնոյն ինքն 'ի վերայ կացեալ համարեսցիս զԱստուած՝ զորս գործեսն հանապազ» ։

4.° Խրատ որ 'ի բաց մերժեն յապականացուացըն և մերձեցուցանեն յանապական կեանս զմարդն. «Ճանապարհք առաքինութեան յաշխարհէ փախուստք բարձր և համառաւտք», եւ հինգերորդ,

— Հանդերձեալ մտանել 'ի սուրբ քառասներեակն յաղագս պահոցն և 'ի Յովնան. «Պայծառ մեզ այսաւր տաւնս և պայծառագոյն սովորական (ըստ այլոց ձձ. քրիստոսական) ժողովս»* ։

* Միւս այլ թարգմանութիւն ճառիս այսպիսի խորագրով. «Յաղագս ապաշխարութեան յառաջ քան զմուտս պահոցն և վասն Յովնանու և Նինուէացւոցն». Երևելի և վայելուչ է տաւնս, և վերագոյն և բարձր ըստ սովորութեան աւուրց ժողովս այս» ։

մութիւն Աստուծոյ և զմարդասիրութիւն քարոզէ արարածս ամենայն. քարոզէ և ստացուածս զանաւ-րէնութիւնս »:

— Ի յարութիւն Քրիստոսի. « Յորժամ զախրա-կան ձմեռն գարնանային ժամանակն փոխանորդեսցէ. և զանազան հաւուցն յաւդս թռուցեալ նուագաձայ-նութեամբ երգեն »*:

* Տպագիրն 'ի ծանօթութեան. « Համառօտու-թիւն է այսր ճառի՝ վերջաբան Յովհաննու Մեկնու-թեան Նանայի ասորւոյ »:

— Ի փորձանս աւրինականին և 'ի պատասխանիսն Քրիստոսի առ 'ի « սիրեսցես զտէր աստուած քո յամենայն սրտէ և յամենայն անձնէ քումմէ ». որ ասացաւ զկնի յառաջ ասացուածին. « Վաստակք և ջանք առաջին վարդապետին եղեն. զի յիմում բու-րաստանին տունկս արկի »:

— Յաղագս Նեռին. « Աղաւթեսցուք հանապազ զտիւ և զգիշեր. և սպասեսցուք փրկչին՝ որ գայ նա 'ի դատել զերկիր »:

— Վասն միւսանգամ գալստեանն Քրիստոսի. « Այդ փոխեն երկինք, և եղիցին երկինք նոր. և փառքն այն իբրև ստուեր անցանէ »:

— Յովհաննու Ոսկիբերանի Կոստանդնուպոլսի եպիսկոպոսապետի (հարազատ) ճառք: — Վասն ար-դարապէս աղաւթելոյ. « Ճշմարիտ արդեւքիցէ հան-դիպեալս մեզ, և եղե՞ւ հաւատեաւ լեալս »*:

* Ի յոյն բնագրին վերնագրեալ է ճառս. « Յոր-ժամ ձեռնադրեցաւ քահանայ, յանձն իւր և յե-պիսկոպոսն և 'ի բազմութիւն ժողովելոցն »: Մեր ձեռագրաց մէջ ալ տեղ տեղ. « Պատմութիւն ժո-ղովոյն և յառաջին յամէլն և յեպիսկոպոսն »:

— Առ Թէոդորոս որ անկանել հանդերձեալ էր 'ի վանականութենէն և 'ի սուրբ վարուցն. (Λόγος παραινετικός, ε'ς Θεόδωρον ἐκπεσόντα). « Եթէ զար-

— Առ լուսաւորեալն ասացելով լուացմամբ Մա-րիամայ. «Աւրհնեալ է Աստուած, ահա և յերկրէ աստեղք երևին»։

— Յանդամալոյծն. «Յետ այսորիկ տաւն էր Հրէ-ից. և ել Յիսուս յԵրուսաղէմ. և անդ էր աւազան մի հինգսրահեան»։

— Ի կինն մեղաւոր որ աւծ զոտերն իւղով. «Սովո-րութիւն է աշխարհական երաժշտութեանց՝ փողով և քնարաւ և նոյն նմանեաւք զուարձացուցանել զեր-գասէրաց մարդկան զմիտս»։

— Յաղագս ապաշխարութեան. «Յորժամ երի-տասարդն էիր, պարտ էր քեզ զանձերեւոյթն խոր-հել զկատարածին քոյ»։

— Յաղագս ողջախոհութեան. «Գիտէք հաւա-սարապէս և առանց մերոյս բանից՝ զի յոլովից և մե-ծամեծաց բարեաց ողջախոհութիւն մարդկան պատ-ճառ լինի»։

— Ո՞չ գիտէք եթէ մարմինք ձեր անդամք են Քրիստոսի. «Աւրէնք են զինուորաց յայն կողմն խո-նարհեցուցանել զպատերազմն, յոր կողմն զաւրա-վարն առաջնորդեսցէ»։

— Վասն ողորմութեան և անոխակալութեան և ամենայն առաքինութեան. «Ի զանազան երանգս գունոց ծաղկանց նմանեցաւ զարդ առաքինու-թեանց»։

— Ի սուրբն Ստեփանոս յառաջամարկաւագ և նախավկայ Քրիստոսի. «Եկն Քրիստոս եհաս՝ ճա-նապարհ հորդելով 'ի կեանս և 'ի փրկութիւն աշ-խարհի»։

— Յ'Ադամ և 'ի անտեսութիւն. «Բարւոք են համբերութեան պտուղք, քանզի բարւոք վաստա-կոյ պտուղք բարեփառ»։

— Յ'աւր պահոցն յորում փրկիչն զոտս աշակեր-տացն լուանայր յարուցեալ յընթրեացն. «Զօղոր-

դադոյն 'ի բարեացն ծարաւելոց. քանզի որքան գը-տանեն զհայցեալն, այնքան փափաքելով առ ծա-րաւն վարին »:

— Ի կինն մեղաւոր, և 'ի գալուստն Քրիստոսի յԵրուսաղէմ. « Զերկրպագեալ եկեղեցի փրկչին Մերոյ, սիրելիք »:

— Ի տասն կուսանսն. (Εἰς τὴν παραβολὴν τῶν δέκα παρθένων). « Յորժամ ըմտաւ ածեմ զդիւրածա-խումն կենցաղոյս »:

— Ի Թերահաւատութիւն Թովմայի. (Εἰς τὸν ἅγιον ἀπόστολον Θώμαν). « Ահա դարձեալ տաւն, ահա դարձեալ փրկութիւն ոգւոյ վայելչապէս հատուցա-նել ձեզ զայս բան »:

— Ի վերացումն տեառն. (Εἰς τὴν αναληψῖν τοῦ Κύριου ἡμῶν Ἰησοῦ Χριστοῦ). « Պայծառ է ինձ այսաւր եկեղեցւոյ տեսարան. ոչ ծիծաղմունս մարդկայինս գործեցեալ ընդունայնս »:

— Ի սուրբ խաչն Քրիստոսի. (Εἰς τὸν τίμιον καὶ ζωοποῖον σταυρόν). « Զինչ տասցից, կամ զինչ խաւսե-ցայց. զո՞ զձեզ կոչեցից. ոչխա՞րս եթէ հովիւս »:

— Յաղագս չողբալոյ զվախճանեալսն, մանաւանդ որ տղայք անարատք թողին զայս կենցաղս. (Περὶ ὑπομονῆς, καὶ τοῦ μὴ μικρῶς κλαίειν τοὺς τελεύτωντας). « Եթէ պայուսհեսն մանաւանդ քան յառաջագունի-ցըն՝ փութաբար վարդապետութեամբ մոցուք 'ի ներքս »:

— Յաղագս հաւատոյ. (Περὶ πίστεος). « Բժշկի նման է եկեղեցւոյ վարդապետ. բազմաց և զանազան ախտից բժշկական դեղս տանելով »:

Սկզբնագիրք. Ներբողեան 'ի սուրբն Գրիգոր Լու-սաւորիչ, ասացեալ 'ի Կոկիսոն մինչ յաքսորումն էր. Ճառ առաջին. « Հրաշալի է մեզ տաւնս այսաւր »:

— Ի սուրբն Լուսաւորիչ Ճառ երկրորդ. « Աս-տուածազարդից արանց գովասանութիւն բազում և զանազան է »:

— Ի սաղմոսն յիսներորդ. (Sur le Psaume XL). « Կենդանագիրք նման են արուեստի 'ի բնութեան. խառնելով զերանգսն՝ ստեղծանեն զպատկերս երևելեաց մարմնոց. և առնեն մարդիկ և անասունս և ծառս » :

— Ի բան մարգարէին որ ասէ. Սակայն 'ի նանիր խռովի ամենայն մարդ կենդանի. գանձէ և ոչ գիտէ ում ժողովէ. (Εἰς τὸ προφητικὸν ῥητὸν τὸ λέγων, πλὴν μάτιν ταράσσεται πᾶς ἄνθρωπος ζῶν). « Բեր այժմ, սիրելի, 'ի Դաւթեան երգոցն զսաղմոսականն հարցուք նուագս » :

— Առ հրէայս, հեթանոսս և հերձուածողս. և 'ի բանն. Կոչեցաւ Յիսուս 'ի հարսանիսն. (Πρὸς Ἰουδαίους καὶ Ἕλληνας καὶ αἱρετικοὺς καὶ εἰς τὸ ἐκλήθη Ἰησοῦς εἰς γάμον). « Զձագս ծիծառանցն նստելով 'ի բունի՝ անսան ծնողացն գալոյ և բերելոյ զկերակուրն » :

— Յ'անառակ որդին. (Εἰς τὴν παραβολὴν περὶ τοῦ ἀσώτου). « Հանապազ զԱստուծոյ մարդասիրութիւնն պարտիմք քարոզել եղբարք » :

— Ի Քանանացին և 'ի Փարաւոն. և եթէ Ոչ որ կամին և ոչ որ ընթանայն, այլ որ ողորմին. (Εἰς τὴν Χαναναίαν, καὶ εἰς τὸν Φαραὼ καὶ ὅτι οὐ τοῦ θέλοντος, οὐδὲ τοῦ τρέχοντος, ἀλλὰ τοῦ ἐλεοῦντος Θεοῦ). « Թէպէտ և պղտորեաց զմեզ հրեկորի խռովութիւնն, այլ զուարճացոյց ամենեցուն փոյթն » :

— Ի հարիւրապետն. (Εἰς τὸν Εκατόνταρχον). « Հարիւրապետի ուրուքն ծառայ չարաչար ախտացեալ՝ հանգերձեալ էր մեռանել » :

— Յ'Արարածոց մեկնութենէ մինչ յաքսորսն էր. « Եւ արդ մի ոք Աստուծոյ ստեղծուածոցն մեղադիր լինիցի » : (Հատուած. (Καὶ μηδεὶς τοῦ Θεοῦ τὴν δημιουργίαν μέμφοιτο).

— Ի Զաքէոս մաքսաւոր. (Εἰς τὸν Ξακχαῖον τὸν τελώντην). « Որք բարեացն են ցանկացողք, ոչ են հե-

ճառէն։ — Ճառ քսաներորդ չորրորդ (ամբողջ, յոր-գորակաւն)։ — Ի քսաներորդ հինգերորդ ճառէն։ — Ի քսաներորդ վեցերորդ ճառէն։ — Ի քսաներորդ եւթներորդ ճառէն։ — Ի քսաներորդ ութերորդ ճառէն։ — Յերեսներորդ առաջներորդ ճառէն։ — Յերեսներորդ չորրորդ ճառէն։

— Հատուածք 'ի Գործոց մեկնութենէ։ Ի հնգետասաներորդ ճառէն։ — Ի վեշտասաներորդ ճառէն։

Երկբայականք. — Վասն Հերովդիադայ. (Sur Hérodiade). « Դարձեալ Հերովդիադաս մոլեգնեալ յանդգնի. դարձեալ կաքաւէ »։

— Ի ձկնորսութիւնն Պետրոսի. (Sur la pêche de Pierre). « Յորժամ վարդապետն բարեփառ, յայնժամ աշակերտն դիւրահաւան »։

— Ի սուրբ Աստուածածինն և 'ի միշտ կոյսն Մարիամ. (Panégyrique sur la très-sainte Vierge Marie).

— Յաւետիս Աստուածածնի. (Sur l'Annonciation de la sainte Vierge). « Դարձեալ խնդութեան աւետիք. դարձեալ ազատութեան զգացումն. դարձեալ վերստին կոչումն, դարձեալ 'ի վեր ճանապարհ »։

— Ի Յովսէփ. (Sur Joseph, l'hébreux). « Որք 'ի մեծ խորս նաւարկեն նաւուղիղքն, որոց ոչ երկիր, ոչ լեռան, ոչ բլուրք և ոչ դիտանոցք ինչ զցամաքն նշանակիցեն »։

— Ի Շուշան. (Sur Susanne), « Եկայք ձեզ բարեմիտք պարտապանք բանին, ոչ որքան պարտիմք հանել, այլ որքան ունիմք հատուցանել » *։

* Յօրինակն Էջմիածնի (Թիւ 887)։ Ի Յովսէփ և 'ի Շուշան. « Որք 'ի մեծ և 'ի խորս նաւարկեն նաւավարքն՝ որոց ոչ երկիր, և ոչ երկինք և ոչ բլուրք և ոչ դիտանոցք ինչ զցամաքն նշանակիցեն, յաստեղս ոմանս հայելով և նշքաւք զնաւն յարմարեն »։

— Մեկնութիւն Թղթոյն Հռովմայեցւոց * ։ (Ἑρμηνεία εἰς τὸν πρὸς Ῥωμαίους ἐπιστολήν).

* Մեր ձեռքն եղած օրինակաց մէջ թերի են 'ի սկզբան չորս ճառք, և հինգերորդին սկզբնաւորութիւնն։ Կը պակսին դարձեալ իննևտասներորդ ճառին սկզբէն՝ երկու թուղթ. որպէս կ'ազդէ տպագրին ծանօթութիւնն. նոյնպէս երեսներորդին վերջաւորութիւնն, երեսներորդ առաջներորդն ամբողջ. երեսներորդ երկրորդին սկիզբն, և որուն վերջաւորութեամբն կը լրանայ նաև ամբողջ առ Հռովմայեցիս Թղթոյն մեկնութիւնն։

— Հատուածք այլոց Թղթոցն Պաւղոսի. (Fragments). — Ա. Կորնթացւոց՝ յեւթներորդ ճառէն։ — Յիններորդ ճառէն։ — Ի հնգետասաներորդ ճառէն։ — Ի վեշտասաներորդ ճառէն։ — Ի քսանևհինգերորդ ճառէն։ — Ի քառասներորդ առաջներորդ ճառէն։

— Հատուածք յ'Բ. Կորնթացւոց ։ Յիններորդ ճառէն։ — Ի քսաներորդ վեցերորդ ճառէն։

— Հատուածք 'ի Գաղատացւոց։ Յերրորդ ճառէն։ — Ի հինգերորդ ճառէն։ — Ի վեցերորդ ճառէն։

— Հատուածք Ա. Թեսաղոնիկեցւոց։ Յառաջին ճառէն։ — Յերրորդ ճառէն։ — Յեւթներորդ ճառէն։ — Յութերորդ ճառէն։ — Յիններորդ ճառէն։

— Հատուածք յ'Բ. Թեսաղոնիկեցւոց։ — Ի չորրորդ ճառէն։

— Հատուածք յ'Եբրայեցւոց։ Յառաջին ճառէն։ — Յերկրորդ ճառէն։ — Յերրորդ ճառէն։ — Ի չորրորդ ճառէն։ — Ի հինգերորդ ճառէն։ — Ի վեցերորդ ճառէն։ — Յեւթներորդ ճառէն։ — Յիններորդ ճառէն։ — Ի մետասաներորդ ճառէն։ — Յերեքտասաներորդ ճառէն։ — Ի չորեքտասաներորդ ճառէն։ — Ի հնգետասաներորդ ճառէն։ — Ի քսաներորդ ճառէն։ — Ի քսաներորդ առաջներորդ ճառէն։ — Ի քսաներորդ երկրորդ ճառէն։ — Ի քսաներորդ երրորդ

Թարգմանիչք մեր երբ 'ի Բիւզանդիոն հասան, անոր հռչակաւոր և իմաստուն գրուածոց համբաւովը լցուած գտան զքաղաքն. ուստի մէկէն ձեռք զարկին անոնց թարգմանութեան: Հաւանօրէն Եզնիկայ և իր ընկերակցաց և դասակցաց կը պատկանի այս ընտիր աշխատասիրութիւնն. որոնց մէջ գլխաւոր սեպուած են իրաւամբ Մեկնութիւնքն յԱւետարանագիրն Մատթէոս, 'ի թղթերն Պաւղոսի, Մեկնութիւնն Եսայեայ, մաս մի Մեկնութեան Յովհաննու, և Ճառք բազումք: Բայց այս վերջիններուս մէջ կան նաև շատք յետագայ դարուց մէջ եղած, թէպէտև ընդհանրապէս յառաջ քան զերկոտասաներորդն՝ արժանի դար մեր գրականութեան: Դնենք հոս ինչուան առ մեզ հասածներուն ցուցակը, հետևելով մեր տպագրաց կարգին, և անոնցմէ դուրս մեզի ծանօթ գտնուածներն յայլևայլ մատենադարանս:

— Յովհաննու Ոսկեբերանի Կոստանդնուպոլսի եպիսկոպոսապետի յԱւետարանագիրն Մատթէոս: Գիրք կրկին: (Τοῦ ἐν ἁγίοις πατρός ἡμῶν Ἰωάννου ἀρχιεπισκόπου Κωνσταντινουπόλεως τοῦ Χρυσόστομου ὑπόμνημα εἰς τόν ἅγιον Ματθαῖον τόν εὐαγγελιστήν).

— Մեկնութիւն թղթոցն Պաւղոսի: Պատճառք առաջին թղթոյն Տիմոթեայ: Ճառք ութևտասն (անթերի):

— Մեկնութիւն երկրորդ թղթոյն Տիմոթեայ: Ճառք տասն (անթերի):

— Մեկնութիւն թղթոյն որ առ Տիտոս: Ճառք վեց (անթերի):

— Մեկնութիւն թղթոյն Փիլիպեցւոց: Պատճառք: Ճառք հնգետասան (անթերի):

— Մեկնութիւն թղթոյն Կողոսացւոց: Պատճառք: Ճառք երկոտասան (անթերի):

— Մեկնութիւն թղթոյն Եփեսացւոց: Պատճառք: Ճառք քսան և չորս (անթերի):

# ՅՈՎՀԱՆ ՈՍԿԵԲԵՐԱՆ

## (SAINT JEAN CHRYSOSTÔME)

---

Աստուածաշունչ գրքէն ետքը. և գրեթէ անոր հաւասար, մեր մատենագրութեան ոսկեղէն դարու ամենընտիր և թանկագին ընծայք են սրբոյն Յովհաննու Ոսկեբերան հայրապետի (ծն. 354, + 407) հոգելից և տրտառուչ ճառից և մեկնութեանց թարգմանութիւնք է։ Դեռ քիչ ատեն անցեր էր, յորմէ հետէ լռած էր 'ի Կոկիսոն աքսորանօքն և երջանիկ փոխմամբ այն աստուածահրաշ լեզուն և աստուածախօս բերան, որ երիտասարդ հասակէն զարմացուցեր էր զԼիբանիոս իր ուսուցիչն և ճարտարախօսութեան վեհագոյն վարժապետը, ու քահանայական ու հայրապետութեան նուիրական աւագութեանց բարձրանալէն ետքն՝ հիացուցեր էր զԱնտիոք և զԲիւզանդիոն. պերճաբան խօսքովն և կորովի լեզուով՝ ոխերիմ և անհաշտ թշնամի մը երևնալով ախտից և մոլութեանց, ջաղխելով՝ փշրելով զանոնք. թէպէտև արքունեաց ծիրանեօք ներկայանային իրեն, թէպէտև եկեղեցական պատմուճանի տակ, 'ի սրբավայրի և անկէ դուրս, հրապարակին կամ աղքատին յարկի տակ, 'ի թատերս և կամ 'ի տեսարանս, ամէն տեղ և ամէն առթի մէջ չխնայելով, և երբէք ուժոյ կամ բռնութեանց առջև չտկարանալով. այլ միայն իր աստիճանին և պարտուց ձայնին անսալով։ Մեռաւ նա 'ի տարագրութեան. և ինչպէս 'ի կեանս՝ այսպէս մահուընէն ետքն ալ՝ ճշմարտութեան անլռելի քարոզ թողլով 'ի գանձարանս եկեղեցւոյ իր բազմաթիւ երկասիրութիւնքը։

Բարլաամու և Յովասափայ պատմութիւն կոչուած գրուածք մ'ալ կայ պահուած 'ի մեր մատենագրութեան, ոչ անանուն՝ բայց ոչ այնքան հին թարգմանութեամբ։ Այս վիպասանութիւնն, — զի այդ անուանը հարկ է տալ գրուածքիս. — կը գտնուի նաև առ այլս, և ընդհանրապէս Դամասկացւոյն ընծայուած է, որ անընդունելի կ'երևնայ հմտից։ Յունական սկզբնագրին նախկին հրատարակութիւնն եղած է Պուասոնատ գաղղիացւոյն ձեռքով 'ի չորրորդ հատորի Anecdota græca գրուածքին. ուրիշ զանազան եւրոպական լեզուներով եղած թարգմանութիւնք բազմաթիւք են։ Հին տպագրութիւն մը կայ 'ի լատին Liber Barlaam et Josaphat Indiæ regis; ուելի հնագոյն մ'ալ 'ի Սթրասպուրկ. Դամասկացւոյն անունը կրելով։ Վերջին հրատարակութիւն մ'ալ ըրած է Մինեի, իր բազմահատոր հաւաքման մէջ. զոր բաղդատելով հայկական թարգմանութեանս հետ, շատ տեղ տարբեր կը գտնենք իրարմէ * ։

* Joannes Damascenus Opera omnia quæ extant, et ejus nomine circumferentur; et variis editionibus et codd. mss. (gr.) collecta, recensita, latine versa, atque annotationibus illustrata... opera et studio S. Mich. Le Quien, 1712, (Paris). Migne, Dictionnaire des Légendes, pag. 59.

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՐՈՒՍԱՂԵՄԻ.** — (JACQUES DE JÉRUSALEM). — Երանելւոյն Յովհաննու Երուսաղէմայ եպիսկոպոսի ներբողեան ասացեալ 'ի սուրբ եկեղեցին տերունեան. «Սոսկումն և սարսափումն ըմբռնեաց զիս. ով քրիստոսասէր եղբարք»։ (Մատենադ. Էջմիածնի, Թիւ գրչ. 920)։

*որոշել միայնանուամբը, Թարգմանչին անձը յայտնի, ինչպէս և ոչ ժամանակը. սաանկ ալ թէ ամբողջ գրոցը Թարգմանիչն է, թէ անոր մէկ մասին միայն։*

— *Նորին հօրն մերոյ Յոհաննու Դամասկացւոյն Խրիսունեկտարի կոչեցելոյ բանք վասն սուրբ հաւատոյ և ընդդիմագրութիւն Նեստորիոսի. «Պարտ է մեզ փրկելոցս Աստուծոյ 'ի ձեռն միածնի Որդւոյ իւրոյ, զոր ետ 'ի փրկանս մեզ ըստ աստուածային բանի հաւատալ»։*

*Առաջինն 'ի ճառից ընդդէմ Նեստորի, ոչ միայն հարթ ոճով է՝ որպէս թէ հայերէն շարագրած ըլլայ, այլ և գտնուին անդ՝ օրինակի վասն այս անուանք. Լեոն և Գրիգոր և Ներսէս. յորոց վերայ պէսպէս մակաբերութիւնք մարթին ըլլալ։*

— ** *Յովհաննու Դամասկացւոյ բանք վասն դրախտին։* (Discours sur le paradis terrestre).

— *Յովհաննու Դամասկացւոյ ներբող 'ի ննջումն սրբոյ Կուսին. «Զի՞նչ տացուք քեզ, ո՛վ տիրուհի»։ (Մատենադ. Ուրբաթեան դպրոցին 'ի Հռովմ)։*

— *Սրբոյն Յովհաննու Դամասկացւոյ՝ «յաղագս գոյի էութեան և պատահման. Թարգմանեալ 'ի հայ լեզու 'ի յունարէն գրոյ Բագարատ Մամիկոնեան. ներածութիւն իմաստասիրութեան որ է Իսագոժիկի. զկնի այսր և ամենայն իմաստութեան գործարան, որ է Կանոնն ըստ հելլենացւոց բարբառի։ Բաժանեալ է գիրս 'ի քառասուն և հինգ մասունս։ Հետևի այսմ և ճառ ինչ յաղագս բնութեան մարդոյ, բովանդակեալ 'ի քառեակ և կէս թերթս. գուցէ նոյն Յովհ. Դամասկացւոյ»։ (Մատենադ. Ս. Երուսաղէմի, թիւ գրչ.* 898)։

*Յիշատակարան. «Փառք ամենասուրբ Երրորդութեան ... աւարտեցաւ 'ի թուաբերութեան հայկազուն տումարի* ՁՁԸ *երրորդի և հին օրինակն. իսկ և սա նորս՝* ՌՃԾԵ *ամին 'ի փառս սրբոյ Երրորդութեան»։*

իբ. Վասն ջուրց. (յոյնն իգ. լատ. 9)։

իգ. Վասն երկրի և որ 'ի նմա է. (յոյնն իդ. 10)։

իդ. Վասն գրախտին. (յոյնն իե. լատ. 11)։

իե. Վասն մարգոյն. (յոյնն իզ. լատ. 12)։

իզ. Վասն ճաշակացն որք են. (յոյնն իէ. լատին 13)։

իէ. Վասն տրտմութեան. (յոյնն իը. լատ. 14)։

իը. Վասն երկիւղի. (յոյնն իթ. լատ. 15)։

իթ. Վասն տրտմութեան. (յոյնն լ. տրտմութեան. լատ. 16)։

լ. Վասն անրջոց և ցնորից. (յոյնն լա. լատ. 17)։

լա. Վասն զգայութեանց. (յոյնն լբ. լատ. 18)։

լբ. Վասն իմացականին. (յոյնն լգ. լատ. 19)։

լգ. Վասն յիշողականին. (յոյնն լդ. լատ. 20)։

լդ. Վասն որ 'ի ներքոյ ներբարամագրական բան, արտաքոյ տարբերական. (յոյնն լե. լատ. 21)։

լե. Վասն ախտից և ներգործութեանց. (յոյնն լզ. լատ. 22)։

լը. Վասն ներգործութեանց. (յոյնն լէ. լատ. 23)։

լթ. Վասն կամայի և ակամայի. (յոյնն լը. լատ. 24)։

խ. Վասն որոյ ընդ մեք ենթակային այս անձնիշխանութիւն. (յոյնն լթ. լատ. 25)։

խա. Վասն գործեցելոցն. (յոյնն խ. լատ. 26)։

Հարիւր գլուխք բանից. միայն ՀԱ. գլուխն՝ « Առհարցանողան եթէ 'ի խառնակելոցն թէ 'ի սահմանելոցն՝ վերաբերին քանօնութիւն բնութիւնք Քրիստոսի » չկայ 'ի յոյնն և 'ի լատինն։

Մեր գրչագրաց խորագիրք՝ 'ի փոխման մասեննի. « Կատարումն փաստակոց Յոհաննու Դամասկացւոյ կոչեցեալ Մանսուր՝ համառօտ ասացեալ նորոյ շնորհաց աւանդութիւնք. և թարգմանեալ Սիմէոնի 'ի վրաց լեզուէ 'ի հայ բարբառ »։ Չենք կրնար

thodoxe). *Յաղագս առաջաբանութեան աստուածաբանութեան. (յոյնն Ա. լատին. 1):*

*Բ. Վասն ճառելեաց և անճառելեաց, իմանալեաց և անիմանալեաց. (յոյնն Բ. լատ. 2):*

*Գ. Վասն ցուցման թէ գոյ Աստուած. (յոյնն Գ. լատ. 3):*

*Դ. Վասն թէ զինչ է Աստուած և զի անհաս է. (յոյնն Դ. լատ. 4):*

*Ե. Վասն յայտնման թէ մի է Աստուած և ոչ բազում. (յոյնն Ե. լատ. 5):*

*Զ. Վասն բանին Աստուծոյ. (յոյնն Զ. լատ. 6):*

*Է. Վասն սուրբ հոգւոյն. (յոյնն Է. լատ. 7):*

*Ը. Վասն սուրբ Երրորդութեան. (յոյնն Ը. լատ. 8):*

*Թ. Վասն 'ի վեր ասացելոյն. (յոյնն Թ. լատ. 9):*

*Ժ. Վասն աստուածային միաւորութեան և բաժանման. (յոյնն Ժ. լատ. 10):*

*ԺԱ. Վասն մարմնապէս 'ի վերայ ասացելոյն. (յոյնն ԺԱ. լատ. 11):*

*ԺԲ. Վասն նոյնա դարձեալ. (յոյնն ԺԲ. լատ. 12):*

*ԺԳ. Վասն տեղեացն Աստուծոյ՝ թէ միայն Աստուած է անպարագրելի. (յոյնն ԺԳ. լատ. 13):*

*ԺԴ. Վասն յատկութեանց աստուածային բնութեան. (յոյնն ԺԴ. լատ. 14):*

*ԺԵ. Վասն յաւիտենիցն. (յոյնն ԺԵ. լատ. II, 1):*

*ԺԶ. Վասն հրեշտակաց. (յոյնն ԺԶ. «վասն արարչութեան», և ԺԷ. «վասն հրեշտակաց». լատ. 3):*

*ԺԷ. Վասն սատանի և դիւացն. (յոյնն ԺԸ. լատ. 4):*

*ԺԸ. Վասն երևելի և զգալի արարածոցս. (յոյնն ԺԹ. լատ. 5):*

*ԺԹ. Վասն երկնից. (յոյնն Ի. լատ. 6):*

*Ի. Վասն հրոյ, լուսոյ և լուսաւորացն ամենեցուն. (յոյնն ԻԱ. լատ. 7):*

*ԻԱ. Վասն օդոյ և հողմոյ. (յոյնն ԻԲ. լատ. 8):*

նուպոլիս, դառնալով յառանձնավայրն իւր՝ վախճանեցաւ ըստ ոմանց 'ի 784 և այլոց 780։

Հայ Թարգմանութեան ամենայն գլուխք կը գըտնուին 'ի յոյն և 'ի լատին տպագիրս, զոր կը նշանակենք 'ի ստորև։ Միայն ճառն որ ընդդէմ Նեստորի չէք 'ի յոյնն և 'ի լատին. որպէս և ոչ ընդարձակ պատասխանին առ Հրէայս, Թէպէտ և յիշատակուի այն 'ի յառաջաբանի լատին տպագրին. (Հատ. Ա. յ'էջ 411)։ Սկզբնաւորութիւնն ճառիս. «Զաստուածայինս զամենայն՝ յԱստուած վստահանալ պարտ է»։

— Սրբոյ և աստուածահաճոյ հօրն մերում Յոհաննու Դամասկացւոյն համառօտեալ բան իմաստութեանց հռետորից զնոցայն հաճեալն առեալ, և 'ի բաց Թողեալ զհակառաբանութիւնս այլոց և զընդունայնաբան առասպելսն. և զայն յիշելով զոր ընդունի եկեղեցի։ — Յաղագս էութեան և գոյութեան և պատահման, պրակս առաջին»*։

* Դամասկացւոյն ընծայուած իմաստասիրութեանս յոյն օրինակաց գլխակարգութիւնք չեն միօրինակ յամենեսին. որով անոնցմէ մէկուն կամ մէկալին համեմատ եղած տպագրութիւնք՝ միշտ չեն համաձայնիր հայկական Թարգմանութեանս գլխակարգութեանց, այլ յաճախ կը հանդիպին յետ և յառաջութիւնք։ Իսկ զաստուածաբանական գիրս նորա որ յաղագս ուղղափառ հաւատոյ, լատինք կը բաժանեն 'ի չորս գիրս, և ամէն մէկ գիրք 'ի զանազան գլուխս. իսկ յոյնն և հայ միով գլխակարգութեամբ իջանեն 'ի սկզբանէ ցկատարած։

Ա. «Յաղագս էութեան և գոյութեան և պատահման, Պրակ առաջին». (Dialectique) իսկ վերջինն՝ ԽԹ. «Վասն անձնական միաւորութեան հոգւոյ»։

— Յաղագս ուղղափառ հաւատոյ. (De la foi or-

— Դարձեալ ճառ վասն Անտիոքայ առացեալ. « Աստ Պետրոս, աշակերտ Նորա իցեմ: Աստ Պաւղոս. Ամենայն աշակերտ զարուեստն 'ի վարդապետէն ուսանի. եթէ աշակերտ ես Նազարեցւոյն՝ բաց կոյր մի և հաւատամք յաստուածն քոյ »* :

* Ժամանակագիր մը 'ի Թուին Շ (500) կը գնէ. « Սուրբն Յակոբ Սրուճնցին արար Ր (5000) ճառ »:

— Բանք վասն առման տապանակին 'ի Փղշտացւոց (Թերի)* :

* Առ Ասսեմաննեայ. (Հատ. Ա, 335):

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ԴԱՄԱՍԿԱՑԻ

(JEAN DAMASCÈNE)

---

Յովհաննէս՝ որ Ասորեստանի Դամասկոս քաղաքը ծնած ըլլալուն համար Դամասկացի կոչուած է, նոյն գաւառին վրայ իշխող արաբացի խալիֆային արքունեաց մէջ քաղաքական կարեւոր պաշտամամբ կը պարապէր, երբ 730ին Բիւզանդիոնի կայսրն Լեւոն Իսաւրացի՝ Յիսուսի Քրիստոսի և իր սրբոց պատկերաց պաշտաման և մեծարանաց դէմ ամբարիշտ հալածանք մը հրատարակեց: Յովհաննէս որ այն ատեն պարզ աշխարհիկ անձ մ'էր՝ առանց վախնալու կայսեր և իրեն համախոհից բռնութենէն, այլ և այլ գրուածներ հրատարակեց նամակի ձեւով՝ 'ի պաշտպանութիւն եկեղեցւոյ վարդապետութեան և աւանդութեան: Հրաժարելով յաշխարհէ, թողուց իշխանական փառքը, ու առանձնանալով յանապատըն սրբոյն Սաբայ մերձ յԵրուսաղէմ, քահանայ ձեռնադրեցաւ. ու զանազան գրուածներէ և ճամբորդութիւններէ ետքը 'ի Պաղեստին և 'ի Կոստանդ-

* Առ Ասսեմանեայ, Հատ. Ա, 328: Ի Մատ. ՋԺԴ. (914). «...Ի նոր կիւրակէն և 'ի Թերահաւատու-թիւնն Թովմայի առաքելոյն բան չքնաղ և զարմա-նալի»:

— ** Ներբողեան ասացեալ 'ի ննջումն սրբոյ Աս-տուածածնին և միշտ կուսին Մարիամայ. «Որդի Աստուծոյ, որ սիրով քոյ խոնարհեցար և իջեր յեր-կիր, և զգեցար մարմին և մարդացար 'ի զաւակէն Դաւթի»:

— ** Բան գրուատեաց 'ի Յովհաննէս մկրտիչն և կարապետ Քրիստոսի. «Յիսուս լոյս փառաց՝ որ զամենայն տիեզերս պայծառացոյց ծագումն յայտ-նութեան քո. յայտնեա առ իս 'ի նշուլից շնորհաց քոց»*:

* Հրատարակեալ յ'Արարատ ամսագրի Էջմիած-նի, 1888, թիւ 5:

— ** Վասն առաջին խորհրդոյն և 'ի վերայ նահա-պետաց և մարգարէից. «Ի ծով խորհրդոց քոց ահա իջանեմ 'ի վաճառ, որդի Աստուծոյ՝ լեր ինձ նաւահանգիստ և խաղաղութիւն մեծ: Ալիք ծովուց քոց մի առ մի ձգեն զիս. և 'ի յընթեռնուլն զնոսա ելանեմք 'ի բարձրութիւն հօր քոյ»:

— Յաղագս Անտիոքայ քաղաքին՝ թէ որպէս մտին առաքեալքն Պետրոս և Պաւղոս և Յովհաննէս և ա-շակերտեցին զնոսա 'ի հաւատս Քրիստոսի. «Լու-սով բանիւ քոյ գամ առ քեզ որդի Աստուծոյ, առ 'ի տեսանել զճշմարիտ և զհրաշալի պայծառութիւնդ քոյ: Ստուգեա՛ յիս բան վարդապետութեան, զի զարթուցեալ խոստովան լինիմ անուանդ քում սըր-բոյ՝ անմահդ աստուած»*:

* Կը յիշուի առ Ասսեմանեայ (Հատ. Ա, 332) և ընդ անհարազատս սեպուած է 'ի նմանէ: Ուրիշ գրչագիրք հետևեալ խորագրով կը նշանակեն զճառս՝ «Յակոբայ Սրճոյ եպիսկոպոսի ասացեալ բան զար-մանալի վասն դարձի Անտիոքայ քաղաքի»:

ւազակն որ հրաւիրեցաւ 'ի դրախտն, և 'ի քերովբէն որ պահէր զճանապարհն » :

* Ի գրչագրին Սեւանայ վանից' յիշատակարան այսպիսի. « Թարգմանեցաւ ճառս յասորւոց 'ի մերս' հրամանաւ տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի, 'ի ձեռն քահանայի ումեմն Իսահակ անուն կոչեցեալ, ասորի յազգէ, անարուեստ գոլով մերոյ դպրութեանս. շաղփաղփ և կոկորդախօս լեզուաւ. և ստուգեցաւ 'ի սուրբ և յանիբիծ և 'ի մեծ արհիեպիսկոպոսէ 'ի տեառն Ներսիսէ հռետոր իմաստասիրէ » :

— Ի սուրբ զատիկն և յարութիւն փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի. « Այսօր ուրախութիւն մեծ լի ընտրութեամբ զարհուրեցուցանէ զիս պատմել զբան մարգարէին որ ասէ. Այսօր է զոր արար տէր »* :

* Առ Ասսեմանեայ, Հատ. Ա. 326 :

— Ի յարութիւն տեառն և 'ի զինուորսն. Յարութիւն քո զարթուցանէ զիս ճառել զինքենէ: Դու տէր պարգևեա ինձ ձայն որ գոչէր զզարթուցումն քո. և յաղագս մեծ դասու զինուորացն' որ պահեցին զգերեզման քո »* :

* Առ Ասսեմանեայ, Հատ. Ա. 326 : Ի Մատենագ. էջմ. (914). « ... Ի թաղումն և 'ի յարութիւն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և 'ի պահպանութիւն դասուց զինուորաց » :

— ** Ի յարութիւն Քրիստոսի. « Լուան Աննա և Կայիափա » :

— ** Ի համբարձումն տեառն. « Զարթիր քնար իմ » :

— Ի Նոր կիրակէն և 'ի սուրբ առաքեալն Թովմաս. « Յորժամ յարեաւ հովիւն 'ի մեռելոց մեծաւ զօրութեամբ, սքանչելի նշանօք' այց արար առաքելոցն հաստատել զնոսա »* :

— Թուղթ առ սրբասէր տէր Աբրահամ (կաթուղ). « Լուայ, հայր պատուական » ։

— Թուղթ առ Սմբատ Վրկան մարզպան ։

## ՅԱԿՈՎԲ ՄԾԲՆԱՑ. (Տես յ'էջ 20)։

## ՅԱԿՈՎԲ ՍՐՃԵՑԻ

(JACQUES, DE SARUGE)

---

Յակովբայ հայրապետի Սրճեցւոյ՝ որ 'ի ճառընտիրս մեր կոչուած է նաև Յակովբ Սրծուգպոյ եպիսկոպոս, հետևեալ ճառից յասորւոյն 'ի հայ թարգմանութիւնն ունիմք ։

— Սրբոյն Յակովբայ Սրճոյ եպիսկոպոսի ասացեալ 'ի յարութիւնն Ղազարու. « Բաց զշրթունս իմ խօսել վասն քոյ, որդի Աստուծոյ զի, քև բարբառին ամենայն բանաւորք. փակեալ է 'ի մեղաց բերան մարդկան 'ի փառաբանութեանց քոց » * ։

* Կը յիշատակուի առ Ասսեմանեայ յԱրևելեան Մատենադարանի (Bibl. Orient. Հատ. Ա. 322)։

— Յաւուր մեծի խաչելութեանն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և յաւազակին որ հրաւիրեցաւ 'ի դրախտն, և 'ի սերովբէն որ պահէր զճանապարհ ծառոյն կենաց. « Անծանօթ ծնունդ ծոցոյ քոյ Հօր միածին, զարթո՛ զքնարս իմ, և փարթամացո՛ 'ի պարգևաց քոց զբանս իմ պատմել զմեծութիւն փրկութեան քոյ » * ։

* Ի Մատենագ. Էջմիածնի (թիւ 914). « Երանելւոյն Յակոբայ Սրճոյ եպիսկոպոսի ասացեալ բան զարմանալի յաւազակին աջակողմեան » ։ Ի միւս այլ ձեռագրի (անդ, 922). « ... Ի չարչարանս տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի յիններորդ ժամու. յա-

տիեզերական սուրբ սինհոդոսաց. «Այլ շնորհք իմն» : (Կանոնք ժողովոց).

**ՄՆԱՑՈՐԴԱՑ ՄՆԱՑՈՐԴՔ.** (Հատուածք երկու վասն Սողոմոնի). «Վասն զի գրեաց Մովսէս, Մե առնուցուս» :

— «Ցորժամ յարոյց Աստուած սատանայ Սողոմոնի զԱդրաազարն» : Ցուարու բանիս ասի. «Եւ զայս եւս 'ի նոյն երանելի վարդապետին գրոցն գրեցի. զոր և յԵրիանոսի գիրսն գեղեցիկ յիշատակէ վասն Սողոմոնի» :

**ՄՈԴԵՍՏՈՍ ԵՐԷՑ.** — (MODESTUS, LE PRÊTRE). — Մոդեստոսի երիցու Թուղթ առ տէր Կոմիտաս կաթուղիկոս Հայոց. «Տեառն իմոյ ամենայն բարութեան և երանութեան և հոգևորի, Կումիտասայ արքեպիսկոպոսի Մետրոպաւլտի աշխարհիդ Հայոց, Մոդեստոս նուաստ երեց և տեղապահ Երուսաղեմի. — Աւրհնեալ է Աստուած և հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի» : (Ա. Սեբէոսի, Գ. ԻԵ).

## ՄՈՎՍԷՍ ՑՈՒՐՏԱՒԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ

(MOÏSE, ÉVÊQUE DE TZOURDAV)

— Թուղթ առ Վրթանէս քերթող :

— Թուղթ շրջաբերական. «Ի ժամագրութեան երկնից վիճակեալք» :

— Պատճառք չորրորդ ժողովոյն Երկաբնակաց. «Արդ յետ փոխելոյ» :

— Պատասխանի Թղթոյն Վրթանեսի. «Տեսաք զԹուղթ ուղղափառ» :

— Այլ Թուղթք երկու առ նոյն Վրթանէս.

ծայ ընդ ժամանակաւ լինելոյն ՌՄԽԸ թուահամարութեան և 'ի ՈՂԷ թվաբերութեանս Հայոց փոխեցաւ գիրքս այս (Միխայէլի) Ասորւոց 'ի հայս հրամանաւ տեառն Կոստանդեայ 'ի ԻԵ ամի հայրապետութեան, և 'ի ԻԵ ամի թագաւորութեան Հայոց Հեթմոյ ...» :

Դարձեալ յայլում յիշատակագրի. «Զգարեւացապարան ամենայն բարեաց և զԹարգմանիչն հին և նոր պատմութեան գրոց՝ մանաւանդ այամ լուսաւորդ մատենիս, զմեծապատիւ րաբունին և զքարոզն աւետարանչական և զամենագով սուրբ վարդապետն զԴԻԹ. յիշեցէք 'ի Քրիստոս, ո՛ պատուական ընթերցողք. առաջի տեառն զենլոյն Յիսուսի» :*

* Երուսաղեմի տպագրին (1871) յառաջաբանէն կ'իմանանք թէ տասն օրինակք գրոցս կը գտնուին 'ի Մատենադարանի վանիցն, յորս նախամեծար գըրչագրեալն 'ի ՋԻԹ (1480) : Անոնցմէ զատ հնագոյն օրինակ մը որ « տարբերի յոյժ. – ինչպէս կը ծանուցուի, – 'ի միւս օրինակաց. եթէ թարգմանութեամբն և եթէ կարգաւ և ընթացիւք պատմութեանն » : Այս գրչագրին համեմատ աշխինէն որէշ տպագրութիւն մը եղած է 'ի նմին տպարանի : — Տասուերկու օրինակք ալ կը նշանակուին 'ի Մատենադարանին Էջմիածնի (թիւ 1628–1639). Թուական կրողաց մէջ հինն 'ի ՇՂԵ : Տպագրութեանց և Թարգմանութեանց համար տես Հայկական մատենագիտութիւն, յ'էջ 431 :

— Ի յիշատակի սուրբ Թագաւորացն Թէոդոսից մեծի և փոքու, 'ի Միքայէլի պատմութենէն. «Բարեպաշտ և մեծ Թագաւորն Թէոդոս յետ մահուանըն Վաղեսի ամբարշտի առ զԹագ նորա հրամանաւ Գրատիանոսի Հռովմայ Թագաւորին» : (Մատենադ. Էջմիածնի (թիւ գրչ. 920) :

— Միխայէլի Իշխանի Վուլղարացւոց՝ վասն եօթն

զհասկ ծննդեան այնպիսի արտօրէից: Աղօթքն մեր 'ի ծառայութիւն իջին, և փափուկքն մեր յանըմբերելի չարչարանս. բարձունքն մեր խոնարհեցան, և փառաւորքն մեր յանարգութիւն ընկեցան. որնունգքն մեր հովասուն լերանց՝ խորշակահարք եղեն յարևու: Կուսանքն մեր աւտարաց եղեն, և երիտասարդքն մեր հովիւք և կուտպանք (այլ ձ. չոկարածք) այլասեռից: Կարաւտացաք ողբոցն Երեմիայ, և կրեցաք զպատուհաս հնոյն Իսրայելի: Տղայք աշխարհաց մերոց որբք եղեն, և մարք նոցա այրիք. որդիքն վերնոյն Սիոնի զուգակշիռք ոսկոյ, զքարի հարան իբրև զանաւթ անպիտան. ցրուեցաւ հաւանտեան. Ճապաղեցան գառինք արաւտի նորա. վաճառակուր եղեն յազգս հեռաւորս գնեցեալքն արեամբն Քրիստոսի. բաժանեցան ծնունդք 'ի ծնողաց, մեկնեցան հարազատքն 'ի միմեանց, հեռացան բարեկամք 'ի սիրելեաց ... Զայժմու նստեալքս ար'ժանաւոր կոչմամբ հոգւոյն սրբոյ զՏէր Կոստանդին Հայոց մեծաց և հանուրց վերադիտող, և զնոյնազարմ ազգիս պսակակիրն Հեթում պարագայց ամաւք առողջակիր մարմնով և անուանի փառաւք խնամեսցէ 'ի գովեստ ամենասուրբ տէրութեան իւրոյ, և զաւակաւք և զօրմաւք որք ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ » ...

Ուրիշ յիշատակարանի մը մէջ ալ կը կարդանք:
« ... Ընդ անծանաւթ բանիցն որ աստ մի զարմասցուք, և սուտ կարծեսցուք. զի Ասորոց մատաւորն և ընդունի է միշտ լեալ Հրէից ազգ և աշխարհաւ և լեզուաւ քան զամենայն ազգ. և յարուեստից իմաստից և վարժք 'ի յուսումն. զի և ինքեանք Քաղդէացիք են ... նա և որ զայս հատուածս աշխատեալ է, տէր Միխայէլ. 'ի յունաց և յեգիպտացւոց և յեբրայեցւոց և 'ի հռոմայեցւոց՝ և յասորոց պատմագրաց է ժողովեալ. վասն որոյ առաւել սիրելի և հաւատարիմ է ... Արդ յամի անժամանակին Աստու-

դարձուցանել զերեսս ողորմութեան Քրիստոսի 'ի վերայ անկշռելի պարտուց մեր անթուապատիկ բիւրուց տաղանդաց. քանզի այսու ակնկալութեամբս ընդոստուցաք զմեզ՝ մոռանալով զաննգակից և զընգանոցեալս մեր տկարութիւն մարմնոյ, և զբազմազան արտմութիւն և զցնորս հոգւոց խորհրդոց վասն անշահաւոր տարաշըջութեանս: Այլ և յաղագս թշուառացուցիչ ժամանակիս՝ զոր ածին չարիք մեր յաճախեալ. քանզի սակաւ քան զչափ մերոցն մեղաց՝ արբոյց մեզ տէր արտասուս. և նուազ քան զյորդաբուխ ախտիցն մերոց զհեղեղս՝ խաղացին առ մեզ վտակք արեան: Քանզի շնչեաց բարկութիւն ահաւոր ձանձուն, արեւելեան հիւսիսայնոյ՝ աւար և անընդել այգին ... և հողմով անաւրէնութեանց մերոց ած զնոսա մինչև առ մեզ ըստ նախատեսս մարգարէութեան նախնի սուրբ հաւրն մերոյ Ներսեսի արտասուապատում ողբոցն, զոր լալով նախաձայնեաց զկորուստ հոգևոր երկանց իւրոց ծննդոցս, զոր ինչ կրեցաքն յազգէն Նետողաց ... Քանզի հարին անյագապէս և տարան աներկիւղաբար զորդիսն Սիոնի 'ի սարկութիւն գերութեան ... Սակայն զյոլովս տեսաք աչաւք մերովք 'ի նախաձայնեալ ողբալից սուրբ Նահապետին Ներսիսի. և մեր իսկ տեսեալ զյոլովութիւն չարեաց նոցա. և կեցեալ 'ի գերութեան զաւուրս ինչ, զեկեղեցիսն մեր նսեմացեալ և զսեղանսն սուրբ կործանեալ և զմատեանս աստուածայինս այրեցեալ և առ ոտն կոխեալ զպաշտօն սրբութեան, և զքրիստոսական նշանսն անարժանից ձեռաց շաւշափեալ և նախատեալ, յանարգ ոտս վարեալ. զաշխարհս մեր անապատացեալ, զքաղաքս բնակութիւն լեալ գազանաց: Քանզի լցան լերինք և անապատք մեր անզերծ փախստէիւք և դաշտք դիակոյտ ոսկերաւք կոտորելոցն, և անդաստանք մեր և հովիտք ոռոգեցան արեամբ. և կերաք մնացորդքս

և յերախաիս յեկեղեցիս ուղղափառաց վաստակաւէր այլն բարեփառ տէր Միխայէլ. զի յոլով գութ և սէր երեւի՛նա ունել առ ազգս մեր 'ի գրոց սորա:

«Արդ 'ի յամի ութերորդի քառասներորդի երկերիւրերորդի հազարերորդի (1248) Թուահամարութեանս անժամանակ որդւոյն Աստուծոյ գալստեան և 'ի ՈՂԷ Թուականութեան Հայոց Թարգմանեցաւ գիրքս այս յասորոց 'ի հայս 'ի հայրապետութեան Հայոց տեառն Կոստանդեայ, և 'ի Թագաւորութեան Հայոց Հեթմոյ քրիստոսապսակի և զգուշակենցաղ Թագուհւոյն իւրոյ Զապելի՝ դստեր Լեւոնի արքայի. ըստ Աստուծոյ քաղաքավարելոց հնգից եղելոց նոցա զաւակաց ծիրանածնաց՝ երկուց ուստերաց և երից դստերաց՝ որոց անուանք Լեւոն և Թորոս, անուամբ հաւուն իւրեանց և հաւանոյն հարազատի. որոց հովանի լիցի ամենակալ բազուկն հայրենի. աճելով 'ի գահ հայրենի արքայութեանն եղբարք Հայաստանեայցս: Ցայսմ ամի կենդանի էր կորովամիտ և աջողեալն 'ի բարիս արքահայրն Հայոց պարոն Կոստանդին. և բերկրեալ այլովք ուստերաւք չորիւք՝ տէր Բարսեղ տէրն Դրազարկին, և պարոն Սմբատ սպարապետն Հայոց, և պարոն Աւշինն տէրն Կոռիկոսոյ և պարոն Լեւոն, որոց զաւրանալ լիցի ըստ Աստուծոյ, և աճել արիութեամբ ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ. և էր պատրիարք ասորւոց ուղղափառաց Մար Իգնատիոս (այլ. ձ. Մարիկն)՝ Անտաքու, որ զաւրինակս շնորհեաց. և փոխեցաւ 'ի ձեան Իշաւխայ (=Ցեշովայ—Ցեսուայ) արբանեալ քահանայի վարժ եղելոյ 'ի հանճար բժշկական արուեստի »...:

« Այլ և մեք եւս (այլ գրչագիր մը կը յաւելու. աշխատեալ ոգի Վարդան վարդապետ), որ ըստ միում կարգի սաստարկեցաք 'ի գիրքս յայս. ունիմք հաւատ և յոյս 'ի գթութիւն Աստուծոյ, և յետ նորա յաղաթըս և 'ի բարեխաւսութիւն ծառայից նորա՝ առ մեզ

և 'ի բնաւ լրմանէն եկեղեցւոյ բանադրեալ, ըստ որում և փորձն ցուցանէ և արդիւնքն յայտնի առաքին և միաբանեցաւ ընդ նմա շնորհն. և է այժմ քսան և հինգ ամ հայրապետութեան նորա. 'ի գըղեակն աստուածապահ Հռոմկլայ կոչեցեալ, խաղաղասէր բարուք և անարատ վարուք առ ամենեսեան խաղաղութիւն կալեալ՝ վկայութիւն բարի և գրուատիս յարտաքնոցն կալեալ, այցելու որբոց և այրեաց խնամածու՝ և գերելոցն անխնայ ծախիւք դարձուցիչ և զարդարիչ. հայրենի գթովք զամենեքումբք փարելով. և առաւել առ ամենայն կարօտեալս ողորմութեամբ և եկեղեցեաց բազմաց պիտոյից լցուցիչ. և յաւել և 'ի յայլ բարիսն և զայս մատեանս 'ի գանձս եկեղեցւոյս. և ետ բազմանաւք թարգմանել զսա յասորւոց 'ի հայս, պիտանի լեալ և շահաւէտ բուրաստան. լոյս և երկայն իմաստիւք լցեալ և կարճառօտ բանիւք բովանդակեալ, որ 'ի սուղ ժամանակս կարող է զպատահեալսն 'ի վերայ կացուցանել հին և նոր դիպուածոց: Այլ և հիմն հաստատ և աշտարակ անշարժ իսկ է հայրապետական հաւատոյ և ուղղափառ խոստովանութեանս վկայս բազում ցուցանելով յազգաց ճշմարիտ ուղղափառութեամբ. հիմամբ աստուածական և առաքելագիր կայիւք ամրացեալ. այլ և յոլովք տարակոյսք և հանգոյցք լուծանին 'ի սմա. և չէ ինչ զարմանալ ընդ նախալուր բանսն որ գտանին 'ի սմա: Քանզի Ասորիք բնակութեամբ գաւառաց և բազում լեզուաց մաւտաւորք են միշտ Հրէիցն լեալ քան զամենայն ազգերդ. և 'ի դէպ է նոցա մանաւանդ ծանաւթս գոլ հնոյ կըտակին քան այլոց: Նա և որ զայս մատեանս շարայարեալ է 'ի Յունաց և յԵգիպտացւոց և 'ի Քաղդէացւոց դիւանաց և 'ի դպրոցաց է հաւաքեալ: Վասն որոյ և առաւել սիրելի և պիտանի և հաւատալի է. և վարձս բազում կալցի առաջի Աստուծոյ.

աշխարհի արդէն քաջածանօթ պատմական երկասիրութեանս խորագիրն է. « Տեառն Միխայելի պատրիարգի Ասորւոց համառօտ ժամանակաց գրոյցք քաղուածոյ արարեալ յոլովից պատմագրաց 'ի վարժից բանասիրաց յԱդամայ հետէ մինչև ցյետին աւուրսն » : Ուրիշ ձեռագիր մը « ... բանասիրաց՝ սղամանակ տեղեկութեան յԱդամայ հետէ՝ մինչև յետին աւուրս թևացեալ » : Սկիզբն. « Եւ արդ լուարուք ուսումնասէրք և աստուածասէրք կարաւանեալք գիւտի ժամանակաց » : Երբեմն ալ այսպէս խորագրուած. « Պատմութիւն արարեալ պատրիարգին Ասորւոց Միխայէլի, զոր Վարդան վարդապետ Արևելցին փոխեալ էր յ'ասորի դրոց » :

Յիշատակարան գրչագրին որ 'ի Ս. Յակոբ Երուսաղեմի : Յանկոյն կը ծանօթագրանէ. « Ի վերջ կոյս պատմութեանն յարէ զցանկ կաթողիկոսացն Հայոց 'ի սկզբանէ մինչև ցաւուրս իւր՝ 'ի տէր Ներսէս Կլայեցի : Եւ յետոյ Վարդան վարդապետ ոմն աննշան՝ շարունակէ մինչև 'ի Կոստանդին Ա. Բարձրբերդցի՝ հանդերձ հետազգայ պատմական տեղեկութեամբք իւրոյ ժամանակին. — Տէր Կոստանդին՝ յերրորդ մասնէ Հայոց 'ի դղեկէ Բարձրբերդոյ որ նայի հարաւով 'ի գաւառն Կիւլիկիոյ, և 'ի ծոցն Ագրիանու կոչեցեալ, որդի առն արդարոյ և խաղաղականի Վահրամ կոչեցելոյ. յորովայնէ ընտրեալ յաստուծոյ առաքելական 'ի հոգւոյն, և աւրինաւք նորին սնեալ և ըստ կարգի յամենայն գործս եկեղեցւոյ վարժեալ 'ի շնորհս քահանայութեան. և յառաջնորդութիւն վանից և յեպիսկոպոսութեան տեսչութիւն. և յամենայնի ընտիր գտեալ և հանդիսաւոր: Վասն որոյ 'ի կատարման հոգևորական և մարմնաւորական հասակի, վկայութեամբ Աստուծոյ և մարդկան, մեծի գահոյի և աթոռոյ քահանայութեանս Հայաստանեայց՝ արժանաժառանգ լեալ 'ի շնորհէն.

տեսլեանն չորից հողմոցն և չորից գազանացն. սոյգ պատմութիւն չորից ինքնակալ թագաւորացն, և վասն տիրելոյ հեթանոսացն, և յետին ժամանակին և Նեռղութեանցն որ լինելոց է. և վասն թագաւորացըն որ փոխադրեցան, և վասն գալստեան Քրիստոսի Աստուծոյ մերոյ: «Յորժամ Ադամ և Եւա ելեալ 'ի դրախտէն՝ կոյաք գոլով. յետ երեսուն ամի ծնան զԿայէն և զքոյր նորա Քաղքանան. և յետ այլ եւս երեսուն ամի՝ ծնան զՀաբէլ և զԱղեառվբա քոյր նորա »* :

* Bibl. Patr. Հատ. Գ. 731 :

**ՄԵԼԻՏՈՍ ԱՆՏԻՈՔԱՑ**. – (ST. MÉLITUS D'ANTIOCHE). – Երանելւոյն Մեղիտոսի Անտիոքայ եպիսկոպոսի 'ի լուացումն ոտից աշակերտացն. (Sur le lavement des pieds des Apôtres). « Արդ վասն զի ոչ կամեցաւ Երուսաղէմ ուրախ լինել ընդ գալուստ թագաւորին, ելաց զնա սիրով. և եհեղ արկ 'ի վերայ նորա զսուրբ զարտասուս իւր ջերմեռանդն գըթովք » :

**ՄԵՂԻՏԷ**. – (MÉLITUS). – Պատմութիւն վարուց սրբոյն Յակովբայ Մծբնայ հայրապետին, զոր գրեաց Մեղետէ աշակերտն Մարուգէի միայնակեցի. « Մովսէս աստուածային օրէնսգիրն » :*

* Հրատարակեալ 'ի շարս Հայկական Սոփերաց, 'ի Ս. Ղազար. Հատ. ԻԲ:

## ՄԻԽԱՅԷԼ ԱՍՈՐԻ

(MICHEL, LE SYRIEN)

---

Իրեն ընծայուած, ու հայկական տպագրութեամբ ու գաղղիարէն թարգմանութեամբ ուսումնական

Quant à l'autenticité des révélations et prophéties, le doute exprimé par Bellarmin, *De Script Ecclesiasticis*, p. 67, par Henschenius *Acta Sanct.*, par la *Biographie Universelle* et le silence de S. Jerôme, sont de fortes raisons de la nier. Le P. Combefis, sans se prononcer directement, (*Bibl. Patr.* Venet., t. III, p. 669) paraît ne pas être partisan de cette œuvre, puisqu'il l'a exclue de son édition. D'autres pensent, sans preuve directe toutefois, que l'auteur des Révélations pourrait être St. Méthode, patriarche de Constantinople en 842, ou un autre, son homonyme, siégeant dans la même ville en 1240.

*Փրիթեմիոս* (Frithemius) *յելս* ԺԵ *դարու 'ի շարակարգի եկեղեցական պատմչաց կը յիշէ և զՄեթոդ եպիսկոպոսի Պատարայ գիրս զՎերջինս ժամանակաց* (*De Novissimis Temporibus*). *Փաչըրիկիոս ալ կրկնէ յօրինուած Քրոնիկոնն որ գտանէր յունարէն, թէ և այժմ անծանօթ, և անվաւեր համարեալ*: (*Annales de Philosoph. Chr.*, 1863 *մարտ*)։ *Ի մեր մատենագրութեան՝ Մեթոդիոսի անուամբ գրուածոց հատուածք հետեւեալքն են՝ և որոց միոյն թարգմանիչ կը նշանակուի Ստեփանոս Սիւնեաց՝ յութերորդ դարու*։

— *Մեթոդի եպիսկոպոսի տեսիլ յաղագս անցեալ ներկայիս և ապառնեաց ասացուածք զոր թարգմանեալ է տեառն Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի, յաստուածաշունչ գրոց. «Ի վերջնում դարի ուր արմատաքի խլեսցի թագաւորութիւն Պարսից»**։

* Bibl. Patr. *յոյն և լատ. Հատ. Գ.* 730։

— *Սրբոյ հաւրն մերոյ Մեթոդիոսի Պատարիունու եպիսկոպոսի՝ 'ի մեկնութենէ Դանիէլի մարգարէին, զոր արար 'ի հետ բանից իւրոց. 'ի մեկնութենէ*

beaucoup d'ouvrages, Méthodius n'a cependant pas composé tous les écrits qu'on lui attribue dans les anciennes Bibliothèques des Pères, et qui sont considerés comme apocryphes par les critiques. On n'est pas encore parvenu à déterminer au juste l'époque de la rédaction des prophéties qu'on lui attribue, et qui sont l'œuvre d'un anonyme qu'on a coutume de désigner sous le nom de Pseudo-Méthodius. (Monumenta Patrum ortodoxographa. Bâle, 1555. T. I, 95-115).

Իսկ Պրոսէ՝ միւս այլ հայագէտ գաղղիացի, ՚ի գաղղիական Թարգմանութեան Սանէֆ. Սուապելեան. Les œuvres de St. Méthode, dont la principale est le Banquet dialogué des Vierges, ont été publiées en grec et en latin par le P. Combefis, avec celles de S. Amphiloque. (Paris, 1644, 2 vol. in fol.). Le savant éditeur a refusé d'insérer dans ce recueil un opuscule généralement attribué au même saint, sous le titre de: Revelationes de rebus quæ ab initio mundi contingerunt et deinceps contingere debent, etc. ... ou Libellus S. Methodi martyris, episcopi Partinensis, (lisez Patarensis) ecclesiæ, provinciæ Græcorum, continens in se revelationes divinas, a sanctis angelis factas de principio mundi, et eradicatione variorum regnorum atque ultimis regis Romanorum gestis, et futuro triumpho in Turcas, atque de liberatione Christianorum ex oppressione Saracenorum ... Six éditions de ces prophéties ont été faites entre 1496 et 1516 ... Une autre, plus ancienne, est sans date; enfin il s'en trouve une dans la Max. Bibl. vet. Patr. conforme à celle de 1504. On n'en connaît pas de texte grec, mais ce texte a dû exister, car c'est très-probablement d'après une telle exemplaire que Steph. Siounetsi a fait sa traduction.

— Ի խորհուրդ երեքշաբաթի. « Պիտոյ են հաւատք » ։

— Վկայաբանութիւն սրբոյն Շմաւոնի եպիսկոպոսի Պարսից, և այլոց վկայից »*։

* Հրատարակեալ 'ի Ս. Ղազար 'ի շարս Հայկական Սոփերաց. Հատ. Ի ։

— Մարութայի արքեպիսկոպոսի 'ի սուրբ յարութիւնն Քրիստոսի. « Յոյժ անպատուելի » ։ (Մատեն. Ս. Երուսաղեմի, Թիւ 442, 'ի մեծ Ճառընտրի գրչագրելոյ 'ի Յովհաննէ Երզնկացւոյ, 1417-1419)։

**ՄԱՔՍԻՄՈՍ ՓԻԼԻՍՈՓԱՅ**. — (MAXIME, LE PHILOSOPHE). — Մաքսիմոս փիլիսոփայ և վկայ ապրեցաւ յեօթներորդ դարու ։ Եկեղեցւոյ վրայ յօրինած Ճառին հին Թարգմանութիւն մը կը գտնուի առ մեզ 'ի յունականէ՝ մթին և անսովոր ոճով, ու այսպիսի խորագրով. « Մաքսիմոսի փիլիսոփայի և մարտիրոսի, եթէ ո՞յց նշանակմունք (?) սրբոյ եկեղեցւոյ, ըստ աստուածայնոյն ժողովմամբ կատարեալքն զետեղին » ։ (Bibl. Patr. յոյն և լատ. Հատ. Բ. 489)։

Sancti Maximi Scholia in Gregorium Theologum. Oxonii, 1681.

## ՄԵԹՈՏԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

(MÉTHODIUS, ÉVÊQUE)

---

ԶՄեթոտիոս եպիսկոպոս՝ Միխայէլ Ասորի 'ի ժամանակագրականին կոչէ Մադիդիմոս, որ աղաւաղութիւն է անուանն. Լանկլուա գաղղիացի հայագէտ՝ 'ի ծանօթութիւնս Թարգմանութեան Ասորւոյն հետևեալ տեղեկութիւնները կու տայ անոր անձին վրայ, զոր իր խօսքերովը մէջ կը բերենք ։ Auteur de

որ եղեւ առ 'ի Նիղոսէ կրօնաւորէ մակակոչեցելոյ Դոքսապատրի՝ 'ի խնդրոյ եւ հրամանաւ բարեպաշտ մեծի Թագաւորին Փռանկաց, որ 'ի Սիկիլիա կղզին Ռուճերի, վասն հինգ պատրիարգացն աթոռոց»: (Մատենադ. Էջմիածնի թիւ 1684, ըստ հին դասակարգութեան, եւ 1686 ըստ նորոյն). Ոմանք եւս. «Նիլոսի կրաւնաւորի վասն հնգից պատարագաց? Աթանասի, թարգմանութիւն 'ի Ներսիսէ եպիսկոպոսէ եւ 'ի Կոստանդիանոսէ մեծարայոլէ» *:

* Կը յիշուի առ Յոյնս Nilus Doxapatrias որ գրուած մը ունի հինգ պատրիարքական աթոռոց վրայ, եւ հրատարակուած է տպագրութեամբ Տըմուանի (De Moine) ձեռքով 'ի 1685. նորագոյն տպագրութիւն մ'ալ 'ի Պերլին (1866), Կիւսթավ Փէրթէյի աշխատասիրութեամբ, այսպիսի մակագրով. Hieroclis, Synecdemus et notitiæ grecæ episcopatum; accedunt Nili Doxapatrii notitia patriarchatum, et locorum, etc.

**ՂՈՒԿԻՈՍԻ** (LUCIUS III, PAPE), քահանայապետի Հռովմայ թուղթ առ Գրիգոր Տղայ կաթողիկոս Հայոց. թարգմանութեամբ Ներսիսի Լամբրոնացւոյ:

**ՄԱԿԱՐ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ.** — (MACAIRE DE JÉRUSALEM). — Մակարայ Երուսաղեմի հայրապետի թուղթ առ Հայս, վասն կանոնագրութեան եկեղեցւոյ կարգաց, զոր չէ արժան ընդ սահման եւ ընդ կարգ անցանել. «Ահա վասն ահի եւ երկիւղի». (գլուխք ինն):

**ՄԱՐՈՒԹԱ.** — (MARUTHA). — Մարութայի բանք, հարցմունք, եւ այլն. (Դոյ հատուած ինչ 'ի վկայութիւնս վասն բնութեան Քրիստոսի):

— Ի խորհուրդ Եկեղեցւոյ. «Եւ արար Բեսելիէլ. — Արդ տապանակն յանփուտ փայտից 'ի խորհուրդ» եւ այլն:

որպէս և յառաջնագոյն 'ի գիրսն տօնացուցաց. ընթեր-ցողք զգիրս զայս գիտել ենթէ 'ի թաղումն աշխատու-թեանց սրբոցն և ուղղափառացն հարց։ Եւ ոչ այս-չափ միայն, այլ և յանփորձիցն պատմողաց' և 'ի հեր-ձուածողացն մասին հանդիպեցելոյ, կան մեկնու-թիւնք որ պատշաճք են ուղիղ աւանդութեանց ե-կեղեցւոյ, 'ի հերձուածողաց ասացեալքն։ Եւ զայս' մեք ոչ յանձնէ ասիմնադրեալ, այլ հետևեալ սրբոյ հաւրն մերոյ Կիւրղի Աղեքսանդրացւոյ, մեծի քա-ղաքին եպիսկոպոսապետի, ասացեալ 'ի թղթին որ առ Եւլոգիոս. թէ ոչ յամենայնէ զոր ասեն հեր-ձուածողքն' փախչել և հրաժարել պարտ է. քան-զի բազում ինչ խոստովանին' յորոց և մեք խոստո-վանիմք »։ Ի վերջ գրոցն յիշատակարան հաւմառօտ. « Կատարեցաւ Ղեւտականի մեկնութիւնս 'ի ձեռն Նոստոս դպրի Գրիգորոյ. որք կարդայք և աւկտիք' անմոռաց յաղաւթս յիշեսջիք, աղաչեմք »։

Իսկ յիշատակուած հարք' որոց բանիւք խմբա-գրուած է այս մեկնութիւն, են Որոգինէս, Գրիգոր Աստուածաբան, Յովհան Ոսկեբերան, Սեւերոս' Ան-տիոքու եպիսկոպոս, Սեւերիոս' 'ի Թղթոյն առ Մի-սայէլ ներքինի, Եւսեբիոս Երուսաղեմացի եպիսկո-պոս, Կիւրեղ Աղեքսանդրու, Պոլոքրոն (Πολυχρό-νιος), Թէոդոս, և միւս ոմն տասներորդ։

## ՂԻՆՈՍ ԿՐՕՆԱՒՈՐ

(LINUS, LE MOINE)

---

— « Գիր որ եղեւ առ 'ի Ղինոս կրաւնաւորէ վասն հինգ պատրիարքաց աթոռոյ. թէ երբ կամ որպէս հաստատեցաւ իւրաքանչիւրն պատրիարգաց աթոռ, և վասն կարգաց նոցին »։ Իսկ ըստ այլ ձձ. « Գիր

և յաւելու. « Յաշխիմ ամս ... թուղթս Հռոմայ է գրած »):

ՁԻԱԴԱՐՄԱՆՈՒԹԻՒՆ. — « Այս խրատներս այլ՝ 'ի հետ պողպատ չինելուն և մուխ տալուն էր գրած 'ի նոյն իմաստասիրացն Պարսից, զոր Թարգմանեաց Հեթում Թագաւորն Հայոց. յորժամ գնաց ՃՂՌ հեծելով 'ի վերայ Թշնամւոյն սուլտանին, և կոտորեաց և սպանեաց զամենեսին. և գնաց մեծաւ պատուով 'ի Պաղտատ առ Նասր խալիֆային. և մեծ պարգևօք դարձաւ: Եւ իմաստասէր ոմն սարկաւագ Ստեփանոս անուն գտեալ առ կայսրն, որ այլազգի ազգի գիր և լեզու ուսեալ, նման առաջին փիլիսոփայիցն, և ոչ կայր գիր որ առ նմա ոչ գտանէր. և նա սիրեցեալ եղև 'ի Հայոց Թագաւորէն վասն հըզօր գիտութեանն. և խնդրեաց յարքայէն, և ետ թարգմանել երեք գիրս. վասն Ձիոյ պայթարմանան և վասն Թրի չինելոյ և վասն արեգական և լուսնի արուեստին. և բերեալ 'ի Հայոց աշխարհն »:

## ՂԵՒՏԱԿԱՆԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

(COMMENTAIRE SUR LE LEVITIQUE)

---

Հաւաքողն 'ի յառաջաբանին. « Վստահանալով յանպատմելի զաւրութիւն բարերարի և մարդասիրին Աստուծոյ, որ և զմեր տկարութիւն զաւրացուցանէ. վասն զի 'ի գործ առաք զոր առաջին եգաք փոյթ. և զերկրորդ գիրսն աստուածայնոյն 'ի Մովսիսէ շարագրեալ զԵլսն անուանեալն, 'ի ձեռն առընթեր եղելոցդ մեկնութեան հաւատալ սկիզբն արարացուք. 'ի նորա զաւրութիւնն յուսացեալք: Եւ երրորդ գրոցս՝ զՂևտականս ասեմ. և գիտոյ է՝

— Վասն գալստեան Նեռինն. «Եւ ահա գազանն չորրորդ»։

— Ի նոյն. «Քանզի երանելի մարգարէքն»*։

* Bibliotheca Patrum, XII; 587.

— Ի նոյն. «Քանզի տեառն Յիսուսի գալուստն»*։

* Bibliotheca Patrum, IV; p. II, 949.

— Ի նոյն. «Եւ արդ լուարուք, եղբարք»*։

* Hippolyti episc. et martyris de consummatione mundi, ac de Antichristo et secundum adventum domini nostri J. Ch. Joanne Pico præside Sen. Par. interprete. Coloniæ, 1563. – Hippolyti martyris de Antichristo liber græce edente Marquardo Gudio. Parisiis, 1661.

— Բանք վասն տօնի ծննդեան և մկրտութեան. (անհարազատ)։

ՀՈՌՈՄՈՑ «Թուղթ առ Հայս յաղագս միաբանութեան հաւատոյ և համախոհ լինել ժողովոյն Քաղկեդոնի և դաւանութեանն. բերեալ կայսարեայ կընքով տեառն Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի, որ վասն Թարգմանութեանն գնացեալ էր 'ի Կոստանդնուպոլիս, զոր ոչ ընկալան Հայք»։ Ըստ այլ ձձ. «Թուղթ Հոռոմոց 'ի Հայս, ձայնակից և համախոհ ժողովոյն Քաղկեդոնի և Տումարի հայհոյութեանն Լևոնի. զոր տէր Ստեփանոս եբեր Սիւնեաց եպիսկոպոս յառաջ քան զեպիսկոպոսութիւնն իւր. որ վասն Թարգմանութեան սրբագրենաց էր երթեալ 'ի քաղաքն Կոստանդինուպոլիս։ Իսկ նոքա վասն միաբանութեան հաւատոյ 'ի ձեռն նորա գրեալ հայրապետին 'ի Հայս, և կապարով կնքեալ առաքեցին։ Զոր ոչ ընկալան Հայք. այլ յարքունական պողոտային արձանացեալ 'ի հայրապետի մերոյ սրբոյն Գրիգորի»։ (Խորագիր Թղթոյ Ս. Գերմանոսի ըստ օր. մատենադարանի Մխիթարեանց 'ի Վիեննա. որ

անմահ և մահկանացու փրկար Աստուած զմարդն մար-
թացի ասել. ոմանք 'ի հարցն անմահ ասացին, հայե-
ցեալ յայն որ ասէն. Ես ասէի թէ աստուածք իցէք,
կամ որդիք բարձրելոյ » :

— ** Հիւպպողիտայ եպիսկոպոսին (հատուածք).
« Իսկ որ երկու բնութիւն ասեն՝ գտանի ըստ նոցին
մտացն չորս տեարս ասել » :

— ** Նորին. « Զմարդն պաւանց Աստուծոյ բանին
խոստովանել՝ և զնա յանգգնին. որ և ինքեանք տա-
գնապէին ասելով. Զի՞ կայ մեր և քո որդի Աստու-
ծոյ, և աղաչէին իբրև զԱստուած » :

— ** Նորին ասացեալ. « Ծունչ արարած է և ոչ
չարչարի և ոչ խոցի. որչափ ես տաւել բանն Աս-
տուած. և որչափ չարչարեցին զմարմինն Աստուծոյ՝
արարին զանարգանս » :

— ** Հիւպպողիտի եպիսկոպոսի. « Իննամսեայ
տէրն ծնաւ. (անհարազատ) :

— ** Յաւրհնութիւնսն Յակովբայ որ զերկոտա-
սան նահապետսն աւրհնեաց. « Վասն աւրհնու-
թեանցն Յակովբայ աննելովբանս, ես զանեան աւր-
հնութիւնսն խնդրեմ: Քանզի ո՞ր 'ի մարդկանէ բա-
ւական է պատմել զհոգեկան ասացեալ գիրս, եթէ
ոչ նմա երկնական իմաստութիւնն գործակից լիցի » :

— Մեկնութիւն աւրհնութեանցն Մովսեսի յեր-
կոտասան ազգս. « Զերանելւոյ Իսահակայ զեղեալ
աւրհնութիւնսն առ որդիսն իւր յառաջին գիրս
պատմեալ, և զպատճառս անց գործոցն եղելոց ոչ
լռեալ, և զՅակոբայն եւս որ առ երկոտասան որդիսն
յիշեալ » * .

* Կը յիշէ Վարդան վարդապետ, որ 'ի Հիւպպո-
ղիտեայ և յԵփրեմէ հաւաքեց զիւր մեկնութիւնն 'ի
վերայ Հնգամատենին :

— Մեկնութիւն Դանիելի, յորմէ հատուածք ե-
ւեթ 'ի ձառընտիրս :

**ՀԵՂԱՐԻՈՆ կամ ՀԻԼԱՐԻՈՆ** (HILARION). — Որոյ երկասիրութիւն է պատմութիւն Աթանագենեայ եպիսկոպոսի թարգմանեալ 'ի մեր նախնեաց. «Ոմն Հեղարիոն՝ լաւ և աստուածասէր, որ յայնժամ խորհրդականութեան գլխաւոր էր, որդի Հեպատոսյ քահանայի (մնջ օր. Հիպաղողքեայ) մեծափառի և պատուաւորի, որոնեալ ('ի մեր տպ. որ գնեալ) ուսուց զկարգս և զնահատակութիւն վկայութեան սրբոյն Աթանագինէի. և ժողովեալ խնամակալութեամբ՝ ճշմարտապէս գրոշմեաց զամենայն պատմութիւնս զայս. և այսպէս թղթով ուղղափառեաց ըղձանեցեալս։ Նոյն Հեղարիանս այս խնդրեալ էր յերանելոյն Աթանագինէ 'ի կենդանութեան իւրում՝ զի 'ի հնգից օրհնութեանցն գլուխ՝ զոր արարեալ էր սրբոյն (երանելւոյն). և մինչև ցայսօր պաշտեն որդիքն և տունն Հեղարիայ ունելով 'ի միմեանց վասն յիշատակի արդարութեան երանելւոյն վկային»։

## ՀԻՊՊՈՂԻՏՈՍ ԲՈՍՏՐԱՑԻ

(HYPPOLITE DE BOSTRES)

---

Հիպպողիտեայ և իւրն ընծայուած գրուածոց և անոնց հարազատութեան վրայ շատերը գրած և վիճած են, յաւուրց Եւսեբիոսի և Հերոնիմեայ, մինչև մեր ժամանակաց հմուտ քննադատք՝ Փիդրա, Հէրկէնրօթեր, Տըլլակարտ, Մէօսինկէր, Մարթէն և այլք։ Հայկական թարգմանութեան մէջի աւանդածք՝ քանի մը հատուածք եւեթ են, ընտիր ոճով և լեզուով. հինգերորդէն ութերորդ դարու մէջ եղած փոխադրութիւնք. զորս նախ հրատարակեց Փիդրա (Analecta sacra Spicilegio Solesm. Հատ. Ա և Ե) 'ի

Յիշատակարան գրչագրին, որ 'ի Մոնաքոյ Պատա-րաճեցւոյ ... «Գրեցաւ աստուածաշունչս սուրբ հայրն մեր սուրբ կրաւ(նաւ)որացն խոշորատեսակ և ան-յարմար գծիւ ձեռամբ ամենամեղ և անպիտան գրո-չի Գրիգորի 'ի յաշխարհիս Փռանկաց 'ի Սալեան ընդ հովանեաւ սուրբ Մաթէոսի առաքելոյ Մա-թէոսի 'ի Տունս Հայոց, առ դրանս սրբոյ Եղիսէի. յա-մի յորում էր թուականն Հայոց ՉՂԲ. Արդ աղա-չեմ չլինել մեղադիր խոշորութեան և անյարմարու-թեան գրիս, զի արուեստաւոր ոչ էի. բայց կարի խիստ ջանիւ գրեցի յընտիր և 'ի լաւ աւրինակէ. Արդ գրեցաւ սա 'ի խնդարկ հոգի, որ են վասն սի-րոյն Քրիստոսի յանձն առեալ զաւտարութիւն և զպանդխտութիւն. որ և ընդ այլ բազում բարեգոր-ծութիւնն ստացաւ և զայս գեղեցիկ կտակս 'ի յի-շատակ հոգւոյ իւրոյ և ամենայն ընտանեաց իւրոց. կենդանեաց և մեռելոց»։

Ուրիշ գրչագրի մը մէջ ալ որ 'ի մերում Մատե-նադարանի. «...Շնորհիւ տեառն կատարեցաւ ... մատեանս աստուածային՝ վարք և խրատք հարց սըր-բոց 'ի լաւ և ընտիր աւրինակէ, 'ի սուրբ քաղաքս Երուսաղէմ ... ընդ յարկաւ սրբոյն Յակոբայ ... 'ի Թվ" ՋՁԵ ... 'ի թագաւորութեան Հայոց Լեւոնի, և 'ի հայրապետութեանն Յակովբայ, ձեռամբ մեղա-պարտ և անարժան յիշման՝ և ոչ գրչի, այլ Տաղա-թեփեցի» (Յովհաննու)։

Էջմիածնի Մատենադարանին տպագիր ցուցակին մէջ երեսուն թուով գրչագիրք կը նշանակին Հա-րանց վարուց (Թիւ 781-810)։ Ասոնցմէ միոյն թուա-կան կը տրուի ՃԽԴ, որ վրիպակ կ'երեւնայ տպա-գրին. աւելի ետքը հնագոյնն է ՊՁ թուականն կրողը գրեալ «'Ի վանս Երերան»[1]։

[1] ՄԱՏԵՆԱԳԻՐ. ՀԱՅԿԱԿԱՆ, յէջ 337-339։

այս ուխտի միաբանութեան ժողովոյ, և հովուել ըղմայրաքաղաքն Տարսոն հանգերձ գաւառաւքն Կիլիկիոյ։ Եւ քանզի այս աստուածային այր՝ ընթերցող գրոց Աստուծոյ և Յունաց, այլ և փափաքանաւք 'ի միասին հաւաքող, որոյ եղբայրս այս. Իսկ ձեռաւք կամակատարար աղաւաւոր և մաքուր անձինն որդւութեամբ պաշտաւնեայ, աշակերտեալ բանից և նմանութեամբ ընթացից և բաղձանաց 'ի նոյն նկրտելոյ և ըստ չափու իւրոյ ստացաւ մատեանս գրոց հաւասար տեառն իւրոյ և վարժապետի. և զայն 'ի նորին յորդորմանէ և խրատու յաւժարութեամբ եա գրել. քանզի միշտ լսէր 'ի վարդապետախաւսս բանից նորին»։

Սրբոյ Լամբրոնեցւոյն համար կը վկայէ Գ. Սկեւռացի. «Թարգմանութիւնս հայերէնորէն առաւից՝ զոր յայլասեռ լեզուաց թարգմաներալ՝ եկեղեցւոյ շնորհէր մանկանց. զխարս հարցն սրբոց, զխրատականս ձգնաւորաց»։

Լամբրոնացւոյն ձեռքով կամ վերատեսչութեամբ, 'ի յունէ կամ 'ի լատինէ թարգմանուածը՝ 'ի շրջան Հայրանց վարուց նախնական հայ թարգմանութեան, աշխատասիրութիւն է անմեռուն յունի մը, որուն ցանկը կը քաղէ Փոս յիւրում Մատենագարանի, և նոյն ոճն ու դասաւորութիւնն ունի՝ ինչ որ հայերէն Լամբրոնեանն, այսպէս.

Ա. Յորդորումն յառաջադիմութեան։ – Բ. Զ'ի հանդարտութենէ կամ 'ի լռութենէ ցուցանէ շահ։ – Գ. Յաղագս ժուժկալութեան, և թէ որպէս պարտ է զժուժկալութիւնն ոչ կերակրոյ միայն՝ այլ և այլոց շարժմանց հոգւոյն միանգամայն առնել։ – Դ. Թէ որպէս պարտ է մեզ զգուշանալ 'ի պատերազմաց յարուցելոց 'ի վերայ մեր։ – Ե. Վասն անընչութեան, և թէ որպէս պարտ է պահել զանձինս յաւելատեացութենէ։ – Զ. Վասն համբերութեան և արիութեան։ – Է. Թէ չէ պարտ առնել ինչ 'ի ցոյցս մարդկան։ – Ը. Վասն չպատել զոք, և այլն։

— Թուղթ երանելի հօրն Մակարայ (կրկին Թարգման. Բ. 562)։

— Երանելւոյն Մակարայ գիտնաւորի բան. «Որոց լսեն զբանն Աստուծոյ և առնեն, բարի՛ պտուղ նշանի այսոքիկ են»։ (Բ. 570)։

— Առ հայրն Մակար հարցուածք վասն որոշողութեան խորհրդոց. «Արար Աստուած զմարդն և եդ զնա 'ի դրախտին փափկութեան»։ (Բ. 571)։ * Յոմանց Մանդակունի հայրապետին ընծայուած։

— Խօսք Իպերիքեայ միայնակեցի. «Ասաց ծերն. որպէս առիւծ ահարկու է 'ի վերայ իշավայրեաց, նոյնպէս և միայնակեաց փորձ' խորհրդոց ցանկութեանց»։ (Բ. 591)։

— Պափնուտի միայնակեցի լուծումն հարցուածոյ և կամ 'ի վերայ անկուածոյ, և կամ վրիպեցելոյ 'ի պատշաճ կենաց. «Քրիտոնի ուրեմն և Յակոբու մերձ ընակեցելոյ և գրացի հանդիպեցաք»։ (Բ. 592)։

— Թուղթ սուրբ հօրն Ամոնի. «Հոգին սուրբ ուր և կամի հանգչի»։ (Բ. 597)։

— Նորին սուրբ հօրն Ամոնի այլ Թուղթ. «Սիրելիք, տեսանեմ այժմ զի պտուղ ձեր ամենեւին կենդանի է»։ (Բ. 599)։

— Նորին սուրբ հօր այլ Թուղթ. «Սիրելիք իմ 'ի տէր, գիտէք և դուք թէ յորմէ հետէ եղև յանցումն»։ (Բ. 602)։

— Վասն կարգի սրբութեան պաշտօնէից և մանկանց ուխտի. «Զի եթէ ոք 'ի հաւատս կացցէ կամ միանակեաց լինել»։ (Բ. 604)։

— Թէ որպէս պարտ է սրբել զանձինս. «Եւ արդ բազում երկիւղիւ անձանց զգուշասցուք»։ (Բ. 606)։

— Յաղագս յիշելոյ զգործեցեալ զմեղսն, թէ զինչ օրինակաւ առնելի է. «Եթէ եկեսցէ յիշատակին' տրամութիւն բերելով, ընկալ և սգացիր»։ (Բ. 606)։

տանիտսի հօրն յայտնեցաւ երբեմն մինչ էր յանապատին՝ եթէ իցէ 'ի քաղաքին հաւասար քեզ բժիշկ ոմն » ։ (Բ. 437)։

— Յթ. Վասն քաղաքավարութեան հարցին. « Երբեմն հայրն Անտոն աղօթէր 'ի խրճիթին իւրում, և եղև առ նա ձայն որ ասէր » ։ (Հին և Նոր Թարգմ. Բ. 453)։

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէ. « Ասաց հայրն Պիմէն. Երիս գործս ձգանց առաւել ունէր հայրն Պամբոյ » ։ (Բ. 488)։

— Խրատք սուրբ հարանցն ։ Յաղագս համեստութեան սկանակաց, և յաղագս կամեցողացն բնակել 'ի հաւասար կենցաղումս միանձանց և յաղագս մենաւորաց՝ Սերապիոնի եպիսկոպոսի Թմուայցւոյ. « Ոչ կամիմ զձեզ անգիտանալ, եղբարք, զի 'ի սկըզբանն յորժամ արար Աստուած զմարդն՝ եթող զնա 'ի դրախտին » ։ (Բ. 507)։

— Յաղագս առաքինութեան. « Որ ոք պահէ զնոսա, կարէ ապրել 'ի գեհենէն. և հանգչի ուր և կամի բնակել » ։ (Բ. 522)։

— Խրատք վասն երկիւղին Աստուծոյ. « Նայեա 'ի քեզ իբրև զճշմարիտ՝ եթէ մեծ մահ կայ առաջի և կորուստ անձինք » ։ (Բ. 527)։

— Ի Թղթոյն Մովսեսի միայնակեցի որ առ Ամոնբան խրատու. « Երկիւղն Աստուծոյ մերժէ զամենայն չարախօսութիւն. իսկ հեղգութիւն մերժէ զերկիւղն Աստուծոյ » ։ (Բ. 532)։

— Ճառ աբբայ Մովսեսի վասն ոխակալութեան. « Եթէ ոք ածցէ յուշ զայն որ ոք խռովեցոյց զնա կամ բամբասեաց » ։ (Բ. 534)։

— Բանք սրբոյն աբբայ Եփրեմի. « Վայ այնմ որ անիրաւ է, վայ անամօթիցն, վայ որկրամոլիցն » ։ (Բ. 537)։

— Բանք սրբոյն Փելիքսիանոսի. (տես)։

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէ. «Ասաց հայրն Ապողոն վասն ընդունելութեան զեղբարս»: (Բ. 242):

— ԺԴ. Վասն հնազանդութեան. «Երթեալ երբեմն չորք Սկիւթացիք առ երանելի հայրն Պամբով»: (Հին և Նոր Թարգմ. Բ. 251):

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէ. «Ասէ հայրն Անտոնիոս թէ հնազանդութիւն և պահք հնազանդեն զգազանս»:

— ԺԵ. Վասն խոնարհութեան. «Աբբայ Անտոնիոս նայեցաւ 'ի խորս դատաստանին Աստուծոյ, խնդրեաց և ասէ»: (Հին և Նոր Թարգմ. Բ. 276):

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէ. «Գնացին ոմանք 'ի հարցն առ հայրն Անտոնիոս. էր և հայրն Յովսէփ ընդ նոսա«: (Բ. 312):

— ԺԶ. Վասն անյիշաչարութեան. «Պատմեաց ոմն թէ երբեմն փիլիսոփայք ոմանք կամէին փորձել զմիայնակեացն»: (Հին և Նոր Թարգմ. Բ. 342):

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէ. «Ասաց հայրն Անտոնիոս. յորժամ ոք ծածկեսցէ զյանցանս ընկերին և զմեղս, և Աստուած ծածկեսցէ զմեղս նորա»: (Բ. 340):

— ԺԷ Վասն սիրելոյ զԱստուած և զընկերն. «Ասաց սուրբ հայրն մեր Պափնուտի. մեծ քան զամենայն սէրն է. ոչ կայ իբրև զանձն դնել 'ի վերայ սիրելւոյ իւրոյ»: (Հին և Նոր Թարգմ. Բ. 353):

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէ. «Ասաց հայրն Անտոնիոս. Ես ոչ երկնչիմ յԱստուծոյ. այլ սիրեմ զնա. զի սէր արտաքս վարէ զերկիւղ»: (Բ. 364):

— ԺԸ. Վասն հոգետես և նշանազգեաց հարց. «Եղբարց ոմանց դիպեցաւ նեղութիւն 'ի տեղւոջ ինքեանց»: (Հին և Նոր Թարգմ. Բ. 374):

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէ. «Ան-

«Զեղբայր ոմն գովէցին առաջի հօրն Անտոնիոսի. իսկ նա փորձեաց զնա զի թէ համբերել կարիցէ արհամարհանաց»։ (Բ. 69)։

— Բ. Վասն դառնալոյ. «Եղբօր ումեմն եկն փորձութիւն 'ի միաբանութեան հօրն Պիտութա, և որոշեալ անտի գնաց 'ի լեառնն առ աբբայն Անտոնիոս»։ (Հին և Նոր Թարգմ. Բ. 75)։

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէն. «Մարգարէացաւ հայրն Անտոնիոս վասն հօրն Ամմոնայ և ասէ՝ թէ յառաջես դու յերկիւղն Աստուծոյ յոյժ»։ (Բ. 87)։

— Գ. Վասն աստուածայնոյն և ուղիղ դատաստանին. «Ասաց հայրն Անտոն եթէ են մարդիկ որ չարչարեն զանձինս իւրեանց կրօնաւորութեամբ»։ (Հին և Նոր Թարգմ. Բ. 96)։

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէն.. «Ասէ ոմն եղբայր ցհայրն Անտոն. աղօթեա վասն իմ հայր»։ (Բ. 155)։

— ԺԱ. Վասն արթուն և զգաստ լինելոյ. «Ասէր աբբայ Անտոնիոս. Տեսի միայնակեացս բազումս, բայց ընտրութեամբ սակաւս»։ (Հին և Նոր Թարգմանու. Բ. 187)։

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէն. «Եղբայր ոմն աղաչէր զհայրն Արսենիոս լսել բան 'ի նմանէ»։ (Բ. 198)։

— ԺԲ. Վասն աղօթից. «Եկին երկու եղբարք առ հայրն Անտոն և հարցին ցնա յՂեւտական գրոց»։ (Հին և Նոր Թարգմ. Բ. 211)։

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէ. «Երանելւոյն Եպիփանու Կիպրացւոյ եպիսկոպոսի պատուիրեաց հայր վանից իւրոց»։ (Բ. 215)։

— ԺԳ. Վասն օտարասէր և ողորմած լինելոյ. «Նստէր ոմն ծեր ընդ եղբօր 'ի խցի կենակցութեամբ 'ի միասին, և էր ծերն յոյժ ողորմած»։ (Հին և Նոր Թարգմ. Բ. 218)։

ածէին 'ի գործոյ հարանցն որոց և յոյլոց ինչ գի-տելւոյ » ։ (Հին և Նոր Թարգմ. Ա. 564)։

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէն. « Ասէր հայրն Դանիէլ վասն հօրն Արսենիոսի՝ եթէ այնքան ժամանակս եկաց ընդ մեզ, և մեք մի քուրձ ուլեւր տանէաք նմա յամին » ։ (Ա. 582)։

— Ե. Երրորդ օրինակաւորք վասն զգուշութեան դատողութեան՝ յորժամ կանգնի 'ի վերայ մեր մարտըն. « Ասէ աբբայ Անտոնիոս՝ եթէ մնացեալ զի ունի մարմինս շարժումն բնական » ։ (Հին և Նոր Թարգմ. Ա. 597)։

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէ. « Եղբայր ոմն եհարց ցհայրն Աղաթոն վասն պոռնկութեան » ։ (Ա. 680)։

— Զ. Վասն անընչութեան. « Եղբայր ոմն եթող զաշխարհ և ետ զինչս իւր աղքատաց » ։ (Հին և Նոր Թարգմ. Ա. 705)։

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէ. « Ասէին վասն հօրն Աղաթոնի՝ եթէ զբաղում աւուրս շինէր սենեակ ընդ աշակերտս իւր » ։ (Հին և Նոր Թարգմ. Ա. 717)։

— Է. Վասն արիութեան և համբերութեան. « Եղբայր ոմն 'ի խուցին խռովէր, յորժամ նստէր առանձինն. և երթեալ ասաց ցհայրն Թէոդորոս Փերմացի » ։ (Հին և Նոր Թարգմ. Հատ. Բ. 5)։

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէն. « Գնացին երբեմն եղբարք առ հայրն Անտոնիոս, և ասեն ցնա. Ասասցես մեզ, հայր, բան ինչ որով կեցցուք » ։ (Բ. 28)։

— Ը. Վասն ոչ առնել ինչ 'ի ցոյցս մարդկան. « Լուաւ երբեմն աբբայն Անտոնիոս վասն ումեմն մանկան կրօնաւորի զի նշանս արար 'ի ճանապարհին » ։ (Հին և Նոր Թարգմ. Բ. 55)։

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէն.

* Սրբոյն Իլարիոնի ճգնաւորի վարուց հին և ընտիր թարգմանութիւն մ'ալ հասած է առ մեզ, և հրատարակեալ 'ի շարս Հայկական Սոփերաց. (Հատ. ԻԲ) ։

— Բանք և պատմութիւնք սուրբ հարանցն և յառաջադիմութեամբ կատարուածն նոցա.

— Ա. Վասն կատարեալ առաքինութեան. « Եղբայր ոմն եհարց զաբբայ Անտոնիոս և ասէ. Զինչ պահեցից զի արժանի եղէց Աստուծոյ »։ (Հին և Նոր Թարգմ. Ա. 413)* ։

* Այս հատընտիր քաղուածոց համար՝ Գխբ թուականին գրուած օրինակ մը կը ծանուցանէ. « Ի վարուց սուրբ հարանց. զոր հաւաքեալ 'ի բազմաց 'ի մի սուրբ վարդապետին Վարդանայ, յաւգուտ ամենեցուն որք կամիցին սրտի մտօք ընթեռնուլ »։

— Բ. Վասն հանդարտութեան. « Եղբայր ոմն նստէր 'ի խուց իւրում, և սերմանեաց 'ի նա սատանայ զի ելցէ 'ի խցկէն իւրմէ »։ (Հին և Նոր Թարգմ. Ա. 493)։

— Մնացորդք յերկրորդ թարգմանութենէն. « Նստէր երբեմն հայրն Անտոնիոս յանապատի և անկաւ 'ի ձանձրութիւն մեծ »։ (Ա. 507).

— Գ. Վասն մտացութեան կամ զգուշութեան և արտասուաց. « Ասաց աբբայ Անտոնիոս. առաջի աչաց ձերոց կալարուք զերկիւղն Աստուծոյ, յամենայնի յիշատակեալ զմահ »։ (Հին և Նոր Թարգմ. Ա. 518)։

— Մնացորդք յերկրորդ թարգմանութենէն. « Ասէ հայրն Ամմոնա. յորժամ նստցիս 'ի սենեկի քո, ժողովեա զմիտս քո »։ (Ա. 552)։

— Դ. Վասն ժուժկալութեան ոչ միայն 'ի կերակրոյ, այլ և յամենայնէ որ շարժէ զանձն. « Ծերք ոմանք երթային առ հայրն Անտոն և անդադար խօ-

ռի Եկեղեցւոյ Հայոց լուսաւոր վարդապետի և կաթողիկոսի » ։ (Ա. 348)։

— Վարք երանելւոյն Մարկոսի Սալոնի որ է յիմար. « Սովորութիւն էր Սկիւթայ լերինն զի աւագ հայրն 'ի տարւոջն միանգամ 'ի տէրունական տօնի ելանէր 'ի լեռնէն » ։ (Ա. 350)։

— Վարք երանելւոյն Սիմէոնի որ վասն Քրիստոսի աղուաշանայր և Յոհաննու անապատականի. « Սիմէոն և Յոհաննէս էին յԱսորւոց յԵդեսիա քաղաքէն, և Սիմէոն մայր միայն ունէր » ։ (Ա. 352)։

— Պատմութիւն որդւոյ Թագաւորին Հռոմայ որոյ անուն էր Ներսէհ, որ թողեալ զամենայն կրօնաւորեցաւ 'ի վանս սուրբ հօրն Անտոնի. « Պատմել մեզ զվարս բարեպաշտից երկիւղ է. գուցէ յառաքինութեան վարուցն նուազագոյն գոլ ասացեալքն » ։ (Ա. 360)։

— Պատմութիւն և վարք երանելի կամաւոր աղքատացելոյն վասն Քրիստոսի որդւոյ Թագաւորին Հռոմոց. « Արք եղբարք և հարք, լուարուք զպատմութիւն առն Աստուծոյ որդւոյ Թագաւորին Հռոմոց » ։ (Ա. 369)։

— Զեղջ և գործ Մովկիոսի խափշիկ աւազակին. « Յաւուրս բարեպաշտ արքային Մաւրկայ էր խափշիկ աւազակն 'ի սահմանս Տաւեփայ » ։ (Ա. 390)։

— Վարք աղախնոյն Աստուծոյ Թէոդորայ. « Յաւուրս Զենոնի արքային 'ի քաղաքին Աղեքսանդրիա էր Թէոդորա » ։ (Ա. 392)։

— Վարք երանուհի կուսին Մարիամու որ Մարինոս անուանեցաւ. « Էր այր մի 'ի Բիւթանիա, որում անուն էր Եւգինոս, և ունէր կին » ։ (Ա. 402)։

— Զեղջ և ապաշխարութիւն Տայիսայ պոռնիկին. « Եղբարք իմ սիրելիք, պատմեմ ձեզ զսքանչելի և զպայծառ ապաշխարութիւն Տայիսայ » ։ (Ա. 406)։

— Վարք և քաղաքավարութիւն Մարիամու Եգիպտացւոյ՝ որ 'ի պոռնկաց եղև սուրբ ճգնութեամբ յանապատի. « Զխորհուրդ Թագաւորի 'ի ծածկել բարիոք է, և զգործս Աստուծոյ քարոզել փառաւորագոյն » : (Հին Թարգմ. Ա. 291) :

— Մնացորդք յերկրորդ Թարգմանութենէ. Վարք Եւագրեայ երանելւոյ. « Ի քաղաքս իւր, ով սիրելիք. կարի յոյժ զարմանալի և հռչակաւոր երևեալ վարուք հաւատարիմ ծառայն Աստուծոյ Եւագրիոս » : (Ա. 318) :

— Պատմութիւն վասն Պաւղոսի Լուսարացւոյ. « Պաւղոս անուն 'ի Լուսարիոյ, որ էր պատուով 'ի Լուսարինոս, և էր այր սուրբ և մեծատուն յոյժ » : (Ա. 323) :

— Վարք երանելւոյն Սիմէոնի սիւնակեցի. « Երանելին Սիմէոն էր 'ի քաղաքէն Անտիոքայ Ասորւոց 'ի ժամանակս բարեպաշտ արքային Լեւոնի » : (Ա. 324) :

— Վարք երանելւոյն Իլարիոնի կրօնաւորի. « Երջանիկ հայրն մեր Իլարիոն էր յաւուրս սրբոյն Կոստանդիանոսի » : (Ա. 327) :

— Վարք երանելւոյն Մարտիանոսի կրօնաւորի. « Ծառայն Աստուծոյ Մարտիանոս էր 'ի Կեսարիայ Պաղեստինեայ » : (Ա. 330) :

— Վասն բարձրամիտ անապատականին. « Պատմեաց մեծն և սուրբ հայրն Անտոնիոս եթէ եկն առ իս մի ոմն յանապատական միայնակեցաց : (Ա. 339) :

— Երանելւոյն Մակարիոսի որ քսան մղոնաւ մերձ դրախտին բնակէր, գրեաց զպատմութիւնս Թէոփիլոս կրօնաւորն. « Ի վանսն տեառն Ասկիդիոսի, որ է 'ի Միջագետս Ասորւոց, բնակէի ես Թէոփիլոս մեղաւոր կրօնաւոր » : (Ա. 340) :

— Վասն որք զդրախտին լեառն գտին և զստորոտին հասեալ տեսին. « Ի ժամանակս տեառն Ներսէ-

նել թէ իցէ՞ այլ ոմն եղբայր 'ի ներքսագոյնն քան զիս ծառայել Աստուծոյ »* ։

* Ի վերջն. « Զնորոգող և զթարգմանիչ սրբոյ պատմութեանս զտէր Գրիգոր Հայոց կաթողիկոս յիշեսջիք 'ի Քրիստոս ։ Եւ թարգմանեցաւ 'ի թուականութեանս Հայոց ՇՄԹ ամին յաշխարհէս Եգիպտացւոց 'ի փառս ամենասուրբ Երրորդութեանն » ։ Հաւանականաբար քեռորդի Վկայասիրին, և 'ի նմանէ գրուած յաթոռ եպիսկոպոսութեան յԵգիպտոս. որովհետև ինք յիշուած թուականին արդէն աւարտած էր իր աստուածահաճոյ կենացընթացքը ։

— Վարք երանելոյն աբբայ Մարկոսի և կատարումն նորին և խօսք առ Սերապիոն. « Պատմեաց մեզ երանելին Սերապիոն մինչ էրն 'ի մէջ Սկիւթեայ որ է յԵգիպտոս, առ 'ի վախճանել ծերոյն այնորիկ ասէ » ։ (Հին և Նոր Թարգմ. Ա. 188) ։

— Որ յերկրին Եգիպտացւոց հարանցն պատմութիւն. « Աւրհնեալ տէր աստուած, որ զամենայն մարդիկ կամի զի կեցցեն. և 'ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն » ։ ( Հին Թարգմ. ըստ մեծի մասին Ա. 207, 270) ։

— Պատմութիւն անողորմ Պետրոսի մաքսաւորի. « Յափրիկեցւոց աշխարհէն էր ոմն մեծատուն յոյժ ստամբակ և անողորմ, անուն Պետրոս. և էր մաքսաւոր » ։ (Հին Թարգմ. 271) ։

— Վարք աղախնոյն Քրիստոսի Եփրոսիննեայ. « Եղեւ այր ոմն մեծատուն յԱղեքսանդրիա քաղաքի, որում անուն էր Պափնուտիոս. յոյժ երկիւղած յԱստուծոյ և խնամատար պատուիրանաց նորա » ։ (Հին Թարգմ. Ա. 278) ։

— Վարք երանելւոյն Մարիամայ Եգիպտացւոյն. « Կինս այս պոռնիկ էր 'ի քաղաքէն Աղեքսանդրիայ եգիպտացւոց. ոչ 'ի մեծատան կամ յաղնուական ազգէ, և էր յաւուրս քրիստոնէութեան » ։ (Հին Թարգմ. Ա. 207) ։

— *Պատմութիւն սուրբ հօրն Մակարայ Եգիպտացւոյ. « Սկիզբն արարցուք պատմել զվարս երանելոյն Մակարայ։ Եւ կեղոն եղէ ընդ երանելոյն Մակարայ ամս քսան և երկու »։ (Հին Թարգմ.* Ա. 89)։

— *Վարք և կատարումն Յոհաննու Թեղբացւոյ և մարգարէի. « Տեսաք մեք յերկրին Թեբայեցւոց 'ի սահմանս Լիկիայ զմեծ զերանելին Յոհաննէս, այր սուրբ ճշմարիտ լի առաքինութեամբ »։ (Հին Թարգ.* Ա. 97)։

— *Վարք երանելւոյն Յոհաննու Գբացւոյն. « Կին մի քրիստոնեայ էր, որում անուն էր Յուլիա, մեծատուն յոյժ. և էին նորա մանկունք երկու՝ Յոհաննէս և քոյր նորա Թեմեստիա »։ (Հին և նոր Թարգմ.* Ա. 113)։

— *Վարք երանելւոյն Յոհաննու որդւոյ Եւտրոպիոսի կամաւոր աղքատացելոյն վասն Քրիստոսի. « Յամս ժամանակաց Թագաւորութեանն Արկադէոսի որդւոյ մեծին Թէոդոսի և 'ի հայրապետութեան սրբոյն Յոհաննու Ոսկեբերանի »։ (Հին Թարգմ.* Ա. 126)։

— *Պատմութիւն յաղագս որդւոյ Թագաւորին Հռոմայեցւոց որոյ անուն կոչի Այր Աստուծոյ. « Այր մի Թագաւոր 'ի Հռոմ քաղաք, և անուն նորա Ոփոմիանոս և անուն կնոջ նորա Ախլայիս »։ (Հին և նոր Թարգմ.* Ա. 138)։

— *Վարք սրբոյն Սերեպիոնի ծերոյ. « Սերեպիոն այր երկիւղած և ազնուական՝ եղև միայնակեաց. և յաջողեալ էր նմա Աստուած յամենայն 'ի գործս »։ (Հին Թարգմ.* Ա. 162)։

— *Վարք և պատմութիւն սուրբ հօրն մերոյ Ոնոփրիոսի անապատականի զոր պատմեաց սուրբ հայրն Պափնոտիոս. « Ի միում աւուր փութացայ ընթանալ և լինել 'ի ներքսագոյն անապատն առ 'ի տեսա-*

պէս արդէն յիշատակած ենք[1]։ Իսկ նոր մասին մէջ աւելի յետնագոյն գործոց հետք և նշմարք կ'երեւնան, որոնց մէջ ընտրութիւն ընելը՝ առողջ քննադատութեան և լեզուի հմտութեան կը պատկանի։ Մեր մէջ բերած քանի մը յիշատակարանք՝ բաւական կ'օժանդակեն առ այս։

Այլևայլ տպագրութիւնք եղած են այս գրքին. ընտրելագոյն է 'ի մեր մամլոյ ընծայուածն, երկհատոր (1854). որոյ 'ի գլուխ գրուած հմուտ յառաջաբանին կը ղրկենք զհետամուտ և զհետաքննին բանասիրութիւնն։

— Պատմութիւն և վարք սրբոց անապատաւոր ճգնաւորաց։ — Վարք սրբոյն Պաւղոսի անապատականի. « Առ բազումս բազում անգամ խնդիր լինէր եթէ յո՞ւմ ումեքէ զառաջինն սկսաւ բնակել յանապատի » (Կրկին Թարգմանութիւնք. հին և նոր, տըպագիր Վենետիկոյ, 1854, Հատ. Ա. 1)։

— Վարք երանելոյն Անտոնի եգիպտացւոյ միայնակեցի. Թուղթ Աթանասի. « Բարւոք է նախանձ առաքինութեան գնել ընդ միայնաւորս եգիպտացւոց. հաւասարել կամ առաւելուլ զորքոք կամեցեալ ըստ առաքինութեան ձերոցդ վարուց » ։ (Հին Թարգմ. Ա. 17)։

— Թուղթ Սերապիոնի սուրբ հօրն առ աշակերտս երանելւոյն Անտոնի առ Մակար և առ Ամատաս. « Մեծ բարեխօս կորոյս աշխարհս, և մեծ մարդ ընկալան երկինք. եգիտ վերինն զոր խնդրէր. և կորոյս ներքինս զոր ունէր » ։ (Հին Թարգմ. Ա. 81)։

— Ճառ Պաւղայ միայնակեցի. « Պաւղ էր այր հողագործ. և առաւել ամբիծ և անարատ և սուրբ վարուք. և մտաւոր կարգաց բարեաց, և ամուսնացեալ 'ի կարգս աշխարհիս » ։ (Հին և Նոր Թարգմ. Ա. 82)։

[1] Տես յէջ 286։

**ԿՂԵՄԵՍ** (Գ.) քահանայապետի թուղթ առ Գրիգոր Տղայ կաթուղիկոս. (Lettre du pape Clément (III) à Grégoire Degha, patriarche des Arméniens). սրբոյ Լամբրոնեցւոյն թարգմանութեամբ:

** **ԿՈՍՏԱՆԴԻԱՆՈՍԻ** թուղթ առ Շապուհ արքայ Պարսից. (Lettre de l'empereur Constantin à Chabouh roi des Perses).

## ՀԱՐԱՆՑ ՎԱՐՔ

(VIES DES SAINTS PÈRES)

---

Հարանց վարուց՝ կամ անոր զանազան մասանց՝ յորոց ձևացած է, կրկին թարգմանութիւնք եղած են և կան մեր մատենագրութեան մէջ. յորոց մին հնագոյն և ազնուագոյն ոճովն և բովանդակութեամբ. և միւսն աւելի նոր դարուց մէջ եղած և մեր դըպրութեան արծաթի դարուն վերաբերելով, և անկէ ալ ստորին. որովհետև Լամբրոնացւոյն ժամանակ և իր ջանքովը եղած կ'աւանդուի վերջին կարգաւորութիւն և դասաւորութիւն գրոցս: Նախնական թարգմանութեան քանի մը կարևորագոյն հատուածք՝ ինչուան հինգերորդ դարու հնութեան կ'ելլեն. ընդուն և ոճն ալ զայն կը հաստատեն. այսպէս սրբոյն Անտոնի անապատականի վարուց պատմութիւնը, ինչ-

զի հատանեալ է արտասուք ձեր 'ի տխրութեանց: Երկիր է այս սուրբ հանգստեան ձերոյ. և բարձաւ 'ի ձէնջ երկիւղ չարութեան. և հանգարտեցան սիրտք ձեր 'ի տխրութեանց: Երկիր է այս սուրբ, և բնակիչք նորա զկերակուր հոգևոր ունին և զըմպելի. և 'ի սոսա յայտնէ Հոգին սուրբ զծածկեալս: Տեղի է բարձրեալ 'ի նմանութեանց. և սովոր. եկեսցէ Հոգին ուսանել զայս նմանութեան »:

պքինք՝ ուղղեալ առ միանձնականս եւ անապատաւորս՝ հայերէն մաքուր ոճով եւ լեզուով, եւ թարգմանութեամբ 'ի յունէ: Հաւանօրէն Կղիմաքոսի է նաեւ այս երկասիրութիւն, սկզբնաւորութիւնն է. «Այս են բանք ճշմարտութեան սուրբ հաւրն Յովհաննու աստուածաբանի, զոր ասացեալ է վասն միանձանց եւ անապատականաց, զոր ազդեաց 'ի նմա Հոգին սուրբ»: Օրինակն գրչութեան է չորեքտասաներորդ դարու 'ի ՊԼ Թուականի Հայոց (1383). «Ի մայրաքաղաքիս, — որպէս կ'ազդէ յիշատակագիրն, — ընդ ափն նաւագնաց ծովի զառին ազգաց իշխանութեան, ընդ հովանեաւ առ ոտս սուրբ Յակոբայ 'ի Յանուխպեկի տեղն»: Բովանդակն են մետասան գլուխք բանից կամ ճառք, յորոց ոմանք թուին ունենալ կրկին եւ իրարմէ բաւական տարբեր թարգմանութիւնք:

Բանասիրաց հետաքննութեան համար դնենք անոնցմէ մէկուն սկզբնաւորութիւնը, ամփոփելով 'ի ստորեւս իջեցն 'ի ծանօթութեան՝ նաեւ միւս թարգմանութիւնն:

«Յայսմ հետէ սիրտ խնդրողացն ծարաւի տեսանել զտէր· որոց յերեւեցուցանել զերեսս իւր տաէ, Եկայք առ իս աշխատեալք եւ ծանրաբեռինք. եւ ես հանգուցից զձեզ: Արդ սգաւորք յայս աստիճան ժամանեալք՝ ուրախ լերուք, զի թեթեւացաւ աշխատութիւն, բարձաւ երկիւղ չարութեանն. հանգաւեաց ոգի ձեր 'ի տրտմութեանց եւ կերակրի հոգեւորական խուկմամբն, եւ 'ի նոյնն յայտնէ Հոգին սուրբ զծածկեալն, որով եկեսցէ հոգին 'ի տեսութիւն լուսոյ որբոյ Երրորդութեանն[1] »:

[1] «Այսուհետեւ ուրախացի սիրտ խնդրողաց տեսան իւրեանց, զի ծարաւի է տեսանել զնա. եւ երեւեցոյց զերեսս իւր առելով ընդ նոսա. Եկայք առ իս աշխատեալք եւ ծանրաբեռինք, եւ ես հանգուցից զձեզ: Ամենայն սգաւորք ուրախացէք

ծանման անխառնութեան և կատարելութեան, և յարութեան հոգւոյ յառաջ քան զհասարակաց յարութիւն. «Ահաւասիկ մեք ստուգապէս եղեալք 'ի գուբս անգիտութեան խորին և մութն անտից, և 'ի ստուերս մահու մարմնոց մերոց»։

— Յարուցանէ յերկրէ յերկինս զաղքատ միտս, և յաղբեւաց անարից կանգնէ զպանդուխտս յերանելի անխառնութիւն։ Իսկ ամենագովելի սէրն առնէ զնա նստել ընդ իշխանապետս հրեշտակապետաց տեառն։ Նորին կապակցութեան առաքինութեանց՝ այսինքն Երրորդութեան առաքինութեանց, որ են Հաւատ, Յոյս և Սէր։ Իսկ արդ ստուգապէս լինի յառաջասացելոցն ամենեցուն՝ կան երկրորդքս այսոքիկ, որ զկապ ամենեցուն ապրեցուցանեն և զօրացուցանէ»։

— Յառաջաբանութիւն Յովհաննու առ Յովհաննէս. «Ցերկրաւոր և 'ի ներքին յայս գիր՝ ես զքեզ, մի զքանչելի, քան զամենեսեան յետոյ կարգեցի, իսկ 'ի վերին յերկնաւոր՝ հաւատամ զքեզ քան զամենեսեան զմեզ՝ 'ի գրեալն Աստուծոյ՝ յառաջագոյն գոլ»*։

* Գրչագիրք կը յաւելուն. «Կեանք և քաղաքավարութիւն երանելի սուրբ հաւրն մերոյ Յովհաննու հաւրն Սինէ՝ որ կոչի Կլեմաքս»։ յօրինեալ 'ի Դանիելէ Ռուշթայ՝ զոր յիշեցինք. և յետոյ իր միւս այլ երկասիրութիւնը. «Լուծմունք դժուարիմաց և նուրբ բանից որ կան 'ի գիրս յայս կոչեցեալ Կլիմաքս»։ Էջմիածնի Մատենադարանին մէջ վեց օրինակ կը գտնենք Սանդուխք գրոց (Թիւ 1890–95), յորոց հնագոյնն գրեալ 'ի Թուին Հայոց ՊԾ (1401)։ Երուսաղեմի Մատենադարանի մեր ձեռքն գտնուած անկատար ցուցակի մը մէջ Յովհաննու աստուածաբանի ընծայուած խրատական ընտիր և բազմիմաստ աշխարարութեանց յիշատակութեան կը հանդի-

րայ ելեալ բարձրացաւ։ Ի վերայ անձառ խորհրդոցն հայհոյութեան. «Դժնդակ արմատոյ՝ դժնդակ սաղարթ։ Լուաք զզազիր ամբարտաւանութիւնն, անձառելի հայհոյութեանն է ծնաւղ»։

— Վասն հեզութեան և պարզութեան և անչարութեան. «Նախընթաց արեգական՝ առաւաւտ. և ամենայն խոնարհութեան՝ հեզութեանն ընթացք»։

— Նորին վասն ախտիցն կորստեան, և բարձր խոնարհութեամբ աներևոյթ զգայութեամբ. «Ծիրոյն Աստուծոյ ուղղապէս, և խոնարհութեանն վայելչութեան, և երանելի ամբծութեանն պայծառութեան»։

— Աղբիւր և մայր խոր քննութիւն սուրբ բըղխման խոնարհութեան։ Յաղագս քննութեան խորհրդոց և ախտից և առաքինութեան. «Քննութեան պարապել և 'ի նոյն դեգերել՝ ընտրի գիտութիւն ճշմարիտ, որ է մէջ տիրապէս բարութեանն»։

— Նորին վասն քահանայականին այն հանդարտութեան հոգւոյ և մարմնոյ։ Միայնակեաց ասէ յոյժ հանդարտեալն է. «Մեք որ միշտ վաճառեալ և ծառայ եղեալ անսուրբ ախտից, և հնազանդեալք նմա. յայնմանէ զնենգութիւն և զազգս և զկարգ, և զամենայն գործ և զքանիոնութիւն ծանեաք»։

— Վասն իւրաքանչիւր հանդարտելոցն զանազանութեան և դատողութեան և բացորոշողութեան. «Եւ այս եւս յայտնի ամենեցուն է՝ եթէ առ ամենայն արուեստս և գործս զանազանութիւն գոյ կամաց և խորհրդոց»։

— Նորին վասն քահանայական, և մաւր ամենայն առաքինութեանց երանելի աղաւթիցն, որ 'ի նմա մտաւք և զգայարանաւք յառաջ կալոյ. «Աղաւթք է քնութեամբ իւրով միաւորութիւն մարդկան ընդ Աստուծոյ»։

— Նորին վասն 'ի վերայ երկրի երկինք աստուա-

— Դարձեալ յաղթահարէ որ սէր ստանայ, և 'ի հոգ նորին զարգանայ։ Նորին վասն անստացուածութեան. « Անստացուածութիւնն է հոգոց 'ի բաց ընկեցումն. անհոգութիւն վարուց, ճանապարհորդութիւն անարգել, հաւատ ըստ պատուիրանաց, տրտմութեան աւտարութիւն »։

— Թռչակն' որով ընթացք յերկնային մշտնջենաւոր կեանսն յաջողի։ Նորին վասն անզգայութեան և մեռելութեան հոգւոյ և մտաց՝ նախ քան զմեռանիլ մարմնոյն։ « Անզգայութիւն է 'ի մարմնի և 'ի հոգի։ Մեռանի զգայութիւնն' 'ի յաւելցաւոցն ախղերգութեամբն, և յանզգայութիւն փոխի մարդ »։

— Վասն քնոյ և արթնութեան, և 'ի ժողովս սաղմոսերգութեան. « Քուն է էութիւն բնութեանս հանգստութիւն, պատկեր մահու, զգայութեանցս պարապումն »։

— Վասն մարմնական արթնութեան, և թէ որպէս 'ի նմա մտանել։ (Վասն աղաւթից 'ի ժողովս). « Երկրաւոր թագաւորաց նիւթեղէն սպասաւորք զանազան անսակաւք կան առաջի, ոմանք խարազան կրելով և ոմանք զրահս »։

— Եւթն յաստիճանս առնու զպայծառութիւն լուսոյ 'ի սիրտ իւր։ Վասն ծուլութեան և անարիութեան. « Ծուլութիւն է տղայական սովորութիւն 'ի սնափառութեան ծերացեալ անձն »։

— Վասն տղայական և անարի հեղգութեանց։ Վասն բազմակերպ սնափառութեան։ « Ոմանք 'ի կարգի անդ զսնափառութիւն և զամբարտաւանութիւն ինքնահաճութիւն կամին սահմանել »։

— Նորին վասն ամբարտաւանութեան. « Ամբարտաւանութիւն է գիւտ դիւաց, բամբասանք մարդկան, դատապարտութեան մայր, օգնականութեանն Աստուծոյ փախուցիչ »։

— Աստիճան' յոր հեծեալն զաւրացաւ, և 'ի վե-

մասանոց այսմ հակառակ ասել ինձ թուի, եթէ ա-տելութիւն և յիշաչարութիւն զմտանութիւնն ծը-նանի »:

— Աստիճան տասն, որոց յաղթողն զշատախօսու-սութիւն 'ի գործ ոգոյ և կամ սիրոյ: — Նորին վասն շատախօսութեան. « Առաջաւ 'ի մէնջ զուզնա-քեայ սխալանք այնոցիկ որք գտանեն և լեզուաւք տանջեն »:

— Աստիճան մետասան, որ յաղթէ բազում չա-րեաց 'ի միասին զարգացելոց: Վասն ստութեան. « Ծնունդ երկաթի և քարի հուր. ծնունդ շատա-խօսութեան և խեղկատակութեան ստութիւն »:

— Աստիճան երկոտասան, յոր հեծեալն՝ արմատ զգեղեցիկ ստացաւ: Նորին վասն ձանձրութեան. « Զի և այս պատճառ 'ի բազում երա շատախօսու-թեան սաղարթ, և նախածնաւղ ասեմ ձանձրու-թեան զստութիւնն »:

— Յաղթութիւն զոր որք ստացան ճշմարտու-թեամբ յամենայնի անփորձ մնացին: Նորին վասն չարահամբաւ տիկնոջ որովայնի. « Հանդերձեալ եմ վասն որովայնի ասել, որ նախ սկիզբն եդ 'ի զամե-նայնն առանձին իմաստասիրել »:

— Արւութեամբ յաղթութիւնն՝ որ յայտ առնէ զանախտութիւնն, և 'ի լրումն իմաստութեան հա-սուցանէ: Օրինակ մարմնաւորաց, անմարմնոցն վարք: Նորին վասն ապականութեան վասաակոց 'ի յապա-կանութեան քրտունք սրբութեան և իմաստու-թեան: « Սրբութիւն լինէ անմարմնոցն բնութեան միաւորութիւն. սրբութիւն լինէ՝ տուն Քրիստոսի անփորձ, և երկնային սիրտ երկրաւոր »:

— Պարգևք զորս որք 'ի մարմնի մեռան՝ առին և յարեան, և զհանդերձեալ ապականութեան աւրի-նակն: Նորին վասն արծաթսիրութեան. « Բազումք որք զիմաստասիրականն վարդապետեցին, զկնի նա-խադրեցելոցդ՝ զերկրորդս բիւրադլխի եղեն »:

— Վկայութիւն վասն երանութեանց յիշատա-կեալ արուութեան եւ ունկնդրութեան. «Այս որս բան մեր յաղթողի, նեղ եւ ըստ Քրիստոսի Ճգնութեան համբերութեամբ, այսուհետեւ արձակի շառաւիղ»։

— Հինգերորդ աստիճան զորս աշխարհեն ըստ հինգ զգայարանացն, մաքրէ պայծառացուցեալ, որք զանկամոյն ինքնայօժարութեամբ. կրեն զչարչա-րանս. վասն խոկման մահու. «Ամենայն բանի եւ մը-տածութեան՝ նախապատիւ է խոկումն մահու եւ յանցանաց. եւ առաջին է լալոյ եւ գթոյ. Թէպէտեւ զկնի նորին բանս կարգեցաւ»։

— Վեց աստիճանաւ ելանէ, այնուհետեւ ոչ մե-ղանչէ. եւ դու ինքն յիշեալ զվերջինս քո, եւ բնաւ ոչ մեղիցես։ Վասն ուրախարար ոգւոյ. «Սուգ որ ըստ Աստուած իցէ՝ զուարթութիւն ոգւոյ եւ զերկուսն արտ փոխարէ. միշտ զզօրացումն ծարաւեալ խնդ-րեսցէ»։

— Աստիճան եւթն, յոր արժանացեալն՝ ինձ աւ-գնեսցէ, եւ ինքն աւգնեալ եղիցի։ Որ յեւթն աստի-ճան յաւիտենիս այսմիկ 'ի կործանմանէ պահեցաւ։ Նորին յաղագս անբարկութեան եւ հեզութեան. «Զոր աւրինակ զջուր՝ յառ սակաւ սակաւ հեղուլն 'ի բոց՝ կատարելապէս զնոյն շիջուցանէ, այսպէս եւ Ճշմարիտ ոգւոյ արտասուք զամենայն բոց սրտմտու-թեան եւ դառնամաղձութեան սպանանել գիտէ»։

— Ութ աստիճանս անբարկութեան կայ պսակ, որք 'ի յիւրում նիւթիցն ամենայնի յաղթեաց որ 'ի բնութիւնս ներմանի. վասն յիշաչարութեան. «Քանզի սուրբ առաքինութիւնն՝ սանդխոցն որ երեւեցաւ Յակոբու նմանեցաւ, եւ այն սուրբ չորից շղթայից որ անկաւ 'ի Պետրոսէ գլխաւորէ»։

— Աստիճան ինն՝ որոյ ստացողքն համարձակ զլու-ծումն յանցանաց 'ի փրկչէն մերմէ Աստուծոյ խնդ-րեսցեն։ Նորին՝ վասն մատնութեան. «Ոչ ոք յի-

անմոլար, և ամենևին 'ի քարէ գայթակղութեանն անկործան պահեսցին։ Սանդուղքս մեզ 'ի յերկրաւորէս 'ի սրբութիւնն երկնից. բարձրացեալ կանգնեալ կայ 'ի գլուխն՝ որպէս ինձ թուի՝ սանդղոցն զոր խարող ախոյեն Յակոբ 'ի հանգչելն բարեմտութեամբ եաես, ընդ որ եկյաւք յաւժարութեամբ և հաւատովք, և յիմանալի այս և յերկնային ընթացիցս կէան ժամանեսցուք. իսկ այժմ յառաջին աստիճանս վարդապետէ զբարուցն և զատոյգն»։

— Յովհաննու առ Յովհաննէս ուրախ լինել. «Ընկալաք զվայելուչն աշնուական և անախտ վարուցդ և մաքրութեամբ խոնարհեալ սրտիդ»։

— Սկիզբն հոգևոր տախտակիս գրոյ հաւատարական գեղեցկութեամբ հանդերձեալ, վկայութիւն ճշմարիտ վարուց բան կրաւնաւորական սրբոյ Յովհաննու հաւր Սինեայ լերինն միանձանց. զոր հրամանաւ հաւր Յովհաննու Ռայիթու լերինն գրեաց և առ նա առաքեաց. «Բարւոյ և գերագունի բարւոյ՝ ամենաբարւոյ Աստուծոյ մերոյ և Թագաւորի ծառայի՝ առ ծառայակիցս»։

— Աստիճանն առաջին՝ յոր հեծեալն ոչ դարձցի յետս։ Վասն ցաւաւք և տրտմութեամբ հրաժարման յաշխարհէ։ «Որք ճշմարտութեամբ զանէր սիրեսցեն, և ճշմարտութեամբ հանդերձեալ արքայութեանն հանդիպիլ փութասցին»։

— Երկրորդ աստիճան. ընդ որ ընթացողն՝ Ղովտայ, և ոչ կնոջն նմանեսցի։ Վասն աւտարութեան, և երազոց. «Աւտարութիւն է՝ թողուլն անդարձ զոր 'ի հայրենիսն, որք բարւոք տեսողականութեանն մեզ հակառակ առնեն»։

— Վասն երազոց որ զկնի աւտարութեան. «Որ մերս է գիտութեան միաք, անկատար է, և բոլորովին ամենայն անգիտութեամբ լցեալ, և ծածկել գիւրին է»։

— ** Դ. Թուղթ երրորդ տեառն Աբրահամու Հայոց կաթողիկոսի առ Կիւրիոն Վրաց կաթուղիկոս. (Troisième lettre d'Abraham à Cyrion). « Զինչ առնեմք ով պատուական եղբայր զաստուածային պատուիրանացն զձայն որ միշտ բողոքէ մեզ. Թէ զգոյշ կացէք հաւատոյ՝ յորում եդ զձեզ հոգին սուրբ տեսուչս՝ հովուել զժողովուրդ տեառն » :

— ** Պատասխանի. (La réponse de Cyrion). « Սրբասէրի և Ճշմարտի տեառն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի 'ի Կիւրոնէ Վրաց կաթուղիկոսէ խոնարհութեամբ և սիրով ողջոյն: Ահաւասիկ այս և 'ի մէնջ երրորդ թուղթ գրեցաւ. եպիսկոպոս էր 'ի Հռոմ Կելեստինոս, յԱղեքսանդրիա Կիւրեղ. յԱնտիոքիա Յոհան. յԵրուսաղէմ Յոբնաղ. 'ի Կոստանդինուպօլիս երևեցաւ դարձեալ այր մի որ ունէր պատիւ հովուութեան. բայց ճշմարտութեամբ ուրացող էր և անաւրէն որդի կորստեան և ժառանգ սատանայի, որում անուն կոչէր Նեստորիոս » :

# ԿԼԻՄԱՔՈՍ (ՅՈՎՀԱՆՆԷՍ)

## (JEAN CLIMAX)

Վեցերորդ դարուն առաջին քառորդին ծնած է Յովհաննէս՝ իւր գրոց անուամբը Կլիմաքս (Κλίμαξ) կամ Սանդուղք կոչուած: Ինչպէս մեր ուրիշ թարգմանութեանց՝ ասանկ ալ այս երկասիրութեան ճիշդ ժամանակն չենք կրնար սահմանել. հաւանականաբար ութերորդ դարու կը վերաբերի:

« Սանդուխք աստուածային ելից. 'ի գիրս կենաց գրին որք զանձինս յայս ճանապարհս դնեն, արութեան ընթացք աստուածային մատեանս այս առաջնորդ է: Ի սմա յաջողեալ գտանին ձեռնարկողքն

տեաց 'ի բարեխաւսութիւն բարերար տերանց որ գոհ են զքէն» ։

— ** Բ. Թուղթ առաջին տեառն Աբրահամու կաթուղիկոսի Հայոց առ Կիւրիոն Վրաց կաթուղիկոս. (La première lettre d'Abraham, patriarche des Arméniens, à Cyrion, patriarche des Géorgiens). « Սրբասիրի տեառն Կիւրիոնի Վրաց կաթուղիկոսի, և այլ եպիսկոպոսաց աթոռակցաց քոց յԱբրահամէ Հայոց կաթուղիկոսէ և յայլ եպիսկոպոսաց աթոռակցաց իմոց տերամբ ողջոյն։ Յառաջագոյն երանելի հայրապետն մեր Մովսէս գրեաց առ ձեզ մեղադրութիւն » ։

— ** Պատասխանի. (La réponse de Cyrion). « Սրբասիրի և պատուական տեառն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի և ամենայն եպիսկոպոսաց աթոռակցաց քոց 'ի Կիւրիոնէ Վրաց կաթուղիկոսէ ... Թուղթս զոր արարեալ էր տեսի, և զինչ գրեալ էր իմացայ՝ վասն արժանի լինելոյ տեառնդ զսուրբ աթոռ երանելոյն Գրիգորի ժառանգելոյ » ։

— ** Գ. Թուղթ երկրորդ տեառն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի առ Կիւրիոն Վրաց կաթուղիկոս. (La secondc lettre d'Abraham à Cyrion). « Սրբասիրի տեառն Կիւրիոնի Վրաց կաթուղիկոսի յԱբրահամայ Հայոց կաթուղիկոսէ տերամբ ողջոյն։ Զգիր ողջունաբեր ձերոյ սրբութեան ընկալաք. և որ գրեալ էր թէ ընդ նորոգութիւն սրբոյ աթոռոյդ տեառն Գրիգորի յոյժ խնդացաք » ։

— ** Պատասխանի. (La réponse de Cyrion). « Սրբոյ և ճշմարտի տեառն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի 'ի Կիւրիոնէ Վրաց կաթուղիկոսէ խոնարհ երկրպագութիւն և սիրով ողջոյն։ Զթուղթս ձեր տեսի, և զինչ գրեալ էր իմացայ. բայց թէպէտ և դու ինքն իսկ քաջ գիտես, սակայն յիշեցուցանել և մեզ չէ զիան » ։

յաղագս զղջման և ապաշխարութեան. Երկնչիմ 'ի մահուանէ՝ զի դառն է ինձ »։

Պատասխանիք Կիւրղի Երուսաղեմացւոյ առ հարցումն Աթանասի. (տես)։

## ԿԻՒՐԻՈՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՎՐԱՑ

(CYRION, PATRIARCHE DES GÉORGIENS)

---

— Թղթակցութիւնք, (Correspondances) որ կը գտնուին 'ի գիրս Թղթոց, և առ Ուխտանէս պատմչի. և հաւանականաբար թարգմանութիւնք են եօթներորդ դարու, անշուշտ 'ի սկզբնագրէն և կամ յասորականէ։

— ** Ա. Թուղթ տեառն Սմբատայ Վրկան մարզպանի առ Կիւրիոն Վրաց կաթուղիկոս. (Lettre du gouverneur Sempad Verghan à Cyrion, patriarche des Géorgiens). « Սրբասիրի տեառն Կիւրիոնի Վրաց կաթուղիկոսի և այլ եպիսկոպոսաց աթոռակցաց ձերոց, և իշխանաց աշխարհիդ. Ատրներսեհի և ամենայն լաւաց, 'ի Սմբատայ Գուրկան մարզպանէ և տերանց զինուորէ և 'ի Գիգայ Դաշտակարանէ... Քանզի յառաջագոյն հարանցն մերոց և ձերոց և վարդապետաց աշխարհիս միաբանութեամբ »։

— ** Պատասխանի. (La réponse de Cyrion). « Փառաւորելոյ տեառն Սմբատայ Գուրկան մարզպանի և տերանց զինուորի և Գիգայ Դաշտակարանի, և վարդապետի Հայոց Ծարսաղարի. և այլ ազատորերոյ Հայոց աշխարհիդ, 'ի սրբոյ խաչէ աղաւթք. և 'ի Կիւրիոնէ Վրաց կաթուղիկոսէ, և յամենայն եպիսկոպոսաց աթոռակցաց ... ողջոյն։ Գոհանամ զամենասուրբ Երրորդութենէն որ զքեզ տէր Սըմբատ 'ի ժամանակի յայսմ փորձութեան պատրաս-

իննևտասներորդ եպիսկոպոս ձեռնադրեցաւ յետ Նիկիայ ժողովոյն յառաջնորդութիւն. իսկ առաջին եպիսկոպոս յԵրուսաղէմ Յակոբոս եղբայր տեառն ձեռնադրեցաւ 'ի Քրիստոսէ. և յետ սորա ... երանելին Կիրեղ գրեաց Թուղթ առ Կոստանդին յորդի սրբոյն և Մեծին Կոստանդիանոսի վասն երևման խաչին. զի Թէպէտև Արիոսի աղանդոյն էր Թագաւորն, սակայն բարեպաշտ զնա գրեաց ...

« Արդ երանելին Կիրեղ ընթերցուած վարդապետութեանն, այն վերնագիրն որ վասն երախայից կարգեաց ընթերցուածս. քանզի հանդերձեալ էր յաւուրս Մեծի Ջրագալուցին կնիք առնուլ աւազանաւն վերածնել զնոսա և լուսաւորել. 'ի սկիզբն քառասնորդացն երախայացուցանէ զնոսա և ընդ ձեռամբ առնէ աղաւթից քահանայից, և ինքն վարդապետութեան պարապէ[1] » ... :

— ** Ճառք կամ հատուածք (Discours ou fragments) բանից յանուն Երուսաղեմացւոյն 'ի Ճառընտիրս.

Ի Տեառնընդառաջն. « Անարատ և առանց աղտեղութեան » :

Ի Համբարձումն տեառն. « Արդ զընթացսն համբերութեամբ կատարեաց » :

Ի Հոգին սուրբ. « Շնորհք հոգևորք Ճշմարախպիտոյ են » :

Ի Նաւակատիս եկեղեցւոյ. « Ցաղագս սուրբ և կաթուղիկէ եկեղեցւոյ » :

Ի Խաչն սուրբ և աստուածընկալ. « Պարծանք սրբութեան կաթուղիկէ եկեղեցւոյ » :

Հատուած մը 'ի Մեկնութենէն Եսայեայ, և աղօթք՝ այսպիսի խորագրով. « Կիւրղի Երուսաղեմացւոյ

[1] Կիւրղի Երուսաղեմացւոյ այս երկասիրութեան հայ Թարգմանութիւնը երկու տպագրութիւն ունեցած է : Տես ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ, յէջ 303:

ցարուք ամենեքեան որ սիրէքն զՅիսուս՝ զի յարեաւ»:

— ԺԵ. Վասն այն զի ասէ. Այն որ գալոցն է փառաւք Հաւր, դատել զկենդանիս և զմեռեալս ... «Զգալուստն Քրիստոսի պատմեմք ոչ մի միայն, այլ երկուս, և զերկրորդն կարի լաւագոյն քան զառաջինն»:

— ԺԶ. Եւ 'ի Հոգին սուրբ, որ խաւսեցաւ 'ի մարգարէսն ... Շնորհք հոգեւորք ճշմարտիւ պիտոյ են, զի վասն Հոգւոյն սրբոյ ճառեսցուք պատգամ. իբր ոչ եթէ արժանապէս ինչ կարեմք ասել, զի անհնարին է»:

— ԺԷ. Վասն Հոգւոյն սրբոյ միացորդք ... «Այն որ յառաջ քան զայս ճառ վկայութեան Հոգւոյն սրբոյ փոքր 'ի շատէ եգաք առաջի ձերոյ սիրոյդ լսելեաց»:

— ԺԸ. Վասն մերոյ կաթուղիկէ եկեղեցւոյ, և վասն մարմնաւոր յարութեան և վասն կենացն յաւիտենից ... «Արմատ ամենայն բարեգործութեան՝ է յոյսն յարութեան. զի ակնկալութիւն վարձուցն հատուցման՝ ընդարձակէ զոգիսն 'ի գործս բարութեան»:

— Կիւրղի Երուսաղեմացւոյ Թուղթ առ Կոստանդիանոս արքայ վասն երևելոյ սուրբ նշանին յերկնից. (Lettre de St. Cyrille à l'empereur Constantin sur l'apparition de la sainte Croix). «Թագաւորի աստուածասիրի և բարեպաշտի ավգոստոս Կոստանդեայ, Կիւրղոս որ յԵրուսաղէմ եպիսկոպոս 'ի տէր խնդալ»*:

* Հին յիշատակագրի մը մէջ կը կարդանք. «Ամենայաղթ սուրբ նշանն փայլեաց 'ի յերկնից աստուածահրաշ ծագմամբ, լուսապայծառ քան զարեգակն յաւուրս տաւնի սուրբ յայտնութեան տեառն 'ի ժամանակս մեծին Կիւրղի, որ 'ի հեթանոսաց էր,

Աստուած մեծ խորհրդովք և հզաւր գործովք, ամենակալ մեծանուն տէր ... «Ի հաւատալոյ անտի յԱստուած՝ զամենայն բազմատարուածոյն մոլորութիւնս կարծեմք. զզէնս զայս առեալ 'ի ձեռն ունիմք առ հեթանոսս և առ ամենայն թշնամիս հերեսիովտացն զաւրութիւնս»:

— Թ. Յարարիչն երկնի և երկրի՝ երեւոյթ և աներեւոյթ արարածոց. և ընթերցուած Յովբայ որ ասէ. Ո՞վ է դա որ թաքուցանէ յինէն զխորհուրդս ... «Մարմնաւոր աչաւք տեսանել ումեք զԱստուած անհնար է. զի զանմարմինն մարմնաւոր աչաւք տեսանել ոք ոչ կարէ»:

— Ժ. Յայն որ ասէ. Եւ 'ի մի տէր Յիսուս Քրիստոս. և ընթերցուած 'ի Կորնթացւոց թղթոյ անտի որ ասէ. Թէպէտ և իցեն աստուածք բազումք յերկինս և յերկրի, այլ մեզ մի է աստուած. «Ոչ ըզհաւատալն 'ի մի աստուած Հայրն ամենակալ ուսուցեալ լինին, և յՈրդին միածին հաւատալ պարտին»:

— ԺԱ. Ի կարգ հաւատոյ բանին որ ասէ. յ'Որդին Աստուծոյ միածին որ 'ի Հաւրէ ծնեալ ... «Այս թէ ո՞րպէս և զի՞արդ 'ի Քրիստոս Յիսուս յուսալ արժան է, բաւական համարիմ՝ որչափ յերեկն և յեռանդն 'ի մէնջ առ ձեզ ասացաւ»:

— ԺԲ. Ասացեալ յայն՝ որ մարմնացաւն և մարդացաւ ... «Ծնունդք սրբութեան և զգաստութեան աշակերտք, որ 'ի կուսէ անտի ծնանելոց էր Աստուած՝ սրբութեամբ և լի բերանով աւրհնեսցուք»:

— ԺԳ. Ի խաչելն, 'ի թաղելն և 'ի յարուցեալն ... «Պարծանք սրբութեան կաթուղիկէ եկեղեցւոյս են ամենայն գործք Քրիստոսի. և առաւել պարծանք պարծանաց խաչն»:

— ԺԴ. Յայն՝ որ յարեաւն 'ի մեռելոց յերիր աւուր, և յերկինս համբարձեալ նստաւ ընդ աջմէ Հաւր ... «Ուրախ լեր Երուսաղէմ, և զուարթա-

— Գ. Ասացեալ վասն մկրտութեան. և ընթերցուած 'ի Հռովմայեցւոց թղթոյն որ ասէ, թէ. Ոչ գիտէք, թէ որ միանգամ մկրտեցաք 'ի Քրիստոս, 'ի մահ անդր նորա մկրտեցաք ... « Ուրախ լիցին երկինք, և ցնծասցէ երկիր, վասն այգորիկ որ զոպայիւն թաթաւելոց իցեն »:

— Դ. Ափ յափոյ վաղվաղակի առանց խորհրդոյ ասացեալ վասն տասնհրամաննեան հաւատոյ. և ընթերցուած 'ի Կողոսացւոց թղթոյ անտի որ ասէ. Զգոյշ լինիջիք, գուցէ ոք զձեզ կապուտ կողոպուտ թողուցու ճարտարաբանութեամբ ... « Ջանայ նախանձի չարութիւն ընդ քաջութիւնն. և որոմն յառաջ մատուցեալ բռնադատէ ցորենոյ կարծիս մատուցեալ »:

— Ե. Վասն հաւատոյ, և ընթերցուած առաքելոյ յԵբրայեցւոց թղթոյ անտի, որ ասէ. Հաւատքն են, ասէ, հաստատութիւն իրաց յուսացելոց ... « Զորպիսի՞ պատիւ տայ ձեզ Աստուած, յերախայութեան կարգաց այտի՝ 'ի կարգս հաստատութեան հաւատացելոցն փոփոխելով »:

— Զ. Վասն Աստուծոյ միահեծան իշխանութեան, յայն որ ասէ՝ հաւատալ 'ի մի Աստուած. և ընթերցուած յԵսայեայ. Նորոգեցարուք առ իս կղզիք ... « Աւրհնեալ է Աստուած, և հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Զի առ 'ի զմտաւ ածել զԱստուծոյ, զմտաւ ածցուք և զՀաւրէ, զի առանց բաժանման՝ Հաւր և Որդւոյ փառաւորութիւնն կատարեսցի »:

— Է. Ի Հայր. և ընթերցուած յԵփեսացւոց թղթոյ անտի. Վասն այսորիկ դնեմ ծունր առ հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ... « Արդ վասն տեառն միահեծան իշխանութեան յերկրի աւուրն բովանդակ 'ի մէնջ առ ձեզ ասացաւ »:

— Ը. Ամենակալն, և ընթերցուած յԵրեմիայէ.

Էջմիածնի Մատենադարանի ցուցակին մէջ Պարսպմանց գրոց վեց գրչագիր նշանակուած կը գտնենք (Թիւ գրչ. 1754-59), որ չունին նշանաւոր հնութիւն, ընդհանրապէս եօթնևտասներորդ դարու գրչութիւնք։ Նոյնպէս նաև Գանձուց, չորս գրչագիրք՝ նոյն դարուն։

## ԿԻՒՐԵՂ ԵՐՈՒՍԱՂԵՄԻ

(SAINT CYRILLE DE JÉRUSALEM)

---

Կիւրեղ հայրապետ, յաջորդն Մաքսիմոսի յեպիսկոպոսութեան Երուսաղեմի, յառաջին քառորդի չորրորդ դարուն, անուանի առաքելաջան վաստակօք, հեղինակ է Կոչումն ընծայութեան կամ Յաղագս երախայից կոչուած գրքին, որուն հայկական ընտիր թարգմանութիւնն, գործ ոսկեղէն դարու, հասած է առ մեզ։ Մեր թարգմանութեան մէջ կը պակասին՝ վերջին հինգ ճառք, զորս ունի յոյնն։

Սրբոյն Կիւրղի Երուսաղեմայ հայրապետի Կոչումն ընծայութեան (Κατήχησις).

— Ա. Որք եկեալ էին կնիք առնուլ յԵրուսաղէմ մատուցելոց. և ընթերցուած յԵսայեայ որ ասէ. Լուացարուք, սրբեցարուք ... « Աշակերտք նորոց կտակարանաց, և խորհրդակիցք տեառն, այժմիկ հրաւիրեալք կոչմամբ, դարձեալ փոքր միւս եւս ժամանակաւ և շնորհաւք »։

— Բ. Վասն ապաշխարութեան և թողութեան մեղաց, և վասն սատանայի. և ընթերցուած յԵզեկիելէ որ ասէ. Արդարութիւն արդարոյն 'ի վերայ նորին եղիցի ... « Չա՛ր չա՛ր են մեղք, և անհնարին չար է ախտ ոգւոց. անաւրէնութիւն կարէ զնեարդս, և խզէ զջիլս նորա. և հրոյն յաւիտենից նպաստամատոյց լինի »։

սացեալ է վասն զղջման և արտասուաց. (Prières). « Ամենակալ տէր, արարիչ և ստեղծիչ ամենայն համայնից, երևելեաց և աներևութից. դու ես իշխան մահու և կենաց »։

— Ի սուրբ խաչն. (Sur la sainte Croix). « Աւրհնեսցուք, եղբարք, զհրաշագործ տնաւրէնութիւն »։

— Կողմնգացոյց' այսինքն ատումարական գուշակութիւնք ըստ սկզբան կողմնգաց' մակագրեալ յանուն սրբոյն Կիւրղի, առանց գնելոյ Աղեքսանդրացի*։

* Սրբոյն Կիւրղի Պարապմանց գրոց հայ թարգմանութեան միակ տպագրութիւնն եղած է 'ի Պոլիս (1717, առ Աստուածատրոյ), յորում ամփոփուած են

— Ա. Պարապմանց, քսանեվեց գլուխք բանից, յաղագս մարդեղութեան միածնին։

— Բ. Թուղթ Տիբերեայ առ Կիւրեղ, ութսուն և ութ գլուխք։

— Գ. Կիւրղի լուծմունք խնդրոցն Տիբերեայ։

— Դ. Թուղթ առ Թէոդոս թագաւոր վասն զատկին։

— Ե. Թուղթ առ Եւդոկիա թագուհի, վեց գլուխք։

— Զ. Թուղթ առ քորս Թէոդոսի։

— Է. Թուղթ նորա այլ' առ Թէոդոս թագաւոր։

— Ը. Դարձեալ առ նոյն Թէոդոս թագաւոր յետ դառնալոյն 'ի ժողովոյն Եփեսոսի։

— Թ. Թուղթ Կիւրղի առ Երեմիաս' ընդդէմ Նեստորի։

— Ժ. Թուղթ առ Սուկեսոս առաջին։

— ԺԱ. Թուղթ առ Սուկեսոս երկրորդ։

— ԺԲ. Թուղթ առ Նեստոր հայհոյիչ։

— ԺԳ. Թուղթ առ Ակակիոս Մելիտինոյ։

հաւանեցուցանէ զմեզ ով ջանասէր եղբայր մեր Նեմեսիոնէ »։

— Առաջին յաղագս անծնելութեան և ծնելութեան, անեղութեան և եղելութեան. « Թէ հարցանել զմեզ ձեռնարկիցեն Արիանոսքն թէ մի՞ է անեղութեան թէ երկուք »*։

* Ի գրչագրին որ կազմեալ է սրբոյ Կիւրղի Պարապմանց գրքին հետ գրչագրելոյ 'ի սրբոյ Լամբրոնեցւոյ' յիշատակարան 'ի վերջն. « Գրեցաւ սուրբ գիրքս որ կոչի Պարապմունք զոր արարեալ է սըրբոյն Կիւրղի հայրապետին Աղեքսանդրու վասն մարդեղութեան բանին Աստուծոյ. այլ և 'ի չար սորա գիրք Գանձուցն զոր արարեալ նմին երանելոյն սըրբոյն Կիւրղի։ Ձեռամբ տէր Վարդան քահանային 'ի գիւղս որ կոչի Աւընդանց 'ի գուռն սրբոյն Պետրոսի և Պաւղոսի առաքելոցն 'ի հանդէպ Ապարանից սուրբ Նշանին. 'ի վայելումն անձին քաջ րաբունապետին Վարդան քաջ և արի հռետորի ... 'ի Թվականիս մերոյ ՌՃԻԳ ամին »։

— ** Սրբոյն Կիւրղի Աղեքսանդրու հայրապետի վասն յարութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. (Sur la résurrection de N. S.). « Արդ պահելով զաւուրս յորում մատնեցաւ, և մատնեցաւ 'ի չորեքտասաներորդի լուսնին, յառաջնում ամսեանն, և մեամբ յարութեան նորա. այսինքն կիւրակէին »։

— ** Սրբոյն Կիւրղի Աղեքսանդրացւոյ ասացեալ. « Քանզի յորժամ զպատարագն մատուցանեմք, յիշեմք 'ի Քրիստոս զննջեցեալսն. զհայրապետս, զեպիսկոպոսունս, միանգամայն և զամենայն հաւատացեալս 'ի Քրիստոս »։

— ** Կիւրղի և Վաղենդիանոսի հերետիկոսի. « Կիւրեղ ասէ. Դու զՋուրս արարած ասես թէ ոչ։ Վաղենդինոս ասէ. Ես զարարիչն ոչ գիտեմ»։

— Աղաւթք' սրբոյն Կիւրղի Աղեքսանդրացւոյ ա-

— Սրբոյն Կիւրղի եպիսկոպոսի առ Նեստոր զի տայր նմա տեղի ապաշխարութեան. յառաջ քան զմերժելն նորա յեպիսկոպոսութենէն. զի չեւ եւս էր լեալ սուրբ սինհոդոսն, որ կամաւքն Աստուծոյ ժողովեցան յԵփեսոս: Թուղթ Կիւրղի առ Նեստոր. (Lettre de Cyrille à Nestorius, et les douze chapîtres des anathèmes). « Առ սուրբ և աստուածապաշտ և պաշտաւնակից մեր Նեստոր, Կիւրղոս, և ամենայն որք ժողովեալք են ընդ մեզ յԱղեքսանդրիայ 'ի կողմանց և 'ի բնակութենէ Եգիպտացւոց, ողջոյն: Փրկչին մերոյ ասացեալ է յայտնապէս. եթէ որ սիրէ զհայր իւր կամ զմայր առաւել քան զիս' ոչ է ինձ արժանի » : (Յորում և գլուխք երկոտասան նզովից):

— Նորին Կիւրղի եպիսկոպոսի Աղեքսանդրացւոց առ Նեստոր հայհոյիչ. (Lettre du même au même). « Ամենայն ինչ յայտնի և ուղեղ է իմաստնոց, և ոչք գտանեն զգիտութիւն, որպէս և գրեալ է » :

Այս յիշատակարան ինքնագիր 'ի սրբոյ Ճառընտրունեցւոյն. « Փառք ամենասուրբ Երրորդութեանն, ամէն. Ի թուին ՈԻԴ աւարտեցաւ հիմն հաւատոյ գիրս Պարապմանց' զոր իմ Ներսիսի տրուպ և անարժան բանասիրի 'ի վարժուման իմաստից գոլով ընթերցաւ ընդ բազում բանս սրբոց և զսրբոյն Կիւրղի քննութիւնս ուղղափառ հաւատոյ. և 'ի գիպող ժամանակի եկեալ 'ի հայրենի աշխարհս սկիզբն եառ առնել սմին 'ի ձեռն պաշտաւնակցի եղբաւր մեր Յովսեփայ, և ձեռամբ իմով աւարտեցաւ 'ի գըծուած և մրճատեալ աւրինակէ. ընդ որ յոյժ գտանես և զաւգտաբան աւրէնս եկեղեցւոյ » :

— Երանելոյն տեառն սրբոյն Կիւրղի եպիսկոպոսապետի Աղեքսանդրացւոյ գիրք որոյ անուն Գանձ է. (Κυριλλοῦ ... ἢ βίβλος τῶν Τησαύρων). « Ոչ 'ի փոքունս մեզ հանդէսս ձեռնիլ պարտ է, զոր քո բանդ

հաւատոս ունիք: Այէ, Այո՛: Այէ կայսր. Երթ 'ի Հռոմ, և տես անդ յարկեղս մեծի եկեղեցւոյն. եթէ գտանես այլ եւս երիս գիրս որպէս զայդ. ապա զամենայն աշխարհ յայդ կրօնս դարձուցից: Եւ Նորա յոյժ խրախացեալ ընդ իրսն, աստուածային իմն տեսչութիւն համարելով՝ գնայ 'ի Հռոմ, և գտանէ անդ այլ եւս երիս մատեանս միաբանս և միախորհուրդ նման առաջնոյն, որք էին Պարապամանց Կիւրեղ և Գանձուց, և միւս՝ Աթանասիոս Աղեքսանդրացի. և միւս՝ սրբոյն Եպիփանու տացեալ: Առեալ զգանձն աստուածային՝ ծանեաւ հոգւովն զի ոչ լինէր խորհուրդ թագաւորին, ոչ գտանայր անդրէն. այլ նաւեալ 'ի Հռոմայ՝ անցանէ ընդ անհուն ապարիկեղս լայնածիր գոգցյ աշխարհամոծ ծովուն ովկիանկան, և հասանէ 'ի Դուլին »:

— Երանելւոյն Կիւրղի եպիսկոպոսին Աղեքսանդրի խաւսք 'ի սուրբ Աստուածածինն ասացեալ 'ի ժողովն Եփեսոսի ընդդէմ չարափառին Նեստորի. (այլ ձձ. ընդդէմ մոլորդապատանն Նեստորի). (Κυριλλοῦ ... ἐνκώμιον εἰς τῆν ἁγίαν Μαρίαν τὴν Θεοτόκον). « Պայծառ է մեզ բանս և շնորհաւք լցեալ. վասն զի պայծառ է և սուրբ հարանցս հաւաքումն. և վասն զի 'ի յոյժ արտմութեան էի, վասն անաւրէն հայհոյութեանն Նեստորի » *:

* Հին և ընտիր թարգմանութիւն՝ անշուշտ հինգերորդ դարու մեր մատենագրութեան:

— Նորին 'ի սուրբ Աստուածածինն և 'ի միշտ կոյսն Մարիամ ընդդէմ Նեստորի. « Պայծառ տեսանեմ զգասակցութիւն »:

— Կիւրղի Աղեքսանդրու հայրապետի յԵբրայեցւոց թղթոյն մեկնութենէ. « Զի ոչ ամենայն զօրութեանց երկնաւորաց յայտնի էր 'ի սկզբանէ խորհուրդ մարդանալոյ՝ փրկութեանս մերոյ ցուցանէ հմուտն և տեղեակն գրոց երանելին Պաւղոս »:

premier Concile en Nicée). « *Հաւատամք 'ի մի աստուած հայր ամենակալ, ամենայն երեւելեաց և աներեւութից արարիչ. և 'ի մի տէր Յիսուս Քրիստոս* » ։

*Գրչագիրք կը յաւելուն սատէն հետեւեալ յիշատակարանն. « Ի վեց հազարերորդի երկերիւրերորդի քսաներորդի չորրորդի ամի արարածոց աշխարհիս, ըստ յունարէն թըւոյ' 'ի չորեքտասաներորդի ենդիկտիոնի' յերկրորդ ամի թագաւորութեան Անաստասի, թարգմանեցան գիրքս Պարապմանց և թղթոց սրբոյն Կիւրղի եպիսկոպոսապետին Աղեքսանդրի 'ի սոյգ աւրինակաց, 'ի Կոստանդինուպաւլսի, 'ի ձեռն Դաւթի հիւպատոսի և թագաւորական սեղանոյ կենաւռի, և 'ի ձեռն Ստեփանոսի քերթողի' աշակերտի Մովսէսի Սիւնեաց եպիսկոպոսի ։ Արդ մաղթեմ զաստուածասէր պաշտաւնէսդ սրբոյ սեղանոյ, ոյք առնոյք աւրինակ յայսմանէ, գրեսջիք և զբանս զայսոսիկ, առ 'ի յիշատակ բարեխաւսութեան առ Քրիստոս. զի գրեալ եղիջիք և դուք 'ի դպրութեան կենաց » ։ Աւելի կրտսերագոյն ժամանակաց գրիչք կը յաւելուն. « Ընդ նմին և զառաքելաշնորհ րաբունապետն զՅովհաննէս Որոտնեցի, մականուն' կախեալ 'ի սէրն Աստուծոյ, աղաչեմ յիշել յաղաւթս հանդերձ ծնաւղաւքն » ...* ։

*Կը կարդանք առ Ուռպելեան Ստեփանոս պատմիչի. « Համբաւ իմաստից նորա (Սիւնեցւոյն) հասաւ յականջս կայսերն, և կոչեալ հարցանէր զնա վասն հաւատոյ. և նորա համարձակեալ ասէ. Ով բարերար արքայ, հրամայեա՛ զի բացցեն արկեղք գրոցն' զի ես գտանիցեմ անդ գիրս' որ ցուցանէ զորպիսութիւն հաւատոյ ուղղափառ. և առժամայն հրամայեցաւ բանալ. Եւ նա գտեալ անդ մատեան ոսկետուփ սուրբ հարցն վասն ուղղափառ հաւատոյ' գըրեալ և մատոյց առաջի թագաւորին. որում հաւանեալ յոյժ' խրախացաւ և ասէ. Դուք Հայք զայս*

15.° Երանելւոյն Իրենիոսի. « Ընդունայն և մոլար են ամենեքին որ զամենայն տնաւրէնութիւնն անարգեն զԱստուծոյ, և զմարմնոյս փրկութիւն ուրանան »:

16.° Սրբոյն Եփրեմի. « Սպասաւորեաց կոյսն 'ի ձեռն անապականութեանն Քրիստոսի. պահեաց միշտ զկուսութիւնն, վասն զի միշտ անապականութեան փափաքեաց »:

— Նորին 'ի բանին որ յաղագս մարգարտին. « Միայն կին ծնաւ, զի աւտար էր ապականութեան. ծնեալ կոյս ծնաւ վասն այնր որ էր սրբութեան աղբիւր »:

17.° Սրբոյն Աթանասի եպիսկոպոսի Աղեքսանդրու. « Ոչինչ ապականէ զհոգի և զմարմին, բայց մեղք. իսկ ապա անհոսանուտ մարմնաւորութիւն Էմմանուէլի որ 'ի Մարիամայ աստուածածնէ »*:

* Ի ձեռագրի Լամբր. յիշատակարան. « Զորուպս և անարժան շնորհաց իմոյ Ներսէս որ ընձալի սիրով սկիզբն արարի սրբոյ մատենիս և ձեռամբ իմ աւարտեցի. յետ մեր վայելողք արժանի արարէք յիշատակի առաջի Աստուծոյ աղաւթիւք. 'ի Թուին ՈԻԴ »:

— Սիրելեաց և փափագողաց Անաստասու և Մարտիանեայ Յովհաննու և այլոց ուղղափառ հարց միայնակեցաց և որոց ընդ ձեզ միայնական ձգնին վարս հաւատով Աստուծոյ սերտացելոյ Կիւրղի եպիսկոպոսի 'ի տէր խնդալ. (Τοῖς ἀγαπητοῖς, καὶ ποθεινοτάτοις, Ἀναστασίῳ, Ἀλεξάνδρῳ, Μαρτινιανῷ, Ἰωαννῇ ... Κυρίλλος ἐν Κυρίῳ χαίρε). « Զուսումնասիրութիւն և ջանասիրութիւնդ ձերայդ սիրոյ և այժմ ոչ փոքր գովեցից. և արժանի ասացից գոլ ամենայն բանի »:

— Մեկնութիւն հաւատոյն որ յընդհանրական եկեղեցիս միշտն ասի, զոր կարգեցին սուրբ հարքն 'ի Նիկիացւոց ժողովին. (Explication de Symbole du

8.° Բարսղի եպիսկոպոսի Կեսարու Կապադովկեցւոց. «Քանզի ոչ այնքան երկին և երկիր և մեծութիւն ծովու, և որք 'ի ջուրս են բնակեալ և որք 'ի ցամաքի»:

9.° Գրիգորի եպիսկոպոսի Նիւսացւոյ. «Զայս խորհեսցի իւրաքանչիւր ոք որ և 'ի Քրիստոս Յիսուս. որ 'ի կերպարանն Աստուծոյ ոչ յափշտակութիւն համարեցաւ ... զինչ աղքատագոյն 'ի վերայ Աստուծոյ քան զծառային կերպարանս»:

10.° Ամփիլոքի եպիսկոպոսի Յիկոնիացւոյ. «Վասն զի նոյն ինքն Թագաւոր է և Աստուած. և զմահ ըստ անարգելութեան չարչարանացն ճաշակեաց. ընծայքն՝ խորհրդոցն են նշանակք»:

Նորին. «Եթէ ոչ էր նորա ծնեալ մարմնապէս, և ոչ դու ծնանէիր հոգեպէս. եթէ ոչ էր նորա յանձն առեալ զծառայի կերպարանս, և ոչ դու զփառս որդեգրութեանն շահէիր»:

11.° Գրիգորի եպիսկոպոսի Նազիանզու. «Մի խաբեսցեն մարդիկ, և մի խաբեսցին մարդ անմիտ ընդունելով զտէրունականն և որ զնի նորին»:

12.° Յոհաննու եպիսկոպոսի Կոստանդինուպաւլսի. «Փոխանակ արեգականն՝ զարեգակն արդարութեան պարծագրապէս տարեալ. և մի խնդրեր թէ որպէս կամ զիարդ»:

13.° Ատտիկոսի եպիսկոպոսի Կոստանդնի. «Այսաւր Քրիստոսի տէրն զմարդասիրութեան ծնունդն ընդալաւ. եթէ զոք որոշեսցէ 'ի միածնին մարդանալն և կուսին յղանալն»:

— Այսոքիկ գլուխք ընթերցան յԵփեսացւոց ժողովին 'ի լուծումն Նեստորի: —

14.° Յուլիոյ եպիսկոպոսի. «Անճանաչական անջատելի բաղդատութեամբ, մշտնջենական ունաւղի հանգիստութիւն որակութեան հայրենական գծաւորութեան»:

— Նորին. « Ուստի և աւետարանիչն ճշմարտէ ասելով. բանն մարմին եղև և բնակեաց 'ի մեզ. յայտ է թէ յայնժամ յորմէ հետէ հրեշտակն ետ ողջոյն· կուսին »:

— Նորին. « Իսկ աստուածն բան առանց առն՝ ըստ կամաց զամենայն արարչին Աստուծոյ գործել »:

2.° Աթանասի եպիսկոպոսի ընդդէմ Արիանոսաց. « Բազումք եղեն սուրբք և մաքուրք յամենայն մեղաց. Երեմիաս յարգանդէ սրբեցաւ. Յովհաննէս յորովայնի մաւր իւրոյ խայտալով ցնծայ »:

3.° Յուլիոսի եպիսկոպոսապետի Հռովմայ. « Քարոզի ուրեմն հաւատոյս, և մարմնացեալ 'ի կուսէն Մարիամայ Որդին Աստուծոյ, և բնակեալ 'ի մարդիկ »:

4.° Սրբոյն Փիլիկեայ. « Իսկ վասն մարմնաւորութեան բանին և հաւատոյ՝ հաւատամք 'ի Տէր մեր Յիսուս Քրիստոս, 'ի սրբոյ կուսէն Մարիամայ ծնեալ »:

5.° Թէոփիլի եպիսկոպոսի Աղեքսանդրու. Քանզի է և այժմ, և յայնժամ սքանչելեացն նշխար. մի անհաւատ լիցին եթէ զաւրութիւն Աստուծոյ կարող է առնել, կուսի ծնանիլ »:

6.° Սրբոյն Կիւպրիանոսի Ափրիկանացւոյ. « Բազում և մեծամեծք են, եղբարք սիրելիք, աստուածային բարեգործութիւնք. յորոց զմեր փրկութիւն, Աստուծոյ և Հաւր Քրիստոսի առատ և հարուստ մարդասիրութիւնն »:

7.° Ամբրոսիոսի եպիսկոպոսի Մեդիոլանացւոց. « Եթէ ինձ ոչ հաւատայք ասէ, հաւատացէն առաքելոյ որ ասէն, թէ Յորժամ եկն լրումն ժամանակին, առաքեաց Աստուած զորդին իւր »:

Նորին. « Լռեսցեն այսուհետև 'ի բանից նանիր խնդիրք. զի արքայութիւնն Աստուծոյ՝ որպէս և գրեալ է, ոչ հաւանութեամբ բանից մարդկայնոց է, այլ ցուցմամբ զաւրութեան »:

ըղձիւք աշխատողս», Յետոյ ինքնագիր սրբոյն՝ որ կողմին պատճառաւ անկատար կը մնայ. «Աւաղ թշուառութեանս, զի զայսպիսի արտադրութիւն զսուրբ հարցն հաւաստի ունելով եկեղեցիք դեռ եւս յամ...»։

Յիշատակարան գրչին. «Զերկրորդ հազարապետն մեծի խորհրդոցն Քրիստոսի և զլրացեալն զեղմամբ շնորհաց Հոգւոյն սրբոյ՝ զառաքելաշուք րաբունեաց պետն իմաստից զԳեորգէոս մեծ հռետորն Հայոց, աղաչեմ յիշեսջիք առաջի Քրիստոսի, և Աստուած զձեզ յիշէ. ամէն»։

— Կիւրղի եպիսկոպոսապետի Աղեքսանդրի առ Ակակիոս եպիսկոպոս Մաղատինեայ, յորում զեկոյց նմա եթէ զիարդ գրեաց առ արեւելեայս. (Lettre de Cyrille d'Alexandrie à Acace, évêque de Metelin). «Մեծութիւնք եղբարց է բանք քաղցունք և հրաշալիք, և ամենայն'բանի արժանաւորք, առ 'ի ճշմարտապէս ողջախոհացն պիտոյ գոլ սանձ»։

— Կիւրղի եպիսկոպոսապետին Աղեքսանդրի, պատասխանի թղթոյն առ Յոհաննէս եպիսկոպոս Անտիոքայ մեծի. (Lettre de St. Cyrille à Jean, grand évêque d'Antioche). «Տեառն և սիրելի եղբաւր և պաշտաւնակցի իմոյ Յոհաննու, Կիւրղոս 'ի տէր խնդալ. Ուրախասցին երկինք և ցնծասցէ երկիր, քանզի լուծաւ միջնորմն ցանկոյն, դադարեաց տրտմութիւնն, և ամենայն երկպառակութեանն 'ի բաց բարձաւ պատճառ»*։

* Ի վերջ թղթոյն այսպիսի ծանօթութիւն մը. «Կամէր շահել զսա, զի զՆեստորին խորհէր Յոհան»։

— Վկայութիւնք յանդիմանութեան ամբարշտին Նեստորի.

1.° Պետրոսի Աղեքսանդրու եպիսկոպոսի. «Վասն զի ճշմարտապէս շնորհն և ճշմարտութիւնն 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի եղեն»։

— Նորին Կիւրղի Աղեքսանդրու առ բարեպաշտ թագաւորն Թէոդոսիոս, յետ դաւանելոյն 'ի բնակութիւնս իւրեանց եկեալքն 'ի սուրբ ժողովոյն Եփեսոսի. « Աստուածայինն և անմահ և բոլորից իշխեցող բնութիւն, և 'ի լոյս անմատոյց բնակեալն, և աթոռ ունի զվերինն՝ իւր միայնոյ վայելուչ » : Յորում հաստատուած մը 'ի գրոց սրբոյն Աթանասի այս խորագրով. « Սրբոյն Աթանասի եպիսկոպոսապետին յորմէ յաղագս հաւատոյ Ճառէն, ընդդէմ անիրաւին և ամպարշտին Ապողինարի. — Զմեղացն դատապարտութիւն յերկրիս արար, իսկ զանիծիցն 'ի բաց բարձումն 'ի վերայ փայտին » :

— Երանելոյն Կիւրղի եպիսկոպոսի Աղեքսանդրէ թէ մի է Քրիստոս, զոր խնդրեաց Երեմիաս (ոմանք. Եռմիաս) ընդդէմ ամպարշտին Նեստորի. « Ուսմանց սրբազանից յագուրդ ամենեքին և ոչ մի ինչ եղիցի. որոց ուղղակի ողջախոհեսցինն » :

— Կիւրղի եպիսկոպոսապետի Աղեքսանդրի առ Սուկեսոս եպիսկոպոս Դիոմիգիրեայ քաղաքի Իսաւրացւոց գաւառին. (Κυριλλοῦ ... πρός τὸν μακαριώτατον Σούκευσον ἐπίσκοπον τῆς Διοκαισαρέων τῆς κατὰ τῆς Ἰσαύρου ἐπισχίον, περί Πίστεως α΄.). « Ընթերցայ զթուղթս զառ 'ի քոյոյդ սրբութենէ առաքեալ առ իս, և ուրախ եղէ յոյժ. զի կարող գոլով զմեզ և զայլս աւգտեցուցանել, 'ի բազում ուսումնասիրութենէդ մեծարել զմեզ արժանաւորես » :

— Նորին Կիւրղի առ նոյն Սուկեսոս (ոմանք 'ի ձձ. առ Սեկունդոս) թուղթ երկրորդ. (Ἐπίστολη δευτέρα πρός Σούκευσον). « Յայտնի կացուցանէ զինքն ճշմարտութիւն որոց սիրեննն զնա. ծածկի և զանխլանայ 'ի բազմամանուած մտածութեանց »* :

* Յաւարտ թղթոյս 'ի գրչագրի Լամբրոնեցւոյն՝ յիշատակարանս համառօտ. « Զբազմամանուած բանքս ուշիմ մտաւք ընթերցիր, յիշելով զերբեմն

պողսի ասացեալ յաղագս աստուածայնոյն ծննդեանն, զոր ասէ և յաղագս սրբոյ հոգւոյն. « Փոխանակ արեգական զարեգակն արդարութեան անպարագրապէս տարաւ » ։

6.° Սրբոյն Սեբերիանոսի եպիսկոպոսապետի. « Քանզի ծնեալն 'ի վերուստ հաւրէ բանն, անճառապէս անպատմաբար, անհասանելի » ։

7.° Թիտայիոսի եպիսկոպոսի (այլ օր. Եքիմողոսի եպիսկոպոսի) յաղագս հաւատոյ ճառի. « Նւ եւս յաղագս մարմնոյն անաւրէնութեան Փրկչին հաւատամք. անայլայլելի և անփոփոխելի միացեալ Աստուծոյ բանին » ։

8.° Թէովփիլեայ եպիսկոպոսի յորմէ առ որս զՍրոգինին խորհին, և ասէ այսպէս յաղագս Քրիստոսի. « Զի մի բանիւ միայն, այլ և զաւրութեամբ աստուած գոլ ճանաչեմ. երևեալն հաւատասցի գործոցն մեծագործութեամբ » ։

— Սրբոյն Կիւրղի Աղեքսանդրի եպիսկոպոսի առ բարեպաշտ Թագաւորն Թէովդէոս, (Լմբ. Թէոդոս), յաղագս ուղղափառ հաւատոյ որ 'ի տէր մեր Յիսուս Քրիստոս. (Κυριλλοῦ ε'πισκόπου'Αλεζανδρείας προσφωνητικὸς πρὸς τὸν εὐσεβιστατον βασιλέα Θεοδοσιον, περὶ τῆς ὀρθῆς πίστεος τῆς εἰς τὸν κύριον ἡμῶν Ἰησοῦς Χριστοῦ). « Որ 'ի մարդիկ փառաւորութիւն, վերադունութեամբ և ( Լմբ. անհամեմատիւք առաւելութեամբ քան զայլ) անհամեմատ առաքինութեամբ քան զայլսն Թագաւորս ամենեսին յարուցեալ » ։

Ի գրչագրի Լամբրունեցւոյն յիշատակարան. « Զաստուածապարգևւ տէր Ներսէս, և զահեղերական վարդապետ, հանդերձ հարազատ եղբարբք իւրովք, որոց են անուանքն (այսպէս յոր.). Հեթում սէւաստաւս, և Ապլրատ, Շահնշահ, և Գրիգոր, որդիք Աւշնի սէւաստաւսի յիշեսջիք աղաւթիւք 'ի Տէր » ։

de Christ). « Աստուածայինն Պաւղոս գրէ յաղագս նախահաւրն Աբրահամու. բայց ոչ գրեցաւ վասն նորա միայն եթէ համարեցաւ նմա հաւատքն յար-դարութիւն » :

— Յամաւթ հակառակորդացն ասացեալ. « Այժմ անձն իմ խռովեալ է ... Որք Ապողինարի կար-ծեաւքն պատրեալք, և զոր ինչ նմայն թուեցաւ խորհել՝ ընդդիմացեալ ասելով, անանձն և անմիտ գոլ զմիաւորեալն ընդ բանին զմարմինն » :

— Նորին առեալ Կիւրղի եպիսկոպոսապետի առ-քարեպաշտ թագուհի կուսանսն Քրիստոսի, քորս ուղղափառ թագաւորին Թէոդոսի՝ Արկադեայ և Մարինեայ. (Κυριλλοῦ ἐπισκόπου Αχεξάνδρειας, προσφωνιτικὸς ταῖς εὐσεβεστάταις βασιλιαταις). « Պարկեշ-տաբանութիւն տիեզերական, և պարծանս սրբոց եկեղեցեաց ամենեցուն Փրկչին մերոյ Յիսուսի Քրիս-տոսի, ասացէ ոք յոյժ վայելչաբար » * :

* Այս թղթին մէջ 'ի վկայութիւն բերուած սրբ-բոց հարց խօսքերն.

1.° Ատտիկոսի եպիսկոպոսի. « Այսաւր Քրիստոս տէրն մեր զմարգասիրութեանն ծնունդ ընկալաւ. քանզի ըստ աստուածութեանն պատուոյ յառաջա-գոյն էր » :

2.° Անտիոքոսի եպիսկոպոսի. « Զոր երեկ անա-րատ ծննդեամբ փրկիչն մեզ կենդանածինն, գեղեց-կածինն, միածինն, լուսակիրն, յուսակիրն, աստուա-ծածինն » :

3.° Տեառն Փիլոքի եպիսկոպոսի յաղագս ծննդեան. « Ճշմարտութեամբն ծանուցաւ, շնորհն եկն և ե-րևեցաւ. որ որդին Աստուծոյ էր, Աստուծոյ բանն » :

4.° Ամոնի եպիսկոպոսի Անդրիանուպոլսի յաղագս Աստուծոյ բանին. « Իսկ եթէ ինքն Աստուած բնու-թեամբ գոլով որպէս Աստուծոյ միածին որդի » :

5.° Յոհաննու եպիսկոպոսապետի Կոստանդնու-

— Տեառն սրբոյն Կիւրղի Աղէքսանդրացւոյ, առ բարեպաշտ Թագաւորն Թէոդոսիոս, յաղագս տաւնի սրբոյ Զատկին. (Lettre de St. Cyrille d'Alexandrie à l'empereur Théodose). « Ասէ ուրեմն սրբազանն գիր. Սկիզբն իմաստութեան երկեւղ տեառն: Իսկ իմաստութեան որ 'ի յԱստուծոյ զինչ արդեւք եղիցի հաւատարակչիս »:

— Երանելւոյն տեառն Կիւրղի եպիսկոպոսապետի Աղեքսանդրացւոյ առ բարեպաշտ Թագուհին Եւդոքսիա կին Թէոդոսի բարեպաշտ Թագաւորի. (Lettre de St. Cyrille à l'imperatrice Eudoxie). « Որոց զաստուածայինն և զերկնաւորն քահանայագործեն քարոզութիւն, ձայնիւ Եսայեայ հրամայէ ասելով բողոքեցս Աստուած »:

— Յաղագս հնազանդութեանն Քրիստոսի. (Sur l'obéissance du Christ). « Այս ուրեմն որպէս 'ի ձեռն միոյն յանցանաց յամենայն մարդիկ դատապարտութիւն, այսպէս 'ի ձեռն միոյն արդարութեան յամենայն մարդիկ արդարութիւն կենաց »:

— Յաղագս սրբելոյն Քրիստոսի և Նորին քահանայութեան իմացելոյ. (Sur le saint sacerdoce de J. Chr.). « Քանզի վայել էր իսկ Նմա, վասն որոյ ամենայն, որով և ամենայն, բազում որդիս 'ի փառս ածել ... վարկ[illegible]իցին ուրեմն արդեաւք յանուանցն ոմանք, և անջատել սովորելոցն յերկուս Քրիստոս, և յերկուս որդիս զմի տէր Յիսուս Քրիստոս »:

— Յաղագս ասելոյն փառս առնուլ տեառն Մերոյ Յիսուսի Քրիստոսի. (Sur la glorification de J. Chr.). « Պաւղոս առաքեալ ոչ 'ի մարդկանէ և ոչ 'ի ձեռն մարդոյ. այլ 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի և Աստուծոյ Հաւր յարուցաւղին զնա 'ի մեռելոց, և տուաւղին Նմա փառս »:

— Յաղագս ասելոյն յառնել Քրիստոսի 'ի մեռելոց փառաւք Հաւր. (Sur la glorieuse résurrection

— Սրբոյն Կիւրղի եպիսկոպոսապետի Աղեքսանդրու յ'Եբրայեցւոց Թղթոյն մեկնութենէ. (Fragment du Commentaire de la lettre de St. Paul aux Hébreux). « Զի ոչ ամենայն զաւրութեանց երկնաւորացն՝ յայտնի էր 'ի սկզբանէ խորհուրդ մարդանալոյ փրկութեան մերոյ: Ցուցցէ հմուատն և անդեանկն գրոց երանելին Պաւղոս »:

— Սրբոյն Կիւրղի եպիսկոպոսապետի Աղեքսանդրու հայրապետին Պարապմունք, յաղագս մարդանալոյ միածնին: (Τοῦ αγιοῦ Κυριλλοῦ περί τῆς ἐναν-θρωπήσεως τοῦ μονογενοῦς).

— Առաջին թէ զինչ նշանակէ Քրիստոս անուն. « Քրիստոս անուն ոչ սահմանի զաւրութիւն ունի և ոչ զուրուք զէութիւն »:

— Բ. Թէ զինչ յեղանակաւ պարտ է առնել զէմմանուէլն. « Էմմանուէլ անուանի. զզաւակէն Աբրահամու բուսան հարկանէ Աստուած. և մերձաւորութեամբ կցորդեալ մեզ մարմնոյ և արեան »:

— Գ. Թէ զինչ է Յիսուս. « Զաւրութեամբ միաւորութեամբ պարտ գոլ առ 'ի մէնջ, մի առնել զորդին Աստուծոյ »: (Գլուխք ԼԶ):

— Հաւատարիմ քահանայապետի Քրիստոսի, մտերիմ ծառայի Աստուծոյ՝ սրբոյդ Կիւրղի Աղեքսանդրացւոյ 'ի Տիբերեայ քահանայէ և յեղբարց. (Lettre de prêtre Tibère à Cyrille d'Alexandrie). « Բարիոք էր մեզ լսել թէ և էր ինչ յուղղութիւն թերեւս փութացելոյն (փութալոցն) ոչ ինչ փոքր յայնցանէ հեռանալոցն աւգանիլ մեզ »:

— Կիւրղի եպիսկոպոսապետի Աղեքսանդրացւոց քաղաքին լուծումն աւրինականացն (այլ ձ. աւրինականացն) խնդրոց 'ի ձեռն Տիբերեայ քահանայի. « Եթէ Աստուած որ 'ի վերայ ամենեցուն՝ ձեռս, ոտս, աչս, ականջս և թեւս ունել յաստուածայնոց գրեալ անուանեալ »:

— Յ'Եսայեայ մարգարէի մեկնութենէ. « Եւ ես ածից զխաղաղութիւն 'ի վերայ իշխանաց նոցա: Խաղաղութիւն և առողջութիւն ինքն Քրիստոս է. խաղաղութեան աղբիւրն՝ ըստ որում ասէ առաքելոցն՝ զխաղաղութիւն զիմ տամ ձեզ »:

— Սրբոյն Կիւրղի եպիսկոպոսապետի Աղեքսանդրու, 'ի մեկնութենէ մարգարէին Յովելեայ. (Fragment d'un Commentaire sur livre de prophète Joël). « Եւ եղիցի յետ այսորիկ հեղից յոգւոյ իմմէ ... Ահաւասիկ յայտնապէս շնորհեալ աւետարանէ սրբոյ հոգւոյն հեղումն, յայտ է թէ զառատ մարգարէութիւնն ոչ 'ի մի մարգարէէ ընտրեալ »:

— Ի մեկնութենէ մարգարէին Զաքարիայ յառաջին բանէն. (Fragment du Commentaire sur livre de prophète Zacharie). « Յաւուր յայնմիկ ասէ տէր ամենակալ՝ կոչեսցէ իւրաքանչիւր ոք զընկեր իւր ... զի ամենայն լինելոց էին 'ի չարիս՝ 'ի շաւշափել նոցա զմեղս »:

— Ի մեկնութենէ մարգարէին Զաքարիայ. « Յութերորդում ամսեանն առ Դարեհիւ եղև բան տեառն առ Զաքարիա որդի Բարաքեայ որդի Ոլիդեայ մարգարէի: Մարգարէանայ երանելիս Զաքարիաս յԵրուսաղէմ 'ի նոսին, թուի ինձ թէ 'ի յայն ժամանակս յորս և Սոփոնիաս »:

— Ի մեկնութենէ մարգարէին Զաքարիայ. « Խնդա յոյժ դուստր Սիոնի, քարոզեա դուստր Երուսաղեմի, ահա թագաւոր քո գայ քեզ ... Յայտնապէս այսոքիւք քարոզէ զփրկչին մերոյ երևումն. մինչ զի և տեսանէր բոլորովին զառ 'ի վերն, և խնդալ հրամայէ »:

— Ի Զաքարիայ մարգարէի մեկնութենէ. « Եւ ծանիցեն Քանանացիքն զոչխարս պահեալս ... Քանանացիս զհեթանոսս ասէ, իմացին նոքա զոչխարս պահեալս որք պահեցան 'ի Քրիստոսէ »:

ղաչեմ զամենեսեան ... յորժամ ընթեռնուք կամ աւրինակէք, զպատուական քահանայս զՄինասն, և զծնաւղսն իւր, և զեղբարս և զամենայն ազգայինն, յիշեսջիք 'ի մաքրափայլ յաղաւթս ձեր: Ընդ նմին և զնուաղեալս յիմաստութեան, և զպակասեալս 'ի գործոց բարեաց, զաարտակուսեալս Ստեփաննոս քե-րաւղ գրոյս ... Իսկ շնորհատուն Աստուած տացէ հոգի և իմաստութիւն ստացողի սորա Մինաս կրաւ-նաւորի ... »: Դարձեալ 'ի յիշատակարանէ ստա-ցողի գրոցս Մինասայ կրաւնաւորի Դերջանեցւոյ 'ի գիւղաքաղաքէ Մանց կոչեցելոյ.

« ... Վճար ն'աւարտ եղև սորին
Առ ի կողմանս հիւսիսային
Յաշխարհս Հայոց և գաւառային,
Եւ ի Սուլխաթ քաղաք սորին.
Ցիշխանութեան Ճանիպեկին,
Որդւոյ մեծի Օզպէկ խանին.
Իսկ ի ներոյ մեծ արքային
Որ Կոստանդին անուն ասին.
Եւ ի հանուրց Հայաստանին
Տէր Մխիթար հայրապետին:
Իսկ ի կողմանցս հիւսային
Տէր Ստեփաննոս վերադիտին.
Եւ իմաստուն մեծ հռետորին
Տէր Յովհաննէս կուսակրաւնին.
Որ է գիտուն աստուածային
Եւ վկայեալն է ի բարին.
Զոր տէր Յիսուս ըստ արժանին
Զնա պահեսցէ կենաւք կրկին »:

— Ի մեկնութենէ մարգարէին Եսայեայ. « Եւ վը-կայս կացուսցես ինձ արս հաւատարիմս զՈւրիաս և զԶաքարիաս որդի Բարեքեայ »:

— Ի մեկնութենէ մարգարէին Եսայեայ. « Աներե-ւոյթ է միշտ սրբոց մարգարէիցն բանք և լցեալ ծած-կեալ իմաստիւք, զխորհրդոցն իմաստից աստուա-ծայնոց կրկնէ զկանխատացութիւնն »:

թիր, զարթիր սուր 'ի վերայ հովուի իմում, ասէ տէր ամենակալ։ Սուր աստ յայտնեալ ասեմք իբրև օրինակաւ սուսեր' զփորձութիւնն »։

— Երանելւոյն Կիւրղի Աղեքսանդրու հայրապետին մեկնութիւն Առակաց աւետարանին որ ըստ Ղուկայ. (Commentaire des paraboles de l'évangile selon St. Luc). « Երկու պարտապանք էին ուրումն փոխատուի ... Փոխատու զինքն նշանակէ, որ 'ի պատկեր իւր գոյացոյց զմարդկային բնութիւնս. շնորհելով զինքն իշխանութիւնն և զանէրութիւն' զոր 'ի գահեկանն նշանակեաց զպատկերն »։

— Մեկնութիւն Առակաց աւետարանին որ ըստ Ղուկայ. (Du même livre). « Դատաւոր մի էր 'ի քաղաքի ուրեմն, յԱստուծոյ ոչ երկնչէր և 'ի մարդկանէ ոչ ամաչէր ... Դատաւոր զմարդկային զիշխանական զմիտսն ասէ. որ 'ի մէջ մարմնոյն հոգւոյն, որպէս կամի ներգործէ. երբեմն 'ի բարին միաւելով' որ են հոգեկան առաքինութիւնք »։

— Երանելւոյն Կիւրղի Աղեքսանդրու հայրապետին' 'ի մեկնութենէն Եսայեայ մարգարէի. (Fragment du livre des Commentaires sur le livre d'Isaïe)- « Ահա կոյսն յղասցի ... Եսուն որք զաստուածային զգիրս թարգմանեցին ոմանք' եթէ ահա աղջիկ յղասցի։ Բայց թուի ինձ Հրէից աղջկան անուամբ պանծալի վարկանելով վատարանդի առնել զՔրիստոսի մայրն, և ոչ մանաւանդ կոչել կոյս »։

« ... Գրեցաւ գիրքս այս և աստուածային առաւս. և հոգւոյ և մարմնոյ փրկութիւնս, հաւատացելոց պարծանքս, 'ի թուականութեանս Հայոց ՊԳ. յաշխարհիս Հոնաց և 'ի յերկիր Խրիմ. 'ի հոյակապ և 'ի հռչակաւոր քաղաքիս որ կոչի Սուրխաթ. 'ի խնդրոյ աստուածընկալ և կուսակրաւն քահանայի Մնասի. լցեալ շնորհիւ իմաստութեամբ, և առաւելեալ ամենայն գործովք առաքինութեամբ։ Արդ ա-

սուրբ աւետարանին որ ըստ Ղուկայ. (Commentaire sur l'évangile selon St. Luc). « Քանզի բազումք յաւժարեցին վերստին կարգել... Համառաւտ բանիւ անցեալ հատանէ աւետարանիչս ընդ կարգ պատմութեան աւետարանիս: Վասն զի նախ զայն եւեթ դնէ սկիզբն բանիս, բազումք՝ ասէ, յաւժարեցին կարգել զպատմութիւնս »:

— Ի Ղուկայ աւետարանին մեկնութենէ. (Du même livre). « Եւ հովիւքն էին 'ի տեղւոջն յայնմիկ... Դարձեալ սկիզբն է բանիս՝ որ առ ձեզ գրեալ է 'ի գիրս սաղմոսացն. Եկայք ցնծասցուք 'ի տէր, աղաղակեսցուք առ Աստուած փրկիչ մեր: Արդ դասագլուխ ունելով զնա, և զնորայն ունելով ուղղութիւնս, և զքաջարուեստ տնաւրէնութեան աւրինակ պատուեմք »:

— Յաւետարանին մեկնութենէ որ ըստ Ղուկայ. (Du même livre). « Եւ եղև ընդ աւուրսն ընդ այնոսիկ՝ ել հրաման... Երանելի մարգարէն Եսայի հոգւոյն ծագմամբ պայծառացեալ, և մեծ խորհրդոյ միածնին ոչ եղեալ անգէտ, և զելս ըստ մարմնոյ տնտեսութեանն՝ ամենայն սքանչելեաց արժանի համարեալ »:

— Ի մեկնութենէ աւետարանին Ղուկասու. (Du même livre). « Եւ իբրև լցան աւուրքն ութ թլփատելոյ զնա... Յոյժ բազում է ժողովս, և յաւժարամիտ լսաւղքդ. քանզի լցեալ տեսանեմք զեկեղեցիս, այլ ոչ մեծատուն խորհրդածուս »:

— Ի մեկնութենէ աւետարանին որ ըստ Ղուկայ. (Du même livre). « Եւ իբրև լցան աւուրք սրբութեան նորա... Ո՛վ մեծ և սքանչելի տնաւրէնութեանն. ո՛վ խորք իմաստութեանն և գիտութեան Աստուծոյ, որ 'ի ծոց Հաւր և աթոռակից, և մշտընջենաւորակից Որդի »:

— Նորին 'ի նոյն գրոց. (Du même livre). « Զաւր.

— Ի Թիւս. (Γλαφυρῶν εἰς τοὺς Ἀριθμοὺς βιβλίον). « Առաքէր Մովսէս առ Մովաբացիսն ոչ միանգամայն, այլ յորժամ յիւրաքանչիւր ոք յազգացն հասանէին, թէ տուք մեզ անց. զի թէ տացեն՝ ոչ սատակիցին » :

— Ի յ'Երկրորդ օրէնքն. (Εἰς τὸ Δευτερονόμιον βιβλίον). « Եւ մի մոռանայցես զամենայն բանս զոր տեսին աչք քո։ Բան զգործոցն ասէ զոր տեսին աչք նոցա։ Եւ բաշխեաց ասէ զնոսա տէր աստուած հեթանոսաց. ոչ զայն ինչ ասէ եթէ ետ հեթանոսաց պաշտել զլուսաւորսն » :

— Ի Յեսու որդւոյ Նաւեայ, Կիւրղի. (Sur le livre de Josué, fils de Nun). « Ընդէ՞ր քարեղէն սըրովք հրամայէ թլփատել։ Վասն չյամելոյ յիրսն. Իսկ յորժամ քարիւն լինէր՝ թլփատութիւն ամենեքին դիւրաւ դառնէին. Դարձեալ ասեն թէ անցաւ լինէր քարին թլփատութիւն » :

— Նորին Կիւրղի 'ի Դատաւորս. (Sur le livre des Juges). « Ցացես ինձ ասէ զբաւսանս ջրոց. և դարձեալ թէ ետ Մաքաղէբ ըստ սրտի նորա զբաւսանս բարձանց, և զբաւսանս հովտաց։ Զբաւսանս՝ զջուրն ոռոգման կոչէ, թէ 'ի բարձունս յուռթի ետ և 'ի դաշտս » :

— Նորին Կիւրղի 'ի Թագաւորութիւնսն. (Sur le livre des Rois). « Զդպրութիւն Արարածոց և զԹագաւորութիւն, ոչ նոյն գրեաց. քանզի զիա՞րդ մարթէր այսչափ ամս կեալ։ Այլ մինչ յերկրորդ օրէնս՝ Մովսէս գրեաց » :

— Նորին. « Այս իբրև նշանակաւ առ այնոսիկ՝ որ այլադուանակս թարգմանեցին, և առ որ առանձինն իւրաքանչիւր լեզուաց, և մանաւանդ Եբրայեցւոյն, որ ասէ թէ 'ի կատարած վասն գաղանեացն որդւոյ » :

— Մեծին Կիւրղի Աղեքսանդրացւոյ մեկնութիւն

ուսումը և զգուշացուց իր հետևողները: Վախճանեցաւ յամի 444, յինն յունիսի, քառասուներկու տարի կառավարելով զեկեղեցին Աղեքսանդրիոյ անմահանուն արդեամբք և մեծապայծառ վաստակովք:

Կիւրղի բազմաթիւ երկասիրութեանց մեծագոյն մասն մը պահուած է նաև 'ի մեր մատենագրութեան, յորոց շատք թարգմանութիւն են ութերորդ դարու, 'ի ձեռն Ստեփաննոսի Սիւնեցւոյ, և ոմանք աւելի հնագոյն ժամանակաց կը վերաբերին, ու հաւանականաբար հինգերորդին: Յայն բնագրին ու մեր թարգմանութեանց մէջ տեղ տեղ կարևոր տարբերութիւնք կը տեսնուին, աւելի ընդարձակագոյն գտնելով զբնագիրն. մանաւանդ հնգամատենին, Յեսուայ, Դատաւորաց և Թագաւորութեանց մեկնաբանութեանց մէջ: Թերևս բուն հեղինակին ձեռքով և կամ յայլոց համառօտուած օրինակաց վրայ եղած է մեր թարգմանութիւնը:

— Սրբոյն Կիւրղի եպիսկոպոսապետի Աղեքսանդրու Արարածոց մեկնութիւն. (Τοῦ ἐν ἁγίοις πατρὸς ἡμῶν Κυρίλλου ἀρχιεπισκόπου Ἀλεξανδρίων γλαφυρῶν εἰς Γένεσιν. Λόγος α.'). « Եթէ ոք կամիցի զամենայն լեզուաց նոյին բանիւք զզօրութիւնն թարգմանել, չկարացուցանէ յանդիման զբանիցն տասցելոց զմիտս »:

— Յ'Ելս. (Γλαφυρῶν εἰς τὴν Ἔξοδον). « Եւ դարշէին Եգիպտացիքն յորդւոցն Իսրայելի. այլ տառս ոչ եթէ զարշելոյ ինչ բանք էին, այլ շարշարելոյ զորդիսն Իսրայելի. քանզի այնպիսի իմն տառ է յասորին. եթէ նեղիցին՝ այսինքն է թէ ինքեանք անձկէին յորդւոցն Իսրայելի »:

— Ի յ'Ղեւտացիս. (Γλαφυρῶν εἰς τὸ Λευιτικὸν βιβλίον). « Զոհս հրամայէ որպէս և յառաջագոյն ասացաք. զի մի զոհեսցեն դիւաց, և մի լաւութեամբն գործակից նոցա մոլորութեանն լինիցին. անուանս ըղձոհսն մատուցանելոյ »:

# ԿԻՒՐԵՂ ԱՂԵՔՍԱՆԴՐՈՒ

## (ST. CYRILLE D'ALEXANDRIE)

---

Կիւրեղ, մեծանուն հայրապետ Աղեքսանդրիոյ, եղբօրորդի Թէոփիլեայ՝ զոր քիչ յառաջ յիշատակեցինք, յանտիական հասակէն մարզեցաւ 'ի վարժս սրբազան ուսմանց, հրահանգեալ և անեալ յուղղափառ հաւատս: Ընթերցաւ եռանդուն հետամտութեամբ զգիրս Կղեմայ, Դիոնեսիոսի Արիոպագացւոյն, Աթանասի և Բարսղի, միացընելով սուրբ հարց գիտութեան հետ նաև զուսումն արտաքին մատենագրաց: Կ'երևնայ թէ հօրեղբայրն 403 թուականէն յառաջ մտուցած ըլլայ զինքն 'ի վիճակ ժառանգաւորաց. որովհետև իրեն հետ ներկայ էր նոյն տարւոյն մէջ գումարուած Կաղնեաց ժողովականին, յորում դատապարտեցաւ սուրբն Ոսկեբերան: Թէոփիլեայ մահուընէն (412) երեք օր ետքը յաջորդեց նմա Կիւրեղ 'ի վերայ պատրիարքական աթոռոյն: Եռանդեամբ անցնելով 'ի գլուխ գործոյ պաշտամանն, մէկէն փակեց Նովատեանց եկեղեցիները, աքսորեց զհրէայս, գրաւեց անոնց ինչքը և ժողովարանները. և ամբաստանելով յՈրեստէս քաղաքապետէ, արդարացուց ինքզինքը և իր գործերը առաջի կայսեր: Նեստորի բարձրանալը 'ի պատրիարքական աթոռ Կոստանդնուպոլսոյ՝ և իր առաջին ջանքն 'ի տարածել զմոլորութիւն իւր՝ ընդարձակ և ազնուագոյն ասպարէզ մը եղաւ Կիւրղի նախանձայոյզ և աստուածասէր քարոզ և փութոյն: Ամեն աշխատանք մտադիւր յանձն առաւ՝ կասեցընել զինքը մոլորութեան ճամբէն. և երբ տեսաւ անոր յամառութիւնը, կայսերական գաւառաց մէջ հռչակեց անոր մոլոր

« Ոչ գիտեմ ուստի 'ի մերս հասանէ լսելիս, իբր թէ հաւատ իմն հնչեալ 'ի քէն նորաձեւ, որ է արտաքոյ բարեպաշտութեանն. այլ զլուր քոյոց հաւատոց անտես արարաք »* :

* Ի ցուցակի Մատենադարանին Էջմիածնի (Թիւ 1686) կը յիշուի Թուղթ Կաղիստինոսի պապի :

— Յաղագս Մարդեղութեան (հատուած մի բանի). (Fragment d'un discours sur l'Incarnation). « Ըստ մարդկութեանն մատուցանէ » :

**ԿԻՊՐԻԱՆՈՍ.** (ST. CYPRIEN, ÉVÊQUE). — Կիպրիանոսի եպիսկոպոսին Անկիւրիոյ Ճառ ողորմութեան. (Մատենադարան Էջմ. Թիւ գրչ. 1754) :

— Կիպրիանոս եպիսկոպոսի. « Փառաւորք և մեծամեծք պատահեցին, սիրելիք, աստուածային բարեգործութիւնք. Հայրն զՈրդին առաքեաց զի զմեզ նորոգեսցէ » : (Մատենագար. ազգային 'ի Փարիզ, Թիւ հայ գրչ. 85) :

— Կիպրիանոս եպիսկոպոս ասէ յՈղորմութեան ճառէն. « Քանզի բաղարջ հացիւ և անապական գինով հաղորդեցաւ մեզ սուրբ խորհուրդն » : (Անդ, 'ի նմին գրչագրի) * :

* Ի մեր Մատենադարանի. Սրբոյն Կիպրիանոսի եպիսկոպոսի Ափրիկեցւոց Կարթագենի քաղաքի գիտողի և վկայի, յորմէ որ յաղագս Ողորմածութեան ճառէն. « Բազում և մեծամեծք են, եղբարք սիրելիք, աստուածայինքն բարեգործութիւնք, յորոց զմերս փրկութիւն՝ Աստուծոյ հաւր և Քրիստոսի առատ և հարուստ մարդասիրութիւնն գործեաց և միշտ գործէ » :

J.-B. Pitra et P. P. Martin. Analecta Sacra Spicilegio Solesmensi. Parisiis, 1883.

գոր եպիսկոպոս (Փիլիպպուպոլսոյ) 'ի Հայրապետէն Հռովմայ Լուսիոյ առ կաթողիկոս մեր Գրիգորիոս, որ էր 'ի սմանէ առաքեալ. և երեր զպատասխանի նամակի առեալ մերոյ, և զգիրս Կարգաց եկեղեցւոյ Հռովմայեցի գրով. և եգիտ զտէր մեր 'ի քաղաքն Տարսոն, յամենեանն հոգաեմբ։ Եւ ընկալեալ կաթողիկոսն սրբոյ զպատուական պալիւնն, և զխոյրն (գլխոյ պսակուն) 'ի լրումն պատուոյ իւրոյ, գոհացաւ զԱստուծոյ։ Եւ ետ զնամակ հայրապետին և զգիրս կարգաց եկեղեցւոյ յիմ նուաստութիւնս թարգմանել. զոր յեղաշրջեցի 'ի հայ բարբառ, միայն երիւրեալ զբանն քերթողական արուեստիւ առանց յաւելուածոյ և թերութեան։ ...

« Եւ զի խոստումն էր ինքնակալին ոսկի կնքեալ գրով՝ Հայոց թագաւոր դնել, պահանջեաց 'ի նմանէ կաթողիկոսն սուրբ զլրումն խոստմանն. և ինձ հրաման ետ զայն թարգմանել. զոր կատարեցի յաւրինակէ՝ միոյ յեպիսկոպոսաց նոցին որ առ իս իջեւանէր Մուստէր քաղաքի, որ ունէր իւր գաս ձիավարի զկնի՝ հազար հեծեալ։ Եւ յորժամ թարգմանեցի՝ խորհեցան և ոչ կարացին յանձն առնուլ զգործըն, յորժամ ինքնակալն բարձաւ 'ի միջոյ. այլ իջին յԱնտիոք և անտի 'ի Պաղեստին։

« Իսկ ես զսահմանեալ աւրհնութիւն թագաւորին՝ ոչ կամեցայ աղաւաղել. եդի ընդ նախ թարգմանեալ կարգսն, վերստին յարմարմամբ։ Եւ աղաչեմ զիմաստուն ընթերցողսդ՝ ոչ աւելորդ համարել զմեր 'ի սոյն վաստակ, որ ծարաւի էաք Հռովմայ եկեղեցւոյն կարգաց՝ ընդ այլ գիտութեանց, և սովաւ զովացաք. և թողաք զկնի եկելոցդ » ....

**ԿԵԼԵՍՏԻԱՆՈՍ Ա.** (CÉLESTIN I, PAPE). — Երանելոյն Կելեստիանոսի եպիսկոպոսապետի Հռոմայ Թուղթ առաջին առ Նեստոր. (Lettre à Nestorius).

— Կանոնք Նիկիայ երկրորդ. (Հարիւր չորեքտասան գլուխք բանից)։

Առանցմէ զատ կ'ունելցընեն գրչագիրք զկանոնս Վաչագանայ Աղուանից արքայի. Յովհաննու Երուսաղեմի եպիսկոպոսի, սրբոյն Շիւպղոզիտայ, Նեկտարիոսի Հռովմայ, Մելիտոնի եպիսկոպոսի, Սեւերիանոսի, Սոկրատայ, Դիոնեսիոսի Արիսպագացւոյ, Մանուելի, Կղեմայ Հռովմայ, Յովհաննու Ոսկեբերանի, և այլն։ Կը թողունք յիշել յազգային հայրապետաց և 'ի ժողովոց սահմանուածներն։

**ԿԱՆՈՆԳԻՐՔ** (նոր). Թարգմանեալ 'ի ձեռն կամ հրամանաւ Գրիգորի Անաւարզեցւոյ, ըստ գրելոյ նորա առ Հեթում Բ. « Կայր եւս (առ իս) այն կանոնքն զոր նոր եմք փոխել, յոր կային Կիպրիանոսի և Կարթագինեայ ժողովոյն բանքն »։

**ԿԱՐԳԱԴՐՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒԾՈՎ** Սրբոց Մայրաքաղաքաց և Մետրապոլտաց և Արհիեպիսկոպոսաց, սահմանեալ ըստ առաքելական և պատրիարքական Աթոռոց. և եղաւ այս կարգ աստիճանացս քահանայապետաց ըստ տիեզերական ժողովոց աւրինաց. « Առաջին աթոռ երեցն Հռոմ, գլխաւոր և նախապատիւ առաքելոյն Քրիստոսի ». (Թուի Թարգ. Լամբրոնեցւոյն). 'ի Վատիկանեան Մատենադարանի։

## ԿԱՐԳԱՑ (գիր) ԼԱՏԻՆ ԵԿԵՂԵՑԻՈՑ

(L'ORDINAIRE DE L'ÉGLISE LATINE)

---

Թարգմանութիւն Ն. Լամբրոնացւոյ հետևեալ յիշատակարանաւ. « Ի Թուին Հայոց ՈԼԴ եկն Գրի

— Անտիոքայ կանոնին գլուխք քսան և հինգ. «Ամե-նայն ոյք ոք և համարձակեսցին և լուծցեն զսահման սուրբ և մեծ ժողովոյն որ 'ի Նիկիա ժողովեցան՝ և զատաքելոցն. իբրև էր անդ աստուածապաշտ և աս-տուածասէր Թագաւորն Կոստանդիանոս»։

— Ղաւոդիկեայ կանոնին գլուխ յիսուն և հինգ. «Զի ոչ է պարտ ըստ եկեղեցւոյ կանոնաց ոյք ազա-տուԹեամբ և աւրինաւք բնակեցան 'ի միասին»։

— Սարդիկեայ կանոնին գլուխք քսան և մի. «Ո-սիոս եպիսկոպոս ասաց. Ոչ է այսքան յետին սովո-րուԹիւնն որքան վնասակար արգեանցն զանազանու-Թիւն 'ի յինքեանց 'ի հիմանց արմատաքի խլել»։

— Կանոն առաջին Եպիփանու. «Եպիսկոպոս կամ երէց կամ սարկաւագ որ տանուտիկին ունիցի 'ի տան ըստ հեԹանոսական սովորուԹեանց՝ լուծցին յիւ-րաքանչիւր յաստիճանէ»։

— Կանոն Եփեսոսի սուրբ ժողովոյն գլուխս վեց. «Քանզի պիտոյ էր և ոչ եկին 'ի ժողովն և մնացին 'ի գաւառին ոչ անգիտանալ զկարգաւորեալս՝ ծանու-ցանեմք»։

— Կանոնք Կիւրղի Աղեքսանդրացւոյ. «Քահա-նայ որ կոյս իցէ կամ այրի և աշխարհի քահանայու-Թիւն առնէ՝ նա և ժողովուրդք նորա և ընդունողք նորա նզովեալ եղիցին»։

— Թուղթ Սեւաստեայ եպիսկոպոսի, գլուխ երեք-տասան. «Սեւատիոս եպիսկոպոս՝ որ էք յԱստու-ծոյ և 'ի Քրիստոսէ և 'ի Հոգւոյն սրբոյ քահանայից 'ի տեառնէ ողջոյն։ Երկերիւր յիսուն և երկու հայ-րապետ ժողովեցաք և քննեցաք որպէս գտաք 'ի գրոց սրբոց ցուցանեմք ձեզ»։

— Կանոնք երկրորդ Անտիոքայ, (գլուխ) երեսուն և հինգ. «Որպէս ասէ երկուց և երից վկայից հաս-տատեսցի ամենայն բան։ Այլ ինքն տէրն ասաց և փրկիչն Յիսուս Քրիստոս»։

քանս գլուխ երեք. « Ոչ խոտել զհաւատս սուրբ Հարցն երեքհարիւր ութուտասնիցն որ 'ի Նիկիա Բիւթանիոյ ժողովեցան, այլ և մնալ նմա հաստատուն » :

— Սահմանք կանոնագրութեան Երանելոյն Գրիգորի Աստուածաբանի Նազիանզու եպիսկոպոսի, յաղագս ուղղափառութեան հաւատոյ և ապաշխարութեան յանցաւորաց, գլուխք երեսուն. « Առաջնորդք սրբութեան հաւատոյ՝ դաւանաւորք սրբոյ ուխտիս, քարոզիչք Ճշմարտութեան » :

— Գիր կանոնական մեծի և գիտնականի եպիսկոպոսապետի Բարսեղի առ սուրբն Ամփիլոքոս քան յիսուն և մի. « Արտաքսեալքն յեկեղեցւոյ ամենայն՝ հերձուածաւորք ասին » :

— Գիր կանոնական սրբոյն Բարսեղի առ քահանայ մեծ Դիոդորոս յԱնտիոքիայ, վասն ամենեւին հեռանալոյ և զազգային չառնել. « Ցայս իմն առաւել հակէ մարդ, եթէ գոյցէ յաւրինաց ինչ » :

— Բարսեղի գիր կանոնական վասն պէսպէս և բիւրապատիկ ախտից. գլուխք ՄՀԲ :

— Կանոն տեառն Եփրեմի արդիւնակատար կրաւնաւորի, զոր ուսուցանէր յանապատն 'ի կուսութեան Ճառէն. « Քահանայ կամ կրաւնաւոր կամ սարկաւագ որ կամակոր մտաւք » :

— Կեսարեայ կանոնի գլուխք տասն. Որք ժողովեալ 'ի Կեսարիա եպիսկոպոսունք քսան՝ վասն ինչ անաւրէնութեան կանանց սահմանեցին կանոն. « Վասն կանանց որ ընդ արամբ են, և եթէ թող-ցեն 'ի բաց զպղծութիւնն և յապաշխարութիւն եկեսցեն » ... :

— Նէոկեսարեայ կանոնիս գլուխք քսան. « Այս կանոնք յետոյ եդան որ յԱնկիւրեայ կամ 'ի Կեսարիայն » :

— Կանոնս Գանգրայ գլուխք քսան և երեք. « Որք զամուսնութիւն մեղադրեն կամ անգոսնեն » :

յետ զոհելոյ մկրտեսցին ։ — ԺԴ. Վասն չձեռնադրելոյ քորեպիսկոպոսաց քահանայ ։ — ԺԵ. Վասն ուխտաւորաց որք կամիցին միս ճաշակել ։ — ԺԶ. Վասն ընչից որ անուանեալ է եկեղեցւոյ ։ — ԺԷ. Վասն անասնագիտաց ։ — ԺԸ. Վասն մարմնապեղծաց ։ — ԺԹ. Վասն եպիսկոպոսի որ զայլոյ վիճակ յափշտակէ ։ — Ի. Վասն որք կուսութիւն խոստանան ։

— Վասն որք ժողովեալ ՚ի Կեսարիա եպիսկոպոսունք հինգ, վասն ինչ անաւրէնութեան կանանց սահմանեցին կանոն գլուխ տասն ։

— Նէոկեսարեայ կանոնիս գլուխք քսան ։

— Կանոնք սրբոյն Գրիգորի առաջելոյն Հայոց, երեսուն գլուխ. « Քահանայն որ ՚ի մեղս զառածեալ է, տասն ամ ապաշխարեսցէ » ։

— Կանոնք Աթանասի գլուխք ութսունևեւթն. « Վասն որք վասն երախայութեան ոչ հաղորդեսցին » ։

— Երանելւոյն Մակարայ (ոմանք ի ձձ. Սահակայ) սրբոյ քաղաքին Երուսաղեմի հայրապետին Կանոնական թուղթ ՚ի Հայս, վասն նախադրութեան կաթողիկէ եկեղեցւոյ կարգաց, զոր չէ արժան ընդ սահման և ընդ հրաման անցանել, գլուխք ինն. « Ահա մանաւոր եղաք զայս փափաք սիրոյ բարեպաշտութեան ձերոյ. փութացայ զարթուցանել զբարեսէր և զպարզամիտ սիրտս ձեր ՚ի խնդիր ուղիղ բարեպաշտութեան ճշմարիտ կանոնադրութեան կաթողիկէ եկեղեցոյ » ։

— Կոստանդինուպաւլսի ժողովոյն և կանոնի գըլուխք երեք. — Յաղագս զնիկիական հաւատոյն հաստատուն պահելոյ ։ — Յաղագս ոչ երթալ եպիսկոպոսին յիւրմէ վիճակէ յայլ և շփոթել ։ — Յաղագս լուծանելոյ զՄաքսիմոս և որք ՚ի նմանէ ձեռնադրեալք են. « Յետ ոչ բազում աւուրց թագաւորելոյ մեծին Թէոդոսի աստուածասէր թագաւորի երևեցաւ այր մի Մակեդոնիոս անուն ... և սահմանեցին

Վասն որ առանց կաթուղիկոսի ձեռնադրեալ: — Է. Վասն պատուելոյ զԵրուսաղէմի եպիսկոպոսն: — Ը. Վասն աթարոսաց. այսինքն է սրբոց: — Թ. Վասն այնոցիկ որ մինչդեռ 'ի հալածանս էին' անկան 'ի ճըշմարտութենէ: — Ժ. Վասն որ առանց քննելոյ մերձենան յերիցութիւն: — ԺԱ. Վասն որ 'ի ձեռն արծաթոյ ձեռնադրին: — ԺԲ. Վասն ուրացողաց: — ԺԳ. Վասն քահանայից որ մեղանչեն: — ԺԴ. Վասն որ յանցաւոր մեռանին: — ԺԵ. Վասն երախայից ուսանելոյ զաւրէնս և զկարգս: — ԺԶ. Վասն յափշտակելոյ զայլոյ վիճակ: — ԺԷ. Վասն ժառանգաւորաց որ 'ի զաւշաքաղութենէ: — ԺԸ. Վասն սարկաւագաց որ մկրտութիւն առնեն: — ԺԹ. Վասն արուագիտաց: — Ի. Վասն որք հերձուածեցան: Վասն կիւրակէի որ ծունր կրկնեն:

— Կոստանդիանոսի թագաւորի առ եպիսկոպոսն և ժողովուրդս. «Զի չարեաց և ամբարշտաց լծակից եղև Արիոս' յիրաւի զնոյն պատուհաս նոցին անարգանաւք կրեսցէ»:

— Կանոնք երկրորդ Նիկիականք' զոր եդին ՅԺԸ եպիսկոպոսունքն' կրկնաբանելով կարճ 'ի կարճոյ:

— Անկիւրիայ կանոնիս գլուխք քսան.

Ա. Վասն քահանայից որ 'ի բռնութենէ զոհեցին: — Բ. Վասն սարկաւագաց նոյնպիսեաց: — Գ. Վասն ուխտի մանկանց' որք բռնադատին ուտել զզոհեալ: — Դ. Վասն որք կամաւք զոհեցին: — Ե. Վասն որք արտասուաւք կերան զզոհեալն: — Զ. Վասն ուրացողաց որք յապաղեն զապաշխարելն: — Է. Վասն որք երթան 'ի տունս հեթանոսաց և ուտեն: — Ը. Վասն որք յամեցեն 'ի նոյն յանցանս: — Թ. Վասն որք ընդ ինքեանս և զայլս վրիպեցեն: — Ժ. Վասն ոչ տալ 'ի պատարագաց կերակրոց' անհաւատից: — ԺԱ. Վասն սարկաւագաց որք կին առնեն: — ԺԲ. Վասն որ յափշտակեն զաղջկունս խաւսեալս: — ԺԳ. Վասն որք

տարել։ — ԻԷ. Վասն զսուրբ քառասունսն պահել, և յաւուր չարչարանաց տեառն տաւնել։ — ԻԸ. Վասն որ ղանտուսն պղծեն։ — ԻԹ. Վասն ուրացողաց զՔրիստոս։ — Լ. Վասն կամաւ սպանողաց զմարդ։ — ԼԱ. Վասն որ մի մաւր կաթամբ սնեալ են, ոչ է պարտ ամուսնանալ։ — ԼԲ. Վասն ազգականաց որ ամուսնանան։ — ԼԳ. Վասն որ զսահմանս ընկերին յափշտակէ։

— Կանոնք Փիլիպպոսի առաքելոյ.

Ա. Նախ թէ պարտ է քառասունք կատարել ամուկանանց։ — Բ. Եթէ ոչ է պարտ զշուն ընդ ոչխարի փոխանակել, զոչխարն պատարագ մատուցանել։ — Գ. Էջ փոխանակեալ ընդ ոչխարի և վաճառեալ արծաթի պատարագեսցի։ — Դ. Վասն ոչ զենլոյ զանսուրբ կենդանիսն և առնուլ զմորթսն։

— Նորին Փիլիպպոսի առաքելոյ կանոնք ութ։

— Կանոնք հարցն հետևողաց յետ առաքելոցն.

Ա. Վասն հեղձուցանելոյ կամաւ զմանուկն։ — Բ. Վասն անասնապղծի։ — Գ. Վասն պոռնըկին որ ինքնակամ գործէ։ — Դ. Վասն գողոց աւազակաց։ — Ե. Վասն քահանայի որ բամբասին։ — Զ. Վասն արուագիտաց։ — Է. Վասն զկին որոշել յանձնէ։ — Ը. Վասն մկնանկն յանգէտս ուտել։ — Թ. Վասն զքահանայի մեղս թէ ոք գիտէ։ — Ժ. Վասն որք պղծին ընդ ազգին։ — ԺԱ. Վասն շնացելոց ընդ ուրկունս։ — ԺԲ. Վասն պանծացեալ երիցու որ սպանողի որ զղջայ՝ ապաշխարութիւն ոչ դնէ։ — ԺԳ. Վասն հերձուածողաց։ — ԺԴ. Վասն որք զհետ միմեանց մեռանին։

— Կանոնք Նիկիական, գլուխ քսան.

Ա. Վասն որք կամաւ կտրեցին զերկուորիս։ — Բ. Վասն որք յարտաքնոց հաւատացեալք՝ ոչ առժամայն ածել 'ի ժառանգաւորութիւն։ — Գ. Վասն ոչ ձեռնադրելոյ զստահակս և զանծանաւթս։ — Դ. Վասն եպիսկոպոս ձեռնադրելոյ։ — Ե. Վասն քանագրելոյ, և թէ երիցս 'ի տարւոջ ժողով լիցի։ — Զ.

ՁԱ. Վասն միրտութեան։ — ՁԲ. Վասն որ զհայր առէ չարչարեալ։ — ՁԳ. Վասն եպիսկոպոսի զի մի իշխեսցէ յայլմէ իշխանութիւն առնուլ։ — ՁԴ. Վասն եպիսկոպոսի զի երեւեսցի գլուխ և առաջնորդ։ — ՁԵ. Վասն պահելոյ զկանոնագրեալն։

— Կանոնք առաքելականք 'ի ձեռն Կղեմայ։

— Կանոնք Թադէի առաքելոյ.

Ա. Վասն եպիսկոպոսաց պարկեշտ և անարատ լինել։ — Բ. Վասն եպիսկոպոսաց միապէս սիրել զհաւատացեալս։ — Գ. Վասն թէ յոր հասակ պարտ է ձեռնադրել քահանայս։ — Դ. Վասն եպիսկոպոսաց հրաժարել 'ի ձեռնադրութենէ ագահաց։ — Ե. Վասն թէ եպիսկոպոսին պարտ է սեղան հաստատել։ — Զ. Վասն հացի պատարագին, թէ յորում աւուր պատարագի' 'ի նոյն աւուրն է եփել։ — Է. Վասն եպիսկոպոսաց ժողով առնել ժառանգաւորաց և ժողովրդոց 'ի սեղան հաստատել։ — Ը. Թէ յորում աւուր սեղան հաստատէ եպիսկոպոսն' արժան է զենմունք լինել։ — Թ. Թէ վասն 'ի ժամ աղաւթից չխաւսել այլ ինչ բան' բայց յաղաւթից։ — Ժ. Վասն ձեռնադրելոց' թէ յայտնի ինչ աղտեղութիւն։ — ԺԱ. Վասն թէ յետ ձեռնադրութեանն յայտնի ինչ աղտեղութիւն։ — ԺԲ. Վասն եպիսկոպոսաց ոչ առնուլ կաշառս։ — ԺԳ. Վասն ամուսնացեալ քահանայից թէ որպէս պատարագ մատուցանել։ — ԺԴ. Թէ որք կուսութեամբ ընկալան քահանայութիւն' որպէս պատարագ մատուցանել։ — ԺԵ. Վասն քահանայի որ երգնուցու։ — ԺԶ. Վասն քահանայի աղքատասէր լինել և քաղցրաբան։ — ԺԷ. Որ միանգամ 'ի Քրիստոս միրտին' սրբութեամբ կեալ։ — ԺԸ–ԻԲ. Վասն չնացողաց։ — ԻԳ. Վասն կախարդաց և ուրացողաց։ — ԻԴ. Վասն չնացողաց որ զմանկունսն սպանանեն։ — ԻԵ. Վասն քրիստոնէից որ զուրբաթ և զչորեքշաբթին պահեն։ — ԻԶ. Վասն աւրուՆականի տաւնից շաբաթ մի պահելն, և ապա կա-

որք ոչ ճաշակեն յաւուր տաւնի 'ի մսոյ և 'ի գինւոյ: — ԽԹ. Վասն ժառանգաւորի որ ուտէ 'ի կապելոյն: — Ծ. Վասն ժառանգաւորի որ Թշնամանէ զեպիսկոպոս, — ԾԱ. Վասն ժառանգաւորի որ Թշնամանէ զերէց: — ԾԲ. Վասն Թէ ոք 'ի ժառանգաւորաց այպանեսցէ զվնասեալն մարմնով: — ԾԳ. Վասն երիցուն որ անփոյԹ առնէ զքահանայուԹիւն, և ոչ խրատէ զժողովուրդն: — ԾԴ. Վասն եպիսկոպոսի որ ոչ տայ կարաւտելոց: — ԾԵ. Վասն չմուծանել զամբարշտաց գիրս յեկեղեցիս: — ԾԶ. Վասն բամբասողաց: — ԾԷ. Վասն մարդկային երկիւղի: — ԾԸ. Վասն ոչ ուտելոյ միս արեամբ շնչոյ և գազանաբեկ: — ԾԹ. Վասն ոչ պահելոյ զշաբաԹ և զկիւրակէ: — Կ. Վասն ոչ աղաւԹելոյ 'ի ժողովարանս Հրէից: — ԿԱ. Վասն որ 'ի կռուի զոք սպանանէ: — ԿԲ. Վասն որ զանխտաւս կանոնս բանաբարէ: — ԿԳ. Վասն որ երկրորդ ձեռնադրուԹիւն ընկալաւ: — ԿԴ. Վասն պահելոյ զուրբաԹ և զչորեքշաբաԹ և զքառասնորդսն: — ԿԵ. Վասն ոչ պահելոյ և տաւնելոյ ընդ Հրէայս: — ԿԶ. Վասն որք տանին ձէԹ 'ի մեհեանս հեԹանոսաց: — ԿԷ. Վասն որք գողանան ձէԹ կամ մոմ յեկեղեցւոյ: — ԿԸ. Վասն եպիսկոպոսաց որ ամբաստանեալ են: — ԿԹ. Վասն չընդունելոյ զԹերահաւատ ոք 'ի վկայուԹիւն եպիսկոպոսաց: — Հ. Վասն ոչ շնորհելոյ եպիսկոպոսաց զպատիւ՝ աշխարհականաց: — ՀԱ. Վասն որք խեղ ակամբ և մարմնով: — ՀԲ. Վասն ոչ ձեռնադրել եպիսկոպոս զխուլ կամ զկոյր: — ՀԳ. Վասն դիւահարի: — ՀԴ. Վասն որք 'ի հեԹանոսաց մկրտին: — ՀԵ. Վասն չանկանել եպիսկոպոսի յերկբայաւոր հոգւս: — ՀԶ. Վասն չածելոյ 'ի ժառանգաւորուԹիւն զծառայս: — ՀԷ. Վասն եպիսկոպոսի որ զաւրականուԹեան պարապեսցէ: — ՀԸ. Վասն որ զԹագաւորն Թշնամանէ: — ՀԹ. Վասն Թէ ոք ճշմարտուԹեամբ մկրտեալ, վերստին մկրտեսցի: — Ձ. Վասն մկրտուԹեան տգիտի: —

երկիր պանդխտանայ։ — ԺԵ. Վասն ոչ ձեռնադրել զերկկանայս 'ի քահանայութիւն։ — ԺԶ. Վասն ոչ ձեռնադրել քահանայս որ այրի կին առեալ իցեն։ — ԺԷ. Վասն զաղգականս ոչ ունելոյ։ — ԺԸ. Վասն ոչ տալոյ երաշխաւոր ժառանգաւորի։ — ԺԹ. Վասն որ ոչ կամաւքն ներքինացեալ են։ — Ի. Վասն որ կամաւ զինքն կրճատեաց։ — ԻԱ. Վասն ժառանգաւորի որ զինքն կրճատեաց։ — ԻԲ. Վասն ժողովրդականի որ զինքն կրճատեաց։ — ԻԳ. Վասն եպիսկոպոսի ձեր 'ի մեղս զառածեալ է։ — ԻԴ։ Վասն որք ամուսնանան 'ի ժառանգաւորաց։ — ԻԵ. Վասն չլինել հարկանող զեպիսկոպոս, (կամ) վասն հարկանողաց ժառանգաւորաց։ — ԻԶ. Վասն եպիսկոպոսի որ լուծեալ իցէ 'ի կարգէն։ — ԻԷ. Վասն եպիսկոպոսի որ (թէ) ընծայիւք ձեռնադրէ։ — ԻԸ. Վասն եպիսկոպոսի որ իշխանաւք վարի։ — ԻԹ. Վասն թէ՛. ոք անարգէ զերէց կամ զեպիսկոպոս։ — Լ. Վասն թէ ոք երէց որոշեալ է յեպիսկոպոսէն։ — ԼԱ. Վասն զի մի զոք յաւտար եպիսկոպոսաց ընդունել։ — ԼԲ. Վասն եպիսկոպոսին իւրաքանչիւր ազգի գիտել պարտ է։ — ԼԵ. Վասն 'ի տարւոջն երկու անգամ ժողով լինել։ — ԼԶ. Վասն զեկեղեցւոյ իրաց հոգ տանել։ — ԼԷ. Վասն երիցու և սարկաւագի չգործել ինչ առանց կամաց եպիսկոպոսին։ — ԼԸ. Վասն ընչից եպիսկոպոսին և եկեղեցւոյ։ — ԼԹ. Վասն իշխանութիւն ունել եպիսկոպոսն եկեղեցւոյ։ — Խ. Վասն եպիսկոպոսաց ոյք քուէից պարտայինս։ — ԽԱ. Վասն սարկաւագաց զնմանս տրորեալ։ — ԽԲ. Վասն եպիսկոպոսի որ վաշխս առնու։ — ԽԳ. Վասն թէ եպիսկոպոս ոք թերահաւատից աղաւթակից լինի։ — ԽԴ. Վասն թէ եպիսկոպոս ոք զթերահաւատից մկրտութիւն ընդունի։ — ԽԵ. Վասն որոշելոյ զկնահանաւրն։ — ԽԶ. Վասն որք անգոսնեն զամուսնութիւն, զմսակերութիւն և զգինի։ — ԽԷ. Վասն թէ ոք եպիսկոպոս զդարձեալսն 'ի մեղաց ոչ ընդունի։ — ԽԸ. Վասն

խոտոսս ոչ ձեռնադրել: — Ի. Յաղագս միաբանու-
թեամբ կատարել զեկեղեցւոյ իրս առաջնորդին և
պաշտօնէից: — ԻԱ. Վասն ոչ խոստելոյ զանարգս ոք 'ի
ձեռնադրել՝ թէ անարատ իցէ: — ԻԲ. Վասն զանըն-
չաւէրն ձեռնադրելոյ: — ԻԳ. Վասն ոչ ձեռնադրելոյ
զամբարտաւանն: — ԻԴ. Վասն միաբան լինել քահա-
նայից: — ԻԵ. Վասն որք ոչ ունին ամուսին քահա-
նայութեան: — ԻԶ. Վասն պատուելոյ զքահանայսն:
— ԻԷ. Վասն փառաւորաց: — ԻԸ. Վասն յիշատակս
մեռելոցն կատարել: — ԻԹ. Վասն 'ի բեմն հանելոյ ըն-
թերցուածս: — Լ. Վասն զօրագիրս Դաւթի պաշտե-
լոյ: — ԼԱ. Վասն ոչ ընթեռնլոյ զարտաքին գիրս: —
ԼԲ. Վասն 'ի սուրբ սեղանն ջերմ հաց հանել: — ԼԳ.
Վասն որք կամին կուսութեամբ կեալ: — ԼԴ. Վասն
որք ամուսնանայցեն: — ԼԵ. Վասն առաքելոցն թէ
զո՛ր աշխարհ վիճակեցին:

Այս կանոններէն ոմանք կը յաւելու. «Այլ աշա-
կերտացն տեառն յետ դնելոյ զկարգ աւրինացս այսո-
ցիկ, ոչ դադարէին 'ի քարոզելոյ զաւետարանն...»:

— Երկրորդ առաքելական և գլխաւոր կանոնք ութ-
սուն և հինգ: Սահմանք և կանոնք սուրբ առաքելոց 'ի
ձեռն Կղեմայ առաքեալ հեթանոսաց:

Ա. Վասն ձեռնադրութեան եպիսկոպոսաց: — Բ.
Վասն ժառանգաւորաց ձեռնադրութեան: — Գ.
Վասն տերունական պատարագին: — Դ. Վասն գիւ-
ղից եկեղեցւոյ: — Ե. Վասն կնաթող քահանայից: —
Զ. Վասն ժառանգաւորաց որ աշխարհական հոգս
յանձն առնուն: — Է. Վասն հաղորդելոյ յաւուր
տաւնից: — Ը. Վասն սրբոյ զատկին: — Թ. Վասն որ
անկատար թողուն զժամն: — Ժ. Վասն ոչ հաղորդե-
լոյ ընդ անհաղորդս: — ԺԱ. Վասն լուծեալ քահա-
նայից: — ԺԲ. Վասն որք բանադրեալք իցեն: — ԺԳ.
Վասն եպիսկոպոսի որ զայլոյ իշխանութիւն բանա-
դատէ: — ԺԴ. Վասն ժառանգաւորի որ յաւտար

յասորականէ և թերևս մասամբ նաև 'ի յունէ։ Առ մեզ գտնուած գրչագիրք՝ ոչ այնչափ հին են և ոչ փափաքելի հաւատարմութեամբ յընդօրինակողաց։ Էջմիածնի Մատենադարանին տպագիր ցուցակին մէջ նշանակուած կը գտնենք օրինակք թուով քսան և վեց՝ յորս հնագոյն է գրեալն 'ի թուին ՊԺԷ (1368) 'ի Կաֆա Ղրիմու 'ի Մաղաքիայէ։ Երուսաղեմի Մատենադարանիններն ալ, թէպէտ ոմանք ընտիր և հաւատարմագոյն գրչութեամբ, բայց չունին զհնութիւն։

— Վարդապետութիւն առաքելոցն։ Զկնի վերանալոյն Քրիստոսի առ Հայր իւր յերկինս, որպէս շնորհեաց նոցա աներևել նշանս և բժշկութիւնս, և որպէս ընկալան առաքեալքն զպարգևս Հոգւոյն սրբոյն։ – Գլուխք և թիւք համաւրէն ասացուած առաքելական են (երեսուն և հինգ).

Ա. Վասն յարևելս կոյս աղաւթել։ – Բ. Վասն կիրակէի պատարագս մատուցանել։ – Գ. Վասն չորեքշաբթի պահելոյ։ – Դ. Վասն ուրբաթ պահելոյ։ – Ե. Վասն շաբաթու պատուելոյ։ – Զ. Վասն երիցունս, սարկաւագունս և կէս սարկաւագունս ձեռնադրելոյ։ – Է. Վասն յաւուր ծննդեան և յայտնութեան Քրիստոսի 'ի վեց յունուարի կատարել։ – Ը. Վասն զատկին յետ քառասուն աւուր պահելոյ կատարել։ – Թ. Վասն աւետարանին ընթեռնլոյ։ – Ժ. Թէ վասն զկնի պատկերին կատարեսցեն յիսուն աւր։ – ԺԱ. Վասն վերացման նորա։ – ԺԲ. Վասն չձեռնադրելոյ զեկամուտ ոք։ – ԺԳ. Վասն յաւուր ութերորդի մկրտել զմանուկ։ – ԺԴ. Վասն չպաշտելոյ ըզպաշտաւն ատեան՝ որք յերկմիտս իցեն 'ի հաւատս։ – ԺԵ. Վասն որ 'ի հարցուկս երթան։ – ԺԶ. Վասն որ ընդ Հրեայս հաղորդին։ – ԺԷ. Վասն ոչ ընդունելոյ զորս 'ի հրէից և 'ի հեթանոսաց։ – ԺԸ. Վասն որք հաւատան և անդրէն ուրանան։ – ԺԹ. Վասն զմաշ-

ուսուցիչ և հայագէտ անգղիացի քանասէրն Կոնիբիր՝ գտած ըլլայ 'ի մատենադարանին Էջմիածնի՝ բաց յայլոց հետաքննական գրուածոց նաև Կայսերաց պատմութիւն կոչուած գրքի մը հին Թարգմանութիւն։ Փափաքելով որ ստուգուի այս լուր՝ կը համարինք թէ մեր յիշած գրուածքն ըլլայ։

# ԿԱՆՈՆԱԳԻՐՔ

## (LES STATUTS ECCLÉSIASTIQUES)

---

Վասն առաքելական կանոնիս. (Statuts apostoliques). Առաքելական կոչուած կանոնաց յիշատակութիւնք՝ չեն հին 'ի գիրս յառաջ քան զչորրորդ դար։ Եւսեբիոս 'ի պատմութեան Եկեղեցւոյ (Գ. ԻԵ) թուի 'ի կարգս անվաւեր գրոց դասել զայնոսիկ. «Երկմտութիւն է, կ'ըսէ. զնոցանէ ... որ կոչին վարդապետութիւնք առաքելոց (νόθα ... τῶν ἀποστόλων αἱ λεγόμεναι Διδαχαί). Սուրբն Աթանաս 'ի թղթին առ Փեստոն կը խօսի իբրև ոչ կանոնական համարուած գրքի մը վրայ, և թէպէտ եպիսկոպոսունք կը պատուիրէին, կ'ըսէ, անոր ընթերցումը յեկեղեցւոջ. բայց ինքը հակառակութիւն կրող գրքուածոց մէջ կը դասաւորէ (ἀντολεγόμενα). Սուրբն Եպիփան՝ առաքելական սահմանք կը կոչէ, որոնց թէպէտ վաւերականութիւնը տարակուսական, այլ պէտք չէ, կ'ըսէ, մերժել զայնոսիկ, վասն զի կը պարունակեն պատուական հրահանգք, և չկայ ինչ 'ի նոսա հակառակ հաւատոց և եկեղեցական կարգաց։

Զենք կրնար որոշել մեր հայ թարգմանութեան ժամանակը, և հաւանականաբար կը համարինք վեցերորդէն ութերորդ դարերու մէջ եղած՝ անշուշտ

սրբոյ հարցս յարեւելս յաղուանս գիրս և Թարգմանեցին 'ի հայ գիր » ։

ԼԱԲՈՒԲՆԻԱ (Թուղթ Աբգարու)։ Տես Հայկական հին դպրութիւն, Բ. տպ. յ'էջ 161-170։

ԼԵՒՈՆԻ ՏՈՒՄԱՐ (հին Թարգմանութիւն). (Lettre dogmatique du pape Léon I). « Տումար Լեւոնի պապի գրեալ առ Փլաբիանոս պատրիարգ Կոստանդնուպոլսոյ ։ — Ընթերցաք զնամակն սրբոյդ Հօրդ, յոր և զարմացաք վասն անագան հասանելոյ նորա » ։ (Մատենադարան Երուսաղէմի)։

## ԿԱՅՍԵՐԱՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

(HISTOIRE DES CÉSARS)

---

Այս անունը կրող գիրք մը այլեւայլ հատուածք կը գտնուին 'ի Ճառընտիրս։

— Ի յիշատակի սուրբ և բարեպաշտ Թագաւորին Թէոդոսի մեծի, 'ի կայսերական գրոց։ « Թէոդոս մեծ որդի Գրատիանոսի ամս եւթնևտասն. և էր 'ի Քրիստոսի ծննդենէն հինգհարիւր և ինն ամ» ։

— Ի կայսերական գրոց, յաղագս Թէոդոսի փոքու. « Թէոդոս փոքր որդի Արշակայ՝ ամս երեսուն և ինն »* ։

* Մեր գրչագրաց մէջ կը հանդիպինք հետեւեալ մակագրով գրուածի մը. « Կայսերք Հռովմոց Թէ որչափ ամք կեցին կամ ամիսք, և զինչ գործ գործեցին ». որ անշուշտ Թարգմանութիւն է 'ի յունէ յոմանց Անանիայի Շիրակացւոյ ընծայուած և յայլոց Ուխտանեսի։ Նորագոյն տեղեկութիւնք կը ծանուցանեն մեզ Թէ Օքսֆորտի դասական լեզուաց

Isychii presbyteri Hierosolymorum, Commentaria in Leviticum, emendata, et annotationibus aucta, ex editione Jacobi Le Gros. Parisiis, 1581.

## ԻՍԻՔԻՈՍ ՄԻԼԵՍԱՑԻ

(HESYCHIUS DE MILESE)

—

— (Իսիքիոսի Միլեսացւոյ 'ի Հայրենականացն Կոստանդնուպոլսոյ հատուած) այսպիսի խորագրով· «Պատմութիւն 'ի սկզբանէ շինութեան հոյակապ քաղաքին և պանծալի Բիւզանդիոնի». — «Ասեն թէ Արգիացիքն առաջինք աստուածահրամանաւն վարեցան, վասն որոյ ասացաւ այսպէս»*։

* Հրատարակեալ 'ի Բազմավէպ հանդիսի (1878, յէջ 59)։ «Թէպէտ չէք 'ի մեր թարգմանութեան անուն հեղինակին, այլ գտաք 'ի մեծ Բիւզանդարանն' լինել Իսիքիոսի որումն Միլեսացւոյ։ Իսիքիոս ոք Միլեսացի' գրիչ բազմաց մատենից, զորոյ կրկին գրեանն յիշէ ինքնին Փոտ յիւրում բիւրամատենին, զմին 'ի Բելայ յԱսորեստանեայց արքայէ ցմահ Անաստասայ կայսեր, և զմիւսն' զիրս և զարարս Յուստինիանոս կայսեր, յիշէ և յիշէ' այլ թուականն անստոյգ. և եթէ ո՛ ոք իցէ այրդ' չգիտեմք ճշդիւ։ Իսկ 'ի գիրս ինչ օրինաց յիշատակի Իսիքիոս ոք դպիր ատենական, զորմէ ասի բազում ինչ գրեալ զմեծէ քաղաքէս»։ Historia Byzantina (Հատ. Ա. 159). 'Ησυχίου Μιλησίου ἰλλουτρίου πάτρια Κωνσταντινουπόλεος. Այս գրքէն թուի թէ առած ըլլայ Փարպեցի' Բիւզանդիոնի շինութեան պատմութիւնը։

**ԻՒՂՈՅՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ**. — Յաղագս պատմութեան սուրբ և աստուածային Իւղոյն զոր գտեալ

« Այլ վասն թերութեան տառիս յայս լեցի ըն-թերցողաց, զի բանքս Իսիքիոսի մինչեւ ցայս վայր սպառեցան. և թէ այս մինչև ցայսվայր միայն եղև քննեալ 'ի նմանէ. և թէ 'ի թարգմանութենէ թե-րին մնացեալ եղև՝ չէ յայտ: Այդ բովանդակ գրոցն Յովբայ մեկնութեան թէ ով փափաքէ, խնդրեսցէ զժողովածոյ մեկնիչն զարարեալն 'ի վարդապետէն Վանականէ Տաւուշեցւոյ: Այդ զնորեկացւոյն Գրի-գորի բանսն որ յ'Ով է գայն է խօսեալ, և սուղ ինչ յԻսիքոսի բանիցս գրեալ յայլոյ ումեքէ՝ մա-տոյց մեզ 'ի ձիր շնորհի քահանայ ոմն Կարապետ անուն. և մեր զթերին լցեալ՝ ընծայեցաք զկնի եկե-ղոյգ » . . . :

— ** Իսիքիոսի հատուածք ('ի խմբագիր մեկնու-թեան կաթուղիկեայ թղթոց. 'ի Փարիզեան ազգային մատենադ.). « Որպէս սուսերն պատրաստ է 'ի հա-տանել յորժամ սրեալ լինի, և արագ 'ի սպանու-թիւն » :

— Իսիքոսի քահանայի, (Անգ). « Երանեալ է այր որ առաջի Աստուծոյ խոնարհեալ է. ըստ որում աս-ասէ Յակոբոս. Խոնարհեցարուք յանդիման տեառն և բարձրացուսցէ զձեզ. յորժամ այսպէս խոնար-հիմք, թէ դեւք զաւ գնեն մեզ, թէ մարդիկ տանլեք՝ Աստուած փրկիչ է » :

— Իսիքոսի. (Անգ). « Նախ ապէ զատանջանան վասն մարդասիրութեան, զի պաշտխարեալք՝ ապաւնա-լեացն արտաքոյ գտցին » :

— Հիւսիքոսի քահանայի Երուսաղեմի 'ի սուրբ Աստուածածինն. « Ամենայն յիշատակ արդարոց »* :

* Արեւմտեայք կը յիշատակեն զԻսիքիոս երէց Ե-րուսաղեմի՝ հեղինակ զանազան գրոց մեկնութեան, առանց ուրիշ գրուածք մը ընծայելու իրեն:

Isychii presbyteri Hierosolymorum, libri VII in Leviticum, ex editione Joannis Sichardi, Parisiis, 1527.

Edidit Ritterhusius. Neostadii, 1606. Venetiis, 1744.

Isidori Pelusiotæ Epistolæ hactenus ineditæ de locis Sacrae Scripturæ moribusque formandis. Parisiis, 1638.

# ԻՍԻՔԻՈՍ ԵՐԷՑ

## (HESYCHIUS, PRÊTRE)

---

—** *Մեկնութիւն Յոբայ. Իսիքիոսի երիցու Երուսաղեմացւոյ. «Բազում ինչ մեզ Աստուած մերձաւորի ? յաւգտակար տեսիլս կանգնեաց. բազում և մեծամեծ իմաստասիրութեան ետ տարացոյցս»: Բերի կամ 'ի հեղինակէն և կամ 'ի Թարգմանչէն: Վասն զի կը ժամանէ մեկնիչն մինչև 'ի բանն Յոբայ (Գլ. Ի. 29). «Յայտնեսցեն երկինք զանաւրէնութիւն նորա. յարիցէ 'ի վերայ նորա երկիր. քակտեսցէ կորուստ զտուն նորա 'ի սպառ. հասցէ 'ի վերայ նորա աւր բարկութեան: Այս բաժին է մարդոյ ամպարշտի առ 'ի տեառնէ, և այս ստացուածք ընչից նորա յայցելուէն»: Զոր մեկնաբանելէն ետքը վերայ կը բերէ ընդօրինակողն. «Կատարեցան ասա բանք Իսիքիոսի: Յամի եւթնհարիւրերրորդի քառաներորդի ութերորդի 'ի Թուաբերութեանս Հայոց, աւարտեցաւ մեկնութիւնս երջանիկ նահատակին Յոբայ յայլեւայլ ժամանակ և տեղի զանազան դըրչաւք. 'ի գաւառիս Կիլիկեցւոց հուպ յանառիկ դըղեակս Բարձր կոչեցեալ, 'ի դառնագոյն ժամանակի, յորում յոյժ զզուիմք յանաւրինաց: Որք աւգտիք 'ի սմանէ՝ զերախտաւորս և զաշխատեալս 'ի սմա յիշեսջիք 'ի Տէր. և դուք 'ի նոյն լիջիք բարի աւրհնելեաց յաւիտեան:*

որպէս տայց սուրբն Եփրեմ ընդ Բարդիսանու, եթէ՝ Այր դու, գիտասցես զի ընդ հարկիւ ես և անդանք. զի ոչ կարեն յաւելուլ և պակասեցուցանել յընթացս իւրեանց. և սուրբն Յակոբ ասէ յէութեան ճառին, եթէ անուանք են 'ի զարդ աշխարհի, եղեալ յԱստուծոյ 'ի ժամ և 'ի ժամանակս, 'ի տիւ և 'ի գիշեր »։ Կ'երևնայ թէ է Yeshua տարբի. տես 'ի Catalogue of the syriac mss. in the British Museum, by Wright.

— Գիրք 'ի բնութեան հանրական և մասնական յաւիտենէ Յեշուէ անուն։ (Յիշատակարան առ Գ. Վ. Սրուանձտեանց, Թորոս աղբար. Հտ. Բ., 448)*։

* C'est aussi pour la nation syrienne un vrai monument historique que le Catalogue d'Ebed Jesu ou Abd Jeschova, (serviteur de Jésus), dit aussi Bar Brikha (fils du Béni) écrivain nestorien, qui a fleuri au treizième siècle. Il est l'auteur d'un grand nombre d'écrits en prose et en vers. (Assemani, Bibl. orient. Հտ. Գ.), relatifs aux dogmes et aux Écritures, à la démonstration de la foi chrétienne. Chaldéen d'origine, et attaché à la secte des Nestoriens; il fut évêque métropolitain de Nysibe, dit aussi Soba, où il résidait, et où il mourut en 1318; son autorité s'étendait sur les Nestoriens d'Arménie. (F. Nève, l'*Arménie Chrétienne*, 387).

**ԻՍԻԴՈՐ ՊԵՂՈՒՍԱՑԻ** (ISIDORE DE PÉLUSE).

— Իսիդորոսի Պեղուսացւոյ (ըստ այլ գրչ. Եղեսիոսացոյ) աշակերտի սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի 'ի հազար թղթոցն. (պատառիկ մի). « Բայց դու, մի՛ փսպա սուրբ »*։

* Առ արևմտեայս. Isidori Pelusiotæ; de Interpretatione divinæ scripturae Epistolarum libri IV.

of the threi Epistles, corrected according to the authority of the Syriac version. By Will. Cureton, London, 1845. - *Vindicia Ignatiana;* or the genuine writings of S. Iguatius, as exhibited in the ancient Syriac version, vindicated from the charge of heresy. By the Rev. Will. Cureton, London, 1846. - *Corpus Ignatianum.* A complet collection of the Ignatian Epistles, genuine, interpolated and spurious, toghether with numerous extracts from them as quoted by Ecclesiastical Writens down to the Tenth Century, in syrian, greek and latin. An English translation of the Syriac text with copious notes and introduction, by the Rev. W. Cureton. London, 1849. - *Vindiciæ Epistolarum S. Ignatii;* editio nova annotationibus et præfatione ad hodiernum statum accomodata. Oxonii, 1852. - Ueber der Verhaltniss der textes der drei Syrischen Briefe des Ignatio zu den ubrigen Recensionem der Ignatianischen Literatur. Von Richard Adalbert Lipsius. Leipzig, 1859.

**ԻՇԱՒԽԱՆ.** — *« Անուամբ Աստուծոյ գիրք ՚ի վերայ բնութեան հանրական և մասնական, քահանայի ումեմն աշխատեալ Իշաւխանն » : — « Խնդիր վասն բնութեան այսպիսի արասցուք. Յորժամ գոյացոյց Աստուած զէսս յոչէից զտեղի բնակութեան կազմեաց զաշխարհ՝ ձեղուամբ երկնից յաւրինեալ » : ... (Ձեռագիր Մատենադարանիս մերոյ Թիւ 1326, և Երուսաղեմի, 401) : Կը յիշէ « Որք յարտաքնոցն Արիստոտելէս և Եւմիս. և եկեղեցւոյ վարդապետն Յակոբ Ուռհայեցի և Մովսէս որդին մինի » : Կ'ըսէ դարձեալ ՚ի նմին բանի. « Եւ սատ սխալեցան մարդիկ, և փոխեցին զարարչին պատիւն՝ տալով սոցա. և զայս ոչ իմացան թէ անբանք են և անկենդանք,*

Թ. *Պատասխանի թղթոյն Մարիայ՝ երանելոյն Իգնատիոսի գրեալ.* (Πρὸς Μαρίαν Κασσοβήλοτον Ἰγνάτιος). «*Իգնատիոս որ է աստուածազգեաց՝ գթացելոյ 'ի շնորհաց Աստուծոյ հաւր բարձրելոյ*»։

Ժ. *Ի Տարսոն քաղաք.* (Πρὸς τοὺς ἐν Ταρσῷ Ἰγνάτιος). «*Իգնատիոս ... սեպհական եկեղեցւոյդ 'ի Քրիստոս, արժանի փառաց, արժանի յիշատակի. արժանի սիրոյ որ է 'ի Տարսոն*»։

ԺԱ. *Առ Անտիոք քաղաք.* (Τοῦ αὐτοῦ πρὸς Ἀντιοχεῖς). «*Իգնատիոս ... եկեղեցւոյդ ընտրելոյ 'ի Յիսուսէ Քրիստոսէ տեառնէ մերմէ, և ընկալեալ զողորմութիւն յԱստուծոյ հաւրէ որ նստի յԱսորիս*»։

ԺԲ. *Առ Ուրիոնն սարկաւագ.* (Τοῦ αὐτοῦ πρὸς Ἥρωνα διάκονον Ἀντιόχειας). «*Իգնատիոս ... գթացեալ մաքրափայլ քրիստոսազգեաց Ճշմարիտ որդւոյ մերոյ հաւատով և սիրով՝ Ուրիոն սարկաւագի Քրիստոսի և սպասաւորի Աստուծոյ*»։

ԺԳ. *Առ Փիլիպպոս քաղաք.* (Τοῦ αὐτοῦ πρὸς Φιλιππησιούς, περὶ βαπτίσματος). «*Իգնատիոս ... եկեղեցւոյդ Աստուծոյ, որ գթացաւ հաւատով. և համբերութեամբ և սիրով առանց կեղծաւորութեան*»։

— *Թէ որպէս առ եկեղեցին Հռովմայեցւոց գրեաց սուրբն.* «*Իգնատիոս որ և աստուածային աստուածազգեստ մեծութեամբ հաւր բարձրելոյ, հաւր Յիսուսի Քրիստոսի. միածնի որդւոյն իւրոյ, եկեղեցւոյդ լուսաւորելոյ և սրբեցելոյ*»*։

* Տես ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ ՀԱՅԿԱԿԱՆ, յ'էջ 241. *Հոն յիշատակուածներուն վրայ կ'աւելցընենք նաև հետևեալները.* *Vindiciæ Epistolarum* Sancti Ignatii. Isaaci Vossii Epistolæ duæ adversus Davidem Blondellium. Cantabr. 1672. – *The ancient Syriac version* of the Epistles of St. Ignatius to St. Polycarp, the Ephesians and the Romans. Ed. with English translation and notes. Also the greek text

քանչիւր քաղաքաց, յորժամ ելանէր վկայել 'ի Հռովմ 'ի Թագաւորութեանն Անտիոքայ. (Τοῦ ἁγίου ἱερομάρτυρος Ἰγνατίου ἀρχιεπισκόπου Θεουπόλεως Αντιοχείας, ἐπιστολαί).

Ա. Առ Եփեսացիսն. (Πρός Ἐφεσίους). «Իգնատիոս որ է աստուածազգեաց՝ եկեղեցւոյ աւրհնելոյ մեծութեամբն Աստուծոյ հաւր կատարմամբ»։

Բ. Առ Մագնեսացիսն. (Μαγνησίευσιν). «Իգնատիոս որ է աստուածազգեաց, եկեղեցւոյ աւրհնելոյ 'ի շնորհացն Աստուծոյ հաւր՝ Մագնիսիա՝ որ է մերձ 'ի Մենանդրոս գետն, բազում ողջոյն»։

Գ. Առ Տրալլիանոսիացիս. (Τραλλιανοῖς). «Իգնատիոս որ է աստուածազգեաց, եկեղեցւոյ սիրեցելոյ յԱստուծոյ հաւրէ ... որ է 'ի Տրալլիանոս քաղաքս ասիացւոց»։

Դ. Առ Հռովմ քաղաք. (Πρὸς Ῥωμαιοῦς). «Իգնատիոս որ է աստուածազգեաց՝ եկեղեցւոյ հանգուցելոյ մեծութեանդ բարձրելոյն»։

Ե. Առ Փիլադելփիացիս. (Φιλαδελφεῦσιν). «Իգնատիոս որ է աստուածազգեաց, եկեղեցւոյ Աստուծոյ հաւր եւ Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ, որ է 'ի Փիլադելփիա քաղաք ասիացւոց»։

Զ. Առ Զմիւռնացիսն. (Σμυρναιοῖς). «Իգնատիոս որ է աստուածազգեաց, եկեղեցւոյ Աստուծոյ հաւր, եւ սիրելւոյ որդւոյ նորա Յիսուսի Քրիստոսի»։

Է. Առ Պաւղիկարպոս եպիսկոպոսն Զմիւռնիայ քաղաքին. (Πρός Πολύκαρπον). «Իգնատիոս որ է աստուածազգեաց՝ Պաւղիկարպոսի եկեղեցւոյ Զմիւռնեայ քաղաքին ... բազում ողջոյն»։

Ը. Թուղթ Մարիայ տիկնոջ 'ի Կասսաբլոն քաղաքէ, առ Իգնատիոս երանելի գրեալ. (Ἰγνατίῳ Μαρία ἐκ Κασσοβήλων). «Մարիա աղախին Յիսուսի Քրիստոսի, առ աստուածազգեացդ Իգնատիոս, երանաւէտ եպիսկոպոս առաքելական եկեղեցւոյն Անտիոքայ ասորւոց»։

կ'ընծայեն Իգնատիոսի, որոնք իր անուամբ հասած են առ մեզ, թէպէտ անոնց հարազատութեան վրայ կը տարակուսին կամ կը վիճեն քննադատք։ Մեր մատենագրութիւնն այս վերջիններուս ալ հին հայկական թարգմանութիւնն պահած է։ Հմուտք կը հաւանին թէ 'ի հինգերորդ դարու եղած է այս աշխատութիւնը, և հաւանականաբար յասորականէ, երեքտասան թղթոցն միանգամայն։ Այս է և Փեթըրման գերմանացւոյն կարծիք, որ հմուտ հայ և ասորի լեզուաց, մեր թարգմանութիւնը խնամով բաղդատեց ասորականին հետ, և հետաքննական ծանօթութիւններով և հայկական թարգմանութեան վրայ ընդարձակ յառաջաբանով հրատարակեց 'ի Լիփսիա յամի 1849, նախահօր Ուխտիս Մխիթարայ երջանիկ փոխման առաջին հարիւրեմեկին առթիւ. (S. Ignatii patris apostolici quæ feruntur epistolæ una cum ejusdem martyrio; collatis edd. græcis versionibusque syriaca, armeniaca, latinis, denuo recensuit notasque criticas adjecit Jul. Henr. Petermann, Dr. Univ. Berol. prof.). — Հայ թարգմանութեան վրայ ըրած տեսութեանց և քննադատութեանց մէջ տեղ տեղ կը վրիպի բազմագէտ հրատարակիչն. բայց ընդհանրապէս ուղիղ են իր կարծիք, – որոց մեք ալ կը համաձայնինք, – երբ կը համարի թէ հայերէն թարգմանութիւնը շատ տեղ կերպարանափոխութիւններ կրած է 'ի գրչաց, յորոց չէ զերծ և տպագիրն Պոլսոյ (1783) զոր միայն ունի իրեն առաջնորդ, առ պակասութեան հին և հաւատարիմ գրչագրաց՝ որոնք մեծապէս փափաքելի են, և որոց չենք հանդիպած նաև Էջմիածնի և Երուսաղեմի մատենադարանաց մեր քով գտնուած ցուցակներուն մէջ։

— Թուղթք երանելւոյն Իգնատիոսի աստուածազգեաց եպիսկոպոսի Անտիոքայ, գրեալք ըստ իւրա-

**ԻԲԱՍ** (Ibas)։ *Վասն երիտասարդաց բնութեան Իբասայ. «Զի նման է ջերմութիւն այնպիսոյն որպէս հրոյ. սասանօքն ջերմին լինի, և զկերակուրն զոր ուտէ՝ արագ զաւրէ հալել»* ։

## ԻԳՆԱՏԻՈՍ ԱՍՏՈՒԱԾԱԶԳԵԱՑ

(IGNACE, LE THÉOPHORE)

---

*Աստուածազգեաց ու առաքելական հայրապետիս համար կը վկայէ Եւսեբի յԵկեղեցական պատմութեանն* (Գ. ԼԶ) *թէ երբ յԱնտիոք քաղաքէ՝ ուր երկրորդ եպիսկոպոս էր յետ սրբոյ առաքելապետին, կը փոխադրուէր 'ի Հռովմ Տրայիանոս կայսեր հրամանաւ, 'ի ճանապարհի՝ «իբրև եմուտ 'ի Զմիւռնիայ՝ ուր էր Պաւղիկարպոս եպիսկոպոսն, գրեաց նա թուղթ մի առ եկեղեցին Եփեսացւոց ... միւս այլ թուղթ 'ի Մագնեսիայ քաղաք, այն որ է առ կողմն Մենենդրոս գետոյ ... և այլ միւս եւս դարձեալ Տրեղիոս քաղաքի ... և հանդերձ այնոքիմբք և առ եկեղեցին Հռովմայեցւոց գրեաց, և մատոյց նոցա նովաւ հաճութիւնս հաւանութեան զի մի հրաժարեսցին նոքա 'ի վկայութենէ նորա, և զրկեսցեն զնա յուսոյ անտի զոր սիրեաց ... Իսկ իբրև անցին ընդ Զմիւռնեայ 'ի Տրովաստանէ գրեաց նոցա դարձեալ միւսանգամ այնոցիկ՝ որ 'ի Փիղադեղփիա և առ եկեղեցին Զմիւռնացւոց. բայց յատկանէ յանուանէ առ Պաւղիկարպոս եպիսկոպոս նոցա, զի գիտէր եթէ նախանձաւոր և նմանող է առաքելոցն»* ։ *Այսչափ Եւսեբիոս, որուն կը համաձայնին Երանոս Լուգդոնի, Հերոնիմոս, Ոսկեբերան և այլք։ Բայց աւանդութիւն և եկեղեցւոյ հայրագիտութիւն այս յիշատակուածներէն զատ ուրիշ քանի մը թղթեր ալ*

cramentum tuum, Domine Jesu, ad vitam, sit ad remissionem peccatorum, siquidem pro nobis passio tua celebrata est. Tu pro nobis fel illud bibisti, ut omnis adversarii amaritudo moreretur. Pro nobis tu quoque bibisti acetum, ut nostra lassitudo confortaretur. Pro nobis consputatus es, ut immortali nos luce perfunderes. Percussus es a calamo fragili, ut fragilitatem nostram vitæ perpetuæ, æternitatisque firmares. Coronatus es spini, ut virenti semper, in te credentes, charitatis tuæ laures coronaris. Involutus præterea fuisti sindone, ut nos quodam virtutis tuæ involucro vestires. In sepulchro poni voluisti novo, ut nobis novam gratiam, nova sæcula reformares. Fiat igitur nobis hæc Eucharistia ad vitam, et viscera misericordiæ, et gratiam salutis, suavitatemque animarum nostrarum; amen ».

**ԹՈՒՂԹ ԵՐԿՆԱՌԱՔ**. « Խաւսք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ առաքեցաւ Թուղթս այս 'ի տաճար սրբոյն Պետրոսի 'ի Հռոմ քաղաքի » ։ Կամ ըստ այլ ձեռագրաց. « Թուղթ վասն կիրակէի. գրեալ է մատամբն աստուածային յառաջնմէ. — Եւ պապս Հռոմայեցւոց քաղաքիս, եկի 'ի տաճարս սուրբ առաքելոցս Պետրոսի և Պաւղոսի. և տեսի զայս 'ի մէջ խորանին 'ի վեր յաւդս. և տարածեցի զձեռս իմ »*։

* Այս Թուղթ կը գտնուի նաև առ Ասորիս. տես 'ի Catalogue des Manuscrits syriaques et sabéens de la Bibliothèque nationale, par M. H. Zotenberg յ'էջ 191. Lettre venue du ciel, entre les mains d'Athanase, patriarche de Rome, en l'an 1057 d'Alexandre. Comparez Prætorius, Mazhafe Tomar; Leipzig, 1869.

— ** Յաղագս պահոց և ապաշխարութեան. «Պարտ է այսուհետև, որդիք վերին Սիօնի, ժառանգք Աստուծոյ և ժառանգակիցք Քրիստոսի»։

— Ի միւսանգամ գալուստն Քրիստոսի և վասն ապաշխարութեան. «Լուսաւորեցան աստուածազարդ փառաւք»։

— Վասն զղջման. «Արդ պարտ է ամենայն մարդոյ զայս ածել զմտաւ»։

— Վասն արտասուաց և խոստովանութեան. «Յորժամ միտքդ զբաղեալ լինի ընդ մեղացդ.» (անհարազատ)։

## ԹՈՎՄԱՍ ԱՌԱՔԵԱԼ

(ST. THOMAS, L'APÔTRE)

---

— Աղօթք գոհութեան Թովմայի առաքելոյ ասացեալ. «Մարմին քո պատուական լիցի ինձ 'ի կեանս»։ Ի պատարագամատուցին որ յանուն սրբոյն Աթանասի 'ի գրչագրին որ 'ի Լուգդոն (Լիոն) Գաղղիոյ'[1] այսպիսի ունելով խորագիր. «Պատարագ սուրբ առաքելոյն Թումայի որ մի էր յերկոտասանից»*։

* Ի հնագիր վարս սրբոյն Թովմայի. «...Եւ իբրեւ աղաւթեաց զայս այսպէս, ետ նոցա ամենեցուն զաէրունական կնիքն։ Եւ մատուցեալ հաց և բաժակ աւրհնեաց այսպէս. «Մարմինդ քո պատուական լիցի մեզ 'ի կեանս, և արիւնդ քո 'ի թողութիւն մեղ. և փոխանակ լեղոյն զոր արբեր ...»։

* Ի կայսերական կոչեցեալ աղօթագիրս' տպագրեալ 'ի Գրեկիոն (1660) յ'էջ 133. Oratio IV post Communionem D. Thomæ apostoli, teste Abdia, lib. 7. Historiæ Apostolorum. « Sit nobis hoc sa-

[1] Տես յ'էջ 254։

ցեալ վասն Թաղման և յարութեան Յիսուսի Քրիստոսի աստուծոյ մերոյ. ( Pour la sépulture et résurrection de J. Chr. ). « Ո՞վ ոք ոչ հիանայ ընդ արարչութեանս հրաշափառ. ո՞վ ոք ոչ սխրանայ ընդ նորոգմանս գերապայծառ: Քանզի խաչ տաշէին և դժոխք սարսէին. բեւեռք հարկանէին, և նիզքն երկաթիք խորտակէին. զնոր Ադամն կապէին, և զհինն Ադամ արձակէին » :

— ** Երրորդ աւուր յարութեան, Թէոփիլոսի ասացեալ 'ի Թաղումն և 'ի յարութիւնն Քրիստոսի. (Sur le même sujet). « Քրիստոս բանն Հաւր և համագոյակից Հոգւոյն սրբոյ խոնարհի (այլ ձ. խոնարհեցաւ) 'ի հայրական ծոցոյ՝ և էառ մարմին 'ի Մարիամայ սրբոյ կուսէն. ծնաւ 'ի կուսէն և ոչ խախտեցաւ ծնունդն կուսական » :

— ** Ի յղութիւն Յովհաննու Մկրտչին և Կարապետին. (Panégyrique sur St. Jean-Baptiste). « Փողոյ ուրախութիւն և բարգաւաճութեան սկիզբն. այսաւր Ադամայ և Եւայի ձայն պետականին Գաբրիէլի առ Զաքարիայ և Եղիսաբեթ » :

— ** Նորին ասացեալ 'ի ծնունդս Կարապետին և Մկրտչին Յովհաննու. « Աւետեաց արմատ և սկիզբն ուրախութեան աշխարհիս այսաւր յորովայնէ Եղիսաբեթի երևեցաւ. ծաղիկ պայծառագոյն եդեմային այսաւր 'ի վիմէ ապառաժէ ծաղկեցաւ » :

— ** Երանելւոյն Թէոփիլէի աշակերտին Յոհաննու Ոսկեբերանի ասացեալ ներբողեան սուրբ առաքելոց երկոտասանից. (Sur les douze Apôtres). « Լոյս պայծառագոյն ծագեցաւ առ մեզ յիշատակ սրբոց առաքելոցն, և տիւ աներեկոյ. որ զարդարեաց արփիափայլ ժամուք երկոյտասանեաւք զհոգիս մեր լուսով պայծառագոյն » :

— Գովեստ յաւետարանն Յովհաննու. (այլ ձ. « յաւետարանիչն Յովհաննէս »). « Ընդ յաւժարութիւն սրտիս » :

բան է մարդասիրութիւնն Աստուծոյ. անճառ և անպատում է առաւելապէս խոնարհութիւն նորա. անքննելի և անհետազօտելի է ողորմութիւն նորա »:

## ԹԷՈՓԻԼՈՍ ԱՇԱԿ. ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

(THÉOPHILE, DISCIPLE DE ST. CHRYSOSTÔME)

---

— ** Սրբոյն Թէոփիլեայ ասացեալ 'ի սուրբ և 'ի սոսկալի ծնունդն փրկչին և վասն մոգուցն և աստեղըն և փառք 'ի բարձանց. (Sur la nativité et épiphanie de N. S.). « Ի մէջ տաւնասիրաց քրիստոսազգեցից զսոսկալի և զանպատում ծննդենէ ճառել յարմարիմ »:

— ** Թէոփիլոսի 'ի յարութիւնն Ղազարու. (Sur la résurrection de Lazare). « Սկիզբն հաւատարմութեան »:

— ** Երանելւոյն Թէոփիլեայ ասացեալ 'ի մեծի երկուշաբաթին' 'ի թզենին և յԱդամայ մերկութիւնն. յաղագս անիծիցն թզենւոյն և վասն ապաշխարութեան. (Pour le jour de Lundi-Saint). « Զծառս ծաղկազարդ »:

— ** Մեծի շաբաթու երանելւոյն Թէոփիլոսի աշակերտին Յովհաննու Ոսկեբերանի ասացեալ 'ի գերեզմանն աստուածընկալ. (Discours sur le sépulere qui a reçu l'Homme-Dieu). « Նոր երկինք այսաւր յերկրի հաստատեցաւ գերեզման փրկչին մերոյ. նոր երկինք և նոր սքանչելի զարմանք. քանզի տեղին այն լայնագոյն ցուցաւ քան զհաստատութիւն երկնից »:

— ** Երկրորդ աւուրն յարութեան, նորին Թէոփիլոսի աշակերտի Յովհաննու Ոսկեբերանի ասա֊

յունական սկզբնագրաց չիկրցանք հանդիպիլ։ Հայ թարգմանութեան ժամանակն ալ՝ ըստ հաւանականագոյն կարծեաց՝ հինգերորդին կը վերաբերի։

— ** Սրբոյ Թէոփիլոսի շնորհալից վարդապետի ասացեալ յաղագս միջնոց քառասնորդաց պահոց. (Discours sur le jeûne quadragésimal). «Ընդմիջեցաք զծով պահոցս քառասնորդաց. յորում մտաք նաւաւք թեթև 'ի ծով այս, ծով որ կարող է ցամաքեցուցանել զծով մեղաց»։

— ** Զորրորդ հինգշաբաթին միջնոց աղուհացից երանելոյ Թէոփիլոսի ասացեալ վասն քառասնորդացն պահոց. (Sur le même sujet). «Սովորութիւն է վաճառականաց՝ որ 'ի մի տեղւոջ կուտեալ հաւաքեն և ինչս մեծամեծս և զանազանս, զոր և 'ի պէտս իցէ մարդկան՝ անդ վաճառեն. և ուր գիտեն զսովորութիւնն՝ պատրաստեն զգինի»։

— ** Թէոփիլոսի ասացեալ ներբողեան սուրբ և պսակազգեաց քառասնիցն. (Panégyrique sur les quarante martyrs de Sébaste). «Բուրաստան ծաղկազարդ քառասնաթիւ ծառիւք զարդարեալ արմատացոյց մեզ լիճն Սեբաստեայ քաղաքին. ձմեռնատունկ վայելչացեալ եդեմային սաղարթաճեմ ծառովք»։

— ** Սրբոյն Թէոփիլոսի ասացեալ 'ի սուրբ քառասունսն, և 'ի խորհուրդ քառասնորդաց պահոցս. (Sur le même sujet). «Արդ եկայք հաւատացեալք ամենասուրբ Երրորդութեանն որք տարփայք 'ի տէր սրբոցն Աստուծոյ. և ունիք փափագ մասնակից լինել ճգնութեան սրբոց վկայիցն, մանկանցն քառանից որք 'ի Սեբաստիա հանդիսացեալ կատարեցան»։

— ** Մեծի չորեքշաբաթին երանելւոյն Թէոփիլոսի վարդապետի ասացեալ յաւետարանին պատմութենէ 'ի կինն պոռնիկ որ արդարացաւ. (Sur la femme adultère, justifiée par J. Chr.). «Բազում և ան-

# ԹԷՈՓԻԼՈՍ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ

## (THÉOPHILE, PATRIARCHE D'ALEXANDRIE)

---

Եկեղեցւոյ հին մատենագրութեան մէջ՝ երեք հայրապետք կը յիշուին այս անունով, ընծայելով անոնց այլեւայլ երկասիրութիւններ։ Առանցմէ առաջինն է Երաստայ յաջորդն 'ի հայրապետութեան Անտիոքայ, վեցերորդ յետ սրբոյ առաքելապետին, յառաջագոյն հեթանոս կրօնիւք, և ապա աշակերտեալ քրիստոսական ճշմարտութեան. և Երաստայ մահուընէն ետքը անոր յաջորդն յեպիսկոպոսութեան՝ յութերորդ ամի իշխանութեան Մարկոս Աւրեղիոս կայսեր (168)։ Գրեց ընդդէմ հերետութեանց Մարկիոնի և Հերմոգենեայ՝ որ կորսուած երկասիրութիւնք են, ինչպէս ուրիշ մանր գրութիւնք՝ որոց միայն յիշատակութիւնը կայ առ Եւսեբեայ և Հերոնիմոսի։ Անկորուստ մնացած են երեք գիրք նորա առ Աւտոլիկոս։ – Երկրորդն է Թէոփիլոս եպիսկոպոս Կեսարիոյ, 'ի վերջ երկրորդի դարուն, որուն կ'ընծայուի ժողովական նամակ մը՝ զոր գրեց 'ի դիմաց հարց ժողովոյն Պաղեստինացւոց, որուն կը նախագահէր ընդ Նարկիսոսի Երուսաղեմի։ Այս թուղթն ալ կորսուած է։ – Իսկ երրորդն էր Թէոփիլոս Անտիոքայ (385) զոր մեր գրչագիրք աշակերտ կը կոչեն Ոսկեբերանի, ուր եկեղեցւոյ պատմութիւնն իրեն նախանձորդաց և հակառակողաց թուոյն մէջ կը դասէ զնա։ Հաւանականաբար այս երրորդին են հայ թարգմանութեամբ առ մեզ հասած ճառք։ Մենք լաւագոյն սեպեցինք առանձին վերնագրի տակ զետեղել՝ ինչ որ 'ի գրչաց Ոսկեբերանի աշակերտին ընծայուած գտանք. միայն կանխենք ըսել թէ այս ամէն ճառից

Յիշատակարան Ճառիս. «Թարգմանեցաւ լուսազարդ և վայելչաշար Ճառս այս 'ի յունականէն 'ի մերս. հրամանաւ երից երանեալ հայրապետին տեառն Գրիգորիսի Հայոց մեծաց կաթողիկոսի, 'ի ձեռն իմաստուն և հանճարեղ Թարգմանչին Թէոփիստէի. զոր և մինչև ցայժմ Ճրագս այս Թաքուցեալ էր ընդ մահճաւք և ծածկեալ էր ընդ գրուանաւ: Իսկ 'ի հրամանէն Աստուծոյ յայտնեցաւ 'ի սուրբ վանս Արքայկաղնիս, իսկ իմոյ անարժանիս յոգնամեղ և անպիտան կրաւնաւորիս Պաւղոսի ըղձալի փափագանաւք գրեալ եգի զսա 'ի հոյակապ մայրաքաղաքացեալ սուրբ անապատս Արքայկաղնիս. 'ի յիշատակ մեղաւոր հոգւոյ իմոյ և ծնաւղաց իմոց: Իսկ համբաւ սորա եբրև զպատկազարդ Թագաւորի հասեալ 'ի յերկնանման սուրբ և աստուածաբնակ անապատն 'ի յԱկներն, առ լուսազգեստ սուրբ և երջանիկ հայրն Ստեփանոս. և նորա առաքեալ որակս հրամայեաց գրել և աւանդել զսա 'ի գրուանս սուրբ տաճարի Աստուածամաւրն, 'ի պայծառութիւն տաւնի մեր Լուսաւորչին և յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց և իմոյ ամենամեղիս. և ես ըստ իմում կարի գրեցի և առաքեցի. և աղերսալի պաղատանաւք աղաչեմ ով սրովբէանման դասք լուսերամից, յիշեսջիք աղաւթիւք զաստուածապատեալ հայրն զՍտեփանոս զառաջնորդ սուրբ ուխտիս Ականց անապատիս և զծնաւղսն. և զիմաստուն երաժիշտն զՄանուէլ որ ուսով իւրով բերաւղ եղև Ճառիս 'ի վանս»....: (Մատենադարան Ս. Երուսաղեմի. Թիւ գրչ. 32, 89): Տես ՅՈՎՀԱՆ ՈՍԿԵԲԵՐԱՆ:

սէն ծնաւ։ Եւ եթէ աստուած է ծնեալն՝ մարդ ե-ղեալ սքանչելեաւք և ոչ փոխադրութեամբն. և եթէ մի և նոյն է և այն և այս ասացեալ և ոչ խորհրդով անջատեալ։ Աւգնեա՛ տէր Յիսուս։ — Պայծառ և հրաշափառ է մերձակայ տաւնիս խորհուրդ, պայ-ծառ է՝ զի համարակաց փրկութիւն եած մարդկան. իսկ հրաշափառ՝ զի բնութեանն սահմանի յաղ-թեաց»։ Ոմանք 'ի գրչաց կը խորագրեն. «Նորին Թէոդոսի եպիսկոպոսի խաւսք երկրորդ 'ի յայտ-նութիւն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի քննութիւն գիմողաց. յորում թէ մի է աստուած։ Տէր Յիսուս աւգնեա ինձ. — Պայծառ է մերձա-կայ տաւնիս պատճառ. և համարակ փրկութիւն մարդկան բերեալ։ Պայծառ է և մերձակայ ժողով գոհութեամբ ընկալեալ զշնորհն՝ որոց գոհու-թեամբ ընդունեին զնա»*։

* Theodoti episcopi Ancyrani, expositio in Symbolum Nicænum adversus Nestorium, nunc primum edita ex biblioteca Barberina, græce et latine, ex versione Lucæ Holstenii. Romæ, typis Barberinis, 1669.

Theodoti Ancyrani adversus Nestorium liber ... ex versione et cum notis Francisci de Combessi, græce et latine. Paris, 1675.

## ԹԷՈՎՓԻԼՈՍ

(THÉOPHILE)

---

— ** Երանելւոյն Թէովփիլոսի ասացեալ ներբո-զեան պատմագրաբար սուրբ հաւրն մերոյ և լուսա-ւորչի, քահանայապետին Քրիստոսի և վկայի՝ մեծին Գրիգորի արքեպիսկոպոսի Հայոց մեծաց աշխարհի։

# ԹԷՈԴՈՏՈՍ ԱՆԿԻՒՐԻՈՑ

## (THÉODOTE D'ANCYRE)

---

Թէոդոտոս Անկիւրիոյ՝ որ 'ի գիրս մեր ընդհանրապէս Թէոդորոս կոչուած է, 'ի սկիզբն հինգերորդ դարու, ախոյեան եղաւ վարդապետութեան ուղղափառ հաւատոյ ընդդէմ Նեստորի։ Ակակայ Մելիտինոյ հայրապետին հետ շատ ջանաց ճանչցընել նմա զճշմարտութիւն. բայց երբ Նեստոր՝ իրենց պատճառաբանութեանց հայհոյութեամբ կը պատասխանէր, խզեց անոր հետ ամէն յարաբերութիւն, նախամեծար սեպելով զպարտս և զնախանձ անարատ պահպանութեան հաւատոց եկեղեցւոյ. ու այլևայլ ճառերովը 'ի ժողովին Եփեսոսի՝ հերքեց անոր մոլորութիւնները։ Ասոնցմէ երկու հասած են առ մեզ հայկական հին թարգմանութեամբ. իսկ յոյն սկզբնագիրք պահուած են առ Կալլանտի։

— **Սրբոյն Թէոդորոսի եպիսկոպոսի Անկիւրացւոյ 'ի ծնունդն Փրկչին՝ զոր ընթերցան առաջի ժողովոյն Եփեսոսի.** (Discours sur la Nativité de N. S., lu devant les Pères du Concile d'Éphèse). « Պայծառ առաջիկայ տաւնիս ստորագրութիւն, զհասարակաց փրկութիւն մարդկան բերելով. պայծառ և առաջիկայ ժողովս՝ գոհացողաբար ընդունելով զշնորհըս, և տուեալ լինի առատապէս այնոցիկ որք գոհութեամբ ընդունին զնա » ։

— **Սրբոյն Թէոդորոսի եպիսկոպոսի Անկիւրացւոյ 'ի ծնունդն Քրիստոսի.** « Պայծառ և հրաշափառագոյն է » ։ (Ըստ այլ ձձ). « Սրբոյն Թէոդոսի եպիսկոպոսի Անկիւրեայ. խաւսք յաւր ծննդեան փրկչին մերոյ և աստուծոյ Յիսուսի Քրիստոսի, յոր 'ի կու-

— ** *Թադէոսի առաքելոյ վասն յարութեան՝ մեռե-լոց.* (Sur la résurrection des morts). « *Արդ ամե-նայն ոգի ամենայն մարդոյ որ ելանէ 'ի մարմնոյ աստի՝ են նոցա աւթեւանք և բնակութիւն հանգըս-տեան* »։ (*Ըստ այլ ձձ*) . « *Ոգիք ամենայն մարդկան որ ելանեն աստի՝ ոչ մեռանին. այլ կան միան կեն-դանիք* »։

— ** *Սուրբ առաքելոյն Թադէոսի յաղագս առաջին գիւտի սուրբ խաչին որ յաւուրս Յակոբու առաքե-լոյ 'ի ձեռն Թագուհւոյն Պատրոնիկէ որ էր կին Կղաւդեայ կայսեր Հռովմայեցւոց.* « *Եւ արդ պատ-մեցից ձեզ վասն սուրբ խաչին որ 'ի ձեռն հաւատա-ցելոց. որ իբրև զձեզդ էին, երևեցաւ սքանչելի զաւրութիւն սուրբ խաչին* »։

**ԹԵՏԱԼԻՈՍ**, *Կոստանդնուպոլսի*։ — *Թուղթ յա-ղագս ընդունելոյ զգիրս Յայտնութեան յեկեղեցի Աստուծոյ*։ (*Տես* ԱՆԴՐԷԱՍ ԿՐԵՏԱՑԻ)։

**ԹԷՈԴՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ** . (THÉODOTE ÉVÊQUE). — *Այս եպիսկոպոսին ընծայուած կը գտնենք 'ի Ճառընտիրս սրբոյն Կիւրակոսի և մօր նորա Յուղի-տայ վկայաբանութիւնն հետևեալ խորագրով.* « *Ի Թէոդոս եպիսկոպոսէ առ մեծ եպիսկոպոսն Զոսի-մոս խնդալ։ Սովորութիւն է չար Թշնամւոյն* »։

— *Հատուած 'ի խմբագիր մեկնութենէ Ղեւտա-կան գրոց.* (*տես*). *Թիւղոդոսի.* « *Քանզի տեսեալ զքեզ, այս ինքն զժողովարանն, զկռապաշտութեան արեամբ զանկեալսն, և զարիւնս զոհիցն 'ի գիրկս ընկալեալ. Թոյլ ետու զոհել ոչ կռոց՝ այլ ինձ։ Եթէ ողջակէզ իցէ պատարագ նորա՝ յարջառոց արուան-արատ մատուսցէ. առ դուրս խորանին վկայու-թեան ածցէ զնա* »։

# ԹԱԴԷՈՍ ԱՌԱՔԵԱԼ

## ( ST. TADDÉE, L'APÔTRE )

---

— ** *Սահմանք կանոնաց սուրբ առաքելոյն Թադէոսի 'ի քաղաքն Ուռհայ 'ի լուսաւորելն զնոսա.* (Canons). « *Յորժամ լուսաւորեցաւ քաղաքն միրաութեամբ, ձեռնադրեցին եպիսկոպոսունս, քահանայս և սարկաւագունս և հաստատեցին վարդապետս աւրէնսուսոյցս. և եղեւ հաստատութիւն եկեղեցւոյ և սեղանոյ Աստուծոյ. սկսան հարցանել զնա զամենայն կարգաւորութիւն եկեղեցւոյ և զամենայն կրաւնս քրիստոնէից. և նա պատուիրեաց նոցա կարգաւ ըստ հրամանի փրկչին* »։

— « *Հարցումն առաջին. թէ որպէս պարտ է կալ եպիսկոպոսին 'ի տեսչութեան։ Ասէ առաքեալն. Եպիսկոպոսն եղիցի անարատ պարկեշտ ուսուցող. մի արծաթասէր* »։

Կանոններէն վերջը գրչագիրք կը յաւելուն. « *Իբրև կատարեաց առաքեալն Թադէոս զայս ամենայն, ասէ ցժողովուրդն. Հարք և եղբարք, որ տեառն ետուք զանձինս ձեր, այս ձեզ յինէն աւրէնք լիցի, և այլ որ յետ ձեզ լինելոց են. արդ հաստատուն կացէք յամենայնի զոր լուարուք յինէն. մի անցանէք ըստ սահմանս յայսմ՝ զի ձեզ բարի լինիցի և երկայնակեացք լինիցէք. եղիցի ձեզ յիշատակ բանս այս, և մի մոռանայք յաղաւթս ձեր. և զայլ կարգաւորութիւն ուսուսցէ ձեզ Ադդէ զամենայն զոր լուաւ յինէն, ըստ կարգին զոր եդին առաքեալքն տեառն՝ պահեսջիք խաղաղութեամբ 'ի փորձանաց չարին. խաղաղութիւն ընդ ձեզ։ Զայս աւրինադրութիւն ետ Զաքարիա աշակերտ առաքելոյն Թադէոսի. գրեցին որպէս լուան 'ի նմանէ* »։

# ԶԵՆՈԲ ԵՊԻՍԿՈՊՈՍ

(ZÉNOBE, ÉVÊQUE)

— ** Զենոբայ եպիսկոպոսի 'ի մատնութիւնն տեառն. (Discours sur la trahison de N. S.). « Մինչդեռ անդէն իսկ 'ի խորհրդին էին քահանայապետք, թէ զինչ պատճառս գտցեն որով սպանանել կարասցեն զՅիսուս » :

— ** Ի լուացումն ոտից աշակերտացն. (Sur le lavement de pieds des Apôtres). « Յետ խաւսելոյն Յուդայի ընդ քահանայապետսն » :

— ** Ի կաթուղիկէ եկեղեցին 'ի քառասներորդ չորրորդ սաղմոսէն. (Sur l'Église catholique). « Արդ եկ լուր դու. և երդ մի 'ի հոգևոր երգոց հոգեբարբառ երգողի՝ զինչ ասէ հարսն որ է եկեղեցի : Եւ անդ պատմէ քեզ ազգի ազգի վայելչութիւնս փեսային » :

— ** Վկայութիւն վասն մարդեղութեան. « Եւ ոչ ասեմք եթէ մահ մարմնոյն միայն է, որպէս և ասեմք եթէ կեանք բանին միայն. եթէ կեանք բանին և մարմնոյն են, և եթէ յաւերժ կենդանութիւն մշտնջենական բանին և մարմնոյն » :

— Ներբողեան 'ի սուրբն Մելիտոս Անտիոքայ հայրապետ. (Panégyrique sur S. Mélitus, patriarche d'Antioche). « Աւրհնեալ է այն որ յառաջ քան ընդնկարելն յորովայնի գիտէ զարդարն » :

— Վասն յիշատակի մարտիրոսաց. (Commémoration des martyrs). « Աւր է յիշատակի մարտիրոսաց » :

— Ը. « Տէր աստուած զաւրութեանց, աղաչեմ զքո բարերարութիւնդ. ձայնեմ և հայցեմ 'ի քէն, տուր ինձ տապան ապրեցուցիչ որպէս Նոյին՝ ապրել ինձ 'ի հրեղէն ծովէն և յանդնդային հրահոսանացն »:

— Կտակ Եփրեմի. (Testament). « Ես Եփրեմ մեռանիմ. գիտութիւն լիցի ձեզ որք Եդեսեայ՝ կտակ ձեզ թողում. աւրինակ յիշատակի վարդապետութեան »:

—** Կցուրդք՝ (Antiennes) յիսուն և մի թուով. որ 'ի մեր օրինակին սկսանին 'ի հնգետասաներորդէն. « Աւրհնեալ տէր որ 'ի հինգ նկանակէն յագեցոյց 'ի հազարս բազումս. որ քննես զծնունդ Որդւոյ՝ պատմեա զպարգեւէ նորա »: Ի վախճան յիսուն և մի կցուրդաց՝ հետևեալ յիշատակարան գրչին. « Կատարեցաւ կցուրդք ասացուածք Եփրեմի երանելւոյ՝ ձեռամբ անարհեստ գրողի Գրիգորի ապաշաւորի Ակներոյ վանիցս, 'ի թվին ՉԿԲ: Ի սոյն ամի սկիզբն արարաք շինման բերդին որ 'ի Քարաիզկնոյն »* :

* Ի տպագիր ցուցակին գրչագրաց Էջմիածնի (Թիւ 902) յորմէ գաղափարուած է և մերն, այսպէս նշանակուած կը գտնենք. « Ճառընտիր քառածալ նոտրագիր, գրեալ 'ի թղթի 'ի վանս Ակներոյ 'ի Գրիգոր վարդապետէ վանահօրէ սորին. պարունակին 'ի սմա Եփրեմի կցորդք, յորս տասն և չորսն պակաս 'ի ծայրն »: Գրչագրեալ 'ի թուականին Հայոց ՉԿԲ (1313) 'ի Սկեւռացւոյն Գրիգորէ, որպէս համարի ցանկօղն գրչագրաց Մատենադարանին [1]:

[1] Մատենախօսական տեղեկութիւնք Եփրեմի գրուածոց տես 'ի ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԵԱՆ յէջ 187-190:

(Բ. և Գ.) պակասէ յօրինակին։

Դ. Ե. Զ. Է. Վասն Նիկոմիդեայ։

Ը. Վասն Նիկոմիդեայ քաղաքի և ընկերաց իւրոց։

Թ. Վասն Նիկոմիդեայ քաղաքի, և վասն յարութեան և ազատութեան։

Ժ. Վասն Նիկոմիդեայ և վասն վարդապետութեան արանց։

ԺԱ. ԺԲ. ԺԳ. ԺԴ. Վասն Նիկոմիդեայ։

ԺԵ. Վասն Նիկոմիդացւոց և Նիծիբինացւոց որ զգեցան խորգս։

ԺԶ. Վասն Նիկոմիդեաց։ (Մատենադ. Ս. Երուսաղեմի, Թիւ գրչ. 326)։

— ** Սրբոյն աբբայ Եփրեմի խորին ասորւոյ աղօթք. (Prières). Ա. «Տէր, տէր, զտառապանս իմ և զցաւս հոգւոյ իմոյ բազմամեղիս. դարձ, ներեա և 'ի քեզ առաջնորդեա». (ՃԽԱ հատուածք)։

— Բ. «Տէր երկնի և երկրի, իշխան մահու և կենաց, դատաւոր կենդանեաց և մեռելոց, Քրիստոս աստուած, լոյս և ապաւէն հոգւոյս»։

— Գ. «Տէր իմ Յիսուս Քրիստոս, մի մտաներ 'ի դատաստան ընդ ծառայիս քո, և մի տար այլում զդատաստանս իմ»։

— Դ. «Տէր աստուած զաւրութեանց, աղաչեմք զքեզ՝ որ մեծդ ես և ահաւոր, ահեղ և սքանչելի, անեղ և անանցանելի»։

— Ե. «Փառք քեզ աստուած, փառք քեզ արարիչ յաւիտենից աստուած, փառք քեզ. որ շնորհեցեր հանգիստ տկարութեանս մերում»։

— Զ. «Փրկեա զիս, Յիսուս Քրիստոս, որդի աստուծոյ, 'ի բարկութենէն որ գալոցն է։ Որպէս փրկեցեր զԱդամ 'ի դժոխոցն. որպէս փրկեցեր զՆոյ 'ի ջրհեղեղէն»։

— Է. «Աղաչեմք զքեզ, Քրիստոս, փրկիչ աշխարհի. նայեա յիս և ողորմեա ինձ. փրկեա զիս 'ի բազմութենէ անաւրէնութեանց իմոց»։

— ** Ողբք սրբոյ հաւրն Եփրեմի ասացեալ վասն քաղաքին Նիկոմիդեայ. (Élégies du saint père Ephrem sur la ville de Nicomédie). Յիշատակարանն. « Զանէր Ներսէս արքաղան արքեպիսկոպոս Տարսոնի, և առաջնորդ սուրբ ուխտիս Սկեւռայ, որդի Աւշնի սեւաստոսի ստացաւ զսուրբ մատեանս, յիշեսջիք 'ի Քրիստոս հանդերձ գեղեցիկ և ծաղկեալ չորեսին հարազատաւքն, Հեթմիւ, Ապիրատիւ, Շահանշահիւ և Գրիգորիւ. և զիս զմեղուցեալ դրիչ զՅոհաննէս աշակերտ նորին ...»: Ուրիշ յիշատակարան մ'ալ. « Ես Յոհաննէս գեաւորս 'ի գրչաց, տեառն իմ հրամանաւ Ներսեսի իմոյ դաստիարակողի, և զիս յաստուածայինսն ձգաւղի, սկըսայ զողբքս զայս և զոգեշահ բանքս սուրբ հաւրն մերոյ Եփրեմի զոր ասացեալ է վասն Նիկոմիդեայ քաղաքի, և կատարեցի: Արդ որ ընթեռնոյք զսա՝ յիշեցէք 'ի Քրիստոս զտէր Ներսէս զսուրբ և ընտիր և զտիեզերական վարդապետս, ընդ նմին և զաստուածատէր մայր իւր տիկնանց տիկին Շահանդուխտ կոչեցեալ, և զհարազատս իւր զՀեթում սեւաստոս և զԱպիրատ և զՇահնշահ և զԳրիգոր »: Բայց յայս երկու յիշատակարանաց՝ 'ի վերջ իւրաքանչիւր ճառի, որ վեշտասան են թուով, կը յիշատակուին 'ի գրչէն Լամբրոնացւոյն և իր մօր անուանք՝ հանդերձ մաղթանօք. ինչպէս տեղ մը « Տէր Յիսուս ողորմեա տեառն Ներսեսի առաջնորդի մերոյ եղբայրութեանս. ընդ նմին և մաւր նորա մեծանուն Սեւաստուհւոյ, և այնոցիկ որք յիշենն զնոսա »:

— Ասացուած առաջին վասն յանդիմանութեան. « Ցաւ՝ ասել ստիպէ զիս, և կարգ՝ լռել հրամայէ. քանզի ինչ որ շատ իցէ՝ թէպէտև անոյշ իցէ, չէ անոյշ. ինչ որ չափով է շահեկան է. ինչ որ չափով է՝ անոյշ է:

ռական անգործութիւն, այլ և կռապաշտութիւն յանձն առնուս »:

— ** Վասն քնոյ և արթնութեան. (Sur le sommeil et la vigilance). « Մի՛ տայք իշխանութիւն քնոյ թագաւորել յանդամս ձեր: Լուարուք զաղէան զոր գործեաց 'ի յերկրի. քաջքնեցէք և փախերուք 'ի նմանէ »:

— Ի նոյն գրոց վասն հսկողաց. « Ժուժեցայք փոքր մի, առաքինիք, բառնալ զծանրութիւն խաւարի. զի ահա փոքր մի, և կատարեաց զժամս իւր »:

— ** Յաղագս խոնարհութեան. (Sur l'humilité). « Արդ որպէս ասէ առաքեալն, ամենայն խոնարհութեամբ զմիմեանս լաւ համարել քան զանձինս: Արդ ամենայն ասել՝ յայտ է թէ բազում մասունք են խոնարհութեան ».* :

* Գրչագիր մը Անանիայի Շիրակացւոյ կ'ընծայէ զՃառս:

— Նորին ասացեալ վասն ողորմութեան. (Sur l'aumône). « Ոսկի որչափ 'ի տան իցէ՝ երկիւղ է յականահատաց և 'ի գողոց աւազակաց և 'ի յափշտակողաց »:

— ** Յաղագս խորհրդոց մաքրութեան. (Sur la pureté du cœur). « Արդ նախ և առաջին քան զամենայն առաքինութիւն, խորհրդոց մաքրութեան ջանա. վասն այնորիկ ասէ մարգարէն. Աստուած փառաւորեալ է 'ի խորհուրդս սրբոց իւրոց »:

— Վասն պահոց (հատուած). « Եւ ոչինչ է որ արգելու զքեզ յայնպիսի երկնային բարձրութենէն և 'ի խոնարհ ձգէ, բայց միայն հեղգութիւն պահոց և ծանրութիւն որովայնի »:

— Վասն աղօթից (հատուած). « Արդ գիտելով զայս ամենայն ստանայի, եթէ այս ամենայն մեծութեան պարգևս 'ի ձեռն աղաւթիցն շնորհի մարդկան յԱստուծոյ »:

— Ի յարութիւն մեռելոց. (Sur la résurrection des morts). « Մի՛ որք անհաւատացիք վասն յաւիտենական կենացն. քանզի թէ ոչ հաւանի այնոցիկ էր, ոչինչ յեկեցս մնացեալ լինէր »* :

* Ի ստորին լուսանցս ճառին գրէ ստացողն (Գր. կաթ. կամ եպիսկ.). « Ո՛հ, գեղեցիկ ճառիս և համեղագոյն մեկնութեանս, ընթերցող, եթէ գիտիցես » :

— ** Վասն դատաստանին և միւսանգամ գալըստեան. (Sur le jugement dernier). « Եկայք ամենեքեան, եղբարք, լուարուք ինձ և խորհրդակցութեան իմոյ մեղաւորի և ողբոյ Եփրեմի. քանզի ժամանեաց մեզ աւուրն այն ահաւոր և մեծ » :

— ** Յաղագս ապաշխարութեան 'ի պահս քառասնորդաց. (Sur la pénitence et les jeûnes). « Ի շաւիղս փառաց քոց, տէր, ընթանան բանք իմ, որդի Աստուծոյ, քանզի քեզ պարտին տալ փառք ամենայն բնութիւնք բանաւորաց » :

— Յորդորումն պահոց. « Պահք յայտնիք՝ ծածուկ պահաւք բովանդակին. և որ արգելուն 'ի կերակրոց, արգելմամբ չարեաց կատարին. քանզի ոչ 'ի միոյ անդամոյ կայ մարմին, և ոչ միով քարիւ կատարի շինուած » :

— Յորդորումն ապաշխարութեան. « Հոգեւորապէս նորոգեցարուք, եղբարք. մի՛ մարմնով ըստ մարմնոյ, այլ մարմնով ըստ հոգւոյ »* :

* Հատուածք 'ի ճառընտիրս. — Յաղագս ապաշխարութեան. « Արդ լուացարուք, արդ սրբեցարուք » : — Վասն ապաշխարութեան. « Ասէ երանելի մարգարէն Եզեկիէլ. Անաւրէնն եթէ դարձցի » :

— ** Յայն ճառէն որ վասն երաշտի և վաշխառուաց. (Fragment d'un discours contre les usuriers). « Վասն քո եղև սովս. ոչ եթէ յատելեաց եւիք յայգմանէ, որպէս ասէիր: Եթէ ո՞չ էր քեզ բա-

— Եփրեմի բանք աստուածայինք և զղջականք և աղիտանի ամենայն կրօնաւորաց: (Մատենադ. Մխի-թարեանց 'ի Վիեննա, Թիւ գրչ. 58):

— Եփրեմի և Ոսկեբերանի Մեկնութիւն 'ի Թուղթ-ոցն Պաւղոսի:

— Մեկնութիւն Եզեկիելի. ('ի Վան):

— Մեկնութիւն Եսայեայ. (Մատենադարան Էջ-միածնի): * Ի Մինէրվա գրատան Հռովմայ կը յիշա-տակուի' ուրիշ հայ գրչագրաց հետ' Ephrem (S.). Commentarii in Isaiam et Ieremiam, armenice.

— ** « Կանոն մեծի Հինգշաբաթուն Ոտնլուա-յին ըստ որում ասացն Յիսուս Թէ օրինակ մի ետու ձեզ: Զոր արարեալ է տեառն Եփրեմի խորին Ասոր-ւոյ, զոր Թարգմանեաց սուրբ կաթողիկոսն Հայոց Գրիգորիս վկայասէրն »:

— Ի Հաւատոց գրոց. « Զարթուցուք, եղբարք, զքնէածութիւն մեր »:

— Ընդդէմ յիշոցաց, և լուծման չորեքշաբաթի և ուրբաթու. « Ով եղբարք իմ սիրելիք և քրիստոսա-սէր ժողովուրդք »* :

* Ի Մատենադ. Էջմ. (Թիւ 914). « Երանելւոյն Եփրեմի խորին ասորւոյ ասացեալ վասն յիշոցնա-տուաց, կամ այնոցիկ որք ուտեն զպահս ուրբաթու և չորեքշաբաթու, և լինին մասնակից խաչահա-նուացն »:

— Կանոն տեառն Եփրեմի արդիւնակատար կրօ-նաւորի. զոր ուսուցանէր յանապատն 'ի Կուսու-թեան Ճառէն. « Քահանայ կամ կրօնաւոր կամ սարկաւագ որ կամակոր մտաւք ինքեան ընկենուն զպատիւն կամ զքեմն վասն ծանրութեան կամ ծու-լութեան »:

— ** Երանելւոյն Եփրեմի յարեւելեան գրոցն ասա-ցեալ. (Sur les Martyrs d'Orient). Վկայութիւն բազմացն որոց արեւելեայց որք կատարեցան վասն Քրիստոսի:

— Եփրեմի խուրին տարեալ «Մեկնութիւն երկոտասան մարգարէից» : (Commentaire sur les livres des douzes prophètes). Կայ յիշատակուի Էջմիածնի Մատենադարանին գրչագրաց ցուցակին մէջ (Թիւ 1226), «Բառածալ բոլորագիր գրեալ 'ի Թուղթ բամբակեայ յԵրզնկա, 'ի Սահակայ երիցուէ 'ի Թուին Հայոց ՌԽԲ (1593). ունի զյիշատակարան» : Կայ և ասորի բնագիրն :

— Սորոյն Եփրեմի ասացեալ· (Fragments). «Մի տարաբերէք պյուտահատութիւն ձեր առ դատաւորն որ զգնացեալսն արտամեցուցանէ և զձեզ չարչարէ» :

— Նորին ասացեալ· «Ոսկերք մեռելոց որ 'ի գերեզմանս են, ահա բղխեն զցաւղն կենաց» :

— Նորին. «Ծողովեցէք և ամբարեցէք յիմաստութեան միտս ձեր. զի 'ի ժամանակի տառապանաց որկանիցէք վտանգեալ մնալոց 'ի վշտաց օգնականութիւն» :

— ** Ճառ սորոյն Եփրեմի յաղագս գործի աղգէ Ծանապլեաց 'ի ձեռն Անդրէի տառապելոյ. «Ամենակալն Յիսուս Աստուած մեր՝ յաղթեալ 'ի խաչին չարչարանաւք՝ կործեցեալ իշխանին աշխարհիս» : (Մատենադ. Էջմ. Թիւ 893) :

— Նորին սրբոյն Եփրեմի ասացեալ 'ի գործ մեղաւորաց. «Ես արդ մի վերջանայք 'ի զղջմանէ» : (Անդ) :

— Ճառք Եփրեմ Խորւոյն «Թարգմանեալք 'ի Գէորգէ ումեմնէ 'ի Քեսուն քաղաքին, 'ի միասին եդեալ ընդ սուրբ բնագրին» : (Մատենադ. Էջմիածնի, Թիւ 899) : Ցանկողն կ'ըսէ Թէ ունի յիշատակարան, յորում կան նաև Ճառք Սեբերիանոս Եմեսու եպիսկոպոսի, գրչագրեալ 'ի Թուին Հայոց ՈԿԴ (1215) : Յիշատակարանէն քանի մի տողք՝ որ մեր ձեռքն հասած են. «Զգէորգ մեղապարտս յիշեսջիք մեղաց Թողութեամբ 'ի Քրիստոս, որ զայս համգիտաւոր Ճառս Թարգմանեցի 'ի քաղաքս Քեսուն» :

ցուց գրոց՝ վասն կերակրոց զոր ուտեն հաւատացեալք առողջ մտաւք »։

— ** Ներբողեան ասացեալ պատմագրաբար 'ի սուրբն Յովհաննէս կարապետն և մկրտիչ Յիսուսի Քրիստոսի և 'ի կաքաւումն Հերովդիադայ. (Sur S. Jean-Baptiste, précurseur de N. S.). « Հրաւիրելով կոչեցաւ լեզու իմ յուրախարար և 'ի կենսաբեր բանիս, և փափաքեաց միտք իմ բազմել ուսմամբ 'ի հոգևոր սեղանս »*։

* Ճառընտիրք 'ի մեր Մատենադարանի յաւելուն 'ի խորագրին. « Թարգմանեալ տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի » որ է վկայասէրն։ — Հատուած 'ի Ճառընտիրս. « Եւ մինչ էր սուրբն Յովհաննէս 'ի բանտին »։

— ** Ի սուրբն Ստեփաննոս նախավկայն Քրիստոսի. (Sur S. Etienne, le protomartyr). « Անդրանիկն մարտիրոսաց կոչեաց զիս 'ի հոգևոր հարսանիս իւր. շնորհեա ինձ, տէր, պարգևաւք մտանել առ նա, և ուրախանալ յառագաստ նորա »։

— ** Ի գալըստեան տեառն 'ի տաճարն քառասնաւրեայ, և 'ի ծերունին Սիմէոն. (Sur la présentation de N. S. au Temple). « Որ անսկիզբն ես յէութեան, անպարագրելի բանդ Հաւր՝ յառաջ քան զյաւիտեանս հաճեցար լինել տղայ 'ի կուսէն, բաց ըզշըրթունս իմ գովել զաստուածային ծնունդ քո »։

— Երանելոյն Եփրեմի յաղագս կրաւնաւորութեան. ('Γοῦ ἀγιοῦ Εφραιμ τοῦ Συροῦ λόγος ἀσκητικός. « Յաւս հարկ առնէ ինձ ասել, և անարժանութիւնս իմ սաստէ ինձ լռել. երկուցեալ խաւսել բանագատեն, և մեղք իմ զլռութիւն ունել ինձ հարկեցուցանեն »։

— ** Եփրեմի սուրբ վարդապետի 'ի հինգերորդ թարգմանութենէ. « Յորժամ երիտասարդն էիր, պարտ էր քեզ զաներևոյթոն խորհել »։ (Այլք Ոսկեբերանի մակագրեն)։

ցուք, եղբարք, զհրաշագործ անաւրէնութիւն միածնին և անճառ բանին, որ 'ի սկզբանէ առ Աստուած՝ Աստուած բանն »* ։

* Փարիզու մատենադարանին գրչագիր մը (Թիւ 479) Կիւրղի աղեքսանդրացւոյ կ'ընծայէ զայս ճառ ։

— ** Յենովք և յ'Եղիա. (Sur Hénoch et Hélie). « Արդարն Ենովք մեզ այսաւր երկնային կերակուր տայ. քանզի վասն որ 'ի նմա շնորհին զմտաւ ածեմք » ։

— ** Առ Յովսէփ. (Sur Joseph, l'hébreux). « Գարկեշան Յովսէփ վաճառեցաւ յիւրոց եղբարցն. բայց ինքն վաճառէ զկենդանութիւն իւրև յաղթերէ ատհեալ » ։

— Յապաշխարութիւնն Նինուէացւոց. (Sur la pénitence des Ninivites). « Ահա հրաման հասեալ առ մարգարէն Յովնան քարոզել Նինուէի ։ Եմուտ 'ի քաղաքն, և ահեղ ձայն նորա խռովեցոյց զամենեսեան »* ։

* Կը գտնուի 'ի մատենագրութիւնս Եփրեմի Syr. Lat. (Հատ. Բ. 359) և Græc. Lat. (Հատ. Գ. 561) միայն 'ի լատին ։ Մեր թարգմանութիւնը թերթ միոյն կը համաձայնի և թերթ միւսոյն ։ Նոյն ճառէն հատուած թուի 'ի ճառընտիրս. « Յոյնժամ յարուցեալ թագաւորն » ։

— ** Ի յիշատակի որբոց Մակաբայեցւոցն ասացեալ վասն կերակրոց զոր ուտէն հաւատացեալք առողջ մտաւք. (Sur les Machabéens). « Արար Աստուած զերկինս, զերկիր և զամենայն որ է 'ի նոսա. և ահա բարի են յոյժ »* ։

* Փարիզեան մատենադարանի գրչագիր մը խորագրէ յանուն Եփրեմի Նիկոմիդացւոյ ։

Խորագիր 'ի ճառընտրի Սողոմոնի Մաքենոցաց առաջնորդի. « Ի յիշատակի որբոց Մակաբայեցւոց նորին երանելւոյն Եփրեմի ասացեալ 'ի Նիկոմիդա-

* Հատուածք են յիշուած ծննդեան ճառին և հետևեալքն, զորս կը գտնենք նաև մեր Մատենադարանին Ճառընտրաց մէջ՝ նման խորագրներ կրելով. — Վասն գալստեան Գաբրիելի առ կոյսն Մարիամ « Ընկալեալ ծառային զհրաւիրաւորն » ։ — Յաւետիս կուսին Մարիամու և յղանալ բանին Աստուծոյ. « Եկեալ հրաման մեծ » ։ — Ի ծնունդ Քրիստոսի և 'ի փառաւորանութիւն հովուացն և մոգուց. « Ընծայեալ հրեշտակացն աւետարանեցին հովուաց » ։

— * Ի գալըստեան Փրկչին յԵրուսաղէմ և 'ի սուրբ տաւն բարեբանութեան. (Sur l'entrée de N. S. à Jérusalem, et le jour des Rameaux). « Ի տօնիս տօնից լի ընտրողութեամբ հրաւիրեալ էք. եղբարք իմ սիրելիք. մատուցէք զարդիւնս գովութեանց իմաստուն հրաւիրողին ձերոյ » ։

* Ի Մատենադարանին էջմիածնի (Թիւ 915) այսպիսի խորագրաւ. « Ի մեծի աւուր գալստեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի յԵրուսաղէմ, երանելւոյն սրբոյ Եփրեմի ասացեալ, որ է սուրբ տաւնին բարեբանութեան՝ որ և Ողոգոմեան կոչի » ։

— ** Ի յարութիւն Փրկչին մերոյ. (Sur la résurrection de N. S.). « Յաւուր յորում յարեաւ Քրիստոս, և լուծաւ գողումն յաշակերտաւն, առէ Շմաւոն ցայլ առաքեալսն. երթամ որսայց ձուկն » ։

— ** Յայլակերպութիւն տեառն. (Sur la transfiguration de N. S. à Thabor). « Յերկիրէ հունձք և ուրախութիւնք. յայգեաց պտուղք անթիւք, 'ի գրոց՝ վարդապետութիւն կենաց » * ։

* Ի Մատենադ. էջմիածնի (Թիւ 918) այս մակագրով. « Երանելւոյն Եփրեմի խօսքն ասորւոյ ասացեալ 'ի մեծի աւուր վարդավառին 'ի Մատթէոսի աւետարանի մեկնութենէն » ։

— ** Ներբողեան 'ի սուրբ խաչն աստուածընկալ. (Panégyrique sur la sainte Croix). « Աւրհնեա-

ժուարին է բերանոյ իմոյ խաւսել զմեծ խորհուրդս նուաստ լեզուաւ »* ։

* Ի ցուցակին Էջմիածնի (Թիւ 893) այս խորագրով. « Երանելւոյն Եփրեմի ներբողեան յաւետիս կուսին Մարիամու և 'ի ծնունդն Քրիստոսի Աստուծոյ » ։ Ծանօթ. 'ի տպ. Վենետկոյ. « Ի ճառից սորայն Եփրեմի զերկուս եւեթ զսա և զԱստեփանոսին՝ Յակոբայ Սրճոյ եպիսկոպոսի առէ լինել Ասսեմանի յարևելեան մատենագրութիւնս (Հատ. Ա. 309) իւր. այլ որ առ մեզ կան գրչագիր օրինակք՝ չորս առաջինկայ ճառից 'ի ԾԶ. Բ. Գ. և յԱսկեփորն ԺԸ. և այլ չորրորդ մի. և երկու այլ միւսոյն՝ Եփրեմի ունին զանուն » ։

Ի մատենագրութիւնս Եփրեմի, որ հրատարակուած են յամի 1740, 'ի Հռովմ 'ի Վատիկանեան տպարանի, ասորի բնագրաւ և լատին թարգմանութեամբ կան ճառք երեքտասան (Հատ. Բ. 396–435) 'ի ծնունդն Քրիստոսի, յորոց և ոչ մին ունի նմանութիւն ընդ մերումս.

— Եփրեմի 'ի ծնունդ տեառն. « Որք պայծառացաք » ։ (Մատենադ. Էջմ. Թիւ գրչ. 890)։

— ** Վասն գալստեան հրեշտակապետին Գաբրիելի առ կոյսն Մարիամ. (Sur l'Annonciation). « Ընկալեալ ծառային զհրովարտակ մեծ թագաւորին » ։ — Նորին Եփրեմի խուրին ասորւոյ ասացեալ յաւետիս կուսին Մարիամու և յղանալ նորա բանին Աստուծոյ. « Եկեալ հրաման մեծի արքայի » ։ — Նորին ասացեալ վասն հաւատալոյն Յովսեփայ 'ի ծնունդն Քրիստոսի երևմամբ հրեշտակապետին. « Եւ մինչդեռ յայնպիսի խորհրդոյն տագնապէր Յովսէփ » ։ — Նորին ասացեալ 'ի ծնունդն Քրիստոսի և 'ի փառաբանութիւն հովուացն և մոգուց թագաւորաց. « Ընթացեալ հրեշտակացն աւետարանեցին հովուացն »։ (Մատենադ. Էջմիածնի, Թիւ 888, 893, 923)* ։

թով և խոշոր, զորս աղաչեմ անմեղադիր լինել ան-
հեզեզ գրոյս և աղքատ քարտեսիս. այլ զաշխա-
տութիւնս զոր ընկալա 'ի սմա զայս առ և ընկալ և
ուրախ լեր 'ի սէր սրբոցս. վասն զի թէ տայցես յա-
նաւթ այլում ումեք ոսկի փոխան ուժգին առցես.
զի չէ բաւական գանձք որ արժեն զսոսա »:

— Ուրիշ գրչի յիշատակարան մ'ալ. «Ցամի յորում
էր հայ թուականն ՆՂ վճարեցաւ 'ի մարդկանէ ար-
քայն Հայոց մեծիմաստն Յովհաննէս: Գաւի ես Սար-
գիս վարդապետ զգիրքս զայս յարքունական տան
գանձուն անկեալ 'ի յանկեան միում անայցելու
թափառեալ թաւալէր յաճիւն յատակին և գրեթէ
լայր լալերայն: Իսկ իմ հայեցեալ խնամով 'ի դրա-
նոցին, և ըստ սովորական մեր ախորժակացս զյա-
քունս բացեալ 'ի բանսն բերկրէր. և սա զատուցեալ
յընկերացն կայր կարաւտ ձեռին առ ինքն կարկա-
ռելոյ: Զոր առա առեալ իմ ընդ իս տարայ՝ հանեալ
'ի բանդէն »:

— Երրորդ մ'ալ՝ աւելի կրասերագոյն ժամանա-
կաւ և գրչութեամբ, Գրիգորի որդի Տուտայ (Տու-
տէորդի). «Ես Գրիգոր նուաստ 'ի մակս քանակու-
թեանց ուսումնական արտագրութեանց, յաղագ
տանէ, ստացայ զմարգարիտս հաւատոյ, յաւերժ ցըն-
ծութեամբ անձին, և յիշատակ հոգւոյ. 'ի ՌԳ
թուոյ, կազմեցի ձեռամբ իմով. յաշխարհս այրարա-
տեան 'ի վանս Յովհաննու, 'ի գաւրս սրբոյ Կարապե-
տիս ...»:

— ** Ճառք 'ի ծնունդն Քրիստոսի աստուծոյ մե-
րոյ. (Discours sur la Nativité de N. S.). «Որ էրն 'ի
սկզբանէ առ աստուած, աստուած բանն, կենդանի,
զաւրաւոր, աթոռակից Հաւր, ահաւոր, բարձրեալ.
հզաւր »:

— **Ներբողեան ասացեալ 'ի ծնունդն Քրիստոսի.
«Սքանչելի է ծնունդն քո, Որդի Աստուծոյ, և գը-

յուզէր խնդրէր զգիրս տեառն Եփրեմի զհին կտա-
կարանաց թարգմանութիւն և զնոր. զոր և գնացի
յաշխարհն ուստի և սուրբ առաքեալն Բարթողի-
մէոսն կատարեցաւ 'ի տեղւոջն որ աւթառակալու-
թիւն Արծրունեաց տանն կոչի Եղենի անուն ինչ տե-
ղոյն. և գտի զմեկնութիւն երանելի առաքելոյն
տեառն Եփրեմի խուրին ասորւոյ և գրեցի 'ի սորոյ
և 'ի հին աւրինակէ զոր և բերի. և այսու միայնոյ
ոչ հաւանեալ. այլ և այլ տեղ գտի զերանելոյն տեառն
Յովհաննու Ոսկեբերանի կարճառաւտ մեկնութիւն
ԺԴ թղթոցն Պաւղոսի և 'ի մին գիրս գրեցի. նախ
առաջին զտեառն Եփրեմի և ապա զտեառն Յոհան-
նու. զոր և անքաւ և մեծ գիտութիւն յինքեան
բովանդակեալ ունի. և գրեցաւ գիրքս տեառն Եփ-
րեմի որպէս յառաջն ասացի յԱղբագ գաւառի 'ի
տանն Արծրունեաց, և զերկրորդ գիրքս 'ի Կոգո-
վիտ գաւառի 'ի տանն Բագրատունեաց եպիսկո-
պոսարանի 'ի տեառն Թադէոսի. 'ի ժամանակի
տեառն Մուշէի եղբաւրորդւոյ որ զառաքելոյն
Թադէոսի ունէր զվարս և զորբութիւն. զոր հա-
մարձակիմ և ասեմ թէ զսուրբ և զմաքուր կուսու-
թիւնն աւետարանչին Յոհաննու. այր խստակրաւն
և պարկեշտ և վկայեալ յամենայն բերանոյ և
յԱստուծոյ փառաւորեալ: Ի սորա յաւուրս և
Աստուած հաշտ էր ընդ աշխարհս. զի կենդանի
մարդ էր և Աստուծոյ հանապազ մեռեալ. և ա-
մենայն հոգևոր գանձու գիտութեան է շտեմարան.
զոր չէ բաւական ժամանակս բարեբանել զերանելի
հոգին որքան արժան է. այլ յայնմ ժամու և 'ի ձեռն
նորա գրեցաւ գիրքս 'ի ՆԽ և ութ թուականու-
թեանս Հայոց 'ի թագաւորութեան Գագկա որդւոյ
Աշոտոյ. և 'ի հարմանն Պարսից 'ի ձեռաց Դաւթի
կորապաղատի աւգնականութեամբն Աստուծոյ.
յայնմ ժամանակի այս գիրք գրեցան աղքատ Նի-

Հօրս լուսաւորեաց զա(ղ)գն Յունաց. և տէր Եփ-րեմ Ասորեստանեայց ազգին անձուալ ծագեաց ա-րեգակն. և զբազմագունն բանին և զմթին Պաւղոսի երանելւոյ առաքելոյ բացերեւութաբար և յայտնի մեզ ցուցին. սոքա են Լերինք մշանջենաւորք սեպք և ուղղորդք անսասանելիք չար և նենգաւոր գազա-նաց. որդ եթէ ոք ինձ նման իցէ մի մերձիցի, գուցէ քարկոծեսցի. զի մի խայտաբղէտ իցէ անմաքուր վա-րուք. և մի ոք անասնական կերպիւ գայլենի 'ի ներ-քուստ և արտաքուստ գառնենի երկդիմի բնութեամբ մի մերձեսցի 'ի լեառնս. և դարձեալ մի ոք սրբաբացի և ընդդիմագրող և հակառակող. քարկոծեսցին 'ի վե-մէն զոր առանց ձեռքին 'ի լեռնէն հատաւ չափ աշ-խարհի. և մի ոք և այլ ինչ և աղանդաւոր զոր և 'ի ժամանակիս տեսանեմ. վասն զի լուծանել հրամայէ զերկրպաքարշ և զմեղսաթաւալ կաւշիկ. և զաւրէն մեծին Մովսեսի յիմանալի լեառնն ելանել և ընդ ամ-պովն լինել և ընդ Աստուծոյ խաւսել: Այս լերինք մշանջենաւորք են գիտանոց դրախտին Աստուծոյ որ գեղեցկապէս բուրեն 'ի մեզ զբուրումն բուրաստա-նաց Աստուծոյ՝ զերանելոյն ասեմ զսրբոյն Պաւղոսի և որ հոտ անոյշ էր 'ի Քրիստոս 'ի մէջ երկուց բնու-թեանց բարւոյ և չարի. սոքա հնչեցուցանեն 'ի մեզ ոչ փողոց բարբառ և բանք սադնապողք. այլ զՔրիս-տոս 'ի Պաւղոսէ քարոզեալ և յայտնեալ և կենա-գործեալ զաշխարհս. սոքա մածեալ և անառիկ բար-ձըր գիտանոցք. որք ցուցանեն ոչ տախտակք քարկո-ծողք այլ կեանք աւետարանականք և առաքելականք, միանգամայն և մարգարէականքն. սոքա և եւթնա-պատիկ ծագեալ քան զարեգակն փախստական ա-րարին զխաւար ագիտութեան յազգէ մարդկան, վասն որոյ և առաւել եւս յազգէս Հայոց. ուստի և ես Սիմէովն նուաստ և անպիտան կրաւնաւոր որ ընթերցաւէր և ցանկացող եղեալ մանկութենէ իմմէ

որ խաւսքերին զնոսա պահել զպահպանութիւնս աւրինացն » :

— ** Առ Տիմոթէոս երկրորդ. (Sur la seconde epître à Timothée). « Պաւղոս ծանեաւ հոգւովն որ էր 'ի նմա՝ եթէ մերձեալ է ժամանակ վախճանի իւրոյ ելանել նմա յաշխարհէ աստի յայսմանէ » .

— ** Առ Տիտոս. (Sur l'epître à Tite). « Պաւղոս եթող զՏիտոս 'ի Կրետէ իբրև զվերակացու և իբրև զեպիսկոպոս, զի շրջեսցի նա և կացուսցէ երիցունս 'ի քաղաքս քաղաքս. և այլ իրք որ պակաս իցեն 'ի տեղիս տեղիս՝ ուղղեսցէ » :

Յիշատակարանն. — « Փառք ամենասուրբ երրորդութեանն որ հասոյց ցյետին գիրս գրաւղիս, ամէն : Յանուն Աստուծոյ գրեցաւ գիրքս 'ի ՆԽԸ թուականիս Հայոց 'ի հայրապետութեանն տեառն Սարգսի Հայոց կաթողիկոսի և 'ի թագաւորութեանն Սենեքերիմայ որդւոյ Աբուսահլի. ձեռամբ Սիմէոնի վարդապետի և կրաւնաւորի՝ զորս զկարգացողսդ աղաչեմ յաստուածամատոյց աղաւթսդ անմոռաց յիշմամբ յիշատակել աղաչեմ. և զախրանուն զկազմիչ և զյաւրինիչ գրոցս յաղաւթից անմոռաց ունել և Աստուած փոխարէն հատուսցէ յետին աւուրն. թուեցիմք թէ աւելորդ ինչ բանս յաւացեալս յաւելցաւք. վասն զի այլայլի 'ի գալ արփւոյն և բազմածիրք աստեղացն և 'ի մանկութենէ փախստեա ընթանա ծերութիւն. տեղի տայ և ձմեռն գարնանայինն և եղանակաց միանգամայն և հիւանդութիւն քաջողջութեանն և պայծառ և չքնաղ տեսակաց. զորս և աստուստ սակաւիկ ինչ բանքս զոր ասելս կամիմ արքելոց զիս հոգիս և լաել անպիտան վարկանիմ. զոր և իբր իմ 'ի մէջ երկուց հրեղէն վիմաց պաշարեալ գողամ, զտեառնէ Եփրեմի ասեմ և զախեզերական և զաստուածապատիւ տեառն Յոհաննու Կոստանդնուպաւլսի եպիսկոպոսապետի. զի զսա զբոլորն զո-

— ** Առ Գաղատացիս. (Sur la lettre aux Galates). « Գաղատացիք աշակերտեցան 'ի Պաւղոսէ, ոչ 'ի պահել զպահպանութիւնս աւրինացն՝ որ խափանեցան 'ի ձեռն չարչարանաց խաչին » :

— ** Առ Եփեսացիս. (Sur la lettre aux Ephésiens). « Եփեսացիք աշակերտեալ էին՝ Յովհաննու աւետարանչի : Սա քանզի ետես զերիս ընկերսն իւր եթէ սկիզբն աւետարանացն իւրեանց առ 'ի մարմնոյ արարին » :

— ** Առ Փիլիպեցիս. (Sur l'epître aux Philippiens). « Հալածանք մեծ յարեան 'ի վերայ Պաւղոսի 'ի քաղաքի անդ Փիլիպեցւոց. և նեղեցան ընդ նմա և Փիլիպեցիքն » :

— ** Առ Կողոսացիս. (Sur l'epître aux Colossiens). « Կողոսացիք աշակերտեալ էին յԵպափրոդիտեայ, այն որ 'ի նոցանէն իսկ էր » :

— ** Առ Թեսաղոնիկեցիս առաջին. (Sur la première epître aux Thessaloniciens). « Պաւղոս իբրև հալածեցաւ 'ի քաղաքի անդ Փիլիպեցւոց, եկն նա 'ի քաղաքն Թեսաղոնիկեցւոց յետ աշակերտելոյն Թեսաղոնիկեցւոց. զի ընկալեալ էր նոցա զբան նորա » :

— ** Առ Թեսաղոնիկեցիս երկրորդ. (Sur la seconde epître aux Thessaloniciens). « Թեսաղոնիկեցիք զկնի այսր իբրև ընկալան զթուղթքն առաջին և ընթերցան 'ի մէջ ժողովրդեան, որպէս և հրամայեցաւ նոցա » :

— ** Թուղթ առ Հեբրայեցիս. (Sur l'epître aux Hébreux). « Իսկզբան իսկ թղթոյս այսորիկ ծուփ և խնդիր անկաւ մեզ՝ գիտել ճանաչել թէ վասն էր որպէս յամենայն 'ի թուղթս իւր՝ ոչ գրեաց զանուն իւր Պաւղոս 'ի թղթիս յայսմիկ » :

— ** Առ Տիմոթէոս առաջին. (Sur la première epître à Timothée). « Առաքեալ յղեաց զՏիմոթէոս առ Եփեսացիսն վասն ոմանց 'ի Հեբրայեցւոց, այն

— ** Տեառն Եփրեմի յաղագս որ ունի զհարսն, փեսայ նա է. (Sur le mot de N. S. – Celui qui possède l'épouse, est l'époux). « Կամէի քեզ վասն եկեղեցւոյ բան պատմել. քանզի է ամենեցուն և քեզ աւգտակարագոյն: Կամէի զաւետարանն քննել, և յաղագս նորա զբանս ընտրել » : – « Աւարտեցան Ճառք աւետարանականք խորհրդաւորք սրբոյ Եփրեմի » :

— ** Մեկնութիւն Առաքելոյն զոր արարեալ է տեառն սրբոյ Եփրեմի խուրին ասորւոյ և ասորւոց Ճրագի. (Commentaire sur les epîtres de St. Paul). « Գիտեմք, զի նոր կտակարանք կամպարգեւք 'ի ձեռն կարգին տուելոյ՝ Յունաց է տուեալ: Եւ քանզի բազմապատում բանիւք խաւսեցան զԱռաքեալ. որք խաւսեցանն ըստ տառս ըստ իմաստուն գիտութեան լեզուին իւրեանց » :

— ** Առ Հռովմայեցիս. (Sur la lettre aux Romains). « Պատմեաց Պաւղոս վասն առաջին գալստեանն տեառն մերոյ. և երկրորդ՝ թէ վասն էր եղեւ ինքն գալուստն » :

— ** Առ Կորընթացիս առաջին. (Sur la première epître aux Corinthiens). « Առ Կորընթացիսն, իբրև եկն եհաս առ նոսա աւետարանն 'ի ձեռն Պաւղոսի և ընկալան զհոգին, տիրեաց 'ի նոսա հպարտութիւն ամպարտաւանութեանն » :

— ** Առ Կորընթացիս երկրորդ. (Sur la seconde epître aux Corinthiens). « Հալածումն մեծ անհնարին յարեաւ 'ի վերայ աւետարանչին, և նեղեցան Կորնթացիքն ըստ կարի իւրեանց » :

— ** Առ Կորընթացիս երրորդ. (Sur la troisième epître aux Corinthiens). « Կորընթացիք յետ մաբանելոյն իւրեանց 'ի ձեռն Թղթոցն Առաքելոյ, 'ի հերձուածոց անտի՝ որ անգէն և անդ յինքեանց 'ի վերայ իւրեանց ծնան՝ խռովեցուցիչք աւտարք մտին 'ի նոսա և խռովեցուցին զնոսա » :

Թեւամբ Տարօնի քաղաքին և որ 'ի նմա մեծի եկեղեցւոյ պաշտամամբ, զբաւսանս իմոյ զբաղմանցն ստացայ զվաստակ գրչութեան 'ի մատեանս աստուածային, լեզուաւ բազում անգամ զքաղաքականն ընկալ հողս զընականն և զկրթականն՝ խոկմամբ յաստուածայինս կերակրելով զոգի։ Ո՛հ ո՜հ, թերեւս քաւ մեծի Քրիստոսի գթութեանն պատահեցայց 'ի զերկնիցն արքայութիւն բանաբարողաց։ Ի Թու" ՈԽԴ »։ Ձեռագրական օրինակն կը գտնեն բանասէրք 'ի Միւոնաճ, Համալսարանում Կիլիկիոյ, յ'ԷՀ 88 ։ Լատինական Թարգմանութիւնն սրբոյն Եփրեմի այս երկասիրութեան հրատարակուած է 'ի մեր տպարանի (1876)։

— ** Թարգմանութիւն աւետարանի զոր արարեալ է տեառն Եփրեմի խորին ասորւոյ. « Ամենայն գիրք որ միանգամ 'ի մտաց մարդկանէ գրեալ են, և ոչ յաւրինաց և 'ի մարգարէից առնուն 'ի խաւսել, մատեանք են՝ ծնունդք և ստեղծուածք մտաց հակառակողաց » ։

— Ի մարգարիտն յայտնութիւն. (Sur la perle de l'évangile). « Սիրեմ զքո զաւետարանդ, տէր. զի յորժամ քաղցենամ՝ կերակրէ զիս։ Յանկամ բանի քում. զի 'ի ծարաւելն իմում աղբիւր լինի ինձ » *։

* Կայ և յունականն այս ճառս, որ սրբոյն Եփրեմի ընտրելագոյն գրուածոց մէկն համարուած է։

— ** Յաղագս յարութեան. (Sur la résurrection des morts). « Իմացիր զերիս չափն, զիարդ հայս թթեցուց. իմացիր զհայսն և զհատն մանանխոյ։ Հատըն և հայսն Քրիստոս է » ։

— ** Վասն հատոյ մանանխոյ ասացուք. (Sur le grain de senève). « Հատն մանանխոյ փոքր, վասն ողորկութեանն ազգոյ, վասն սաստկութեանն կծու, վասն պարկեշտութեանն աւգտակար, վասն առաքինութեանն գտան » ։

ժառանգողաց տանս Հաղբատայ, և 'ի լուսաւորութիւն հանուրց աշխարհի։

« Արդ ես Խաչատուր այր ոմն անտոհմիկ Թափառական և աղքատ' սուտ անուն աբեղայ, գիմեալ 'ի հրանգս վարժից առ ոտս իմաստուն և սրբասնեալ վարդապետաց։ Գտեալ ապա իմ զայս աստուածատուր գանձարանս, առ մեծարգի և իմաստուն վարդապետին իմոյ Դաւթի. և խնդրեալ շարագրեցի անարուեստ և անվարժ գրով. զի սէր փափաքանացս ստիպեալ հարկեցոյց զիս և կարիքս առաւել յորդորեաց, մանաւանդ համբաւ իմաստիցն Եփրեմի, որ ոչ միայն ինձ' այլ և ամենեցուն է ցանկալի առաջնոցն և վերջնոց և որ այժմս են ... Գրեցաւ գիրքս այս 'ի գաւառիս Ձորոյ գետ, 'ի վանքս Հաղբատ. ընդ հովանեաւ սուրբ և կենարար և մաւրն լուսոյ կաթուղիկէի և ամենայն որ 'ի նմա սուրբք կցեն, յեպիսկոպոսութեան տեառն Յովհաննիսի, և 'ի մահուան տեառն Գրիգորի Հայոց կաթուղիկոսի, 'ի վարդապետութեան Պետրոսի, Դաւթի և Իգնատիոսի. և զկնի մահուան Վարդանա վարդապետի. յորում ամի գերեալ 'ի Վրաց գաւառն Կարնոյ և վանաւրայն, յաւերումն և 'ի գերութիւն մատնեցան։ Յայսմ ամի ես Խաչատուր տկարացեալ և խելայեղեալ գրեցի զգիրս զայս խոշոր և անյարմար յանպիտան նիւթի. և արդ յերեսս անկեալ աղաչեմ չլինել մեղադիր. այլ յիշել սրտի մտաւք և ցաւակցաբար զիս և զվարդապետն իմ Դաւիթ' որ զաւրինակս շնորհեաց. և զծնողսն իմ և զեղբարս »* ...

* Օրինակ մը Համաբարբառ գրոցս 'ի մեր Մատենադարանի, ինքնագիր գրչութեամբ սրբոյն Ներսիսի Լամբրոնեցւոյն։ Յիշատակարանն. « Փառք և գոհութիւն Նմա որ սկիզբն է և կատարած, 'ի նըւաստ վաստակաւորէ Ներսիսէ։ Տառապեալ Ներսէս, վռիպեալ յառանձին խոկմանէ, վերակացու-

— Մեկնութիւն Սամուէլի. (In Samuelem, qui est primus liber Regnorum, explanatio). «Գիրք Սամուէլի, որ պատմէ զԵղկանայէ և զերկուց կանանց նորա։ Վասն ծննդեան Սամուէլի և աղաւթիցն Աննայի մաւրն նորա»։ — «Կատարեցաւ մեկնութիւն Սամուէլի»։

— Մեկնութիւն Թագաւորութեան. (In librum secundum Samuelis, qui est Regum secundus). «Դպրութիւն Թագաւորաց գրէ զամս կենաց զՅուդայի և զԻսրայելի. և վասն առաքինութեանցն զոր արարին արդարքն որ էին 'ի նոսա»։ — Կատարեցաւ մեկնութիւն Թագաւորութեանց»։

— Մեկնութեան դպրութեան Իբրամնոն. «Մատենագիրն դպրութեան Իբրամնոն, զի է մեկնութիւն նորա դպրութիւն՝ վարուց աւուրց Թագաւորաց Յուդայ. յարարածոց և Յեշովայ որդւոյ Նաւեայ»։ — «Կատարեցաւ մեկնութիւն դպրութեան Իբրամնոն, զի սա ինքն վարուց աւուրց Թագաւորաց Հրէաստանի»։

—** Մեկնութիւն Աւետարանի համաբարբառ զոր արարեալ է տեառն Եփրեմի Խորին ասորւոյ. (Evangelii concordantis expositio, facta a S. Ephræmo doctore Syro). «Զի՞ զգեցաւ տէր մեր զմարմինն. զի ինքն մարմինն»։ — «Կատարեցաւ համաբարբառս հաւր Եփրեմի որ ըստ չորիցն աւետարանաց»։

Յիշատակարան գրչագրին. «... Ի թուականութեանս Հայոց ՈԽԴ ից՝ յանկ եղեալ կատարեցաւ աստուածաբուխ իմաստութիւն սրբոյ հաւրն Եփրեմի մեկնութիւն աւետարանի, համաբարբառ. եւս և ճառք հոգեպատումք, զոր շարակարգեալ 'ի շահ աւգտութեան մանկանց եկեղեցւոյ։ Ընդ որս հայեցեալ 'ի բազմաբեր բարեացն 'ի սմա ամբարեալ պըտուղս, և որպէս աւանդ հայրենի յաղագս որդւոց յառաջապահեստ արարեալ, գանձեալ և եդեալ սուրբ և արդիւնակատար վարդապետ ոմն Անանիա,

— Տեառն Եփրեմի Խորին ասորւոյ դպրութիւն երրորդ Ղեւտացւոցն. (In Leviticum explanatio). «Աստուած՝ զի ետ յանձն զպատարագն Իսրայէլի, թէ գուցէ լռեսցեն իւր 'ի զոհից անտի աւգնական ապստամբութեան նոցա լինիցի, և եղիցին նոքա այնուհետև զոհել դիւաց»։

— Տեառն Եփրեմի Խորին ասորւոյ դպրութիւն չորրորդ Արարածոց Թիւք. (In quartum Pentateuchi libro, qui Numeri dicitur, explanatio). «Խաւսել սկսաւ տէր ընդ Մովսիսի և ասէ. Խաւսեաց դու ընդ որդիսդ Իսրայէլի և ասասցես. այր կամ կին ոք՝ որ ոք արասցէ ինչ մի յամենայն մեղաց մարդկան մարդկաւրէն յանցանս, դատապարտեսցի անձն այն»։

— Տեառն Եփրեմի Խորին ասորւոյ դպրութիւն Երկրորդ աւրինաց. (In Deuteronomium explanatio). «Որպէս կանուխ անձրեւ զի զարթուցանէ զսերմանս, և գայ հասանէ անձրեւն անագան կատարէ զսնունդս նորա, այնպէս իբրև լուան զաւրէնսն 'ի լեառն Սինայ իբրև զանձրեւ կանուխ ընկալան զնա»։ Ի վերջն. «Կատարեցաւ դպրութիւն վերծանութեան Արարածոց մեկնութեանս»։

— Մեկնութիւն Յեսովայ որդւոյ Նաւեայ զոր արարեալ է տեառն աբբայ Եփրեմի. (In Josue explanatio). «Յանձն եղև ժողովուրդն Յեսովայ տանել ժառանգեցուցանել նոցա զերկիրն պարգևաց։ Եւ իսկ և իսկ առաքեաց լրտեսս յԵրիքով. զի հզաւրացուսցէ զփոքր թերահաւատութիւն ժողովրդեանն»։

Ի վերջ գրոցն. «Կատարեցաւ մեկնութիւն Յիշովայ որդւոյ Նաւեայ»։

— Մեկնութիւն Գրոց ազգաց. (In librum Judicum). «Գիրք ազգաց դպրութիւն է դատաւորաց. որ կացին 'ի ժողովրդեանն յետ մահուան Յեշովայ որդւոյ Նաւեայ»։ Ի վերջն. «Կատարեցաւ մեկնութիւն ազգացն»։

græce, syriace, latine, in sex tomos distributa ad mss. codices Vaticanos aliosque castigata, multis aucta, nova interpretatione, præfationibus, notis, variantibus lectionibus illustrata, nunc primum e Bibliotheca Vaticana prodeunt. Romæ, ex typogr. Vaticana, 1732-44. Ի վեց հատորս, որոց առաջին երեք կ'ամփոփեն յոյն և լատին լեզուով գտանուած, և սրբոյն Եփրեմի անունը կրող ճառերը. իսկ միւս երեքն՝ յասորի մատենագրութեան պահուածներն հանդերձ լատին նորագոյն թարգմանութեամբ: Առաջիններն հրատարակեց Յ. Ս. Ասսեմանի. և զայլսըն՝ Պէնէտէթթի և Ս. Եւոդիոս Ասսեմանի: — Ուրիշ հին տպագրութիւն մ'ալ յԱնգղիա. S. Ephraim Syrus, græce, e codd. mss. Bodleianis, cum notis; cura Ed. Thwaites. Oxonii, 1709. յորում հրատարակուած են գեղեցիկ տպագրութեամբ հարիւր յիսունևվեց ճառք սրբոյն, բայց Հռովմայ բազմահմուտ և ճոխագոյն հաւաքմամբ՝ կորոյս իր կարևորութիւնն:

Հայկական թարգմանութեան մէջ պահուածներն են ըստ կարգի տպագրին մերոյ որ 'ի 1836:

— Տեառն Եփրեմի Խորին ասորւոյ տեսութիւն յաղագս Մեկնութեան Արարածոց. (S. Ephræm Syri explanatio in Genesim). « Սկզբանէ հաստատեաց Աստուած զհաստատութիւնն երկնից և զհաստատութիւն երկրի: Քանզի վասն այսորիկ փոյթ եղև Մովսիսի՝ 'ի ձեռն յայտնութեան Հոգւոյն աւրինակագրութիւն ճշմարտութեան ընդդէմ մոլորութեան կռապաշտութեանն առնել »:

— Տեառն Եփրեմի Խորին ասորւոյ Ելք. (In Exodum explanatio). « Փոխանակ այնր զի ասէ Ամենայն ոգիք որ ելին յերանաց Յակովբու, իւթանասուն մարդ. և Յովսէփ անդէն էր յերկրին Եգիպտացւոց. բայց հեբրայեցի Յովսեփաւ հանդերձ, որ էր յերկրին Եգիպտացւոց »:

թարգմանութիւն մ'ալ կը յիշատակուի, ինչպէս պիտի տեսնենք։ Մատենագրական նկատմամբ ուշադրութեան արժանաւոր կէտ մ'ալ այս է, որ համեմատելով զթարգմանութիւնս մեր ընդ բնագրին, — եթէ գտնուին, — և 'ի վաղ ժամանակաց առ մեզ հասած թարգմանութեանց, մեծ տարբերութիւն կը տեսնենք իրարու հետ։ Զենք կրնար ենթադրել թէ մերքն այնպիսի ազատութիւն մը գործածած ըլլան 'ի թարգմանութեանս, որուն իրենց ուրիշ երկասիրութեանց մէջ չենք հանդիպիր, այլ երկիւղած հաւատարմութեան' մանաւանդ 'ի հինգերորդ դարու թարգմանիչս։ Ուստի հաւանականագոյն պիտի սեպէինք թէ ասորի գաղափարողք և գրիչք վարուած ըլլան այդպիսի ազատութեամբ, եթէ յայլուստ չգիտնայինք թէ բուն հեղինակին կը պատշաճին այդ տարբերութիւնք։ Վասն զի աստուածաշունչ գրոց մեկնութեան, յԱրարածոց մինչև 'ի Մնացորդս, հայերէն հին և ընտիր թարգմանութիւն մը ունինք' Եփրեմի ընծայուած. և որ մեծապէս կը տարբերի յընդարձակագոյն ասորի բնագրէն որ հասած է առ մեզ։ Պատճառն է' որ սուրբն Եփրեմ բաց 'ի այս ընդարձակէն' յօրինած էր նաև զհամառօտութիւնն, — ինչպէս ինքն իսկ կ'ակնարկէ 'ի յառաջաբանի ասորի ընդարձակ մեկնաբանութեան, — և ասոր հայ թարգմանութիւնն է մեր ունեցածը, որոյ կը պակասի բնագիրն։ Համաբարբառ Աւետարանաց մեկնութիւնն ալ միայն 'ի հայկական մատենագրութեան պահուած է, և որուն գիւտն և հրատարակութիւն իրաւամբք այնչափ հետաքննական եղաւ եկեղեցական բանասիրութեան և ուսմանց։ Այսպէս Պաւղոսի թղթոց մեկնութիւնք և ուրիշ շատ ճառեր։

Եփրեմի երկասիրութեանց ընտրելագոյն տպագրութիւնք առ արևմտեայս են հետևեալքն.

Ephræm Syrus (S.) Opera omnia quæ extant

ta colligit et recognovit, appendices chronographicas sex adjecit A. Schöne. Berolini. – Historischer Gewinn aus der Armenischen Ubersetzung der Chronik des Eusebius- (In der Abh. der Hist. Cl. der kön. Akad. der Wiss. von der Jahren 1820-21). Berlin, 1822. – Uber die bisjetzt vorhandenen Texte und Ubersetzungen der Armenischen Chronik des Eusebius. H. Petermann. (In Monatsberichte der k. Berl. Akad. 1865. – Uber die armenische Ubersetzung der eusebischen Canons. H. Petermann. (In Monatsber. der k. Berl. Akad. 1866).

## ԵՓՐԵՄ ԽՈՒՐԻ ԱՍՈՐԻ

(SAINT EPHREM, LE DIACRE SYRIEN)

---

*Սուրբն Եփրեմ, սարկաւագ Եդեսիոյ և վարդապետ եկեղեցւոյ ; ծաղկեցաւ 'ի չորրորդ դարու (350-380)։ Ինչպէս կը տեսնուի մեր ցուցակէն՝ բազմաթիւ են ասորի դպրութեան պարծանք սուրբ հայրապետին գրուածոց թարգմանութիւնք 'ի հայ. և առաւելապէս ազնուագոյնք՝ որովհետև անոնցմէ շատերին ասորի բնագիրն կամ հին յոյն թարգմանութիւնք կը պակսին։ Այլևայլ ժամանակաց և դարուց փոխադրութիւնք են ասոնք, բայց մեծագոյն մասամբ 'ի հինգերորդ դարու կատարուած՝ 'ի սրբոց Թարգմանչաց մերոց յուսումնական դեգերանս իւրեանց յԵդեսիա, և անշուշտ յասորի բնագրէ։ Ասոնցմէ զատ կան նաև կրտսերագոյն դարուց թարգմանութիւնք, և յանուանէ 'ի ձեռն Գրիգորի Վըկայասիրի և 'ի Գէորգ վարդապետէ Քեսունցոյ և յայլոց, նոյնպէս յասորականէ. ինչուան հինգերորդ*

լեալ հատանէր. և վանեալ վատնեալ ընդ ձեռամբ նուաճէր, և զմասն մի 'ի Նոցանէ' յաջակողմ Պոնտոս ծովու տարեալ բնակեցուցանէր» ։ – Եւսեբի. «Վը-կայ 'ի մօտոյ երաշխաւորեսցէ Զաքարիա մարգարէ»։ Խորենացի. «Վկայ քեզ 'ի մօտոյ երաշխաւորեսցէ Եկղեսիաստէ գիրք Եւսեբի Կեսարացւոյ» ։ Այսպէս ուրիշ տեղուանք։

Ծանօթ էր և Փարպեցւոյն։ Եւսեբի 'ի սկիզբն գրոցն. «Ընդ պէսպէս մատեանս առաջնոց պատմութեանց անցի»։ Նոյնպիսի սկզբնաւորութիւն է և Փարպեցւոյն. «Ընդ բազում ժամս մատենից առաջնոց պատմագրացն Հայոց անցի»։ Զնոյն կրկնէ և Արծրունին Թովմաս. «Ի խոյզ և 'ի խնդիր ելեալ՝ զհաւաստին գտանել չորագրական մատեանս, և 'ի բազում վէպս պատմութեանց անցեալ գրեցի»։

Երկու մասն բաժնուած է Եւսեբեայ այս երկասիրութիւնն։ Առաջինն խորագիր ունի ըստ գրչագրաց. «Եւսեբի Պամփիւղեայ Կեսարացւոյ ժամանակականք». իսկ երկրորդն. «Քրոնիկոն կանոնք, որ և ժամանակական կանոնք». և 'ի սորուս իջին հետևեալ ծանօթութիւնը. «Եւսեբեայ Պամփիւղացւոյ եպիսկոպոսի արարեալ զգիրս պատմագրաց հատուրս տասն. յորում ինն հատորն պատմէ զՔրիստոսի մարդեղութենէն և զառաքելոցն սրբոց. նաև զամենայն եկեղեցական պատմութեանց։ Իսկ այս առաջինս յԱդամայ և զլինելութենէն աշխարհի ժամէ. որ և կոչի Քրոնիկոն»* ։

* Եւսեբեայ գրուածոց վրայ մատենախօսական համառօտ տեղեկութիւնք ամփոփուած են 'ի ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԵԱՆ յ'էջ 183-185, որոց վրայ կը յաւելցընենք նաև հետևեալքն. Eusebi Chronicorum libri duo. Edidit A. Schöne. Armenicam versionem latine factam ad libros manuscriptos recensuit H. Petermann. Græca fragmen-

վկայութիւն կու տայ։ Թէպէտև անծանօթ է ժամանակն յորում Եւսեբեայ այս երկասիրութիւնն թարգմանուած ըլլայ 'ի հայ, սակայն 'ի հինգերորդ դարու գրութիւնք ծաղկած վիճակի մէջ էին 'ի Հայաստան, յորում ժամանակի ապրեցաւ և մատենագրեց հռչականունն Մովսէս Խորենացի, և թերևս յայնմ դարու անուանի պատմագիրն թարգմանեց զայն 'ի հայ, և որ յաճախ կը յիշատակուի 'ի հետագայ պատմագրաց իւր ազգին »։

Ինչպէս արևմտեան, սանկ ալ ազգային բանասիրութեան ընդհանուր կարծիքն է' Խորենացւոյ ընծայել այս հետաքննական գրուածքին հայ թարգմանութիւնը։ Եթէ պատմական հաւաստիք մը չըլլալուն, կարենայ այս ենթադրութիւն' տարաձայնութիւն կրել 'ի մէջ հմտից, սակայն անտարակուսելի է թէ հայերէն այս փոխադրութիւն ծանօթ էր Խորենացւոյ։ Իր պատմութեան գիրքն կը հաւատարմացընէ զայս' ոճոյ և բանից այլեւայլ նմանութեամբք, յորոց միայն քանի մը օրինակ մէջբերենք։

Եւսեբի կ'ըսէ. « Զայս ըստ Բազմավիպին' Բերոսոս յառաջնում մատենին պատմէ »։ Խորենացի. « Զայս ըստ Բազմավիպին' Բերոսոս յառաջնում մատենին պատմէ »։ Դարձեալ. « Զայս Բերոսոս յառաջնում մատենին պատմեաց. և յերկրորդումն զթագաւորսն մի ըստ միոջէ յօրինեալ գրեաց »։ — Եւսեբի. « Մեծազօրն ասէ, Նաբուկոդրոսորոս որ ուժգնագոյն էր քան զՀերակղէս, 'ի Լիբէացւոց և յԻվերացւոց աշխարհն զօրաժողով լեալ հասանէր, և վանեալ վկանդեալ ընդ ձեռամբ նուաճէր. և ըզմասն մի 'ի նոցանէն յառաջակողմ Պոնտոս ծովու տարեալ բնակեցուցանէր »։ Խորենացի. « Որպէս Աբիւդենոս պատմէ այսպէս ասելով. Մեծազօրն Նաբուգոդոնոսոր ուժգնագոյն էր քան զՀերակլէս. 'ի Լիբէացւոց, 'ի Վերիացւոց աշխարհն զօրաժողով

զատ և ամբողջ Թարգմանութիւնը, և ժամանակին օրագիրք և բանասիրական թերթեր հռչակաւ կը պանծացուցանէին զայն, և որոյ անընդհատ արձագանգը կը լսուի ցարդ մեծարանօք. «Մատենագրական աշխարհի մէջ, – կ'ըսէր անոնցմէ մէկը, – երկար դարերէ 'ի վեր այսպիսի բազմահռչակ և նշանաւոր գիւտ մը եղած չէր. և որ հանդիպեցաւ 'ի Պոլիս՝ հին գրչագրի մը մէջ որ կ'ամփոփէ զհայկական Թարգմանութիւն այս գրուածին, որ անդառնալի կերպով կորսուած կը համարուէր. և յորմէ անկերպարան և այլայլեալ հատուածք եւեթ մնացած էին, զորս ուսումնասէր բանասիրութիւնը բանադատուած էր զգուշաւոր վերապահութեամբ գործածել: Հին պատմութեանց համար մեծապէս կարևոր էր Եւսեբեայ ժամանակագրական կանոնաց գիւտը՝ ստուգութեամբ խելամուտ ըլլալու համար թէ ինչ կերպով իրարու հետ կապակցութիւն ունէին այս հեղինակին գաղափարք, որ իրմէ ետքը եկող ամէն մատենագրաց առաջնորդն եղած էր: Բայց այս չէ շատ. իր գրուածքին մէջ կը գտնուին բազմաթիւ հատուածք Բերոսոսի, Կեփաղիոնի, Բազմավէպ Աղեքսանդրի, Մանեթոնի, Կաստորի, Դիոդորի Սիկիլիացւոյ, Պորփիւրի և ուրիշ այլևայլ պատմագրաց՝ որոց երկասիրութիւնք կորսուած են հիմա: Հայկական Թարգմանութիւնն կրնայ յոյն սկզբնագրին տեղ ծառայել, որովհետև հինգերորդ դարու մէջ եղած է, և այնպիսի ժամանակի մը մէջ՝ յորում սկզբնագիր օրինակք հեղինակին չէին կրնար այլայլութիւն կրել»: – Ուրիշ մ'ալ կը գրէր. «Հայոց անծանօթ չէին Եւսեբիոյ ժամանակականք, որք երբէք անփոյթ չեղան գեղեցիկ դպրութեանց, թէպէտև առանց ունենալու գրականական առաջին կարգի բարգաւաճանք մը. ինքն իսկ Սիւնկելոս՝ Հայոց հմտական այսպիսի հակամիտութեան և քերման

Ի հաւատարմութիւն մեր խօսքին, միայն քանի մը օրինակ մէջ բերելով գոհ ըլլանք։

Յէջն 18 (տպ. Միլանոս) թարգմանիչք որոշ չեն հասկըցած հայերէն ճարտարապետ բառին նշանակութիւնը, որ է ղեկավար ճարտար, ըստ յունին τοῦ κυβερνητοῦ, և գրեր են նաւայարդար, navis architecto. և քիչ եռքը՝ ուր հայն ունի նաւապետ, գրեր են դարձեալ navis architecto. – Յէջ 27՝ Եւսեբեայ 'ի Մեգաստենեայ պատմէ տուած խօսքը, սխալ իմացմամբ յունականին նշանակութեան՝ ածականաբար կը թարգմանեն, և փոխանակ գրելու՝ ինչպէս կը գրէ և կը հասկընայ յոյն սկզբնագիրն, «Մեգաստենէս ասէ. Նաբուգոդոնոսոր»՝ և այլն, կը թարգմանեն. «Մեծազօրն, ասէ, Նաբուգոդոնոսոր»։ Նոյն վրիպանաց մէջ ինկած են յառաջագոյն և լատին թարգմանիչք պատմութեան Խորենացւոյն՝ Վիսթոն եղբարք։ – Յէջ 29. «Զինքնուրոյն որդին» փոխանակ հասկընալու իր բուն որդին կամ լատինական բառով suimetipsius (εαὐτοῦ), կը թարգմանեն unicum suum filium, որ է զմիածին որդին իւր»։ – Յէջ 33, հայցականաբար 'ի կիր առնուածն յՒւսեբեայ զանուն ազգի Իբերացւոց (Iberorum կամ Hiberiœ, 'Ιβερίαν ըստ յունին) կը դնեն Zybeorum: – Յէջն 67, 'ի բնէ որ պէտք է թարգմանուի ab initio (ἀρχηθεν), կը հասկընան և կը թարգմանեն precipue. – 70. Թարգմանչին նուիրական բառը կը շփոթեն ընդ նուիրակ ձայնի. և այնպէս կը թարգմանեն։ Կը թողունք նշանակել ուրիշ ասոնց նման բազմաթիւ վրիպանքը։

Իմաստուն Եւրոպա՝ իրաւամբ երախտապարտ շնորհակալութեամբ կ'ընդունէր 'ի Հայաստան մատենագրութենէ՝ որ զգուշաւոր և խնամոտ աւանդապահ եղած էր այս մեծագին և ուսումնական աշխարհի ամենակարևոր երկասիրութեան, զին հարա-

և 'ի բանասիրաց Եւրոպիոյ անհամբեր ակնկալու-
թեամբ սպասուած Թարգմանութեան հրատարա-
թիւնը կը յապաղէ, քաջալերուած 'ի Մայէ և յայ-
լոց, և յուսալով որ այդպիսի մեծ ծառայութեամբ
մը գրաւորական աշխարհի՝ հռչակուի իր անունն և
արգիւնք ընդ ամենայն Եւրոպա, փութացեր էր 'ի
Վենետկոյ առ Մայ, Յովհաննիսեան առաջին գաղա-
փարը և անոր սրբագրուած մէկ օրինակը տանելով
հետը. ուր իր օգնականութեամբ՝ հռչականուն մա-
տենապետն փոխեր էր զայն յընտիր լեզու լատինա-
կան, և ապա փութով ձեռք զարկեր էին 'ի տպա-
գրութիւնն: Շշուկն հասնելով 'ի Վենետիկ, Աւգե-
րեանն ալ առանց ժամանակ կորսնցընելու՝ փութաց
'ի հրատարակութիւն իր արդէն պատրաստ երկասի-
րութեան, որով երկու Թարգմանութիւնք միանգա-
մայն կ'երևնային:

Եթէ, որպէս արժանն կը պահանջէ, լատին
լեզուի քաջընտրութիւնն հարկ է ընծայել Մայի
Թարգմանութեան, Աւգերեան կը գերազանցէ իր հա-
ւատարմութեամբն, բազմահմուտ ծանօթութեանց
ճոխութեամբ, հայկականն ալ միացընելով ընդ լատին
թարգմանութեանն. ինչպէս նաև անկորուստ մնա-
ցած յունական հատուածներն: Այսպէս դատեց ժա-
մանակին բանասիրութիւնը և եւրոպական գիտու-
թիւն այս երկու Թարգմանութիւնքը, իւրաքանչիւրին
տալով իր արժանաւոր յարգը. և եթէ գտնուեցան
ոմանք կրիտիսք՝ աւելի կողմնապահք քան անաչառք,
Մխիթարեան Թարգմանիչը իր ընդարձակ և հմուտ
յառաջաբանին մէջ, զոր բռնադատեցաւ դնել 'ի
գլուխ երկասիրութեանն, դժուարութիւն չքաշեց
'ի լռեցընել զանոնք: Ինքն իսկ Մայ՝ չուզեց ժխտել
նմա զայս առաջնութիւն, որ արդիւնք էր իր հայե-
րէն լեզուի անգիտութեանն, և գործակցին անքաւա-
կանութեանն 'ի լատինականին:

ւելուածոց և կերպարանափոխութեանց առաջնոյն, այլ չինական օրինակ բնագրին։ Յովհաննիսեան մասնաւոր նամակաւ մը առ հարցասէրն, խոստովանեցաւ իր ոչ հաւատարմութիւնը յընդօրինակութեանն, և խոստացաւ կատարել խնդրողին հայցուածքը, զոր և յղեց առ նա 'ի 1794։ Լատին Թարգմանիչն երբ ձեռք ձգեց այդ երկրորդ օրինակն, կրկին և ծայրալիր պարապմամբ և ուսումնասիրելով քըննեց, բաղդատեց, և խելամուտ եղաւ իր ենթադրութեանց ստուգութեանն և տարակուսանաց լուծման, և այս երկրորդ օրինակին հաւատարմութեան. ուստի և անոր համեմատ ըրաւ իր թարգմանութիւնն և հմուտ ծանօթութիւններն, և պատրաստեց զայն 'ի հրատարակութիւն, ներկայացընելով՝ ինչպէս ժամանակին օրէնքը կը պահանջէր, պետական գրաքըննութեան հաւանութեանն 'ի 1795։ Վրայ հասան քաղաքական յուզմունք և փոփոխութիւնք, և պատերազմաց արհաւիրք և աւերք ընդ ամենայն Եւրոպէ. և խափանեցին յանստուգութեան յայնմ վիճակի, զբազմածախ հրատարակութիւնն։ Նոյն միջոցին Թարգմանիչն առիթ ունեցաւ երթալ 'ի Պոլիս, ուր անձամբ տեսաւ և քննեց զսկզբնագիրն, և ապահով եղաւ իր ձեռքն ունեցած գաղափարին հաւատարմութեան վրայ։ Դառնալով ապա 'ի վանս, երկար միջոց ժամանակի վրան անցնելէն ետքը, ըրաւ իր աշխատասիրութեան հրատարակութիւնն 'ի 1818։

Վենետկոյ տպագրին հետ՝ և գրեթէ 'ի մի և նոյն միջոց ժամանակի հրատարակեցաւ ուրիշ տպագրութիւն մ'ալ Եւսեբեայ Քրոնիկոնին լատին Թարգմանութեան 'ի հայէ, որ 'ի ճակատ գրոցն կը կրէր զանուանս Զոհրապ Յովհաննու վարդապետի և Մայ Անճէլոյ բազմահմուտ անձին, որ մատենապետ էր Ամբրոսեան գրատան 'ի Միլան քաղաքի։ Զոհրապեան տեսնելով որ 'ի Մխիթարեանց խոստացուած

կազրականն, և սակայն օտարացեալ 'ի սկզբնագրէն՝ որ հասած է առ մեզ հայ Թարգմանութեամբ. և աւելի երկրորդ մասը կը կրկնէ՝ շատ խառնակ կերպով. ուստի և Վալլարսիոս կը ժխտէ առաջին մասին հարազատութիւնը, և կը պնդէ 'ի ջատագովութիւն երկրորդին, որովհետև կը գտնէ անոր լատին Թարգմանութիւնն 'ի Հերոնիմեայ։ Տեսնուեցաւ նոյնպէս թէ հայերէն Թարգմանութեան մէջ, զոր գաղափարեր էր Յովհաննիսեան, որչափ առաջին մասն քրոնիկոնին կ'օտարանայ 'ի Սկալիգերէ, այնչափ աւելի ուղիղ է, և ուր կը միաբանի կամ համաձայնի ընդ նմա, թէպէտև քիչ տեղ, չփոթ և անյարմար է. իսկ երկրորդ մասը՝ ուր աւելի կը զուգընթանայ ընդ Սկալիգերի, հոն յաճախագոյն է խառնակութիւնն, նաև նկատմամբ հայերէն լեզուի ընտրութեան, բոլորովին օտարանալով յոճոյ և 'ի գեղեցկութենէ առաջնոյ մասին։ Այս ամէն անտեղութիւնք՝ համոզեցին զԱւգերեանն թէ եկամուտ և օտար ձեռք խառնուելով՝ աղաւաղած է զհարազատութիւն հին հայկական Թարգմանութեան. և որովհետև Յովհաննիսեան քաջ տեղեակ էր յոյն լեզուի, կասկած ունեցաւ թէ Սկալիգերի երկասիրութիւնն անցած է ձեռքը, յորմէ յաւելուածներ կամ փոփոխութիւններ մտուցած է իր գաղափարին մէջ, ենթադրելով անով շահագրգիռ ծառայութիւն մը մատուցանել բանասիրութեան։

Այսպիսի երկմտութիւնք փարատելու համար՝ հարկ էր 'ի խնդիր ելլել ուրիշ գրչագրի մը, և անոր համեմատութեամբ՝ խելամուտ լինել ստուգութեան։ Այլեւայլ տեղուանք փնտռելէն ետքը՝ չհասնելով փափաքելի գիւտին, բռնադատեցաւ ուղղակի գրել առ Յովհաննիսեանն, յայտնելով ունեցած տարակոյսներն իր գաղափարին հարազատութեան վրայ, և խնդրելով որ ուրիշ օրինակ մ'ալ ղրկէ, առանց յա-

Իր հայրենագիտական և ուսումնական աշխատասիրութեամբք արդէն բազմահռչակն առաջի ազգային և օտար բանասիրութեան Ինճիճեան վարդապետ՝ 1786 թուականին դառնալով 'ի Վենետկոյ 'ի հայրենիս իւր 'ի Պոլիս՝ կը ծանօթանայ հոն Պալատեցի Յովհաննիսեան Գէորգ ուսումնասէր և հետաքննին բանասիրին հետ, որ արդէն մեր վարդապետաց առաջնորդութեամբ և ծախիւք այլևայլ ճանապարհորդութիւններ ըրած էր 'ի փոքրն Ասիա և 'ի Հայաստան՝ 'ի խնդիր և 'ի գիւտ նորանոր հին գրչագիր մատենից։ Յովհաննիսեան 1787ին աւետեց Ինճիճեան հօր թէ Եւսեբեայ Քրոնիկոնին հայ թարգմանութիւնն ալ գտնուած էր և յարևելից արդէն 'ի Պոլիս հասած, զոր ստանալն անկարելի՝ բայց անոր մէկ գաղափարն ունենալ մարթ էր։ Այդ չափն ալ մեծապէս փափաքելի և օգտակար ծառայութիւն մ'էր պատմական ուսմանց, ուստի և գրուեցաւ իրեն որ երբ կամ ինչ միջոցով ալ որ ըլլայ, անոր գաղափարն առնու և հասցընէ առ մեզ։ Վրան քանի մը տարի անցնելէն ետքը (1790) նոյն ինքն Ինճիճեան վարդապետ անձամբ բերաւ զայն 'ի վանս, և զոր փութաց թարգմանել 'ի լատին Աւգերեան Հ. Մըկրտիչ վարդապետ։ Սակայն այդ աշխատասիրութիւնն 'ի գլուխ հանելու համար՝ հարկեցաւ թարգմանիչն քննել աչքէ անցընել հին դարուց յոյն, լատին և հայ հեղինակներն. առ որս կը գտնուէին յիշատակութիւնք Եւսեբեայ Քրոնիկոնին, ինչպէս նաև զքննագատս յետին դարուց, մանաւանդ զՍկալիգեր և զՎալլարսիոս։ Այդ քննութեանց արդիւնք եղան երկմտութիւնք և տարակոյսք 'ի միտս թարգմանչին։ Տեսաւ. որ Սկալիգերի աշխատասիրութիւնը՝ թէպէտև յանուն Եւսեբեայ, ինքնայօդ և ըստ կամս բաղադրութիւն մ'է յոյն քրոնիկոնին. ուր կ'ենթադրուի թէ երկմասնեայ է Եւսեբեայ ժամանա-

— 3.° « Եթէ ոք. ասէ, երդնուցու չար ինչ ումեք առնել կամ բարի ... այլ զի և երդուեալն. է՛ ուրեմն և մոռանալոյ այսպիսի պատարագս » ։

— 4.° « Ա՛յլ է մեղաց պատարագն և այլ յանցանաց ... հրամայէ 'ի մեղացն պատարագէ ուտել քահանայիցն արուացն միայն. զոր և սրբութիւն սրբութեանցն կոչեաց » ։

## ԵՒՍԵԲԻՈՍ ԿԵՍԱՐԱՑԻ

(EUSÈBE DE CESARÉE)

---

Արդէն համառօտիւ խօսեցանք՝ սրբազան մատենագրութեան մէջ մեծանուն այս անձին և իր Եկեղեցւոյ պատմութեան վրայ [1]։ Նոյն հեղինակին միւս այլ նշանաւոր, և պատմական տեսակէտով մեծապէս հետաքննական երկասիրութեան մ'ալ թարգմանութիւնն հասած է առ մեզ 'ի նախնեաց, ընտիր պարգև մը հինգերորդ դարու թարգմանչաց. և այնչափ աւելի պատուական, որչափ զի անոր յոյն սկզբնագիրն կորսուած է, և կամ անհարազատ քաղուած մի միայն մնացած, և եկամուտ յաւելուածովք կամ զեղչմամբ բոլորովին կերպարանափոխ եղած, որ 'ի հարկէ չէր կրնար ունենալ սկզբնագրին յարգն ու կարևորութիւնը։

Այս գրուածքն է Քրոնիկոն կամ Կանոնք ժամանակաց կոչուածը, որ դեռ ինչուան անցեալ դարուն վերջերը՝ միայն անուամբ ծանօթ երկասիրութիւն մ'էր նաև մեր մատենագրութեան մէջ։ Ասոր գիւտն հետևեալ կերպով աւանդուած կը գտնենք 'ի յիշատակագիրս դիւանաց մերոց։

[1] Տես յէջ 54 ։

նադարանի՝ 'ի վերացումն Տեառն)։ «Քանզի շնորհաւք Աստուծոյ »*։

* Այս անունով յիշուած է ճառս 'ի գրչագրին որ 'ի Մատենադարանին Էջմիածնի, (Թիւ 918). և 'ի Փարիզեան ազգային Գրատան (Anciens fonds, Թիւ 324) յորմէ և հատուած մը մէջ կը բերէ Մարթէն հայերէնագէտ գաղղիացի քահանայն յիւր գիրսն. Introduction à la critique textuelle du Nouveau Testament, (Հատ. Բ, յ'էջ 279)։ Էջմիածնի ուրիշ գրչագիր մը (Թիւ 914) այսպէս կը մակագրէ. «Մեծին Եւսեբեայ պատմագրի ասացեալ 'ի Համբարձումն Քրիստոսի Աստուծոյ մերոյ »։ Ոմանք ալ Սեբերիանոսի եպիսկոպոսի Եմեսու կ'ընծայեն զայն, որ չէ անհաւանական։

— ** Եւսեբիոսի եպիսկոպոսի վասն հարցման Աղեքսանդրի վասն կիւրակէի։ — Տոմարականք։

# ԵՒՍԵԲԻՈՍ ԵՐՈՒՍԱՂԵՄԱՑԻ

(EUSÈBE DE JÉRUSALEM)

---

— ** Եւսեբիոսի Երուսաղեմացւոյ երիցու մեկնութիւն Յովբայ. (Մատենադ. Էջմիածնի, Թիւ գրչ. 1405)։

— Հատուածք 'ի խմբագիր մեկնութենէ Ղեւտական գրոց (Տես)։ Եւսեբի եպիսկոպոսի Երուսաղեմացւոյ. 1.° «Յորժամ 'ի հասեալ հասկերցն առեալ խրխրեսցէ ոք ձեռաւք ... և հանցեն զայն որդիքն Ահարոնի քահանայք 'ի սեղանն յողջակէզս 'ի վերայ փայտին և հրոյն, պտուղ անուշից տեառն »։

— 2.° «Կրկին իմանի. կամ թէ յորժամ գիտիցէ երդմնազանց լինել ոմանց ... և ոչ ասիցէ մեղաւ. զնոյն նշանակեն երկոքեան »։

— ** Նորին երեսներորդ. « Անդուլք երկնից է յայտնութիւն խորհրդոցն, որ ըստ մնդեանն ոճոյ յայտնի հոգւոյն »:

Գրչագիրն կը յաւելու. « Լուծմունք սորա արարեալ է ուրումն կատարելոյ 'ի լեռնէն Նինուէի 'ի խնդրոյ եղբարց. առաջին հարիւրեակն 'ի վերայ Աստուծոյ և առ մեզ միաւորել. երկրորդ հարիւրեակն վասն հրեշտակաց. երրորդ հարիւրեակն վասն մարմնաւորացս, և յիշեա Քրիստոս զտէր Մխ." վարդապետն »:

— ** Մեկնութիւն համառօտ մարգարէութեանն Եզեկիելի յԵւագրեայ. (Commentaire sur le livre prophétique d'Ezéchiel). « ... ութածալ բոլորագիր 'ի Բարսեղ քահանայէ ... ունի 'ի վերջն յիշատակարան պատմագրաբար ոտանաւոր, որոյ գլխատառք յօդեն – Մովսիսի աշակերտի պատմագրաբար վասն Եւագրեայ » – : (Մատենադարան Էջմիածնի, Թիւ գրչ. 1392):

ԵՒԿՂԻԴԷՍ (Euclide). որոյ Երկրաչափութեան գրոց հայ թարգմանութիւնն ըրաւ Գրիգոր Մագիստրոս 'ի մետասաներորդ դարու, և հատուածք միայն հասած են առ մեզ, հրատարակեալք 'ի Բազմավէպ հանդիսարանի (1884, յ'էջ 30):

## ԵՒՍԵԲԻՈՍ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻ

(EUSÈBE D'ALEXANDRIE)

———

— ** Երանելւոյն Եւսեբի Աղեքսանդրու եպիսկոպոսի ասացեալ 'ի Համբարձումն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. (ըստ գրչագրին որ 'ի մեր Մատե-

* Ցոյն սկզբնագիրն 'ի Մատենադարանի Հայոց, Ղատ. ե. 580)։

— Առաջնորդաց և աշակերտաց. քաններորդ երրորդ. «Նաւապետ ազէտ զնաւն, և առաջնորդ անմիտ՝ զաշակերտն կորուսանեն։ Զհովիւ անարուեստ և բեկանողք գայլք կորուսանեն զնա» * ։

* Նեղոսի սուրբ հօրն ալ ընծայուած 'ի գիրս Նաբա, Թէպէտ տարբեր շարագրութեամբ։

— ** Նորին Եւագրեայ քաններորդ չորրորդ. «Մկրտութիւն՝ քաւութիւն հոգւոյն. յիշատակ է աշխարհին որ գալոց է։ Տեղի գնելոյ մարդոյ զգլուխ իւր, հաւատք է խոստմանն Յիսուսի, որ աւետարանէ առ ըստ աւրէ զփրկութիւն» ։

— ** Եւագրեայ վասն սերովբէից. քաններորդ հինգերորդ. «Սերովբէք վեցթեւեանք անձինքեանք (?) են բանաւորք. և զգիտութիւն տիեզերաց ունին. պայծառութիւնք և ճառագայթք և ճաճանչք Աստուծոյ» ։

— ** Այլ Թուղթ Եւագրեայ քաններորդ վեցերորդ. «Կայիք մնայիք ինձ շահեցուցանել զձեզ անանցական արծաթովք. և ես ինքն հեռաւոր հանդիպիմ, ծուլութեան ծովուս միջոցաւք» ։

— Այլ Թուղթ նորին քաններորդ եւթներորդ. «Հար մորակաւք զերիվարն և խթանաւ զէշն. զի առայժմ ես զրկեալ եմ յարշաւանաց» ։

— ** Այլ Թուղթ նորին վասն մխիթարութեան. քաններորդ ութերորդ. «Հաներ զսուգ իմ յինէն, և ոչ ետուր ինձ երկիր արտասուաց. քանզի ոչ է պարտ սգալ զհոգի առ տէր գնացեալ» ։

— ** Այլ Թուղթ մխիթարութեան, քաններորդ իններորդ. «Մի արտմեսցիս ընդ ննջել հաւրն մերոյ երանելւոյ. զի գնալոց եմք առ Նա. և այս է կամ զոր ուխտեցի Աստուծոյ, յորժամ մտի 'ի կարգս աբեղայութեան» ։

վաղ ժամանակաց. և ինչ մի մեղադրեմ ինձ. յոր-ժամ արհամարհէի զգործն » ։

— ** Եւագրեայ առ եղբարսն վեշտասաներորդ. « Գրեմ առ քեզ և առ եղբարսդ քո, և ոչ կամիմ թէ զանխլանայ 'ի ձէնջ խորամանգութիւն գիւաց. զի ահա գնացք ընդ ճանապարհ որ գարան գործեալ են ձեզ » ։

— ** Եւագրեայ եւթնեւտասաներորդ. « Պարտ է ճանապարհորդաց ստանալ զնա որ ասացն. Ես եմ ճանապարհ. և պարտ է ուսանել 'ի նախընթացելոցն և հարցանել 'ի նոցանէ, և լսել զաւգտակարն, և չածել աւտար ինչ 'ի յընթացս մեր » ։

— ** Եւագրեայ ութեւտասաներորդ. « Դիւականն խորհրդոցն երեք են հակառակ. առաջին՝ սուրբ հրեշտակքն ծածկապէս. երկրորդ՝ որ 'ի կամաց մե-րոց գամք առ պատշաճն, իմաստիւք և կամ երկիւ-ղիւ. երրորդ՝ բնական բարին որով և աւրէնքն շար-ժին » ։

— ** Մելինեայ իննեւտասաներորդ. « Յոյժ զաւար-ճացոյց զմեզ թուղթքս քո 'ի բազում նեղութիւնս մեր. այլ տացէ քեզ Տէր ողորմութիւն յաւուրն յետնում, որովհետև յիշեցեր զխոնարհքս և զնե-ղուցեալքս » ։

— ** Եւագրեայ քսաներորդ. « Ընդունելի են կամքդ քո առ իս ուսումնասէր. և խնդամ ընդ յա-ռաջադիմութիւնդ քո. զի յարկանել զձեռն քո ընդ մաճով՝ ոչ դարձար յետս » ։

— ** Եւագրեայ քսաներորդ առաջներորդ. « Եր-կոքին 'ի կարիս եմք մխիթարութեան, եղբայր Եւս-տաթիէ. որ թողաք զհայրենիսն մեր և եղաք կա-րեաւք լի » ։

— Նորին Եւագրեայ խրատ վասն կուսանաց. « Սիրեա զսէրն Քրիստոս, և սիրեաց 'ի նմանէ, վա-ստակեա նմա և լուսաւորէ զքեզ» . (Պակասի երկր մասամբ) * ։

գար դնեմ զոգիս իմ առաջի. զի լցեալ է անաւրէնութեամբ. և ոչ իբրև առ արարիչ համարձակիմ, և ոչ գիտեմ զբանս իմ թէ հոգևոր իցէ » :

— ** Նուագրեայ ութերորդ. « Ոչ գովութեամբ կարեմ արգելուլ, և ոչ բամբասանաւք նմանիլ կամիմ. զի գովութիւն՝ անափառութեան գործ է. և բամբասանքն խոցոտէ » :

— ** Մելինէ իններորդ. « Գիտեմ զի հոգիս ես բազում հաւտից. և կարող ես հաւտ արածել 'ի Բեթղեհէմ. զսակաւս ցպով, և զբազումս սուղելով » :

— ** Մելինեայ տասներորդ. « Բարիոք խնդացաք ընդ տեսութիւն եղբարց քոց որք յանապատիդ. յերկիր որ ոչ գտանի սովորութիւն աշխարհի » :

— ** Նուագրեայ մետասաներորդ. « Եթէ սիրելի է ունել ինչս անախտութեան ով երանելի, և կամիս ընդունել զցխտութիւն Քրիստոսի, զամենայն ինչ որ պիտոյ է 'ի գիւտ կենաց քոց, յամենայն զաւրութենէ գործեա » :

— ** Մելինեայ երկոտասաներորդ. « Ոչ առաքեցեր մեզ թուղթ մարդ Աստուծոյ. այլ խորհուն 'ի քաղցրութիւն քմաց մերոց որպէս կարծես գրեցեր առ մեզ » :

— ** Մելինեայ երեքտասաներորդ. « Տիրապէս փղաչեցեր ով երանելի զտէր, և անցելովքն և հանդերձելովքն մխիթարեցեր զիս. և ոչ պակասէ հաւր խնամք 'ի քէն » :

— ** Մելինեայ չորեքտասաներորդ. « Ուրախ եղէ 'ի մարմնաւոր ազգակցութիւնդ քո, և աւրհնեցի զտէր. և առաւել խնդամ թէ հոգևորիդ արժանացայց առաքինութեան և ուղիղ գիտութեան » :

— ** Մելինեայ հնգետասաներորդ. « Դժուար և հազիւ ցուցեր ինձ զանձն քո, որում ցանկային 'ի

Երեմիաս. Մի առնուր դու քեզ կին յերկրիս յայսմիկ »:

— ** ԺԱ. Նորին Եւագրեայ Թուղթ առ Մելինէ տիկին. զի առաքեաց առ Եւագր Թէ ուր և զիարդ կայցէ. և գրեաց առ (նա) զփորձութիւնս իւր. (Lettres à Mélanie). « Յառակի ուրեք ասացեալ է Թէ խածեալն յիժէ զցաւս իւր պատմէ հաղորդին կրից իւրոց, զի գիտասցի ինչ մխիթարութեան »*:

* Եւագրի առ Մելինէ և սորա առ Եւագր Թղթակցութիւնը կը յիշէ և սուրբն Հերոնիմոս 'ի Թուղթըն իւր (ՃԼԳ) առ Կտեսիփոն, և այլուր:

— ** ԺԲ. Նորին երկրորդ Թուղթ. « Գրես միշտ առ իս որպէս առ մշակ երկնային երկրին. և ոչ է տեսեալ զանդն իմ՝ լի փշաւք և տատասկով. և ոչ զայգին իմ գաւս և անպտուղ, զրկեալ 'ի հոգևոր ողկուզաց »:

— ** ԺԳ. Թուղթ երրորդ. « Ինչ զոր ոչ ոք կարէ իմանալ կամ առնուլ, գրեցեր առաքեցեր առ մեզ. և զայն զոր ցանկամք ուսանել և առնուլ, ոչ առաքէր »:

— ** ԺԴ. Թուղթ Մելինէ չորրորդ. « Զգիր սըրբութեան քո տեսաք, և սէր քո բարի է առ մեզ ծնողական. և հրամայեցիք զի յաշխատութենէ մեր տայցուք քեզ. զոր իմով կամաւք առաքել ոչ կամէի՝ վասն պատկառանաց սրբութեան քո »:

— ** Մելինէ հինգերորդ. « Բարի էր փոխել 'ի բարւոյ Թուղթդ, զոր առաքեցեր առ մեզ. և լի էր բարի պտղովք, և յաղթեցայ 'ի կթել զնոսա. և անուշ էր հոտ նոցա յիմանալի հոտոտելիս իմ »:

— ** Մելինէ վեցերորդ. « Անտես արարաք զձեզ. յորժամ եկաք նախ 'ի Պաղեստինէ. և ոչ կարացաք առնուլ 'ի քէն պաշար փրկութեան Ճանապարհիս որ եդեալ է մեր առաջի »:

— ** Մելինէ եւթներորդ. « Ոչ եթէ իբրև զար-

բըն Աստուծոյ» ։ (Վաթսուներօթն հատուածք)։ ՀԱ. ԿԴ. ԿՋ. ՁԱ. ԿԹ. Կ. ԽԵ. ԿԷ. բովանդակն տունք ՇԻԳ ։

Ցիշատակարան. «...Գրեցաւ հոգեընկալ և աստուածազարդ մատեանս առ 'ի յՆուագրէ սրբոյ անապատաւորէ արարեալ սատար օգնականի հոգւոց մերոց, 'ի թուի ՋՄԴ յաստուածաբնակ անապատիս Մեծոփայ վանք անուանեալոյ։ Քանզի նախ-այսմ մատենի 'ի սոյն տեղւոջ սկիզբն արարեալ գծագրութեամբ, յայլում տեղի փոխելով, և անդուստ դարձեալ յայլում վայրի զսայ ընդ մեզ կրելով, իսկ դարձեալ ըստ նախախնամելոյն Աստուծոյն իմոյ Ցիսուսի 'ի սոյն տեղի եկաւորութեամբ զսա յանդ հանեալ կատարեցաք ընդ հովանեաւ սուրբ մաւրս լուսոյ Աստուածածնիս, յառաջնորդութեան տեառն Սարգսի և վերակացուի հոգւոց մերոց։ Գրեալ եղև ձեռամբ անպիտան և յետին սպասաւորի բանի Մխ-իթարակ անուն վարդապետի» ...։

Նուագրեայ բան խրատու. «Ը. Ցիշման տեառն մերոյ մեալ յարակայ 'ի մեզ այս են առիթք. աւտարութիւն, առանձնաւորութիւն, պարապումն 'ի թանձունց հոգւոց, բաց 'ի խրճըթէ և 'ի հանգերձէ, և 'ի նշանաւոր վերարկուէ»։

Թ. — Նորին առ աշակ՝ ... դիմակ բանից. «Որդեակ իմ աերամբ, ընդէ՞ր թախծիս, զի յորժամ նղչես, լուես յիմաստութենէ»։ Ասէ աշակերտն. «Վասն զի նմանիմ մեռելոց անգործից»։

— Նորին յարգորումն. «Ի յաղաւթելն քո, որդեակ, սանձեա զլեզուդ. և զմարմինդ քո արգել կայանիւք ուր բանդ է երկիւղին Աստուծոյ. գիր 'ի մամուլս գրոց զուշ քո, և աղաղակեսցէ սիրտ քո առ Քրիստոս»։

Ժ. — Նորին Նուագրեայ բան խրատու միայնակեցաց. «Լուր զբանն տեառն, որդեակ, որ ասէ առ

*կցորդ լինին հրեշտակք․ որ ջանալոյն հակառակ կան՝ դեւք պիղծք »։*

Ա․ — *Առ խորհուրդն որկորստութեան․ « Առ խորհուրդն որ առանց վաստակոյ և պահոց կամիցին գործել զերկիրն զբանաւոր »։ (Եօթանասուն և մի համառօտ հատուածք կամ խրատք)։*

Բ․ — *Առ խորհուրդն պոռնկութեան․ « Խորհուրդքն պոռնկութեան 'ի ներքս 'ի մտի անդր կերպարանեն զայլոյ կին, և զախտն 'ի պատկերին երևեցուցանեն կթել »։ (Վաթսունեւչորս հատուածք)։*

Գ․ — *Առ խորհուրդն արծաթսիրութեան․ « Առ դևն որ խոստանայ ինձ ընդ միտս իմ ածել ինչ զմըտաւ կամ երազովք յազգատոհմէ անտի կամ յայլոց մեծամեծաց տալ բերել ինձ ոսկի »։ (Վաթսունեւվեց հատուածք)։*

Դ․ — *Առ խորհուրդն տրտմութեան․ « Առ անձն որ համարիցի եթէ 'ի տրտմութենէ անտի ոչ լսէ Տէր հեծութեան մերում »։ (Ութսունևմի հատուածք)։*

Ե․ — *Առ խորհուրդն սրտնութեան․ « Առ անձն որ ոչ գիտէ թէ զեղբաւր ոխակալութիւն հնացեալ դիւրաւ կաշառք չիջուցանեն »։ (Վաթսունևինն հատուածք)։*

Զ․ — *Առ խորհուրդն երկբայ ձանձրութեան․ « Առ խորհուրդն ձանձրութեան որ գործել ձեռաւքն խորշիցի, և այլ ճարտարութիւն 'ի մէջ առեալ կամիցի անջան և անվաստակ կերակրել »։ (Վաթսուն հատուածք)։*

Է․ — *Առ խորհուրդս նորափառութեան․ « Առ նորափառ ամբարհաւաճ խորհուրդն որ խրատ տան մեզ տարապարտուց ընդ աշխարհս խառնել, և քոյրս և եղբայրս 'ի միայնակեցութեան վարս արկանել »։ (Քառասունևհինգ հատուածք)։*

— *Առ խորհուրդն ամբարտաւանութեան․ « Առ դևն ամբարտաւանութեան որ ասէ թէ ես եմ սուր-*

զեցուոյ. Նուագրի անուամբ կը յիշատակէ վեցհարիւր Թուով Կանխագոյց խնդիրք (Problèmes prognostiques), բաժանուած 'ի հարիւրեակս. սուրբն Մաքսիմոս կը յիշէ զերկրորդն, ուստի երկու հատուածք ալ մէջ կը բերէ իր գրուածոց մէջ. կը յիշէ նաև զհինգերորդ հարիւրեակն: Գեննադիոս Թէպէտև ատոնց խօսքը չըներ, բայց կը յիշէ Նուագրի անուամբ զանազան համառօտ ու վճռական խօսքեր՝ յօրինեալք վասն կրօնաւորաց: Ատոնք են ահաւասիկ հետևեալքն՝ անկորուստ պահուած 'ի մեր մատենագրութեան:

—Նորին երկրորդ հարիւրեակն. (իննսուն հատուածք, և 'ի կատարածին. «Կատարեցաւ երկրորդ հարիւրն՝ տասն պակաս»):

— Նորին երրորդ հարիւրեակ. (իննսուն հատուածք, և 'ի կատարածին. «Կատարեցաւ երրորդ հարիւրն՝ տասն պակաս»):

— Նորին չորրորդ հարիւրեակն. (իննսուն հատուածք, և այս. «Կատարեցաւ հինգերորդ հարիւրն տասն պակաս»):

— Նորին վեցերորդ հարիւրեակ. (իննսուն հատուածք, և այս. «Կատարեցաւ վեցհարիւրեակս, տասն պակաս»):

— Նորին պակասք հարիւրեկացն. (վաթսուն հատուածք): «Կատարեցան պակասորդք վեցհարիւրին: Եւ տաց ոմն 'ի կատարելոց թէ իննանիւն զԵրրորդութիւնն փառաւորեաց, և վաթնիւս զապականացու աշխարհս պարսպեաց վաթսուն վաթսուն սպառազինաւք որք պահեն զհանգիստ երկնից արքային, որ է հոգի արդարոց անձանց առաքինեաց»:

— Ընդդէմ պատասխանի 'ի գրոց սրբոց առ դեւսըն որ փորձէն զմեզ: «Որ 'ի ներքոյ երկնից բանաւորք են՝ է որ ջանան, է որ ջանալոյն կցորդ լինին, և է որ հակառակ ջանան: Ջանան մարդիկ, ջանալոյն

— Նորին Ճառ երրորդ. «Ժառանգորդք Աստուծոյ, լուարուք զպատգամս Աստուծոյ. ժառանգակիցք Քրիստոսի, ընկալարուք զՃառս Աստուծոյ, զի տայցիք զայս 'ի սիրտս որդւոց ձերոց և զՃառս իմաստութեան ուսուսջիք նոցա»:

— Եւագրեայ բան խրատու. «Զերախայրիս կալոյ իմոյ և հնձանի իմոյ մատուցանեմ Քրիստոսի. և կողով զողկուզից բարեխաւսին»:

— Վասն այնոցիկ որ ընդ քուն ցնորքն անցանեն. «Ցորժամ ընդ քուն ցնորիցն»:

— Վասն նշանակաց անցաւորութեան. «Ի ժամանակի իբրև միտքն առանց զբաղման»:

— Եւագրեայ առ մարտիրոսս. «Զնահատակսն Քրիստոսի զծառայսն պատուեսցուք ամենեքեան, և զԵրրորդութիւնն փառաւորեսցուք»:

— Վասն յարութեան. «Յարութեանն Քրիստոսի երկրպագեսցուք զի աւգնական եղև յուսացելոց իւրոց: Ամենայն հեթանոսք, յարուցելոյն Քրիստոսի երկիր պագցուք, Ճշմարտին Աստուծոյ փառս մատուսցուք»:

— Նորին Եւագրեայ. «Եթէ ունիցիս ընդ քեզ եղբարս, մի հպարտանայցես 'ի վերայ նոցա իբրև զվարդապետ. այլ փութասջիր ջանասջիր շահել զոգիս նոցա»:

— Հաւատք որ 'ի Նիկիա. «Հաւատամք 'ի մի յաստուած, յամենակալ յարարիչն երկրի և երկրի՝ աներևոյթ և երևելի արարածոց»:

— ** Եւագրեայ Հարիւրաւորքն վեցերորդք՝ յաղագս ընդդէմ բանաստեղծից արտաքնոց: Առաջին հարիւրեակ. (իննսուն հատուածք, և 'ի կատարածին. «Կատարեցաւ առաջին հարիւրեակն՝ պակաս տասամբ)»: *

* Ձեռագիր մը կը յաւելու. «Վարդան վարդապետի Թարգմանեալ»: Սոկրատ, պատմագիրն եկե-

— «Քրիստոնէութիւնն է հրաման փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի յարգիւնականաց և 'ի բարոյականաց և յաստուածական բանաւորաց հաստատեալ»։

— Վասն ութ խորհրդոց. (Evagrii Pontici ad Anatolium de octo vitiosis cogitationibus). «Զմիտս մոլորականս զերծեղեցուցանեն ընթերցուածք և տըքնութիւնք և աղօթք։ Զցանկութիւն եռացեալ սոնքացեալ թարշամեցուցանեն քաղց և վաստակ և մենութիւն»։

— «Վասն ախտից որոց միշտ յիշատակքն բծախառն 'ի մեզ կրին, սոցին և զհանգամանս յառաջագոյն յանձինս մեր չարըմբերութեամբ ընկալցուք»։

— Ճառ Քրատեայ. «Աստուծոյ արժանի այն է որ աստուածութեանն ինչ անարժան ոչ գործէ. որ մինչև 'ի փոքրիկն անգր ինչ Ճշմարտութեամբ զվարս իւր վարէ. զի չէ փոքր յաշխարհի որ ասէ ոք թէ սակաւիկ միւս եւս պիտեցաւ»։

— Եւագրեայ, (այլ օր. Նորին յաղագս երջանկութեան). «Առաջին լուսաւոր պատերազմացն՝ առաքինութիւն։ Մանաւանդ յորժամ միայն առանձինն դիմեսցես, զազգատոհմն և զաշխարհն և զինչս ամենայն մերկացեալ»*։

* Յոմանց Նեղոսի կ'ընծայուի այս Ճառ։

— Վասն ընդունելութեան. «Եթէ յաւտարութիւն գնասցես, մի հիւրասիրութեան ընդունելութիւն յամենեցունց պատրաստիցիս գտանել. անարժան զանձն քո ընդունելութեան համարել, զի այսպէս կարող լինիցիս բամբասանացն զխորհուրդան հալածել»։ (Ի յոյնն՝ միահետ ընդ առաջնոյն)։

— Վասն պաշտաման. «Յորժամ կենաց կցորդ եղբայր քո Ճանապարհ երթեալ իցէ, ըստ սովորութեան աղաւթից նորոգեսջիր զսորա յիշատակս»։ (Անվերնագիր 'ի յոյն բնագրին)։

նորա ։ Յորժամ վախճանեցաւ երանելին Բարսեղիոս, իմաստուն և անախտական սուրբ եպիսկոպոսն Գրիգորիոս Նազիանզացւոց հայեցեալ ընդ նորա ամենաշնորհ յաջողութիւնն ձեռնադրէ զնա գլխաւոր սարկաւագայ »* ...

* Յունական սկզբնագիրն ալ կայ, ընդհանրապէս զուգընթաց ընդ հայկականիս, տեղ տեղ տարբերելով, ու մերթ աւելի ընդարձակելով։ Եւագր ծնած է յ'345. իր գրուածոց զանազան հատուածք կամ ամբողջութիւնք կը գտնուին նաև 'ի յոյն և 'ի լատին լեզու, ցրուած 'ի Մատենադարանն Հարց (Bibliotheca Patrum), և յորս կը պակասին շատք՝ որ պահուած են 'ի մեր մատենագրութեան, հին՝ բայց անստոյգ ժամանակաց թարգմանութեամբ, զոր կը նշանակենք կրկին աստեղանշօք։

— Եւագրեայ նշանակ յԵզեկիէլ. « Իմանամք զմարդն՝ զբանական, զառիւծն՝ զսրտմտականն, ըզզուարակն՝ զցանկական, և զարծուին՝ զգիտութիւնն 'ի վերայ կացեալ այլոցն, որ է հոգին՝ 'ի Պաւղոսէ ասացեալ զմարդոյն »։

* Աստուածաբանին ընծայուած է յայլոց. (Σηςμαθια εἰς τὸν Ἰεζεχιήλ. Νομίζομεν τὸν ἄνθρωπον εἶναι τὸ λογικόν, τὸν λέοντα τὸ θυρικόν).

— Գիտնաւոր և արգիւնաւոր. (Le Moine ou la vie pratique). « Գործնականք ճառից խելամուտ լինին գիտնականաց, և զգործնականն հատուածս տեսցեն գիտնականք։ Գործնականք են որ զչարչարելի կողմն ոգւոցն առանց չարչարանաց յանձին ստացեալ բերէ »։

— Եւագրեայ վասն հանդերձից սրբոց հարցն. « Քանզի յառաջագոյն յղեցեր դու առ իս, Անատոլէ սիրելի եղբայր, մինչդեռ իսկ 'ի Տրին լերին անդ նստէի, և խնդրեցեր յայտնի առնել քեզ զնշանաւոր հանդերձն որք յԵգիպտոս միայնակեացքն են »։

— ** Նորին ասացեալ 'ի հերձուածս. « Ջհերձուածս գործեն որ զմեծ և զփառաւորեալ մարմինն Քրիստոսի բաժանեն և հատակոտորեն » : (Inter hereticos ablegandi sunt qui magnum et gloriosi Christi corpus dividunt et mutilant).

— ** Նորին ասացեալ. « Եսայի ասէ. Մերձեցայ առ կինն իմ մարգարէ, և ծնաւ որդի սքանչելի խորհըրդակաց, աստուած հզօր իշխան, քարոզելով ըղմիութիւն բանին առ ստեղծուածն իւր, յայտնէին, քանզի բանն մարմին եղև, և որդին Աստուծոյ՝ որդի մարդոյ » : (Ejusdem dictum. - Isaias ait. Et accessi ad prophetissam, et concepit filius).

— ** Երանոսի եպիսկոպոսի հետևողի առաքելոցն ('ի Մատթէոսի մեկնութենէն) 'ի խորհուրդ տօնի յարութեանն : (Du Commentaire de l'évangile de saint Mathieu, sur le mystère de la résurrection de N. S.).

— Երիանոսի յաղագս գնացից Առաքելոցն և բանից հերձուածողաց. (Ջուղայ):

— Իրենէոսի յաղագս միաւորութեան :

## ԵՒԱԳՐ ՊՈՆՏԱՑԻ

(ÉVAGRE DE PONTE)

---

— Վարք Եւագրեայ երանելւոյ. « Ի բազումս իրս, ով սիրելիք, կարի յոյժ զարմանալի և հռչակաւոր երևեալ վարուք հաւատարիմ ծառայն Աստուծոյ Եւագրիոս, այր վարժ ամենայնիւ ըստ նմանութեան առաքելոց ... Սա էր յազգէ Պոնտացի, 'ի քաղաքէ Իբերիայ, որդի երիցու առն բարեպաշտի, գրակարդաց սրբոյն Բարսղի եպիսկոպոսի Նիոկեսարիացւոց, երևելի ամենեցուն յաղագս լուսափայլ իմաստից

cessit ad eum mater filiorum Zebedæi... Inutiles quidem non sunt hi sensus, nec frustranea verba, quæ dicendis, prœmii instar, præmissa, habent tamen cum prius expositer convenientiam. (Մատենադարան Մխիթարեանց 'ի Վիէննա)։

— ** Երենիոսի է ասացեալ. «Յորժամ և արարածս ազատեալ և նորոգեալ, բազմութիւն 'ի վեր առեալ բուսուսցէ ամենազան կերակրոց 'ի ցաւղոյ երկնի և 'ի պարարտութենէ երկրի, որպէս ծերունիքն յիշեն, որք զՅովհաննէս զաշակերտն տեառն տեսին»։ (Irenæi dictum. - Quum creatura hæc liberata (fuerit) et renovata, multitudinem escarum cujuscumque specii germinabit).

— ** Երենիոսի հետևողի ասացեալ. «Որք հերձնուն և պատառեն զմին, զՌովբովամու պատուհասն ընկալցին. քանզի անարգեն զՈրդին Աստուծոյ և զՄարիամայ փրկութիւն ուրանան»։ (Irenæi dictum. - Qui dividendo unicum frangunt, Reboami retribuitionem accipient).

— ** Նորին ասացեալ. «Որ եկն և մի բնութիւն Աստուծոյ և մարդոյ ներգործեաց. իսկ մեք ոչ կարեմք կցորդ լինել անապականութեանն»։ (Ejusdem dictum. - Ipse venit, Dei et hominis naturam in unum conducens).

— ** Նորին ասացեալ. «Ընդունայն և սնոտիք են որ զԱստուծոյ զփրկութիւնն ուրանան, զոր 'ի մարդանալն իւրում շնորհեաց մեզ»։ (Ejusdem dictum. - Vani et futiles sunt qui Dei salutem negant).

— ** Երինոսի Լոկաոնայ եպիսկոպոսի վկայութիւն հաւատոյ. «Անջատեալ են բարք նոցա յԱստուծոյ. և ոչ գիտելով զսորա բանն միածին, որ միշտ ընդ մարդկութեանս միաւորեալ, և ընդ սմա զանկեալ ընդ իւրում ստեղծուածիս»։ (Irenæi, Lugdunensis episcopi, testimonium de fide. - A Deo separati sunt illi, qui non fatentur).

# ԵՐԱՆՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԼՈՒԳԴՈՆԻ

## (ST. IRÉNÉE, ÉVÊQUE DE LYON).

---

*Երանոսի առաքելական և առաքելագործ հայրապետի* (+ 202) *անուամբ՝ միայն 'ի մեր մատենագրութեան գտանուած այս հատակոտորք հրատարակութեանց նախ՝ 'ի հայ և 'ի լատին, 'ի Փիտրա բենեդիկտեան կրօնաւորէ (այժմ ծիրանաւորաց եպիսկոպոս) 'ի* Spicilegio Solesmensi (*Հատոր Ա*), *զորս ապա Հէրվէյ* (Harvey) *անգղիացին կրկին տպագրեց յիւրում հաւաքման գրուածոց Երանոսի։ Վերջին տպագրութիւն մ'ալ ըրաւ Մարթէն հայագէտ վարդապետ՝ մեր արդէն յիշատակած* Patrum Antenicænorum analecta *գրքին մէջ (յ'էջ* 30) *հանդերձ նոյն սրբոյն անուամբ ասորի մատենագրութեան մէջ պահուած ուրիշ գրուածոց հատուածներով։*

— ** *Սրբոյն Երանոսի հետևողի առաքելոցն 'ի Յարութիւն տեառն. « Աւրէնք և մարգարէք և աւետարանք քարոզեցին զՔրիստոս ծնեալ 'ի Կուսէն և չարչարեալ 'ի խաչին »։* (Beati Irenei, qui subsecutus est Apostolos, et fuit episcopus. – Lex, propheta et evangelia predicarunt Christum de Virgine natum et in cruce passum).

— ** *Սրբոյն Երիանոսի հետևողի առաքելոցն ասացեալ յաղագս որդւոցն Զեբեդեայ. « Յայնժամ մերձեցաւ 'ի նա մայր որդւոցն Զեբեդեայ, հանդերձ որդւովք իւրովք երկիր պագանելով հայցէր ինչ 'ի նմանէ։ — Ոչ դատարկ են միտքս և ոչ վայրապար բանքս առաջի արկելոյ ասացուածոցս, որ և զառաջարանի իւրն ունի զկարգ, և զյարմարութիւն առաջին կարգեալն »։* Sermo de filiis Zebedæi. Tunc ac-

կոտասան ականց. ('Επιφανιοῦ ἐπισκοποῦ Κύπρου πρὸς Διόδορον ἐπίσκοπον Τύρου περὶ τῶν ΙΒ.' Λίθων, τῶν ὄντων ἐν τοῖς στολμοῖς τοῦ Ααρων βιβλῖος). « Առաջին ակն՝ սարդիոն » . (Πρῶτος λίθος σαδίον ὁ Βαβυλώνιος)։ — Այլ բանք յԱկանց գրոց. « Եւ նա տէր մեր զչարչարելին »։

— « Հոլովմունք չար աղանդոց հերձուածողաց, որք 'ի սկզբանէ աշխարհի սերմանեցան ընդ ժամանակս ժամանակս, որ 'ի հեթանոսաց, և որ 'ի կարծիս քրիստոնէութեան ազգի ազգի խաւարային շաղաւեղք վերաբուսեալք հակառակ եկեղեցւոյ Քրիստոսի. զոր կարգեաց սքանչելին այս Եպիփան զպատճառս և զարմատս և զժամանակս իւրաքանչիւր, 'ի գիրսն իւր որ անուանեալ կոչի Ոսկիակոբոս, այսինքն Հաւատոց գիրս. զոր Պարունակաց Եպիփան կարգան »։ (Ըստ այլ. ՃՃ. « Բացատրութիւն բանից ութսուն հերձուածողաց »)։ (Ανεμνώθη Επιφανίου τοῦ ἁγιωτάτου ἐπισκοποῦ τά Πανάρια ἐν τεῦχεσι μὲν τρισί, τόμοις δέ ἑπτά, κατά αἱρέσεωνδὲ ὀγδοήκοντα. Յուն խորագիրն է. 'Επήφανιοῦ ἐπισκοποῦ Κωνσταντεῖας τῆς Κύπρου κατὰ αἱρέσεων ὀγδοήκοντα, τὸ ἐπικλήθεν Πανάριος, εἴτ'οὖν Κιβώτιος).*

* Յիշատակագիր մը կ'ըսէ. « ՅՀ (370). Առ Աստուածաբանն, Բարսեղ. Նիւսացին, Եպիփան՝ որ յայտնեաց աղանդ մինչև 'ի Քրիստոս, և 'ի Քրիստոսէ մինչև յինքն », ակնարկելով անշուշտ սուրբ հայրապետիս յօրինած ընդդէմ Հերձուածոց գիրքը։

— Ի Յովսէփ և 'ի անտեսութիւն տեառն. (Sur Joseph et le mystère de l'Incarnation de N. S.). « Զի գիտելի լիցի ամենեցուն » :

— ** Հարցումն Թէոդորոսի քահանայի ընդ երանելին Եպիփան վասն քառասնորդաց պահոց պասեքին. (Les demandes du prêtre Théodore, et réponses d'Épiphane). « Կամիմ ուսանել ... Եթէ Մովսէս քառասուն աւր պահեաց » * :

* Թուի շարագրութիւն անհարազատ՝ յերրորդ դէմս խօսելով զԵպիփանէ. և հաւանականաբար հայ վարդապետի մը երկասիրութիւն, յորում կը յիշուի նաև սուրբ Լուսաւորիչ :

— ** Հարցումն Մենանդրի առ Եպիփան. (Les demandes de Ménandre, et réponses d'Épiphane). « Նիւթ արարչութեան » :

— ** Հարցումն Եղիոսի առ Եպիփան, վասն ամանաց լուսաւորաց. « Զինչ են ամանք » :

— Վասն Պտղոմեանց և Թարգմանութեան եւթանասնից. (Ἑβδομήκονταδύο γὰρ ὄντες τὸν ἀριθμὸν καὶ, ἐν τῇ Φαρίᾳ νήσῳ). « Ամենառատ պարգևացն Աստուծոյ » :

— Ի մահն եօթանասուներկու առաքելոց. (Մատենադարան Մխիթ. 'ի Վիէննա, թիւ 21) :

— Բանք յաղագս քարոզութեան առաքելոց և աշակերտացն Քրիստոսի. « Յետ վախճանելոյ առաքելոց » :

— Մահ մարգարէից. (Περὶ τῶν προφητῶν πῶς ἐκοιμηθήσαν καὶ ποῦ κεῖνται) *.

* Աստուածաշնչի գրչագրաց ու ճաշոց գրոց մէջ գտնուածներուն շատ տեղ համաձայն, և հաւանականաբար Թարգմանութիւնք Եպիփանու այս երկասիրութեան :

— Որբոյն Եպիփանու ասացեալ զանուանս վասն ականց պատուականաց : — « Վասն զօրութեան եր-

նամին. սակայն գործով իւրով ոչինչ հեռի էր յաւետարանական շնորհացն »:

— Նորին 'ի նոյն գրոց. « Հիմունք նորա 'ի լերանց սուրբ նորա: Հիմունք բարեպաշտութեան աստուածպաշտութիւնն է. լերանց սուրբ' յոր հիմնացեալ հաստատեցաւ եկեղեցի. այսինքն է' զոր փրկիչն ընտրեաց և հիմնեցոյց զառաքեալսն »:

— ** Ի սուրբ խաչն. (Sur la sainte Croix). « Խաչիւ Քրիստոսի տաւնեսցուք »:

— ** Ի խաչվերացն. (Sur l'exaltation de la sainte Croix). « Շարժեսցուք իբրև զնուագարան այսու, սիրելիք, զլեզուս մեր »:

— Ի Թաղումն. (Εἰς τὴν θεόσωμον ταφὴν τοῦ Κυρίου καὶ σωτῆρον ἡμῶν Ἰησόν Χριστόν, καὶ εἰς τὸν Ιωσὴφ τὸν ἀπὸ Ἀριμαθαίας, καὶ εἰς τὴν ἐν τῷ ᾅδῃ τοῦ Κυριοῦ κατάβασιν ). « Զինչ է այս. այսաւր լռութիւն բազում յերկրի »:

— Ի յարութիւնն. (Εἰς τὴν ἁγίαν τοῦ Χριστοῦ ἀνάστασιν). « Այսօր Հրեայքն յԵրուսաղէմ »:

— Ներբողեան ասացեալ 'ի սուրբ կոյսն Աստուածածին. (Ἐγκώμιον εἰς τὴν ἁγίαν τὴν Θεοτόκον). « Զփայլեալ Ճառագայթս աստուածայինս, զահագին և զանհասանելի զաւրութիւնն, զերկնից սքանչումն և զերկրի տիեզերաց »:

— ** Ի սուրբ Աստուածածինն. (Sur le même sujet). « Անճառ է խորհուրդս »:

— Երանելւոյն Եպիփանու Կիպրացւոյ 'ի Հաւատոց գրոց (այլ օր. 'ի Պարունակաց գրոց) վասն յարութեան մեռելոց. (Fragment d'un discours sur la résurrection des morts). « Եւ ո՛րք զանշարժ խոստովանութիւնն որ յաւրինացն և 'ի մարգարէից և յառաքելոցն և յաւետարանչացն' մինչև 'ի ժամանակս 'ի տիեզերական եկեղեցւոյն անապականութեամբ պահեալ »:

— Նորին 'ի նոյն գրոց. «Ո՛վ երգք հոգեխառնք և երանութիւնք զարմանազանք, զոր մարգարէս Դաւիթ երգեալ նուագէ։ Տկարացան այսուհետև և ամենայն մեքենայք Թշնամւոյն, և ես պատրաստեմ զաւգնականութիւն մարգարէութեանն»։

— Նորին 'ի նոյն գրոց. «Բայց սակայն Աստուած փշրեսցէ զգլուխս Թշնամեաց մերոց ... Եբաց, ասէ, զդրունս դժոխոց, և արար զելս մահու. և ջարդեաց խորտակեաց զգլուխ Թշնամւոյն»։

— Նորին 'ի նոյն գրոց. «Տէր մեր Յիսուս Քրիստոս եդեալ 'ի գերեզմանի, խորտակեաց զդրունս դժոխոց, և յարոյց զբնութիւնս մեր, և եհան 'ի գերեզմանէն և 'ի ստուերաց մահու փրկեաց զմեզ»։

— Նորին 'ի նոյն գրոց. «Այս ազգ է որ խնդրէ զտէր. խնդրէ տեսանել զերեսս Աստուծոյ Յակովբայ։ Քանզի յետ մարդանալոյ բանին Աստուծոյ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ամենայն տիեզերք յաստուածածանաւթութիւն եկին, թողեալ զաստուածս հայրենիս»։

— Նորին 'ի նոյն գրոց. «Աստուած ընդ ելանել քեզ առաջի ժողովրդեանդ ... Այս ինչ է զոր ասէն. եթէ յայտնել և բնակել քեզ յանապատ և յանբնակ, և ոչ երբեք տեսեալ զլոյս՝ երկիր չարժեցաւ»։

— Նորին 'ի նոյն գրոց. «Աստուած 'ի տաճարի իւրում 'ի ժամանակի որպէս աւգնական լինէր նմա։ Միաբանի կաթուղիկէ եկեղեցի ընդ ամենայն տիեզերս ընդ ծով և ընդ ցամաք, վասն որոյ և յաղաւթսն մեր ասեմք՝ սուրբ և միայնոյ կաթուղիկէ առաքելական եկեղեցի 'ի ծագաց մինչև 'ի ծագս երկրի»։

— Նորին 'ի նոյն գրոց. «Արդ երանելիս Դաւիթ Թէպէտև ոչ վրէժս 'ի Թշնամւոյն ըստ հրամանի աւրինացն որ ասէ Սիրեսցես զընկերն և ատեսցես զԹշ-

* Հրատարակեալ յ'Արարատ ամսագրի Էջմիածնի 1869, յ'էջ 130, 214, 240։

— ** Յաղագս տարադրեալ եղծեալ երեք բառից տերունական պատկերին 'ի գաստառակի տեառն. (Մատենադ. Էջմիածնի, Թիւ գրչ. 919)։

— Սրբոյն Եպիփանու Կիպրացւոյ արքեպիսկոպոսի խօսք յաղագս Բարուախօսին. (Ὁ φυσιολόγος ἄρχεται λέγειν περὶ τοῦ Λέοντος). « Բարիոք ասաց բարուախօսն յաղագս առիւծուն որ թագաւորն է ամենայն գազանաց » (Ἀρξώμεθα λαλῆσαι περὶ τοῦ λέοντος, τοῦ βασιλέως τῶν θηρίων).

— ** Մեկնութիւն գրոցն Թագաւորութեանց. (Commentaire sur le livre des Rois). (Մատենադ. Էջմիածնի, Թիւ գրչ. 1091. գրչագիր քառածալ բոլորագիր գրեալ 'ի Թղթի 'ի Թովմայ վարդապետէ 'ի Թուին Հայոց ՋԻԹ)։

** Սաղմոսաց մեկնութեան հատուածք. (Fragments d'un Commentaire sur les livres des Psaumes, apocryphes).

— ** Յառաջաբան սաղմոսաց. « Երանելւոյն Եպիփանեայ եպիսկոպոսի Կիպրացւոյ՝ յաղագս երգոց սաղմոսարանի. — Զամենայն ինչ զոր ասաց հայրն մեր Աթանաս, զոր լուեալ էր նորա 'ի հոգեկիր ծերոյն՝ բաւական համարեցաք պատմել փոքր 'ի շատէ, և գնել 'ի տեղի յառաջաբանի »։

— Երանելւոյն Եպիփանու Կիպրացւոյ 'ի Սաղմոսաց մեկնութենէ. « Ես կացի թագաւոր 'ի նմանէ. քանզի ըստ մարդանալոյն ասէ կացի. այլ ինքն իբրև զաստուած ունի զբնական թագաւորութիւնն »։

— Նորին 'ի նոյն գրոց. « Երկինք պատմեն զփառս Աստուծոյ ... Շատ է և բաւական առ 'ի վարդապետութիւն և յուսումն մարդոյս զարմանազան գեղեցկութիւնք և ամբաւ մեծութիւնք արարածոց և լուսաւորաց »։

կատարեցի զՀամահաւաք տառս առաքելոց և մարգարէից և տէրունեան սուրբ վարդապետութեանց սրբոյ հայրապետին Եպիփանու Կիպրացւոյ, զի բազմաջան աշխատութեամբ շարամանեալ բացատրէ 'ի շահ և յաւգուտ լսողաց... Գրեցաւ 'ի հայրապետութեան տեառն Զաքարէի Աղթամարայ և յառաջնորդութեան գերահռչակ և սուրբ ուխտիս Վարագայ Յոհան վարդապետի յոյժ իմաստասիրի, հեզի և խոնարհի. և յաշխարհակալութեան ազգին Նետողի. 'ի հայկազեան տումարի և Թուաբերութեան Հայոց մծաց ՋԾԳ... Գրեցաւ և կազմեցաւ ձեռամբ մեղապարտ Յոհաննէս քահանայի 'ի գաւառիս Վանայ 'ի գեւղս որ կոչի Աւանս ընդ հովանեաւ սուրբ եկեղեցեացս սուրբ Յոհաննու Կարապետի և սուրբ Գրիգորի Հայոց լուսաւորչի »։

— ** Ի փոխումն սուրբ Աստուածածնի և միշտ Կուսին Մարիամու. (Pour le jour de l'Assomption de la très-sainte Vierge). « Արդ հոգւոյն սրբոյ առաջնորդութեամբ և երկիւղիւ Տեառն 'ի հանդէս քննութեանն եկեալ »։

— ** Ցաղագս սուրբ խաչին Քրիստոսի Աստուծոյ մերոյ. (Discours sur la sainte Croix). « Նախայաւիտեան բանն Հաւր 'ի սկզբան լինելութեանն իւրև արարչագործեաց զամենայն արարածս »։

— ** Ի յարութիւն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. (Sur la Résurrection de N. S.). « Յորժամ զախրային ձմեռն՝ գարնանային եղանակն յեղափոխեսցէ »։ (Մատենադ. Էջմիածնի, Թիւ գրչ. 924)։

— ** Ցաղագս սուրբ և նկարագրեալ տէրունական պատկերին սրբոյ գաստառակին, կարի հարկաւոր վասն իշխանութեան Հայոց*։ (Մատենադարան Էջմիածնի, Թիւ գրչ. 915)։

— ** Յերրորդումն կիւրակէին և Նորասքանչ երեւման Նորա երից անգամ աշակերտացն. (Pour le troisième dimanche, et l'apparition de N. S. aux Apôtres). « Յետ այսօրիկ դարձեալ յայտնեաց ... Խորհուրդ գիտութեանն յառաջ բերեն զճշմարտութիւնն։ Արդ առ տեղեաւն ստուգապէս այսպէս է իմանալ ».

— ** Ի Նմին աւուր յերրորդումն կիւրակէին վասն Պետրոսի դարձեալ վերստին հաստատելոյ 'ի հաւատս սուրբ Երրորդութեանն առաջի առաքելոցն. (Encore pour le troisième dimanche, confirmant saint Pierre dans la foi de la Sainte Trinité devant les Apôtres). « Իբրեւ ճաշեցին, ասէ ցՍիմոն ... Աստուածաւր ամենիմաստ խորհրդով աննաւրինէ զշնորհս ողորմութեան իւրոյ. որ և հոգւոց մերոց հրամայեաց լինել կերակուր և ըմպելի, և մարմնոց մերոց հանդերձ »։

— ** Յաղագս առ երկնային դասքն վերանալ Քրիստոսի և ընդ աջմէ Հաւր նստել. (Sur l'Ascension de N. S.). « Բազմապատիկ և անճառելի խորհուրդք աննաւրինաբար համբառնալոյն Քրիստոսի առ Հայրն յերկինս, զոր ուսեալ զաւրաց երկնաւորաց և կարի յոյժ բարձրագունից »։

— ** Յաղագս գալստեան Հոգւոյն սրբոյ և աննաւրինական աստուածային խորհրդոյն որ յաւուրս սուրբ Պենտեկոստէին եղեն. (Pour le saint jour des Pentecôtes, et la descente du Saint-Esprit sur les Apôtres). « Եւ 'ի կատարել աւուրցն պենտեկոստէից ... Ո՛վ մեծի իմաստութեան աւետարանչին Ղուկայ. զի թէ և սա միաբան լինել ասէ ամենեցուն, սակայն յ'իսկզբան գրոյս յայտնապէս ցուցանէ »։

Յիշատակարան գրչագրին որ 'ի Լիմանապատի ... « Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ Նորին

մանակն յազգմանէ չարին հերձուած իմն երևեալ 'ի Կորնթոս առ. ոմանս որք հակառակէին չլինել յարութիւն »:

— ** Վասն յարութեան տեառն և խնկաբեր կանանցն 'ի չորեսին յաւետարանչացն 'ի Մատթէոսէ, 'ի Մարկոսէ, 'ի Ղուկասէ և 'ի Յովհաննէսէ. (Sur le même sujet, selon les quatre évangiles de Mathieu, Marc, Luc et Jean). « Ամենափրկութիւնագործ անապականութիւնն Քրիստոսի յԵրուսաղէմ կատարեցաւ. վասն զի անդ իմանամք զլինելութիւն Ադամայնախաստեղծին հզաւր ձեռաց Աստուծոյ բանին Հաւր »: ... — Մատթէոս 'ի տեառնէ կոչեցեալ առաքեալ ... գրեաց զաւետարանն հեբրայեցւոց բարբառովն' ականատես և ականջալուր գոլով տեառն. Թէպէտ և բազում ինչ ծածկեցաւ 'ի նմանէ »: — Մարկոսի սուրբ աւետարանչին. « Եւ ընդ առաւաւտս միաշաբաթին գան ընդ արևագալն 'ի գերեզմանն. Զկնումն հրեշտակին 'ի մէջ գիշերի իմանամք, զոր Մատթէոս ասէ յառաջնումն նուագի »: — Սրբոյ աւետարանչին Ղուկասու. « Բայց 'ի միաշաբաթօջն վաղքաջ ընդ առաւաւտն եկին 'ի գերեզմանն. բերին զխունկսն և զեւղսն զոր պատրաստեալ ունին 'ի Մարիամայ և 'ի դասերէն իւրմէ Սողոմեայ, զոր 'ի միասին կացուցեալ էին զոր յառաջագոյն ասացաք »: — Յովհաննու սրբոյ աւետարանչին. « Եւ 'ի միաշաբաթօջն Մարիամ Մագդաղենացին ինքն միայնակ գայ 'ի գերեզմանն. և ոչ ինչ տեսեալ' բայց միայն զվէմն բարձեալ 'ի դրոյ գերեզմանէն որպէս յերկրորդումն նուագին »:

— ** Վերատին կոչման Թովմայի և հաստատելոյ զնա. (Sur saint Thomas, et sa confirmation dans la foi). « Եւ յետ ութ աւուր ... Աստուածաւր պարտ է մեզ իմաստութեամբ փոքր 'ի շատէ գիտել յաղագս ութերորդ աւուրն' անդ 'ի ներքս լինել աշակերտացն և Թովմաս դրաւքն փակելովք »:

շաբաթեան աւուրս կարգեալ յօրինեցուք զզաւրութիւն աստուածաբանական վարդապետութեան տեառն Յիսուսի փրկչին մերոյ » :

— ** Ի մեծի չորեքշաբաթի աւուրն յաւետարանէ. (Pour Mercredi-Saint). « Յայնժամ ժողովեցան քահանայապետքն ... Արդ իրաւացի են առացեալքն երանելի աւետարանչին Մատթէոսի. քանզի և յերեքշաբաթւոջ աւուրն գնացեալ տէրն » :

— ** Ի մեծի հինգշաբաթւոջ աւուր 'ի սուրբ յաւետարանէն Ղուկասու. (Pour Jeudi-Saint). « Եկն աւր բաղարջակերացն ... Աստանաւր իբրև ճշմարտապէս արտադրէ մեզ երանելի աւետարանիչն զմեծ և զփառաւոր ազատութեան աւր։ Յորում և եկեալ այսաւր նոյն ինքն տէրն որ ետ զաւրէնսն Մովսեսի յԵգիպտոս բանիւ » :

— ** Ի մեծի աւուր ուրբաթին 'ի խաչելութիւնն տեառն 'ի սրբոյ աւետարանէ. (Pour Vendredi-Saint, et sur la Crucifixion de N. S.). « Զմեծապատիւ և զհրաշափառ սոսկալի աւուրս այս զանուն և զխորհուրդ ոչ ունի ոք յիմաստունս բաւականապէս ընդ գրով արկանել որպէս արժանն է » :

— ** Ի մեծի շաբաթու աւուրն մեծի թաղմանն Տեառն յաւետարանէն որ ըստ Ղուկասու. (Pour le Samedi-Saint, et l'enterrement de N. S.). « Արդ 'ի մեծի և 'ի փառաւոր աւուրս և 'ի ժամու աստ լըռութիւն կամեցայ և ես որ տաւնից իշխանս եմ, դադարել 'ի բանից վարդապետութեան իբրև ոչ ունելով իմաստութիւն » :

— ** Յաղագս յարութեանն Քրիստոսի և մեռելոցն որք յարեան 'ի ժամ խաչելութեան թէ ուստի և ո՞յք և քանի՞. (Pour la Résurrection de N. S.). « Աստուածային առաքեալն Պաւղոս առ Կորնթացիսն գրէ ասելով. Այլ արդ Քրիստոս յարուցեալ է առաջին պտուղն ննջեցելոց։ Քանզի ընդ այն ժա-

— **Նորին իսկ Եպիփանու ասացեալ. «Աստա-նաւր գեղեցկապէս ծանուցեալ լինի Թիւ ժամանա-կացն և որք իշխենն 'ի նոսա առ հայեցուածս իմաստա-նոյն։ Արդ 'ի Թագաւորութեանն մեծին Հռոմայ և Եգիպտոսի և Հրէաստանի»։

— **Ի գալուստն Տեառն 'ի Բեթանիա, և յարու-թեանն Ղազարու զոր յարոյց տէրն մեր Յիսուս Քրիստոս չորեքաւրեայ. (Sur la venue de N. S. à Béthanie, et la résurrection de Lazare). «Աստա-նաւր մեծահաւատ առ Աստուած, և բազում ջա-նիւ և աշխատութեամբ իբրև վաղուց հետէ կամէի եւս գիտել իսկապէս վասն ուսուցն այնորիկ մեծի և փառաւորի յորում եկն 'ի Բեթանիա յարուցանե-լով զսիրելին իւր զՂազար»։

— **Ի գալուստ Տեառն յաւուրս արմաւենեաց 'ի սուրբ աւետարանէն Մատթէոսի. (Sur l'entrée de N. S. à Jérusalem le dimanche des Rameaux, se-lon l'évangile de St. Mathieu). «Եւ յելանել նոցա յԵրիքովէ ... Ով մեծի և աստուածաբանական ի-մաստից երանելի աւետարանչին։ Արդարև բազում էր ժողովք ժողովրդոց, սակայն առ միտս հոգեւորս հայրին տեսութիւնքն»։

— **Ի մեծի աւուր երկուշաբաթին՝ ըստ կարգի աւետարանական քարոզութեանն տեառն մերոյ Յի-սուսի Քրիստոսի. (Pour le jour de Lundi-Saint). «Բազում են ձայնք աստուածայինք և տերունական խորհրդով իրացն եղելոց վասն մեծի փրկութեան և դժուարապատում առ 'ի յայտնութիւն իսկու-թեանցն ... Ուստի և ոմանք 'ի վարդապետաց սըր-բոց և յիմաստուն հռետորաց՝ զմեծ շաբաթս զայս»։

— **Ի մեծի երեքշաբաթի աւուրն 'ի նմին իսկ յա-ւետարանէ ըստ կարգի վարդապետութեանն. (Pour Mardi-Saint). «Աստանաւր իմաստնաբար աստուա-ծային և հոգեւորական քննութեամբ 'ի մեծի երեք-

ւատ սիրով, յորում և վաստակաւ կամ առ ի՛մն Յի-սուս »:

— **Նորին երանելւոյն Եպիփանու ասացեալ՝ ըստ կարգի բանից յաւետարանչէն սրբոյն որ ըստ Յով-հաննու. (Du Commentaire de l'évangile selon St. Jean). « Ի վաղիւ անդր կամեցաւ ելանել 'ի Գալի-լիա ... Արդ որպէս վերագոյն ասացաք՝ 'ի միաշա-բաթւոջ աւուրն 'ի Բեթսայիդայ էր տէրն յաւթե-ւանի »:

— **Ի Յովհաննու աւետարանին մեկնութենէ ըստ կարգի ասացելոյն. « ԶԱստուած ոչ ոք ետես ... Արդ այնպէս համարեցան ոմանք 'ի սրբոց վարդա-պետաց ոչ ըստ կարգի լինել մտաւք և գալ բանին »:

— **Ի քառասնաւուրեայ պահելն Յիսուսի և զփոր-ձապետն յաղթելոյ. (Sur le jeûne de N. S. pen-dant quarante jours). « Անեղանելի և արարիչն բանն Հաւր աստանաւր եղեւ մարդ 'ի Կուսէն վասն փրկութեան մերոյ »:

— **Յաղագս վերջնումն ժամանակին. և վասն յայտ-նելոյ որդւոյն կորստեան Նեռինն. զոր մերձ ընդ մերձ սատակեսցէ Յիսուս հոգւով և թագաւորու-թեանցն վերջին. (Sur la dernière apparition du Fils de Dieu, et sur la perte de l'Antéchrist). « Արդ զառանցելոց ժամանակաց և զեղելութիւն իրաց որ 'ի նոսա 'ի հնաբուն մատեանս գտանելով »:

— ** Երանելւոյն Եպիփանու արքեպիսկոպոսին Կոստանդեայ Կիպրացւոյ ասացեալ յաղագս միւսան-գամ գալստեանն Քրիստոսի Աստուծոյ. յորժամ գայցէ փառաւք իւր և Հաւր և հրեշտակաց սրբոց. առնել դատաստան արդար իսկապէս արդարոց և մեղաւորաց հատուցանելով իւրաքանչիւր ըստ գոր-ծոց 'ի փրկութիւն ամենայն հաւատացելոցս Երրոր-դութեան. (Sur le même sujet). « Եւ յորժամ եկեսցէ ... Աստանաւր ամենայն բանք աստուածայ-նւոյն ունի բազում զանազանութիւնք »:

—** Ի սուրբ մանկունսն Բեթղեհեմի, զոր կոտորեաց չարափառ և անօրէն Հերովդէս. (Sur les saints Innocents, massacrés par Hérode). « Եւ իբրև գնացին նոքա անտի ... Արդ և ըստ աւրինակի կարգացն է իմանալ և զպատշաճ ընթացիցն առ հրամանն վերին։ Ուստի երանելին Յովսէփ այսպէս տընաւրինէ » ։

—** Ի գնալն 'ի տաւն զատկին. « Եւ երթային ծնողք նորա ... Ո՛վ մեծի և աստուածաձիր պարգեւաբաշխ իմաստութեան և շնորհաց աւետարանչին Ղուկայ, որքան եւս կարգաւոր աւրինաւք յառաջ բերեալ բացատրէ » ։

—** Ի մկրտութիւն տեառն 'ի Մատթէոսեան սուրբ աւետարանէն. (Sur le Baptême de N.S., selon l'évangile de saint Mathieu). « Յաւուրսն յայնոսիկ գայ Յովհաննէս Մկրտիչ ... Տեսանե՞ս զառաւելութիւն գիտութեան շնորհացն Աստուծոյ որ տուեալ եւս եղեն երբեմն մարգարէից, նմանապէս և աստանաւր աւետարանչացն » ։

—** Ի մկրտութիւն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի սուրբ յաւետարանէն Մատթէոսի. (Sur le même sujet). « Յայնժամ գայ Յիսուս 'ի Գալիլէէ 'ի Յորդանան ... Ո՛վ մեծասքանչ հրաշիցս. քանզի և ինքն իսկ Յոհաննէս երբեմն ասէր. Ես ոչ գիտէի զնա » ։

—** Ի Յովհաննու աւետարանին մեկնութենէ. (Fragment du Commentaire de l'évangile de St. Jean). « Աստանաւր որդին Որոտման հասեալ 'ի Թևս Հոգւոյն, ուստի և նովին սուրբ հոգւովն իմաստնացեալ լի հանճարով » ։

—** Յաղագս մեծահրաշ և յառաջնապարգև նշանին 'ի Կանա-Գալիլիացւոց զջուրն 'ի գինի փոխարկելով. (Sur le premier miracle de N. S. à Cana de Galilée). « Բազում աշխատութեամբ և մեծահա-

լով էր վասն հովուացն երևէր հրեշտակն. և 'ի հանճարոյն ծանուցեալ եղև յաղագս տխմար և ախմար գոլով նոցա. Եւ անիմաստ ըստ աշխարհի և ըստ մարգարէութեանցն »:

—** Ի դառնալն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի յԵգիպտոսէ, և բնակելոյն 'ի Նազարէթ իբրև անանելով անդ. (Sur le retour de N. S. de l'Egypte, et habiter à Nazareth). « Եւ 'ի վախճանիլն Հերովդէի ... Արդ հարկաւորի առաջականն դառնել ըստ իրացն եղելոցն. ուսթեւաան էին դահճապետք »:

— ** Ի Թլփատութիւն տեառն յաւետարանէն Ղուկայ. (Sur la Circoncision de N. S.). « Եւ իբրև լցան աւուրք ութ թլփատել զնա ... Տեառնե՞ս զհոգիացեալ և զհոգւով սրբով լցեալ զերջանիկ և զերիցս երանեալ սուրբ աւետարանիչն թէ որքան եւս իմաստաբար յառաջ բերէ զիւրոյ աստուածաբանական բանիցն որ վասն տեառն զկարգ և զզաւրութիւն ծածկեցելոյ խորհրդոցն »:

—** Ի գալուստ տեառն քառասնաւրեայ 'ի տաճարն և ծերունւոյն Սիմէոնի 'ի նմին աւետարանէ Ղուկայ. (Pour le jour de la Purification de la très-sainte Vierge). « Եւ իբրև լցան աւուրք սրբութեան ... Ո՜վ մեծի և աստուածայայտ իմաստից գիտութեան աւետարանագրին. որ զանսկիզբն և զանժամանակ որդին Աստուծոյ ընդ ժամանակաւ արկեալ և ընդ աւրինաւք, և զարարիչն արարածոց և ժամանակաց »:

—** Ի ծնունդն Քրիստոսի և 'ի գալմոգուցն յերկրպագութիւն յաւետարանէն սրբոյն Մատթէոսի. (Sur la Nativité de N. S. et l'adoration des Mages, selon l'évangile de saint Mathieu). « Եւ 'ի ծնանելն Յիսուսի 'ի Բեթղեհէմ Հրէաստանի ... Ո՜վ մեծի և սքանչելի և անհանգստութեան աւետարանչին, իբրև ուսեալ յանհասանելի հոգւոյն անհասութեամբ »:

(Sur le même sujet). « Եւ այս վեցերորդ ամիս է ...
Արդ որպէս զմեծ իմն աւետիս, որպէս և էրն իսկ,
և զայն տայ նմա. քանզի յոյժ կարի քաջապէս սի-
րէր Եղիսաբեթ զկոյսն սուրբ » ։

— Ի նոյն սուրբ յաւետարանէն Ղուկայ յաղագս
Յովհաննու Կարապետին. (Du même évangile de
saint Luc, sur saint Jean, le précurseur). « Եւ Ե-
ղիսաբեթի լցան աւուրք և ծնաւ որդի ։ Եւ արդ ա-
հաւասիկ իմանալի է զի առ Աստուած բազում եր-
կիւղիւ և սիրաջան վաստակոց և սրբամտոյց աղաւ-
թից և խնդրելոյ զբանին զաւրութիւնն պէտք են ար-
տադրելով առ հոգւոցն փրկութեան » ։

— Ի սուրբ անտեսութիւնն և 'ի ծնունդն Քրիս-
տոսի. (Sur la Nativité de N. S.). « Աստանաւր
աստուածաբանական իմաստիւք և ընդ այնր խառ-
նելով զերկիւղ տեառն և հայել եւս պատրաստա-
բար առաջնորդականին իմացմամբ 'ի տնտեսական
տերունեան իրս » ։

— Ի ծնունդն Քրիստոսի Աստուծոյ մերոյ. (Sur
la Nativité de N. S. Jesus-Christ). « Անսկիզբն
բանն յանսկզբնականն 'ի հաւրէ աստանաւր կամե-
ցաւ սկզբնաւորել 'ի սրբոյ Կուսէն վասն տարարածոց
իւրոյ փրկութեան, որ և զգալի աւրինակաւք հա-
ճեցուցանէ զհնգեկին զգայարանաւք իմաստնա-
ցեալքս » ։

— Ի սուրբ ծնունդն Քրիստոսի 'ի նմին աւետա-
րանէ. (Sur le même sujet). « Եւ եղև ընդ աւուր-
սըն ընդ այնոսիկ ել հրաման ... Աշխարհագիր առ-
նելն՝ սրբոց ոմանց և իմաստնոց թուեցաւ այնպէս՝
ըստ գլխոց արանց և զհամար գանձուցն բերելով 'ի
պէտս արքունի » ։

— Ի սուրբ ծնունդն Քրիստոսի 'ի Ղուկասու ա-
ւետարանէն. (Sur le même sujet). « Եւ հովիւքն
էին 'ի տեղւոջն յայնմիկ ... Եւ արդ մնացն գիտե-

*զի 'ի բաժնի որդւոցն Սեմայ հասեալ էր երկիր կալուածոցս այսոցիկ. բռնութեամբ Քամ 'ի վերայ եկեալ յափշտակեաց. իսկ Աստուծոյ իրաւունս պահեալ զերգման ուխտին, վրէժ հատուցանէ ազգին Քամայ, 'ի բաց դարձուցանելով զժառանգութիւն Սեմայ »:*

— ** *ժ. Յաղագս Աբրահամու և ամենայն նահապետաց և մարգարէից. « Այլեւ առ սուրբ տեսանելով Աբրահամու զմեծասքանչ զօրութիւնն Աստուծոյ, երթայր և մեծանայր հաւատովք »:*

— ** *« Արդ 'ի Թագաւորութեանն Հերովդէի որդւոյ Անթիպատրեայ ասկաղոնացւոյ, զոր Թագաւորեցոյց Հրէաստանի Աւգոստոս կայսր Հռովմայ, քահանայապետ էր յԵրուսաղէմ Զաքարիա որդի Բարաքեայ »:*

— ** *Յաղագս սրբոյ Կուսին տալ 'ի տաճարն քահանայապետին. « Արդ իբրև եղև նա չորեքտասանամեայ, եկեալ քահանայապետն Զաքարիա 'ի միտս »:*

— ** *Ըստ Ղուկասու երանեալ աւետարանչին բանիցն որ ասէ. « Եւ յամսեանն վեցերորդի առաքեցաւ Գաբրիէլ հրեշտակ Աստուծոյ 'ի քաղաք մի Գալիլեացւոց առ կոյս խօսեցեալ առն ... Աստանօր իրաւացի և ստուգապէս անիմանալի խորագոյն և անհասանելի բարձրագոյն և ջահաւորեալ լուսապայծառ »:*

— ** *Ի գալ սրբոյ Կուսին առ Եղիսաբեթ զկնի աստուածընկալ աւետեացն՝ յաւետարանէն Ղուկայ.* (Sur la Visitation de la sainte Vierge à Elisabeth, selon l'évangile de saint Luc). *« Յաւուրսն յայնոսիկ յարուցեալ Մարիամ գնաց 'ի լեռնակողմն ... Աստանօր իմաստապէս նախ պարտ է իմանալ էթ վասն փութանակի ցուցանէ երանելի աւետարանիչն զգնալ սրբոյ Կուսին »:*

— *Յաղագս գնալոյն Մարիամու առ Եղիսաբեթ.*

— **Զ. Յաղագս Աբելուհւոյ, որ էր քոյրն Աբելի. « Եւ առաքեաց Սէթ և ժողովեաց զամենայն ծնունդս իւր, և զազգատոհմս, և զորդիս որդւոց իւրոց հանդերձ ամենայն ծննդաւք Ադամայ » :

— **Է. Յաղագս նահապետացն և Նոյի. « Եւ Աբելուհի լցեալ զԹիւ ամաց հարց իւրոց, կեցեալ սրբութեամբ և անարատութեամբ ամս ՋԼ. պատուաբերելով սուրբ մարմնոյն Աբելի. ընդ նմին հաւր և մաւր իւրեանց Ադամայ և Եւայի » :

— **Ը. Յաղագս դադարելոյ տապանին. « Եւ յառաջնումն ամսոյն, որ աւր մի էր ըստ հեբրայեցւոց լուսնաթիւ տումարին, որ և նա կայր հաստատեալ 'ի վերայ լերինն Արարատայ » :

— **Թ. Յաղագս Մելքիսեդեկի գալոյն. « Եւ հրաման ետ Նոյ որդւոց իւրոց և Թռչնոց և գազանաց և սողնոց ընդ աւրհնութեամբն Աստուծոյ աճել և բազմանալ 'ի վերայ երկրի » :*.

* Ի վերջ իններորդ գլխոյս կ'ըսէ Եպիփան. « Այլ և Նեբրովթ սկայ որդի Քուշայ յազգէն Քամայ, նախանձեալ ընդ բազմանալ որդւոցն Սեմայ, և նենգութեամբ յափշտակեալ եհան 'ի ձեռաց նոցա ըզհայրենի ժառանգութիւնն զամենայն աշխարհն Պաղեստինոյ, և բնակեցոյց անդ տասն ազգ յորդւոցն Քամայ, և զորդիսն Սեմայ և զամենայն ազգատոհմն իւր, որ էին այնմ աշխարհի ժառանգաւորք՝ հալածանաւք հրդեհեալ եհան անտի » : Եպիփանու այս խօսքը յառաջ բերէ Խորենացի իւր Պատմութեան մէջ (Ա. Է) անոր ուրիշ մէկ գրքէն. « Որ 'ի Կիպրացւոց Կոստանդեայ եպիսկոպոս Եպիփանիոս՝ 'ի Ճերձուածոցն յանդիմանութեան՝ յորժամ Ճշմարիտ և արդարադատ զԱստուած ձեռնարկէ ցուցանել. և վասն ընջելոյ որդւոցն Իսրայէլի զեւթն ազգսն՝ ասէ այսպէս, եթէ Արդարադատապէս Աստուած զազգսըն զայնոսիկ ընջեաց յերեսաց որդւոցն Իսրայէլի.

գիրս մեր յանուն Եպիփանու, առանց երաշխաւորելոյ անոնց հարազատութեան, ինչպէս նաեւ Ճիշդ ժամանակի թարգմանութեանն 'ի հայ ։ Խորենացւոյն վկայութիւնը՝ զոր քիչ եաքը պիտի յիշատակենք, պատկառելի հնութիւն մը տալ կը թուի՝ գէթ անոնցմէ ոմանց շարադրութեան ։

Երանելւոյն Եպիփանու եպիսկոպոսապետին Կոստանդեայ Կիպրացւոյն ասացեալ. – « Ի սկզբնագիր Արարածոց և աւետարանական քարոզութեանց որ ըստ Ղուկայ » ։

— ** Ա. Պատմութիւն երանելւոյն Եպիփանու Կիպրացւոյ ասացեալ ըստ Ղուկիայ. « Սքանչելի այրս այս Եպիփան էր ազգաւ հրէայ. և հայր նորա մշակ երկրագործ էր, և արդար վաստակաւք կերակրէր զորդեակս իւր զԵպիփան և զքոյր նորա Կալիստրոփիայ » ։

— ** Բ. Ի սկզբնագիր Արարածոց և յաւետարանական քարոզութեանց որ ըստ Ղուկայ. և յաւետիս սրբոյ Աստուածածնին և միշտ կուսին Մարիամու. « Աստանաւր սկիզբն արասցուք զանսկզբանն պատմել յաղագս անսկզբանն 'ի Մովսիսէն՝ առաջին օրինագրէն » ։

— ** Գ. « Այլ և եկաց նախահայրն Ադամ անտանելի չարչարանաւք, պահաւք և աղաւթիւք զամս հարիւր, ոչ կամելով զմիաւորութիւն կնոջն. այլ սիրէր կալ մնալ 'ի վիշտս և 'ի նեղութիւնս » ։

— ** Դ. Յաղագս սպանման Աբելի. « Իսկ ամբարիշտըն Կային ոչ ինչ գրեաց զխրատս Աստուծոյ. 'ի սրտի իւրում. այլ և 'ի չարութիւն մտեալ ընդ Աստուծոյ, որում ոչ ինչ կարէր առնել ամենայն զաւրն սատանայի » ։

— ** Ե. Յաղագս խաւսելոյ Տեառն Աստուծոյ ընդ Կայենի քաղցրութեամբ. « Եւ 'ի կատարել ամացն յիսներեկի և միոյ, կոչեաց զնա տէր քաղցրութեամբ և ասէ. Կային, ո՞ւր է Հաբէլ եղբայր քո » ։

կուած ընտիր գրչագրի մը մէջ. «Որ ամենեցուն պատճառ և վերալիստար (?) Յիսուսի աստուածութիւնն, որ զմասնաւորն բոլորովին համաձայն միացուցեալ. և ոչ մասն և ոչ բոլոր ելով. և մասն և բոլոր, որպէս ամենայն 'ի յինքեան 'ի միասին առեալ»։

ԵՂԱԴՈՆ. — Պատմութիւն և խօսք Եղադոնի, յաղագս վարուց, ճգնութեան և սքանչելագործութեան սուրբ և փառաւոր հայրապետին Բարսղի արքեպիսկոպոսին Կեսարու Կապադովկացւոց. «Սիրելիք և բարեկամք, ոչ է անհաւատալի ճառ բանիս միամիտ որդւոց, որք հայրենատուր վարուց հետեւին» *։

* Առ լատինս սորայն Ամփիլոքիոսի կ'ընծայուի այս վարք. և տարակուսելով՝ կը վիճին յերկար բուն հեղինակն գտնելու. մինչ 'ի ճառընտիրս մեր յիշատակի որոշ անուամբ աշակերտի սորոյն Բարսղի. Թէպէտև մերթ Եղաւիդոս, և մերթ Եղիադոս կը կոչեն զնա. բայց ուղղագոյն է Եղադիոս (Ἑλλάδιος, Helladius).

## ԵՊԻՓԱՆ ԿԻՊՐԱՑԻ

(ÉPIPHANE DE CHYPRE)

Ծնած է սուրբ հայրապետս յ'310 յ'Ելեւթերուպոլիս Պաղեստինի. և նշանաւոր իր բազմապատիկ և հմտական երկասիրութեամբք։ Իր մատենագրութիւնն այլևայլ գրուածներ հասուցած է առ մեզ իր անուամբ, յորոց շատք չեն յիշուիր իր հարազատ համարուած երկոց թուոյն մէջ, և տպագրութեամբ ծանօթացած են ուսումնական և բանասէր գիտութեան։ Մենք կը նշանակենք ինչ որ գտեր ենք 'ի

rejeté comme indigne de tout confiance une pareille production »: (MIGNE, *Diction. des Apocryphes*, t. II, p. 207).

*Քննադատք, կը համարձակինք ըսել. բոլորովին տարբեր լեզու պիտի գործածէին Դորոթէոսի անուամբ յիշուած երկասիրութեանս համար, եթէ տեղեկութիւն ունենային իր անունը կրող հատուածոց՝ զոր հասուցած է առ մեզ մեր հին մատենագրութիւնն:*

*— Յաղագս երկոտասան և եւթանասուն և երկու առաքելոցն՝ այս է բաւանդակ պատմութիւն. «Վըսամականն Դորոթէոս յիշատակումն տանէ երկոտասան առաքելոցն, նշանակելով թէ ուր իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ քարոզեաց»:*

*Թերեւս Դորոթէոսի են և հետևեալք, թէպէտ առանց կրելու իր անունն 'ի գրչագիրս:*

*— Յաղագս կատարման աշակերտացն. «Անանիա որ 'ի Դամասկոսն էր, 'ի Հրէիցն քարկոծեալ: Մարկոս յԱղեքսանդրիա քարկոծեալ 'ի Բեքոաց վասն քարոզելոյ զկուսութիւն պարկեշտութեան»*:*

* *Կը գտնուին առ յոյնս և լատինս այսպիսի հատուածք հետևեալ մակագրով.* Synopsis de vita et morte Apostolorum. *Այսպէս նաև 'ի Բիւզանդարան գիրս (Հատ. Բ.):*

*— Կանայք հաւատացեալք որք վկայեցանն. «Մարիամ աստուածածին՝ չարչարանս բազումս ասէ վասն նորա, և ոչ ուրեք գտանի. քանզի փոխեաց զնա Քրիստոս: Մարիամ Մագդաղենացի, որ յաւետարանն պատմի, 'ի Կայիափայ չարչարեալ վասն Քրիստոսի. կայ յագարակին որ կոչի Մագդակիա մօտ 'ի Նազարէթ»:*

**ԵԹԵՐԻՈՍ ՓԻԼԻՍՈՓԱՅ.** — *Հատուած մը այս անունով՝ երկոտասաներորդ դարու մէջ ընդօրինա-*

զկեանս իւրեանց կատարեցին. և Նախկի զեւթանասուն և երկու աշակերտացն գոլ ասելով, որոց յոլովք եպիսկոպոսունք 'ի զանազան գաւառս եղեն. զորոց աստուածային առաքեալն Պաւղոս յողջոյնսն յիշատակէ: Քանզի յետ Փրկչին մերոյ յարութեանն որ 'ի մեռելոց՝ զբոլորից նոցա զդառնալն նշանակէ և յառաքեալսն լինել, զորոց զանուանակոչութիւնն ասա ուրեմն նշանակէ ասելով այսպէս. Ա. Յակովբոս եղբայրն տեառն եպիսկոպոս Երուսաղեմի 'ի նմին իսկ 'ի տեառնէ եղև: Բ. Կղէովպաս ազգակից տեառն՝ երկրորդ եպիսկոպոս Երուսաղեմի. որ և ետես 'նա զտէր յետ յարութեանն 'ի մեռելոց» ...

«Զայս ահա երիցս երանեալ և ամենափարթամն Դորոթէոս 'ի Հռովմ եղեալ, 'ի ձեռն հռովմէական գրոց յիշատակարանս եթող. յորոյ և մեր յեղափոխեալ առ 'ի յելլադացւոյն ձայն փոխաթարգմանեալ՝ յայտնի բոլորից արարաք զՈւթանասնից աշակերտացն զկարգ և զհաւատս, և զճշմարտութեամբ զայս առընկալեալք. քանզի և առաքեալն գրելով յաղագս սոցա ասէ. Որք և յառաջ քան զիս եղեն 'ի տէր» *:

* Abrégé de la vie des Apôtres et des disciples, sous le nom de saint Dorothée, évêque de Tyr et martyr. Cette production est apocryphe; on croit que saint Dorothée avait en effet rédigé un travail semblable; mais son œuvre fut, au XI[me] siècle, interpolée et gâtée par un écrivain du nom de Procope. Telle que nous la possédons, elle est pleine d'erreurs; l'auteur n'a aucune critique et fait preuve d'une ignorance fâcheuse : tous les chrétiens que nomme saint Paul deviennent sous sa plume non-seulement des disciples, mais même des évêques. Bellarmin et tous les critiques ont

# ԴՈՐՈԹԷՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

(DOROTHÉE, ÉVÊQUE)

---

Ինչպէս գրուածքն՝ որոյ հայկական թարգմանութիւնը պիտի յիշատակենք, 'ի կարգէ անհարազատից սեպուածէ, ասանկ անծանօթ մնայ մեզ հեղինակը, և իր ճիշդ ժամանակն. թէպէտև մեր գրչագիրք Յուլիանոսի հասակակից կը սեպեն զնա։ Նոյնը հարկ է ըսենք նաև 'ի հայ փոխադրութեան ատենին համար, թէպէտ և ունենալով զհետս հնութեան։

— « Յաղագս եւթանասունևերկու աշակերտացն տեառն, այս է բաւանդակ պատմութիւն Դորոթէոսի եպիսկոպոսի Տիւրոսի հնագոյն առն հոգեզարդի և մարտիրոսի եղելոյ 'ի ժամանակս Յուլիանոսի թագաւորի։ Այրս այս յառաջասացեալ՝ բազմահամբաւս համագրութիւնս եթող հռոմայեցի և հելլենական. վասն զի այլոց (մէջ. ճ. Հայոց.—մէջ. երկոցուն եւս) լեզուաց 'ի սաղապման հանդիպեալ էղև, և բազումս 'ի ձեռն բարեպաշտութեան։ Յետ վախճանի Դիոկղետիանոսի և Լիկինեայ էառ նա զինքեան բնակարանն հովուելով զառ 'ի Տիւրոսն հաւտ մինչև ցՅուլիանոս բռնաւոր. վասն զի ոչ ինքն Յուլիանոս երևէր հալածիչ, այլ ծածկաբար 'ի ձեռն իշխանացն սպանանէր զքրիստոնեայսն։ Դարձեալ Դորոթէոս եհաս յՈդիւսացւոց (յՈւդիացւոց) քաղաքն, ուր և ըմբռնեալ առի 'ի Յուլիանոսի իշխանացն և բազում տանջանս կատարեալ՝ մեռաւ հարիւր և եւթն ամաց գոլով։ Այս ծերս մեծ համագրութիւնս մեզ եկեղեցականս եթող. յորս վասն եւթանասուն և երկու աշակերտաց Փրկչին պատմագրեաց՝ թէ ուր իւրաքանչիւր ոք 'ի մարգարէիցն և յառաքելոցն

*'ի սակաւն յոլով ինքեան ամբարեալ ժամանակ գիտութիւն փոյթ սոփերք և քաջ եղեն փիլիսոփայք անուանիք, մինչ ոչ միայն տեսողացն և կամ լսողաց, այլ և հանուրց լինէր զարմացումն։ Եւ զինչ յետ այսորիկ. յաշխարհն իւրեանց մեծաւ խնդութեամբ դառնային, ոչ պատուոյ աղագաւ՝ զոր և ոչ առին հաւաստի. այլ յազգին իւրեանց սերմանել զուսումն իմաստութեան։ Արդ եկեալ սկիզբն առնել սկսան բարութեանց, և անխնախանձ բաշխել խնդրողաց, զինքեամբ բաղում տարեալ երկամբք գիտութիւն. որ ոչ միայն ոչ ընդունեցան, այլ և հենգնեցին՝ ընդդէմ յառնելով. զինչ մեզ բաղբաղիք ասէին. սեթեւեթանքն ձեր՝ անպիտան բնաւին մեզ թուին. սուտ և ունայն ձերդ իմաստութիւն, անգործ ասեն են ձեր աշխատանք։ Որոց տխրեալ թախծանօք՝ 'ի խոր խոցէին տրտմութեամբ»։**

* Թրակացւոյն Քերականութիւնն 'ի յոյն, հայ և գաղղիարէն հրատարակեցաւ 'ի Փարիզ յամի 1824 այս խորագրով. «Քերականութիւն Դիոնեսիոսի Թրակացւոյ՝ հանեալ 'ի Թագաւորական գրատանէ Փարիզոյ, և 'ի լոյս ընծայեալ 'ի յոյն, 'ի հայ և 'ի գաղղիացի լեզուս, հանդերձ ծանօթութեամբք և բացատրութեամբք 'ի Յակովբայ Շահան Ջրպետեան եգեսացւոյ 'ի դասատու վարժապետէ հայկական բարբառոյ յարքայական դպրոցի արևելեան լեզուաց Թագաւորական Գրատան, և այլն։ Grammaire de Denis de Thrace, extraite de deux manuscrits arméniens de la Bibliothèque du Roi, et publiée en grec, en arménien et en français; avec notes et éclaircissements; par M. J.-Ch. Cirbied, professeur d'arménien à l'école spéciale et royale des langues orientales vivantes, près la Bibliothèque du Roi, etc. A Paris, de l'imprimerie d'Évérat, 1824.

մայն և իշխան, որոյ՝ վասն յոյժ անքաւութեան արուեստից, զբոլորից այրելով զգրեան, միայն զհօրն իւրոյ եԹող զգրեան. ոմանք ասեն վասն յիշատակի, և ոմանք վասն առաւել մատուորութեան։ Բայց փոքր ինչ այս արուեստ, կամ վասն չանկանելոյ 'ի բուռն, և կամ վասն մանգանց կրԹութեան հացեալ՝ Դիոնիւսիա տառացեալս ... Արդ այս Դիոնեսիոս Թրակացի գտեալ զգիրս զայս ... սակայն անոՃ և անյարմար զնա կարգեալ, մինչև յարամանեալ շարագրեաց զսա համդերձ իւրովքն գիտիւք »։ Նոյնպիսի խօսքեր կը կրկնէ իրմէ վերջ նաև Երզնկայեցին իր քերականութեան մէջ [1]։

Դիոնիսեայ կոչուած քերականութիւնը շատ տեղ դժուարին Ճամբաներ առաջնորդած է մեր Թարգմանիչներուն և մեկնիչներուն, որոնք Թերեւս հեռացեալ քիչ կամ շատ 'ի նախահօրէ լեզուէս 'ի սըրբոյն Սահակայ, և չկարելով կառավարել զերենք այն բազմակնՃիռն յոյն լեզուին մէջ, ընկան բոլորովին անոր ծոցը իբրև 'ի գիրկս մօր, և հնարեցին շատ բաներ՝ զոր չենք տեսներ և 'ի զուր կը փնտռենք ոսկեղէն դարու մատենագրաց մէջ։ Անոր համար իրենց ջանք և ուսմունք խոտեցան 'ի ժամանակակցաց և 'ի յետագայից. որուն և մեզագիր կ'ըլլայ, հայրենակցաց այս անտարբերութեանը, յիշատակագիր մը. « Զի զամենայն ինչ, կ'ըսէ, անտեսեցին որ ինչ յաշխարհիս. զբոլոր սորա ցանկութիւն և զամենայն հեշտութիւն. զազգ և զգաւառ, զինչս և զստացուած, զեղբարս և զհայր, և միանգամայն զամենայն իրս երևելիս և զբազում Թողեալ 'ի Թեկունս աշխարհի, 'ի մայրն ընԹացան վարժից՝ 'ի տունն իմաստութեան 'ի Ճեմարան կրԹարանին. ուր բազում յուցեալ հանգէս երկոց տաժանմանց՝ մինչ

[1] Բազմավէպ, հանդէս եռամսեայ...

կէ՝ անստոյգ ըլլալն ցուցընելով, և յետոյ իր քերականութեան յոյն բնագիրն կը դնէ, յորմէ մէկ գլուխ՝ այսինքն վերջինն կը պակսի, որ կը խօսի զուտից ստանաւորաց. բայց կայ այն ալ 'ի յոյն ձեռագիրս որ 'ի Մարկոսեան գրատան Վենետկոյ, և թերեւս ուրիշ կողմեր ալ: Մեր մատենագրութեան մէջ կը գտնուի անոր հայ թարգմանութիւնն, որ հաւանօրէն կամ Մովսէսի Խորենացւոյ և կամ Դաւթի Անյաղթի է: Զափաւոր հնութիւն ունեցող հայ գրչագիր մը, ստէպ գործոյն ընթացքին մէջ կը նշանակէ հելլէն տառերով Στέφ, որ է անշուշտ Ստեփանոս Սիւնեցին, բայց այս ինքնագիր քերականութեանց մասին մէջ. իսկ Դիոնիսեայ քերականութեան երբեմն 'ի մերոց նաև Դաւթի Անյաղթի անուանն տրուած է: Միով բանիւ, հարկ է ընդունինք որ այս անձանցմէ մէկն ըլլայ թարգմանիչ, և աւելի Դաւիթ Անյաղթ, որուն գրուածոց մէջ ալ կ'երևին տեղ տեղ այս քերականութեան հետքերն: Դարձեալ նոյն քերականութեան մէջ տեղ մը կը գտնենք յունագիր Μώσης, որ է Մովսէսն անշուշտ Խորենացի. բայց ասոնց քերականութիւնն շատ տեղ իրարու հետ խառն են, և երկու անձանցն մէկտեղ միացած, Մովսէսի և Ստեփանոսի: Գրիգոր Մագիստրոս իր քերականութեան մէջ առաջին անգամ կը սկսի խօսիլ Դիոնեսիոսի վրայ, և քերականութեան ծագումը մինչև 'ի Հոմերոս կը հանէ: Երկար յառաջաբանէ մը ետքը կ'ըսէ. «Այսպ Դիոնեսիոս ոմն եկեալ՝ ստգտանելով զերկոցունցն զսկզբունան այսպէս, թէ զձայնի բնութիւն գտանել՝ իմաստասիրաց է. և գիրն տեսցի 'ի կարգի իւրում, զի մի այլ ընդայլոյ քննութեամբ ծաղր լիցի արուեստն: Եւ իւր սկսեալ՝ բուռն եհար զնոյն ինքն զիրէս, եթէ քերականութիւնն է հմտութիւն: Զկնի որոյ Հերոդիանոս ոմն որդի Ապաւղինարի խոհեմագոյն միանգա-

թաղումք էին երևելի վարդապետք, քաջարանք, բանաստեղծք, աստուածային գրոց քաջք՝ գիտունք և հմուտք. յորոց մի էր և Առաքել վարդապետն միպասան. որ զժամանակագրութիւնս հայրապետաց և թագաւորաց գեղեցկայարմար բանիւք դրոշմեալս և իւր յիշատակ անջնջելի եթող: Երրորդ պատճառի մի՛ երևեցայց զքանքարն՝ զոր 'ի տեառնէ ընկալայ. 'ի վարշամակի ծրարեալ և ընդ վատթար ծառային զպատիժն ընդունել. վասն որոյ պատշաճ վարկայ 'ի սեղանաւորս հոգւոյ մանկանց եկեղեցւոյ բաժանել և 'ի պարտուցս ազատիլ. որպէս և յառաջ քան զայս այլ շարագրութիւնս թարգմանեցի. այսինքն Յովսեփոս պատմագիր, և միւս Գերմոսի պատճառաց, և Հարանց վարք որ կոչի Հայելի վարուց, 'ի լեհաց բարբառոյ 'ի հայ լեզու փոխարկեցի... Այդ թարգմանութիւն գրոցս եղեւ 'ի թուաբերութեան տումարիս Հայոց ՌՃԺԱ»:

Ճառընտիրք մեր Արիսպագացւոյ կ'ընծայեն նաև հետևեալքն.

— Ի Յարութիւն տեառն. «Որպէս ասէ Յիսուս»:

— Ի նոյն. «Ընդէ՞ր պանծացան ազգք»:

## ԴԻՈՆԵՍԻՈՍ ԹՐԱԿԱՑԻ

(DENYS DE THRACE).

---

Դիոնեսիոսի Թրակացւոյն ո՛վ և ո՛ր ժամանակի դրիչ ըլլալն տակաւին անստոյգ է. սակայն մեր մատենագիրք շատ յարգ տուած են այս անձին՝ յիշելով զովութեամբ իր փոքրիկ, համառօտ՝ բայց ճիշտ և անսխալ քերականութիւնը: Նոյն ինքն Փաբրիկիոս (Fabricius, Bibliotheca græca, VII, 24-25) իր յունական Մատենագարանին մէջ միայն անձն կը նշանա-

Իսկ մնացեալ շարագրութիւնքն որ այսօր առ մեզ գտանին են այսոքիկ.

Ա. Յաղագս երկնային քահանայապետութեանցն ։

Բ. Յաղագս փրկականն քահանայութեան ։

Գ. Յաղագս աստուածային անուանց ։

Դ. Յաղագս խորհրդականն աստուածաբանութեան ».

Եւ թուղթք զանազան,

Ա. Առ Գայիոս թուղթք չորս ։ — Բ. Առ Դորոթէոս ։ — Գ. Առ Պողիկարպոս ։ — Դ. Առ Սոսիպատրոս ։ — Ե. Առ Տիմոփիլոս ։ — Զ. Առ Տիտոս. — Է. Առ Յովհաննէս աւետարանիչն ։

Ի յիշատակարանին. « Շնորհիւ և գթութեամբն Աստուծոյ ես Ստեփաննոս Իլովացի, յետին 'ի բանասիրաց, տեսեալ զգիրս սրբոյն Դիոնեսիոսի այլափոխեալ՝ և 'ի բազում տեղիս ապականեալ, փոյթ յանձին կալայ վերստին թարգմանել 'ի լատինացւոց բարբառոյ 'ի մեր լեզու. և զայս աշխատութիւնս յանձն առի մանաւանդ վասն երից պատճառաց ։ Նախ զի ընթերցումն գրոց դիւրաձեռն լիցի ուսումնասիրաց, և մի ինչ անյայտ իցէ 'ի խըրթնածածուկ բանիցն սրբոյն Դիոնեսիոսի. այլ ամենայն բան և իմացումն պարզ երևեսցի. վասն որոյ ընդարձակ և բովանդակապէս իւրաքանչիւր բանից մեկնութիւն առընթեր գրոշմեցի ։ Երկրորդ՝ հարկեալ գոլով առ 'ի խնդրոյ բարեմիտ եղբարցն որք են 'ի սուրբ աթոռս Էջմիածին և 'ի հրահանգս իմաստասիրութեանն կրթեն զանձինս իւրեանց, ոչ կարացի անտես առնել. այլ զանց արարեալ զտկարութեամբս իմով յօժարեցայ զայս խրողութիւնս 'ի յաւարտ հասուցանել. քանզի զայսու ժամանակաւ

բանն 'ի բազում տեղիս փոփոխեալ. և մեկնութիւն առ 'ի սրբոյն Մաքսիմոսէ արարեալ կիսակատար թարգմանեալ. քանզի ոչ եթէ ինքն սուրբն Ստեփաննոս մեկնեաց որպէս ոմանք կարծեն, այլ 'ի յունաց բարբառոյ 'ի մերս թարգմանեաց: Վասն որոյ ես նուաստս Ստեփաննոս Իլովացի, յետին 'ի քանասիրաց, 'ի խնդրոյ եղբարցն ուսումնասիրացն 'ի դուռն սրբոյ աթոռոյն Էջմիածնի համարձակեցայ միւսանգամ թարգմանել 'ի լատինացւոց բարբառոյ 'ի հայոց լեզու. թէ զբնաբանն և թէ զմեկնութիւն լիակատար. և զիւրաքանչիւր գլուխս բաժանեցի 'ի գլխաւոր մասունս, զորոց ցանկս ըստ իւրաքանչիւր մասանց 'ի սկիզբն գլխոց համառօտիւք եդի. զի այսպէս դիտաւորութիւն բանիցն դիւրաւ իմասցի: Եւ ապա զկնի իւրաքանչիւր մասին բնաբան մեկնութիւն շարագրեցի. և արտաքոյ մեկնութեան զոր արարեալ էր սրբոյն Մաքսիմոսի յունաց վարդապետին, այլուստ եւս բազում բանս մեկնողականս առ 'ի բացայայտութիւն նկարագրին գրոշմեցի: Եւ գիտելի է ուսումնասիրացն, զի արտաքոյ շարադրութեանցս որք այսօր առ մեզ են, զայլ եւս իրողութիւնս յիշատակ իւր կորովամիտ իմաստութեան սուրբն Դիոնեսիոս թողեալ էր որք ոչ են 'ի միջի այսօր. և զորս ինքն յիշատակէ, և են այսոքիկ.

Ա. Յաղագս նշանական աստուածաբանութեան:

Բ. Յաղագս անձին:

Գ. Յաղագս աստուածային օրհնաբանութեանց:

Դ. Յաղագս աստուածաբանական տպաւորութեանց:

Ե. Յաղագս արդարոյ, և աստուածային իրաւագործութեան:

Զ. Յաղագս իմացականացն և զգալեաց:

Ցիշատակարան Բասլի. « Ի ՌԻԴ Թուականիս շարադրեցաւ բանս աստուածային 'ի ձեռն Ներսէսի. զԲասիլս յիշեցէք 'ի Տէր զկնի աշխատողի սորին » :

Նորագոյն գրչագրի յիշատակարան մ'ալ. « ...Սորա հեղինակն 'ի վաղուց ժամանակէ գրեալ կայր. որ մինչ երեքհարիւր տարի աւելի կայր Թուականն. և սրբագրեալ 'ի քաջահմուտ վարդապետաց: Ըստ նոյն օրինակին և մեք ուշիմօրէն գաղափարեցաք և առաքեցաք 'ի Մեծն Պոլիս »: Գրչագրեալ է 'ի ՌՄԿԷ Թուին Հայոց. իսկ գաղափարողն Ցարութիւն ոմն քարտուղար Միքայելի արեւելցւոյ:

Միւս այլ յիշատակարան ինքնագիր Թովմայի Մեծոփեցւոյ. « ԶՄկրտիչ վարդապետն Մեծոփեցի յիշեսջիք առաջի Քրիստոսի անմահ գառինն անարատի. որ զսուրբ գիրս Կիւրղի գրեալ ձեռամբ սուրբ հօրն Ներսիսի* եբեր 'ի մեզ հասոյց, 'ի պիտականուն վարդապետս Թովմայ, որ ես տեսի և ուրախացայ յոգի, և երկրպագութեամբ համբուրեցի: Նաեւ զսիրելի եղբայրն մեր հարազատ զՄկրտիչ վարդապետն Աւրբելի որդի որ ստացաւ զսա ...: Գրեցաւ ՊԿԱ »:

* Դիոնեսիոսի գրոց հետ միասին կազմեալ է նաև Պարապմանց գիրքն Կիւրղի:

Նոր թարգմանութիւն 'ի լատինէ երկասիրութեամբ Ստեփաննոս վարդապետի Լեհացւոյ: Խորագիրն. « Գիրք սրբոյն Դիոնեսիոսի Արիսպագացւոյ յաղագս երկնայնոց քահանայապետութեանց »: Ի յառաջաբանին կը ծանուցանէ Թարգմանիչն. « Նախ քան զձեռնարկեալ խրոզութիւնս արժան վարկանիմ պատճառ արտադրել թէ վասն էր համարձակեցայ վերստին Թարգմանութիւն առնել. մի գուցէ Թուեսցի ումեք աւելորդ գոլ աշխատութիւնս մեր: Արդ վասն զի Թարգմանութիւն սրբոյն Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսին էր դժուարիմաց, և բնա-

Ուրիշ գրչագրի մը մէջ ալ հետեւեալ յիշատակարանը կը գտնենք՝ յետ Թարգմանչին անունը և ժամանակը յայտնող յիշատակարանին՝ զոր վերը յառաջ բերինք. « Ես Յոհաննէս եպիսկ" և րաբունի ծառայ մեծին Աստուծոյ և ընդրելոցդ, որդի մեծ իշխանաց իշխանին Կոստանդեայ՝ աբրահամեան ծերունւոյ և աշխարհաշէն առաքինւոյ. և եղբայր համահայր 'ի Քրիստոս փոխեցեալ բարեպաշտ արքային Հայոց Հեթմոյ՝ որոյ յիշատակն աւրհնութեամբ, և ցաւղ կենսակայլակ կողից կենարարին իջցէ 'ի գամբարան չիրմի նորա, ամէն: Ի թվականիս Հայոց ՉԻ գրել ետու զիմաստալի և գերապատուէ տառս սըրբոյն Դիոնեսիոսի Աթենայ եպիսկոպոսի և արեգերալոյս վարդապետի 'ի թագաւորութեան քրիստոսապսակ արքային Լեւոնի տեառն իմոյ և եղբաւրորդւոյ՝ զոր աջն Աստուծոյ միշտ պահեսցէ 'ի չարէ աստուածաշնորհ զաւակաւքն իւր, Հեթմիւ և Թորոսիւ և Ռուբինեաւ, փառաց 'ի փառս բարձրացուցանելով. ամէն: Եւ գրեցաւ սա յերկուց գըրչաց, 'ի Ստեփանոսէ և 'ի Յոհաննիսէ, որոց Տէր ողորմեսցի: Ի կաթողիկոսութեանն տեառն Յակոբայ յորմէ և զաւրինակն ընկալա » . . . :

Ուրիշ տեղ մ'ալ նոյն գրչագրին մէջ. « Ընդ նմին և զստացող գրոցս զտէր Յոհա" զեղբայր Թագաւ" և զՍոսթենէս քահանայ որ աւժանդակ եղեւ և աշխատաւոր » :

Յօրինակին գրչագրելոյ 'ի սրբոյ Լամբրոնեցւոյն ինքնագիր յիշատակարան կիսեղծ և անընթեռնլի. « Որք վայելէք 'ի հոգեկերցոյց և յանմահացուցիչ . . . երբեմն երկաւք ձեռին . . . իսկ Ներսէս և . . .

Յետոյ ուրիշ գրով. « Հրամանաւ տեառն Ներսէսի և արեգերական վարդապետի կազմեցաւ գիրքս այս ձեռամբ ումեմն տառապեալ Գրիգորիսի աբեղելցոյ: Արդ տէր Յիսուս վայելել տացէ երկար ժամանակաւք 'ի կամս իւր. ամէն »:

* Առ Ստեփաննոսի Ուռպելեան. «Ծանօթացեալ (Սիւնեցին) մեծ հիւպատոսի մի Դաւիթ անուն և Թագաւորական սեղանոյն կենաւռի, և ձեռնտուութեամբ նորին Թարգմանէ զգեղեցիկ գիրսն սրբոյն Դիոնեսիոսի »:

Կը յաւելումք և զյիշատակարան գրչին. «Փառք... որ զաւրացոյց զտկարութիւնս իմ ժամանել 'ի լըրումն գրաւորական՝ քաղցր և փափագելի և գերահռչակ տառիս: Ցամի ութհարիւրերորդի տասներորդի առաջներորդի Թուաբերութեան ժամանակի Հայոց գրեցաւ տառս աստուածային երկնապատում սրբոյս Դիոնեսիոսի Արիսպագացւոյ հետևողի սըրբոյն Պաւղոսի առաքելոյն, հրամանաւ և արդեամբք ողջախոհ և իմաստուն կրաւնաւորի, տէր Յովհաննիսի Սեբաստացւոյ, աթոռակալի տէր Ստեփաննոսի... Եղև սկիզբն և կատարումն սորա 'ի մեծահռչակ բաղմամարդ և յոլովաժողով գանձունակ ճարելի քաղաքս Յուլխաթ՝ կոչեցեալ Ղրիմ. 'ի վերնաբնակ հայաժողով Թաղս հողայարկեայ, ընդ հովանեաւ սրբոց խորանացս սրբոյն Սարգսի և այլ սրբոց. 'ի Թագաւորութեանն Հայոց Կոստանդեայ, և 'ի կաթուղիկոսութեան տեառն Մեսրոպայ առաջնոյ. և այսմ նահանգի առաջնորդի տէր Ստեփանոսի: Արդ քանզի ոչ գտանէր աւրինակս այս 'ի քաղաքս և ոչ 'ի վանորայսն, և փափագ տենչանաց նեղէր զիս՝ Թէ վասն էր ոչ գտանի այս գիր պատուական՝ մինչև եհաս ինձ գնալ յերկիրն Հայոց՝ 'ի Թագաւորական քաղաքն Սիս. ոչ Թէ վասն տառիս միայն, այլ և վասն կրսերագունի եղբաւր իմոյ Գրիգորի առնել եպիսկոպոս նահանգին Խաղտեաց. և գտեալ զաւրինակ սորա՝ գրեցի մեծաւ փափագմամբ, և բերեալ փոխարկեցի և տեառն իմոյ տէր Յոհաննիսի. որոյ յոյժ ուրախացաւ 'ի գալ աւրինակի սորա, և բաղում սէր եցոյց մեզ» :

*առաքելոյն Պաւղոսի, զոր և կարգեաց եպիսկոպոս 'ի Կրիտէ. առ որ և զԹուղթն գրէ »։*

— *Առ Սոսիպատրոս քահանայ.* (Σωσιπάτρῳ ἱερεῖ). *« Մի՛ զայս վարկանիր յաղթութիւն սրբազանդ Սոսիպատրէ. զկրաւնս ինչ կամ զկարծիս ուրուք թըշնամանելով ոչ բարւոք երևեալ »։*

— *Առ Պաւղիկարպոս քահանայապետ.* (Πολυκάρπῳ Ἱεράρχῃ) *« Ես ոչ գիտեմ եթէ առ Յոյնս և կամ առ այլս ոմանս ասելով բաւական համարեալ արանց բարեաց »** ։

* *Մեկնիչն կը ծանուցանէ. « Սուրբս այս Պաւղիկարպոս 'ի Զմիւռնէ ասիացւոց էր եպիսկոպոս։ Աշակերտ եղեալ սրբոյն Յովհաննու աւետարանչի, և վկայեալ կատարեցաւ հրով. է սորա և Թուղթ առ Փիլիպպեցիս »։*

*Առ Դորոթէոս պաշտաւնեայ.* (Δοροθέῳ λειτουργῷ). *« Աստուածային մէգ է անմատոյցն լոյս, յորում բնակիլն ասի Աստուած, և աներևոյթ գոլ վասն գերունակին երևութիւն »։*

*Յիշատակարան գրոցս. « Ի վեցհազարերորդի երկերիւրորդի քսաներորդի ամի արարածոց աշխարհիս ըստ յունարէն թուոյ, 'ի չորեքտասաներորդի դիկտիոնին, յերկրորդ ամի թագաւորութեանն Փիլիպպոսի թարգմանեցաւ գիրքս այս սրբոյն Դիոնեսիոսի Արիսպագացւոյ 'ի ստոյգ աւրինակաց 'ի Կոստանդնուպաւլսի 'ի ձեռն Դաւթի հիպատոսի և թագաւորական սեղանոյն կինառի, և 'ի ձեռն Ստեփաննոսի քահանայի և քերդողի, աշակերտի անուան Մովսիսի Սիւնեաց եպիսկոպոսի։ Արդ մաղթեմ ըզքրիստոսասէր պաշտաւնեայսդ սրբոյ սեղանոյս, որք առնուք յաւրինակէս յայսմանէ, գրեսջիք և զքանս զայս առ 'ի յիշատակ բարեխաւսութեան առ Քրիստոս, զի գրեալք եղիջիք և դուք 'ի դպրութիւնն կենաց »** ։

* « Դիմոփիլոսս այս կիսատարկաւագ էր. վասն զի զասս կոչէ սպասաւորս: Սա յարձակեալ 'ի վերայ քահանայի իւրոյ և Թշնամանեալ զնա եհան յեկեղեցւոյ. վասն զի ընկալաւ զոմն 'ի մեղուցելոցն յապաշխարութիւն. և նստեալ ինքնաձեռնադրեալ քահանայ. վասն այսորիկ և ով քաջդ Դիմոփիլոս ասէ. որպէս բռնութեամբ և ոչ երկիւղածութեամբ գործ »:

— Տիտոսի քահանայապետի Կրետացւոյ խնդրեալ 'ի նմանէ 'ի ձեռն Թղթոյ Թէ զինչ է իմաստութեան տունն, զինչ խառնարանն, և զինչ կերակուրք նորա և ըմպելիք. (Τίτῳ Ἱεράρχῃ ἐρωτήσαντι δί ἐπιστολῆς, τίς ὁ τῆς σοφίας οἶκος. τίς ὁ κρατήρ). « Սըրբազանն Տիմոթէոս, ով գեղեցիկդ Տիտոս, ոչ գիտեմ Թէ յիմեքէ 'ի ծանուցելոցն ինձ աստուածաբանականացն նշանակաց մնաց զոր ոչ լուաւ »:

— ** Թուղթ Դիոնեսիոսի Արիսպագացւոյ առաջին եպիսկոպոսի Աթենացւոց քաղաքին, զոր և գրեաց նա պատասխանի Թղթոյն Տիտոսի եպիսկոպոսին Կրետացւոց, յաղագս ննջման սրբոյ Աստուածածնին և միշտ Կուսին. « Ծանիցէ եղբայրութիւնդ քո, ով վսեմականդ Տիտէ. քանզի 'ի ժամանակի յորժամ հանդերձեալ էր ելանել յաշխարհէ և յաշխարհականացն, այս է յերկրաւոր Երուսաղեմէ, և մտանել 'ի խորանս վերինն Երուսաղեմի »*:

* Ըստ այլ ձեռագրաց. « Ի յիշատակի սրբոյ Աստուածածնին և միշտ Կուսին Մարիամու, Թուղթ սրբոյն Դիոնեսիոսի Արիսպագացւոյն եպիսկոպոսի Աթենացւոցն և նախաշար վարդապետի, զոր գրեաց պատասխանի Տիտոսի Կրետացւոց եպիսկոպոսի յաղագս ննջման սրբոյ Կուսին Մարիամու աստուածածնի »*:

* Ուրիշ գրչագիր մը (Ց. Արքայեղբօր) կը յաւելու. « Սուրբս այս Տիտոս էր աշակերտ սրբոյ ա-

ասէ զնա կամարար. և է կամարարդ անուն որպէս յեկեղեցականին քահանայապետութեան եկոյց 'ի վերայ միայնակեցաց »:

* Ստեփանոս եպիսկոպոս Սիւնեաց 'ի թղթին առ Գերմանոս պատրիարք. « Դիոնեսիոս արիոպագացի աշակերտն Պաւղոսի, զորոյ աչաւք տեսեալ զՓրկիչն ասէ պատմութիւնն, առաջին եղեալ եպիսկոպոս Աթենացւոցն, գրէ առ Գայիոս սպասաւորն Պաւղոսի, զառ 'ի թագնութենէ գերագոյին 'ի մերս երևոյթ մարդկաւրէն լինելով գալն, թաքուն է և յետ երևելոյն, կամ զի և աստուածայնագոյնս ասացից զերևելն. քանզի և այս Յիսուսի անյայտ է. և ոչ մերոյ բանի կամ մտաց է հպելի խորհուրդ նորա. այլ ճառելով անճառելի մնայ, և գիտելով անգիտելի: Եւ դարձեալ 'ի չորրորդ թղթին որ առ նոյն Գայիոս գրէ. և զի միանգամայն ասացից ասէ, ոչ մարդ էր Քրիստոս, ոչ որպէս ոչ մարդ. այլ որպէս 'ի մարդկանէ, անդր քան զմարդիկ և գերագոյն մարդ, ճշմարտապէս եղեալ մարդ. և ապա ոչ ըստ Աստուծոյ զաստուածայինսն ներգործեալ, և ոչ զմարդկայինսն ըստ մարդոյ. այլ այրացելոյ Աստուծոյ, նոր իմն աստուածայրական ներգործութիւն ընդ մեզ կենցաղավարեալ »:

— Առ Դիմոփիլոս սպասաւոր, յաղագս անձնիշխան գործոյ և քաղցրութեան մեկնութիւն. (Δημοφίλῳ θεραπευτῇ, περὶ ἰδιοπραγίας καὶ χρηστότητος). « Եբրայեցւոցն պատմութիւնք, ով քաջդ Դիմոփիլոս, զորբաղանն զայն Մովսէս, վասն բազում հեզութեանն ասեն զնա արժանաւորել աստուածայնուոյն տեսոյ »:

— Պատասխանի ընդդիմադրութիւն որպէս Դիմոփիլեայ հարցմամբ. « Արդ զինչ ասիցես. ո՞չ է պարտ զքահանայս ամպարշտեալս, կամ այլ ինչ յանտեղեաց յանդիմանեալս, յուղղութիւն գալ »*:

*Թիւնս այնորիկ որ գեր 'ի վերոյ էր ամենայն գովեստից, վարդապետին Ճշմարտի և հոգեւոր հաւրն Պաւղոսի սիրելի որդի Տիմոթէոս » :**

* *Հրատարակուած հայկական և սուրբ Թարգմանութիւնքն 'ի Փարիզ,* (1883). **Analecta Sacra Patrum Antenicœnorum; ex codicibus orientalibus collegit J. P. PAULINUS MARTINUS.**

— *Դիոնեսիոսի Արիսպագացւոյ եպիսկոպոսի Աթենացւոյ առ Տիմոթէոս եպիսկոպոս Եփեսացւոց յաղագս խորհրդականի աստուածաբանութեանն.* (Περὶ μυστικῆς θεολογίας). « *Քահանայականցի Տիմոթեայ 'ի Դիոնեսիոսէ քահանայէ. Երրորդութիւն գերագոյ, գերագոյնգ աստուած, և գերագոյնգ բարութիւն, քրիստոնէից վերատեսուչ* » : ( *Հինգ գլուխք* ) :

— *Դիոնեսիոսի Արիսպագացւոյ եպիսկոպոսի Աթենացւոյ Թուղթք զանազանք:* ('Επιστολαί). – *Առ Գայիոս առաջին.* ('Επιστολὴ ά. Γαΐῳ θεραπευτῇ). « *Խաւար աներևոյթ լինի 'ի լուսոյ. և յաւէտ զի 'ի բազում լուսոյ զանգիտութիւն աներևոյթ առնէ գիտութիւն* » :

— *Առ նոյն երկրորդ.* ( 'Επιστολὴ β'. Τῷ αὐτῷ Γαΐῳ). « *Զիա՞րդ որ անգրն է քան զամենայն գերագոյն քան զաստուածպետութիւնն է, և գերագոյն քան զբարեպետութիւն* » :

— *Առ նոյն երրորդ.* ( 'Επιστολὴ γ.' Τῷ αὐτῷ Γαΐῳ). « *Յանկարծաւրէն է անյուսաբարն. և իբր զի մինչ գեռ աներևոյթ իցէ յերևոյթ եկեալ* » :

— *Առ նոյն չորրորդ.* ( 'Επιστολὴ δ.' Τῷ αὐτῷ Γαΐῳ). « *Զիա՞րդ ասես Յիսուս, որ անգր է քան զամենայն. ընդ ամենայն մարդկան էապէս շարակարգեալ* » * :

* *Այս այն Գայիոս է առ որ զերրորդ թուղթն գրեաց աստուածային աւետարանիչն Յոհաննէս. և*

ծաբանութեանն. եթէ զինչ է աստուածայինն միութիւն և անջատումն: — Ի գլխոյս յայսմանէ մարթիցես ընդ նոսա որք աննման առեն զՈրդի ընդ Հաւր, կամ զՀոգին սուրբ. որպէս Եւնոմիոս և Արիոս և Մակեդոնիոս: Զաստուածպետական գոյութիւնն թէ զինչ երբեք իցէ, նոյն բարերարութիւնն որոշեալ և յայտնեալ առ 'ի յաստացելոցն աւրհնաբանի »: — « Որբոյն Յեռոթէոսի յաղագս աստուածաբանականացն տարրութեանց. Ամենեցունց պատճառ և լցողականն Յիսուսի աստուածութիւն որ մասամբք զբոլորման պայման պահելով »:

— Թէ զինչ է աղաւթից զաւրութիւն. և յաղագս երանելոյն Յեռոթէոսի. և յաղագս երկիւղածութեան և շարադրութեան աստուածաբանականի. « Արդ նախ թէ թուեսցի զամենակատար և զբոլորիցն Աստուծոյ յառաջ ճանապարհաց յայտնաբանականն բարիանուանութիւն տեսցուք »:

— Որբոյն Յեռոթէոսի 'ի տռփականացն աւրհնաբանութեանց մէկնութիւն. « Ի միտ առ թէ զիարդ մեծս Յոռեթիոս զորս յաղագս գովելոյ տռփմանն իմաստասիրէ. նախ աստուածայինն առելով զնա »:

— Թուղթ առ Յովհաննէս առաքեալ և աւետարանիչ Քրիստոսի՝ պարատահմանեալ 'ի Պատմոս կղզւոջ. ('Ιοαυνῇ Θεολόγω, ἀποστόλῳ καὶ ἐυαγγελλιστῇ, περιορισθέντι, κατὰ Πάτμον τῆν νῆσον). « Ողջունեմ զքեզ պատուականդ իմ և սիրեցեալ անձն, և եղիցի ինձ այս առ քեզ բան առ բազումս յոյժ փափագելի »:

— ** Թուղթ Դիոնեսիոսի յաղագս մահուան Պետրոսի և Պաւղոսի առ Տիմոթէոս աշակերտն Պաւղոսի. (Epistola beati Dionysii ad Timotheum, de morte Apostolorum Petri et Pauli). « Աշակերտն աստուածայինն և որդի հոգևոր, սիրտ և խորհուրդ և կատարիչ կամաց նորա, և համբերող 'ի նեղու-

* Ի Ձեռագրի Լամբրոն. « և ամենայն նախախնամութիւն հայրաշարժ սիրոյն 'ի փրկութիւն մարդկան պարգեւս շնորհեալ » ։

Ի սկիզբն երկրորդ գլխոյն 'ի ստորեւս իջից նոյն Ձեռագրին. « Տէր աստուած Յիսուս Քրիստոս՝ ողորմեա Սմբատա գունդուսգապլի » ։

— Դիոնեսիոսի Արիսպագացւոյ եպիսկոպոսի Աթենացւոյ առ Տիմոթէոս աշակերտն Պաւղոսի եպիսկոպոս Եփեսոսի յաղագս եկեղեցականին քահանայապետութեան. (Περὶ τῆς ἐκκλησιαστικῆς ἱεραρχίας). « Առ քահանայակիցդ Տիմոթէոս, 'ի Դիոնեսիոսէ քահանայէ ։ Եւ որդ զի ըստ մեզ քահանայապետութիւնս, ո՜վ սրբազանդ մանկանց սրբազանից, Աստուծով է և աստուածայնոյ. (ութ գլուխք) ։ Ի վերջն. « Որպէս սկիզբն մերձակայիս բանի ցուցանէ՝ պակասեն 'ի շարակարգութենէս յայսմանէ աստուածաբանական տպաւորութիւնք ։ Եւ յետ այսորիկ Ճառի նշանական աստուածաբանութիւն. այսինքն յիղգալեացս յաստուածայինսն անուանափոխութիւն. զորոց և յիշումն առնէ երանելի այրս այս 'ի Ճառին որ յետ սորա է գրեալ, Յաղագս խորհրդական աստուածաբանութեան ։ Քանզի որպէս զեկուցաւ մեզ՝ բազում Ճառք հանդիսաւորք սրբոյս այսորիկ էին. այլ հազիւ և այս գիրք զերծան յաստուածամարտ ձեռաց պղծանուն Յուլիանոսի ։

— Դիոնեսիոսի Արիսպագացւոյ եպիսկոպոսի Աթենացւոյն առ Տիմոթէոս եպիսկոպոս յաղագս աստուածայնոցն անուանց. (Περὶ Θείων ὀνομάτων). « Քահանայակցի Տիմոթեայ 'ի Դիոնիսէ քահանայէ. Իսկ այժմ ո՜վ երանելիդ՝ յետ աստուածաբանականացն տպաւորութեանց յաստուածայնոցն անուանց բացումն՝ որպէս հասանելի է փոխեցայց » . (Գլուխք երեքտասան) ։ Գլուխն երկրորդ այսպիսի մակագրով. « Յաղագս միաւորեցելոյ և անջատեցելոյ աստուա-

«Պատմեաց յաղագս անձին իւրոյ երանելին Դիոնեսիոս. Ես եղբարք, ասէ, իմաստասիրութեան սիրող»: *

* Ի վերջ գրոցն այսպիսի յիշատակարան. «Այս պատմութիւն սրբոյն Դիոնեսիոսի՝ 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ էր թարգմանեալ 'ի յունականէն 'ի վիրականն. իսկ 'ի մերս թարգմանեաց Ցովհաննէս բժիշկ. ՑԻԹ թուականիս Հայոց»: Ուրիշ ձեռագրի մը մէջ. «Այս պատմութիւն Դիոնեսիոսի սրբոյ՝ 'ի քաղաքս Երուսաղէմ թարգմանեալ իբերացւ յունականն. իսկ 'ի մերս թարգմանեաց Ցովհաննէս բժիշկ. ՑԺԸ թուաբերութեանս Հայոց»:

— Պատճառ Դիոնեսիոսի. «Դիոնեսիոս Աթենացի էր որդի Սոկրատայ. յորովայնէ մօրն նուիրեալ իշխանին դիւաց: Եւ յորժամ եղեւ եւթնամեայ, ածին 'ի տաճար կռոցն 'ի զենումն... Աւանդեաց զայս նմա Պաւղոս. զոր ինքն 'ի յափշտակելն յերրորդ երկնից ետես որպէս կատարելոյ. և յետոյ 'ի Տիմոթեայ խնդրեալ ձեռնարկէ 'ի գրել զսա: Եւ Ստեփանոս Սիւնեաց եպիսկոպոսն թարգմանեաց 'ի Կոստանդնուպաւլիս, և եբեր մեզ. և լուծումն եդեալ դժուարագոյն բանից յինքենէ՝ յոյժ պիտանի»:

— Դիոնեսիոսի Արիսպագացւոյ եպիսկոպոսի Աթենացւոց, առ Տիմոթէոս աշակերտ Պաւղոսի առաքելոյ եպիսկոպոս Եփեսացւոց՝ յաղագս երկնայնոյն քահանայապետութեան. (Τοῦ ἐν ἁγίοις Διονυσίου Ἀρεοπαγίτου περὶ τῆς οὐράνιας ἱεραρχίας). «Քահանայակցի Տիմոթեայ 'ի Դիոնեսիոսէ քահանայէ. յաղագս երկնայնոյն քահանայապետութեան: Ամենայն տուրք բարիք և ամենայն պարգեւք կատարեալ 'ի վերուստ են իջեալ առ 'ի հաւրէն լուսոյ, և ամենայն նախախնամութիւն հայրաշարժ լուսաբերութեան յառաջ ձանապարհ 'ի մեզ բարերարապէս ընթացեալ»: * (Առաջին գիրքը ամփոփեալ 'ի հնգետասան գլուխս):

collegit J. P. PAULINUS MARTINUS, 1883. Ասորի լեղուի և մատենագրութեան մէջ ալ կը գտնուին բաց յայլոց՝ որ չկան 'ի հայումս, քանի մը հատուածք յընդգիմագրութենէ առ Սամոսատցին։

— Ի գալուստ Փրկչին յԵրուսաղէմ. « Ի վերայ յաւանակի նստաւ Փրկիչն մեր Քրիստոս, և մտեալ յԵրուսաղէմ՝ դղորդեցաւ քաղաքն ամենայն »։

— Ի թանն. Հայր, եթէ հնար իցէ. « Արդ եկայք, եղբարք իմ սիրելիք, տեսցուք ճշմարտութեամբ թէ վասն էր տէր մեր Յիսուս Քրիստոս որ յաղագս ամենեցուն փրկութեան եկեալ ընդունել զչարչարանս և մեռանել »*։

* Ճառընտիր մը մեր մատենադարանին Ոսկեբերանի կ'ընծայէ զայս. նոյնպէս և Մոնֆոքոն 'ի գործըս սրբոյ հայրապետին. (Յոյն և լատ. հատ. Ժ. յէջ 806), թէպէտ և 'ի կարգի անհարազատ գրուածոց սրբոյն։

## Ս. ԴԻՈՆԵՍԻՈՍ ԱՐԻՍՊԱԳԱՑԻ

(ST. DENYS, L'AREOPAGITE)

---

Մի յառաքելական հարց, մեծիմաստ և հռչականուն աշակերտ սրբոյն Պօղոսի։ Իրեն ընծայուած գրուածոց ոմանք՝ երկբայականք կամ անհարազատ սեպուին։ Հայկական թարգմանութիւնն եղած է յութերորդ դարու 'ի ձեռն Ստեփանոսի Սիւնեաց, ինչպէս կ'ազդեն յիշատակարանք։ Նորագոյն թարգմանութիւն մ'ալ յեօթնևտասներորդին, 'ի Ստեփանոսէ Լեհացւոյ։

— ** Պատմութիւն սրբոյն Դիոնիսի եպիսկոպոսի, որ է որդի Սոկրատայ գլխաւորի Աթենացւոց որ կոչի իմաստասիրաց քաղաք (Autobiographie).

ter à défendre la vérité avec un zèle généreux. Il en cite encore une à Paul de Samosate, dans laquelle le saint lui faisait sur son erreur, les remontrances convenables. Mais ni l'une ne l'autre ne sont venues jusqu'à nous. MIGNE, *Patrologie*. *Այս կորուսեալ երկասիրութեանց մասն է՝ պահուածն 'ի մեր մատենագրութեան*։

— ** *Մեծի ուրբաթին սրբոյն Դիոնեսիոսի Աղեքսանդրու հայրապետի*. (Sur le mystère du Vendredi saint). « *Կալան զՔրիստոս Հրէայքն, զի ինքն կամեցաւ։ Զայս երանելին Երեմիաս յառաջագոյն ասաց թէ ունելով կալան զիս թշնամիք իմ որպէս ձնձղուկ* »։

— ** *Երանելւոյն Դիոնեսիոսի եպիսկոպոսի Աղեքսանդրու*. (Sur la Résurrection de N.S.). « *Յարեաւ այսաւր 'ի մեռելոց կենդանին յաւիտենից Քրիստոս. և տեսեալ կանանց զյարութիւն նորա ընթացեալ պատմէին առաքելոցն։ Զայս Եսայի մարգարէն յառաջագոյն ասաց* »։

— ** *Երանելւոյն Դիոնեսիոսի եպիսկոպոսի Աղեքսանդրու*. « *Եհան զաշակերտսն մինչև 'ի Բեթանիա և ամբարձեալ զձեռս իւր աւրհնեաց զնոսա, և ընդ աւրհնելն՝ վերացաւ յերկինս։ Զայս կանխաւ գուշակեաց երանելին Դաւիթ, թէ Համբարձաւ Աստուած աւրհնութեամբ և տէր մեր ձայնիւ փողով* »։

— ** *Նորին (հատուած մի փոքր)*. « *Չէ մարդ որ խաչեցաւ. այլ սուրբ, միածինն Բանն և որդին Հաւր։ Տես զի զբանն ասաց կախեալ զխաչէն, և ոչ սոսկ մարդ* »*։

* *Այս հինգ հատուածք հայ հին թարգմանութեամբ և անտի 'ի լատին նոր փոխագրութեամբ հրատարակեցան 'ի Փարիզ*. Analecta Sacra Patrum Antenicœnorum, ex codicibus orientalibus;

# ԴԻՈՆԵՍԻՈՍ ԱՂԵՔՍԱՆԴՐՈՒ

## ( ST. DENYS D'ALEXANDRIE )

---

Քրիստոնէութեան երրորդ դարու մէջ ապրած է սուրբ Հայրապետս ։ Իր անունով՝ի մեր դպրութեան պահուած Ճառից ինչուան ՝հիմա սկզբնագիրք ե-րեւցած չեն ։ Հայ թարգմանութեան ժամանակին ալ չենք կրնար որոշել. ոմանք 'ի հմտից՝ հինգերորդ ՝դարու կը վերագրեն ։

— ** Երանելւոյն Դիոնեսիոսի եպիսկոպոսի Ա-ղեքսանդրու 'ի հակաճառէն Պաւղոսի Սամոսատա-ցւոյ. (Écrits contre Paul de Samosate). « Գրեալ է թէ այնպէս սիրեաց Աստուած զաշխարհս զի զՈր-դին իւր միածին առաքեաց ։ Քանզի եղեւ մեզ Աս-տուած Յիսուս Քրիստոս, այն որ ամենայնի է աս-տուած և տէր »* ։

* L'an 264, les évêques assemblés à Antioche contre Paul de Samosate, avaient invité St. Denys à se réunir à eux, mais le saint patriarche ne l'ayant pu à cause de son grand âge, leur écrivit une lettre d'excuse, qui contenait en même temps le témoignage de sa foi sur les articles contestés par le nouvel hérésiarque. Nous n'avons plus cette lettre, et tout ce que nous en savons, c'est qu'elle était adressée à l'Église d'Antioche et non à Paul. On croit que c'est à cette lettre que fait allusion St. Jerôme, quand il dit que le saint évêque d'Alexandrie, peu de jours avant sa mort écrivit une lettre insigne contre Paul de Samosate. Théodore fait mention d'une autre lettre, du même saint, aux évêques assemblés à Antioche, pour les exci-

— Սրբոյն Գրիգորի Սքանչելագործի. « Լուսաւորեա, Երուսաղէմ, զի հասեալ է լոյս. զոր 'ի մեծն Եսայեայ բարձրագոյն և հռչակաւոր աւետարանութիւնն քեզ եկեղեցի հեթանոսաց մատուցանեմ ընծայաբերութիւն ».

— Նորին. « Էր Աստուած, և եղև մարդ. ոչ հեռացեալ 'ի բնութենէն. այլ որ էրն՝ նոյն եկաց անփոփոխելի և անայլայլելի. ինքն յինքեան, և ոչ աստուած 'ի մարմնի, այլ մարմին յաստուածութեան, և աստուած մարմնացեալ » :

— Խոստովանութիւն հաւատոյ աղօթաբար. « Մի աստուած հայր բանին » : Այս է հռչակաւոր հանգանակն (symbole) սրբոյն :

ԴԱՆԻԷԼ ՌՈՒԹԱՑ ( Daniel de Routhe ). — Կեանք և քաղաքավարութիւն երանելւոյ և սրբոյ հաւրն մերոյ Յովհաննու հաւր Սինեայ՝ որ կոչի Կլէմաքս. զոր գրեաց Դանիէլ կրաւնաւոր միայնակեաց Ռութայ լերինն : « Ոչ է կարող բանք իմ, ով սիրելի եղբարք, պատմել թէ ո՛ էր քաղաքն յորում ծնաւ և սնեալ եղև ախոյեան զօրականս այս աստուածպաշտութեան, յառաջ քան զմտանելն իւր 'ի ճգնութեան ասպարէզն » :

— Լուծմունք դժուարիմաց և նուրբ բանից որ կան 'ի գիրս այս կոչեցեալ Կլիմաքս (սեա). արարեալ Դանիէլի կրաւնաւորի Ռայթեցւոյ. — Ա. վասն ելիցն յաշխարհէ. « Զինչ ուրացումն և ատելութիւն. այլ զայս ուսուցանէ. Վասն զի զբնութիւն մեր նախ ստեղծ Աստուած անախտ և սուրբ. և ետ մեզ զաւրութիւն՝ զմիտս, զի իմասցուք զբարւոք կեալն մեր » :

et semper Virginem Mariam). « Անքնին 'ի մարդկանէ, անճառելի բանն, անստելի բնութիւն. խորհուրդն որ ծածկեալն էր 'ի յաւիտենից և յազգաց 'ի նմանէ. որ միայն է անմահ և ունի զգիտութիւն կենաց » ։

— ** Սրբոյն Գրիգորի Սքանչելագործի Նէոկեսարեայ եպիսկոպոսի Պոնտացւոյ, ներբողեան ասացեալ 'ի նախավկայն Քրիստոսի և յառաջասարկաւագ սուրբն Ստեփանոս. (Panégyrique sur St. Etienne, le protodiacre et protomartyr). « Հրաշափառ և ծայրագոյն աստուածայնոցն փառաց արժանացեալ տեսութեանց և վայելչութեանց՝ վսեմականն Ստեփանոս, այսպիսւով և փառաւորեալ պսակեցաւ անհամեմատելին » * ։

* Հրատարակողն Մարթէն 'ի ծանօթութեան. « Սրբոյն Գրիգորի այս ճառքն երկու օրինակք կան յազգայինն Մատենադարանին Փարիզու (Թիւ 88 և 46). առաջինն երկաթագիր, իսկ երկրորդն բոլորգիր։ Այս երկու գրչագրաց մէջ ուղղագրական բաղդատութիւնք կան կ'ըսէ հրատարակիչն։

Այս ամէն ճառք Սքանչելագործին 'ի հայ և 'ի լատին՝ հրատարակուած են 'ի Փարիզ յամի 1883 'ի Մարթէն հայագէտ վարդապետէ գաղղիացւոյ քիչ առաջ յիշատակուած բազմահմուտ և հետազննական ծաղկաքաղին մէջ։ Ինչպէս 'ի մեր Մատենադարանի, ասանկ ալ յԷջմիածին, յԵրուսաղէմ և այլուր կը գտնուին ճառքս՝ ցրուած զանազան ճառընտրաց դասակարգութեան մէջ։ Ասոնցմէ դուրս և մեզի ծանօթ և Սքանչելագործի ընծայուած են նաև հետագայքը։

– Գրիգորի Սքանչելագործի երկոտասան գլուխ նզովից ընդդէմ ամենայն հերձուածողաց. « Ա. Եթէ կարծեօք ոք կամ կերպարանօք ասէ զՔրիստոս յաշխարհի, և ոչ խոստովանի զնա մարմնով եկեալ՝ որպէս և գրեալ է, նզովեալ եղիցի » ։

յաւելուածներէն շատը՝ ոչ 'ի հեղինակէն, այլ ժամանակաւ իրմէ կրտսերագոյն մէկու մը ձեռքով եղած ըլլան։ Հայկականն աւելի համառօտ և արժանաւորագոյն է Սքանչելագործին։ Ուրիշ նշաններ ալ չեն պակսիր առ 'ի հաւատարմացընել թէ հայկական բնագիրն նախապատիւ է քան զյոյնն՝ որ մեր ձեռքն հասած և հրատարակուած է։ Վասն զի յունին և հայուն մէջ այլևայլ ընթերցուածներ կան՝ որ շատ աւելի լաւ կերպով կը հասկըցուին եթէ ենթադրեմք որ յոյնն թարգմանուած ըլլայ 'ի հայոյն, քան երբ համարիմք թէ այս վերջինս թարգմանութիւն ըլլայ 'ի յունականէ »։ Հրատարակիչն իր այս կարծեաց յապացոյց քանի մը օրինակներ ալ մէջ կը բերէ, և կը թուի արդարանալ։

— ** Ի բանէ որ յողջոյն Մարիամու առ Եղիսաբեթ, և յաւրհնութիւն սուրբ Կուսին հոգևոր մարգարէութեամբ. (Sermonis in salutationem Mariæ ad Elisabeth, et in canticum propheticum Sanctæ Virginis). « Արդ պայծառ տեսանեմ զամենայն բան առ Մարիամ, զաւրհնեալ ես դու 'ի կանայս զասացեալն ։ Բայց եւս պայծառագոյն դարձեալ սուրբ կոյսն բարբառեցաւ բանս և երգս գոհացողութեան Աստուծոյ, և անուշահոտութեամբ և աստուածաբանութեամբ լցեալս »։

— ** Գովեստ 'ի սուրբ Աստուածածինն և 'ի միշտ կոյսն Մարիամ. (Laus Sanctœ Dei Genitricis et semper Virginis Mariæ). « Արդարութեան այսաւր ծագեաց արեգակն, և զյառաջագոյն ծագեալսն ծագեաց (ըստ այլ ձ. ծածկեաց)։ Փրկեցայ 'ի խաւարէն և ոչ տանիմ ճառագայթիցն։ Ծնաւ ինձ դարձեալ լոյս և շլանամ (այլ ձ. ընտաղաւատանամ) յերկիւղէն »։

— ** Ներբողեան 'ի սուրբ Աստուածածինն և 'ի միշտ կոյսն Մարիամ. (In sanctam Dei Genitricem

առեալ մարմնացեալ յերկրի երևեցաւ և ընդ մարդկան շրջեցաւ, կրեալ ճշմարտապէս զմերս մարդկապէս և գեր 'ի վերոյ քան զմերս իսկ ներգործէ հրաշարար հանգոյն Հաւր »* ։

* Ծննդեան այս ճառը՝ Ոսկեբերանի ընծայուած է 'ի Մոնֆոքոնէ։ (Հատ. Զ. 392)։

— ** Երանելւոյն Գրիգորի Նէոկեսարոյ յԱւետիս Աստուածածնին. (Sermo in annuntiationem Deiparæ). « Այսաւր հրեշտակական դասուք աւրհներգութիւնք պայծառանան, և փայլումն գալստեանն Քրիստոսի զհաւատացելովքս հրճուի » ։

— Երանելւոյն Գրիգորի Սքանչելագործի Նէոկեսարու եպիսկոպոսի գովեստ 'ի սուրբ կոյսն Մարիամ Աստուածածին. ('Αγιοῦ Γρηγοριοῦ ἐπισκόπου τῆς Νεοκαισάρεαω Πόντου, τοῦ Θαυματουργοῦ ἐγκμιον τὸν εὐαγγελισμὸν τῆς παναγίας Θεοτόκου, καὶ ἀέπαρθένου τῆς Μαρίας, λόγος β'.). « Զամենայն տաւնս զաւրհներգութիւնս պարտ է մեզ որպէս զողջակէզ մատուցանել Աստուծոյ։ Եւ նախ քան զամենայն զաւետարանութիւն սրբոյ Աստուածածնին զուրախ լեր բերկրեալն, որ առ 'ի հրեշտակապետէն աւետարանեցաւ նմա » ։

* Հրատարակողն հայկական թարգմանութեան ճառիս (J. P. P. MARTIN, Analecta Sacra Patrum Antenicænorum, յէջ 150) կը յաւելու զայս ծանօթութիւն. « Այս ճառը որոյն Գրիգորի Սքանչելագործին տարակուսական սեպուած գրուածոց մէջ համարուած է, յերկրորդ կարգի. (MIGNE, Patrologia græca, Հատ. Ժ. 1155–1170)։ Մասնաւոր հետաքննութեան արժանի այն է՝ որ յունական սկզբնագիրը ընդարձակագոյն կամ ճոխաբան է քան ըղհայկական թարգմանութիւնն, որով ընթերցողն կրնայ կասկածիլ որ այս վերջինս համառօտուած ըլլայ։ Սակայն կ'երևնայ թէ սկզբնագրին մէջ եղած

Անյաղթելի ընծայուած. վասն զի իր անունն կրող Մակ-սանայց գրոց մէջ գրուած է՝ իբրու վերջին գլուխ մը նոյն երկասիրութեան. այսպիսի մակագրով. «Ընդ-այսոսիկ և առաջիկայ բան իմաստնոյ (կամ իմաստ-նոյս՝ ըստ այլ գրչի), Թարգմանութիւն է Գրիգորի Նիւսացւոյ գրուածքի մը որ խորագիր ունի ըստ լատ. Sermo contra Manicheos, decem constans Syllogismis. և սկզբնաւորութիւնն է, Si quis sit malum, puniendum est. և վերջն; Non ergo res est increata. կամ ըստ յոյն սկզբնագրին. Εἴ τι ἂν κα-κόν, κολαστέον. որ ըստ հայոյն պէտք էր ըլլար՝ παν κακὸν κολαστίον. իսկ վերջն. οὐκ ἄρα ἀγέννητον. այն է ըստ հայումս. «Ապա ուրեմն ոչ է անեղ»:

## Ս. ԳՐԻԳՈՐ ՍՔԱՆՉԵԼԱԳՈՐԾ

(ST. GRÉGOIRE DE NEOCESARÉE).

---

Եպիսկոպոս Նէոկեսարիոյ Պոնտոսի. կ'ապրէր յերրորդ դարու, և վախճանած է ըստ ոմանց յ'264, և ըստ այլոց յ'270: Իր ճառից հայկական թարգմա-նութիւնք հաւանականաբար 'ի հինգերորդ դարու եղած են:

— ** Երանելւոյն Գրիգորի Սքանչելագործի խաւսք 'ի ծնունդն Քրիստոսի. (Discours sur la Nativité de N. S.). «Խորհուրդ մեծ և սքանչելի տեսանեմք յայսմ աւուր եղբարք: Հովիւք հնչեն յականջս՝ տան աւետիս որդւոց մարդկան. ոչ 'ի լե-րինս հաւատից բարբառին, և ոչ 'ի դաշտս խաշանց հնչեն. այլ 'ի Բեթղեհէմ քաղաք Դաւթի երգեն զերգս հոգևորս»:

— ** Սրբոյն Գրիգորի Սքանչելագործի 'ի ծնունդն Քրիստոսի. (Sur le même sujet). «Բանն Ա-

— ** Խօսք 'ի մանկունսն Բեթղեհեմի որ կոտորեցան 'ի Հերովդէէ. (Sur les Saints Innocents massacrés par Hérode). « Դարձեալ ծերունիս ես առ 'ի բանից ածիմ յասպարէս. դարձեալ որպէս զմայր ոք որ 'ի բազում մանկանութեանց թշուառացեալ, զախտաժէտ և զաղքատ իմոց մտաց ստինս ճմլել հարկաւորիմ »* :

* Ի տպագիր ցուցակի Մատենադարանին որ յէջմիածին՝ այսպէս կը գտնենք նշանակուած գլխորագիր ճառիս. « Գրիգորի Նիւսացւոյ ասացեալ 'ի մանկունսն Բեթղեհեմի՝ առաջին ճառ » : ( Թիւ գրչ. 917 ) :

« Գրիգորի Նիւսացւոյ խօսք երկրորդ 'ի մանկունսն Բեթղեհեմի » :

— Ի յիշատակի սրբոյն Ստեփաննոսի առաջին սարկաւագի և նախավկային՝ երանելւոյն Գրիգորի Նիւսացւոյ եպիսկոպոսի յիննն երանութեանց. « Տէրն մեր և արարիչ զապականութիւն անտես առնելով զբնութեանս, նախաձայնէր տկարագունիցն » :

— Ի սուրբն Ստեփաննոս. ('Εγκώμιον εἰς τὸν Στέφανον, τὸν προτομάρτυρα). « Մեծ է առ յիշատակի վկայիս, և զամենեսեան յարուցանէ կոչել 'ի պասաւորութիւն բանիս. հատուցանել զպատիւ սիրոյ այնմ նահատակեցելոյ »* :

* Հայկական թարգմանութիւնս մեծապէս կը տարբերի 'ի յոյն սկզբնագրէն :

— Գրիգորի Նիւսացւոյ եպիսկոպոսի ներբողեան 'ի սուրբ հայրն Եփրեմ. ('Εγκώμιον εἰς τὸν ὅσιον πατέρα ἡμῶν 'Εφραΐμ). « Շարժեն զիս միտք իմ, ով եղբարք » :

— Բան խոստովանութեան. « Խոստովանիմք զորդին Աստուծոյ » :

— « Ամենայն չար առնչելի » : Ազգային բանասիրաց ծանօթ գրուածք մը, և ընդհանրապէս Դաւթի

— Ի յիշատակ հանգուցելոց 'ի Քրիստոս ննջեցելոց. երանելւոյ Գրիգորի Նիւսացւոյ եպիսկոպոսի 'ի յարութիւն մեռելոց. « Այլ Թերեւս ոք առ լուծեալ և քակտեալ մարմինն հայեցեալ, և առ չափ իւրոյ զաւրութեանն՝ զաստուածութիւնն դատեսցի »* : * Մասն է 'ի Մարդակազմութեան գրոցն. Ցոյնն Ա. 108, գլ. 25:

— ** Երանելւոյն Գրիգորի եպիսկոպոսի Նիւսացւոյ ասացեալ 'ի Թաղումն Տեառն և 'ի Յովսէփ Արեմաթացի. « Գովելի է ինձ և այս եկեղեցական աւրէնք, որ պատրաստեաց մեզ այսաւր զերեքաւրեայ մահուան և յարութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի զյիշատակս » :

— Ներբողեան ասացեալ 'ի սուրբ վկայն Քրիստոսի Թէոդորոս, որոյ յիշատակն կատարի որ 'ի սուրբ քառասնորդացն յառաջին շաբաթ աւուրն. ('Εγκώμιον εἰς τὸν μέγαν μάρτυρα Θεόδωρον). « Ո՛վ դուք Քրիստոսի նոր ժողովուրդք, սուրբ հաւտ, Թագաւորեալ քահանայութիւն. որք յամենայն կողմանց, քաղաքացիք իսկ և գաւառացիք, 'ի միասին հասեալ լինիք հանդիսիւ » :

— Երանելւոյն Գրիգորի եպիսկոպոսի Նիւսացւոյ 'ի վարս և 'ի սքանչելիս սրբոյն Գրիգորի Սքանչելագործի Նէոկեսարեայ եպիսկոպոսի. (Εἰς τὸν βίον τοῦ ἁγίου Γρηγορίου τοῦ Θαυματουργοῦ λόγος).

Մեր Մատենադարանին Ճառընտրաց մէջ հնագոյն մը (Բ) այսպիսի ունի սկզբնաւորութիւն ներբողիս. « Էին ամենայն ուստեք հաւաքեալ մանկունք, որք յիմաստութիւն և 'ի բժշկութիւն փութացեալք » : Իսկ ուրիշ մը, նոյնպէս ընտիր և հնագիր, համեմատ յոյն բնագրին (Հատ. Գ. 534) կանխաբանութեամբ մը կը սկսի հետեւեալ խօսքերով. « Այս դիտաւորութիւնն մերոյս բանի առաջի կայ յարմարումն բանիս պատմութեանս վասն Գրիգորի Սքանչելագործի » :

— Գրիգորի եպիսկոպոսի Նիւսացւոյ յաղագս բնութեան մարդոյ. «Զմարդն 'ի հոգւոյ իմանալւոյ և 'ի մարմնոյ գեղեցիկ կազմեալ. և այնպէս բարւոք՝ որպէս ոչ հնար գոլ այլազգ լինել կամ հաստիլ Թուեցաւ բազմաց և արանց բարեաց»: Ի վերջ գրոցն յիշատակարան Թարգմանչին. «Ի վեցհազարերորդի և երկերիւրերորդի քսաներորդի եւթներորդի արարածոց աշխարհիս. ըստ յունարէն Թուոյ 'ի չորեքտասաներորդի ընդիքտիոնին. իսկ ըստ հայումս ՄԻԱ առաջին ամի Թագաւորութեանն Լեւոնի. Թարգմանեցան գիրք սրբոյն Գրիգորի Նիւսիա եպիսկոպոսի 'ի սորոյգ օրինակաց 'ի Կոստանդնուպօլիս. 'ի ձեռն Դաւթի հիւպատոսի և Թագաւորական սեղանւոյն յանկիւնաւի. 'ի ձեռն Ստեփ՛ քահանայի և քերդողի. աշակերտի տեառն Մովսէսի Սիւնեաց: Յիշեցէք զնոսա ընդ աւրինակողքս, և փոխեցէք զբանս յիշատակի 'ի յոյս փրկութեան աշխատողացդ. և յիշողացդ առ հասարակ ձեզ և մեզ ողորմեսցի Քրիստոս»:

Յաւելլեանն 'ի պատմութեանն վկայէ վասն Սիւնեցւոյն. «Ծանօթացեալ ('ի Կ. Պոլիս) մեծ հիւպատոսի միում Դաւիթ անուն, և Թագաւորական սեղանոյն կենաւի, և ձեռնտուութեամբ նորին Թարգմանէ զգեղեցիկ գիրսն սրբոյն Դիոնեսիոսի. և գնէ ինքն գժուարագոյն և խրթին բանիցն լուծումն բան առ բան. Թարգմանէ և զգիրսն քաղցրաբան Գրիգորի Նիւսացւոյ զբնութեան և զկազմութեան»:

— Գրիգորի եպիսկոպոսի եղբաւր Բարսղի՝ Տեսութիւն մարդոյն կազմութեան: Գլուխ յորում է իմն մասնաւորական յաղագս աշխարհիս բնախօսութեան, և գեղեցիկ իմն և պայծառ պատմութիւն. «Զի եԹէ ընդ այնոսիկ որ 'ի ձեռն ստացուածոցն պարտ է պատուել զայնոսիկ որ 'ի ձեռն առաքինութեանն զանազանեալ են»:

նա թուղթ և տայց մի տար արհամարհել զհոգին սուրբ. և ապա առաքեաց և կոչեաց զնա, և խնդրեաց մեկնել զգիրքս. և երկրորդ անգամ 'ի ձեռն թղթոյ փութացոյց: Եւ այլք ասեն թէ ազնուական ոմն միայնակեաց գլուխ՝ անուն Պաւղոս, խնդրեաց զգիրքս մեկնել դէմ ընդ դէմ, և այլ փութացոյց թղթով. զի անապատաւորքն ոչ ընդունէին զբանս գրոցս աստուածաշունչ, այլ երգ մարմնական »:

* Հայ թարգմանութեան մէջ կը պակսի վերջին Ճառն հնգետասաներորդ՝ զոր ունի յոյն սկզբնագիրն: Հնագոյն գրչագիր մը՝ երկաթագիր. կը յիշատակուի առ Զօհրապեան արքեպիսկոպոսի (Ցուցապարհորդ. Բ. Հատ.) հետեւեալ յիշատակարանաւ, « ԻՆԻԲ = (973) թուականութեան Հայոց և ՉԻԵ հռոմի թուականութեանն գրեցաւ մեկնութիւն Երգոց երգոյս 'ի գաւառին Տարաւնոյ, ձեռամբ Գէորգայ անարժան գրչի, հրամանաւ հաւր Կիւրակոսի և համակամութեամբ եղբարցս, վասն յիշատակի հոգւոց իւրեանց, 'ի ժամանակի փոխման յաշխարհէ Մամիկոնէնից եպիսկոպոսի. և յետ մահուան նորա բազում շփոթութիւն և հակառակութիւն եղեւ վասն ձեռնադրելոյ եպիսկոպոսի: Արդ աղաչեմ զամենեսեան զընթերցաւղսդ, յորժամ ընթեռնուք զլուսաւոր և զբազմափայլ գիրս սորայն Գրիգորի Նիւսացւոյ եղբաւրս Բարսղի և լուսաւորիք և աւգտիք 'ի նմանէ ընթերցմամբ և կամ գրչութեամբ, զստացաւղս սորա հանդերձ եղբարբքս յաղաւթս յիշեսջիք 'ի Տէր ... Աղաչեմ և ես որ գրեցի անարժանս երկնից և երկրի և յետինս քան զամենեսեան և վերջացեալս յամենայն գործոց բարեաց և որ ընդ իս եղբարքս՝ յիշատակի արժանի արասջիք զմեզ 'ի Քրիստոս ...

« Զանպիտան կազմիչս գրոցս զՑոլեան յաղաւթս յիշեսջիք: Թուականս ԻԸ էր յորում ամի կազմեցի (Սարկաւագայ թուական է = 411):

— Խաւսք տասներորդ. (Λόγος ι.'). « Արմ հիւսիւսի և եկ հարաւ ... Այժմ առաջի եդեալ մեզ աստուածային բանիցս տեսութիւն յԵրգոյ երգոյս յարմարութենէ՝ գժուարահասանելի իմն և ծածկեալ իմաստութեամբ յանձնառելիսն » :

— Խաւսք մետասաներորդ. (Λόγος ια.'). « Զայն եղբաւրորդւոյ իմոյ բաղխէ զդուռն ... Եւ այսոքիկ 'ի մեծամեծացն անտի պատուիրանացն են, 'ի ձեռն որոց միւսք աշակերտելոցն բանիւս՝ իբրև զհող ինչ զնիւթական բնութիւնս յինքեանց 'ի բաց թաւթափելով » :

— Խաւսք երկոտասաներորդ. (Λόγος ιβ.'). « Յարեայ ես բանալ զդուռն եղբաւրորդւոյ իմոյ ... Որք յանդնդային գնացսն յուսով ընչեղութեանն առաքին՝ յորժամ զնաւն 'ի նաւահանգստէն շարժեն և 'ի խորսն դարձուցանեն զեկաւք զխելս նաւին, որ 'ի վերայ զեկացն անցեալ նստի՝ ապաւթս առնէ նաւարկութեանն առաջնորդ զԱստուած լինել» :

— Խաւսք երեքտասաներորդ. (Λόγος ιγ'.). « Երդմնեցուցի զձեզ, դստերք Երուսաղեմի ... Զինչ է եղբաւրորդին քո յեղբաւրորդեաց՝ զի այդպէս երդմնեցուցանես զմեզ ... Որ 'ի ձեռն Մովսիսի աւրինադրեաց զխորհուրդ աւրինացն, և ելից ինքեամբ զբովանդակ զաւրէնսն և զմարգարէս » :

— Բան չորեքտասան. (Λόγος ιδ.'). « Ծնաւտք նորա իբրև տաշտք խնկոց իւղեփեցաց ... Որ աննենգ կաթամբն կերակրէ զտղայս 'ի հոգևոր հասակին, դաստիարակն՝ որպէս ասէ ինքն առաքեալ, այն ինչ ծնիցեալսն յեկեղեցւոջ լինելով » :*

* Ի լուծմ. « Զգիրքս ասեն գրեաց Գրիգոր 'ի խնդրոյ Թէոդոս թագաւորի. զի յորժամ առնէր խրախութիւն թագաւորն, երգիչք և քնարահարք ընդ երգս ցանկականին խառնէին և զբանս Երգոյ երգոյս. վասն որոյ լուաւ Գրիգոր և առաքեաց առ

— Խաւսք չորրորդ. (Λόγος δ'.). « Ահա ես գեղեցիկ մերձաւոր իմ ... Ասեն որք զոսկի արուեստաւոր մաքրեն, եթէ ընդ ումեք աղտեղագոյն նիւթոյ ըստ գրժանաց խառնեսցի և խոտան լինիցի, զպայծառութեան գեղեցկութիւնն բովաց հրով բժշկեն զանգունութիւնն »։

— Խաւսք հինգերորդ. (Λόγος ε'). « Ձայն եղբաւրորդւոյ իմոյ, ահա սա եկն ... Որք այժմ ընթերցուածովս առաջի երթան մեզ յԵրգոյ երգոցս իմաստասիրութեննէս, 'ի փափաքումն ածէ տեսութեանն գերակայիցն իւրեանց, և տրամութիւն ամբարէ հոգիս մեր »։

— Խաւսք վեցերորդ. (Λόγος ς'.). « Ցանկողնի իմում 'ի գիշերի խնդրեցի ... Դարձեալ մեծամեծ և բարձրագոյն աւանդութիւնս յԵրգոյ երգոցս մերձակայ ընթերցուածովք խրատիմք. քանզի իմաստասիրութիւն է հարսինն պատմութիւն, որովք յաղագս իւր անցանէ բանիւ »։

— Խաւսք եւթներորդ. (Λόγος ζ'). « Գահաւորակ արար իւր արքայ Սողոմոն ... բազում իրաւք Թագաւորն Սողոմոն յաւրինակ ճշմարիտ Թագաւորին առեալ լինի. յոլովիւք ասեմ լաւագունաւք յաղագս նորա 'ի սուրբ գրոց պատմեցելովք »։

— Խաւսք ութերորդ. (Λόγος η'.). « Ե՛կ 'ի Լիբանաննէ հարսն ... Որ ընդ մեծամեծ տեսութիւնս էանց բանիւ առ Կորնթացիսն մեծն առաքեալ, յորժամ յերկուանայր յաղագս իւրոյ բնութեանն ասելով, եթէ մարմին է, և եթէ միտք 'ի ժամանակի դրախտին խորհրդոյ »։

— Խաւսք իններորդ. (Λόγος θ'.). « Զի՛ գեղեցկացան ստինք քո քոյր իմ հարսն ... Եթէ յարեայք ընդ Քրիստոսի, զվերինն խորհեցարուք, մի՛ զերկրայինս ասէ զայսոսիկ մեզ որ Քրիստոսիւն խաւսիւր. քանզի մեռայք, ասէ, և կեանքն ձեր ծածկեալ են ընդ Քրիստոսիւ յԱստուած »։

վասն ինքեանց բարգաւաճութեան հաճոյ թուեցաւ մեծարել զկուսութիւն. աղաչեցին զԳրիգոր Նիւսացի զի խօսեսցի ճառս կուսութեան, և մեծ ցուցանել զերան և սեփական Աստուծոյ։ Եւ այլք ասեն թէ ինքն յինքենէ շարժեալ գրեաց զայն. որ Աստուծոյ առանձին իմանի բնութեանն, հնար է և մարդկան անձամբ հաղորդս լինել»։

— Գրիգորի եպիսկոպոսի Նիւսացւոյ թուղթ յաղագս Երգոյ Երգոց. (Γρηγόριου Νυσσῆς ἐξήγησις ἀκριβὴς εἰς τὰ ᾄσματα τῶν ᾀσμάτων τοῦ Σολομῶντος, προοίμιον). «Ընկալայ որպէս վայել էր քում պարկեշտ վարուցդ և սուրբ անձինդ՝ զփոյթն յաղագս Երգոյ երգոց. գէմ յանդիման և գրով մեզ հրամայեցեր, որպէս զի ըստ յարմարականութեանն երևելի լինելով որ ծածկեալ իցէ 'ի բանսն իմաստասիրութիւնն»։

— Ճառք Գրիգորի եպիսկոպոսի Նիւսացւոյ առաջին. Երգ երգոց. (Εἰς τό ᾄσματα τῶν ᾀσμάτων, λόγος ά.). «Որք միանգամ ըստ խրատուն Պաւղոսի զհին մարդն իբրև զգեստ ինչ աղտեղի մերկացայք հանդերձ գործովքն և ցանկութեամբք իւրովք, և զլուսաւոր պատմուճանն տեառն՝ զոր 'ի լերինն այլափոխելով զդէմս իւր եցոյց՝ 'ի ձեռն մաքրութեան վարուցն զգեցայք»։

— Ճառք երկրորդ. (Λόγος β'.). «Սեաւ եմ ես և գեղեցիկ դստերք Երուսաղեմի ... Աստուածային վեհայութեան խորանին ոչ համապատիւ էր 'ի ներքնում ծածկեցելոյ գեղեցկութեանն արտաքոյ յառաջ երևեալն»։

— Ճառք երրորդ. (Λόγος γ'.). «Ձիոյն իմոյ 'ի կառսն Փարաւոնի ... Որ նախ քան զմերձակայ ընթերցուածս 'ի յառաջաբանս Երգոյ երգոցս մեզ տեսեալ եղեն՝ նմանութիւն ունի յետ գիշերոյն եղելոյ նորին առաւօտին ծագմանն»։

ղեցւոյս առաջնորդէ. 'ի բարձրագոյնս ուսմանց լինել վարդապետութիւն. վասն զի մաքրեալ կանխաւ զոգիս 'ի ձեռն յառաջագոյն առացելոցն բանից. և յամենայնէ 'ի բաց կացեալ՝ 'ի սնոտեացն եղելոց մարդկան ցանկութեանց » :

— Բան վեցերորդ. « Ամենեցուն ժամանակ և ժամ ամենայն իրի ընդ երկնաւ. այս առաջիկայիցս մեզ բանիցս տեսութիւնս սկիզբն. աշխատութիւն քննութեանս ոչ փոքր, և յաշխատութենէս շահ վաստակոց արժանաւոր » :

— Բան եւթներորդ. « Ժամանակ ընկենլոյ քարինս և ժամանակ ժողովելոյ քարինս: Ածեցոյց արգէն իսկ որովք ուսոյց, զլսողացն զոյժ եկեղեցական զաւրութեանց գաստապետս. մինչ զի ընկենուլ կարող լինելոյ զհակառակամարտսն » :

— Բան ութերորդ. « Ժամանակ սիրելոյ և ժամանակ ատելոյ: Ո՞ արգեւք այնպէս իցէ լսելովք մաքրեալ, մինչ զի մաքրապէս ընդունել յաղագս սիրոյս բան. ոչինչ զազատեղի սիրելութեանն իրս յինքն 'ի ներքս բերցէ » :

— Յորդորումն մանկանց 'ի կուսութիւն: Նորին Գրիգորի Նիւսացւոյ յաղագս Կուսութեան, եթէ սեպհական է աստուածայնոյ և անմարմին բնութեանն կուսութիւն. (Περὶ παρθενίας. Ἐπιστολὴ προτρεπτικὴ εἰς τὸν κανάρετὴν βίον). « Բաղձանց կանխաւեալ կուսութիւն. առ ցոյց բանի պատճառս բերքն տալով պատուասիրացն զպատճառսն. 'ի տուեան հաշակել բանիւ, և եղելովք ուղղութեամբ շնորհացն զուարճանալ » : ( Քսան և երկու գլուխք բանից 'ի մեր Թարգմանութեան. իսկ 'ի յոյն սկզբնագրին քսան և չորս )* :

* Ի լուծմ. « Բարսեղ և Աստուածաբանն պատշաճ համարեցան գովել զկուսութիւնն. բայց ինքեանք ոչ ձեռնամուխ եղեն յիրսն. զի մի՛ թուեսցի թէ

քանզի նկարագրէ աղաւթիցն բանիւք որպիսի ոք լի-նել ախորժելի է զԱստուծոյ մաղթողն. ոչ եւս գրէ-թէ 'ի մարդկային բնութեանս սահմանս ցուցեալ, այլ ընդ Աստուծոյ ինքեան առաքինութեամբն խառ-նեցեալ »:

— Նորին բան չորեքտասաներորդ. « Եկն և 'ի մեզ հոգևոր խրախճանութեանս սպասաւորութիւն՝ ճաշակել մանաւանդ յայլոց, քան թէ 'ի մէնջ տալ այլոց պատրաստագոյն եղելոց. և սակայն ես ամե-նեւին իսկ մաղթէի առաջնորդ լինել յայնպիսեացն հարկաց »:

Գրիգորի եպիսկոպոսի Նիւսացւոյ խօսք նորին ժո-ղովողին: Մեկնութիւն առաջիկայ բանիցս. Բանք ժողովողին որդւոյ Դաւթի թագաւորի Իսրայելի յԵրուսաղէմ. (Ῥήματα Ἐκκλησιαστοῦ ἰοῦ Δαβίδ βασιλέως Ἰσραήλ ἐν Ἱερουσαλήμ). « Ունայնութիւն ունայնութեանց ասաց ժողովողն ... Առաջի կայ մեզ ժողովողիս մեկնութիւն, հաւասար ունելով մեծու-թեամբ օգտութեանն զվաստակ տեսութեանս »:

— Բան երկրորդ. « Ես, ասէ ժողովողն: Ուսաք. ո՛ է ժողովողն, որ զմոլորեալսն և զցրուեալսն ժողո-վեաց 'ի միասին, և արար մի եկեղեցի, մի հօտ, զի մի ոք իցէ անլուր քաղցր հովուին ձայնի »:

— Բան երրորդ. « Զինչ յետ այսորիկ եկեղեցա-կանս վարդապետէ ձայն, ժամ է այսուհետև քննել: Ուսաք յառաջինսն զոր ինչ ուսաքն, թէ որ զամե-նայն ժողովեաց զարարածս, զկորուսեալսն խնդ-րեաց և զմոլորեալսն հաւաքեաց 'ի մի »:

— Բան չորրորդ. « Տակաւին ևս մեզ խոստովա-նութեանս ունի բան. քանզի գրէ թէ ընդ ամենայն կարգաւ անցանէ, որ զիւրան պատմէ իրս, 'ի ձեռն որոց՝ կենացս այսոցիկ ընդունայնութիւնք ճանա-չին »:

— Բան հինգերորդ. « Այժմ մեզ 'ի մեծէ եկե-

հանայականք իւրաքանչիւր ոք էր որ միանգամ ընդ-վիճակաւն 'ի ներքս բովանդակեցան » :

— Բան ութերորդ. Երանելիք հալածեալք յա-ղագս արդարութեան՝ զի նոցա է արքայութիւնն երկնից. « Զինչ ութերորդին 'ի մարգարէէն խոր-հուրդ՝ յերկուս սաղմոսերգութիւնս նախակար-գեալ. զինչ և մաքրութիւն և թլփատութեանն օրէ-նադրութիւն յութերորդումն երկոքեան պահպա-նեալք » :

— Նորին բան իններորդ. Ի Հայր մեր որ յեր-կինս. (Εἰς τὴν προσευχήν). « Զաղաւթից մեզ զվարդա-պետութիւն աստուածայինս պատմէ բան. որովք արժանաւորաց իւրոց աշակերտացն փութով ծա-նաւթութիւն լինէր աղաւթիցն հայցուած » :

— Նորին բան տասներորդ. Ի Հայր մեր որ յեր-կինս. ( Λόγος β.' Πάτερ ἡμῶν ὅς ἐν τοῖς οὐρανοῖς ). « Յորժամ մերձեցուցանէր մեծն Մովսէս 'ի լերինն խորհրդածութիւն զիսրայէլական ժողովուրդն, ոչ յառաջագոյն զնոսա Աստուծոյ երեւմանն արժա-նիս արար՝ նախ քան սրբութեամբ և շրջացա-նութեամբ աւրինադրեալ ժողովրդեանն զմաքրու-թիւն » :

— Նորին բան մետասաներորդ. « Որք զստուեր հանդերձելոց բարեացն ունէին աւրէնքն, և պատ-մութեամբք ոմամբք տպաւորականաւք կանխաւ ձայ-նէին զճշմարտութիւնն, յորժամ յանմատչելին մեր-ձեցուցանէին աղաւթել Աստուծոյ զքահանայն » :

— Նորին բան երկոտասաներորդ. « Լուայ յու-մեմնէ ի բժշկականէ արուեստաբար յաղագս առող-ջական մարմնոյ բնախաւսելով. եղիցի թերեւս և մեզ առ 'ի հոգւոցս քաջողջութիւն ոչ հեռի 'ի դիտաւո-րութենէ ասացեալն » :

— Նորին բան երեքտասաներորդ. « Եկն յառա-ջանալով բանս 'ի նոյն ինքն յառաքինութեանն ծայր.

տաւղի ժողովրդեանն և ընդունելի եղև . առաջ և այլոցն հոգւք եղև գրել և ասել» ։

— Նորին բան երկրորդ . Երանելիք հեզք զի նոքա ժառանգեսցեն զերկիր . «Որք սանդղովք ոտամբք 'ի բարձրագոյնս ելանեն , յարաժամ յառաջին աստիճանն ելանեն , և 'ի նմանէ 'ի գերակայն ամբառնան . և դարձեալ երկրորդն մատուցանէ երրորդին » ։

— Նորին բան երրորդ . Երանելի սգաւորաց զի նոքա մխիթարեսցին . «Ես եւս 'ի գագաթն լերինն 'ի վեր ելաք . այլ տակաւին 'ի խոնարհ ընդ լերամբն եմք իմաստիցն , թէպէտև երկուս ոմանս արդէն ճանապարհորդեցաք դաշտաւանդակս » ։

— Նորին բան չորրորդ . Երանելիք քաղցեալք և ծարաւիք արդարութեան , զի նոքա յագեսցին . «Ատամնաքաղցաւն և որք չարաչարն կերակրին' ասեն որք 'ի բժշկականին են հմուտք , չար ոմանց մաղձոց և աւելորդաց 'ի վերին որովայնն 'ի միասին հասեցելոց , մինչ թուին լցեալք և յագք գոլ» ։

— Նորին բան հինգերորդ . Երանելիք ողորմածք , զի նոքա ողորմութիւն գտցեն . «Թուի ինձ այնպիսի իմն որով տեսութեամբ ոմամբ Յակոբ առակաւ խրատեցաւ , սանդուղս տեսեալ յերկրէ յերկինս բարձրութեամբ ժամանեալ . և զԱստուած 'ի վերայ նորին հաստատեալ » ։

— Նորին բան վեցերորդ . Երանելիք մաքուրք սրտիւ զի նոքա զԱստուած տեսցեն . «Զոր ինչ կրել պատուշաճ լինի , որք 'ի բարձրագունէ իմեքէ 'ի ծայրէ լերանցն յանկարծ ուրեք յառիցեն 'ի խորս , զնոյն ինձ կրեցին միտքս » ։

— Նորին բան եւթներորդ . Երանելիք խաղաղարարք , զի նոքա որդիք Աստուծոյ կոչեսցին . «Աստուածայնոց վկայութեանն խորանահարութիւն' զոր 'ի վերինն Աստուծոյ ցուցեալ աւրինակն աւրինագիրն Իսրայէլացւոց կազմեաց , ամենայն ուրեք և քա-

# Ս. ԳՐԻԳՈՐ ՆԻՒՍԱՑԻ

## (ST. GRÉGOIRE DE NYSSE)

*Եղբայր մեծին Բարսղի, և իբրեն հաւասար նշանաւոր 'ի տարեգիրս եկեղեցական պատմութեան. ծընած՝ ինչպէս հաւանական կը թուի, 'ի Սեբաստիա փոքուն Հայոց* (331, + 394): *Հայկական թարգմանութեամբ մեզի ծանօթ երկասիրութիւններէն, ոմանք ոսկեղէն դարու կը վերաբերին, և այլք ութերորդին:*

— *Գրիգորի եպիսկոպոսի Նիւսեայ խօսք յինն երանութիւնն.* (Γρηγόριου ἐπισκοποῦ Νῦσσης εἰς τοὺς μακαριοδούς).

— *Բան առաջին. Երանի՛ աղքատաց հոգւով. «Արդեւք այնպիսի ժողովեալս իցէ, մինչ զի աշակերտ լինելով բանին՝ և ընդ նմա ելանիցէ յերկրէ հովտացս և 'ի նուաստագոյն իմաստիցս 'ի հոգեւոր լեառնն, 'ի բարձր տեսութիւնն»:*

*Մեր մատենագրութեան մէջ՝ ինչպէս Գրիգորի Աստուածաբանին, և այլոց ոմանց 'ի վարդապետաց եկեղեցւոյ՝ տանիկ նաև Նիւսացւոյս գրոց լուծմունք կամ պարզաբանութիւնք կը գտնուին, շատ անգամ յանանուն կամ մեզի յանծանօթ մատենագրաց: Յաճախ ընտիր, հմտալից և հետաքննական են այս երկասիրութիւնք: Իսկ երանութեանց համար այսպէս կ'աւանդի 'ի սկիզբն լուծմանցն. «Ոմանք ասեն թէ զհինգ գիրքն 'ի խնդրոյ Աստուածաբանին գրեաց. որ է մինն 'ի նոցանէ ինն երանութիւնն. և այլք ասեն թէ ինքն յինքենէ շարժեցաւ գրել. և սկիզբն զայս ասէն իւրոյ վարդապետութեանն. զի խաւսեցաւ*

— « Սրբազան հայրապետին Հռոմայ Գրիգորի առ Պետրոս Նախասարկաւագ պատասխանի վասն քաղաքավարութեան հաւրն Բենեդիկտոսի: Գիրք երկրորդ » : (Գլուխք երեսուներկու):

— « Նորին սրբազան հայրապետին Գրիգորի առ Պետրոս Նախասարկաւագ: Գիրք երրորդ » : (Գլուխք երեսունեչորս): Այս յիշատակարան.

« Հաւատարիմ այս վերջին գու հաւատ
Եւ ընթերցանողքս զոր պատմէ սիրով գրքես.
Զի և այսուր մերձ ի յԱստուած զայս ըղձեսցես,
Հաւատովք ընդ նա կապեալ քան զազգս որ կայ,
Յերուսաղէմ ի սուրբ քաղաքն յոր ընթացայ;
Տեսի պտուղ սիրոյ ողջին յոր ոչ հասայ.
Որովք ջնջեալ որք յարևմուտս սուրբք նոցա՝
Թէ տան պտուղ զայս սքանչելիս՝ ոչ զարմացայ »:

« Արդ աղաչեմ զընթերցողսդ և զիմաստութեան սիրողսդ իմանալ զխորս իմաստիցն Աստուծոյ քննութեամբս, զսուրբ եպիսկոպոսն՝ զեղբայր Թագաւորին Հայոց զՅոհաննէս զբարեմիտն և զբարեսէրն և զառաջին Թարգմանութեան զատացող սորին՝ մաղթեցէք Քրիստոսի յաստիս խաղաղութեամբ պահել, և 'ի հանդերձեալն՝ ընդ սրբոց իւրոց յերկնից արքայութիւնն ընդունիլ »:

— Սրբազան հայրապետին Հռովմայ Գրիգորի ասացեալ՝ վասն զի Ճշմարիտ է հոգեւորն քան զմարմնաւորն: Գիրք չորրորդ »: ( Գլուխք քառասուն ):

Թարգմանեցի զնորին Բենեդիկտոսի կարգ և զաւրէնս կրաւնաւորաց նոյնժամայն 'ի լատին լեզուէն 'ի փրռանգ վանս սուրբ Պաւղոսի որ 'ի քաղաքն Անտիոք՝ 'ի ձեռն հասակակից կրաւնաւոր միոյ 'ի նոցանէ Կիլամ անուն: Իսկ ապա եկեալ 'ի վանսն որ Սիմանակլա կոչի հաւպ Անարզաբոյ, յորում բազում գրեանք 'ի յունական գիրս աւանդեալ է, մանրամասնաբար խուզեալ գտի զայս գիրսս, և հրճուեալ 'ի վերայ այնչափ խնդութեամբ, որպէս գտեալ փորձքն ուսումնասիրութեան, որ է նոյն և աստուածսիրութիւն. առեալ գնացի 'ի հայրապետական աթոռն՝ որ կոչի Հռոմկլայ յափն Եփրատայ, և կամաւք տեառն իմոյ կաթուղիկոսին Գրիգորոյ թարգմանեցի զսա և զմեկնութիւն Յայտնութեանն Յովհաննու 'ի ձեռն առաքինի մետրապոլտին Յերապոլսի Կոստանդեայ: Եւ խմովսանս տկարութեամբ յեղյեղեալ և ուղղեալ թողի զսոյն յեկեղեցի Հայոց ապացոյց բարեաց և հրճուականք մխիթարութեան զբաղեալոց 'ի վարս առաքինութեան: Արդ որպէս ընկալաւ զսա եկեղեցին հռովմայեցի 'ի յերջանիկ հաւրն Գրիգորի պատմութենէն, և եկեղեցին Յունաց 'ի թարգմանութենէ սրբոյ հայրապետին Զաքարիայ, նոյնպէս և դուք՝ որ հայաստանս եկեղեցւոյ էք մանկունք, ընկալարուք 'ի նուաստ պաշտաւնակցէ ձերմէ զսոյն, և հաւատով պատուեալ մխիթարեցէք զանձինս 'ի յոյսն որ 'ի Քրիստոս»:

— «Գրիգորի սրբազան պապուն Հռովմայ առ Պետրոս նախասարկաւագ նորին եկեղեցւոյ: Գիրք առաջին»: (Գլուխք քսաներկու): Ի վերջ առաջին գըրոցն հետագայ յիշատակարանս 'ի թարգմանչէն.

« ԶՅոհաննէս եպիսկոպոս եղբայր թագաւորին Հեթմոյ»:
« Ներսէս տրուպ և անարժան
Սուրբ պատմութեանս սիրով թարգման
Յորոց՝ սովաւ հոգւով ըղձման
Հայցեմ ներումըն թողութեան»:

Թեամբ խաւսեցաւ, երեւեցոյց և զվարս որք յԻտալիա փայլեցին սուրբ արք, և զժամանակս յորում էին և զտեղիս յոր եղեն։ Եւ արար 'ի հռովմայեցի լեզուէ զոր վասն նոցին զգիրս։ Եւ անց ընդ մէջ ամս հարիւր վաթսուն և հինգ. և ոչ ոք փոյթ արար յեղաշրջել զգիրսս զայս 'ի հռովմայեցի լեզուոյն յելլադացի բարբառ։ — Իսկ Զաքարիա երջանիկն և հրեշտականման առաքելական աթոռոյն Հռովմայ պապ, որ 'ի վերուստ աստուածային օգնականութեամբն վերակոչեցաւ հովիւ և հովուապետ և առաջնորդ ուղղափառ հաւատոյն աստուածասէր և բարեսէր հոգին, յետ ամենայն առաքինութեան և ուղղութեան եդ զանձն իւր և յաշխատութիւնս յայս...

Իսկ սոքա 'ի հուսկ յետին ժամանակս ըստ թուոյ Հայոց վեցհարիւր և քսան և ութ յամի՝ իմոյ Ներսեսի Տարսոնի եպիսկոպոսի 'ի մանկական հասակ ուսումնասիրութեան և բարեկարգութեան տենչանաւք շրջելով 'ի վանորայսն որք առընթեր մեծի քաղաքին Անտիոքայ՝ 'ի լեառն որ Ռասխանձիր կոչի յափն ծովուն, հիանայի 'ի տեսանելն զառաքինազարդ միայնութիւն և զճգնութիւն հռովմայեցի միաբանակեաց վանորէիցն, որ այժմ կոչին փռանգք։ Եւ իբրև ընդ անընթել (sic) իրս սխրացեալ՝ հարցի ընդ ումն իմաստուն կրաւնաւոր որ 'ի Յունաց Բասիլ անուն. Ուստի՞ սոցա այսքան ուղղութեան կարգաց շնորհ, որով գերազանց գտանին այսաւր ձեզ և մեզ։ Պատասխանեաց՝ 'ի Բենեդիկտոսէ. երանեալ հաւրէն, զորոյ զվարսն պատմէ սուրբն Գրիգոր պապըն։ Եւ ունի՞ս արդեւք զնոյն գիրս՝ ասացի։ Պատասխանեաց Այո։ Եւ եբեր առաջի իմ. և իմ փոքր մի վարժ գոլով հելլենացի գրոյն՝ ընթերցայ աստ անդ. և բորբոքեցաւ յիս ցանկութիւն աստուածային գրոցս թարգմանութեան։ Այլ զի ոչ կամէի անձամբ վճարել զգործն, խափանեցաւ յայնժամ. և

Θέδρας Κουσταντίνου πόλεως, λόγος). « Ես սքանչանամ զի՞ արգելուք իցէ զոր առ իմ բանս ախտացայք. և ուստի՞ այնքան յաղթեցայք 'ի մերմէ ձայնէս յարտաքս սահմանելոյս, և 'ի փոքունս թերեւս ոչ փափաքելի ինչ ունողէ » ։

# Ս. ԳՐԻԳՈՐ ՀՌՈՎՄԱՅ Ա.

(ST. GRÉGOIRE Ier, PAPE)

---

Այս մեծանուն հայրապետին (540-604) հետևեալ գրուածոց թարգմանութիւնն ունինք 'ի նախնեաց։ Թարգմանիչն պիտի տեսնենք 'ի յիշատակարանն։

— « Գրիգորի սրբազան պապու երիցուն Հռովմայ բանք պատմողականք առ Պետրոս նախասարկաւագ իւր վասն քաղաքավարութեան զանազան հարցն որք յԻտալիա փայլեցին, 'ի չորս գիրս » ։

Ի սկիզբն գրոցն Յիշատակարան թարգմանչին՝ սրբոյ Լամբրոնեցւոյն Ներսիսի. « Գովելի է արդարև քան զամենայն ինչ ստանալ զառաքինութիւն. յորմէ ոչ ինքեանք միայն շահին, այլ և որք զհետ ուղիղ վարուցն հետևին ... Արդ բազում փոյթ եղև 'ի հնումն և 'ի նորումս զվարուց սրբոցն զկտակ թողուլ գրով. որք պատմեցին զեղեալսն և մարգարէացան զառ յապա լինելոցն։ Եւ ոչ միայն այս, այլ և վարք սրբոցն և առաքինութիւն արանցն որք յարեւելս և յԵգիպտոս ճգնութեամբ երևեցան և շնորհաւք սուրբ հոգւոյն ամենայն գովութեան գերազանցեցին, գրով պատմի 'ի մէջ մեր։ Այսպէս և որ մեծ է 'ի սուրբս հայրս մեր ամեներջանիկ Գրիգորիոս՝ մեծանունն քաղաքին Հռովմայ եղեալ պապ, ընդ այլ գիրս բազումս զորս պաճուճաբանս և խոր մտածու-

գտանեմ ամենայն ուստեք զիս քննելով և հարցափորձելով »*։

* Եօթներորդ ճառիս սկզբնաւորութիւն ըստ այլ գրչագրաց. « Թէպէտ 'ի ժամանակի փառամոլութեան »։

— Ը. Նորին առ Յուլիանոս թագաւոր. (Κατὰ Ἰουλιανοῦ βασιλέως στηλιτευτικός πρῶτος). « Լուարուք զայս ամենայն ազգք, ունկնդիր լերուք ամենեքեան որ բնակեալ էք յաշխարհի. քանզի կոչեմ զամենեսեան իբրև 'ի բարձր դիտանոցէ ումեքէ, և 'ի միջին շուրջ բարձրաւանդակէ մեծաւ և բարձր ձայնիւ քարոզութեամբ »*։

* Ութերորդ ճառիս սկզբնաւորութիւն ըստ այլ ձեռագրաց. « Զհելլենացւոյ լեզու և բան խօսել »։

— Թ. Նորին առ Յուլիանոս բան երկրորդ. (Κατὰ Ἰουλιανοῦ βασιλέως στηλιτευτικὸς δεύτερος). « Արդ այս մերոց բանից հանդէս կատարեցաւ և աւարտեցաւ. քանզի ցուցաք բաւականապէս զառնն ղշարութիւնն որով գործեաց հակառակ մեզ. և որովք հանդերձեալ էր միշտ քան զմերձակայսն զմտաւ ածելով ծանրագոյնս »*։

* Սկիզբն ճառիս ըստ այլոց ձեռ. « Նախ առաջին մոլեալ կոխեաց զսրբութիւնսն »։

— Ժ. Նորին յինք յագարակէ անդրէն եկեալ. (Ἐξ ἀγροῦ ἐπανήκοντα). « Անձկայի առ ձեզ, ով մանկունք, և փոխարէն անձկացեալ լինէի հաւասար չափովք. քանզի հաւանիմ՝ պարտ է և հաւատ յաւելուլ 'ի բանս այս ձերով պարծանաւքդ զոր ունիմք 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր »*։

* Տասներորդ ճառիս սկզբնաւորութիւն ըստ այլ ձեռ. « Զայս ճառս 'ի Կոստանդնուպօլիս ասացեալ է. որոց հասարակ է հոգին՝ հասարակ և կիրքն »։

— ԺԱ. Նորին յինքն և 'ի բանս երկրորդ. (Εἰς ἑαυτόν, καὶ πρὸς τοὺς λέγοντας ἐπιθυμεῖν αὐτὸν τῆς κα-

և զբարիս հանդերձ որով եկիք ։ Գեղեցիկք և առ մեզ, առ որս 'ի դէպ ժամանակի եկիք» ։

— Դ. Նորին 'ի Գրիգորիոս եպիսկոպոս՝ Բարսղի մերձ կացելոյ, յետ ձեռնադրութեանն, և 'ի վկայսն. (Εἰς Γρηγόριον ἐπίσκοπον Νυσσῆς, τοῦ μεγάλου Βασιλείου ἀδελφόν, ἐπιστάντα μετὰ τὴν χειροτονίαν, λόγος). «Սիրելւոյ հաւատարմի ոչ ինչ է փոխանակ յեկեա և ոչ ինչ և ոչ կշիռք ինչ գեղեցկութեան նորա ։ Բարեկամ հաւատարիմ ծածկոյթ զաւրաւոր և ամրացեալ Թագաւորութեան, բարեկամ հաւատարիմ գանձ կենդանի» ։

— Ե. Նորին առ կոչեցեալսն 'ի սկզբանն, և ոչ հանդիպեալս յետ երիցութեան. (Πρὸς τοὺς καλέσαντας ἐν τῇ ἀρχῇ, καὶ μὴ ἀπαντήσαντας μετὰ τὸ γενέσθαι πρεσβήτερόν). «Զիարդ հեղգք 'ի մեր բանն, ով սիրելիք և եղբարք. և սակայն երագագոյնք առ 'ի բռնադատել, և 'ի մերձ 'ի ծայրաքաղաքէն 'ի բաց ձգեալ 'ի հանդարտութենէն, զոր ես քան զամենեսեան մանաւանդ ողջունեցի»*։

* Սկզբնաւորութիւն Ճառիս ըստ այլ ձեռագրաց. «Զիարդ զոր առնուլ բաղձայիք՝ արհամարհէք առնուլ» ։

— Զ. Նորին 'ի Մաքսիմոս յիմաստասէր յարտաքս սահմանելոյն եկեալ. (Յունականին խորագիրն. Εἰς Ἥρωνα τὸν φιλόσοφον, ἀπὸ τῆς ἐξορίας ἐπανελθόντα). «Զիմաստասէրն գովեցից, Թէպէտ և աքսորիմ մարմնով, վասն զի իմաստասէր է. և գովեցից յիրաւի, քանզի նա իմաստասէր է. իսկ ես իմաստութեանն սպասաւոր» ։

— Է. Նորին 'ի բանս և 'ի հաւասարեցուցիչն. (Εἰς τοὺς λόγους, καὶ εις τὸν ἐξισώτην Ἰουλιανόν). «Զինչ է բանաւորութիւնս զոր 'ի սիրոյս բռնադատիմք. զինչ է իմաստութիւն և հանճար յաղագս որոյ ըստ իւրաքանչիւր ժողովոյ պատերազմիմք ։ Ես և ոչ ինչ

discours théologique). « Աստուած մարդ լինի. և որ նստի յերկինս երկրի ընդ արևելս յիւրում փառսն » : (Ի Ճառընտիրս):

— ** Սահմանք կանոնադրութեան երանելւոյն Գրիգորի Աստուածաբանի Աղիազու եպիսկոպոսի յաղագս ուղղափառութեան հաւատոյ և ապաշխարութեան յանցաւորաց, գլուխք երեսուն. (Trent canons). « Առաջնորդք որբութեան հաւատոյ, դաւանաւղք որբոյ ուխտիս քարոզիչք Ճշմարտութեան, որք զբանին Աստուծոյ զիջուցին ուղղաբանութեան զաւետարանէք, նախ ուսջիք 'ի բաց խուսափել 'ի հերետիկոսաց » :

— Գրիգորի Աստուածաբանի առ նաւարկութիւնն. (Εἰς τοὺς Αἰγύπτου ἐπιδημήσαντας λόγος).

— Ա. « Որք յԵգիպտոսէ էն ողջունեմ, քանզի իրաւացի է. զի և յաւժարմտութեամբ իսկ եկին, նախանձու մախանացն յաղթեցին. յԵգիպտոսէ յայնմանէ՝ զոր փարթամացուցանէ գետն՝ յերկրէ անձրևելով, և խորս առնելով զերինս » :

— Բ. Նորին 'ի Մելիտոս եպիսկոպոս Անտիոքացի ասացեալ 'ի Կոստանդնուպոլիս. (Sur Mélitus, évêque d'Antioche, attribué à St. Grégoire de Nysse). « Անցոյց մեզ զԹիւ առաքելոցն նոր առաքեալս, որ Թուեցաւ ընդ մետասան առաքեալսն. ձգեցին սուրբքըն առ ինքեանս զնմանաւրինակն, զնահատակն՝ նահատակքն, զպսակեալն՝ պսակեալքն, զսուրբն հոգւով՝ մաքուրքն սրտիւք, զքարոզ բանին՝ սպասաւորք բանին » :*

* Գրիգորի Նիւսացւոյ ընծայեալ է ճառս 'ի Յունաց: (Հատ. Գ. յոյն, լատին. 'յ'էջ 587):

— Գ. Նորին 'ի գալ եպիսկոպոսացն. (Συντακτήριος εἰς τὴν τῶν ρν' ἐπισκόπων παρουσίαν λόγος). « Զիարդ ձեզ մերքս, ով հովուապետքդ և հովուակիցք, որոց գեղեցիկ են ոտք աւետարանչացդ զխաղաղութիւն

իմաստունն յիմաստութիւն իւր, և մի՛ ձոխն 'ի փարթամութիւն իւր, և մի՛ 'հզաւրն զաւրութեամբ իւրով»:

— Նորին 'ի Կիպրիանոս եպիսկոպոս և 'ի վկայ, յանդաստանէ եկեալ յետ միոյ աւուր յիշատակի. (Εἰς τὸν ἅγιον ἱερομάρτυρα Κυπριανόν λόγος, ἐξ' ἀγροῦ μετά μίαν τῆς μνείας ημέραν ἐπανήκοντος). «Փոքր ինչ և Կիպրիանոս զերծանէր 'ի մէնջ, ո՜ տուգանիս. և դուք ներէիք արգելք՝ որք առաւել քան զամենեսեան ընդ այրն սքանչանայք, և տարեորականաւք պատուէք զնա պատուովք և ժողովովք»:

— Նորին Գրիգորի 'ի Մակաբայեցիսն. (Εἰς τοὺς Μακκαβαίους λόγος). «Զինչ և Մակաբայեցիքս, վասն զի և սոցա է մերձաւոր տաւնս. ոչ 'ի բազմաց պատուեցելո՛ց, զի ոչ զկնի Քրիստոսի նահատակեցան. բայց յամենեցունց պատիւ ընդունել արժանաւորացս, զի յաղագս հայրենեացն է ժուժկալութիւն»:

— ** Սրբոյն Գրիգորի Աստուածաբանի՝ առ Կեսարիոս վասն Նորին խորհրդոյ. «Հաւանիմ իմաստնոցն բանից, եթէ հոգի ամենաբարի և աստուածասէր՝ յորժամ 'ի կապակցէն իւրմէ արձակի, այսինքն 'ի մարմնոյ աստի 'ի բաց վարիցի»:

— **Նորին ասացեալ 'ի մահն Մաքսիմիանոսի ուսումնակցին իւրոյ. (Discours sur Maxime, son condisciple). «Ո՛վ բարեմիտ (բարեկամ) սիրելի և մերձաւոր հոգւոյ իմոյ. երկրորդ Յովնաթան կապեալ 'ի սէր Դաւթայ, քանզի դու զմեզ խանդակաթ արարեր 'ի քոյոյդ սիրոյ մերձաւորութենէ»:

— ** Սրբոյն Գրիգորի Աստուածաբանի ներբողեան 'ի սուրբ խաչն աստուածընկալ. (Panégyrique sur la Sainte Croix). «Երկինք պատմեն զփառս Աստուծոյ. ամենայն տարք մարգարէականք 'ի հոգւոյն սրբոյ ազդեալք՝ ըստ հոգւոյն արժանաւորեալք»:

— ** Գրիգորի Աստուածաբանի. (Fragment d'un

ընձ 'ի հոգւոյն Աստուծոյ իշխանութեանս և տեսութեանս. և գիտեցից և ծանեայց »:

— Նորին խաւսք 'ի Նոր կիրակէն. և 'ի յիշատակ սրբոյ վկային Մամասայ' քանզի 'ի Նոր կիրակէն կատարի. (Εἰς τὴν καινὴν κυριακήν, καὶ εἰς τὸ ἔαρ, καὶ εἰς τὸν μάρτυρα Μάμαντα λόγος). « Նաւակատիք պատուեսցին հին աւրէնք և գեղեցկապէս կալեալ. մանաւանդ եթէ Նորքն պատուեսցին Նաւակատիւքն, և այս ոչ մի անգամ' այլ եւ յոլովակի »:

— Նորին 'ի Պենտեկոստ և 'ի սուրբ Հոգին. (Εἰς τὴν ἅγιαν Πεντηκοστὴν λόγος). « Յաղագս տաւնիս գուզնաքեայ ինչ իմաստասիրեսցուք, զի հոգևորապէս տաւնիցեմք. այլք' այլոց տաւն, բայց սպասաւորի բանիս բան »:

— Նորին 'ի Ժողովողն. (Μετάφρασις εἰς τὸν Ἐκκλησιαστήν). « Այսպէս ասէ Սողոմոն' Դաւթայ թագաւորի և մարգարէի որդի, առ ամենայն Աստուծոյ եկեղեցւոյ, որ առ ամենայն արս' թագաւոր պատուականագոյն և մարգարէ իմաստնագոյն »:

— Նորին առ հայրն իւր լռեալ և ողացեալ վասն հարուածոյ կարկտին. (Εἰς τὸν πατέρα σιωπῶντα διὰ τὴν πληγὴν τῆς χαλάζης). « Ընդէ՞ր լուծանէք զկարգ գովելի. հե՞մ բռնադատէք զլեզու' աւրինաց ծառայել. վասն է՞ր յառաջ կոչէք զբան որ տեղի տայ հոգւոյն »:

— Նորին յաղագս աղքատսիրութեան. (Περὶ φιλοπτωχίας). « Արք եղբարք և աղքատակիցք, քանզի աղքատք ամենեքեան և աստուածային շնորհին կարաւտեալք. թէպէտև այլք քան զայլս յառաջադէմ ունել թուի »:*

* Էջմիածնի Մատենադարանին տպագիր ցուցակին մէջ (Թիւ 920) ուրիշ ճառ մ'ալ կը գտնենք նոյն խորագրով. « Գրիգորի Աստուածաբանի ասացեալ յաղագս աղքատսիրութեան. — Մի՛ պարծեսցի, ասէ,

* Ձեռագիրք կը յաւելուն, 'ի սկիզբն ճառիս. « Պատճառ Քրիստոս ծնեալ ճառին։ Կայսրն Գրատիանոս ոչ ունելով որդի » . և կը շարունակեն պատմել զգալուստ Աստուածաբանին 'ի Կոստանդնուպօլիս յաւուրս Թէոդոս կայսեր, և Քրիստոսի ծննդեան օրը այս ճառը խօսելը։

— Նորին 'ի Յայտնութիւն տեառն. (Εἰς τὰ ἅγια φῶτα τῶν Επιφανίων λόγος). « Դարձեալ իմ Յիսուս. և դարձեալ խորհուրդ, ոչ մոլորեցուցիչ և անզարդ, և ոչ 'ի հեթանոսական մոլորութենէն և յարբեցութենէն. քանզի այսպէս ես կոչեմ զնոցա պանծալիսն » ։

* Ի վերջ ճառիս կը յաւելուն գրչագիրք. « Քանզի արտաքնոց փիլիսոփայից լուեալ զատենական բանս Գրիգորի գովէին զնա թէ այր խաւսնական իցէ և իմաստասէր, այլ զի զԱստուած 'ի կնոջէ ծնեալ ասաց, թերութիւն յաստուածաբանութեան նորա գնէին. վասն որոյ հրամանաւ Թէոդոսի կայսեր կոչեցան նոքա յեկեղեցին յերկրորդում աւուր յորում խօսեցաւ

— (Նորին) 'ի Մկրտութիւն Տեառն. (Εἰς τὸ ἅγιον Βάπτισμα, λόγος). « Երեկ զպայծառ լուսաւորութեան զաւուր տաւնեցաք, քանզի և վայել էր իսկ գոհութիւն գնել 'ի փրկութեան յաւուրն մերոյ, և յոյժ առաւել քան զհարսանեաց և զծննդեան և զանուանադրութեանն՝ որք մարմնոյն են տիրողք զպատանեկացն համարոյ » ։

— Նորին խաւսք 'ի Պասքա և 'ի հեզգութիւն. (Λόγος εἰς τὴν βραδυτῆτα). « Յարութեան աւր և սկիզբն աջողակ, պայծառասցուք տաւնիւս և միմեանց գիրկս արկցուք. ասասցուք եղբարք և որք ատեանն զմեզ » ։

— Նորին 'ի Պասքա և 'ի սուրբ Պասքա. ( Εἰς τὸ ἅγιον Πάσχα λόγος). « Ի պահու իմում, աստ սքանչելին Ամբակում, և ես ընդ նմա այսաւր տուեցելոյ

κὸς, ἔιρηται δὲ ἐπὶ παρουσία Βασιλείου, εἰς ὅν καὶ προοίμιον ποιέται τοῦ λόγος). « *Այրդ Աստուծոյ և հաւատարիմ ծառայ, և հազարապետ Աստուծոյ խորհրդոցն, և այր ցանկութեանց հոգւոյն։ Վասն զի այսպէս գիրք կոչեն զանցեալսն* »։

— *Նորին 'ի Բասիլիոս Կեսարացի*. (Εἰς Βασίλειον επίσκοπον Καισαρείας Καππαδοκίας ἐπιτάφιος). « *Հանգերձեալ էր ուրեմն բազում պատճառս մեզ բանից առաջի գնելով մեծն Բասիլիոս, քանզի պատուասիրէր իմովք բանիւք, որպէս ոչ երբէք այնոքիւք՝ որք իւրքն էին ամենեքումբք* »։

— *Նորին 'ի Կեսարիոս յեղբայր իւր*. ( Εἰς Καισάριον τὸν ἑαυτοῦ ἀδελφὸν ἐπιτάφιος). « *Կարծէք զիս թերեւս, սիրելիք և եղբարք և հարք, քաղցր և իրք և անուն, ողբս 'ի վերայ արկանել գնացելոյն և հառաչանս* »։

— *Նորին 'ի քոյրն իւր*. ( Εἰς τὴν ἀδελφὴν ἑαυτοῦ Γοργονίαν ἐπιτάφιος ). « *Զքոյրն գովելով ընդ ընդանիս սքանչանամ. բայց սակայն ոչ զի ընդանի՝ վասն այնորիկ սուտ. այլ զի ճշմարիտ, յաղագս այնորիկ գովելի է. և ճշմարիտ՝ ոչ զի իրաւացի միայն. այլ զի և ծանուցեալ և առ շնորհսն ոչ թուլացեալ լինի* »։

— *Նորին յԱթանասիոս եպիսկոպոս Աղեքսանդրացի*. Εἰς τὸν μέγαν Ἀθανάσιον, αρχιεπίσκοπον Ἀλεξάνδρειας). « *ԶԱթանասիոս գովելով, զառաքինութիւն գովեցից։ Վասն զի նոյն և զնա ասել և զառաքինութիւն գովել. զի զամենայն յինքեան միահամուռ ունէր զառաքինութիւն* »։

— *Գրիգորի Աստուածաբանի ասացեալ 'ի Ծնունդըն Քրիստոսի*. (Εἰς τὰ Θεοφάνια ειτ'οὖν γενίθλια του Σοτῆρος, λόγος). « *Քրիստոս ծնեալ լինի. փառաւորեցէք. Քրիստոս յերկնից՝ հանդիպեցարուք. Քրիստոս 'ի վերայ երկրի՝ բարձրացարուք. երգեցէք տեառն երգ նոր. երգեցէք տեառն ամենայն երկիր* »։

երկայնամիտ՝ յոյս. նախանձ բորբոքէ. հոգի հեղացուցանէ. յոյս համբերէ. սէր՝ 'ի միասին կապէ »:

— ԺԵ. Խաղաղական երրորդ. (Εἰρηνικός Γ.' Λεχθεις εν Κονσταντίνουπολεοῦ ἐπὶτῆ γένομένη πῷ λαῷ φτλονεικία, περὶ ἐπίσκοπου τινῶν διενεχθίντων πρὸς ἀλλήτους). « Խաղաղութիւն՝ սիրելի քաղցր և իրք և անուն. զոր այժմ ետու ժողովրդեանս. և փոխարէն առի, ոչ գիտեմ եթէ ամենեցուն զհարազատ ձայն և զարժանաւոր հոգւոյն »:

— Գրիգորի Աստուածաբանի Անձիանձու եպիսկոպոսի պատասխանի յաղագս 'ի ձեռնադրութիւն անհաւանութեան և հրաժարելոյ. (Τῆς εἰς τὸν Πόντον φυγῆς ἕνεκεν, καὶ αὖθις ἐπανόδου ἐκεῖθεν μετὰ τὴν τοῦ πρεσβυτέρου χειροτονίαν). « Յաղթեցայ, և զպարտութիւն խոստովանիմ: Հնազանդեցայ Տեառն և մաղթեցի զնա: Զի ինձ երանելին Դաւիթ սկիզբն արասցէ բանիս, մանաւանդ որ Դաւթաւն խօսէր »:

— Նորին յինքն և 'ի հայրն և 'ի ժողովուրդն պատասխանի, յետ ձեռնադրութեան իւրոյ յերիցութիւն (Εἰς τὸν πατέρα εἄυτοῦ, ἡνίκ. ἐπετρεψεν αὐτὸν φρονῖζευν τῆς Ναζιάνζου ἐκκλησίας). « Զբերան իմ բացի և ձգեցի զհոգին. և տամ զիմ զամենայն և զիս ինքն հոգւոյն. զգործ և զբան. զանգործութիւն և զլռութիւն միայն կալցի զիս »:

— Նորին այլ պատասխանի յորժամ եպիսկոպոս ձեռնադրեցաւ. ('Απολογητικός εἰς τὸν ἑαυτοῦ πατέρα Γρηγέριον, σύμπαροντος αὐτῷ Βασιλειοῦ). « Դարձեալ 'ի վերայ իմ աւծումն և հոգի. և դարձեալ ես սգացեալ և տխրեալ գնամ: Սքանչանայք թերևս. և Եսայիաս նախ քան զտեսանել զփառսն Տեառն, և զաթոռն բարձր և ամբարձեալ և որ շուրջ զնովաւ սերովբէքն »:

— Նորին 'ի հայրն իւր մերձ եղելոյ Բարողի. ( Εἰς τὸν ἑαυτοῦ πατέρα, ἐν ᾧ Νόνναν μητέρα παραμυθητι-

էնորաձեւութիւն յեկեղեցւոջ. զի իշխանութիւն էջէ ամենայնի կամողի և խոտորնակս գնացողի ըստ գրեցելումն՝ առձեռն զհաւատ գեղեցիկ »:

— ծ. Առ Կղեդոնիոս, երկրորդ. (Κατὰ Ἀπολιναρίου πρὸς Κληδόνιον πρεσβύτερον, ἐπιστολή β′). « Վասն զի բազումք եկեալ քո երկիւղածութեանդ հաստատութիւն խնդրեն յաղագս հաւատոյ. և վասն այդորիկ պահանջեցեր զմեզ բարեկամաբար, համառաւտ սահման իմն և կանոն մերոյ խորհրդոյս »:

— ծԱ. Նորին առ Կղեդոնիոս, երրորդ, 'ի բանն մարգարէական. Որովայն իմ, որովայն իմ ցաւէ. (Πρὸς τοὺς πολιτευομένους Ναζιανζοῦ ἀγωνιῶντας). « Որովայն իմ, որովայն իմ ցաւէ, և զգայարանք իմ ճմլին, ասէ ուրեմն յիւրում 'ի բանսն Երեմիաս. որ քան զմարգարէսն ախտակցագոյն էր լալով զԻսրայէլ. զանհաւանեալն և յԱստուծոյ մարգասիրութենէն զաւտարացեալն »:

— ծԲ. Յաղագս բարեկարգութեան 'ի խաւսս. (Περὶ τῆς ἐν διαλέξεσιν εὐταξίας). « Վասն զի եկիք 'ի միասին յաւժարութեամբ, և բազմամարդ է տաւնս. և վասն այդորիկ մանաւանդ գործոյ՝ բեր տացուք ինչ ձեզ շահ, թէպէտեւ ոչ հասարակաց յաւժարութեանց արժանաւոր, այլ սակայն քան զաւրութիւնս մեր ոչ ինչ կարաւտագոյն »:

— ծԳ. Խաղաղական առաջին. միաբանութիւն միայնացելոցն յետ լռութեանն. (Εἰρηνικὸς Α′. Ἐπὶ τῇ ἑνώσει τῶν μοναζόντων μετὰ τὸν σιωπὴν παρουσία τοῦ πατρὸς αὐτοῦ). « Արձակէ ինձ զլեզուս յաւժարութիւնս. և արհամարհեմ զմարդկային աւրէնս յաղագս աւրինաց հոգւոյն և տայ մխիթարութեամբ

— ծԴ. Խաղաղական երկրորդ: Աւգնեա տէր. (Εἰρηνικὸς Β′. Εἰς τὴν σύμβασιν ἣν μετὰ τὴν σύστασιν ἐποιησάμεθα οἱ ὁμόδοξοι). « Ջերմ է նախանձ. հեզ՝ հոգի. մարդասէր, մանաւանդ ինքն մարդասիրութիւն. զբանս »:

մաստասիրելի, և յորժամ և որքան. զի որպէս որոց մաքրեալքն են, զի լուսով հասանիցի լոյս, և յոյժ փութացելոյն» ։

— Ը. Նորին յաղագս առ Արիանոսս է բանս. (Πρὸς ’Αρειανοῦς καὶ εἴς ἑαυτὸν λόγος). « Ո՞ւր արդեւք իցեն որ զաղքատութիւնն Թշնամանեն, և զմեծութիւնն հոչակեցուցանեն. որք յոլովութեամբ զեկեղեցին սահմանեն, և զսակաւութիւնն արհամարհեն» ։

— ** Յանգգնութիւն հերետիկոսաց, զոր խաւսեցան բանդագուշեալքն. « Վաղենտիանոս երկուս որդիս ասէ. զմին բնութեամբ և զմիւսն շնորհաւք։ Եւ դարձեալ զհին գիրսն՝ ոչ բարոյ արարչի. և զնորն բարի և յանդնդոց ասէ գոյացեալ զաշխարհս. և ոչ յոչնչէ՝ և ոչ յԱստուծոյ» ։*

* Այս ճառէն ետքը՝ կը գտնենք հետևեալ ինքնագիր յիշատակարանը 'ի գրչագիրս. « Յետ յոքունց ստացողաց և զիս յիշեսջիք 'ի Քրիստոս զՆերսէս անարժան գոլով եպիսկոպոս, և եղբայր կաթուղիկոսին Հայոց Տեառն Գրիգորի, որ ստացայ զսա գնիւք յանուրէն Յունաց 'ի վանորէից Հայոց. յորժամ եւ Թագաւորն Հոռոմոց յաշխարհն Կիլիկեցոց և առ զնա յիշխանէն Լևոնոյ որ էր հայ ըստ ազգի և ըստ հաւատոյ. և աւերեաց զբազում վանորայս և զեկեղեցիս. և զնշանս տէրունականս խորտակէին և անհնարին հարուածս ազգի մերում հասուցանէին քինաբար. և այս եղեւ 'ի Թուիս ՇՁՁ։ Եւ երկրորդ նորին արքայի եղև ՇՂԲ. յորում և վախճանի առաջի Անարզաբոյ. և Թագաւորէ կրտսեր որդին Մանուիլ անուն։ Ընդ նմին յիշեսջիք և զԳրիգորիս եպիսկոպոս, զորդի եղեալ եղբաւր կաթողիկոսին Ներսեսի և յետոյ կաթողիկոս Հայոց. որում և զայս գիրս շնորհեաց ուսեալ 'ի նմանէ և վարժեալ» ։

— Թ. Առ Կղեդոնիոս. (Κατὰ ’Απολιναρίου πρὸς Κληδόνιον πρεσβύτερον, ἐπιστολή ά). « Կամիմք ուսանել զենչ

նեմ այժմ լեզուագարութիւն, և զատուցեալ իմաստունս և զձեռնագրաց աստուածաբանից, որոց բաւական է կամելն միայն առ 'ի լինել իմաստունս »:

— Գ. Նորին յաղագս Որդւոյ, բան առաջին. (Περὶ Υἱοῦ λόγος πρῶτος). « Զո՞րս ինչ ասիցէ որ արդեաւք 'ի բաց հատանելով զբանիցն նոցա պատրաստութիւն և զխոշորութիւն և զարագութեան սխալանս յամենայն իրս, մանաւանդ որ յաղագս Աստուծոյ են բանք այսոքիկ են »:

— ** Դ. Առ այնոսիկ որ ասեն թէ Հայր մեծ է քան զՈրդի. « Զոր ինչ ախտանան առ բազմածաղիկ բուրաստանացն՝ որք այնոցիկ են ցանկացողք տեսութեանց. որոց ոչ առ մի երևեցելոցն յաղագս համապատիւ գեղեցկութեանն աչք հաստատին, այլ առ ամենեսեան ցանկութեամբքն ցնդին »:

— Ե. Նորին յաղագս Որդւոյ, բան երկրորդ. (Περὶ Υἱοῦ λόγος δεύτερος). « Վասն զի քեզ ընդ խորհրդոցըն փարձուածս և մանուածս բաւականապէս անցի զաւրութեամբ Հոգւոյն, որք 'ի սուրբ գրոց վիճմութիւնք և ընդդիմագրութիւնք, զոր գրոյն սեղանակապուտք, և որք զմիտս գրեցելոցն գողանան, յոլովս առանձինն իւրեանց առնեն »:

— Զ. Նորին յաղագս սրբոյ Հոգւոյն. (Περὶ τοῦ ἁγίου Πνεύματος, λόγος). « Արդ որ յաղագս Որդւոյ բանն է՝ այսքան. և այնպէս զերծաւ 'ի քարկոծչացն, անցանելով ընդ մէջ նոցա. վասն զի բանն ոչ քարկոծի, այլ քարկոծէ յորժամ և կամի. և պարսէ զգազանս՝ զանբանն, զչարաչար 'ի լեառն ելեալս: Զի՞նչ արդեւք ասիցես յաղագս սուրբ Հոգւոյն »:

— Է. Նորին յաղագս Աստուածաբանութեան. (Περὶ Θεολόγιας, λόγος δεύτερος). « Եւ արդ վասն զի մաքրեցաք բանիւ զաստուածաբանութիւնն, որպիսի ինչ գոլ պարտ էր՝ անցանելով. և որո՞ց ոմանց ի-

ռեա. միայն սկզբնագիրն է յազգային գրատան Փարիզու. իսկ այլք յարեւելից՝ և ընտրելագոյն ընթերցուածովք քան զառաջինն։

## ԳԵՐՄԱՆՈՍ (Ա.) Տէս ԹՈՒՂԹ ՀՌՈՎՄՈՑ.

## Ս. ԳՐԻԳՈՐ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ

(ST. GRÉGOIRE DE NAZIANZE)

---

Մեծս այլ արեգակն պայծառ և լուսաւորիչ, պարծանք արեւելեան եկեղեցւոյ, իր վարդապետական նուրբ և ամենիմաստ գիտութեամբ, բազմահմուտ տեղեկութեամբն և հանճարով, գրաւիչ և քերթողաբան լեզուով։ Գրիգորի Նազիանզացւոյն կամ Աստուածաբանի (328-389), որ մեր գրոց մէջ երբեմն վրիպակաւ Աղաղացի ալ կոչուած է, այլեայլ ընտիր գրուածոց թարգմանութիւնն ունինք 'ի նախնեաց, անգամին 'ի հինգերորդ դարէ։ Թարգմանիչն հաւանականաբար մին 'ի կրտսերագոյն թարգմանչաց, և ըստ կարծեաց հմտագունից՝ նա ինքն Մովսէս Խորենացի, որ իր գրուածոց մէջ՝ անոնցմէ յիշատակութիւն, և մերթ նաև իմաստից և հատուածոց փոխառութիւն ալ կ'ընէ, և 'ի մասնաւորի յՈղբսն։

— Ա. Գրիգորի Աստուածաբանի Աղաղացւոյ առ Եւնոմիացիսն. (Κατὰ Εὐνομίανων πρὸ δίαλεξις, λόγος). « Առ որս բանիւ են պաճուճեալ բանս, և զի 'ի գրոց սկսայց. ահաւասիկ ես 'ի վերայ քոյ թշնամանողդ »։ Գրքին սկզբնաւորութենէն Առ որս կոչուած է. Πρὸς τοὺς ἐν λογῷ κομψοὺς ὁ λόγος.

— Բ. Նորին յաղագս Հաւատոյ. (Περὶ δόγματος καὶ κατὰ στάσεως ἐπίσκοπων λόγος). « Յորժամ տեսա-

Ներսէս Լամբրոնացի, ինչպէս 'ի յիշատակարանին Տրամախօսութեանց սրբոյն Գրիգորի Մեծին (Ա) քահանայապետին Հռովմայ. « ... Թարգմանեցի զնորուն Բենեդիքտոսի կարգ և զաւրէնս կրաւնաւորաց նոյն ժամայն 'ի լատին լեզուէն 'ի փռանգ 'ի վանս սուրբ Պաւղոսի որ 'ի քաղաքն Անտիոք 'ի ձեռն հաստակեաց կրաւնաւոր միոյ 'ի նոցանէ Կիլամ անուն » ։

## ԳԵՆՆԱԴԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

(GENNADE, ÉVÊQUE)

---

Գեննադիոսի ընծայուած հետագայ ճառին Թարգմանութիւնը պահուած է 'ի մեր մատենագրութեան։ Զենք կրնար որոշակի ըսել թէ արդեօք համանուն Կոստանդնուպոլսոյ հայրապետին է որ յառաջին քառորդի հինգերորդ դարու՝ հակառակեցաւ վարդապետականաց Կիւրղի Աղեքսանդրացւոյ, թէ ուրիշի մը։ Իրեն տրուած գրութեանց մէջ չյիշատակուիր այս ճառս, որ մեր իսկ ձեռագրաց մէջ՝ երբեմն ուրիշ անուն կը կրէ։ Անստոյգ է նաև հայերէն թարգմանութեան ժամանակը։

— ** Երանելւոյն Գեննադայ եպիսկոպոսի ասացեալ յաղագս Պահոց և 'ի Նինուէացիսն. « Այսպէս ասէ մարգարէն Դաւիթ. այս դուռն տեառն է, և արդարք մտանեն ընդ սա. բայց ես յանդգնելով» ։

* Ի Մատենադարանին Էջմիածնի (Թիւ 917) Դեմետրեայ եպիսկոպոսի կ'ընծայուի ճառս՝ այս խորագրով. « Դեմետրեայ եպիսկոպոսի Կոստանդնուպաւլսոյ 'ի Նինուէացիսն և յաղագս Առաջաւորացն պահոց » ։

Ի մեր Մատենադարանի երեք օրինակք կան ճա-

Միւս այլ յիշատակարան 'ի վերջ մատենին. «Գրեցաւ աստուածային տառս այս ձեռամբ նուաստ գրչի Գրիգորոյ 'ի մայրաքաղաքիս Հաղբատայ. 'ի յառաջնորդութեանս տեառն Բարսղի. զոր սկիզբն արարաք զԱրարածոց մեկնութիւնն՝ զոր ոմն 'ի վարդապետաց եկեղեցւոյ համառօտեալ էր։ Ընդ նմին և զՂեւտականն եգաք, յայլեւայլ աւրինակէ. զոր ոչ էր կատարեալ ... զի այլ ըստ ոչ գտաք աւրինակ. զի Թէպէտեւ շատ 'ի խնդիր ելաք։ Ապա և կարգեցաք զՅեսուն, և զայլ Դատաւորսն. ընդ նոսին և զԹագաւորացն մեկնութիւնն։ Ի յաւարտումն ամենայնի՝ զի որք 'ի վարդապետաց եկեղեցւոյ ընթերցցի վասն իւրոյ աշակերտաց 'ի յուսումն, կարգաւ գտանիցէ զամենայն եդեալ։ Արդ որք կարդայք և աւկտիք, կամաւոր յաւժարութեամբ զմեղուցեալ գրիչ անմոռաց յիշեսջիք 'ի Քրիստոս»։

## Ս. ԲԵՆԵԴԻԿՏՈՍ ԱԲԲԱՅ

(ST. BENOÎT)

---

Նախահայր գրեթէ տասնըհինգ դարերէ 'ի վեր իր անունը կրող հռչակաւոր և բազմերախտ կրօնաւորական կարգին՝ հիմնադիր միակեցական կատարելութեան յարեւմուտս (480-543)։

— Սրբոյ հաւրն Բենեդիկտոսի սահման առաջին ընթացից կրաւնաւորաց. (Règles monastiques). «Ունկն դիք, որդեակք, խրատու հաւր ձեր. խոնարհեցուցէք զլսելիս սրտից ձերոց՝ զհրամանս հաւր ձեր և առաջնորդի բարւոյ յաւժարութեամբ ընդունել և դառնալ 'ի հնազանդութիւնն յորմէ անկաւ անհնազանդն»։ Տես Վրրնչեր։ Թարգմանիչն սուրբն

գոյն է օրինակն որ պահի յՕրթագիւղ Պոլսոյ առ Անտոնեան հարս¹ ։

Համառօտութիւն մը այս ընտիր և բազմիմաստ երկասիրութեան կը գտնուի 'ի մերում Մատենադարանի, բոլոր-գրչագիր երկոտասաներորդ դարու. յորոյ 'ի վերջ կը հանդիպինք այս յիշատակարանին. «Եկեսցուք այսուհետև և մեք զհետ սիրոյն Քրիստոսի, լցեալք անուշահոտ կերակրովք և զմայլեալք մեծամեծ խորտկաւք. յիշատակաւք Ճաւխս որ պատմեցան. և հոգիապատում աստուածաբանութեամբ Թարգմանական բայցայայտութեամբ 'ի մըտառութիւն գիւր ուսման ուսումնասիրող եկեղեցւոյ մանկանց. 'ի սորայն Բարսղէ՝ որ Կեսարու վերադիտող է. և որ Գամրացն է սիւն լուսոյ, և Կապադովկիոյն հաստատուն հաւատոյ, և աշտանակաւոր ջահ աշխարհի ամենայնի։ Որոյ բաղձալի փափաքմամբ ցանկացեալ փանագիս այս սիրող եղեալ բանին, որ վեցաւրէին 'ի նմանէն է մեկնութիւն, ծայրաքաղեցի զպայանին, և որ գիւրընկալն է իմոյ, և որ ըստ իս են պակասիմաց ուսումնասիրաց անձանց. յորս սուղ ինչ աշխատեցա բանաքաղութեամբ և տունատուութեամբ համբակի միում Քրիստափորի մրգուզ գրչի և անվարժ գրողի։ Որք ընթեռնուք և ուսմամբ աւկտիք, հարկաւորիք 'ի Տեառնէ հատուցանել զաղաւթիցն զպարտ ...»։

¹ «Այս ձեռագիրս, որոյ թուականն է Հայոց ՌՃԾ (1701) թէ գրողին հմտութեանը և թէ մանաւանդ պարունակութեանցը մի քան զմի պատուականութեանը պատճառաւ Անտոնեան հարց Մատենադարանին գլխաւոր զարդերէն մին կըրնայ համարուիլ։ Բարսղի Վեցօրեայն, Գրիգորիսի Արշարունեաց եպիսկոպոսի Մեկնութիւնն Ընթերցուածոց, և քան զամէնն աւելի՝ Գէորգեայ Պիսիդեսի Վեցօրէին ամբողջական թարգմանութիւնն, որոյ մի պատառիկն եւեթ ծանօթ էր մեզ, հրատարակեալ 'ի Բազմավէպի 1879 տարւոյն (123), ահաւասիկ ասոնք են ցանկալի ափսոս մնացին գոհարներն »։ (Ն. Ն. ԲԻՒԶԱՆԴԱՑԻ, Բառաքննութիւն, 61)։

ԺԲ. Այլևայլ աղօթք 'ի ժամասացութեան 'ի տէրունական տօնս:

— ** Թուղթ Զգլմին' առ կուսանն անկեալ 'ի կուսութենէ իւրմէ. (Epistola ad virginem lapsam). « Այժմ ժամանակ է ինձ զմարգարէականն զայն գոչել և ասել. Ո՞ տացէ գլխոյ իմոյ ջուր և աչաց իմոց աղբեւրս արտասուաց և լացից ... Զի թէպէտ և զսոսա խորային շրջանակեալ ունի լռութիւն և են միանգամայն ցնորեալ» : (Յոյն սկզբնագիրն կորուսեալ. լատինական թարգմանութիւնն 'ի յունէ եղած է 'ի ձեռն Ռուփինոսի):

— Սրբոյ Բարսղի եպիսկոպոսի Կեսարոյ Կապադովկացւոյ յաղագս վեցօրեայ աւուրց արարչութեան[1] (ինն ճառք): Βασιλειοῦ ἀρχιεπισκοποῦ Καισάρειας Καππαδοκίας Ὁμιλίαι Θ' εἰς τὴν ἑξαμερόν.

Ի Ս. Ղազար Վենետկոյ 1830 տպագրին յառաջաբանն կը ծանուցանէ. « Վաղու եւս ձեռնարկեալ էր մեր 'ի տիպ սորա, եթէ հին և սրբագիր օրինակի չէր կալեալ ակն. բայց արդ 'ի գերեւ ելեալ, լաւ համարեցաք միովս որ 'ի ձեռին շատանալ. թէպէտև ոչ հին և ոչ ընտիր գրչութիւն, այլ վրիպագիր բազում ուրեք և յանհմտութենէ աղաւաղեալ» :

Այս կարծիքը կ'արդարացընէ լիուլի' յոյն բնագրին հետ բաղդատութիւնը: Քանի մը օրինակք. — յ'էջ 2 տպ. 'ի քնին լինիցին. յոյնն. ինքնին լինիցին. — հայ. միաբանել ընդ բանսն որ պատմեսցին. յոյնն. որ պատմեցան. — հայ. առ ժամանակ մի բաբախել ընդ մեղսն. յոյնն. մխիթարիլ 'ի մեղսն. — հայն. վնասս առնելեաց և չարատեաց է. յոյնն. վնասատեաց և չարատեաց է: Ասոնք միայն մէկ իջի մը մէջ: Ընտրելա-

[1] Օրինակի մը մէջ որ 'ի Մատենադարանին Էջմիածնի' գրիչն Մխիթար կը ծանուցանէ. « Վեցօրեայ գիրքս երկու թարգմանչաց է յօրինած. վասն որոյ ուրոյն ուրոյն են »:

ւոյս, զի մի ոք իշխեսցէ հեռացուցանել 'ի սուրբ ուխտէս. Թշնամութեամբ կամ ագահութեամբ. ապա Թէ ոք յանդգնեսցի ... Գրեցաւ գիրքս 'ի Թուականիս Հայոց Նորումս ՁԹ. իսկ Հռոմոց ՑՂԳ. 'ի հայրապետութեան տեառն Ներսիսի Հայոց կաթուղիկոսի. և 'ի Թագաւորութեան Վրաց և այղ քաղում ազգաց Գեորգեայ որդւոյ Դեմետրէի. գրեցաւ ձեռամբ Սարգսի Նուաստ գրչի և տխմարի և յետին աշակերտի եկեղեցւոյ սրբոյ ուխտիս» ...*

* Յիշատակագրին նշանակած փոքր Թուականն կը համեմատի Հայոց = ՈԻԱ (1172)։ Երկաթագիր օրինակիս մէջի ճառերէն կը պակասին առ Յոյնս հետևեալքն.

Ա. Բարսղի և Ապողինարի տեսութիւն 'ի մարմնաւորութիւն փրկչին։

Բ. Բարսղի և Գրիգորի տեսութիւն յաղագս հաւատոյ։

Գ. Բարսղի Թուղթ առ Եւսեբիոս եպիսկոպոս։

Դ. Թուղթ առ Գրիգոր յաղագս կրաւնաւորական վարուց։

Ե. Առ Դիոգորոս երէց Անտիոքացի։

Զ. Ի սուրբն Ստեփանոս նախավկայ։

Է. Յաղագս ողորմածութեան և աղաւթից։(պակասաւոր)։ Ասոնցմէ զատ ուրիշ գրչագրաց մէջ գըտնուած ճառք, որոց սկզբնագիրք պակասին, Թէ յունական օրինակաց մէջ և Թէ 'ի լատին Թարգմանութեան Հռուփինոսի։

Ը. Ի քառասնաւրեայ գալուստն տեառն. ('ի մկն. Ղուկ.)։

Թ. Առ Տերենտիոս Ստրատելատ վասն մահուան դստերացն։

Ժ. Վասն Պահոց։

ԺԱ. Խրատք. « Իսկ բարեշուք այրն Աստուծոյ »։

'ի գաւառէն Խաչենոյ, եղեւ ըստ աջողելոյ Հոգւոյն Աստուծոյ վերատեսուչ համայն քրիստոնէից Հայոց, որ ընդ գաւազանաւ թագաւորութեանն Վրաց, յաջորդեալ զաթոռ տեառն Գէորգայ, ամենայնիւ առաւելեալ քան զառաջինսն 'ի փոյթ շինութեան սրբոյ ուխտիս. քանզի թէպէտև էր 'ի հարց և 'ի հաւուց, ազատ յազատաց, և մեծազգի 'ի մեծազգեաց, և փառաւոր 'ի փառաւորաց, եւս առաւել գոյր արժանաւոր մեծի գովութեան վասն հոգւոյ անարատութեան և վարուց մաքրութեան. որով և կոչեցաւ իսկ յայս աթոռ արեւելեան ըստ վկայելոյ թագաւորիս և համայն ազատաց. այլ և ճգնաւորական դասու կրաւնաւորաց. և յամենեցունց եղեւ պատուեալ ըստ արժանեաց. եւս առաւել 'ի մեծ ամիր սպասալարէն յԻւանէէ. և 'ի զուգակցէ նորին 'ի բարեսէր թագուհւոյն Ռուսուդանայ' որ էր յազգէ Բագրատունեացն մերոց կորուսեալ ազգիս թագաւորաց. որ ցուցանէր զգութ հարց իւրոց, և նորոգէր զիւրոյ նախնեացն սէր առ ամենեսեան, առ հեռաւոր և մերձաւոր ուխտս սուրբս. քանզի ամենայն տեղի որ 'ի նախնեացն սորա շինեալ էին և նուազեալ յետոյ, 'ի սորա աւուրս պայծառանային և նորոգէին վերստին. եթէ 'ի մերում գաւառիս, և եթէ 'ի գաւառն Անւոյ սեփական քաղաքին իւրեանց, և 'ի նոյն իսկ յԱնի, և եթէ 'ի գաւառն Դըւնայ. վասն զի յամենայն տեղիս իշխանութիւնն և երկիւղն մեծի սպասալարին Իւանէի առն սորա հասանէր. և սա ջանայր զի զիւր նախնեացն շինեալ եկեղեցիսն պայծառացուսցէ. որ և կամեցաւ զգերեզմանս առաջնոց թագաւորացն որ 'ի սուրբ ուխտիս առաւել պատուել և պայծառացուցանել. վասն որոյ եգ զսուրբ ուխտս 'ի ձեռս տեառնս Բարսղի. և սա ելից ընդ այլ թերութեանցն բազմաց և զայսմ գրոց պակասութիւն, և հաստատեաց 'ի սուրբ տեղ-

եղբայր միակեց, հաստատ կարգաւք 'ի փառս Աստուծոյ »։

— Գիր կանոնական մեծի և գիտականի եպիսկոպոսապետի Բարսեղի առ սուրբ Ամփիղիքոս, բան. « Արտաքսեալքն յեկեղեցւոյ ամենայն՝ հերձուածողք ասին, այլ կէս հերձաւղս կոչեցին ոչ միայն զայս՝ այլ և զայլ անձինս ժողովարարս » ։ ( Քառասուն և ինն կանոնք)։

— Նորին Բարսեղի առ Թէոդորոս՝ յաղագս ոչ առնել ընդ խնամիս խնամութիւն՝ զի յազգակցութենէ է ։ – Կամ ըստ այլ ձեռագրի. Գիր կանոնական սրբոյն Բարսղի առ քահանայ մեծ Դիոդորոս յԱնտիոքիայ. վասն ամենեւին հեռանալոյ և զազգային չառնել. « Յայս ինձ առաւել հակէ միտք եթէ գոցէ յանաւրինաց ինչ որ ըստ կամաց հեշտութեան լինի ընդ լծով ծառայութեան աւրինացն անկանի » ։

— Բարսեղի գիր կանոնական վասն պէսպէս և բիւրապատիկ ախտից. (ՄՀԲ կանոնք)։

Վերը յիշուած երկաթագիր հին և ամենընտիր օրինակին մէջ գտնուած յիշատակարանն. « Որ զթերութիւն եկեղեցւոյ միշտ լրացուցանէ Հոգին սուրբ իւրով ամենապատիկ շնորհաւքն, նմա փառք ընդ Հաւր և Որդւոյ միակամութեանն, այժմ և միշտ և յաւ" ։ Յոյժ ըղձիւ և յաւէտ տարփմամբ անձկոյ 'ի վաղուց ժամանակաց տոչորեալ այսմ աստուածահրաշ վարդապետութեան սիրով սրբոյն Բարսղի, տուրք ուխտիս Հաղբատայ ։ Քանզի թէ յանփոյթ առնելոյ առաջնոցն, և թէ 'ի չպատահելոյ ժամու դիպաւորի, ոչ գրեալ և ոչ ստացեալ ումեք զայս գիրս, ամենափարթամ գանձարանս այսմ ուխտի, ոչ ունէր զսա. որոյ թերութիւն զխուլն խնդրէր լրումն. որ պահիւր համանուանս իւրոյ տեառն Բարսղի, արհիեպիսկոպոսի աստուածաբնակ այսմ սրբարանի. որ ըստ կանխանկատ գիտութեան վերնոյ դիտմանն՝ եկեալ

կարանի գրեալ այսպէս. « Ես անարժանս 'ի կրօնաւորաց փցուն գրիչս Սիմէոն' 'ի ԹուականուԹեանս Հայոց ՆԻԱ, 'ի նորաշէն վանքս կոչեցեալ Սանահին, հրամանաւ հաւր իմոյ Յովհաննիսի, որ էր վանիցս շինուԹեան ամք վեց. զոր շինեաց բարեպաշտ Թագուհին Խոսրովանոյշ' ամուսին Հայոց Շահնշահի որդի Սմբատայ Բագրատունւոյ Հայոց Թագաւորի, և յառաջին ամի հայրապետուԹեանն հոգևոր հաւրն հանուրց տեառն Խաչկայ, արժանաւոր վերադիտողի. և յեպիսկոպոսուԹեան մերումս նահանգի Տաշիր' Գրիգորի արժանաւոր հաւտապետի, որ և նորուն առաջնորդուԹեան են ամք երկու » : . . .

— Կանոնականք և որչափ պատուհաս. ('Επιτιμία).
-Ա. ԵԹէ ոք ողջ իցէ մարմնով, և անփոյԹ արասցէ զաղաւԹից և կամ զուսումն սաղմոսաց, պատճառելով զպատճառս մեղաց, սայ որոշեսցի, և կամ պահեսցէ շաբաԹ մի » :

* Ի մեր գրչագիրս մետասան կանոնք միայն. իսկ 'ի յոյն բնագրին երկու մասունք. 'ի միումն վաԹսուն կանոնք, իսկ յերկրորդին ինննետասան:

Գրչագիր մը այս գրուածին կայ 'ի Հռովմ 'ի Մատենադարանին որ 'ի Մինէրվա (նախկին գրատուն Հարց Դոմինիկեանց) այս յիշատակարանաւ. « ՌՀԴ. Գրեցաւ կանոնական սահմանադրուԹիւն ուղղուԹեանցս, յուսումն խրատու կարգաւորուԹեան վանականաց, յարմարեալ և շարակարգեալ 'ի հոգխապայծառ և 'ի տիեզերալոյս վարդապետէ և 'ի մեծէ եպիսկոպոսապետէն Կեսարու Կապադովկացւոյ սրբբոյն Բարսղի, որ կոչի Հարցողաց. զոր ես գրել զսա Ստեփանոս վարդապետն' յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց, նաև Ներսէս վարդապետին և միաբանիցն. և է սա յիշատակ Լմայ անապատին 'ի դուռն սուրբ Գէորգայ զօրավարի . . . կան այժմ վաթսուն

բանակեացս և որ առանձին ճգնին. « Ըստ Քրիստոսի իմաստասիրութեան յանձն առեալ, և աշխարհական ցանկութեանց և մտագիւրութեանց և հոգւոյ վերագոյն համբարձեալ զխորհուրդս, և՛ի մարմնաւոր ախտից ամենայն իրաւք զմիտս անջատել և որոշել փութացեալ » :

— Եթէ պարտ է զաղաւթս նախագրել քան զամենայն ինչ. « Ամենայն գործ ո՛վ սիրելի, և ամենայն բան փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի կրաւն է բարեպաշտութեան և առաքինութեան » :

— Հարցումն ճգնաւորաց : — Պատասխանի սրբոյն Բարսղի. ("Οροι κατὰ πλάτος, κατ' ερωτισῖν καὶ αποκρισῖν). « Հարցողաց. Քանզի եւ մեզ բանն իշխանութիւնն հարցանել. Նախ քան զամենայն զայս աղաչեմք ուսանել, եթէ կարգ իցէ և հետեւումն 'ի պատուիրանս Աստուծոյ ... Ասացողին. Հարցումդ ձեր առաջնոցն է. և նախ տուեալ յաւետարանն, յորժամ մատուցեալ առ տէր աւրինականն՝ վարդապետ ասէ, ո՞ր առաջին պատուիրան յաւրէնսն է »* :

* Երեքհարիւր վաթսուն և մի հարցմունք 'ի ճգնաւորաց, և պատասխանիք սրբոյն Բարսղի. այս պատճառաւ ամբողջ գիրքն՝ Հարցողաց կոչուած է 'ի գրչագիրս : (Յոյն բնագիրն հանդերձ լատին թարգմանութեամբ 'ի տպ. Փարիզու, Հատ. Բ. յէջ 323–326) : Ի ցուցակի գրչագրին որ յԵրուսաղէմ՝ այս ծանօթութիւնը կը գտնենք. « Թարգմանեալ 'ի յունականէն 'ի հայս՝ 'ի ձեռն ճշմարտաբանից թարգմանչաց մերոց » :

Յիշատակարան գրչագրին որ 'ի գիւանս Սանահնի վանաց. « ... Մեծապատիւ վկայ զՍիմէոն քաջ քարտուղարն Սանահնու, որ սրբուհւոյ Աստուածածնին հիմնարկութեանն և աւարտմանն ականատես էր եղեալ. որ 'ի ժամուն յայնմիկ գրեալ զգիրս Բարսղի Կեսարացւոյ վասն ճգնաւորաց, և նորուն յիշատա-

— ** Սրբոյն Բարսղի 'ի մեկնութենէն Զաքարիայ մարգարէի· (Fragment du Commentaire sur la prophétie de Zacharie). « Զարթիր սուր 'ի վերայ հովուի իմոյ, ասէ տէր ամենակալ: Սուր աստ յայտնեալ ասի մեզ իբրև աւրինակաւ սուսերի զփորձութիւնսն, կամ զնոցին չարչարանս » (հատուած մի եւեթ):

— Նորին սրբոյն Բարսղի (քաղուած 'ի Ճառէ անտի ծննդեան). (Fragment d'un discours sur la Nativité de N.-S.). «Նոր է մեզ տաւնս և պարս հրեշտակաց յարգարէ· որք ասէին. Փառք 'ի բարձունս Աստուծոյ և յերկիր խաղաղութիւն, 'ի մարդիկ հաճութիւն »:

— Խրատք սրբոյն Բարսղի Կեսարացւոյ հայրապետի ասացեալ. « Իսկ բարեշուք այրն Աստուծոյ տեսեալ ժողով զմանկունսն՝ ուսուցանէր նոցա անձանց մաքրութիւն, և անախտութիւն մտաց մարմնոյ, գնացք հեզութեան, ձայն չափաւոր »:

— Սրբոյն Բարսղի եպիսկոպոսապետի Կեսարու Կապադովկեցւոյ՝ Ճգնողականաց կրաւնաւորաց. (Λόγος ἀσκητικός). « Զգուշական կենցաղ՝ մի գիտաւորութիւն ունի զոգւոցն փրկութիւն. և ամենայն որ կարէ առ նա գործակցել զյաւժարութիւնն՝ իբրև զաստուածային պատուիրան՝ այսպէս հանգերձ երկիւղիւ պահել »:

— Նորին սահմանք կրաւնաւորականք. (Ὅροι κατὰ πλατος). « Քանզի Աստուծոյ շնորհաւք յանուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի մերձ եկաք յայտնիկ, որք և զմի և զնոյն տեսութիւն վարուց զբարեպաշտութեան հաստատեալք, և դուք բարւոք յայտնիւք (յն. յայտնիք էք) ուսանել ինչ որ առ 'ի փրկութիւնն փափաքեալք »:

— Սրբոյն Բարսղի եպիսկոպոսի Կեսարու Կապադովկացւոյ խրատ յաղագս կրաւնաւորաց առ միա-

սուրբն Պենտեկոստէն. (Prière pour le saint jour des Pentecôtes). « Անարատ, անեղծ, անսկիզբն, անտեսանելի, անհասանելի, անհետազօտելի, անփոփոխելի, անպարագրելի, անսահման, անոխակալ տէր » : (Մաշտոց երկաթագիր. ԼԹ) :

— ** Աղօթք զոր ասացեալ է սուրբ հայրն մերոյ Բարսղի Կեսարու հայրապետին. (այգալուցք աշխարհաթաղին). « Գոհանամք զքեն Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի » :

— ** Աղօթք զոր ասացեալ է սրբոյն Բարսղի. (քահանայաթաղ). « Արարչագործ Աստուած, որ 'ի ձեռն ստացուածային խորհրդոյ քոյ՝ զառաջնաստեղծ մարդոյն զկերպարանս » :

— ** Աղօթք վասն կնքելոյ զգերեզմանն. զոր ասացեալ է տեառն Բարսղի հայրապետին Կեսարու Կապադովկացւոյ. « Գոհանամ զքեն Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ լայց եղեր մարդասիրութեամբ քոյով » :

— ** Ի մեծին Վարդավառին տաւնի աղօթք՝ սրբոյն Բարսղի Կապպադովկացւոյ. (Prière pour le jour de la Transfiguration de N.-S.). « Աւրհնեալ ես, տէր Աստուած ամենակալ, Որդի և Բանդ աստուած, էակից և արարչակից Հաւր, գոյացուցիչ և համագոյակից Հաւր և Հոգւոյն սրբոյ անորիշ յէական բնութենէդ » : (Մաշտոց երկաթագիր, 'ի մեր Մատենադ. ԼԹ) :

— Երանելւոյն Բարսղի Կեսարու հայրապետի ասացեալ վասն Պահոց. « Շաբաթ տաւն է Հրէից ազգին, և ասացաւ թէ Հանգիցէ գրաստ քո և եզն քո, ծառայ քո և վարձաւոր քո » :

* Ի ցուցակի գրչագրաց Մատենադարանին որ յԵրուսաղէմ. Թարգմանեալ « 'ի յունականէն 'ի հայ՝ 'ի Ստեփաննոսէ քահանայէ և յետին կրօնաւորէ » :

Յիսուսի Քրիստոսի 'ի տաճարն քառասնաւուրեայ. սրբոյն Բարսղի եպիսկոպոսի Կեսարու Կապադովկեցւոյ ասացեալ. (Discours sur la présentation de N.-S. au temple). « Զամենայն տնաւրինութիւնս պարտ է մեզ կատարել սաղմոսիւք. և աւրհնութեամբ և գովութեամբ ընթերցուածոց որ ինչ խորհրդոյն »:

— ** Բարսղի Կեսարու առ Տերենտիոս ստրատեղատ վասն մահուան դստերացն. (Lettre à Térence, le Stratège). « Եւ արդ առ քեզ են բանք իմ ով քաջ և առաքինի հասակդ: Նաև ես յոյժ իսկ զարմացեալ եմ ընդ քեզ, զի երբեմն զբարբարոսական Անտիոքացւոց հնազանդեցուցեր զազգն մրցմամբ պատերազմի »:

— ** Աւրհնութիւն 'ի վերայ ջրոյն զոր ասացեալ է սրբոյն Բարսղի Կեսարու Կապպադովկեցւոյ. (Prière pour la bénédiction des eaux, le jour de l'Épiphanie de N.-S.). « Աւրհնեալ ես տէր աստուած ամենակալ յամենայնի Հաւր և աքանչելագործ, որ արարեր զերկինս և զերկիր. զծով յաննիւթից և յանպատրաստ խաւարային անդնդոց »: (Մաշտոց երկաթագիր, ԼԹ):

— ** Աղաւթք զոր ասացեալ է սրբոյն Բարսղի Կեսարու հայրապետի 'ի վերայ ապաշխարողաց. (Prière de Jeudi-Saint, pour les pénitents). « Տէր աստուած հայր ամենակալ, արարիչ երկնի և երկրի »:

— ** Քարոզ Զատկաց, զոր ասացեալ է տեառն Բարսղի Կեսարու Կապպադովկեցւոյ. (Pour le jour des Pâques). « Ժողովեալքս 'ի տաճար փառաց սրբութեանդ քո, հայցեմք 'ի քոյին գթութեանդ՝ լեր պարգևուիչ հայցուածոց մերոց լիապէս 'ի քոյ առատ պարգևացդ, աղաչեմք: (Մաշտոց երկաթագիր, ԼԹ):

— ** Աղաւթք զոր ասացեալ է սրբոյն Բարսղի 'ի

(Գէորգիոս) վկայն. (Εἰς Γόρδιον τὸν μάρτυρα). « Առւրէնք են բնութեան մեղուաց, ոչ 'ի բաց ամբառնալ 'ի մեղուանոցացն՝ նախ թէ ոչ թագաւորն՝ նոցա թռչման առաջնորդեսցէ »:

— Նորին սրբոյ Բասղի եպիսկոպոսի խաւսք յորդորականք 'ի Մկրտութիւնն. ('Ομιλία προτρεπτική εἰς τὸ ἅγιον βάπτισμα). « Իմաստունն Սողոմոնի ըստ կենցաղոյս իրաց զժամանակս բաժանելով, և իւրաքանչիւր ումեք եղելոյն պատշաճագոյն որոշելոց ասէ. Ամենեցուն ժամանակ է. ժամ ամենայն իրի. ժամանակ ծնանելոյ և ժամանակ մեռանելոյ »:

* Յունական սկզբնագրին մէջ, որ յոմանց 'ի հըմտից 'ի կարգէ անհարազատ երկասիրութեանց սըրբոյն սեպուած է, երկու երկար հատք կամ գիրք են, յորոց հատուած մի հաստած է առ մեզ հայկական թարգմանութեամբ: Յոյն եկեղեցւոյ մէջ այլևայլ համանուն անձինք եղած են՝ նշանաւորք սրբութեամբ և իմաստութեամբ. ինչպէս Բարսեղ Անկիւրիոյ՝ ժամանակակից Եմեսացւոյն, և արքեպիսկոպոսունքն Սելեւկիոյ, Կիլիկիոյ և այլք: Կրնայ ըլլալ որ մէկուն գրուածքը՝ ուրիշի մը ընծայուեր է:

— Նորին սրբոյ Բասղի եպիսկոպոսի՝ թէ չէ պատճառ չարեաց Աստուած. ('Ομιλία ὅτι οὐκ ἔστιν αἴτιος τῶν κακῶν ὁ Θεός). « Բազումք են վարդապետութեան աւրինակք, որք 'ի ձեռն զքահանայականն սաղմոսողին Դաւթայ 'ի զաւրացելոյն 'ի նմա հոգւոյն ցուցան մեզ »:

— Նորին սրբոյ Բասղի եպիսկոպոսի՝ յաղագս Ողորմածութեան և Աղաւթից. (Թերի). « Գիտացի իսկ յառաջագոյն զառ յինէն եղեալ առ ձեզ մխիթարութեան խրատն վասն բարեգործութեան »:

Հոս կ'աւարտին մեր երկաթագիր օրինակին մէջ ամփոփուած հատք:

— ** Ի մեծի աւուրս գալստեան տեառն մերոյ

գիմուք մեռեալ, զինքն կամեցեալ հաւատալոյ արժանի առնել լսաւղացն » :

* Էջմիածնի մատենադարանին գրչագիրն (Թիւ 924) ունի. « Գեորգայ երիցու Անտիոքացւոյ » :

— Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի՝ յաղագս Գոհութեան. (Περ' Εὐχαριστίας λόγος). « Լուարուք զբանսն առաքելոյ, 'ի ձեռն որոյ ընդ Թեսաղոնիկեցիսն խաւսէր՝ ամենեցուն միոս դնէ որ 'ի կենցաղումս. քանզի վարդապետութիւնն առ այնոսիկ որ հանապազ նմայն հանդիպէին՝ էր » :

— Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի 'ի վկայն Յուղիտեայ. և յառաջասացեալ խաւսին յաղագս Գոհութեան. (Εἰς τὴν μάρτυρα Ἰουλίτταν, καὶ εἰς τὰ λειπόμενα τῆς προλεχθεισης ὁμιλίας τῆς περὶ ευχαριστίας). « Պատճառք եկեղեցւոյս են երանելւոյ վկայիս քարոզութիւն լեալ. քանզի խոստացայ ձեզ յաւուրս յայսմիկ իբրև յիշատակարանան ունելով զմեծ Ճգնութեան՝ զոր կանացի մարմնով առնէ արիութիւն » :

— ** Ի սուրբ նախավկայն Քրիստոսի Ստեփանոս. (Panégyrique sur St. Etienne, le protomartyr). « Ամենեքեան որ սիրելեացն Ճաշոյն յաւրինեացեն պատրաստութիւն, զանազան խորտկաց պատրաստեն խուռնս. ոչ միայն զանասկան հեշտալեօ (հրաշալիս) արտակերտելով՝ փոփոխակաւս և կամ ծաղկերանիկս ասրակերտս, այլ առաւել զհամեղութիւն խոկալով սպասաւորին » :

— Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի 'ի սուրբ քառասուն վկայսն. (Εἰς τοὺς ἁγίους τεσσαράκοντα μάρτυρας). « Մարտիրոսաց յիշատակ զիարդ արդեաք յագուրդ եղիցի մարտիրոսասիրին. վասն զի առ 'ի բարի ծառայակցացն պատիւ տարացոյց ունի զառ 'ի հասարակաց տեառնն միամտութիւն » :

— Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի 'ի Գորդիոս

լութիւնն պատմէ. զի Հայր լսեաց՝ առանց ճառելոյ »։

* Էջմիածնի ցուցակին զայս ճառ կ'անուանէ. « Հարցմունք վասն հաւատոյ »։

— Ոպտիմեայ եպիսկոպոսի՝ Բարսեղիոս եպիսկոպոս. (Lettre à l'évêque Optime. « Եւ այլազգաբար ախորժելով տեսեալ զբարիս մանկունս, 'ի ձեռն առաւել քան զհասակս՝ իւրեանց բարուցն բարեկեցութիւնս, և առ քո երկիւղածութիւնս ընտանի »։

— Բարսեղիոս եպիսկոպոս Եւսեբիոս եպիսկոպոսի. (Lettre à l'évêque Eusèbe). « Յորժամ առ իմն հայիմք, և զգուշաւորութիւնս տեսանեմք՝ յորոց ամենայն բարւոյն ներգործութիւն իբրև 'ի կապանաց իմիքէ խափանեալ արգելանի։ 'ի բաց հրաժարումն ինքեանց գամք ամենեքին »։

— Թուղթ առ սուրբն Գրիգոր Աստուածաբան եպիսկոպոս Նազիանզու, յաղագս վարուց. (Deux lettres à St. Grégoire de Nazianze). « Ծանեայ զքո թուղթն, զոր աւրինակ որք զբարեկամաց մանկունս յերևմանէ նոցա նմանութեան առ ընդանիսն ճանաչեն »։

— Թուղթ առ սուրբ Գրիգոր Աստուածաբան եպիսկոպոս Նազիանզու, յաղագս կրաւնաւորական վարուց. « Եւ գրելով և լուռ լինելով, հաստատեալ ունիմք 'ի սիրտս մեր պահել զյիշատակ քո բարեզարդութեանդ. և աղաւթս առ տէր՝ տալ քեզ կատարել զընթացս բարւոյ քաղաքավարութեանն որպէս ընտրեցեր »։

— Բարսղի եպիսկոպոսի Կեսարու մեծի՝ Դիոդորայ երիցու Անտիոքացւոյ. (Lettre à Diodore, prêtre d'Antioche). « Եհաս առ մեզ գիր որ ունէր զվերնագիրն Դեոդորայ. իսկ որ զկնի այնորիկ գոյր՝ այլ ումեմն վայելուչ էր քան Դեոդորայ. քանզի թուեւ ինձ ոմն 'ի դժնդակ արուեստականացն ընդ քոյոյ

թիւն փրկչին։ « Բարսեղ ասէ․ Մարմին մարդկային ունէ՞ր Քրիստոս թէ ոչ։ Ապողինար ասէ․ Ոչ։ Բարսեղ ասէ․ Իսկ զի՞ր այլ։ Ապողինար ասէ․ Աստուածային։ Բարսեղ ասէ․ Բնութեա՞մբ եթէ միաւորութեամբ անօրէնութեանն։ Ապողինար ասէ․ Միաւորութեամբ անօրէնութեանն »։

* Այս Տրամախօսութիւն ընդ Ապողինարի՝ որ 'ի մեր հայ գրչագիրս սրբոյն Բարսղի կ'ընծայուի, յունական քանի մը հեղինակաց քով Աթանասի տրուած է և անոր անունովը ալ հրատարակուած։ Ոմանք 'ի քննադատաց Մաքսիմոսի վկայի ընծայեցին՝ որ եօթներորդ դարուն մէջ էր․ այլք Թէոդորետոսի։ Հայկական հին Թարգմանութիւնս՝ այս ամէն կարծիք և երկմտութիւն կը փարատէ։ Վաւերականութեանն վկայէ և սուրբ հայրապետն Շնորհալի 'ի Թուղթս իւր․ « Որպէս և մեծն Բասիլիոս, — կ'ըսէ, — ընդդէմ Ապողինարի, որ զմարդկային հոգիս արտաքս հանէր 'ի տեառնէ, և կիսկատար ասէր զնա 'ի մարմնաւորութիւնն՝ այսպէս ասէ, երկուց գոյացութեանց կատարելոց միաւորութիւն։ Եւ զի զգոյութիւն անշփոթ պահեաց՝ յորժամ եհարց Ապողինար վասն Քրիստոսի թէ մարդկային միտս ունէր՝ կարէր և մեղանչել, պատասխանէ սուրբն՝ թէ ոչ էր միացեալ ընդ աստուածութեանն միտքն՝ այո »։ Սրբոյն Բարսղի խօսքերն են․ « Ապողինարն ասէ․ Եթէ միտս մարդոյ ունէր՝ կարէր և մեղանչել։ Բասիղ ասէ․ Եթէ ոչ էր միացեալ ընդ աստուածութեանն միտքն՝ այո »։

— Նորին սրբոյ Բասղի եպիսկոպոսի, տեսութիւն յաղագս Հաւատոյ՝ երանելեացն սրբոց եպիսկոպոսաց Բարսղի և Գրիգորի․ « Բասիղ ասէ․ Կարողութի՞ւն իցէ արդեւք պատմել ինչ յաղագս Որդւոյ նախ քան զլինել աշխարհի․ Գրիգոր ասէ․ Եթէ ոք զկնի Հաւր և յետ Որդւոյ էր, պատմեսցէ․ քանզի պարտ և արժան է նախ պատմողին գոլ, զորոյ զծնե-

ամենայն մարդ սուտ։ Հաւատ առաջնորդեսցէ վասն Աստուծոյ բանիցն. հաւատ և ոչ ցոյց»։

— Նորին սրբոյն Բարսղի եպիսկոպոսի յաղագս Երրորդութեան. «Զաստուած յիշել հանապազ բարեպաշտութիւն և յագումն ոչ ունի աստուածասէր հոգի. բայց բանիւ անցանել յաղագս Աստուծոյ յանդգնութիւն է»։

— Սրբոյն Բարսղի յաղագս Պահոց. և 'ի բուն բարեկենդան. (Περὶ Νηστείας, λόγος β'). «Մխիթարեցէք, ասէ, քահանայք զժողովուրդս. խօսեցարուք յականջս Երուսաղեմի։ Բաւական է բանի բղնութիւն՝ զառաքինեացն յարձակմունս վերածգել. և զպղերգեացն և զհեղգացելոցն յարուցանել զյառաջադիմութիւն»։

— *Նորին սրբոյն Բարսղի եպիսկոպոսի Ի սկզբանէ էր բանն. (Εἰς τὸ, Ἐν ἀρχῇ ἦν ὁ λόγος). «Ամենայն աւետարանչացն ձայն մեծաբարբառագոյն այլոցն հոգւոցն վարդապետութեան. վասն զի յայլս մարգարէիւք, իսկ յաւետարանսն ինքնադիմաբար խօսեցաւ մեզ տէրն»։

— Նորին Բարսղի սրբոյ եպիսկոպոսի 'ի ծնունդ Փրկչին. (Εἰς τὴν ἅγιαν τοῦ Χριστοῦ γέννησιν). «Քրիստոսի ծնունդ իւրականն և առաջինն և յատուկ իւրոյ աստուածութեանն՝ լռութեամբ պատուեսցի. և մանաւանդ մտածութեամբք մերովք ոչ խնդրել զայնպիսին, և ոչ բազմախոյզ լինել պատուիրեսցուք»։

* Ի վերջ ճառիս կայ այսպիսի ծանօթութիւն մը. «Դուիթ Թարգմանն Տարօնացի զճառս զայս յետոյ դարձոյց 'ի յունէն 'ի հայ բարբառ 'ի Դամասկացւոց քաղաքին՝ հրամանաւ Համազասպայ կուրապաղատի Մամիկոնենից տեառն։ Եւ եղիցի աւրհնութիւն տեառն 'ի վերայ նոցին»։

— **Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի և Ապողինարի հերձուածողի տեսութիւն 'ի մարմնաւորու-

— Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի 'ի սաղմոսն առաջին. (Homilia in psalmum primum. յոյն սկզբնագիրն կը պակասի)[1]. « Ամենայն գիրք աստուածաշունչք և աւգտակարք, յաղագս այնորիկ շարադրեցաւ 'ի Հոգւոյն, որպէս զի իբր 'ի հասարակաց հոգւոց բժշկարանի ամենայն մարդ զբժշկութիւն իւրոց ախտից իւրաքանչիւր ոք ընտրիցեմք »:

— Նորին սրբոյն Բարսղի եպիսկոպոսի 'ի սաղմոսն յիսունեիննն. (Homilia in psalmum LIXX, պակասի յոյն բնագիրն). « Ի յաւժարամտութիւն հայելով ձերոց լսելեաց, և իմոյ զաւրութեանս տկարութիւն, եկն յիս պատկերիմն մանկան հզաւրագունի՝ այսուհետև ոչ ևս զատուցեալ 'ի կաթանէ խանգելով զմաւրն ստինս 'ի տկարութիւնս փախչիցիմք »:

— Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի 'ի վաթսուն և մի սաղմոսն՝ 'ի կատարած յաղագս Իդիթունայ սաղմոս Դաւթի. (Εἰς τόν, Α' ψξαλμόν. Εἰς τὸ τέλος ὑπὲρ Ἰδιθοὺμ, ψαλμὸς τοῦ Δαβίδ). « Երկուս սաղմոսս ծանեաք յաղագս Իդիթունայ՝ որք ունին զվերնագիրն. զերեսուն և ութն, և զոր 'ի ձեռինս է, և վարկանիմք Դաւթի գոլ զկարգ իրաց »:

— Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի 'ի սաղմոսն հարիւրերորդ տասնեչորրորդ. (Εἰς τὸν ΡΙΔ' ψαλμόν). « Վաղ ժամանեալք 'ի քահանայական յայս տեղի 'ի մէջ գիշերոյ զԱստուած վկայից օրհնութեամբք հաշտեցուցանելով, ժուժկալեցէք մինչև 'ի հասարակաւուրեայս 'ի մեր գալս մնացեալք »:

— Նորին Բարսղի եպիսկոպոսի 'ի սաղմոսն հարիւրերորդ տասներորդ հինգերորդ. (Εἰς τον ΡΙΕ' ψαλμόν). « Հաւատացի յաղագս որոյ և խօսեցայ. և ես նուաստացայ յոյժ: Ես ասացի 'ի զարմանալ իմում

[1] Ասոնց 'ի յունէ 'ի լատին թարգմանութիւնն ըրած է Հռուփինոս Ակուիլէացի 'ի չորրորդ դարու.

— Ի սաղմոսն երեսունեւեօթն, յաղագս Ապաշխարութեան. Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի, 'ի Քակեցից զիմ շտեմարանս. (Εἰς τὸ ῥητὸν τοῦ κατὰ Λουκὰν εὐαγγελιοῦ Καθελῶ μοῦ τας ἀποθήκας, καὶ μείζονας οἰκοδομήσω καὶ περὶ Πλεονεξίας). « Կրկին տեսակք փորձութեանց. քանզի կա՛մ նեղութիւն տանջեն զսիրտս որպէս զոսկի 'ի բովս, եւ 'ի ձեռն համբերութեան զփորձ նոցա յանդիմանելով. եւ կամ բազում անգամ նոյն իսկ լիութիւնք կենցաղոյս' փոխանակ փորձարանի լինին յոլովից, վասն զի նոյնպէս տապառում է դժուարին իրս »:

— Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի առ Ընչեղս. ('Ομιλία πρὸς τοὺς Πλουτοῦντας). « Ասացաւ եւ յառաջագոյն մեզ յաղագս երիտասարդիս այսորիկ, եւ յիշէ ամենայն իրաւք աշխատասէր լսաւղ զքննութիւնն յայնժամ. զի ոչ նախառաջին. զի ոչ նոյն որ 'ի Ղուկայն աւրինականն »:

— **Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի զՎաշխառաց. « Երեկ 'ի չորեքտասաներորդ սաղմոսն խօսելով, եկեալք 'ի սպառուած բանին 'ի ժամէն ոչ յորդորեալք եղեաք. իսկ այժմ եկեալք բարեմտութեամբն պարտապանք զպարտս նուաղեցելոցն 'ի ձէնջ պահանջեմք »:

— Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի զԲարկացողաց. (Ομιλια Ι' κατὰ 'Οργιζομενῶν). « Զորաւրինակ 'ի բժշկական պատուիրանսն' յորժամ բարւոք կարծելով, եւ ըստ բանի արուեստին լինի, զկնի հմտութեանն' առաւել 'ի նոցանէ աւգտակարութիւնն ցուցանէ. սոյնպէս եւ 'ի հոգեւոր խրատսն »:

— Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի զՄախանաց. ('Ομιλία περὶ Φθονοῦ). « Բարի Աստուած, եւ բարեացն արժանաւորաց տուող. չար բանսարկուն, եւ չարեաց ամենայնի արարիչ. եւ զորաւրինակ յարմարի բարւոյն անմախողութիւն, սոյնպէս զկնի երթայ բանսարկուին յաչաղանք »:

մանութեամբ նախնեաց ըստ մեծի մասին յոսկեղէն դարու մեր մատենագրութեան, և այլք կրտսերագոյնք ժամանակաւ, ինչպէս պիտի տեսնենք։

— Երանելւոյ սրբոյն Բարսղի եպիսկոպոսի Կեսարեայ Կապադովկացւոց յաղագս Պահոց. (Βασιλειοῦ Ἀρχιεπισκοποῦ Καισαρείας Καππαδοκίας, περὶ Νηστείας). «Փողեցէք ասէ 'ի նոր ամսեան փողով բարենշան յաւուր տաւնի մերոյ։ Այս հրաման մարգարէական մեզ՝ քան զամենայն փող մեծաձայնագոյն և քան զամենայն գործի երաժշտական բարենշանագոյն, որ ածելով զկացուրդն նշանակէ ընթերցեալս. քանզի ծանեաք զպահոցն շնորհս յԵսայեայ, զհրէական պահոցն կարգ 'ի բաց մերժելով, և զճշմարիտ պահսն 'ի մեզ ցուցանելով. Մի 'ի դատաստանս և 'ի կռիւս պահէք, այլ լուծէք զամենայն հանգոյց անիրաւութեան»։

— Նորին սրբոյն Բարսղի զԱրբեցողաց. (Κατὰ Μεθυόντων). «Տարժէ զիս առ բանս երեկորնեայք տեսութիւնք, և արգելու զիմ դարձեալ զյորդորումն՝ և ըլշեցուցանէ զյաւժարութիւնն՝ նախատեալ աշխատութեանցն անպտղութիւն»։

— Ի բանն Հայեաց 'ի քեզ. (Ὁμιλία εἰς τὸ Πρόσεχε σεαυτῷ). «Բանիւ ետ մեզ զպէտսն ստացուածն մեր Աստուած. որպէս զի զխորհուրդս սրտից միմեանց յայտնիցեմք. և 'ի ձեռն հասարակաց բնութեանս, իւրաքանչիւր ոք մերձաւորին փոխանակիցեմք»։

— Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի յերեսներորդ եւթներորդ սաղմոսն յաղագս Ապաշխարութեան. (Ὁμιλία περὶ Μετανοίας). «Որոց զապաշխարութիւն բառնալ իշխեն՝ զհպարտութիւնն ոչ բերելով, պատուական եղբայր, երկրորդ մեզ հրաման ետ զայն ամպարհաւաճութիւն տեսանելով զողջախոհ եղբարց. զաջդ կարկառեսցես յապաշխարութիւն և պիտանացու բանս 'ի մարդիկ»։

տակն և տօնախմբութիւն կը հռչակեն որ Անտիոքայ կամ Նիկոմիդիոյ եպիսկոպոս էր և նահատակեցաւ յ'350 Թուականի։ Մեր յիշած ճառերուն հեղինակն ինք չըլլալը՝ խնդիր չի վերցըներ։ Այս ճառից առաջ-նոյն յունական սկզբնագիր կայ առ Մոնֆոքոնի (Հատ. Ը, 39) ընդ անհարազատ երկասիրութիւնս Ոսկեբերանի։ Խորագիրն է. (Ε'ις τὴν ὄρχησιν τῆς 'Ηρωδιάδος καὶ εἰς πὸν 'αποτομὴν τῆς κεφαλῆς 'Ιωάννου τοῦ προδρόμου καὶ Βαπτιστοῦ).

— ** Սրբոյն Բարսեղասայ Աղեքսանդրու հայրա-պետի 'ի գլխատումն Կարապետին. « Որպէս այր որ անապատասէր յանտառախիտ տեղւոջ ուրեք ընդ-ծառով հովանացեալ հաւուցն գեղեցկաձայնու-թեան հնչմամբ և ջրոցն քաղցրաչիւն հոսանաւք հեշ-տացեալ առ 'ի հանդարտութիւն ձայնիցն »։

— ** Երանելւոյն Բարսեղայ եպիսկոպոսի Աղեք-սանդրու՝ պատմութիւն սուրբ և պատուական գլը-խոյն Յովհաննու Մկրտչի թէ ուստի բերաւ յԱմա-սիա քաղաք։ (Մատենադարան Էջմիածնի, թիւ 917 ըստ տպագիր ցանկին)։ Իսկ 'ի մերումս ձեռաց ա-նուան հեղինակի՝ այս խորագրով. «Պատմութիւն Յովհաննու Մկրտչի և կարապետի Քրիստոսի, և գիւտ գլխոյն 'ի Հերովդիայ քաղաքի 'ի ձեռն միայնա-կեցաց. և որպէս բերին յԱմասիա քաղաք ըստ տես-չութեանն Աստուծոյ »։

## Ս. ԲԱՐՍԵՂ ԿԵՍԱՐԱՑԻ

(ST. BASILE DE CÉSARÉE)

---

Կեսարիոյ Գամրաց սուրբ հայրապետին երկա-սիրութիւններէն, որ ապրեցաւ 'ի չորրորդ դարու (329-379), հետևեալքն հասած են առ մեզ թարգ-

Տքրուալ զհնուրս և եղկելիս
Սմբատ անուն իմ Հայկազնիս ,
Տէր և Պարոն Պապեռոնիս.
Եղբայր Հեթմոյ Թագաւորիս
Եւ սպարապետ Հայոց գնդիս.
Նոյն և շինող ի բնէն սրմոյ
Ջանաւ գըղեակն անմարտելիս ,
Որ ըստ իմոյ անուանս եդի
Սմբատակլայ քաջ ամրոցիս։
Զօրս աղաչեմ զամենեսին
Որք ընթերցող լինիք գըրիս՝
Խնդրել պարգևս ի Քրիստոսէ
Ըզթողութիւն մեղաւորիս.
Եւ պարգևողն տառատածիր
Տրիտուր բարեաց այնէ բարիս։
Ի Հայ ազգիս Թուականիս
Ի վեցհարիւր իննսունեորդիս
Գրեցի վատթար ձեռօքըս ես
Անշար ըզգիր յիշատակիս »*։

## ԲԱԲԵՂԱՍ ԱՂԵՔՍԱՆԴՐՈՒ

(BABYLAS D'ALEXANDRIE)

---

Երկու ճառք կամ հատուածք ճառից Բաբեղայ Աղեքսանդրու հայրապետի անուամբ կը գտնեմք մեր մատենագրութեան մէջ, առանց կարենալու ստուգել հեղինակին ժամանակը։ Հայ, յոյն և լատին վըկայաբանութիւնք համանուն հայրապետի մը յիշա-

* Արիստոտէլի երկասիրութեանց ու անոնց Հայկական թարգմանութեան վրայ քննադատական գրուածք մը հրատարակած է գերմանացի հայագէտն Նայման 'ի 1829, փարիզու Ասիական օրագրին մէջ. Mémoire sur la vie et les ouvrages de David, philosophe arménien du V$^{me}$ siècle de notre ère, et principalement sur ses traductions de quelques écrits d'Aristote, par C. F. Neumann.

յիշատակարան մը 'ի վերջ Ստորոգութեան գրոց.

Ո՛վ հանճարեղք յիմաստ բանիս
Եւ մակացուք լոյս արհեստիս,
Մտադրութեամբ միտ դիք բանիս
Անյաղթ փիլոսին վարդապետիս.
Որ զընդհանուրն առեալ գոյիս
Տքնեալ բաշխեաց մարդկան ազգիս.
Իբր ընդհանուր զկենդանիս
Բաժանեաց ի ձիս և ի ջորիս.
Զոր համանունամբք առնէ տեղիս,
Իսկ բաշխելով զանուանս գոյիս
Միաւորէ դարձեալ ի միս,
Եւ յարանուամբ գոլ նմանիս,
Որպէս յԱրի ազգէն՝ արիս.
Արդ ո՛նց պատմեմ զոճ ըզբանիս,
Երբ կարի խիստ կարճ է տեղիս.
Բայց թէ հազար կարճեալ բանիս
Հարկըն կոչէ զիս յայս տեղիս.
Յիշել ըզմայրն ամէն գոյիս՝
Եւ ըզպատճառ ծնընդականիս։
Զգոյութիւնն որով լինիմք
Եւ գոյանամք ի յաշխարհիս.
Եւ զիմնեքին ընկերք սորին
Որոց գըլուխ է տասնեկիս.
Յորս անուանեաց Արիստոտէլ
Նամակ և գիր զարմանալիս,
Առ Աղեքսանդր իւր աշակերտ
Տիեզերակալ երեք կուսից.
Երբ հեռացեալ էր ի նմանէ
Առնուլ ըզչորս կողմն աշխարհիս.
Զորս ընդհանրեաց ի քիչ տեղիս
Ըզգիտութիւնս անճառելիս,
Եւ ժողովեաց ի միասին
Զիմանալիս և ըզգալիս։
Ընթերցէք և զարմացէք
Որք ի խընդիր լինիք բանիս.
Ըզմակագիր բնութեանս ազգիս
Գրիգորի Նիւսայ վարդապետիս,
Զոր ժողովել ի մի տեղիս՝
Յարմարեցի ի պատենիս (զատիկլիս),
Եւ մեղաւորս և ողբալիս

Արիստոտելի իմաստասիրի թուղթ առ Աղեքսանդրոս թագաւոր, Պատմութիւն յաղագս աշխարհի. (Περὶ Κοσμοῦ). « Իսկ բազում անգամ ինձ աստուածային ինչ և բարեբախտեալ ճշմարտապէս էր, ո՛վ Աղեքսանդր, գոլ Թուեցաւ իմաստասիրութիւն »։

Արիստոտելի յաղագս Առաքինութեանց, առ Աղեքսանդրոս թագաւոր. (Περὶ Ἀρετῶν). « Գովելի են գեղեցիկքն և պարսաւելի գարշելիքն »։

Ի Մատենադարանին Էջմիածնի կը յիշատակուին յանուն Արիստոտելի Հոգւոց և Պարապմանց գիրք, որ մեզ անծանօթ երկասիրութիւնք են, և Ստագիրացւոյն յունական սկզբնագրին մէջ ալ չենք գտներ զանոնք։ Հաւանականաբար անհարազատք են, կամ այլոց գրուածք իրեն ընծայուած։

Ի Պատճառաց գրոց Արիստոտելի՝ երեսուներկու իմաստասիրական առարկութեանց 'ի լատինէ 'ի հայ Թարգմանութիւնն ըրած է Ստեփանոս Լեհացի 'ի չորեքտասաներորդ դարու։ Բայց այս գրուածքն ալ Արիստոտելի ոչ հարազատութեամբ ընծայուածներու կարգէն է, և որոյ հեղինակ կը սեպուի յոմանց, նաև 'ի գրչագիրս մեր, Պրոկղ պատրիարք Կոստանդնուպոլսի։

Բաց յԱնյաղթէ՝ որ գլխաւոր և իմաստուն մեկնիչ է արիստոտելեան երկասիրութեանց, կը յիշուին 'ի մեր մատենագրութեան և այլք՝ նոյն ուսմամբ պարապողք՝ քիչ շատ հմտութեամբ և ոճով, յորս վերջին կը սեպուի « Մեկնութիւն Արիստոտելի, արարեալ 'ի խնդրոյ հօր Մխիթարայ », և որոյ անծանօթ հեղինակը երեքտասաներորդ դարու մէջ ապրած երևի։

Ուրիշ տեղ նշանակած ենք այն գրչագիրքը՝ յորոց եղած է Արիստոտելի գրուածոց տպագրութիւնը[1]։ Աւելցընենք հոս Սմբատայ Գունդստապլի

[1] ՄԱՏԵՆԱԳԻՏ. ՀԱՅԿԱԿԱՆ, յ'էջ 67-68։

# ԱՐԻՍՏՈՏԷԼ ՍՏԱԳԻՐԱՑԻ

## (ARISTOTE, LE PHILOSOPHE)

---

Այս մեծանուն և բազմահռչակ Ստագիրացի իմաստասիրին երկասիրութիւններէն՝ որ Պղատոնի ամենընտիր աշակերտն էր և մեծին Աղեքսանդրի դաստիարակ, հինգերորդ դարու թարգմանութեամբ, Դաւթի Անյաղթի ձեռքով. ունինք հետևեալ գրութիւնները։

**Ստորոգութիւնք Արիստոտելի**. (Κατηγορία). «Համանունք ասին՝ որոց անունքն միայն հասարակ, իսկ ըստ անուան՝ բան գոյացութեան այլ»։ Ի վերջ գրոցն կը կարդանք հետևեալ ծանօթութիւնը. «Կատարեցաւ տասն ստորոգութիւնսն ասացեալ յեռամեծէն Արիստոտելէ, որ ասի ըստ յունարէն ձայնի Կատիգորիաս»։

**Սկիզբն և նախադրութիւն գրոցն որ ասի ըստ յունաց Պերիարմենիաս և հայերէն Յաղագս մեկնութեան արտադրեալ 'ի մեծ իմաստնոյն Արիստոտելէ** (Περὶ Ερμηνιας). «Նախ արժան է դնել՝ զինչ է անունն, և զինչ է բայ»։ Ս. Ղազարու 1833 թուականնաւ տպագրին հրատարակողք 'ի ստորեւս իջեցն կը ծանուցանեն. «Առաջիկայս գործ այնչափ խրթնացեալ է 'ի նիւթական թարգմանութենէ, և 'ի խառնակ գրութենէ անգրագէտ գրչաց, մինչ զի չէր արժան տպագրութեամբ 'ի լոյս ընծայել. այլ զի մի կորիցէ յիշատակ հնութեան, յանձն առաք և զայս աշխատութիւն, բաղդատելով ըստ կարի և ընդ յոյն բնագրին. թէպէտև այնպէս անիմանալի մնան իմաստքն բազում ուրեք»։

vient de votre inépuisable Arménie, tout y est d'or, et tout sent l'âge d'or de l'apologétique.

Ոչ հաւասար վաւերականութիւն թուի ունենալ և հետեւեալն՝ որ Արիստեայ անուամբ հասած է առ մեզ.

« Արիստեայ փիլիսոփայի Աթենացւոյ 'ի Գոչումն աւազակին և 'ի խաչելոյն ապաքանութիւն. — Քանզի հրաշացուցանէ զիս գոչումն աւազակին, ընդ նմին և ձայն խաչելոյն։ Արդ մի զանց առներ զբանիւ խորհրդոյս, ով ներամիտ լսաւղ »։

Պատառիկ մ'ալ այս խորագրով. « Ի թղթէն Արիստիդեայ փիլիսոփայի որ առ Մենանդրոս փիլիսոփայ. — Զամենայն կիրս կրեալ Ճշմարիտն՝ հանդերձ մարմնովն, զոր հաճութեամբ Հօր և Հոգւոյն սրբոյ առեալ՝ միացոյց իւր մարմին՝ 'ի Կուսէ Եբրայեցւոյ սրբոյ Մարիամայ, անճառաբար և անյատակական միութեամբ »։ (Analecta Sacra Patrum Antinicœnorum; ex codicibus orientalibus collegit J. P. Paulinus Martinus. Parisiis, MDCCCLXXXIII. Փարիզեան ազգային Մատենադարան, թիւ հայ գրչ. 85)։ Հրատարակողն վրիպակաւ փոխան Մենանդրոսի կը դնէ Ամենայն. և հանդերձ բառին՝ հանդ նչ որ յայտնապէս սխալ ընթերցումն է։ Ուղղեցինք ըստ ձեռագրին։

Մեր մատենագրաց մէջ կը յիշատակէ զԱրիստիդէս՝ Շիրակացին Անանիա 'ի Ճառին որ 'ի Զատիկն Տեառն (յ'էջն 19 տպագրին որ 'ի Փեթրպուրկ). « Ցեա որոյ Արիստիդէս Մէրրի (?) փիլիսոփայ Աթենացի, ընկեր Կոդրատեայ. առաքելոյն ունկնդիր՝ արար զինն եւտասներեակն լուսնի Հռովմայեցւոց »։

ԱՐԻՍՏԷՈՍ (Aristée). Տես յ'էջ 63-65[1]։

[1] HODY H. Contra historiam Aristea de LXX Interpretibus dissertatio. Oxon. 1685. — VAN DALE A. Dissertatio super Aristea de LXX Interpretibus; cui ipsius prætensi Aristede textus greco-latinus subjungitur. Amsterd. 1705.

իսկ կայսեր Ներկայութեանն խօսած ըլլայ իր Ճառը 123ին. որ և այնչափ ազդեցութիւն գործեց ինքնակալին վրայ, որ հրամայեց քրիստոնէից դէմ յարուցուած հալածանքն դադրեցընել։ Այդ գրուածքը կորսուած է գրեթէ չորրորդ դարէն 'ի վեր։ Անոր միայն փոքրիկ մէկ հատուածը կ'երևնայ 'ի մեր մատենագրութեան պահուածը հետևեալ խորագրով.

« Ինքնակալի Ադրիանոսի կայսեր յԱրիստիդեայ փիլիսոփայէ Աթենացւոյ։ — Ես, ով Թագաւոր, խնամակալութեամբն Աստուծոյ ստեղծեալ՝ մտի յաշխարհս. և տեսեալ զերկինս և զերկիր և զծով, զարեգակն և զլուսին, և զաստեղս, և զամենայն արարածս, սքանչացեալ զարմացայ ընդ կազմած յաւիտենիս այսորիկ »։

Հինգ էջք բանից. և ընդհանրապէս վաւերականք սեպուած յեւրոպացի գիտնոց և հնախօսից[1]։

Բազմահմուտ ծիրանաւորն Փիդրա՝ գրուածքիս հրատարակութենէն անմիջապէս ետքը՝ հետևեալ տողերովս առ տպագրողս կը յայտնէր իր գոհութիւնն և զարմանք.

J'aurais aimé à être l'un des premiers à vous offrir mon hommage de reconnaissance, en vous exprimant mon agréable surprise et mon joyeux empressement à lire ce précieux et splendide opuscule de St. Aristide. C'est une découverte qui fait honneur à St. Lazare, et assurément la plus belle fleur qu'ait déposée sur la tombe récente de Monseigneur l'évêque d'Orleans.

Un bruit vague était venu jusqu'à moi de la découverte de l'Apologie d'Aristide. Je pensais au texte grec, et desirais vivement que le bruit se confirmât. Quelque court que soit ce qui nous

[1] ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ, էջ 66։

ղեցական պատմութեանն պահած է քանի մը հատուածք 'ի զրուցատրութենէն որ ընդ Ասկղեպիադեայ, որ եպիսկոպոս էր Նովատեանց 'ի Նիկիա։ Այս գրուածոյ մնացորդք կ'երևին հետևեալքն։ — Ծանօթ է Ատտիկոսի թուղթն առ Սահակ Պարթև հայրապետ մեր առ Խորենացւոյն. (Գ. ծէ)։

— Ատտիկոսի եպիսկոպոսի Կոստանդնուպոլսի. « Այսաւր Քրիստոս տէրն զմարդասիրութեանն ծնունդ ընկալաւ » ։ ...

— Նորին. « Եթէ զոք որոշեցէ միածնին մարդանալն, և կուսին յղանալն և կրից կցորդութիւնն և խաչն և չարչարանքն և մահն, ուսեալ գիտասցէ զայսոսիկ առիթ տիեզերականին փրկութեան » ։ ...

ԱՐԱՏՈՍ. — Ցաղագս միաւորութեան գնդին. (աստեղաբաշխական բանք առ Շիրակացւոյն)։

## ԱՐԻՍՏԻԴԷՍ ԱԹԵՆԱՑԻ

(ARISTIDE, LE PHILOSOPHE)

---

Առաջին 'ի Ջատագովս (Apologistes) կամ զոյգ և ուսումնակից առաջնոյն (Կուադրատոսի) Արիստիդէս իմաստասէր և ճարտասան Աթենացի՝ երկրորդ դարուն սկիզբն ճանչցաւ, ընդունեցաւ և պաշտպանեց զքրիստոնէութիւն, և սրբութեան անունն և կնիք ընկալաւ և պահեց յեկեղեցւոջ։ Երբ հակառակորդք քրիստոնական կրօնից կը գրգռէին զԱդրիանոս կայսր յատելութիւն և 'ի հալածանս, այս երկու նշանաւոր անձինք՝ Քրիստոսի սուրբ կրօնից և հետևողաց վրայ Ջատագովութիւն գրելով՝ կայսեր ներկայացուցին. և կ'աւանդեն թէ Արիստիդէս նոյն

դոյ և տարրոյ և ամսոյն. « Բնութիւն մարդոյ բաժանեալ է 'ի չորս առաջս. և զմի մի 'ի նոցանէ պարտ է գիտել » ։

— Վասն բնութեան մարդկան. « Բնութիւն է 'ի չորից նիւթոց բաղկացեալ. մարմին' 'ի հրոյ, 'ի շնչոյ, 'ի հողոյ, 'ի ջրոյ. ընդ որով դասին և այլ բնութիւնք » ։

— Յաղագս բնակրութեան. « Բնակրութիւնք են այսոքիկ. քաղց, ծարաւ, քուն, զարհուրումն, սրամտութիւն, ցնծութիւն, ցասումն » ։

— Յաղագս եկամտից. « Եկամուտք են այսոքիկ. որկորամոլականն, ախտականն, գիջականն, պճնասիրականն, ագահականն » ։

— Յաղագս բնութեան հոգւոյ. « Հոգին հուր է. և նման օդոյ պատկեր և ձև » ։

— Յաղագս բնակրութեան հոգւոյ. « Բնակրութիւնք հոգւոյ են ցանկականն, ցասմնականն որ է երեք. ցանկականն ձգէ 'ի բաղձանս փառաց. ցասմնականն զխրատ, խորհրդականն զճաշակս ընտրութեան առ բարի և առ չար » ։

— Յաղագս եկամտիցն. « Եկամուտք հոգւոյ են անափառութիւնք, հպարտութիւնք, ամպարհաւաճութիւնք, ամբարտաւանութիւնք, նախանձ » ։

**ԱՏՏԻԿՈՍ**. (Atticus, évêque de Constantinople). Ատտիկոս' 'ի Սեբաստիոյ փոքուն Հայոց, և հայրապետ Կոստանդնուպոլսի, չորրորդ դարուն մէջ ապրեցաւ, և եղաւ մի 'ի նշանաւոր հարց արեւելեան եկեղեցւոյ։ Գրած է Թղթեր առ Կիւրեղ Աղեքսանդրիոյ, առ Պետրոս և Եդեսիոս սարկաւագունս, առ Կալլիոպէ քահանայ Նիկիոյ, առ եկեղեցին յԱփրիկէ։ Գեննադիոս և Մարկելլինոս կ'աւանդեն թէ Յաղագս հաւատոց և կուսութեան, կոչուած գիրք մ'ալ շարագրած ըլլայ. Սոկրատ պատմագիրն ալ յԵկե-

# ԱՍԿՂԵՊԻԱԴԷՍ

(ASCLÉPIADE)

---

Ասկլեպիադ 'ի Պրուսայ Բիւթանիոյ, Հիպպոկրատէն ետքը առ Նախնիս ամենէն աւելի հռչականուն սեպուած բժշկաց մէջ, և անոնց իշխանն համարուած: Ծաղկեցաւ առ Եւերգետ Պտղոմեաւ, յաւուրս Պոմպէի մեծի: Ցառաջ ճարտարխօսութեան պարապեցաւ ու հռչակեցաւ, և յետոյ բժշկականութեան. ուստի և Բժիշկ ճարտարախօս կը կոչէ զնա Կիկերոն: Այլևայլ բժշկական երկասիրութիւններ յօրինած էր, որոնք մեծ յարգ ունէին առ հինս. և կ'աւանդէ Պլինիոս թէ Միհրդատ Պոնտացի, քեռայր մերոյն Տիգրանայ երկրորդի, իր գրուածները մասնաւոր խնամքով բերել տուած ըլլայ 'ի Հռովմայ:

Ասկլեպիադեայ անունով քանի մը մանր բժշկական արուեստի վերաբերեալ գրուածներ ունինք՝ թարգմանութեամբ հասեալ առ մեզ 'ի Նախնեաց: Անոնք մէջ բերած ատեննիս՝ չենք գիտեր կարծել կամ կարծեցընել թէ բիւթանացի բժշկին հարազատ երկք ըլլան, եւս առաւել որ իրեն ընծայուած երկասիրութեանց մէջ անոնց հետքը չգտանք[1]. այլ պարզապէս իբրու նշխարք ազգային մատենագրութեան, բանասիրաց հետաքննութեան արժանաւորք:

— Ասկղեպիադեայ վասն չորից բնութեանցն մար-

[1] Asclepiadis Bithyni Fragmenta. Digessit et curavit Christianus Gottlich Gumpert Med. Ac. Chir. Doct. Vinariæ, 1794. — Leclerc Daniel, Hist. med.

— « Իսկ զօրս յետ լուսանալոյն մաքուր երեւեալս ... դարձեալ վերստին երկնեմ մինչեւ կերպասցի Քրիստոս 'ի ձեզ » :

— « Այլ գիտէ մաքրել և զբորոտ ... յանցանաց լուծիչս և մեղաց քաւիչս յողջակէզ » :

— « Եւ փայտ եղեւնեայ և կարմիր մանեալ ... յ'իսկզբան մաքրութենէն անկելոցն, և յանկատարութիւն եկելոցն » :

— « Զենեալն հաւ և թացեալ յարեան նորա ... որպէս և ել իսկ արիւն և ջուր 'ի մարմնոյ նորա » :

— « Վասն էր և որ միանգամ լինի ծորումն յետ եւթն աւուր մաքրի ... յորժամ այսպիսի երեւումն լինի հոգւոյն աւկտակար » :

ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ (Doctrine des Apôtres). ԶԼԳ Թուականին գրուած Տօնացուցի մը մէջ՝ կը պատուիրի ընթեռնուլ այս անուանով գրուած մը 'ի տօնի Անանիայ առաքելոյն և երկոտասան վարդապետաց: Թէ մեր և թէ մեզի ծանօթ ուրիշ Մատենադարանաց ցուցակներու մէջ չենք հանդիպած այսպիսի գրութեան: Կ'ենթադրենք թէ նոյն ըլլայ համանուն երկասիրութեան հետ (Διδαχή τῶν δώδεκα Αποστολῶν) որ վերջերս գտնուելով 'ի Պրիէննիոս յոյն արքեպիսկոպոսէ, այնչափ հռչակ հանեց յուսումնական աշխարհի :

ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ ԳԻՐՔ (La Sainte Bible). Տես յ'էջ 57-245 մեր այս երկասիրութեան :

ընտրեսցի ... որպէս տեառատեսն միայն մերձեցաւ՝ որպէս փրկչին ասաց և բժշկեցաւ » ։

— « Այսոքիկ 'ի քահանայիցն բաշխեցան, զի բարձցեն զժողովրդեանն զմեղս ... յորում աւուր պատարագիցի կերիցի՝ և մի թողցուն 'ի նմանէ յայգ » ։

— « Ի կամաւորաց և յորոց ըստ ուխտին ... զյե- րեքաւրէ զյարութիւնն յայտնելով, զկամաւորու- թեամբ չարչարեցելոյն » ։

— « Քանզի աստուածայնոյ հրոյ երևեցելոյ ոչ էր պարտ նիւթական հուր մատուցանել ... քանզի այսորիկ էր աւրինակ եղեալն » ։

— « Տրտմել 'ի վերայ բարեկամաց ոչ տայ թոյլ պատճառ լինել քահանայականին ձեւի փոխադրու- թեան ... ոչ է արժան այժմ ասէ որպէս զայլ ոք սգալ քահանայից » ։

— « Քանզի որ 'ի մեռելոտի և 'ի պիղծ գործս մնաց մարդկային բնութիւն ... կորեսցէ զնա, ասէ, ընդ մէջ և զբաժին նորա ընդ անհաւատս դիցէ » ։

— « Զմածնուլն ընդ երկիր պիղծ յուցանէ. քան- զի յայսոսիկ 'ի հրաժարելեացն ասէ ... և ըստ այս- միկ է պիղծ և յափշտակական և բռնադատանաւք » ։

— « Զայս ենթադրէ զորս 'ի հեշտութիւնն են փո- խադրեալ ... զոր և Պաւղոս ասէ առնել զկամս մար- մնոյ և մտաց » ։

— « Անխառն գոլ ախորժեն աւրէնքն զայլա- ներսն ... և մի դառնալ ասէ անդրէն 'ի նովա- կեանսն որպէս արդարացեալս նմա » ։

— « Տպացուցանէ զորս 'ի սկզբան պարզմտու- թեամբ, իսկ յետ այնորիկ չարութեամբ մեղան- չեն » ։

— « Աւար և 'ի վերայ թեզանի և առիջոյ և ան- դերձի. որպիսի էր Սիմոն մոգ 'ի դառնութիւն մաղձի և 'ի կնճիռ անիրաւութեան գոլով » ։

նակի ... իսկ բաղարջ եփեալն և տապակեալ՝ վասն աննենգ լինելոյ »։

— « Փրկութեանն զոհք, զորս այլք խաղաղականք մկնեն, այսինքն գոհութեան 'ի վերայ բարութեանց և խաղաղութեանն առ 'ի յԱստուծոյ ... և ամենեքին անարատս որք մատչէինն հոտ անուշից եղանել Աստուծոյ »։

— « Տեսանել արժան է զի մեղս ասէ աստուածային գիր, և զակամայս և զանգիտութեամբն ... և արտաքոյ քաղաքին հանեալ լինէր մաքրեալ Աստուծոյ 'ի ձեռն ողջակիզին ըստ նմանութեան Քրիստոսի, և մարդիկ վասն ինքեանց »։

— « Վասն իշխանին անգիտութեան նոխազ զենաւ ուրանաւր ողջակէզքն ... և զուարակ է վասն քահանայապետին և վասն ժողովրդեանն ողջակիզեալ, այսպէս և Քրիստոս եկեղեցի կոչի »։

— « Եւ քաւութիւն և յաղագս գիտութեան մեղուցելոյն ... ըստ որում ոչ պիղծն՝ մերձեալ 'ի պիղծն պղծի »։

— « Զչնութիւն չարութեանն և զհեշտութիւն հրաժարեցուցանէ 'ի ձեռն աւրինակացն 'ի կատարել վարուցն ... այսպէս Պաւղոս զխոհեմագոյնն բան աղիւ համեմել ասէ »։

— « Իսկ եթէ զենմանցն ոչ իցէ բաւական որ մեղաւն, մատուսցէ նաշիհ ... և մնացեալք քահանային եղիցին իբրև զզոհ նաշւոյն »։

— « Այլով պատմուճանաւ 'ի ներքս 'ի խորանին հրամայէ սպասաւորել քահանային ... իսկ մեզ յանկութեամբ ընտանեգունիւ առ Աստուած մեծագոյնն արբեցութիւն, որպէս տեղւոյ հպեցելով յաւէտ »։

— « Կենդանախարուկել ախորժելով զորս յԱստուածն վերագրեալք և ոչ ցրտանալ »։

— « Իսկ մեզ ոչ արու և ոչ էգ 'ի Քրիստոս. բայց միայն արու որ զաւրութեամբն առաքինութեանն

կամքնն զառ 'ի յաւժարութենէ ընծայաբերու-թիւնն, պատուէր տալով ոչ զզոհելն 'ի հրամանէ մուծեալ... ։ Քանզի որ մեռանին հոգւոյն 'ի մար-մնոյ լուծմամբ՝ ոչ ինչ լինի ընտանեգոյն Աստուծոյ »։

— « Ողջակէզն զբոլորովին վերագրելն յԱս-տուած յայտնէ. վասն որոյ քահանայիցն 'ի նաշւոյ պատարագն ... այլ և մարդկութեամբ և մարմնա-պէս և հոգեւորաբար »։

— « Փոխանակ իւր մատուցանէ որպէս ունելոյն զիւրն գործս. քանզի այսորիկ է նշանակ դնել զձեռնն 'ի վերայ ... որոյ յորժամ զնմանութիւնն ունի մարդ՝ լինի և նա ընծայ Աստուծոյ »։

— « Դիտեալ լինի իւրաքանչիւր ուրուք յԱս-տուած վերադրեցելոյ անգամ 'ի բանէն, որ թա-փանցիկն լինի մինչև ցորոշումն շնչոյ և հոգւոյ և յաւդից և ուղղոց »։

— « Մաքրութիւն հետևելով մարդոյ բնաւորա-պէս աղտեղեաց ... որպէս տէրն լուայ զոտս աշա-կերտաց իւրոց ոչ կարաւտ եղեալ այսպիսւոյ՝ ըստ բարեպաշտութեան և ոչ ըստ այրեցելոյն մարմնոց, քանզի ժահահոտք են այնք »։

— « Եղին երկրագործականն է իւր Աստուծոյ, որ և զբանականս երկրագործս եղինս կոչէ ... դիցէ 'ի վերայ սեղանոյն, զի ողջակէզ զոհի է 'ի հոտ անուշից տեառն »։

— « Եւ զեղինն և զոչխարին զգլուխս և զճարպն դնել 'ի վերայ սեղանոյն պատուիրէ ... և դիցէ զայն քահանայն 'ի սեղանն 'ի վերայ փայտի և հրոյ. ող-ջակէզ զոհի է հոտ անուշից տեառն »։

— « Եւ ոչ զբացընկեցիան պարզաբար թոյլ տայ ընկենուլ. այլ 'ի տեղի յայտնի և որոշեալ ... և նշա-նակք են այսոքիկ ոչ վասն ընքեանց՝ այլ վասն այլոց եղելոց »։

— « Տպաւորեաց և նաշւով ըստ բազում աւրի-

տեայ եպիսկոպոսութեան տանէն (335), և ուր կը պարապէր յուսուցանել զքերականական գիտութիւն, ինչպէս որդին ալ զճարտարխօսութիւն։ Հօն հայր և որդի բարեկամացան Եպիփանիոս անուն հեթանոս սոփեստեսի մը հետ։ Թէոդոտոս եպիսկոպոս վախնալով որ այդ բարեկամութիւնը վտանգաւոր ըլլայ անոնց հաւատոց, արգիլեց զայն խստիւ. և իմանալով թէ հեթանոսական արարողութեան մը ներկայ գտնուեր են՝ յորում Եպիփանիոս 'ի պատիւ դիցն Դիոնիսեայ քերթուած մը կարդացեր է, հրապարակաւ յանդիմանեց զիրենք՝ ենթարկելով յապաշխարութիւն, զոր սիրով ընդունեցան և յօժարափոյթ կատարեցին։

Սուրբն Աթանաս 'ի դարձին յԵգիպտոս անցնելով ընդ Լաւոդիկէ, ծանօթացաւ և մտերմացաւ ընդ Ապողինարի. վասն զի թէպէտև Թէոդոտոս և իր յաջորդն Գէորգ եպիսկոպոսունք համամիտք էին արիոսեան մոլորութեան, բայց Ապողինար անբաժան մնաց յուղղափառ վարդապետութենէ, և եկեղեցի կը սպասէր տանել 'ի նմա իր քաջանուն ախոյեաններէն մէկն, որ արդէն նախամեծար սեպած էր առ սէր ճշմարտութեան մտադիւր յանձն առնուլ զհալածանս և զաքսոր, քան միաբանիլ ընդ հերձելոց։ Դժբաղդաբար ինչուան վերջը չեկրցաւ հաստատուն մնալ, մոլորելով 'ի խնդիրս մարդեղութեան և փրկագործութեան։

Իր այլևայլ գրուածքներէն, յորոց շատք կորսուած են, հատուածք ևեթ են հետևեալներն զորս հայկական մատենագրութիւնն հասուցած է առ մեզ, և կը քաղենք Ղեւոտական գրոց խմբագիր մեկնութենէ մը, որոյ վրայ պիտի խօսինք 'ի կարգին, նշանակելով միայն զսկզբնաւորութիւն և զվերջ հատուածոցն։

— « Աստուած մատուցանել իւր հրամայէ որոց

vrai, le texte original qui était incontestablement en français d'Antioche; dans la dernière moitié du XIII$^{me}$ siècle, le traduisa pour l'usage et l'utilité de son pays, un noble seigneur arménien, aussi valeureux guerrier qu'habile écrivain, l'illustre Sempad, le connetable du royaume d'Arménie, frère du roi Haïton ou Héthoum I$^{er}$, qui a laissé, indépendamment de la chronique à laquelle son nom est attaché, une compilation des anciennes coutumes arméniennes, quelques vers historiques et généalogiques transcrits de sa main en tête d'un livre des prières et une curieuse lettre adressée à son beau-frère Henri I$^{er}$, roi de Chypre, pendant son voyage à la Cour du Grand Khan de Tartarie ; lettre que Guillaume de Nangis a connue et inserée dans sa chronique [1] ».

## ԱՊՈՂԻՆԱՐ

(APOLLINAIRE)

---

*Համանուն հօր որդի և ծննդեամբն յԱղեքսանդրիոյ Եգիպտոսի։ Զարմանալի հանճարով օժտեալ, քիչ ատենուան մէջ նշանաւոր եղաւ 'ի ճարտարխօսութեան և յամենայն ուսմունս և յիմաստասիրութեան. ուսաւ նաև զհեբրայական լեզու։ Հայրը՝ ամուսնոյն մահուընէն ետքը անցեր էր 'ի վիճակ եկեղեցական. և քահանայ ձեռնադրուելով՝ հաստատեց իր բնակութիւնը 'ի Լաւոդիկէ, Թէոդո-*

[1] MAS-LATRIE, (*Bibliothèque de l'École des Chartes*, Année 1874, Sixième livraison). *Հայկական տպագրութեան վրայ տես 'ի* ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԵԱՆ *յէջ* 625։

des bourgeois et dans les marchands. Ce n'est pas tout. Non-seulement on savait qu'il y avait un usage de Tripoli et un usage d'Antioche, mais on pouvait presque affirmer qu'à une certaine époque ces coutumes avaient été fixées et mis en écrit. Le continuateur de Guillaume de Tyr parle dès 1210 des *Us de la Comtée de Tripoli;* en divers documents, et notamment dans une charte de 1265, on voit les parties alleguer la coutume d'Antioche, pour s'y référer ou s'y soustraire, et la désigner sous le titre fort clair *d'Assises d'un Prince d'Antioche*.

« Ces notions sont aujourd'hui amplement confirmées et completées, en ce qui concerne Antioche, par la découverte et la publication du précieux monument que vient de donner au public, avec une traduction et savants commentaires, le P. Léon Alischan, de la Congrégation Mékhitariste de St. Lazare de Venise.

« On lit, en effet, dans le préambule originale du document que les présentes Assises furent rédigées au temps du prince Boémond, par sire Pierre de Ravendel, sire Thomas, le Maréchal (d'Antioche), et d'autres savants et érudits seigneurs d'Antioche .

« Voilà un témoignage infinement précieux. Reste à déterminer le temps auquel vivaient ces seigneurs et quel est le Boémond prince d'Antioche dont ils étaient vassaux. Tous nous semble confirmer, à cet égard, l'opinion du savant P. Léon Alischan.

C'est ce monument, éminemment curieux et précieux dans ses modestes dimensions, qui vient d'être révélé et rendu fort heureusement à la science et à l'histoire. Nous n'en avons pas, il est

հրամայեաց ամենաբարի Թագաւորն Հայոց Լեւոն որդի 'ի Քրիստոս հանգուցեալ Թագաւորին Հայոց Աւշնի, վասն գրոցս դատաստանաց որ գրեցան առ 'ի յիշատակ մնալոյ յաւիտեան: Արդ աղաչեմ զամենեսեան որք աւգտիք 'ի սմանէ կամ աւրինակէք, յիշեցէք 'ի բարին Քրիստոս զամենաբարի Թագաւորն Հայոց զԼեւոն և 'ի Քրիստոս հանգուցեալ զծնաւղսն իւր զսուրբ արքայն Հայոց Աւշին և զՋապել Թագուհին իւր, և զամենայն արեան մերձաւորսն իւր, ընդ նմին և զգրաւղ և զոսկող այսմ գրոցս » ... :

Ուրիշ յետնագոյն յիշատակագիր մ'ալ կը յաւելու. «Ի մեծ Թուին Հայոց, 'ի դառն և 'ի նեղ ժամանակիս ՊԻԴ, յորում ամի առաւ քաղաքն Սիս. և ես նուաստ և սուտանուն եպիսկոպոս Զաքարէ պատահեցայ անդ. բայց զողբ և զողորմագին բանս զոր տեսես ակն իմ, ո՞ կարէ պատմել գրով. զի տեսի զակունս պայծառ և զարեգակունս, զաստեղս և զլուսինս, զի կային անկեալ ափի » :

Մաս-Լաթրի՝ գրուածքիս տպագրութեամբ հայ լեզուով և գաղղիարէն նոր Թարգմանութեամբ և հմուտ ծանօթութեամբք և յառաջաբանով հրատարակուելէն ետքը՝ հետևեալ տեղեկութիւնները կու տար այս հետաքննական գրուածին վրայ, զոր իւր գաղղիական լեզուովը մէջ կը բերենք:

... A Antioche, restée avec sa grande annexe de Tripoli près de deux cents ans au pouvoir des Francs, il est certain qu'il se forma simultanément, mais séparément, dans la comtée et dans la principauté, un ensemble d'usages particuliers qui, tout en restant fondés sur les usages généraux de Jérusalem, en differaient ou pouvaient en differer assez sensiblement sur quelques points, tant pour les choses féodales que pour les affaires

զերգանք ինչ վասն հարցանելոյ անդ զմեծամեծ դատաստանսն, և ես ուժգին տենչմամբ և բազում աշխատութեամբ գտի զսայ և հաւծեցայ 'ի փոխելն. և երբ փոխեցի ես՝ յուղարկեցի դարձեալ 'ի յԱնտաքոյ դարպասն, որ դէմընդդիմեցին և հաստատեցին իրենց ձեռնագրերովն և վկայութեամբն, ու ստոյգ է և ըղորդ բան բանի։ Եւ արդ որ կամի ճշմարտութեամբ ուղղել զԱնսիզս և զիրաւունքս, նայ այս է ըղորդ Անսիզն Անտաքոյ։ Եւ արդ ովք աւգտիք և շահիք սովաւ, ինձ Սմբատայ մեղաց թողութիւն հայցեցէք. և որ վզենկիք՝ դուք չէք յիմնէ վզենկել, այլ 'ի յիրաւանցն. ես անդատապարտ եմ. և եթէ ոք վատ առէ 'ի վզենկելոցն՝ նա Աստուծոյ իրաւանցն առէ և ոչ ինձ»։

Երկու մասն բաժնուած է. առաջինն «Անսիզ Պարոնաց և Լիճ Ճորտերոյ» մակագիրն կրելով. եօթն և տասն գլուխք։ Իսկ երկրորդն կը կոչուի «Անսիզ Քաղաքականաց» այսպիսի յաւելուածով. «Այս է Անսիզն Անտիոքայ քաղաքականացն, որ այնեն ըստ սովորութեան իւրեանց. և որպէս յառաջ խոստացաք վասն խնամութերոյն և մարիաճնոյն Անտիոքայ քաղաքականացն՝ մեք այժմ գրեմք, որ է այս». և կը խօսի ու կ'օրինադրէ 'ի քանիեմի գլուխս, յորոց առաջինն. «Յառաջ զմարիաճնին գրեմք և զխնամութեներն, զքաղաքականացն և զվաճըռկներոյն. վասն զի ամեն ցեղ աճմանց սկիզբն 'ի խնամութեանցն յարդարի և գայ յառաջ»։

Մեր ձեռքը գտնուած գրչագիրն՝ հետևեալ յիշատակարանն ունի «...Գրեցաւ անսիզս Անտաքոյ և Նամաւալս և կանոնք ընթանրական եկեղեցականաց և աշխարհայնոց և Փռանկացն և ամենայն ազգաց 'ի մի տեղ հաւաքեալ վասն իրաւանց և դատաստանաց, 'ի թուաբերութեանս Հայոց ՉՉ, ձեռամբ Սարգսի նըւաստ և անարժան քահանայի և ոսկաւղի։ Որ և

# ԱՍԻԶՔ ԱՆՏԻՈՔԱՅ

(LES ASSISES D'ANTIOCHE)

Միջին դարուց մէջ յօրինուած և 'ի կիրառութեան օրինաց գիրք մը, որուն 'ի գաղղիական բնագրէն 'ի հայ թարգմանութիւնն ըրաւ Սմբատ Գունդըստապլ՝ 'ի չորեքտասաներորդ դարու։ Սկզբնագիրն կորսուած է։ Թարգմանիչն 'ի կանխաբան տեղեկութեանն կ'ըսէ. «Աստանաւր սկիզբն առնեմք ողորմութեամբ և օգնականութեամբ մեծին Աստուծոյ 'ի ։իր արկանել զսովորութիւնքն և զԱնսիզն զպարոնութեան մայրաքաղաքին Անտիոքայ. զոր Լիճ ճորտերուն և զպարոնացն սովորութիւն և զիրաւներն՝ զոր ունին առ իրար. և են գլուխք ծէ 'ի ցանկ ածած։ Զորս խնդրեցի ես Սմբատ ծառայ Աստուծոյ և Գունդըստապլ Հայոց. և որդի Կոստանդեայ և եղբայր բարեպաշտ թագաւորին Հայոց Հեթմոյ և տէր Պապառաւնին, 'ի մեծազարմ իշխանաց իշխանէն և յարեան մերձաւորէն մերոյ 'ի Սիր Սիմուն յԱնտաքոյ Գունդըստապլէն։ Եւ ինքն ունէր զոր 'ի Բրինձ Պըմընդին ժամանակն Սիր Փէր Տ'Րաւնդելին և Սիր Թումաս Մարաջախան և այլ իմաստուն և գիտուն իշխանայքն Անտաքոյ էին գրով հաստատել։ Եւ հանդուցեալն 'ի Քրիստոս Սիր Մանսէլ Գունդըստապլն իւր հայրն էր առել 'ի նացմէ՝ և իր որդւոյն Սիր Սիմունին պարգեւել. և ինք վասն իմ սիրոյս և հաւասիս ինձ պարգեւեաց. և ես աշխատեցայ և փոխեցի 'ի հայ լեզուս։ Եւ արդ վասն զի սովորութեամբ այն Անսիզովն կու գնայր ազգս մեր և դարպասս Հայոց, և սղալումն ինչ կու գայր մեզ վասն տգիտութեան և վտանգութիւնք ոգոց, և պը-

— ** Անթիպատրոսի եպիսկոպոսի Բոստրացւոյ 'ի ծնունդ Փրկչին մերոյ տեառն Յիսուսի Քրիստոսի ասացեալ. « Եկի բերել ձեզ, ով սիրելիք, զտաւնիս խորհուրդ։ Մանուկ՝ բայց երիցագոյն քան զամենայն յաւիտեանս »։

— ** Երանելւոյն Անթիպատրոսի Բոստրացւոյ խօսք 'ի ծնունդն Քրիստոսի Աստուծոյ մերոյ. « Պարտապանութեանս իմոյ դիր, թագաւորական գիր, որ այսօր քարոզեցաւ ժողովրդեան, ով սիրելիք։ Եւ արդ այս է հետեւելին. նախ զգիրն ընթեռնուլ, և յայնժամ ապա արկանել զարծաթն »[1]։

— ** Ի մկրտութիւն Տեառն. « Հրաշափառ է տօնախմբութիւնս և առաւելագոյն սքանչումն տաւնիս. (այլ ձեռ. և առաւել հնչումն տօնի). վասն որոյ ելի 'ի բեմբս աւատարադոյնս ինչ ասել ձեզ այսաւր։

— ** Ի ծնունդ Փրկչին. « Եւ եղև, ասէ, յաւուրսն յայնոսիկ... Յառաջ քան զտերունական ծնունդն՝ տնաւրինութեամբ իմն եղև ազգին աշխարհագրութիւն. քանզի ոչ էր իրաւ՝ ընդ տիեզերաց աշխարհագրել՝ բարձողին զմեղս աշխարհի. ոչ էր պատշաճ ընդ ծառայս քաղաքագրել՝ ամենեցունց տեառն և գլխոյ »։

— ** Ի նոյն. « Արդ հետևաբար զծնունդն տերունական՝ առեանաբար աւետարանեաց աւետարանիչն, զոր կարեւոր է վերապատմել։ Եւ եղև ընդ աւուրսն ընդ այնոսիկ »։ (Նոյն ընդ վերնոյն՝ բաց 'ի սկզբնաւորութեան դոյզն տարբերութենէն)։

[1] Մեր Մատենադարանին ճառընտիր մը (ԻԹ) Հիպպողիտոյ Բոստրացւոյն կ'ընծայէ զայս ճառ։

**ԱՆՏՈՆ ՀՌՈՄԱՅԵՑԻ** *անապատական: — Վկայաբանութիւն սրբոց Ոսկեանց և Սուքիասանց. « Ես Անտոն անապատական 'ի Հռոմայ ցանկացայ վկայութեան և վարուց երանելեացս, գիտակ լինել յորոյ ձեռն մեծի Կոստանդիանոսի Թագաւորի յայտնեցան. և զիս արժանիս արար Աստուած գտանել և գրել 'ի մատենի զվկայութիւն և զվարս նոցա, և որպէս ծածկեալ կան սուրբ վկայքն մինչև 'ի ժամանակս յորում Աստուած յայտնեացէ » :*

## ԱՆԹԻՊԱՏՐՈՍ ԲՈՍՏՐԱՑԻ

### ( ANTIPATRE DE BOSTRES )

---

*Անթիպատրոս եպիսկոպոս Բոստրայ յԱրաբիա, Կոստանդեայ մահուընէն ետքը կառավարեց այդ աթոռը, և մին էր 'ի հարց ժողովոյն Քաղկեդոնի (451): Անդրէաս Կեսարացի (Կրետացի)՝ իր գրուածներէն հատուած մը յառաջ կը բերէ՝ Յայտնութեան մեկնութեան քսաներորդ երկրորդ Ճառին մէջ: Մեր մատենագրութիւնն հասուցած է առ մեզ՝ իր բազմաթիւ երկասիրութիւններէն որոնք ընդհանրապէս կորսուած են, կամ հատուածք եւեթ կը յիշատակուին առ Յովհաննու Դամասկացւոյ: Հետևեալ քանի մի Ճառերն՝ որ հասած են առ մեզ՝ չեն գտնուիր առ այլս*[1] :

[1] Lambécius parle d'une homélie d'Antipatre sur St. Jean-Baptiste, sur le silence de Zacharie, et sur la Salutation de la Sainte Vierge ; il ne nous en reste aucun monument. On en cite une sur la Théophanie ou baptême de Jésus-Christ ; et une autre sur la femme affligée d'une perte de sang ; on en retrouve un passage dans les Actes du second Concile de Nicée. (MIGNE, *Patrologie*).

ռամբ Նուաստ եպիսկոպոսի նորին մայրաքաղաքի Տարսոնի տառապելոյս Ներսիսի, շնորհիւ և ողորմութեամբ Քրիստոսի, որ է աւրհնեալ յաւիտեանս. ամէն * ։

* Յ'անթուական գրչագրէ. բայց գաղափարոյն կ'ըսէ. « Յընտիր օրինակէ. որոյ թէպէտ ոչ գտաւ թուական գրութեանն, սակայն մինչև 'ի ԿՁ գլուխ մեկնութեանն էր հնագիր. և 'ի հանգամանաց գրոյն գտոիմք գրեալ իբր յերկոտասաներորդ դարու. իսկ այլ գլուխք մինչև 'ի վաղճանն՝ թէպէտև բոլորագիր էին՝ բայց ոչ հնագիր » ։

Միւս այլ բոլորգիր հին և ընտիր գրչագրի մը մէջ կը կարդանք. « Վասն Թարգմանութեան պատճառի։ Թարգմանեցաւ աստուածային յայտնութեանս մեկնութիւն 'ի ՈԻԸ թուականութեանս Հայոց ։ Եւ սրբաբանեցաւ 'ի Նշանագրութենէն քերդողական արուեստի 'ի ձեռն իմոյ Նուաստութեան Ներսիսի ուսումնասիրի և Հայոց կաթուղիկոսի, և 'ի ձեռն Կոստանդեայ մետրապաւլտի։ Արդ աղաչեմ զձեզ քրիստոսասէր պաշտաւնեայք սրբոյ եկեղեցւոյ, յիշել զմեզ յաղաւթս ձեր մաքրափայլս։ Գրեսջիք և յիւրաքանչիւր աւրինակս զբանս զայս. և զձեզ տէր գրեսցէ 'ի գպրութիւն կենաց, և ինքն եղիցի աւրհնեալ 'ի յաւիտեանս. ամէն։ —

« Ի յոլովից եղեալ զանխուլ այս տառ մեկնութեանս Յովհաննու աստուածաբան աւետարանչիս։ Սակս որոյ մերոյին սրբազան վարդապետին Դաւթայ խնդրեալ զսա յորժամ գնաց առ տէր Գրիգոր կաթուղիկոսն Հայոց։ Եւ զառեալն աւրինակ 'ի նմանէ, տայ պարգեւ Տեառն Գրիգորիսի Հաղբատայ առաջնորդն։ Իսկ ես Նուաստ ոմն աշակերտ նորին, գրեցի ձմռայս անարհեստ գծիւ զվատթարահիւթս աւրինակ. սակս ձմալոյ առ տեառն իմում նիւթ բանին 'ի պէտս այլոց աւգտի կամ գաղափարի » ։

որ լեալ էր Աթանասի պատրիարքի նորին քաղաքի. և խնդրեալ աղաչանաւք 'ի բարեմիտ առնէն, առեալ փութացայ գրովքն 'ի հայրապետական աթոռն, առ տէրն իմ և կաթողիկոս սուրբ Գրիգորիս. զոր ծանուցեալ ուրախ եղև յոյժ. և հրամայեաց թարգմանել 'ի ձեռն մետրապոլտին Ցերապաւլսի Կոստանդեայ, որ անդ 'ի ներքոյ սորայ հայրապետին հովանոյ հանգչէր. և սկսեալ աւգնականութեամբն Աստուծոյ և սրբոյ տեառն, նա 'ի թարգմանել և ես 'ի գրել. վերընծայեցաք եկեղեցւոյ Հայաստանեաց ուսումնասէր մանկանց զայս սքանչելի և աստուածային յայտնութեանս մեկնութիւն։

« Աղաչեմ զընթերցողսդ և զիմաստութեան զսիրողսդ յիմանալ զխորս իմաստից Աստուծոյ քննութեամբ, զհայրապետն Հայոց զտէրն իմ զԳրիգոր, զբարեմիտն և զբարեսէրն, և զառիթն թարգմանութեանս և զհրամայօղ, մաղթեցէք 'ի Քրիստոսէ յառտիս խաղաղութեամբ պահել, և 'ի հանդերձելումն սրբոց իւրոց յերկնից արքայութեանն ժառանգակից ընդունել։ Այլ և զԿոստանդին մետրապաւլիդն որ թարգմանեաց, և զԲասիլ կրաւնաւոր որ զաւրինակըն ետ, Քրիստոս ողորմութեանն իւրոյ արժանացուսցէ աղաւթիւք ձեր։ Թարգմանեցաւ աստուածային յայտնութեանս մեկնութիւն 'ի թուիս Հայոց ՈԻԸ (= 1179) 'ի սուրբ և 'ի հայրապետական աթոռ որ կոչի Հոռոմկլա, շրջապատեալ յագենական աբերէն Եփրատայ, որ մատակարարէ բնակչաց զամենայն մարմնական պիտոյսն խնամաւքն Աստուծոյ, ընդ հովանեաւ աստուածընկալ նշանին Վանկոյ, և այլ սքանչելի սրբոցն որ հանգուցեալ են անդ 'ի փառս Աստուծոյ։ Իսկ սրբաբանեցաւ 'ի նշանագրութենէն քերթողական արուեստի 'ի յապահով անապատս 'ի սուրբ Գէորգ, 'ի մէջ լերինս Տաւրոսի, որ է 'ի գաւ Կիլիկիոյ և 'ի սկիզբն Պամփիւլեայ։ Զե-

'ի քննութիւնս իւր. ուստի և ընդունելի է այս ան-ռութիւնս զոր եդ 'ի վերայ Յայտնութեանս Յովհաննու եպիսկոպոսն Կեսարու 'ի կաթողիկէ եկեղեցի. մերոյ տիեզերական Ժողովոյս հաճութեամբ և հաւանութեամբ (վկայութեամբ.) Նա է ամենայն բան գրոցս այսոցիկ 'ի քսաներորդ չորրորդ ճառս բաժանեալ, և յեւթանասուն և երկու գլուխս ... Գլուխք Յայտնութեանս զոր ետես 'ի Պատմոս կղզին աւետարանիչն Յովհաննէս. (Ա-ՀԴ) [1]:

Լամբրոնացւոյն Յիշատակարանը. — Յիշատակ տառիս գտողի տեառն Ներսիսի գերահռչակ վարդապետի, զոր գտեալ 'ի մեծն Անտիոք գրեաց՝ զ'ի լուսաւորութիւն հոգւոց. « Ես Ներսէս նուաստ 'ի Քրիստոս և տարտամս յուսումնասիրաց, վերջին և նուազեալ ժամանակի ծնունդ, յընթեռնուլն զՅայտնութիւնն Յովհաննու՝ տագնապէի յանձն իմ առ 'ի յոչ գիտել զլուծումն բանից սքանչելեաց. և այսր անդր խուզելով՝ զմեկնութիւն նորին 'ի մերս բարբառ ոչ գտի: Յետ որոյ եհաս ինձ ընթանալ 'ի մեծն Անտիոք. և շրջելով յոր անդ վանորայք Հռոմոց և Փռանգաց, այս տենչումն բորբոքէր 'ի միտս իմ. ուստի և քըննեալ գտի 'ի գրեանս հաչակաւոր ուխտին սրբոյն Պաւղի 'ի քաղաքի անդ զմեկնութիւն Յայտնութեանս 'ի Լումպարտ (այլ ձ. Լունպր) բարբառ և 'ի նոյն գիր որով վարին Փռանկք, երկու մեկնչաց արարեալ. և փափաքելով թարգմանել՝ ոչ գտի զոք, որ յայն բարբառոյ 'ի հայս կարէր յեղաշրջել: Ապա ելեալ արտաքոյ քաղաքին 'ի սուրբ լեառն որ 'ի հիւսիսոյ կողմ անդր 'ի մի վանորէիցն Հռոմոց որում անուն էր Բեթիաս, առ ոմն արգելական միայնակեաց որում անուն է Բասիլ, կնքեալ գտի զցանկալին՝ 'ի հելլենացի բարբառ և 'ի գիր. ողղաբան և վայելուչ

[1] Փակագծի մէջ անուանները՝ են ըստ այլ գրչագրի:

վասն երկնային խորհրդոցն, և որ յերկինս եղև և լինիցի. որում անեղեկանան քննողքն աստուածային երկիւղիւն այսմ բանից։ Ո՛վ և թէ որքան անհաստատու-թիւն (հաւաստութիւն) սովաւ հաստանելի լինի աստուածասէր ընթերցողաց. զոր ոչ ամենայն իմաստութիւն աշխարհիս այսորիկ կարող է ցուցանել. 'ի սմա է պարունակեալ մարմնով Քրիստոսի անսա-րէնութեանն խորհուրդ. և յերկինս ընդ նմա (մարդկան) հանդստեանն և կրկին գալստեանն փրկութիւն։

« Կարեւոր է և զայս ասել. քանզի զինչ է որ բանադատէ զմեզ յայս հաւանութիւն, թէ ոչ գիտեաք զսա ճշմարտութեամբ աստուածային խորհրդոցն յայտնութիւն։ Նաեւ ինքն աստուածաբանս ձայնէ 'ի սկզբան բանիս թէ ոչ 'ի մարդկանէ, այլ 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի եղև առ նմա յայտնութիւնս, որում և Պաւղոս վկայէ զսա թէ Յիսուսիւ Քրիստոսիւ հաստատեցաւ ամենայն, եթէ երկնաւորք և եթէ երկրաւորքս. որ է գլուխ եկեղեցւոյ՝ անդրանիկ 'ի մեռելոց. զի եղիցի ինքն յամենայնի յառաջացեալ։ Արդ ինքն Յիսուս Քրիստոս հաստիչն ամենայնի հաւատամք եթէ յայտնեաց իւրոյ ծառային և սիրեցեալ աշակերտին զերկնային խորհուրդս, և զոր հանդերձեալ է լինել 'ի յերկինս։ Վասն այսորիկ և ես Նուաստ արքեպիսկոպոս (Կոստանդնուպաւլսի) Թէոփիլոս, և որ ընդ ինեւ սուրբ և աստուածային ժողովս ընդալաք զսա պատուով 'ի կաթուղիկէ եկեղեցի իբրև զարդարեւ Յիսուսի Քրիստոսի յայտնութիւն։ Նաև տեսութիւն մեկնութեանս զոր արարեալ է սմա Անդրէի արքեպիսկոպոսին Կեսարու՝ հաճոյ թուէր (= եցաւ) առեղերական (առաքելական) ժողովոյս. քանզի ոչ եթէ անձամբ անձին՝ այլ 'ի վերայ հարցն հիման է եդեալ զշինուածս բանից իւրոց. և զնոցա աստուածային հո-գւոյն ուղղութիւն առեալ է իւր առաջնորդ և վկայ

զոր պարտ է ոչ անտես առնել. այլ և ոչ սուտ է՝ որպէս 'ի չարաց ոմանց 'ի մարդկանէ համարեալ եղև. նա և սորա Որոտման որդւոյ Յովհաննու է: Զի թէ հաւատամք բանից Աթանասի Աղեքսանդրու մեծի հայրապետին որ թարգմանեաց զհին և զնոր կտակարանս. ապա նմա սոյն ընդունելի եղեւ, և 'ի բազում տեղիս զպատաշաճ վկայութիւն ած 'ի բանս իւր: Նաեւ մեծն Բասիլիոս 'ի բանն որ վասն Քրիստոսի՝ կոչուած եղև 'ի սմանէ առնուլ վկայութիւն. և նորին եղբայրն Գրիգոր Նիւսացի 'ի բանս զոր խօսեցաւ յայսմ քաղաքի 'ի ժողով եպիսկոպոսացն. այլ և աստուածայինն Գրիգոր Աստուածաբանն, 'ի բանն որ յաղագս Որդւոյ և յիւր հրաժարելն. նաև երանելին եպիսկոպոսն Պատարու Մեթոդիոս՝ 'ի բանն որ յաղագս Յարութեանն. և Կիւրեղ Աղեքսանդրու մեծի հայրապետն 'ի գիրս Գանձուն, 'ի բազում տեղիս պիտանի համարեցաւ զոր 'ի սմանէ վկայութիւնսն. և Հիպողիտոս Հռոմայեցւոց հայրապետն 'ի մեկնութիւն զոր արար Դանիելի: Բայց ոչ բազմացուցանեմ զբանս, թէպէտև ունիմ այլ վկայս հաւատարիս սոցա 'ի սրբոց հարցն՝ որք հաստատեցին զսոյն զայս յայտնութիւն Յովհաննու աւետարանչի: Զինչ պարտ է ասել և զերանելին Երինիոս (Իրինոս)՝ որ ինքն վկայէ, և զայլս որ նախ քան զինքն 'ի մէջ ածէ. այլ և երեքթշուառականն Որոգինէս՝ ոչ միայն ընդալաւ զսա, այլ և մեկնութիւնս եդ 'ի վերայ սորա:

« Արդ եթէ առ Յայտնութիւնս կարծեաւք գնամք զսուրբսն որ մաքրեցին զանձինս 'ի չար հերձուածոց և սմին վկայեցին՝ արհամարհեմք. զի թէ սա անընդունելի թուեսցի մեզ, անընդունելի լիցին և ընդունողքն սորա. զոր մի՛ լիցի զմտաւ ածել. այլ հաւատամք զսա Ճշմարտապէս Յոհաննու որդւոյն Զեբեդեայ՝ որոց հարցն մեր հետեւելով: Քանզի այս տուաւ նմա մարգարէութեան շնորհքն յԱստուծոյ

մէջ, և մանաւանդ 'ի յառաջաբանին [1]: Գրուածքը ընծայուած էր Մակարիոս անունով մէկու մը, և բաժնուած յեօթանասուն և երկու գլուխս և 'ի քառասնեչորս ճառս:

Վերջնոյս անունը կը կրէ նաև հայկական թարգմանութիւնն, և ունի հաւասար բաժանումն ճառից և գլխոց: Թարգմանիչն՝ է սուրբն Ներսէս Լամբրոնացի: Խորագիրն. «Ի Յայտնութիւն Յովհաննու սրբոյ հօր մերոյ Անդրէի երանելւոյ եպիսկոպոսի Կեսարու Կապադովկեցւոց համառօտ մեկնութիւն. ընդ նմին և Արեթասայ եպիսկոպոսի նմին քաղաքի»:

«Ի տիեզերական ժողովոյն կամս՝ որ եղեւ յաստուածապահ քաղաքն Կոստանդնուպաւլիս, Յայտնութիւնս Յովհաննու ընկալեալ եղեւ: Այլ և սորին քննութիւն որ եղև յեպիսկոպոսացն Կեսարու ձեռնարկ արար ընդունելութեան, 'ի սկիզբն գրոցս աստուածասէր արքեպիսկոպոսն Կոստանդնուպաւլսի Թէոտալիոս կամաւք հանուր ժողովոյն զայս բանք. Գիրքս այս Յայտնութեանս Յովհաննու պատուեցաւ 'ի մէնջ ընդ այլ գիրս առաքելականս զոր ունի եկեղեցի. քննութեամբ և կամաւք եղբարցս իմոց և եպիսկոպոսակցաց սրբոց. և է առանց պատճառի և ընդունելի. քանզի ունի զիմաստութիւնն Աստուծոյ, որ և աւգուտ մեծ է հայեցողացն 'ի սոյն մտաց աչաւք որպէս արդարև զարուչութիւն սուրբ Հոգւոյն,

[1] «Ոչ եթէ յանկոյս ճանապարհ եդաք զգարշապարս իմաստից ընթանալ, այլ զի բազումս նախ քան զմեզ աստուածազգեստից սուրբ հարցն ունիմք 'ի սոյն առաջնորդ. որք իւրաքանչիւր ժամանակս աշխարհին 'ի վերայ սորա քննութիւն, և գրով մեզ աւանդեցին. զորս կարեւոր համարեցաք 'ի միասին ժողովել՝ և տկարութեամբս իմով զթերին նոցա լրուցանել. զի ծանուցէ 'ի մէջ եկեղեցւոյ ըստ կարգի հաւաքումն տեսութեան Յայտնութեանս Յովհաննու, և 'ի շահ աւգտի ընթերցողաց երկիւղիւ»:

# ԱՆԴՐԷԱՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԿՐԵՏԱՑԻ

(ANDRÉ, ÉVÊQUE DE CRÈTE)

---

Դամասկացի էր Անդրէաս. ուր իր ուսմանց ընթացքն աւարտելէն ետքը՝ գնաց յԵրուսաղէմ, միանձնական կենաց պարապելով երկար ատեն. այս պատճառաւ երբեմն Երուսաղեմացի ալ կոչուած է։ ՅԵրուսաղեմէ 'ի Կոստանդնուպոլիս անցնելով, Թագաւորական քաղաքին մէջ մեծ համբաւ ստացաւ առաքինակրօն վարուքն և ճարտարխօսութեամբ։ Կրետէի եպիսկոպոսական աթոռը 'ի պարապութեան ըլլալով, Անդրէաս կոչեցաւ և բարձրացաւ յարքեպիսկոպոսութիւն վիճակին։ Սոյն աթոռը կը հովուէր Յուստինիանոս Բ կայսեր ժամանակ։

Անդրէի ընծայուած է Յայտնութեան գրոց մեկնութիւն մը. և որ իր անունը կը կրէ քանի մը հին գրչագրաց մէջ. բայց բազմագոյնք այս երկասիրութեան հեղինակ կը համարին զԱնդրէաս ոմն եպիսկոպոս Կեսարիոյ Կապադովկացւոց։ Կոմպեֆիս՝ հրատարակած է զայն յանուն Կրետացւոյն։

Կեսարիոյ եպիսկոպոսը Ը դարուն վերջերն և Թ սկիզբներն կ՚ապրէր։ Յայտնութեան գրոց մեկնութիւնը ոչ միայն բազմագոյնք 'ի գրչաց՝ այլ նաև Արեթաս, իր յաջորդաց մէկը յեպիսկոպոսաց Կեսարիոյ, իրեն կ՚ընծայէ. և յորմէ այս վերջինս մեծապէս օգտուած է իր համանուն գրուածքին մէջ։ Անդրէի երկասիրութիւնը հաւաքում կամ ծաղկաքաղ մ՚էր իրմէ առաջ սոյն նիւթին վրայ գտնուած և շարագրուածներուն. զոր յայտնապէս կ՚ակնարկէ հեղինակն ալ այլևայլ տեղուանք երկասիրութեանը

# ԱՆԱՍՏԱՍ ԿՐՕՆԱՒՈՐ

(ANASTASE L'ERMITE)

— Անաստասի կրօնաւորի 'ի Սինէական լերինն ասացեալ 'ի նախաննջեցեալ եղբարսն. (Discours sur les trépassés). « Զինչ այժմ այս, սիրելիք » ։ Ի մեր Մատենադարանի պահուած գրչագրի մը մէջ կը կարդանք հետեւեալ ծանօթութիւնն. « Թարգմանեցաւ ճառս կարճառօտ 'ի յունականէն 'ի մերս՝ 'ի ձեռն Սարգսի վարդապետին » ։

* Թարգմանչին անձն ու ժամանակ անծանօթ ։ Հայկական դպրութեանց պատմութիւն՝ այլեւայլ անձինք կը յիշատակէ այդ անունը կրող. թող բոլորովին անյայտ եղողներն ։

— Աղօթք Անաստասայ կրօնաւորի 'ի խորոց սրտէ. (Prières). « Գիտեմ, Տէր, զի աններելի պատուհաս » ։

— Բան պաղատանաց. « Դու, ամենակալ Տէր, կենդանաստեղծեցեր » ։

— Ի Սաղմոսն ԼԱ. 'ի կատարած Մի նախանձիր կանոնի. « Եւ քանզի հասեալ է ժամ, ահա ժամանեցաք »[1] ։

— (« Յայտարարութիւն տեառն Անաստասայ վարդապետի գրեալ 'ի խնդրոյ բարեպաշտ իշխանին Համազասպայ Կամսարականի Պահլաւունւոյ, որ կամէր գնալ յԵրուսաղէմ » ? ) ։

[1] Ի ցուցակի Մինէրվեան դպրատան 'ի Հռովմ ուրիշ հայերէն ձեռագրաց հետ յիշատակի. Anastasi Sinaitæ monachi montis Synai duæ Adversos Acephalos tria, tantum priora capita continet.

## ԱՄՓԻԼՈՔՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

(AMPHILOQUE, ÉVÊQUE)

— *Ամփիլոքոսի եպիսկոպոսի Յիկոնացւոյ. «Վասն զի նոյն ինքն Թագաւոր է և Աստուած. և զմահ ըստ անօրէնութեանն չարչարանաց ճաշակեալ, ընծայքն խորհրդոց են նշանակք» ... (Հատուած)։*

— *Նորին 'ի նոյնս. «Եթէ ոչ էր նորա ծնեալ մարմնապէս, և ոչ դու ծնանէիր հոգեպէս. եթէ ոչ էր նորա յանձն առեալ զծառայի կերպարանս, և ոչ դու զփառս զորդէգրութեանն շահէիր» ... (Հատուած)։*

— *Ամփիլոքոսի եպիսկոպոսի Իկոնիոյ ներբողեան յութերորդ օր ծննդեան Քրիստոսի. «Բազում են պարգեւք» (Հատուած)։*

## ԱՆԱՍՏԱՍ ԹԱԳԱՒՈՐ

(ANASTASE L'EMPEREUR)

*Անաստաս Թագաւորին կ'ընծայուի 'ի ճառընտիրս համառօտ գրուած մը այս սկզբնաւորութեամբ. «Քրիստոս չարչարեցաւ որպէս զմարդն»։ ՋԿԴ Թուականն կրող գրչագիր մ'ալ և ճառընտիրք Անաստասայ կու տան Թուղթ մը հետեւեալ խորագրով. «Թուղթ զոր արար Անաստաս Թագաւոր ընդդէմ ամենայն հերձուածողաց»։ Սկզբնաւորութիւնն է. «Մի է սահման հաւատոյ զոր ունիմք յ'ՅԺԸ սուրբ հարցն որք 'ի Նիկիա ժողովեցան»։*

## ԱՂԵՔՍԱՆԴՐՈՍ

(ALEXANDRE, MARTYROLOGISTE)

---

*Դրիչ ընդարձակ վկայաբանութեան «սրբոյն Փիլեկտիմոնի, և Թագաւորին Գորգիանոսի և կնոջ նորա Անատոլեայ և Թէոդոսեայ և այլոց սրբոց»․ յարոյ 'ի կատարածին․ «Գրեցի ես Աղեքսանդրոս, դիւանադպիր Գորգիանու Թագաւորի, ըստ բաղում փափագման լնուլ զկարօտութիւն իմ, անուամբ Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն՝ յաւիտեանս. ամէն»*[1] ։

## ԱՄԲՐՈՍԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԵԴԻՈԼԱՆՈՒ

(ST. AMBROISE, ÉVÊQUE DE MILAN)

---

— *Ամբրոսիոսի եպիսկոպոսի Մեդիոլանացւոց*․ — «*Եթէ ինձ ոչ հաւատան, հաւատասցեն առաքելոյ որ ասէ, եթէ յորժամ եկն լրումն ժամանակին, առաքեաց Աստուած զՈրդին իւր*» (*Հատուած*)։

— *Նորին*․ «*Լռեսցեն այսուհետև 'ի բանից նանիրհնդիրք․ զի արքայութիւնն Աստուծոյ՝ որպէս գրեալ է, ոչ հաւանութեամբ բանից մարդկայնոց է, այլ ցուցմամբ զօրութեան․ պահեսցուք զընթացումն աստուածութեանն և մարդոյ*» ... (*Հատուած*)։

[1] Վարք և վկայաբանութիւնք սրբոց, Հատ. Բ. 438-475։

ւառս իւն. զԴարանաղի, լեառն երկու՝ զԱռիւծ, զՄնձուր. զԵկեղեաց, զՄանանաղի, զԴերջան, զՍպեր, զՇաղգամ, զԿարին »։

— Մղոնաչափք աշխարհաց. «Ի Դըւնա մինչև 'ի Կարնոյ քաղաք Մ մողոն է. և Ճ մողոն մինչև ցփոսն՝ ուր սահման է Հայոց և Յունաց »։

— Յօգաչափութիւնք. « Իսկ 'ի մերմէ բնակութենէս մինչև 'ի գունդն արեգական՝ ասպարէզ ՎՋ բիւր Ժ. մինչև 'ի գունդն՝ ասպարէզք ՃՁԴ. բիւր Գ. ՄԷ»։

— Յաղագս չորից գետոցն որ 'ի դրախտէն ելանեն. « Անուն միոյն Փիսոն. նա է որ 'ի Հնդկացն և յԵթէովպացոցն Գանգէս գետ կոչի. իսկ Յոյնք՝ Հընդկաց գետ կոչեն. զի զամենայն երկիրն Եւիլատայ շրջապատէ »։

— Գետք և գնացք նոցա մեծք և անուանիք. «Նափթայ և Փարփայ՝ 'ի Դամասկոսէ ելանեն և անցանեն ընդ Բուժան քաղաք, և անգանին 'ի ծովն Արաբացւոց »։

— Յաղագս ծառոց որ յաշխարհի են և անուանց նոցա. « Ջիթենիք կանաչատերեւք, և կարմրաբեր խնձորիք, ծաղկեալ նռնենիք և պարարտ թեւեկնիք »։

— Յաղագս անուանց լերանց աշխարհի. « Լիբանան 'ի Փիւնիկացւոց ելանէ և ձգի մինչև 'ի Բուժան քաղաք. և վերջք նորա հասանի 'ի Տիւրոս և 'ի Սիդոն »։

ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ (Տես ԿԱԼԼԻՍԹԵՆԷՍ)

## ԱԳԱՊԻՏՈՍ

(AGAPET, DIACRE)

---

*Արտագրութիւն յորդորական գլխոցն Ագապիտոսի սարկաւագի սրբոյ և մեծի եկեղեցւոյն Աստուծոյ, առ աստուածային և բարեպաշտ թագաւորն մեր Յուստինիանոս.* (Adresse à l'empereur Justinien, en 72 chapitres, intitulée *Charta regia*). *Եօթանասուներկու համառօտ գլուխք կամ պարբերութիւնք, յորոց մին* (70դ). « *Անցից գնացից ծովաձեմ նաւու քաղաքի սուղավախճան կացութիւն առաջիկայ կենցաղոյս. որ զմեզ զնաւորդս իւր խաբէ, և փոքր փոքր քարշէ ընթացս, և առ խուրական վախճան զիւրաքանչիւրն ածէ։ Արդ եթէ այս այսպէս իցէ, զարտուղեսցուք 'ի շրջական իրացն աշխարհիս, և ձեպեալ ընթասցուք առ մնացականն յաւիտեանս յաւիտենից* »։

## ԱՂԵՔՍԱՆԴՐ

(ALEXANDRE)

---

*Գրչագրաց մէջ հանդիպեր ենք հետևեալ աշխարհագրական հատուածոց յանուն Աղեքսանդրի ուրումն։ Կը գտնենք իբրու հետաքննելի 'ի բանասիրաց, առանց կարող ըլլալու ըսել թէ ով է հեղինակը, որ ազգէ, և ինչ լեզուով գրուած։*

— *Երկրաչափութիւն Աղեքսանդրի և նշանք գաւառաց և տիեզերաց.* « *Արդ ունին Հայք բարձր գա-*

ւորութեան երանելիք և սրբասէրք եպիսկոպոսք » ։

— Միաւորութեան գիր որ առաւ բերել 'ի ձեռն երանելոյն Պերգմիոսի Ագապիտու 'ի բարերար արքայէ Զենոնէ, և յԱկակայ գլուխ եպիսկոպոսաց որ են 'ի Կոստանդնուպաւլիս առ երանելին Պետրոս գլուխ եպիսկոպոսաց և հայրապետ հաւատարիմ քաղաքին Աղեքսանդրացւոց։ — Ինքնակալ կայսր Զենոն բարեպաշտ և յաղթող և նշանաւոր մեծ և միշտ բարի, աւգոստոս աշխարհակալ որք յԵգիպտոս և յԱղեքսանդրիա և 'ի Լիբիու և 'ի Պենտապոլիս » ։

— Վեցերորդ թուղթ Ակակայ առ Պետրոս. — « Ակակ գլուխ եպիսկոպոսաց որ են 'ի Կոստանդնուպաւլիս ցՊետրոս հայր իմ և հայրապետ Աղեքսանդրացւոց։ Սուրբ և հաւատարիմ, քանզի Պետրոս կոչեցից զքեզ զքարոզիչդ ուղղափառութեան » ։

— Թուղթ ութերորդ Պետրոսի առ Ակակ. — « Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց առ Ակակ սիրելի իմ և գլուխ եպիսկոպոսաց որ են 'ի Կոստանդնուպաւլիս։ Ի տասն և ինն ամսոյն որ կոչի փիքոն, և ըստ հռոմայեցոց համարոյ 'ի տասն և չորք ամսոյն մայիս ... ասորերէն իյար, և ըստ հայերէն բարբառոյ կոչի մարգաց ամիս » ։

— Թուղթ իններորդ Պետրոսի առ Ակակ. — « Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց առ Ակակ պաշտաւնակից իմ և ընկերակից, և հայրապետ եպիսկոպոսաց որ են 'ի Կոստանդնուպաւլիս։ « Ահա արժանի եղեր, սուրբ հայր իմ, տեսանել զփառս տեառն մերոյ, և լսել զբանս յԱստուծոյ մարմնացելոյ » ։

տրամութիւն 'ի վերայ տրամութեան յաւելին յանձըն իմ»։

— Թուղթ երկրորդ Ակակայ առ Պետրոս. — « ՅԱկակայ առ Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց։ Ես այժմ ինձ արդար »։

— Թուղթ չորրորդ Պետրոսի հայրապետի առ Ակակ. — « Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց։ Վաեա, սիրելի. որչափ աշխատ առնես զանձն իմ »։

— Թուղթ երրորդ յԱկակայ առ Պետրոս. — « ՅԱկակայ առ Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց։ Մի ժամ ասացից և այլ ոչ յաւելից խօսել»։

— Թուղթ հինգերորդ Պետրոսի առ Ակակ. — « Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց առ երանելի Ակակ հայրապետ որ 'ի Կոստանդինուպաւլիս։ Նեղութիւն է ինձ յամենայն կողմանց և որոգայթք մահու սփռեցան 'ի վերայ իմ »։

— Ձեռնարկ զոր արար 'ի Թղթին Ակակիոս հայրապետ որ 'ի Կոստանդնուպաւլիս. — « Կարդացի և ընդունիմ զամենայն որ ինչ յառաջագոյն գրեալ էր, և յայսմ Թղթի զոր գրեաց ձեռն քո, Պետրոս հայր և գլուխ եպիսկոպոսաց »։

— Թուղթ հինգերորդ Ակակայ առ Պետրոս. — « Ակակ հայրապետ որ է 'ի Կոստանդնուպաւլիս եպիսկոպոս՝ ցՊետրոս հայր իմ և հայրապետ Աղեքսանդրացւոց »։

— Թուղթ եօթներորդ Պետրոսի առ Ակակ. — « Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց առ Ակակ գլուխ եպիսկոպոսաց որ են 'ի Կոստանդնուպաւլիս։ Զթուղթըն իմ զոր ետուր բերել ցիս, զոր իմով ձեռնարկութեամբ գրեալ էր »։

— Թուղթ վեցերորդ Ակակայ առ Պետրոս. — « Ակակ հայրապետ՝ եպիսկոպոսաց որ են 'ի Կոստանդնուպաւլիս, ցՊետրոս հայր իմ և հայրապետ Աղեքսանդրացւոց։ Յորժամ եկին յայս քաղաք Թադա-

նացին ամբարշտութեանն Նեստորի և Դիոսկորի, և ոչ հեղգացան գովիչք լինել ամպարշտութեան նոցա, և մինչ 'ի սահմանս ձեր փութացան առաքել զԹունաւոր և զապականիչ վարդապետութիւնն » :

Այս Թղթակցութեանց նպատակն ու վախճանն էր զգուշացուցանել զՀայս 'ի մոլորութենէ Նեստորի :

## ԱԿԱԿ ԵՒ ՊԵՏՐՈՍ ՊԱՏՐԻԱՐՔՈՒՆՔ

### (ԹՂԹԱԿՑՈՒԹԻՒՆՔ)

### (ACACE ET PIERRE PATRIARCHES)

---

Պետրոսի Թուղթ առաջին առ Ակակ. (թերի 'ի սկզբան) :

— Երկրորդ Թուղթ Պետրոսի առ Ակակ. «Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց առ Ակակ : — Յութսուն աւուրց կատարելոց եղանելոյ աստի Յուլիանէ սարկաւագին իմոյ » :

— Թուղթ առաջին Ակակայ առ Պետրոս պատրիարք. — « Իմաստունք բժշկաց զանգամս ապականեալս 'ի ձեռն երկաթոյ սրոյ սովորեն հատանել » [1] :

— Երրորդ Թուղթ Պետրոսի առ Ակակ հայրապետ. « Պետրոս հայրապետ Աղեքսանդրացւոց առ Ակակ : Զգրեալսդ որ 'ի ձէնջ առ մեզ ետուր բերել,

[1] Առ. Մխիթէ. Il nous reste de lui (d'Acace) deux lettres, l'une en grec, adressée à Pierre le Foulon, et l'autre en latin, au pape Simplicius, sur l'état de l'Église d'Aléxandrie. Այս ծանօթութենէն կը հասկցուի որ մեր յիշատակած Թղթոց յունական օրինակները կորսուած են, և միայն Հայկական Թարգմանութիւնը մնացած : ՁԿԴ Թուականին գաղափարուած օրինակէ մը քաղեցինք. Թարգմանութեան ժամանակն հաւանականաբար եօթներորդ դարուն կը պատկանի :

թարգմանեալ է 'ի յետին ժամանակս Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի. Կատարեցաւ հրամայեալս 'ի քէն, ով վեհ և երիցս երանեալ րաբունապետ, անուանակից և շնորհընկալ մեծի ամբորդւոյն » ։

## ԱԿԱԿ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԵԼԻՏԻՆՈՅ

(ACACE ÉVÊQUE DE MÉLITINE)

---

** Ակակայ եպիսկոպոսի Մելիտինացւոց թուղթ առ սուրբն Սահակ Հայոց հայրապետ. (Lettre à St. Sahagh, le Parthe, patriarche des Arméniens). « Որ ամենայնիւ աստուածասէրդ ես և լի սրբութեամբ՝ տէր իմ և գործակից, ըստ նմանութեան միոյ մարմնոյ յաւգապատեալս » ։ (Ի մատենէ Թղթոց գրչագրելոյ 'ի Հռոմկլայ 'ի թուին Հայոց ՁԽԸ) ։

Սուրբն Սահակ գրեց առ Ակակ հայրապետ այս թղթոյն պատասխանը, « Պատասխանի Տեառն Սահակայ » այս սկզբնաւորութեամբ. « Առ ճշմարիտ և աստուածասէր տէր մեր սուրբ եպիսկոպոս Ակակ 'ի Սահակայ 'ի տէր ողջոյն ։ Ծառագայթք մշտնջենաւոր յաւիտենական լուսոյդ՝ որ առ մեր տկարութիւնս երևեցաւ 'ի ձեր լուսաբեր սրբութենէդ, յոյժ 'ի ծագելն իւրեանց զաւրացուցին զմեր տկարութիւն » ։

Ակակ հայրապետ այս թուղթն ընդունելէն ետքը նամակ մ'ալ ուղղեց առ ազգն Հայոց. ** « Թուղթ յԱկակայ եպիսկոպոսէ 'ի Հայս. (Lettre d'Acace, aux Arméniens). « Պատուական և առաքինի նախարարք Հայոց՝ սիրելիք և ծառայք Քրիստոսի, մեծամեծք և փոքունք, յԱկակայ եպիսկոպոսէ Մելիտինէ 'ի կըրտսեր ծառայէ՝ խոնարհութեամբ և սիրով ողջոյն ։ Վասն դիմադարձացն ճշմարտութեան որ զկնի գը-

— ** Երանելւոյն Աթանասի եպիսկոպոսի յերգս Սաղմոսաց. « Արժան է մեզ գիտել զայս, եթէ ընտ դէր երգովք և քաղցր ձայնիւք ասին սաղմոսք։ Ոմանք ընդ վայր ասացին, եթէ գեղեցկաձայնութիւն, լսելեացն և մտացն դիւր թուի. որ չէ այս »։

— Աթանասի Աղեքսանդրու հայրապետի պատմութիւն վարուց 'ի Տիմոթեայ յաշակերտէ նորա և յաթոռակցէ։ (Տես Տիմոթէոս)։

* Գրչագիր մը՝ հետևեալ տեղեկութիւնը կուտայ վասն ժամանակի հայկական թարգմանութեան ճառից սրբոյն Աթանասի.

1.° Ի Հոգին սուրբ, ճառք կրկին, 2.° Ընդդէմ Արիանոսաց, 3.° Ի սուրբ Երրորդութիւն և 'ի մարմնաւորութիւն Բանին, 4.° Առ Եպիկտեմոն եպիսկոպոս Կորնթացւոց, 5.° Առ Փիլագերոս եպիսկոպոս, 6.° Առ Լիբէոս եպիսկոպոս Հռովմայ. 7.° Յաղագս սրբոյ Երրորդութեան, 8.° Ընդդէմ ամենայն հերձուածոց, 9.° Յաղագս Հոգւոյն սրբոյ հայհոյողաց. 10.° Ընդդիմադրութիւն ընդ Արիոսի՝ յաղագս աստուածութեան բանին, 11.° Դարձեալ առ նոյն յաղագս սրբոյ Հոգւոյն, 11.° Ընդդէմ Զուքէոսի Հրէի յաղագս աստուածութեան Որդւոյ, 12.° Յաղագս խորհրդածութեան մկրտելոց, 13.° Յաղագս կուսութեան, 14.° Ի չարչարանսն և ի յարութիւն տեառն, 15.° Աղօթք. — և կը յաւելու. « Աւարտ եօթնևտասըն ճառից սրբոյն Աթանասի՝ թարգմանեալ 'ի յառաջին թարգմանչացն մերոց 'ի յունէ 'ի հայ բարբառ »։

1.° Յաղագս մարմնաւորութեան Աստուծոյ Բանին, 2.° Առ Յովբիանոս թագաւոր յաղագս հաւատոյ, 3.° Ընդդէմ Պաւղոսի Սամոստացւոյ թէ մի է աստուած, 4.° Յաղագս թէ անձն իմ խռովեալ է, 5.° Յաղագս յայտնութեան տեառն։

« Աւարտ հնգեքին ճառիցն սրբոյն Աթանասի, զոր

— Վարք երանելւոյն Անտոնի միայնակեցի Եգիպտացւոյ և աստուածասիրի. զոր արարեալ է Աթանասի եպիսկոպոսի. (Βιος καὶ πολιτεια τοῦ ὁσιοῦ πατρος ἡμῶν Ἀντωνιου). « Բարիոք է նախանձ բերել »:

* ՊՃԲ Թուին գրչագրեալ օրինակի մը մէջ հետևեալ հետաքննական ծանօթութեան կը հանդիպինք. « Թարգմանեցաւ գիրս այս 'ի սուրբ քաղաքին յԵրուսաղէմ յամի Ներոնի Ծերունի գալստեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. յամին յորում հանգեաւ քաջընթաց երանելին Մաշտոց »: (Երևակ ամսագիր, 1858. Բ վերջամասեայ, 43): Ընթերցուածք ընտրելագոյն են քան զտպագրին Վենետկոյ, ինչպէս յայտնի են յայլևայլ օրինակաց՝ զորս մէջ կը բերէ հրատարակողն. մենք մէկը միայն յիշենք: Մեր տպագիրն յ'էջն 46 (Հարանց վարք, հատ. Ա.) այսպէս ունի. « Գիտացաք զի կայսերիկրատակ ջրուցն զայս յայտ արարին Անտոնեայ ». իսկ ձեռագիրս կ'ըսէ. « գիտացաք զի այն էին կայսերաքն սատահակ ջրուցն. և զայս յառաջագոյն յայտ արարին Անտոնեայ »:

— ** Վկայութիւնք սուրբ և փառաւորեալ վըկայիցն և սքանչելագործ բժշկացն Կիւրակոսի և Յովհաննիսի, զոր գրեալ է սրբոյն Աթանասի Աղեքսանդրու հայրապետի:

— ** Վարք Մինասայ, Երմոգինեայ և Գրաքոսի. « Աթանասի եպիսկոպոսի Աղեքսանդրացւոց է արարեալ զպատմութիւնս »:

— Յաղագս Մելքիսեդեկի. Ιστορια εἰς τὸν Μελχισεδεκ. « Թագաւորին Սաղիմ ըստ անուան քաղաքին »:

— ** Յառաջաբան Դաւթի մեկնութեան արարեալ Աթանասի եպիսկոպոսապետի Աղեկսանդրացւոյ. « Զամենայն երգոց սաղմոսարանայն Դաւթի զներունական միտսն իւր գտեալ, և այլոց յայտնի կացուցեալ »:

— Կանոնք Աթանասի գլուխք ութսունեւեօթն. «Եթէ մանուկն երախայ կատարեալ իցէ և գիպիցի թէ յորժամ պատարագն մատուցանիցի»:

* Վահան Վ. Բաստամեանց ութսուն և ութ կը գնէ Աթանասի անունը կրող կանոնաց թիւը 'ի կանոնագիրս. (Յառաջաբանի Դատաստանագրոց Մխիթարայ Գոշի, տպ. յԷջմիածին):

— Պատմութիւն սքանչելեաց պատկերին Քրիստոսի խոցելոյ 'ի Հրէից 'ի Բիւրիտոն, այն որ ընթերցեալ եղեւ յերկրորդ ժողովն Նիկիոյ՝ 'ի գրուածոցն Աթանասի. Λόγος εἰς τὸ Θαυμα τὸ γεγονός εν Βηρυτῳ). «Ի սահմանս Տիւրոսի և Սիդոնի 'ի քաղաքն Բիւրիտոն էին բազում Հրեայք բնակեալ խառն ընդ քրիստոնեայս: Եւ էր մի ոմն 'ի Հրէիցն որ խընդրէր տուն վարձու»:

* Ճառընտիրն Բ 'ի մերում Մատենադարանի մակագրէ. «Վասն սքանչելեաց պատկերին՝ 'ի պատմութենէ սրբոյն Աթանասի Աղեքսանդրացւոյ»: Ուրիշ գրչագիր մ'ալ կ'ընծայէ այս գրուածքը սրբոյն Թէոփիլոսի Աղեքսանդրու հայրապետի: — Հայկականս մեծ տարբերութիւն ունի յոյն սկզբնագրէն: (Յոյն և լատին. տպ. Պատուայի, 1777, Հատ. Բ.):

— Տեսիլ սրբոյն Աթանասի Աղեքսանդրիոյ հայրապետի, զոր եսես 'ի սուրբ խորհրդն եկեղեցւոյն Աստուծոյ. «Ամենեցունյն Աստուած որ ըսքանչելի երեւեցոյց մարգարէից իւրոց սրբոց»:

— Սրբոց հարց Աթանասի, Կիւրղի, Գրիգորի Սքանչելագործի, Գրիգորի Նազիանզու, Յուլիանու եպիսկոպոսապետի Հռովմայ և այլոց վկայութիւնք վասն ուղղափառ հաւատոյ: (Մատենադարան Էջմիածնի թիւ 1945). «Քառածալ երկաթագիր գրեալ 'ի մագաղաթի. չունի գլխատակարան, ըսկիզբն և վերջն թերի» ըստ ծանուցանելոյ ցանկին:

յաղագս Աստուծոյ հարցմունք վայելուչք. և պատասխանիք Կիւրղի հայրապետին Երուսաղեմայ յաղագս հանձարաց: — Հարցումն թէ, ուստի յայտ է ՚ի ժամ մահուն ոչ մեռանի հոգին ընդ մարմինն »:

* Ի յոյն և լատին հաւաքման գործոց սրբոյն Աթանասի (Հատ. Բ. 220) գրուածքիս խորագիրն է. « Հարցմունք Աթանասի առ իշխանն Անտիոքոս »: Մեր թարգմանութիւնն՝ կամ ձեռագրնիս համառօտ օրինակք կը սկսին ՚ի վեշտասաներորդ հարցմանէ: — Ուրիշ գրչագիր մ'ալ այսպէս ունի. « Երանելւոյն Աթանասի ասացեալ հարցմունք վայելուչք և պատասխանիք հոգեշահք « Քանզի ոչ ոք յաշխարհիս յայսմիկ եկեալ ոք ՚ի մեռելոց պատմեաց վասն ոգւոց մարդկան բան ինչ ուսուցանել. վասն այդորիկ հարցանեմք զսրբութիւնդ քո, ով երանելի հայր »:

— Պատարագամատոյց Աստուծով՝ զոր արարեալ է սրբոյ հաւրն մերոյ Աթանասիու՝ պատրիարքին Աղեքսանդրիու:

— Դաւանութիւն ուղղափառ հաւատոյ ասացեալ մեծին Աթանասի գերագանց վարդապետի Աղեքսանդրու. « Ամենայն ոք որ կամի փրկիլ, նախ քան զամենայն պիտոյ է զի ունիցի ուղղափառ հաւատ, զոր եթէ ոչ իւրաքանչիւր ոք հաւատարմաբար և հաստատապէս հաւատասցէ՝ ոչ կարասցէ փրկիլ. իսկ ուղղափառ հաւատ այս է, զի մի Աստուած Երրորդութիւն և զԵրրորդութիւն ՚ի միութեան պատուեսցուք. բայց զանձինս մի շփոթեսցուք, և զգոյութիւն մի որոշեսցուք »:

— Աթանասի ասացեալ Արտադրութիւն առաքելական յաղագս աստուածայնոյն մարմնաւորութեան Աստուծոյ բանի. « Խոստովանիմք զՈրդին Աստուծոյ նախ քան զյաւիտեանս մշանջենաւորապէս ՚ի Հաւրէ ծնեալ. իսկ ՚ի յետնում յաւիտենին վասն մերոյ փրկութեան ՚ի Մարիամայ կուսէ ծնեալ ըստ մարմնոյ »:

— Առ Եպիկտետոն (ոմանք 'ի գրչ. Եպիփանեաոն) եպիսկոպոս Կորնթացւոց որ ապականեալ էր 'ի հերետիկոսաց, յորմէ զգուշացոյց զԱնտիոքացիս սուրբն Կիւրեղ. (Πρός Επίκτητον ἐπισκοπον Κορινθοῦ)։ « Ես այսպէս ածէի զմտաւ՝ թէ ամենայն ընդունայնաբանութիւնք՝ ուր և իցեն »։

* Գրչագիր սրբոյ Լամբրոնեցւոյն, 'ի վերջ այս ճառի կը յաւելու. « Ես տրուպ վարդապետ Ներսէս աստանաւր զողբս 'ի բերան առեալ լամ աղիողորմ թէ ընդէր զայսպիսի առհաւատչեայ հարցն ունելով, եկեղեցիք քրիստոնէից պատառեալք՝ դեռ ես անզեղջք են 'ի նոյն »։

— Առ Յովբիանոս թագաւոր վասն հաւատոյ. (Πρός τόν εὐσεβέσατον βασιλέα Ἰωβιανόν). « Տէրն մեր Յիսուս Քրիստոս 'ի վերայ մկրտութեանն աւրինագրելով զստոյգ և զճախարակեալ հաւատոյ սահման տրար ասելովքն սրբոց առաքելոց. Գնացէք աշակերտեցէք զամենայն հեթանոսս »։ (Ազգային Մատենադարան 'ի Փարիզ, թիւ գրչ. 94. ըստ հին դասակարգ.)։

— Առ Արիոս որ ասէր թէ՝ կրսեր է Որդի քան զՀայր, արարած և ոչ գէտ աւուրն կատարածի. « Ով աստուածամարտդ Արիոս, զի՞ յամառեալ ես 'ի վերայ սատանայակիր խորհրդոցդ, կրսեր կարծելով զՈրդի քան զՀայր և ոչ գէտ աւուրն կատարածի »։ Հատուած 'ի չորս գրոց ընդդէմ Արիոսի։

— Հարցմունք վայելուչք և պիտանիք՝ Կիւրղի Երուսաղեմայ հայրապետի, յաղագս մակացութեան և հանճարոյ հարցմունք. « Հետևումն համարիմ ընդ այս բանս. և ապա այնուհետև 'ի մէջ գալ. քանզի բազմաց խնդրելի եղև վասն այսմ իրի քննութեանց և երկուանալ երկպառակութեամբ »։

Ի Մատենադարանին Էջմիածնի (թիւ 888) այս խորագրով. « Երանելւոյն Աթանասի եպիսկոպոսին

«Զխաչն մեր կենարար ուղիղ երգով աւրհնեսցուք. և զխաչեալն Քրիստոս ճշմարիտ բարեպաշտութեամբ փառաբանեսցուք՝ որ կանգնեալ բարձրացաւ 'ի սուրբ Գողգոթա »:

— ** Ի վերացումն Տեառն. (Sur l'Ascension de N.-S.). «Որ էրն 'ի սկզբանէ յառաջ քան զյաւիտեանս Աստուած բան »:

— ** Ներբողեան 'ի սուրբ Աստուածածինն և 'ի միշտ կոյսն Մարիամ. (Panégyrique sur la très-sainte Vierge Marie). «Աստանաւր զմտաւ ածելով իմ զխորհուրդն մեծ. զխորհուրդ մարդանալոյ Բանին Աստուծոյ, և զնախախնամութիւն բարեգթութեանն »:

— ** Ներբողեան 'ի սուրբ Աստուածածինն և 'ի միշտ կոյսն Մարիամ. (Sur le même sujet). «Անճառ է խորհուրդ որ 'ի ձեռն ամենասուրբ Կուսին երևեցաւ ազգի մարդկան. անքննելի, անհաս, անհետազաւտելի մարդկայնոցս, որ ոչ հրեշտակաց է ասել »:

— ** Ներբողեան 'ի սուրբն Ստեփանոս յառաջսարկաւագ և նախավկայն Քրիստոսի. (Panégyrique sur St. Etienne, le protodiacre et protomartyr). «Պայծառ և նորահրաշ է խորհուրդ տաւնիս, ով եղբարք իմ սիրելիք. և ըստ արփիափայլ ճառագայթից արեգական՝ սիրալի գործէ զիմանալի աչս տեսողացն »:

— ** Թուղթ Աթանասի եպիսկոպոսի առ Աւգոստինէ յԱփրիկայ, յաղագս աղանդոյն չընդունողաց զթողութիւն մեղաց հանգուցելոցն զկնի վախճանին. (Lettre de l'évêque Athanase à Augustin en Afrique). «Ես այսպէս կարծէի թէ աղանդն Ելկեսացւոց (այլ օր. Իլկեսացւոց) 'ի վաղուց հետէ չիջեալ խափանեցաւ. իսկ դա ահաւադիկ արմատ գտանութեան դարձեալ 'ի վեր երևեալ »:

* Գրչագիր մը փոխանակ Աւգոստինէ անուան կը դնէ Յուստինէ:

— Առ Սերապիոն վասն սուրբ Հոգւոյն. (Ἐπιστολή πρός Σεραπιονα). (սկիզբն Թերի). « Ճշմարտապէս ցանկալի, տրամեալ և դու ինքն, որպէս յելելոց ամանց Արիանոսաց՝ սակս հայհոյութեանց որ հակառակ Որդւոյն Աստուծոյ »։

* Այս ամէն ճառից ընտիր բոլորգիր օրինակ մը կայ 'ի մեր Մատենադարանի, տեղ տեղ Թերի առհնութեան, գրչագրեալ 'ի Ս. Լամբրոնեցւոյ։

— Դարձեալ յաղագս Հոգւոյն ընդդէմ Արիոսի. « Իսկ արդ մանաւանդ վասն զի »։ Այս և հետևեալն՝ հատուածք են 'ի Սուրբ Երրորդութիւն կոչուած ընդարձակ ճառին յեօթն գիրս՝ 'ի կարգէ երկրայականաց։

— Յամենասուրբ Երրորդութիւնն. « Հաւատք եկեղեցականք դարձուցանեն զմիտս երկիւղածաց 'ի գիտութիւն ճշմարիտ պատուիրանացն Աստուծոյ։ »։

— ** Ի խորհուրդ Մարդեղութեան. (Sur le Mystère de l'Incarnation). « Այդ եղեալ 'ի վեցերորդումն աւուր Ադամ, 'ի վեցերորդ դարուն՝ կուսական ծնունդն։ Խարդաւանաւղ հրեշտակն մահաբեր Թիւնաւքն զծանծաղամիտ կինն երեւոյթ առնէր. իսկ Գաբրիէլ հրեշտակապետ աւետաւորէր երջանկացեալ կուսին. Տէր ընդ քեզ »[1]։

* Ըստ գրչագրին որ 'ի Մատենադարանին Էջմիածնի (Թիւ 920). « Անդ 'ի վեցերորդումն դարու եղև Ադամ. և աստ 'ի վեցհազարեան դարուս կուսականն ծնունդ »։

— ** Ի սուրբ Խաչն. (Sur la sainte Croix).

[1] Երկքին աստեղանիշ կրող ճառք՝ կորսուած ըլլալով 'ի յոյն բնագրին, միայն հայկական Թարգմանութեանս մէջ կը պահուին։ Սորոյն Աթանասի երկրայական գրուածոց մէջ կը գըտնուին ճառք Ի սուրբ Կոյսն և ի Համբարձումն Քրիստոսի, բայց տարբերելով մեր նշանակածներէն։ (Տես յոյն և լատին, Հատ. Բ. 334, 344, 398)։

— Յաղագս սրբոյ Երրորդութեան. (Ἐκθέσεως πίστεως). «Հաւատամք 'ի մի Աստուած հայր ամենակալ, բոլորից արարիչ՝ երեւելեաց և աներեւութից. որ ունի զգոլն առ յինքենէ. և 'ի միածին Բանն և իմաստութիւն»։

— Առ Փիղադելփոս եպիսկոպոս. (Ἐπιστολὴ πρὸς Ἀδέλφιον ἐπίσκοπον). «Հանդիպեցաք որոց առ 'ի քումմէ աստուածպաշտութենէդ գրելոց առ իս։ Ուսաք և զքո զառ 'ի Քրիստոս զբարեպաշտութիւնդ ստուգապէս ընկալաք, և զԱստուած նախ և առաջին փառաւորեցաք՝ որ ետ քեզ զայսպիսի շնորհս»։

— Ընդդիմասացութիւն սրբոյն Աթանասի եպիսկոպոսի Աղեքսանդրացւոյ ուղղափառի, և Արիոսի (այլ օր.) արիանոսի հերձուածողի, յաղագս աստուածութեան Որդւոյ։ — Ուղղափառն ասէ. «Աստուծոյ խնամակալութեամբն եղեալ գնացի հանդերձ եղբարբք իմովք առ իմ փափաքելիս և Աստուծոյ ծառայս. հանդարտապէս ճանապարհորդելով սակս տկարութեան մարմնոյ, հանդերձ նախաճառեալ քրիստոսեանն ծառայիւք»։ (Διάλογος ἐν τῃ κατὰ Νίκαιαν συνόδῳ πρός Ἄρειον).

— Նոցունց դարձեալ խնդիր յաղագս սրբոյ Հոգւոյն. — «Արիանոսն ասէ. Իսկ արդ մանաւանդ վասն զի սահմանեցեր դու 'ի սկզբան համագոյական գոլ զնա Հաւր և Որդւոյ, ես ընդդէմ ասեմ, ունելով զայսն 'ի գրոց սրբոց, զի ստացական հանդիպի»։

— ** Սրբոյն Աթանասի եպիսկոպոսապետին Աղեքսանդրու, և Զաքէի առն հրէի հարցումն և պատասխանիք, և տուրեւառք վիճմանց։ — «Զաքէ ասէ. Մոլորեալ էք քրիստոնէեայք, նախ և առաջին զի կարծէք և այլ աստուած գոլ քան զմինն միայն Աստուած»[1]։

[1] Յոյն և լատին տպագրաց մէջ չեկայ այս ճառ. բայց 'ի յառաջաբանին կ'ազդեն (յէջ 25) թէ սուրբ հայրապետիս ընծայուած այս գրութիւն՝ կը գտնուի առ այլս։

սանդրի յոր թէ Այժմ անձն իմ խռովեալ է. « Ի նմանութենէ տեառն որ առ մեզ՝ մեծ է աւգուտն. զի և մեք նմանեսցուք առ նա. քանզի թէ ոչ ինքն էր նմանեալ առ մարդիկ՝ ոչ կարէին մարդիկ նմանել առ նա » : (Της ὁμοιώσεως τοῦ Κυρίου της προς ἡμᾶς ἡ ὠφελεια μεγάλη).

Այս Ճառը կը յիշատակէ Ստեփանոս եպիսկոպոս Սիւնեաց 'ի Թղթին առ Գերմանոս պատրիարք. և Գրիգոր կաթողիկոս Տղայ առ վարդապետս Հիւսիսոյ գրած Թղթոյն մէջ. « Ածցուք 'ի մէջ, - կ'ըսէ, - և զայնոսիկ որ նոցա են՝ և մեզ քաջ տեղեակք և յայտնիք, զսուրբ և զաստուածազգեստ Հայրն, և զսուրբ բանս նոցա. զսուրբն Աթանաս և զսուրբն Գրիգոր Նիւսեայ ... միթէ ո՞չ ընթեռնուն յարաժամ 'ի սրբոյն Աթանասէ զգրեալսն՝ զոր յաղագս անշփոթ խառնըմանն յատուկ և կատարեալ բնութեանցն գրէ ասելով. 'ի նմանութենէ տեառնն որ առ մեզ՝ մեծ է աւգուտն. զի և մեք նմանեսցուք առ նա. քանզի թէ ոչ ինքն էր նմանեալ առ մարդիկ, պարտ էր 'ի նմանութիւնս մեր իջանելոյն » ... :

— Առ Լիբերիոս եպիսկոպոս Հռովմայ, զոր պահանջեալ 'ի նմանէ գրեաց այսպէս. (Ἀντίγραμμα πρὸς Λιβέριον ἐπίσκοπον Ῥώμης). « Մի աստուած անմահ, աներեւոյթ, անշաւշափելի. քանզի հոգի է Աստուած. նոյն ինքն անբաժանելի. ոչ ունելով տեղի ուր ոչ է » :

— Յաղագս փրկական յայտնութեանն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. (Περι της σωτηριώδους ἐπιφανειας τοῦ Χριστοῦ). « Որք զտէրն մեր Յիսուս Քրիստոս ոչ յԱստուծոյ և 'ի մարդոյ մի խոստովանին, որպէս գրեալ է յաւետարանին՝ յԱդամայ և յԱստուծոյ, տասցեն՝ զիա՞րդ որ 'ի կերպարանս Աստուծոյն է և Աստուած, և առեալ զծառայի կերպարանս կարծեցին » :

վրայ (Nation des Archers). և անոր մարգարէական սեպուած խօսքերն մէջ բերելով, կը յաւելու թէ արդէն տեսեր էր զայն և ընթերցեր 'ի Պոլիս հայու մը քով։

Նոյնպիսի գրուածք մը կ'երևնայ և հետևեալն՝ յանուն ուրումն Աթանագինեայ, և ունի խորագիր. « Վասն գալստեան Նեռին՝ Աթանագինեայ ասացեալ »։ (Մատենադարան Էջմիածնի. թիւ 1986 ըստ Կարենեան ցուցակի)։ Չենք կրնար ճշդիւ ըսել ինքնագիր երկասիրութիւն մ'է թէ թարգմանութիւն։

## Ս. ԱԹԱՆԱՍ ՄԵԾՆ [1]

(ATHANASE-LE-GRAND)

---

Յաղագս մարմնաւորութեան Որդւոյ և սրբոյ Երրորդութեան. (Περὶ της ενσαρχου ἐπιφανειας τοῦ Θεοῦ Λογοῦ). « Որք չարարուեստաբարն ախորժեն իմանալ զաստուածային զգիրս՝ զմարդկայինսն յանս աղքատութեան Որդւոյն Աստուծոյ յառաջ ածել կամին, առ 'ի հաւատացուցանել զիւրեանցն հայհոյութիւն »։

— Ճառ վասն հաւատոյ թէ մի է Քրիստոս, ընդդէմ Պաւղոսի Սամոստացւոյ. (Οτι εἷς ὁ Χριστός). « Պարտ էր որք միանգամ 'ի հեթանոսականէն 'ի բաց հեռացան 'ի մոլորութենէ, և ծանեան զմին և զմիայն ճշմարիտն ամենեցունցն Աստուած՝ ոչ եւս երկրպագել արարածոյ »։

— Սրբոյն Աթանասի եպիսկոպոսապետին Աղեք-

[1] Բազմահալած պատրիարք Աղեքսանդրիոյ (296-372), որոյ այլևայլ գրուածք թարգմանուած են 'ի հայ՝ յոսկեղէն դարու, և այլք՝ յութերորդին, ինչպէս պիտի տեսնենք 'ի վերջ գլխոյս։

զենան Շնորհալւոյն հետեւեալ տողք յՈղբումն Եդեսիոյ.

« Շարժէ կըրկին զ՚ազգըն Փըռանկ՝
Անհուն հեծեալ եւ հետեւակ...
Զի եկն հասա աւուրց մերոց
Զոր տեսչին ամաց Նըւաց
Եւ է տըւեալ նշանն ի վերոյ
Տեսաք մըտօք թէ է գալոց »:

« Ոթոն Փրիզինկայ եպիսկոպոսն կը պատմէ որ գրեթէ Հայոց առ Եւգինէոս Գ քահանայապետ ղրկած նուիրակութեան ժամանակ, յորում եւ Խաչակիր զօրք հանելու հրաւէրք եղան, մարգարէական գրուած մը հրատարակուեցաւ այն ատեն տիրող Փռանկաց Լուտվիկ Է թագաւորին վրայօք՝ իբր թէ Կիւրոսի պէս պիտի առնէ Բաբելոնի եւ արեւելից. իր վարդագոյն դրօշներն պէտի թռչէին ինչուան Հերակլեայ քաջարութեանց տեղուանք, պիտի բացուէին իրեն դրունք քաղաքաց, եւ ուրիշ խրթին եւ անիմանալի խօսքեր. զոր մեծ յարգութեամբ կ'ընդունէին Փռանկք՝ նաեւ բարեպաշտ անձինք. եւ ոմանք կարծէին թէ սիբիլլական գրոց մէջ գտնուած է. ոմանք ալ թէ Աստուած յայտներ է Հայու մը, quidem Armenio divinitus revelatum affirmaretur. Մեր մէջ Ագադլոնի, Մեթոդիոսի եւ մեծին Ներսեսի անուամբ գուշակական գրուածք կան՝ աւելի աշխարհիս վերջի ժամանակին վրայօք. արդեօք ատոնցմէ մէ՞կն է Ոթոնի յիշած յայտնութիւնն առհայն՝ թէ բոլորովին այլ ինչ »[1]:

Երեքտասաներորդ դարու ճանապարհորդ մը, Ռուպրիքեզ սպանիացի, իր Տեղագրութեան մէջ կ'աւանդէ թէ 'ի Նախիջեւան գտնուած ատենը՝ հայ եպիսկոպոս մը պատմեր է իրեն թէ Ակակրոն ոմն մարգարէ գուշակութիւն ըրած էր Նետողաց ազգին

[1] ԱԼԻՇԱՆ (Հ. Ղ. Վ.), Շնորհալի եւ պարագայ իւր, 182:

## ԱԳԱԹՐՈՆ [1]

(AGATHON?)

---

** « Ագաթրոնի անյաղթ փիլիսոփայի ասացեալ վասն բարի ժամանակին, և վասն սուրբ Թագաւորացն որ յայտնելոց են. և վասն ազգին Նետողաց կործանման. և դարձեալ վասն քաննեչորս Թագաւորացն որ արձակելոց են ի բրու զչար և զարիւնարբու գազանս և ապականելոց զերկիր, որ են Բաճուճք և Քուշանք, և կոչին Լեկք. և վասն պիղծ և անմաքուր Նեռինն որ յայտնելոց է և դարձեալ կործանելոց է զօրութեամբ սուրբ խաչին. և վասն ահեղ և սոսկալի գալստեան Որդւոյն Աստուծոյ և հատուցման արդարոց և մեղաւորաց »: Սկզբնաւորութիւնն է. « Յայնժամ Թագաւորեսցէ մեծն Կոստանդիանոս հզօրն՝ 'ի յազգէ սուրբ և անուանի Թագաւորացն, որք Որմանք կոչին »:

Ուրիշ օրինակ մը նոյն գրուածին՝ տարբեր խորագրով և սկզբնաւորութեամբ. « Ագադրոն Հայրապետին ասացեալ վասն յարուցման առաջիկայ Թագաւորաց Փռանգաց: — Արդ 'ի լինել յետին դարին յութհարիւր ամին՝ յայնժամ Թագաւորեսցէ մեծն Կոստանդիանոս հզօրն »: Ոմանք 'ի գրչագրաց. « Տեսիլ սրբոյն Ագադրոնի », և այլք կ'ընծայեն մեծին Ներսեսի [2]: Այս գրուածքը՝ Թերեւս ակնարկել ու-

[1] Թէ հեղինակին և թէ թարգմանութեան ժամանակն անծանօթ:

[2] Ինչպէս մեր Մատենադարանի ճառընտրի մը մէջ, յաւելլով 'ի վերջոյ. « Զայս և առաւել քան զայս խօսեցաւ սուրբ Հայրապետն Ներսէս, և զգուշացուցեալ զեկեալսն զկնի իւր զփախուստ յարևելս առնել ասելով իմաստնոց արանց »:

սակին գիտութիւնն. զոր յարմարեալ արամաբանական առուեստին և ապացուցական մակացութեամբ իմաստուն ումեմն վարդապետի Ֆրա Թումա կոչեցելոյ, 'ի կարգէ Բրաջուրացն, առաքինութեամբ կատարեալ և 'ի ծայրս իմաստասիրութեան ելեալ, լատին բարբառով. որում անձնացայ հոգւով նուաստս ոգիս և յոյժ կարօտս բանի Յովհաննէս Եզնկացի, որ այժմ կոչիմ Ծործորեցի։ Եւ մեծաւ թախանձանօք թարգմանեցի զսա 'ի հայ բարբառ հրամանաւ վեհապետին Հռովմայ, ձեռնտուութեամբ արհիեպիսկոպոսի տեառն Զաքարիայ, սուրբ առաքելոյն Թադէոսի վերադիտողի. և միջնորդութեամբ տէր Բարդուղիմէոսի հեզահոգի լատին եպիսկոպոսի յոյժ գիտնականի. և աւանդեցի զսա եկեղեցւոյ Հայաստանի ընծայ անգին և գանձ պատուական. աշխատեալ իմովս տկարութեամբ և յղկեալ ըստ կարի զբառս և զբանս ... Թարգմանեալ և գրեալ 'ի գուռն Ծործորոյ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին. որոյ ողորմութեամբն և շնորհօք եղև աւարտումն և կատարումն սորին յամի կենարարին ՌԳՃԻԵ »։

— Գիրք բնութեանց Քրիստոսի Աստուծոյ մերոյ (Ս. Թովմայի)։ Յիշատակարան. « Կատարեցաւ գիրք երկու բնութեանց և մի անձնաւորութեան 'ի Քրիստոս, 'ի ձեռն Յովհաննու Քռնեցւոյ և սուրբ Բարթողի եպիսկոպոսի »։

## ԱԲՐԱՀԱՄ ԵՓԵՍՈՍԻ

(ABRAAM, ÉVÊQUE D'EPHÈSE)

---

** *Աբրահամու արքեպիսկոպոսի Եփեսացւոց Ներբողեան յաւետիս սուրբ Աստուածածնին և միշտ կուսին Մարիամայ*. (Sur l'Annoneiation de la très-sainte Vierge Marie). «*Բազում փոյթ եղեւ առ աստուածաշունչ հարցն, Աթանասի ասեմ և Բարսղի, և Գրիգորեանցն. Յովհաննու Ոսկեբերանի, Կիւրղի, Պրոկղի և նման նոցա խորհողաց*»[1] ։

## ԱԳՈՒԻՆԱՑԻ Ս. ԹՈՎՄԱՍ [2]

(ST. THOMAS D'AQUIN)

---

*Արեւմտեան եկեղեցւոյ մեծանուն վարդապետիս երկասիրութիւններէն հետեւեալքն միայն հասած են առ մեզ. Յաղագս եօթն խորհրդոց եկեղեցւոյ ։ Յիշատակարան Թարգմանչին. «Զաստուածային և զերկնաւոր իմացուածդ ամենասուրբ Հոգւոյն, զոր ընդ աղօտ ցանկացան տեսանել հրեշտակք, զոր շնորհեաց Աստուած եկեղեցւոյն Հռովմայ. շինեալ 'ի վերայ վիմին Պետրոսի՝ զխորհուրդ սրբոյ Եկեղեցւոյ. զմկրտութեանն ասեմ, զկնքոյն, զսրբոյ պատարագին և զպը-*

[1] *Յիշէ զայս ճառ Գրիգոր Անաւարզեցի 'ի թղթին առ Հեթում Բ թագաւոր ։*

[2] *Թարգմանութիւն 'ի լատինէ՝ 'ի ձեռն Յովհաննու Երզնկացւոյն 'ի սկիզբն չորեքտասաներորդ դարու, ինչպէս կ'ակնարկուի 'ի յիշատակարանին ։*

պոսաց աշխարհիդ և վանից երիցանց ... Աբդիսոյ ողորմութեամբն Աստուծոյ եպիսկոպոս Ասորեաց ուղղափառաց, որդի և անունդ սրբութեան ձերոյ՝ Յիսուսի Քրիստոսի լուսոյ կենդանութեամբ, և անապական փրկութեամբ ողջոյն։ — Պարտ է մեզ յիշել այժմ զսրբոյ Պաւղոսի առաքելոյ զբանն »։

— Աբդիսոյի եպիսկոպոսի յաղագս անիծեալ Նեստորականաց և ամենայն հերձուածողաց։ — « Քանզի այսպէս հաւատամ առաջնորդութեամբ Միածնին՝ որ վասն մեր մարդացաւ »։

— Աբդիսոյի եպիսկոպոսի յաղագս նզովելոյ զամենայն հերձուածողս, որք էին հակառակ ուղղափառաց։ « Որ ոչ հաւատայ եթէ բնութեամբ էութեանն ճանաչի միութիւն՝ Երրորդութիւն »։

— Թուղթ Ասորեաց ուղղափառաց 'ի Հայս։ — « Լաւաց, Ճշմարտից և աստուածասիրաց հովուաց արդարոց և հարանց հոգեւորաց, ... տէր Ներսէս կաթուղիկոս Հայոց մեծաց. և Մերշապուհ եպիսկոպոս Տարաւնոյ և Մամիկոնենից, և այլ աթոռակցաց և իշխանաց աշխարհիդ. Սամուէլ քորեպիսկոպոս և Դանիէլ վանից երէց, և Սիւնական Սարգսի. Գաբրիէլ վանից երէց, ... 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր ողջոյն։ Գիտեմք մեք, ով Ճշմարիտք, զի հարք արդարք և հաւատացեալք էք և բժիշկք իմաստունք հիւանդաց »։

— Պատասխանի թղթոյն Ասորեաց 'ի Ներսէսէ Հայոց կաթուղիկոսէ և 'ի Մերշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսէ։ — « Ի բազում ժամանակաց լուեալ զեղբայրութեանդ ձերոյ ուղղափառութիւն համբաւով »։

նաև այլոց բանասիրաց ենթադրութիւնն և կարծիք։ Կը յաւելումք երբեմն նաև պատմական աւանդք և յիշատակարանք, ինչպէս գրչագրաց յիշատակարաններն, երբ կը համարինք թէ կրնան ծառայել 'ի տեղեկութիւն և յառաւել լուսաբանութիւն։

## ԱԲԴԻՍՈՅ ԵՊԻՍԿՈՊՈՍ[1]

(EBEDI-YESUA, ÉVÊQUE SYRIEN)

---

Աբդիսոյի եպիսկոպոսի Ասորեաց առ տէր Ներսէս կաթուղիկոս Հայոց, Թուղթ ողջունի. « Հայր հոգեւոր, կարգիչ իմաստութեան, հովիւ արթուն, անձն լուսաւոր, գանձաւոր այր, արդար հաւատոց ... տէր Ներսէս, ողորմութեամբն Աստուծոյ կաթուղիկոս Հայոց մեծաց, և այլ աթոռակցաց, եպիսկոպոսակցաց, երիցանց և սարկաւագաց, և այլ իշխանաց աշխարհիդ, և ամենայն ուխտի սրբոյ եկեղեցւոյ՝ յԱբդիսոյէ շնորհիւն Աստուծոյ եպիսկոպոսէ Ասորեաց. և որդի սրբութեան ձերոյ, 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր ողջոյն։ Նախ քան զամենայն աղաչեմ զձեզ՝ աղաւթել 'ի վերայ մեր, փրկիլ մեզ յայնցանէ որ ապստամբեն 'ի ճշմարիտ հաւատոյ »։

— Աբդիսոյ եպիսկոպոսի Ասորեաց ուղղափառաց առ տէր Ներսէս կաթուղիկոս Հայոց և առ աթոռակիցս նորին, յաղագս անիծեալ Նեստորական հերձուածողաց։ « Ուղղափառաց և ճշմարիտ հաւատացելոց, ընկերաց առաքելոց, ... տեառն Ներսիսի կաթուղիկոսի Հայոց մեծաց, և Մերշապհոյ Տարաւնոյ, և Մամիկոնենից եպիսկոպոսի, և այլ եպիսկո-

[1] Թարգմանութիւն յասորականէ, 'ի վեց կամ յեօթներորդ դարու։

Հինգերորդ դարու մէջ տապալեցաւ կործան անկաւ մեր արքունի՝ Արշակունեաց մեծափառ իշխանութիւնը։ Այսպիսի ծանր դէպք մը, ինչպէս յայտնի է, ունեցաւ իր տխուր ազդեցութիւնը նաև մեր ուսումնական վիճակին վրայ։ Սակայն բարեբաղդաբար Թարգմանչաց ձեռքով վառուած հուրը բոլորովին չմարեցաւ. դարք դարուց կը յանձնէին զայն խնամով, թէպէտ մերթ աղօտացեալ և շիջելափառ, և մերթ համեմատաբար աւելի փայլուն վիճակի մը մէջ. տալով թէ 'նախնական Թարգմանութիւնք ըստ կարի կը պահպանուէին, և թէ նորանոր ճոխութիւնք կը մթերուէին 'ի գանձարանս հայկական մատենագրութեան՝ 'ի յունէ, երբեմն նաև յասորւոյն, յարաբացի և 'ի պարսիկ լեզուաց, և վերջերը՝ արևմտից հետ ունեցած ծանօթութեանց և յարաբերութեանց պատճառաւ, նաև 'ի լատինականէ և 'ի գաղղիական բարբառոյ։ Այսպէս կը շարունակուէր մինչև յերկոտասաներորդ արծաթի դար գրականութեան մերոյ և անկէ ալ անդին։

Այս ինն դարուց մեզի աւանդած՝ ոչ ժամանակագրական, այլ այբուբենական ցուցակն է զոր պիտի ներկայացընենք մեր ընթերցողաց։ Պատշաճ էր այդ իւրաքանչիւր դարուց ուսումնական կարևորութեան վրայ խօսիլ համառօտիւ։ Մենք հարկ չսեպեցինք, որովհետև արդէն եղած է այդպիսի աշխատութիւն մը և հրատարակուած, բանիբուն և ձեռնհաս՝ մեր մէկ միաբանից ձեռքով, զոր տարաժամ մահ մը՝ հնձեց յափշտակեց հայկական ուսմանց և գիտութեան ասպարիզէն, ուր այնչափ փայլմամբ և յուսով երևցած էր [1]։

Ուր որ Թարգմանչին ժամանակ և անուն յայտնի է, 'ի ստորեւս իջիցն կը նշանակենք, մէջ բերելով

[1] ՍՈՒՔՐԻԵԱՆ (Հ. Ա.) Բազմավէպ, (1875) յ'էջ 7, 118,218։

ըստ բացայայտ վկայութեան մերոց պատմչաց. և այլևայլ նորութիւններ և յաւելուած ընդունած մինչև յերկոտասաներորդ դար, յորում Շնորհալին իր հայրապետական իշխանութեամբ, հոգեռանդն սրտով և առ Աստուած սիրով՝ շնորհօք ու վայելչութեամբ լի գրչովն ու լեզուով՝ զարդարեց, ճոխացուց և վաւերական վերջին հաստատութիւնն տուաւ, և որոց վրայ Լամբրոնացի քանի մը ուրիշ արարողականք և աղօթք աւելցուց 'ի յունական եկեղեցւոյ և յարևմտից:

***

Աստուածաշունչ գրոց թարգմանութիւն, ու այն առթով թարգմանչաց 'ի Բիւզանդիոն և այլուր գեգերանք և ծանօթութիւնք, յունական եկեղեցւոյ փայլուն վիճակ, անոնց աննման հայրապետաց՝ վարդապետական գրոց յաճախութիւն և հիանալի ոճ, այս ամենայն մեծ ու նախանձելի յեղափոխութիւն մը կը բերեն մեր լեզուի և մատենագրութեան մէջ, յոյն լեզուի ուսումը և դպրութեան սէր՝ եւս քան զեւս բարգաւաճ վիճակի մէջ դնելով: Ասով բնականաբար ասորի լեզու և մատենագրութիւն՝ մեծ հարուած մը կը կրէին՝ անդստին 'ի հինգերորդ դարէ: Դեռ ետև կը տեսնենք՝ նոյն լեզուէ փոխադրութիւնք 'ի հայ, ինչպէս սրբոյն Եփրեմի մատենագրութեանց մեծագոյն մասին, բայց գլխաւորաբար տիրողն ու ազդեցիկ դիրք մը բռնող՝ յունականն է, յորմէ բազմաթիւ նշանաւոր երկասիրութիւնք կը թարգմանուէին 'ի մեր լեզու, և յորոց մասն մի եւեթ, — բայց ոչ աննշան և մեծապէս հետաքննական, — հասած է մինչև առ մեզ, և դեռ չի դադրիր այլևայլ հաճոյական նորութիւններ ընծայել ուսումնասէր բանասիրութեան:

Թէ որպիսիք էին յիշատակեալքդ կարգք գործոց Գրիգորի, չենք կրնար որոշ բան մը զրուցել։ Կը գտնենք միայն առ Զենոբայ ասորւոյ՝ թէ «Յորժամ զօրհնութիւն երից մանկանցն կատարէաք», և որ ցարդ 'ի գործածութեան է 'ի ժամագիրս 'ի պահու առաւօտեան պաշտամանց։ Եւ Լուսաւորիչ 'ի Յաճախապատում գիրսն ընդարձակաբար կը մեկնէ այն օրհնութեան խօսքերը։ — Սրբոյն Սահակայ ընծայուած կը գտնենք յ'Օրհնութիւնաբեր ցուցակի, ինչպէս տեսանք, գիշերային մաղթանաց ութ ձայնից համեմատ յօրինուած չորս մաղթանք և համաթիւ քարոզք և աղօթք. իսկ այլք Մանդակունւոյ կու տան զանոնք։ Բայց ինչպէս ամէն եկեղեցական պաշտամանց գրեանն առ մեզ, անանկ ալ ժամերգութիւնք, դարուց ընթացքին մէջ կրած են այլևայլ փոփոխութիւնք և նորութիւնք։

Ժամագրոց նման, և թերևս անոնցմէ ալ աւելի՝ բուն ազգային և յատուկ կերպարանք ունենալ կը թուին, եկեղեցւոյ պաշտամանց մէջ գործածուած ուրիշ գրքեր, բաց 'ի այն աղօթքներէն որ յայլուստ թարգմանութիւն ըլլալնին կը վկայուի, և կամ կը կրեն իրենց հեղինակին անուանքը։ Մեր յառաջ բերած ցուցակը՝ յայտնի ու անդիմադարձ հաւաստիք մ'է, յորում յայլոց 'ի փոխ առնուած արարողականք՝ հեղինակին և թարգմանչին անուամբ կը յիշատակուին, և ինչ որ մերն է՝ անգաստին· յաւուրց Լուսաւորչի, և Սահակայ Պարթևի և յայլոց։ Առջիններն՝ թարգմանութեանց դասակարգութեան մէջ մտնելէն աւելի՝ իրաւունք ունին բուն ազգային մատենագրութեան վերաբերելու։ Այսպէս են Մաշտոց, Ձեռնադրութեան գիրք և այլն, որոնց ամենուն գլխաւոր կարգաւորիչք և յերիւրիչք եղած են Սահակ և Մեսրովպ, և իրենց արժանաւոր աշակերտք՝ երիցագոյն և կրտսեր դասու Թարգմանիչք, նաև

Ուրիշ տեղ մ'ալ. «...Գրեցաւ փրկական սուրբ խորհուրդ և մեղաքաւիչ պատարագիս ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ Յակոբին՝ 'ի վանս որ կոչի Ուրծայ, առ ոտս վարժապետիս մեր Սարգսի և այլ միեղէն եղբարցս որ աստ են հաւաքեալ. 'ի Թուականութեանս Հայոց ՊՀՁ»...:

***

Ժամագրոց կամ հասարակաց աղօթից յօրինուածութիւնն և կարգաւորութիւն առ մեզ՝ աւելի ազգային կ'երևնայ քան Թարգմանաբար ներմուծուած յայլոց: Անունն նոյն է թէ արևելեան և թէ արևմտեան եկեղեցեաց մէջ. Ὧρες, Horæ.

Ե՞րբ կամ որո՛ւն ձեռքով եղած է 'ի մեզ այս կարգաւորութիւն:

Եթէ մեր Ժամագրոց խորագիրն բանանք, հետևեալ տեղեկութեան կը հանդիպինք. «Կարգաւորութիւնք հասարակաց աղօթից Հայաստանեայց եկեղեցւոյ, արարեալ սրբոյն Սահակայ հայրապետի և Մեսրովպայ վարդապետի, Գիւտայ և Յովհաննու Մանդակունւոյ»: Այս խորագրին առաջին բառն՝ իրաւամբ հաւանական երևցընել կու տայ մեզ, որ եթէ վերջնական կարգաւորութիւնն իրենցն է, ինչպէս բովանդակ մեր ուրիշ եկեղեցական գրենոյն, բայց անշուշտ ոչ նախկին հաստատութիւնն, որ պէտք է պատշաճի աւելի հնագոյնից, սրբոյ Լուսաւորչին և իր անմիջական յաջորդաց: Զայս Թուին ակնարկել Եզնկայ երիցու՝ յեօթներորդ դարու, հետևեալ խօսքերն. «Առ սովաւ (նշանակելով զՍահակ Պարթեւ) դպրութիւնք Հայոց յաջորդեալ. և կտակարանք եկեղեցւոյ 'ի սմանէ յառաջ Թարգմանեցան և կարգք գործոցն Գրիգորի նորոգեալ արամբ միով երանելեաւ Տարաւնացւոյ, որում անուն Մասրովպ ճանաչէր»:

քեզ Աստուած երկնային լուսեղէն և անթառամ պսակաւն. ամէն »:

Որպէս ստանաւոր յիշատակարան մ'ալ՝ զոր կ'ընդօրինակենք.

» Ի ժամանակս յետին եղեալ
Ի Լեւոնի արքայ անձեալ,
Հայոց մեծաց զարմէն սերեալ
Ի յՌուբինեանց յազգէ եկեալ
Ի հայրապետութեանն լինեալ
Որ Կոստանդին Սիսցի եղեալ,
Ի Թուականիս մեր շարժ առեալ
Հարիւր ութանց վերեսուն այլ լեալ
Նա եւս եւթն այլ յաւելեալ
Միակս ի հետ կոյս թիւս եկեալ,
Գրեցաւ սուրբ տառքս այս շարագրեալ
Որ պատմաբանք են միացեալ,
Ազգաց հընդից որ թարգմանեալ
Ի հայ բարբառ և յայժ քերեալ.
Ի սուրբ բանէն բանքս այս առեղծեալ
Հոգւով սրբով սա մեզ շնորհեալ,
Զեր պարգեւաց սա մեզ առեալ
Ի նախահարց մեր յարդարեալ
Եւ ի յաւանդ մեզ հաստատեալ
Աստուածախօս տառքս այս պատուեալ.
Որով ըղձակ հաց մեր առեալ
Բանիւքս այսու զսան կընքեալ
Զխորհուրդ փրկչին մեր սուրբ խընկեալ
Եւ ի սեղան սուրբ կառուցեալ
Ի հաշտութիւն Հաւրն ընծայեալ
Ու ի թողութիւն հոգւոց բաշխեալ.
Որով լիցին արժանացեալ
Հաղորդակից սրբոցն եղեալ
Եւ ի Հոգին սուրբ միացեալ
Հաւր և Որդւոյ կցորդակցեալ.
Ընդ որս մեծ րաբբին Վարդան կոչեալ
Այն երջանիկ աստուածապարեալ
Որ ի մարմնի հրեշտակացեալ
Եւ աշխարհի քարոզ եղեալ
Վերաբուն Սարգիս Շալվէ կոչեալ
Զսա յիշատակ հոգւոյ տուեալ »... :

յոց ոտեան Կոստանդեայ, ընդ նմին և եղբաւր իւրոյ պատուական քահանային Թովմասու, և հաւր իւրոյ Բասիլ քահանայի, և մաւր իւրոյ Կիրա Խաթունի՝ հանգուցելոյն առ քեզ ... Աղաչեմ և ես մեղաւոր գրիչս Թորոս՝ յիշել 'ի սուրբ աղաւթս ձեր զիս և զծնողսն իմ և զեղբարս զհանգուցեալս 'ի Քրիստոս »:

Այս երկքին յիշատակարանաց անուանք՝ եթէ ոչ իրաւացի, գէթ ճշմարտանման ենթադրութիւն մը կ'արթնցընեն 'ի մեզ, որ յունական ազդեցութեան՝ թէ քաղաքական և թէ կրօնական, տակ գտնուող Հայոց համար թարգմանուած ըլլան ասանք: Թէ կար մեծ այսպիսի փափաք՝ 'ի կողմանէ Յունաց, անտարակոյս է 'ի պատմութենէ. և զարմանք չէ որ 'ի նորոց ալ գտնուէին սիրով և յօժարակամ, երբեմն նաև բռնադատ կամօք, հետևողք այդպիսի ազդեցութեան մը հարկին կամ ենթադրեալ պատշաճութեան:

Օրինակ մ'ալ յարքունի գրատան Պաւարացւոց 'ի Միւնիխ, բոլորգիր մագաղաթեայ 'ի ՊՃԱ թուականի, բազմաթիւ յիշատակարանօք, յորս կարևորագոյն հետևեալքն. « ... Գրեցաւ սա 'ի թուականիս Հայոց ՊՃԱ, 'ի հրեշտակաբնակ յանապատս և 'ի հրաշափառ ուխտս Մեծոփայ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Յակոբ հայրապետիս և սուրբ վարդապետաց գերեզմանացս առ ոտս նախասացեալ րաբունապետիս (Թովմայի) որ փայլէ 'ի մերում ժամանակի իբրև զարեգակն 'ի կորընթարթս երկնից ... Այլ և յիշել աղաչեմ զերջանիկ և զերանաշնորհ զարքեպիսկոպոսն զտէր Մկրտիչ Ամթայ, որ երփին երփին գունով և զանազան երանգով զարդարեաց զսուրբ գիրքս առ 'ի յիշատակ բարեաց հոգւոյ իւրոյ: Եւ 'ի պատճառս աւրինակի [illegible] արկելեան, վասն որոյ զարդարէ զնա արա-

կառակիր, գիտնալով որ ուրիշ արեւմտեան եկեղե-
ցական քանի մը գրոց՝ 'ի լատինէ 'ի հայ թարգմանիչ
եղած է, ինչպէս պիտի տեսնենք 'ի կարգին։

***

Այս Պատարագամատոյց գրոց հաւաքման՝ մեր
ձեռքն եղած երկու գրչագրաց մէջ հետեւեալ յիշա-
տակարանները կը գտնենք. «Աստանօր կամօք և խը-
նամօք ամենազօրին Աստուծոյ՝ յանկ ելեալ սուրբ
մատեանս Պատարագամատուցի, որ ունի յինքն բո-
վանդակեալ զաղօթս սուրբ քահանայապետաց Աս-
տուծոյ զոր յիւրաքանչիւր ժամանակս արարեալ
են 'ի խորհուրդ պատարագի։ Արդ եղև սա գրեալ
ձեռամբ մեղապարտ և անարժան քահանայի Նիկո-
ղայոսի ... 'ի թուականիս Հայոց ՉԿԳ. 'ի գղեակս
Անարզաբա՝ ընդ հովանեաւ սուրբ մօրս լուսոյ ան-
բուհելոյ և միշտ կուսին Մարիամու Աստուածած-
նին. 'ի թագաւորութեան Աւշնի և 'ի քահանայա-
պետութեան տեառն Կոստանդեայ, և 'ի մերոյ եկե-
ղեցւոյ յառաջնորդութեան տեառնս մերոյ Յոհան-
նիսի եպիսկոպոսի, որոյ տէր Աստուած պահեսցէ
զսա հանապազ։ Յիշեսջիք աղօթիւք զսպասաւորս
սրբոյ եկեղեցւոյս և զքահանայս սուրբս. զԿոստան-
դին և զՄիւս Կոստանդին. և զԱնդրոնիկոս և զԲասի-
լիոս և զՄիւս Բասիլիոս և զՍտեփաննոս. և զսարկա-
ւագունս՝ զՎասիլ և զԹէոդորոս, և զՎարդան Սեւ-
լեռնցի և զՅակոբ ... Յիշեսջիք 'ի Քրիստոս և զԹո-
րոս երէց՝ որ փոխեցաւ առ Քրիստոս ...»։

Իսկ միւս գրչագրին յիշատակարանն է. «Տէր իմ
և Աստուած Յիսուս Քրիստոս՝ գառն Աստուծոյ որ
զենար 'ի վերայ խաչին, և բարձեր զմեղս աշխարհի,
ողորմեա՛ ստացողի տառիս որբասէր սարկաւագին
Նիկողայոսի, որ է քուերորդի կաթողիկոսին Հա-

սայ. պրօսէ. խաւյկուսան մու Կիրիէ». (Κύριε κέκραξα προς σε, εισακούσον μοῦ Κύριε)։ Կը գնէ 'ի հայ. «Տնօրհնեա տէր». և կը յաւելու զայնն. «Պարասխօ Կիրիէ», (Παρασχῶ Κύριε). դարձեալ «Տէր ողորմեա». և ապա «Կիրիէ էլէիսօն», (Κύριε ἐλέησον)։ Նախասրբեցելոց պատարագին մէջ կը գտնենք նաև զԼոյս զուարթ, զոր Ցոյնք Սոփրոնիոսի պատրիարքի Երուսաղեմի կ'ընծայեն, և 'ի հասարակաց աղօթս մեր կ'երգուի յերեկոյի կիրակամտից։

Եթէ ոչ պարզապէս ուսումնական և հետաքննելի, գէթ երկրորդական կարևորութիւն մը թուի ունենալ արևմտեան եկեղեցւոյ Պատարագամատուցի հայ թարգմանութիւնն՝ այսպիսի խորագրով. Պատարագամատոյց Աստուծով, որով կատարի խորհուրդըն յամենայն օր. զի այս միայն է, և ոչ գոյ Հռովմեայեցւոյն (այլ) խորհուրդ պատարագի։ Երկրորդական նպատակ մը ունենալ կ'ենթադրենք. զի առ մեզ լատին եկեղեցւոյ Պատարագամատուցի կիրառութիւնը պատճառ մը չունի։ Հաւանականաբար խաչակրութեանց ժամանակ և այն առթով երբ սկսան երևնալ 'ի Հայաստան արևմտեից եպիսկոպոսունք, քահանայք և կրօնաւորք, հայ ժողովրդեան անոնց եկեղեցական պաշտամանց գաղափար մը տալու դիտմամբ՝ ձեռնարկած են 'ի թարգմանութիւնն մերքն, պատշաճական և օրինաւոր սեպելով՝ նաև հայ լեզուով իմանալի ընծայել զայն, որ նորամուտ կրնար սեպուիլ ազգին և նորօրինակ։ Թող որ նաև այս Պատարագամատուցէն այլևայլ մաղթանք մուտ գտած են 'ի մեզ, և տակաւ խառնուած բուն ազգային պատարագի աղօթից հետ, ինչպէս են զգեստաւորման և պատարագի սկզբնաւորութեան աղօթք, որ արևմտեան են, և առ այլս չեն ծանօթ։

Եթէ ուզուի Լամբրոնացւոյն կամ իր ժամանակին վերագրել այս թարգմանութիւնը՝ մենք ալ չենք հա

յայս արարից։ Զի յորժամ անցեալ գնացեալ 'ի միասին, և հասաք յեզր գետոյն որ կոչի Ախուրեան, և տեսաք զՊատարագամատոյցն տեառն զօրութեանց, զոր առնէն Արքաւենաւի. և էր յաւուրս ամարայնոյն յամսեանն Տրէ, որ օր մետասան էր ամսոյն, յաւուր կիւրակէի, յիններորդ ժամու »։

***

Նախասրբեցելոց կոչուած պատարագը՝ այսպէս վերնագրուած է 'ի միում 'ի մեր գրչագրաց. « Աստուածային պատարագ քահանայորդաց, պրօժիալմենօս. արարեալ սուրբ հօր մերոյ Վասիլիոս »։ Իսկ 'ի միւս ձեռագրին. « Աստուածային պատարագ նախասրբեցելոց որ կատարի աղուհացիցն չորեքշաբաթին »։ Յոյնն կ'ընծայէ զայն սրբոյն Գրիգորի Աստուածաբանի. (Ἡ' θεία Λειτουργία τοῦ ἐν ἁγίους πατροι ἡμῶν Γρηγορίου τοῦ Διαλόγου ἤτου τῶν Προηγιασμένίας).

Նախասրբեցելոց պատարագի մատուցման սովորութիւնը, որ առ Յոյնս՝ ինչպէս կ'ակնարկէ խորագիրն հայ թարգմանութեան, աղուհացից չորեքշաբթի և ուրբաթ օրերուն մէջ էր. իսկ առ արեւմտեայս՝ աւագ ուրբաթ օրուան համար, և չենք կարծեր որ մեր բուն ազգային եկեղեցւոյն մէջ մուտ գտած ըլլայ. արդէն և, ինչպէս ծանօթ է, ըստ մեր հնագոյն տօնացուցից և ուրիշ եկեղեցական գրոց կարգաւորութեան, այն օրերուն մէջ պատարագք չէին մատչիր։ Եւ թէ լոկ յունական է, յայտնի ապացոյց մը կրնայ համարուիլ՝ նոյն լեզուէ առնուած բառից յանձնախազգոյն գործածութիւնը, ուր յայլ մի կամ երկու բառք են։ Այսպէս կը գտնէ սաղմոս. « Տէր, կարդացի առ քեզ և լուր ինձ ». և կը յաւելու զայնն հայկական տառերով. « Կիրիէ կեկրակ-

Թարգմանած ըլլայ « գլխովինն զՊատարագամատոյցն զոր Աթանասի անուն լինել » ։

Կը մնայ հետաքննելին՝ թէ արդեօք սոսկ իբրու մատենագրական հարազատութիւնք, — ինչպէս ուրիշ շատ գրքեր 'ի յոյն և յասորի լեզուաց, — մուտ գտած են 'ի գանձարան հայ դպրութեան, թէ կար արդեօք նաև անոնց գործածութիւնն ալ, ինչպէս առ Յոյնս՝ նոյն և առ մերս, տարւոյն մէջ սահմանուած յատուկ օրեր, զոր և թուի անշուշտ ակնարկել ծանօթութիւնն 'ի մեր գրչագիրս՝ յաւարտ պատարագի ընծայելոյ սրբոյ Ոսկեբերանի. « Բայց գիտել պարտ է, կ'ըսէ, եթէ յորում ժամանակի կատարի սրբոյն Բարսղի պատարագն կամ սրբոյն Յովհաննու Ոսկեբերանին. այս է. կիւրակէ օր առաջ Բարեկենդանին կատարեն զսուրբ Բարսղի պատարագն, մինչև 'ի Ծաղզարդարն յամէն կիւրակէ։ Իսկ Ծաղզարդարին կիւրակէն սուրբ Յովհաննուն կատարի։ Իսկ աւագ հինգշաբթի օր և աւագ շաբաթ օր՝ Բարսղին։ Իսկ Զատկին կիւրակէն սուրբ Յոհաննուն։ Եւ Աւետեաց սուրբ Աստուածածնի՝ յոր ինչ օր գայ աւնն, սուրբ Յոհաննուն կատարի, բայց թէ կիւրակէի գայ՝ սուրբ Բարսղին։ Եւ Ծնունդն Քրիստոսի յոր ինչ օր գայ՝ սուրբ Բարսղին կատարի։ Բայց թէ 'ի շաբաթ կամ 'ի կիւրակէ՝ սուրբ Յոհաննուն կատարի։ Իսկ մկրտութեան Ճրագալուցին՝ սուրբ Բարսղին. և յիւր աւնին՝ զիւրն »։ Ասիկայ յոյն եկեղեցւոյն կարգաւորութեանն համեմատ։ Բայց թէ կայր և առ մերս՝ այսպիսի սովորութիւն, չենք կարծեր հաւանական, չհանդիպելով այդպիսի նշանակութեան մը նաև 'ի հնագոյն տօնացոյց կարգաւորութիւնս ազգիս, և պատմական ապացոյց մը չունենալով՝ բաց 'ի առ Ուխտանէսի գըտնուած հետևեալ խօսքերէն. « Զոր եթէ խնդրես, կ'ըսէ, պատեհին ուսանել, ասացից նաև զբանին նշանն. տայց թէ. ախորժես, և գիւղանակս ժամանակին

«Նայեա, տէր, Յիսուս Քրիստոս աստուած մեր, 'ի սուրբ բնակութենէդ քումմէ և յաթոռոյ փառաց քոց: — Քրիստոս պատարագեալ բաշխի 'ի միջի մերում», և հետևեալ աղօթք, մինչև 'ի վերջ սրբոյ պատարագին:

Կայ ուրիշ Պատարագամատոյց մ'ալ, նոյնպէս թարգմանուած 'ի հայ, յանուն սրբոյն Կիւրղի Աղեքսանդրացւոյ: Ասոր և մեր սովորական Պատարագամատուցին մէջ տեսնուած նմանութիւնք՝ համեմատաբար քիչ են քան զԱթանասի և զՈսկեբերանի: Իրմէ առնուած կը համարիմք՝ նուիրագործեալ ընծայից վրայ երրեակ օրհնութիւնք, և յիշատակութիւնք սրբոց. վասն զի 'ի մեր ձեռագրի՝ կը կարդանք. «Սարկաւագն զԱռաքելոցն աստ ասասցէ. զի սրբոյ հօրս արարեալ է. որ է գրած 'ի սուրբ Աթանաս»: Իրենն են յիշատակութեան մաղթանք, առաւել ճոխաբար և ընդլայնմամբ քան 'ի մերում:

Ասոնցմէ դուրս են Նախասրբեցելոց կոչուածը, և պատարագն արեւմտեան եկեղեցւոյ կամ Հռովմայեցւոց, որոց վրայ քիչ եսքը:

***

Որչափ ալ անտարակոյս ենթադրենք, — ինչպէս յիշեցինք, — թէ սուրբ հարք մեր Սահակ և Մեսրոպ և իրենց աշակերտք՝ պատարագի սուրբ խորհրդոյն կարգաւորման համար աշխատած ատեննին՝ մեծապէս օգտուած են այս մեր յիշած՝ և մանաւանդ յունական եկեղեցւոյ աստուածիմաստ հարց երկասիրած հոգեռանդն գրքերէն, սակայն ամենուն թարգմանութեան արդիւնքը՝ ոչ իրենց կը համարձակինք տալ, և ոչ ալ որոշակի ճշդել այդ փոխաբերութեան ժամանակը: Միայն առ Ասողնիկայ կը գտնենք՝ Մանդակունի հայրապետին համար աւանդուած թէ

գրեալ է յառաջիկեան քառակուսանայես ։ Նուէրը ընծայելու կամ գնելու ատեն՝ կը պատուիրէ, ինչպէս 'ի մերումս՝ ասել. « Ի յիշատակ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի » ։ — « Յաղագս յիշատակի անօրէնութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի » ։ Կը պատուիրէ խաչակնքել 'ի վերայ ընծային և ծածկել՝ ասելով. « Տէր Թագաւորեաց », որ և այս նման է մերումս ։ Համառօտ աղօթքէ մը ետքը կը յաւելու. « Սուրբն Դիոնեսիոս գրեալ է յիւր գիրսն՝ Թէ քահանայապետն յորժամ զգեստաւորի՝ գայ առաջի սրբոյ սեղանոյն, և աղօթս կատարէ 'ի վերայ սեղանոյն. և ապա առեալ զբուրվառն՝ արկանէ խունկ սուրբ սեղանոյն և տաճարին կարգաւ. և գայ ելանէ 'ի բեմն, և սկսանին զսուրբ կարգն քաղցրութեամբ. և յորժամ ընթեռնուն զմարգարէական և զառաքելական և զաւետարանական գիրսն, հրամայէ սարկաւագն հանել երախայիցն և գիւտահարացն և ապաշխարողաց 'ի սուրբ տաճարէն. և արժանաւորք մնան 'ի ներքս, և կատարեն զսուրբ խորհուրդն ։ Իսկ քահանայն լուանայ զձեռսն » ... ։ Աւելորդ է ըսել՝ Թէ Արիսպագացւոյն այս խօսքերուն մէջ՝ յայտնի ակնարկութիւն կայ արարողութեան Թափօրի, որ կատարուի 'ի պատարագի ազգիս ։

Սրբոյն Բարսղի Պատարագամատուցէն առնուած և մուծած են 'ի մերն հետևեալ աղօթք. « Որ հաստատակաց զայս և միաձայն ամենեցուն ուսուցեր աղօթել. — Տէր աստուած մեր, զբազկատարած զաղօթս ծառայից քոց » ։ Սարկաւագին պատուէրն. « Մի ոք յերախայից, մի ոք 'ի Թերահաւատից » ։ Յետ նուիրագործութեանն. « Արդ յիշելով և մեք զփրկագործ չարչարանսն, զկենդանատու խաչելութիւնն ։ — Զքոյս 'ի քոյոցս քեզ մատուցանեմք ։ — Յամենայնի օրհնեալ ես, տէր » ։ Դարձեալ աղօթքն որ յառաջ քան զօրհնութիւնն սրբութեամբ սրբոց.

տօնագրաց վկայութիւնք կը հաստատացընեն թէ Ոսկեբերան համառօտած ըլլայ Պատարագամատոյցը, և թէ այն էր գործածականն 'ի Բիւզանդական եկեղեցւոյն:

*
* *

Պատարագամատոյց մ'ալ կայ յանուն սրբոյն Բարսղի: Կեսարու Կապադովկացւոց հայրապետին նուիրական և բազմահռչակ անունն՝ սիրելի և մեծարեալ էր առ Հայս: Իր Ճարտարախօս և իմաստուն երկասիրութեանց ոչ միայն մեծագոյն մասն մը թարգմանուած են 'ի մեր լեզու, անդստին 'ի հինգերորդ դարէ, ինչպէս պիտի տեսնենք գրուածքիս ընթացքին մէջ, այլ ջերմեռանդն և սրտագրաւ աղօթից շատք՝ անցած են 'ի կարգս եկեղեցական հասարակաց պաշտամանց: Նոյն իսկ սրբոյ Լուսաւորչին ընծայուած Պատարագամատուցին մէջ, խորագիրն 'ի վերջ մատուցման սրբոյ խորհրդոյն կը ծանուցանէ թէ Քահանայն իջանէ 'ի մէջ եկեղեցւոյն և առնէ զարձակման աղօթքն սրբոյն Բարսղի եպիսկոպոսի, որոյ սկզբնաւորութիւնն է « Աստուած ամենատեսող և սրտագէտ »: Զարմանք չէ ուրեմն որ նոյն իսկ այժմու 'ի գործածութեան եղող մեր Պատարագամատոյց գրոց մէջ գտնուին, — ինչպէս իրօք ալ կը գըտնուին, — սրբոյն Բարսղի անուամբ աղօթք, քաղուած իրեն ընծայուած Պատարագամատուցէն, որուն ամբողջ թարգմանութիւնն ալ հասած է առ մեզ 'ի նախնեաց, և որոյ վրայ պիտի խօսինք համառօտիւ:

Վերնագիրն է, « Աստուածային պատարագ ասացեալ սրբոյ հօրն մերոյ Բարսղի եպիսկոպոսապետի Կեսարու »: Եւ կը յաւելու ծանօթութիւն. Ամենայն որ ինչ զգեստաւորելոյն է խորհրդածութիւն՝

հանայէն. « Եւ եղիցի ողորմութիւն ». գոյզն տարբերութեամբ 'ի միջոցին որ յառաջ քան զաւետարանական ողջոյն. և կ'աւարտի մինչև յաղօթքըն « Որ օրհնես »: Ցետոյ կը յաւելու գրչագիրն. Եւ բերեալ Նշխար օրհնէ և բաշխէ ժողովրդեանն ասելով. « Օրհնեցից զտէր յամենայն ժամ »: Քահանայն դառնայ 'ի ժողովուրդն. « Կատարումն օրինաց և մարգարէից » ...: « Օրհնեալ եղերուք 'ի շնորհաց սուրբ Հոգւոյն » ...:

Ընթերցողը որ անշուշտ տեղեկութիւն ունի մեր սուրբ պատարագի արդի արարողութեան, յայտնապէս կը տեսնէ այս համառօտ տեղեկութենէն ալ՝ մեծ նմանութիւնն զոր ունի ընդ Ոսկեբերանեան պատարագամատոյցի: Զեղչմունք կամ յաւելուածք կան ուրեք ուրեք, յորոց ոմանք՝ ինչպէս ըսինք, Թարգմանչաց ժամանակի յատուկ կ'երևնան, և ոմանք՝ անոնցմէ ետքը. բայց թէ երբ կամ որոց ձեռքով, չենք կրնար որոշակի բան մը ըսել. ինչպէս և ոչ զայն սահմանել թէ Ոսկեբերանի անունն կրող Պատարագամատոյցն առ Յոյնս զերծ չէ՞ եղած ժամանակաց փոփոխութիւններէն, մանաւանդ այնպիսի գրքի մը մէջ՝ որուն էական և գլխաւոր մասանց ձեռնամխութիւնն դժուարին կամ անկարելի ալ սեպենք, բայց յետագայք. պատրիարքունք կամ եպիսկոպոսունք, իրենց պէտք երևցած քանի մը փոփոխութիւններ մտցընելու իշխանութիւնն կրնային ունենալ, քանի որ բարձրագոյն իշխանութենէ մը արգիլուած չըլլային, ինչպէս տիեզերական ժողովք, ազգային մասնաւոր սինհոդոսք, և այլն:

Աւելցընենք հոս՝ որ Ոսկեբերան հայրապետի ընծայուած Պատարագամատոյցը՝ ինչուան եօթներորդ դար՝ Առաքելոց կը կոչուէր, և կ'երևնայ թէ ութերորդին սկսած ըլլայ իր անունը կրել: Արևելեայց աւանդութիւնք, արևմտեայց կարծիք, և շատ մա-

բայց գիտելի է զի հռոմին եկեղեցին այսպէս ասէ, զի սուրբ ես տէր Աստուած մեր և քեզ զերկրպագութեան. և յայսմ վայրի սկսանին զերկրպագութեանն. իսկ յայսմ վայրի այս աւելի է եղբարք. այլ թէ կամիք. և դուք այսպէս արարէք: — Մարկուացն ձայնէ. «Սօֆիա, իմաստութեամբ օրթիւ»: Եւ սկսանի եկեղեցին եղանակել. «Սուրբ աստուած, սուրբ և հզօր, սուրբ և անմահ Հայր, Որդի և սուրբ Հոգի, ողորմեա մեզ»: Քահանայն. «Աստուած սուրբ, որ 'ի սուրբս բնակեալ ես, և երեքսրբեան ձայնիւ սերովբէք գովեն զքեզ» ...: Այս առաքելական ընթերցմունք, աւետարան և հանգանակ հաւատոյ: Յետ որոյ գրչագիրն կը ծանօթաբանէ. Մարկուացն 'ի յաւարտել աւետարանին սկսանի քարոզել, որպէս և գրեալ է 'ի սուրբ Բարսղի պատարագն. և յորժամ յառաջադրի խորհուրդն 'ի սուրբ սեղանն, և կատարին ամենայն խորհրդածութիւնք, և ապա ասի Հաւատամքն յիւրում տեղւոջ: Այն մասն որ երեխայից յեկեղեցւոյ դուրս ելլելուն կը պատշաճի, չգտնուիր 'ի մերն. բայց յետոյ միւսանգամ կը սկսի զուգընթանալ ընդ յունին. Դպիրքն եղանակեն. «Որք զքերովբէսն խորհրդաբար կերպարանիմք»: Քահանայն ասէ զաղօթս. «Ոչ ոք է արժանի յըմբռնելոցս մարմնական ախտիւք և ցանկութեամբ» ... Յառաջ քան զողջունատուութիւնն յոյնը կը տարբերի 'ի մերմէն, որով և կը շարունակուի մինչև 'ի կանոնն. ինչպէս նաև յետ սրբագործութեանն. որչափ ալ աղօթք ընդհանրապէս նոյն իմաստներն, և արարողականք ունենան նմանութիւն, բայց ոչ ըստ ամենայնի. որով մերն՝ յատուկ կերպարանք մը կ'առնու, և անտարակոյս մեր նախնի հարց ու հայրապետաց յօրինուածութիւն է, հետևողութեամբ սրբոյ Լուսաւորչին և սրբոյն Աթանասի պատարագամատուցի: Կը միաբանին դարձեալ յոյնն և հայ՝ յաղօթից քա-

կատարի բեկանելոյ հացին և հաղորդութեան որպէս զսուրբ Աթանասիոս. և արձակման աղօթք « Որ օր-հնես զայնոսիկ » ։

Արևելեան և արևմտեան եկեղեցեաց մէջ համբաւեալ է սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի ընծայուածը, և որուն, ինչպէս ըսինք, հայ Թարգմանութիւնն ալ ունինք 'ի Նախնեաց, այսպիսի մակագրով. « Պատարագամատոյց Աստուծով, զոր արարեալ է սրբ-բոյ Յովհաննու Ոսկեբերանոյն Կոստանդնուպոլսոյ պատրիարքին » ։ Եւ կը սկսի այսպէս. Նախ ասի սաղմոս. « Դատ արա ինձ տէր » ... « Խնդրեսցուք հաւատով. և երկոտասանն « Տէր ողորմեա » . Քահանայն ասէ զաղօթքն, « Որ զգեցեալ ես զլոյս որպէս հանդերձ սրբութեան, տէր մեր Յիսուս Քրիստոս » ... ։

Բաց 'ի այս պատրաստութեան աղօթքէն՝ մեր հիմակուան 'ի գործածութեան եղած Պատարագամատոյցին մէջ յՈսկեբերաննեան համանուն գրոց առնուած են մաղթանքն. « Աստուած, Աստուած մեր » ։ Յառաջ քան զխունկ ածել՝ 'ի քահանայէ զուրցուած աղօթք. « Խունկ մատուցանեմ » ։ Յետ « Օրհնեալ Թագաւորութեան » 'ի սարկաւագէ մաղթանք, քիչ շատ նմանութեամբ ։ Այս աղօթք քահանային՝ որ 'ի մերս յառաջ է քան զքարոզել սարկաւագին. « Տէր աստուած մեր, որոյ կարողութիւնդ անքննին է, փառքդ անհասանելի » ։ Այս յետ նորոգ մաղթողական քարոզից սարկաւագին՝ որ չըկան 'ի մերումս, քահանայական աղօթք. « Տէր աստուած մեր, կեցո զժողովուրդս քո, և օրհնեա զժառանգութիւնս քո. զլրումն եկեղեցւոյ քոյ պահեա ... – Որ հասարակաց զայս և միաձայն մեզ ածննեցուն ... – Տէր աստուած մեր, որ կարգեցեր յերկինս զդասս և զզինուորութիւնս » ... ։ Յետոյ կը պատուիրէ. Եւ ասի շարականն ըստ աւուրն խորհրդի.

զՍոկրաթերանի։ Հայկական Թարգմանութիւնն որ հասած է մինչև առ մեզ՝ ուրիշ ամէն յունական Պատարագամատոյց գրքերէն աւելի նմանութիւն ունի առ մեզ 'ի գործածութեան եղողին հետ՝ թէ յարարողականս և թէ 'ի դասաւորութեան աղօթից։ Սկզբնաւորութիւն կամ խորագիրն է. Պատարագամատոյց Աստուծոյ, զոր արարեալ է սրբոյ հօրն մերոյ Աթանասիու պատրիարքին Աղեքսանդրու ։ Ձեռուընիս գտնուած ընտիր երկաթագիր գրչագրի մը մէջ՝ յիշատակութեանց աղօթից ատեն հետևեալ տողերը կը գտնեմք. «...Եւս առաւել վասն հանգուցեալ Թագաւորացն մերոց Հեթմոյ և Լեւոնեանցն, և Թագուհեացն նոցին Զապելի և Կերանի, և արեամբ նահատակացն Թորոսեանց և Պարոնին Կոստանդեայ և որդւոց իւրոց, և Նախնեայ նոցին Ռոբինեանց. ազատութիւն եղբարց մերոց գերելոց, և շնորհ առաջիկայ ժողովրդեանս» ...։

Գրիգորի Աստուածաբանի Պատարագամատուցի յիշատակութեան չհանդիպեցանք իր գրուածոց մէջ. նոյն իսկ անոնց որ անհարազատաբար իրեն ընծայուած են, բաց 'ի Նախասրբեցելոց կոչուածէն, զոր յետոյ պիտի յիշատակենք։ Եթէ ստուգապէս իրենն է, և ոչ ուրիշ համանուն հայրապետի մը արևելեան-յոյն եկեղեցւոյ, ոչ դոյզն պարծանք են մեր հայկական գրականութեան, որ պահեր և հասուցեր է առ մեզ Մեծանուն հայրապետին կորուսեալ երկասիրութեանց մէկը։ Վերնագիրն է. «Աստուածային պատարագ ասացեալ սուրբ հօրն մերոյ Գրիգորի Աստուածաբանի». և կը պատուիրէ. Սկիզբըն արա սրբոյն Յովհաննու. կատարի և Աթանասիու. և սկսանելով աղօթիւք մը որ յառաջ քան զողջունատրութիւն, – ինչպէս յառաջագոյն յիշատակելոց մէջ, – կը շարունակէ մինչև «'ի սրբութիւն սըրբոց», և յետոյ կը յաւելու. Նոյն խորհրդածութիւն

նիւթական և ոչ այնչափ բազմաթիւ փոփոխութիւններով պատուիրեցին գործածելի ընել զայն յեկեղեցւոջ։ Միայն փութանք ըսել որ մեր ձեռքն գտնուած օրինակաց մօտագիր քննութիւն մը՝ առիթ կրնայ տալ այլևայլ երկբայութեանց, և կասկած թէ այդպիսի նուիրական ու մեծարեալ անձի մը անունը կրող գրութեան մը մէջ՝ ժամանակք և դարք զանազան փոփոխութիւններ ու յաւելուածք մուծած ըլլան։ Այսպէս՝ օրինակ իմն, պատարագին վերջին մասը՝ որ սրբոյն Մեսրովպայ ընծայուած աղօթքներով ձևացած է։

***

Սրբոյն Սահակայ Պարթևւի անուամբ ալ Պատարագամատոյց գիրք մը հասած է առ մեզ՝ այս վերնագրով. «Աստուածային պատարագ՝ զոր արարեալ է սրբոյն Սահակայ Հայոց հայրապետին». յորում 'ի սկզբանն կը պատուիրէ. Սկիզբն սրբոյն Արժանաւէ կատարի. մինչև 'ի բերել խորհրդոյն 'ի սեղանն սուրբ։ Քահանային աղօթէ 'ի ծածուկ. «Տէր Աստուած ամենակալ, Աստուած զօրութեանց, որ արժանի արարեր զմեզ օրհնել զքո ահաւոր և զքաղցր անունդ»։

Ասոնցմէ դուրս ունինք 'ի նախնեաց զթարգմանութիւնս Պատարագամատոյցից ընծայելոց սրբոցն Աթանասի, Գրիգորի Աստուածաբանի, Ոսկեբերան հայրապետի, Բարսղի, Կիւրղի Աղեքսանդրացւոյ։

***

Սրբոյն Աթանասի անուամբ գտնուած Պատարագամատոյցը՝ բազմահռչակ է յարևելեան եկեղեցւոջ, հաւասար պատուով մեծարեալ իբրու զԲարսղի և

աշխարհս, և դարձան անդրէն 'ի հող ուստի ստեղծան. սակայն ոչ Թողեր 'ի ձեռանէ բարերար տէր. այլ տեսչութեամբ և շնորհօք միածնիդ քո՝ վերստին ծննդեամբ նորոգեցեր զաւերծուած քո. և բազում կերպարանօք այցելու եղեր արարածոց քոց ... իսկ իբրև եկն կատարած ժամանակիս, խօսեցար ընդ մեզ միածին Որդւովդ քո. որով զաշխարհս արարեր. որ է լոյս փառաց և նկարագիր էութեան քո. և կրէ զամենայն բանիւ զօրութեան իւրոյ. որ ոչինչ յափշտակութիւն համարեցաւ զլինելն հաւասար Աստուծոյ. այլ Աստուածն յաւիտենական՝ յերկրի երևեցաւ և ընդ մարդկան շրջեցաւ. 'ի սրբոյ Կուսէն մարմնացաւ. զկերպարանս ծառայի զգեցաւ. և եղև 'ի նմանութիւն մարմնոյ ակարութեան մերոյ. զի զմեզ արասցէ նմանակից մարմնոյ փառաց իւրոց. զի 'ի մարդոյ մտին մեղք յաշխարհ, և 'ի մեղաց անտի մահ, հաճութեամբ քո և կամօք՝ միածինդ Աստուած՝ որ է 'ի ծոց Հօրդ եղեալ և 'ի կնոջէ. և դատապարտեաց զմեղս 'ի մարմնի ... 'ի գիշերին յորում մատնէր զանձն իւր 'ի մահ, վասն կենաց և փրկութեան ամենայն արարածոց, կոչեաց առ ինքն զաշակերտս իւր, առեալ հաց 'ի սուրբ յանարատ յանապական յամենազօր ձեռս իւր, ցուցեալ քեզ Հօր և Աստուծոյ, օրհնեաց, գոհացաւ, եբեկ ... »

Բոլոր Պատարագամատոյցն այս ոճով, այսպիսի հոգեհրատ սրտիւ և իմաստից վսեմական բարձրութեամբ յօրինուած է. և որովհետև ամենամեծ նմանութիւն ունի մինչուան հիմա գործածուածին հետ թէ կարգի դասաւորութեամբն և թէ աղօթիւք. հաւանական կ'երևնայ թէ Թարգմանիչք 'ի կարգադրութեան եկեղեցական գրոց ազգիս՝ այս սուրբ և նախանձելի ժառանգութիւնն ընդունելով 'ի հօրէն աստուածաշնորհ լուսաւորութեան, միայն քանի մի աղօթք աւելցընելով և լեզուի ու բացատրութեանց

*խաւարման մեր և զլուսաւորիչս եկեղեցւոյ զսուրբն Դիոնեսիոս, զՅուլիանոս, զԱթանասիոս, զԿիւրղոս, զԳրիգորիոս և զհետեւողս նոցին զհովուապետքն մեր որք ուղղափառ խոստովանութեամբ առ քեզ փոխեցան » ։*

*Առոնցմէ ետքը ժամանակի երեցութեան կարգաւ կը հանդիպինք սրբոյն Գրիգորի մերոյ Լուսաւորչէ ընծայուած Պատարագամատոյց գրոց այս խորագրով.* « Պատարագ Աստուծով, սուրբ հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչի . ասի սրբոյն Աթանասի » ։ *Այս վերջին յաւելուածին պատճառն այն է որ Լուսաւորչի անունը կրող համառօտ աղօթքով մը, և անմիջապէս սարկաւագին ողջոյնի հրամանաւը կը սկսի սուրբ պատարագը. ինչպէս ուրիշ հին Պատարագամատոյց գրոց մէջ. և հաւանականաբար նախընթաց աղօթքներն կը լեցուէին 'ի կիր արկանողաց՝ սրբոյն Աթանասի ընծայուածէն ։*

*Համառօտ գաղափար մը տալու համար այս Պատարագամատուցին՝ որ սրբոյ Լուսաւորչին նուիրական անունն կրելովը կրկնակի սիրելի է մեզ՝ մէջ բերենք մասն մը կանոնական կոչուած մաղթանաց, անմիջապէս յառաջ քան զսրբագործութիւն. « Սուրբ սուրբ սուրբ ես արդարև տէր աստուած մեր, և չիք չափ մեծվայելչութեան սրբութեանդ քո. զի արդարութեամբք և իրաւամբք և ճշմարտութեամբ ածեր զայս ամենայն 'ի վերայ մեր, որ ստեղծեր ըզմարդն հող յերկրէ, և 'ի պատկեր Աստուծոյ պատուեցեր զնա. և եդեր զնա 'ի դրախտին փափկութեան 'ի կեանս անմահականս և 'ի հանգիստ բարութեան. այլ զի անցին զպատուիրանաւ քով՝ ճըշմարիտդ Աստուած, և անկան 'ի պատրանս խաբէութեան օձին, մատնեցան 'ի մահ՝ իւրեանց պատուիրանազանցութեամբն. արդար դատաստանաւդ քո մերժեցեր զնոսա 'ի դրախտէն փափկութեան յայս*

թաբանելով. « Եւ քահանայն բեկանէ զհացն և խա-չանիշ տեառնագրէ զբաժակն՝ զոր առնեն Ասորիք. որ ոչ է ուղիղ այս » . և ստուգապէս կայ այս արա-րողութիւնն յանուանեալ Պատարագամատուցի սըր-բոյն Յակոբայ [1] ։ Այս ակնարկութիւնն աւելի հա-ւանականութիւն մը կ՚ընծայէ հայկական թարգ-մանութեանս ասորւոյն վրայ եղած ըլլալուն ։

***

Սրբոյն Յակոբայ արուած Պատարագամատու-ցէն զատ՝ ուրիշ համանուն գիրք մ՚ալ կը գտնենք թարգմանուած 'ի հայ այս խորագրով. « Պատարագ ասացեալ սուրբ հօրն մերոյ Իգնատիոսի Աստուա-ծազգեաց հայրապետին Անտիոքայ՝ փոխեալ յասոր-ւոյն 'ի մերս 'ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ » ։ Կ՚աւանդի 'ի տարեգիրս և 'ի յիշատակս պատմու-թեանց եկեղեցւոյ թէ սուրբ հայրապետս՝ Քրիստո-սի համբարձմանէն քառասնեւօթն տարի ետքը 'ի յոյն լեզու շարագրած ըլլայ զայս Պատարագամատոյց. և զոր յետոյ Եդեսիոյ եպիսկոպոս մը, Յակոբ ա-նուն, թարգմաներ է 'ի բարբառ քաղդէացի ։ Ռընո-տոյ գաղղիացի՝ որ ուրիշ հին Պատարագամատոյց գրոց հետ հրատարակած է և զայս, հարազատու-թեանը վրայ կը տարակուսի, և արժանաւոր չհա-մարիր Եկեղեցւոյ առաջին դարուց ։ Մեր թարգմա-նութիւնն, ինչպէս տեսանք 'ի խորագրին, յասորա-կանէն եղած է. և առանց կարող ըլլալու ճշդել թարգմանութեան ժամանակը, որչափ ալ չհամար-ձակինք բոլորովին համաձայնիլ գաղղիացի քննադա-տին կարծեաց, բայց մէջը օտար ձեռք խառնուած ըլլալը անհերքելի է ։ Այսպէս երբ կը յիշէ « զնա-

[1] Le prêtre brise le pain et fait le signe de la croix.

սրբոյն Յակովբայ Տեառնեղբօր անունը կրող համա-
ռօտ Պատարագամատոյցը, և սկզբնաւորութիւնն է
ըստ հայ Թարգմանութեան. « Աստուած որ ես ա-
մենայնի տէր, զմեզ որ ոչ էաք արժանի, արժանի
արարեր բարերար մարդասիրութեամբ քո, որպէս
զի համբուրելով զմիմեանս 'ի համբոյրս աստուա-
ծային սրբութեան, սրբեսցուք յամենայն աղտեղու-
թենէ հոգւոյ և մարմնոյ » ... և այսպէս յառաջ կը
վարէ, թէպէտև ոչ միշտ հաւատարիմ ճշդութեամբ
ընդ բնագրին. և որոյ ճաշակ մը սեպուի հետևեալ
հատուածը, և 'ի ծանօթութեան գրուած գաղղիա-
կան փոխագրութիւնն յասորւոյն. « Ճշմարտապէս
սուրբ ես, թագաւոր թագաւորաց և պարգևիչ
ամենայն սրբութեանց. սուրբ ես դու և միածին Որ-
դին քո, տէր մեր Յիսուս Քրիստոս. և Հոգին քո
սուրբ որ անքնինդ ես յամենայնի, և անհաս է խո-
րութիւն քո, Աստուած Հայր ամենակալ և յամե-
նայնի կարող, որ ստեղծեր զմարդն 'ի հողոյ, և պար-
գևեցեր զդրախտն 'ի բնակութիւն. և ստուգանե-
լով նմա 'ի պատուիրանաց քոց, անկաւ 'ի փառացն
զոր ունէր. սակայն դու բարերար գոլով՝ ոչ անտես
արարեր. այլ խրատեցեր հայրաբար. կոչեցեր օրի-
նօք և մարգարէիւք [1] » ։

Նշանակութեան արժանի սեպուի թերևս որ յե-
շատակութեան երկար մաղթանաց մէջ. յորում
հայերէնն մեծ տարբերութիւն կը կրէ յասորական
բնագրէն, յետ ասելոյ քահանային. « Եղիցի ողոր-
մութիւնն Աստուծոյ Հօր և Որդւոյ և Հոգւոյն սըր-
բոյ ընդ ձեզ ամենեսեան, » կը յաւելու հայն՝ ծանօ-

[1] Tu est vraiment saint et sanctificateur, o Roi des siècles, saint aussi est ton Esprit qui scrute les mystères. Tu as fait l'homme avec de la terre, et tu l'as placé dans le paradis; lorsqu'il eut enfreint ton commandement, tu ne l'abandonnas point, mais tu l'as dirigé par la voix des prophètes.

Ասոնց մէջ՝ հեղինակաց որոց կ'ընծայուի՝ ժամա-նակագրական կարգաւ, երիցագոյն է սրբոյն Յակովբայ Տեառնեղբօր անունը կրողը։ Այդ անուամբ ուրիշ Պատարագամատոյց գիրք կը գտնուին նաև առ այլ հին քրիստոնեայս։ Մին կը արուի սրբոյն Յակովբայ Կրտսերոյ, զոր բաց յայլոց՝ ինչպէս կը նշանակենք 'ի ծանօթութեան[1], հրատարակած է նաև Փաբրիկիոս 'ի գիրսն Codex apocryphus Novi Testamenti. և անոր վրայ խօսող հին մատենագրաց մէջ կը յիշատակէ նաև զՍահակ պատրիարք Հայաստանեայց 'ի մետասաներորդ դարու։

Ուրիշ Պատարագամատոյց մ'ալ կայ ընծայեալ Յակովբայ եղբօր Տեառն, զոր Ռընոտոյ Թարգմաներ է յասորւոյն և հրատարակեր։ Երրորդ մ'ալ այն վերնագրով. Համառօտեալ Պատարագամատոյց սրբոյն Յակովբայ եղբօր Տեառն, զոր կարգաւորեաց Գրիգորիոս պատրիարք արևելից, 'ի ձեռինս Հայոց մեծաց, յամի Յունաց 1903, 'ի 1591 (?) թուականութեան Փրկչին։

Մեր մատենագրութեան մէջ հայ Թարգմանութեամբ առ մեզ հասածը՝ այս երրորդն է. միայն սա տարբերութեամբ որ նախակարգեալ քանի մը աղօթք ալ կը գտնենք 'ի հայումս, որ կը պակսին առ այլս։ Վերնագիրն է. Պատարագ սրբոյն Յակովբայ եղբօրն Տեառն առաքելոյ, և կը շարունակուի մինչև 'ի լուացումն ձեռացն՝ փոխ առ փոխ քարոզիւք և աղօթքներով 'ի սարկաւագէն և 'ի քահանայէ, որոնք՝ ինչպէս ըսինք, միայն մեր Թարգմանութեան մէջ կը տեսնուին. և կը ժամանեն մինչև յողջունատուութիւնն։

Աստի կը սկսի այլոց քրիստոնեայ ազգաց ծանօթ

[1] Liturgiæ Sanctorum Patrum, տպագրութիւն Փարիզու (1560). Liturgiarium Orientalium Collectio, և 'ի Bibliotheca Patrum maxima, տպագիր Լիոնի։

հաննու է արարեալ Մանդակունւոյ, որ չորեքտասան թիւ էր 'ի սրբոյն Գրիգորէ։

« Այս ամենայն 'ի հրամանէ սրբոյն Իսահակայ Պարթեւի՝ ձեռամբ Մովսիսի գրչի նորոգեցաւ 'ի Հայս »։

***

Ամենէն առաջ արժան է որ նուիրենք մեր համառօտ տեսութիւնը՝ Պատարագի սուրբ խորհրդոյն մատուցման յատուկ Պատարագամատոյց կոչուած գրոց։

Որչափ անտարակուսելի է որ այդ սուրբ խորհրդոյն մատուցումն ու կատարումն կար առ մերոն անդստին յառաջին աւուրց հաստատութեան քրիստոնական սուրբ կրօնից, բայց ինչպէս լեզուն՝ ասանկ ալ հին ձեւը անծանօթ է մեզի։ Առիթ ունեցանք վերագոյն յիշատակելու թէ երկու, իրարմէ տարբեր լեզուով, Պատարագամատոյց գրոց կիրառութիւն հաւանական կ'երեւնան մեր ազգին նախնական քրիստոնէութեան պատմութեան մէջ. մին յասորի լեզու, անշուշտ յաւուրց անտի Թադէի և Բարթողիմէոսի, և երկրորդն 'ի յոյն՝ զոր հաւանականաբար սուրբ Լուսաւորիչ հետը բերած է 'ի Կեսարիոյ. և թէ այս երկուքին ալ գործածութիւնը հաւանելի կ'երեւնայ, ասորականն Հայաստանի այն մասին մէջ շարունակուելով՝ որ Պարսից իշխանութեան սահմանակից էր, և ուր իր քաղաքական օրինաց հետ՝ ազդեցութիւն ունէր նաև բանական կամք. և միւսն՝ ուր աւելի յունական տարր և դպրութիւն կար, և կը բարգաւաճէր։

Բայց յերկու Պատարագամատոյց գրոց՝ զոր կ'ենթադրենք, նախնեաց թարգմանութեամբ հասած են մինչև առ մեզ զանազան համանուն գրութիւնք։

տանել, որ է Հոգեհանգիստն, և զՔահանայաթաղն՝ որ ունի ութևտասն աւետարան՝ արարեալ է սրբոյն Եփրեմի խորին Ասորւոյ 'ի Նիկոմիդացւոց քաղաքին՝ յերկրորդ ամի հայրապետութեան իւրոյ. և Ղազար (այլ օր. Ղազարիկ) Թարգմանիչ եբեր 'ի Հայս, յերեքտասան ամի Թարգմանութեան սրբոյն Սահակայ Պարթևւի առն Աստուծոյ, որ էր նախանձախնդիր կարգաց եկեղեցւոյ։ Իսկ վասն Տէառնականի և Աղօրհնէիցն, սրբոյն Յուստոսի է արարեալ, որ էր չորրորդ եպիսկոպոս Երուսաղեմի 'ի սրբոյն Յակովբայ։ Իսկ Մաքեմարկէքն երեք կարգ է. մին՝ Թէոդորոս եպիսկոպոս Միգարէ Պամփիւլացւոց քաղաքին արարեալ, հրամանաւ սրբոյն Անտոնի. երկրորդ՝ Թեբայեցւոց Ամոնի սուրբ հօրն. երրորդ՝ Սկիւթացւոց լերին։ Իսկ վասն Գրակարգացաց և Կիսասարկաւագաց և Նկարեալ եկեղեցւոյ, և յետոյ դուռն եկեղեցւոյ գնել, և զնշխարս սրբոցն 'ի հանգիստ փոխել. այս ամենայն յիշատակ է մեզ 'ի սրբոյն Գրիգորէ մերոյ Լուսաւորչէ։ Իսկ վասն Քահանայօրհնէիցն՝ սրբոյն Սահակայ է արարեալ յառաջին ամի հայրապետութեան իւրոյ. (այլ օր. սրբոյն Սահակայ գծեալ յետ քսան և մի ամի եպիսկոպոսութեան իւրոյ) 'ի Նաւասարդի ամսեանն. որ օրն մի էր և յիշատակ սուրբ Կարապետին. արար և զՔահանայթաղէքն, որ ունի եօթն աւետարան. այլ և զԱշխարհաթաղն 'ի Քաղաքագլուխ (այլ օր. յԱրարատ գաւառի 'ի Վաղարշապատ քաղաքի) 'ի վկայարանս սրբոց Հռիփսիմեանց, յետ հարիւր ամսաւան ամի սրբոյն Գրիգորի. զի մինչև ցայն վայր հնումն վարէին։ Արար և զգիշերոյն քարոզսն և զնոցին չորս աղօթսն։ Իսկ զՀիմնարկէքն և զԵկեղեցւոյ օրհնէքն և զօրհնել Տաճարի և ժամահարի, և ակի և մաղզմայի և հանդերձի սպասու և ուրաղան, և միրոնութիւն առնել և խաչ օրհնել, և պսակ գնել և զքառասնորդաց քարոզսն՝ զայդ Յո-

լի և անմահանուն վարդապետաց այդ մեծ եկեղեցւոյն. բայց իբրեւ աննման հանճարոյն, սրտին ու աստուածեռանդն հոգւոյն բազմապատիկ արդասեօքն ճոխացընելով և զարդարելով զայնոսիկ։

Մէջ բերենք նախ այն ցուցակը որ Օրհնութիւնաբեր կը կոչուի, և որ ինչուան առ մեզ հասնելով՝ այլևայլ կերպարանափոխութիւնք, ու երբեմն՝ նաև ոչ այնչափ հարազատ յաւելուածներ ընդունած է. և յանուանէ կը յիշատակէ՝ ինչ որ եկեղեցական բարեկարգութեան ու պաշտամանց բարեզարդութեան համար պատշաճ և կարևոր Թարգմանութիւնք 'ի յունէ, ու երբեմն նաև յասորւոյն՝ Թարգմանիչք մեր հետերնին բերեր էին 'ի Հայաստան։

« Երանելին Մովսէս Խորենացի, Թարգմանիչ, որ էր գրիչ սրբոյն Սահակայ՝ որդւոյն սրբոյն Ներսեսի։ Յետ հարիւր մետասան ամին սրբոյն Գրիգորի՝ եղև սկիզբն Թարգմանութեան 'ի հայերէն լեզու։ Իսկ 'ի յերկրորդում ամի Թարգմանութեան՝ առաքեաց սուրբն Սահակ 'ի յԱնձիանձու քաղաքն, և ետ բերել զՍերմօրհնէքն զկալի և զհնձանի, զոր արարեալ էր 'ի հինգերորդ ամի հայրապետութեան՝ սրբոյն Գրիգորի Աստուածաբանի։ Իսկ զկանոնն Ջուր օրհնելոյն՝ սրբոյն Բարսղի է արարեալ յեօթներորդ ամի հայրապետութեան իւրոյ 'ի Կեսարիա Կապադովկացւոց. և յԵրուսաղէմ քաղաքի 'ի հոսանս Յորդանանու հանդիպեցաւ Խոսրով Թարգմանիչ՝ հրամանաւ սրբոյն Սահակայ. և անդ գրեաց և եբեր 'ի Հայս։ Իսկ Ապաշխարող կարգել և արձակել 'ի մեծի հինգշաբաթին՝ երանելւոյն Կիւրղի Երուսաղեմացւոյ գրեալ 'ի դուռն սրբոյն Սիոնի՝ 'ի քսան և մի ամի հայրապետութեան իւրոյ. յաւուրն յորում ընծայեցուցանէր զԵդովմայեցիսն (այլ օր. զԵգիպտացիսն) յԱստուած. և Արջեւան և Կորիւն Թարգմանիչք բերին 'ի Հայս։ Իսկ զԱգապն սուրբ

պեան տպագրութիւններն բաղդատել՝ յունականին և ուրիշ նախնի թարգմանութեանց հետ։ (Հմմտ. Th. Hartwel Horne, An introduction to the Critical Study and Knowledge of the Holy .Scriptures, 1877, tome IV).

Ծանօթ են մեր ընթերցողաց այլևայլ տեղուանք եղած տպագրութիւնք հայկական աստուածաշունչ գրոց[1]։

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՇՏԱՄԱՆՑ ԳԻՐՔ

---

Սուրբ Գրոց Թարգմանութենէն ետքը՝ եկեղեցական բարեկարգութիւն և հասարակաց հոգևոր պաշտամանց անհրաժեշտ հարկ և կարգաւորութիւնն, պէտք էր որ գրուէր սրբոց Թարգմանչաց աստուածասէր և աստուածախօս միտքն ու սիրտ, և նպատակ ըլլար իրենց նախապատիւ փութաջան վաստակոց առ այն։ Ինչուան առ մեզ հասած հետաքննական ցուցակ մը կը հաւատարմացընէ թէ և յայնմ, — իրենց պաշտաման և կոչման էական գործոյն մէջ, — ամէն եռանդ, սիրտ ու աշխատանք երևցուցին։ Անկէ դուրս, ակնարկ մը միայն մեր եկեղեցական պաշտամանց անզուգական գրոց, բաւական է յերախտապարտ մեծարանս այն վեհագոյն անձանց որ այդպիսի հրաշալի երկամբք ճոխացուցին զեկեղեցի հայաստան աշխարհի, և որոց հաւասարն դժուարին է գտնել, — նաև վկայութեամբ աննախանձ օտար քըննադատից, — յարևելս և յարևմուտս։ Տարակոյս չիկայ որ նաև այս մեծ ձեռնարկին մէջ օժանդակեցան մեծապէս 'ի յունական արտագրութեանց պանծա-

[1] ՄԱՏԵՆԱԳԻՏ. ՀԱՅԿԱԿԱՆ, 53-59։

լեայ օրինակք, համաձայն էին ընդ այժմեան վաւերացեալ օրինակի սուրբ Գրոց։ « Հայկական գրականութեան ամենէն աւելի նշանաւոր արտադրութիւնն՝ սուրբ գրոց թարգմանութիւնն է, — կ՚ըսէ եւրոպացի արդի հայագէտ բանասիրին մէկը. — փառք իր դարուն, որ հայ ազգին համար ամենէն արդիւնաւորն եղած է, և որ պատմութեան մէջ անմահացաւ՝ Թարգմանչաց դար կոչուելով։ Եթէ կայ թարգմանութիւն մը սուրբ գրոց որ եկեղեցական հաստատութիւն (sanction) ընդունած է, առանց տարակուսի՝ հայկականն է։ Ոչ միայն ընդհանուր գործածութեամբն ամէն տեղ մուտ գտած, հայ եկեղեցւոյ բարձրաստիճան անձանց ձեռքով սկսուած և 'ի գլուխ տարուած, այլ նաև՝ ինչպէս ոմանք կը համարին, յԱշտիշատ գումարուած ազգային ժողովոյն մէջ ('ի 434) վաւերացած »։

***

Հետաքննական և մեծապէս ընդունելի պիտի ըլլայ արևմտեան բանասիրաց՝ հայկական թարգմանութեանս՝ իրենց ծանօթ լեզուաւ մը փոխադրութեամբ հրատարակութիւնը։ Մեր վաստակաւէր և բազմահմուտ ծերունեաց մէկուն (Հ. Եղիա Վ. Թոմաճան) այսպիսի երկասիրութիւն մը 'ի լատին՝ դեռ տպագրութեամբ լոյս տեսած չէ։ Եւրոպացի գիտնոց այս նկատմամբ աշխատասիրութիւնք՝ մասնականք են և ոչ այնչափ գոհացուցիչք։ Յիշենք զԿրիէսպախ, որ 'ի 1715 ըրած Նոր կտակարանի տպագրութեան մէջ՝ աւելցուց հայերէն ընթերցուածոց տարբերութիւններն. նոյնը ըրաւ իրմէ ետքը Փրիտոյ Թրէժէլ՝ Սորպոնի վարդապետը, եօթանասնից թարգմանութեան մեծ հրատարակութեան մէջ։ Բրիտանական մուսէօնի ուսուցիչներէն Կ. Ռիէօ՝ Ոսկանեան և Ջոհրա-

գոյն ներվարժման համար հարկ է որ սեպենք՝ ոմանց 'ի նոցանէ մինչուան 'ի Պաղեստինացւոց աշխարհն ըրած ճանապարհորդութիւնը։ Ասով կրկնակի և երեքպատիկ կ'ըլլայ իրենց երկասիրութեան կարեւորութիւնն ու յարգ՝ 'ի մասնաւորի ազգային, և ընդհանրապէս եկեղեցական բանասիրութեան համար։ Գործոյն կատարելութիւնը այս երեք իրարմէ տարբեր լեզուաց վրայ եղած այլևայլ թարգմանութեանց և համեմատական աշխատութեան մէջ էր. որով իրենց աշխատութիւնը խառն՝ ինչպէս սովոր է ըսուիլ, կերպարանք կ'առնուր. նախ ասորականին վրայ. յետոյ յունին; և երրորդ՝ յԱղեքսանդրիա և այլուր դեգերանօք՝ ընթերցուածոց համեմատութեան կարեւոր գործով պարապելով՝ յընտրութիւն և 'ի հաւաստարմութիւն իրենց թարգմանութեան։ Սուրբ գրոց քննադատական ուսմամբ զբաղողին յայտնի կ'երևնայ այս, երբ մեր թարգմանութիւնը պարզապէս օրինակի մը հետևողութեամբ եղած չիգտներ. այլ յունականէն զատ՝ որ գլխաւոր առաջնորդն է, տեղ տեղ կը տեսնէ նաև ասորի և երբեմն նաև հեբրայական օրինակաց ազդեցութիւն, աղեքսանդրեան գրչագրին հետ նմանութիւնք, որոգինեան ընթերցուածք. և ասոնց ամենուն մէջ ամենաճարտար և իմաստուն ընտրութիւնք։ Յունական ընկալեալ կամ վաւերացած արդի օրինակին և միւս հնագոյն գրչագրաց մէջ՝ միայն 'ի չորս աւետարանս, երկու հարիւր յիսուն և աւելի տարբերութիւնք ընթերցուածոց կը գտնուին։ Ասոնցմէ քառասունուերկու՝ 'ընդունուած են 'ի մեր գրչագիրս, ու հարիւր իննըսունևչորս մերժուած՝ համաձայնելով վաւերական օրինակին. տասը տեղ անորոշ, և կամ ընթերցուածք կը պակսին։ Ասով մարթ է հաստատել թէ Թարգմանչաց ձեռքն եղած օրինակք՝ զոր 'ի Բիւզանդիոյ ձեռք բերին, Եւսեբեայ ու սրբոյն Պամփիւ-

*ընթերցողաց անդրադարձընել թէ որպիսի պատիւ է այս մեր դպրութեան, և քանի պարծանք իրենց բազմաքիրան երկամբք և նուիրական գրչով զայն մեզ աւանդող Թարգմանչաց։*

*Հայկական Թարգմանութեան այս յարգը այնչափ աւելի կը յաճախէ և կ'առաւելու, որչափ արժանաւոր քննութեան առնուին ամենայն նախընթաց և հետևորդ պարագայք և հանգամանք՝ որոց մէջ մտածուեցաւ և 'ի գործ դրուեցաւ այն։ Արդէն համառօտիւ յիշատակեցինք՝ թէ անոր պակասութիւնը իրաւամբ մեծ աղէտ մ'էր հայաստան եկեղեցւոյ. և զայն դարմանելու համար՝ սուրբքն Սահակ և Մեսրովպ ամէն դժուարութեան առջև չկասեցան՝ եւ չկեցան. և օրինակելի անձնանուիրութեամբ և եռանդեամբ կազմեցին աշակերտաց ընտիր խումբ մը, որ հաւասար սրտով և հոգւով՝ իրենց գործակիցք և սատարք երևցան։ Այսպիսի ցանկալի նպատակի մը հասնելու համար կրկին և կրկին երկար և տաժանելի ուղևորութիւնք քաղցրացան իրենց. արքունի և պատրիարքական իշխանութեանց 'ի Բիւզանդիոն՝ աղերսք, խնդրուածք և պաղատանք ուղղուեցան թղթով և անձամբ՝ աստուածաշունչ գրոց ընտիր օրինակներ ձեռք ձգելու. և հասան այդ փափաքին։ Կրնային այդ կայսերական գանձէն հանուած օրինակաց հաւատարմութեան վրայ վստահանալ, և չեղան. այլ լաւագոյնին փափաքով և սիրով նորանոր աշխատութեանց, քննութեանց և բաղդատութեանց ձեռք զարկին։ Այդպիսի հետապնդութեան և փութոյ բնական հետևանք էր՝ իրենց գործոյն կատարելութիւնը։*

*Երկրորդ առաւելութիւն մ'ալ այս պանծալի աշխատութեան՝ Թարգմանչաց գիտութիւնն էր ոչ լոկ իրենց յատուկ ազգային լեզուին, այլ և ասորւոյն, յունականին ու նաև հեբրայականին. յորում լաւա-*

տութիւն կը համարին սրբոյն Նիկոնի՝ որ յեօթներորդ դարու, մէկ խօսքը 'ի Թուղթս իւր, յորում Ղեւոնդեայ Կեսարիոյ Գամրաց հայրապետին համար կ'աւանդէ թէ « զհայրապետն Հայոց զԳրիգորիոս՝ զմեծամեծար գիտութեամբ սրբազան տառից, և առաքինակրօն վարուքն հռչականուն յեկեղեցւոջ, ձեռնագրեաց յեպիսկոպոսութիւն » :

Այսչափ խառնակ էր և շփոթ՝ եւրոպական բանասիրութեան գաղափարը մեր աստուածաշունչ գրոց թարգմանութեան և թարգմանչաց վրայ. և երկար ատեն մնաց նոյն վիճակին մէջ: Բայց մէկէնիմէկ մեծ յեղափոխութիւն կրեցին իրենց կարծիք՝ երբ հայ լեզուին ուսումն և դպրութիւն սկսան աւելի հետաքննելի ըլլալ, և սուրբ գրոց գրչագիր օրինակք և տպագրութիւնք ծանօթացան: Այդ դէպքը, — որուն առաջին փորձն և փոյթ 'ի Գաղղիոյ սկսելով, անտի յԱնգղիա, 'ի Գերմանիա և յԻտալիա և այլուր տարածուեցաւ, — մեծ լոյս մը ծագեց իրենց համար անծանօթ մեր գրականութեան վրայ, և մեծագոյն համարում մը այն բազմաթիւ թարգմանութեանց՝ զոր կ'ամփոփէ յինքեան. մանաւոր հին օրինակաւ՝ սուրբ գրոց ամենընտիր փոխագրութեանն անգատին 'ի հինգերորդ դարէ: Իրաւամբք մեծագին գանձ մը երևցաւ այն սրբագիր բանասիրութեան. զոր բաղդատելով ուրիշ հին լեզուներով առ մեզ հասած նախնական թարգմանութեանց հետ, չվարանեցան խոստովանիլ թէ հայկական օրինակը կրնայ ծառայել՝ ոչ միայն առ այլս գտնուած ընթերցուածոց մթութիւնը պարզելու, տարակոյսները ստուգելու և ճշդելու, այլ նաև տեղ տեղ զանոնք սրբագրելով ուղղելու[1]: Հարկ չէ մեր

[1] M.r Piques, docteur de Sorbonne, croyait la version arménienne très-propre à réformer le texte grec, sur lequel a été faite. ( MIGNES Diction. de la Bible ).

ւսման հետապնդութիւնը և փոյթ ինձ կը յանձնարարէր՝ մանաւորապէս անոր համար, որ բաց 'ի Յունաց ուրիշ ազգ մը չունէր այդպիսի հին և ընտիր թարգմանութիւն մը սուրբ գրոց »։ Նոյն Հոթթինկէր՝ իր Եկեղեցական տարեգրութիւնք գրուածքին մէջ կը վկայէ թէ քրիստոնեայ ժողովրդոց մէջ առաջիններէն են Հայք. և պատճառ կը բերէ թէ առաջինք եղած են իրենց բնիկ լեզուով սուրբ Գրոց ընտիր թարգմանութիւն մը ունեցողք յետ Յօթանասանից անուամբը ծանօթ փոխադրութեան։

Ակոլութոս առանց կարող ըլլալու ստուգութեամբ ճշդել թէ այդ հայկական թարգմանութիւն որու ձեռքով և աշխատանօք եղած է, նախընթաց և իր ժամանակի բանասիրութեան կարծիքն հետազօտելով մէջ կը բերէ։ Նախ Անգեղոս Ռոքքա իտալացւոյն ենթադրութիւնը, որ Վատիկանեան մատենադարան կոչուած երկասիրութեան մէջ, այս թարգմանութիւնը կ'ընծայէ ուրիշ հնոց հետ, ինչպէս վերը յիշեցինք համառօտիւ, Ոսկեբերան հայրապետի, եթէ ոչ ամբողջ՝ գէթ սաղմոսաց գրքին և նոր կտակարանի։ Նոյն սրբոյն կուտայ նաև Քսեստոս Սենացի 'ի Սրբազան մատենադարանի իւրում։ Ասոնց կարծեաց հետևողք են նաև վերոյիշեալն Հոթթինկէր, Փֆայֆէր, (Pfeiffer), Կէրհարդ (Gerhard), Հարդինկ (Harding), ծիրանաւորն Բելլարմին, Կրէթսէր (Gretser), և այլք։

Ուրիշներն ալ, որոց պարագլուխ է Դանիէլ Հուետիոս, մասամբ Ոսկեբերանի, և միւսոյ մասին ալ թարգմանիչ կը համարին զնախկին հայրապետն հայաստան եկեղեցւոյ զԳէորգ, (փոխանակ կոչելու զնա Գրիգոր), որ 'ի խնդրոյ և 'ի քաջալերիչ խրախուսանաց Տրդատայ արքայի, յետ ընդունելոյ զհաւատս քրիստոնէութեան, ձեռք զարկած ըլլայ այս աշխատասիրութեան։ Իրենց այս կարծեաց հաստա-

փաքեր է իմանալ թէ արդեօք Հայք ունի՞ն զաստուածաշունչ գիրս տպագրեալ յիւրեանց լեզու: Գիտէի, կ'ըսէ, Քիրխէր Աթանասի գրուածներէն թէ սուրբ գրոց վաղեմի թարգմանութիւն մը կայ 'ի հայ լեզու, և թէ անոր մէկ գրչագիր օրինակն կը պահուի 'ի Վատիկան. բայց ձեռքէս անցած գրուածոց մէջ մասնաւոր տեղեկութեան մը հանդիպած չէի. ու բազմահմուտն Վալթոնի արեւելեան լեզուաց վրայ ըրած և հրատարակուած բանախօսութեանը մէջ կարդացեր էի թէ յԱնգղիա այլեւայլ գրատանց մէջ սուրբ գրոց հայկական թարգմանութեան օրինակք կը գտնուին, ինչպէս նաև գրչագիր մ'ալ իր քովը, զոր միտք ունէր իր բազմալեզուեան աստուածաշունչ գրոց տպագրութեան մէջ յեռուլ, թէպէտև այս փափաքը չիկրցաւ 'ի գործ դնել: Զէի, կ'ըսէ, անտեղեակ որ 'ի Հռովմ ութածալ գրիւք տպագրուած հայ սաղմոսարանի օրինակք կը գտնուէին յԱքսոնեան մատենադարանի, ինչպէս նաև աւետարանաց տպագիրք: Եւ թէպէտ քիչ տարի յառաջ իրենց եկեղեցւոյն ծախքով եղած աստուածաշունչ գրոց տպագրութիւն մը ըլլալն կը հաստատէին, բայց անոնց օրինակք 'ի Հայաստան փոխադրուելով, եւրոպացի բանասէրք կամ քիչ կամ ամենևին օգտուած չէին անկէ: Գրիգորենց խոստացաւ Ակոլութոսի՝ այդ տպագրելոյն մէկ օրինակը բերել տալ իրեն համար 'ի հայրենեացն, և կատարեց իր խոստումը. զոր գերմանացի արեւելագէտն իբրև անգուգական պարգև մը համարելով, փութաց անոր վրայէն՝ մեր 'ի վեր անդր յիշատակած երկասիրութիւնն հրատարակել: Անոր ընդարձակ և հմտական յառաջաբանին մէջ Հոթթինկերի՝ Արևելեան մատենադարան կոչուած և իր դարուն և ժամանակին համար հռչականուն գրքի մը հեղինակին հետևեալ խօսքերը մէջ կը բերէ. «Կը յիշեմ, կ'ըսէ, թէ ինչպէս հայ լեզուի

պիսի բռնադատութիւն մը ոչ 'ի հոգևոր և ոչ 'ի քաղաքական իշխանութենէ տեղւոյն։ Իր խօսքերէն հաւանական կ'երևնայ գուշակել թէ աւելի յազգայնոց ստիպուէր է, ենթադրելով անշուշտ թէ աւելի ընդունելութեան կը հանդիպի այդ բազմածախ և բազմավաստակ հրատարակութիւնն։ Այդ վախճանաւ բոլոր տպագրուած օրինակք շուտով փոխադրուած են յարևելս, վաճառմամբ ծախքն հանելու և 'ի պահանջանաց պարտատեարց ազատելու համար։ Թէ իր և թէ ժամանակակցացը յիշատակագիրք կը հաւատարմացընեն զայս։

***

Թէպէտև Եւրոպիոյ մէջ եղաւ աստուածաշունչ գրոց հայ թարգմանութեան առաջին հրատարակութիւնը, բայց դեռ եւս անծանօթ էր այն կամ մասամբ և կամ ըստ բոլորին՝ ժամանակին եւրոպական բանասիրութեան։ Ասոր հաւաստիքը կը գտնենք 'ի 1680 հրատարակուած, ոսկանեան տպագրութենէն տասնըչորս տարի ետքը, Աբդիաս հայերէն կոչուած և 'ի Լիփսիա Գերմանիոյ տպագրուած գրքի մը մէջ։ Հեղինակն՝ որ գերման առաջին հայագէտներէն կը սեպուի, Անդրէաս Ակոլութոս (Acolutho), 'ի սկիզբն այդ համառօտ տետրակին դրած յառաջաբանին մէջ կը պատմէ թէ չորս տարի յառաջ քան զհրատարակութիւն իւր երկասիրութեան, հանդիպեր է 'ի թանգարանին Լփսիոյ Յակոբ Գրիգորենց կոչուած հայազգի քահանայի մը, որ յետ երկար դեգերանաց և ճանապարհորդութեանց յարևմուտս, կը սպասէր յայնմ քաղաքի իւր մեծաւորաց հրամանին՝ առ 'ի դարձ առնել 'ի հայրենիսն։ Ուրիշ այլևայլ տեղեկութիւններէն զատ՝ զոր Ակոլութոս ընդունէր է 'ի Գրիգորենց քահանայէ իր հայրենեաց վրայ, փա

կամ 'ի Կոստանդինուպօլիս կատարել. զի ունիմ զամենայն գործիք որ պիտոյ են վասն այս բանից » : — Անկիւրացիէն ետքը և նոյն վախճանաւ եկած է 'ի Հռոմ Նաև Ոսկան վարդապետ Երևանեցի, միւս այլ բազմաշխատ և բազմարդիւն գործիչ և փափաքող յառաջադէմ զարգացման արուեստիս յազգի Հայոց. « Բազմաւ վշտիւ, կ'ըսէ, և տառապակրութեամբ եկեալ հասի 'ի սահմանս Իտալիոյ, յերկիրն Թօսգանու, 'ի քաղաքն Իլիվոռնայ. ներնախնում նուաղում զոչ ոք գտի ինձ զօժանդակ. սակս որոյ թողեալ գնացի 'ի Հռոմայ. գոնեա անդ գտցի յաջողութիւն գործառնութեանն. և անդ եւս ոչ եղև ինչ մխիթարութիւն օգնականութեան գործոյս, վասն յոգունց պատճառաց ներհակականաց, թէ 'ի մերայնոց ազանց, և թէ ինքեանց կանոնաց և սահմանաց » :

Ոսկանայ այս վերջին խօսքերը՝ զոր նշանակեցինք, յայտնապէս կը ցուցընեն թէ ինչ պատճառաւ իր ձեռքով և ջանիւք եղած յԱմսդերտամ Հոլանտիոյ նախընծայ տպագրութիւն հայկական աստուածաշունչ մատենին՝ ոչ յամենայնի հաւատարմութեամբ, և 'ի գրչագրաց մերոց տարբեր կերպարանօք ընծայեցաւ 'ի լոյս : Արդէն գիտենք թէ Ոսկան վարդապետ բաւական նեղութիւն և դժուարութիւն կրած է 'ի Մարսիլիա Գաղղիոյ ազգային տպագրատուն մը հաստատելու, և հոն եկեղեցական մեր գրքերը հրատարակելու վախճանաւ. բայց չենք կրնար որոշակի բան մը ըսել՝ թէ ինչու աւելի ազատ և անկոխ սեպուած երկրի մը մէջ բռնադատուած ըլլայ այսպիսի փոփոխութիւններ մուծանել յաստուածաշունչ գիրս, և այնպէս հրատարակել զայն 'ի 1666, ուր իր ձեռքով նոյն քաղաքին մէջ տպագրուած ուրիշ գրքերու նկատմամբ՝ ոչ ինք և ոչ իր յաջորդք յարուեստին չեն ունեցած այդ-

այդպիսի ընթադրութեան, բայց թէ գլխակարգութեանց համեմատութիւնք, և այն խիստ ցանցառ և 'ի լուսանցս։ Եթէ եղած ալ ըլլար այդպիսի ջանք մը, և յոմանց հաւանութիւն ալ գտած, անշուշտ իրենց բողոքոյ ձայնը պիտի բարձրացընէին այն նորութեան և եկամուտ սովորութեան դէմ Հաղբատացիք և Տուտէորդի, Մխիթար Սկեւռացի (+ 1340), Յովհան Որոտնեցի (+ 1280), Վարդան Սեւլեռընցի, Տաթեւացին Գրիգոր (1340-1410) որ իրենց գիրքովը և գրուածներով ունէին բազմաթիւ կուսակիցք, և պարտք մը սեպած էին յամենայնի անխտիր շահատակել և ոգորել 'ի պաշտպանութիւն ազգային իրաւանց և առանձնաշնորհութեանց։

***

Յիշեցինք յառաջ թէ երբ Ազարիա կաթողիկոս Սսոյ ղրկեց զՅովհաննէս զոմն եպիսկոպոս 'ի Հռոմ աստուածաշունչ գրոց տպագրութիւնն ընել տալու առաջարկութեամբ և թախանձանօք առ Գրիգոր ԺԳ քահանայապետ, տուաւ ձեռքն նոյն սուրբ մատենից գրչագիր ընտիր օրինակ մը, փափաքելով որ անոր համեմատ ըլլայ տպագրութիւնն. և հաւանական է ենթադրելը թէ նոյն օրինակն ըլլայ որ ցարդ կը պահուի 'ի Վատիկանեան Մատենադարանի։ — Կը գտնենք յինքնագիր յիշատակարանի Յովհաննու Անկիւրացւոյ՝ որուն անունը ծանօթ է հայկական տպագրութեան պատմութեան մէջ ունեցած արդեամբք, հետեւեալ տեղեկութիւնը. « Ես Յովհաննէս Անկիւրացի, որ Ֆրանկն Ճիվաննի Մաւլինօ կոչէ, եկի 'ի մեծն Հռովմ Թվին Հայոց ՌԶԶ և կեցայ մինչև ՌԼ վասն պաշտմանց առնելոյ զսուրբ աստուածաշունչն. բայց ոչ կարացի աւարտ առնել վասն բազում պատճառաց. բայց յոյս ունիմ 'ի Վանատիկ

գտանալ։ Աղօտ ծանօթութիւն մը կար մեր թարգմանութեան գոյութեան. բայց այնչափ անհարազատ և վրիպական, որ ինչուան ոմանք սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի երկասիրութիւն համարած են զայն, ժամանակն ու տեղն ալ ճշդելով՝ թէ երբ սուրբ հայրապետն աքսորուած էր արքունական հրամանաւ 'ի Կոկիսոն փոքուն Հայոց, 'ի խնդրոյ հայազգեաց տեղւոյն թարգմանած ըլլայ 'ի հայ սուրբ Գրոց ամբողջութիւնն և կամ անոր մէկ մասը։

Խաչակրաց ժամանակ՝ թէպէտ յաճախագոյն էին վերաբերութիւնք մերոցն ընդ արևմտեայց, և փոխադարձ ծանօթութիւնք, բայց թէ ուրիշ վարդապետական կամ նոյնպիսի համարուած խնդրոց հետ, որ իրարմէ բաժանման կամ խտրութեան առիթք սեպուած էին, յուզուա՞ծ է արդեօք յարևմտեայց՝ հայկական աստուածաշունչ գրոց վաղեմի թարգմանութեան՝ վաւերական ընդունելութեան խնդիր կամ տարակոյս մը, տեղ մը չենք հանդիպած յիշատակութեան. և չենք ալ կարծեր որ երբեք եղած ըլլայ։ Բայց ոմանք յեւրոպացի գիտնոց կարծիք ունեցեր են թէ առ Կիլիկեցւովք՝ Հայք 'ի ստիպելոյ արևմտեայց յանձնառու եղած ըլլան և թոյլ տուած որ հայկական թարգմանութիւնն՝ լատին եկեղեցւոյ վաւերացեալ օրինակին համեմատ փոփոխութիւններ կրած ըլլայ։ Հեթմոյ թագաւորութեան ժամանակ (1224-1270) կը համարին մտածուած և յաջողուած այսպիսի ձեռնարկ մը։ Բայց այսպիսի կարծեաց պատմական հաւաստեաց հետք մը չկայ, ուստի և ոչ վաւերական ստուգութիւն մը։

Հաւանականութիւն ալ չենք տեսներ. և անտեղութեանը կը վկայեն գրեթէ բոլոր ծանօթ գրչագիրք աստուածաշունչ տառից, որ ինչպէս արդէն ըսեր ենք, չեն յառաջեր քան զերեքտասաներորդ դար. և որոց մէջ չկայ և ոչ իսկ հեռաւոր նշանակ մը

հայկական Թարգմանութեան կատարելագործութիւնն եղած ըլլայ իրենց նպատակ. վասն զի այն էր՝ զիրենք այնչափ հեռաւոր ուղեգնացութեանց պարտաւորող՝ սուրբ վարդապետաց կամքը և հրաման։ Մեր Թարգմանութեան՝ Աղեքսանդրեան կոչուած սուրբ գրոց օրինակին հետ ունեցած բազմապատիկ և բազմաթիւ համաձայնութիւնք և նմանութիւնք զայս կը հաւաստեն։

Իրենց այս սիրելի և ցանկալի ուսմանց և պարապմանց մէջ՝ տխուր և սրտատոչոր գոյժք կը հանէին 'ի մայր հայրենեաց։ Արքունական գահոյք տապալած ինկած 'ի սասանեան բռնութենէ, հայրապետականն բռնաբարուած և անարժան սրտերու և ձեռաց մատնուած, Հայաստան աշխարհ՝ իր ամենէն աւելի մեծագին գանձը՝ զսրբութեան կրօնս, կորսընցնելու վտանգի մէջ, — այս ամենայն կը փութացընէին զիրենք 'ի դարձ։

Թէ որպիսի ընդունելութիւն եղաւ իրենց, և ինչ վիճակի մէջ գտան զՀայաստան, արդէն ծանօթ է մեր ընթերցողաց։

## ԺԴ․ ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ՅԱՐԳ

Սուրբ Գրոց հայկական հրաշատառ Թարգմանութիւն՝ գրեթէ անծանօթ մնացած էր օտարաց, թէ առ հին քրիստոնեայ ազգս, որք ընդհանրապէս չունէին սովորութիւն իրենցմէ դուրս և օտար բանասիրութեամբ զբաղիլ, և թէ միջին կոչուած և անոնց հետևորդ դարուց մէջ՝ երբ յԵւրոպա արդէն սկսած էին աստուածաշունչ մատեանք՝ բանասիրաց և ուսումնականաց մասնաւոր հետազօտութեանց և հետաքննութեանց սիրելի և գովելի պարապմունք մը

նայն ազգս ուսմանց և դպրութեանց, որ զգիրս սուրբս 'ի բերան առեալ գիտէր». Եւագրի Պոնտացւոյ՝ թէ «լիուլի հմտութեամբ գրոց սրբոց բաւական էր նա յըմբերանել զամենայն դասս հերձուածոց». և Դիդիմեայ կուրի թէ «չէր ոք չէր ուրեք գերազանցեալ քան զնա 'ի գիտութեան աստուածաշունչ տառից». որուն վրայ կը զարմանար սուրբն Աթանաս, և Անտոնիոս կը թողուր զանապատ՝ գալ զինք մտիկ ընելու համար։

Ասոր համար էր որ Եգիպտոս նպատակ մը եղած էր համաշխարհական ու անդադար պանդխտութեանց։ Չորրորդ դարուն կիսուն և հինգերորդին առաջին քառորդին՝ աւելի ծաղկած և բարգաւաճ էր այս եռանդն։ Հոն կը գտնէին յաշխարհէն Կելտաց. և վկայ Պոստումիանոս, սրբոցն Պաւլինոսի և Հերոնիմեայ և Սուլպիկեայ Սեւերոսի սերտ ու մտերիմ բարեկամը. հոն յԻտալիոյ, 'ի Սպանիոյ. 'ի Բիւզանդիոնէ, յաշխարհէն Սկիւթացւոց, 'ի Պոնտոսէ. 'ի Գաղատիոյ և 'ի Սիւրիոյ, որով եգիպտական ընկերութիւնը աշխարհաքաղաքացի կրնար սեպուիլ. յամենայն աշխարհաց և 'ի դասակարգէ ունենալով ներկայացուցիչք. և ասոնց ամենուն պանդխտութիւնը, — կը վկայէ պատմութիւն, — չունէր և չէր կրնար ունենալ ուրիշ գլխաւոր նպատակ, բայց սուրբ և աստուածաշունչ գրոց ուսումն և հետաքննութիւն։

Այս էր վախճան երթի կրտսերագոյն Թարգմանչաց մերոց։ Թէ որչափ ատեն յամեցին հոն, որուն քով գեգերեցան յուսումն, ով էր նորն այն Պղատոն՝ որուն արժանաւոր աշակերտ չըլլալուն կը ցաւի Խորենացին, և զոր ոմանք կը համարին զնա ինքն Կիւրեղ Աղեքսանդրացի, և ինչ բանով պարապեցան, — ասոնց ամենուն վրայ որոշ խօսք մը չունին ազգային պատմութիւն և յիշատակք. — միայն անտարակուսելի է որ սուրբ գրոց ուսումնասիրութիւնն, և անոր

յարոյց ոչ միայն իր վրայ զարմացողաց սերունդ մը, այլ և բազմութիւն հետևողաց, նախանձորդաց և հակառակորդաց: Հոն մանուկն ետքն ալ գեռ կ'ապրէր իր երկօքն, և զգալի էր այդ կեանքը: Այն պատճառաւ ոչ ուրեք որպէս յԵգիպտոս՝ կը կարդացուէին սուրբ Գիրք, անոնց վրայ ուսումնասիրելով, քննելով և խորհրդածելով: Վայրկեան մը վերանանք մտքով այն անապատասուն միայնաւորաց բազմութեան՝ որոնց համբաւովը գէթ դարու մը միջոց լեցուած էր ամենայն քրիստոնեայ աշխարհ, և որոց սրբակրօն վարքն և առաքինութիւն՝ անմահական և լուսահրաշ պարծանք մ'էր Եգիպտոսի: Ի՞նչ էր իրենց բովանդակ գիտութիւնը, իրենց ուսումն և խոկմանց նիւթը: — Միայն Աստուածաշունչ գիրք: — Ամենայն հին պատմիչք Եկեղեցւոյ՝ Յովհաննէս Մոսկոս, Թէոդորետոս, Սուլպիկիոս Սեւերոս, Պալլադիոս, Հռուփինոս և այլք միաձայն կը վկայեն թէ որպիսի փոյթ և հետամտութիւն ունէին հարքն անապատաւորք յուսումն և 'ի հմտութիւն գրոց սրբոց, և թէ անոնցմէ շատերն ամբողջ 'ի բերան սերտած էին զայն: Սրբոյն Պախոմէոսի կանոնք՝ որ չորրորդ դարու առաջին կիսուն կը վերաբերին, խստիւ պարտք կը դնեն յարատեւ սուրբ գրոց ուսմանն զբաղիլ. և ոչ ոք կ'ընդունուէր 'ի դաս սկզբնականաց՝ եթէ գէթ նոր կտակարանն ու սաղմոսարանն արդէն բերնուց սերտած չըլլար. և եթէ ոք անհոգութիւն կամ անսիրելութիւն երեւցընէր այնպիսի պարապմանց, կանոնք կը բանադատէին զայնպիսիս յընթերցումն և 'ի գրութիւն. Et etiam nolens leggere compelletur. և իրենց վարուց պատմութիւն քաջայայտ կը հռչակեն թէ պարզ խօսք մը չէր այն, այլ իրականութիւն. զի Պափնուտի համար կը վկայեն «այր ծայրացեալ գիտութեամբ աստուածաշունչ տառից». Սերապիոնի «հռչակեալ յամե-

Միւս այլ ենթադրութիւն մը՝ թէ Թարգմանչաց գործը ենթարկուած ըլլայ յԱղեքսանդրիա՝ այս համեմատական կամ բաղդատական աշխատասիրութեան՝ Խորենացւոյն գործածած վերաբանութեան Ճեմարանի մը յիշատակութիւնն կրնայ սեպուիլ, որ բառական թարգմանութիւն մ'է յունական αναλογια բառին. որուն իմաստը բոլորովին մութ պիտի մնար մեզ, եթէ նոյն բառը 'ի Թարգմանչաց ուրիշ տեղուանք համեմատութիւն, կշռութիւն, հաւասարութիւն թարգմանուած չըլլար. և որոնք աւելի պարզ և հասկանալի իմաստ մը կու տան, քան Խորենացւոյն գործածածը. և հաւաստիք մը սեպուիլ մեր կարծեաց ստուգութեան։ Որոգինեան (աստեղանիշ, բրգաձեւ) նշանագրաց՝ որ օրինակաց կամ թարգմանութեանց իրարմէ ունեցած տարբերութիւնն ցուցընելու համար՝ մեր ձեռագրաց մէջ ընդունուած և յաճախ գործածուած է՝ յայտնի նշանակ մը կրնայ համարուիլ թէ այս բաղդատութիւնն ու համեմատութիւնն եղած է մեր թարգմանութեան վրայ։ Եւ Որոգինեայ այդ պանծալի աշխատութեան հմտանալու և անով օգտուելու համար՝ ղրկուած կը համարինք զԹարգմանիչս յօդանալ սուրբ գրոց ընտրութեան համար եղած Ճեմարանի մը կամ դպրոցի հաստատելոյ և բարգաւաճելոյ 'ի քաղաքին։

Պատմութիւնն կու գայ 'ի հաստատութիւն այդ մեր կարծեաց։

Չորրորդ դարուն մէջ՝ աստուածաշունչ գրոց ուսման և գիտութեան վեհավայր աթոռ մ'էր Եգիպտոս և 'ի մասնաւորի Աղեքսանդրիա։ Հոն, ինչպէս ըսինք, ծնաւ Որոգինէս, հոն սորվեցուց, և ձեռք զարկաւ իր անմահական երկասիրութեանց շարագրութեան. հոն ձգեց առ ինքն զբազմութիւն աշակերտաց, և հոն աւանդ թողլով իր գրուածներն՝

***

Թարգմանչաց յայլեւայլ քաղաքս, եւ մասնաւոր կերպով յԱղեքսանդրիա ճանապարհորդելուն եւ հոն երկար դեգերանաց պատճառը հաւանական կ'երեւի. ուրիշ ինչպէս առթիւ ալ բացատրեր ենք, որ աստուածաշունչ գրոց իրենց ձեռքով կատարուած թարգմանութեան ընտրականութիւն (eclectisme) մը տալու վախճանաւ էր։ Երկու իրարմէ տարբեր օրինակաց, ասորւոյն եւ յունականին վրայ թարգմանութիւն մը, եւ 'ի Բիւզանդիոյ բերուած ընտրելագոյն օրինակի մը վրայ սրբագրութիւն, հարկաւ կը պահանջէր այսպիսի աշխատութիւն մը մանաւանդ սուրբ գրոց համար՝ որուն մեծագոյն արժէքն՝ ընթերցուածոց հաւատարմութեան եւ ստուգութեան մէջ էր. եւ այս վերջին աչքը տալու համար՝ արժան էր ընտրել այնպիսի քաղաք մը որ Աղեքսանդրիոյ պէս կամ անոր հաւասար հռչակ ունենար իր բազմաթիւ եւ դեռ եւս կանգուն մատենադարաններով, եւ սուրբ Գրոց գիտութեամբ հռչականուն հայրապետօք եւ վարդապետօք։ Անշուշտ Աղեքսանդրեան կոչուած գրչագիրն, եւ Որոգինեայ՝ Քառիջեանն, Վեցիջեանն եւ Ութիջեանն աստուածաշնչից համեմատական եւ բաղդատական երկասիրութիւնքն առանձին քննութեան եւ ուսումնասիրութեան նիւթ ընելու մտածութիւնն՝ իրենց վարդապետաց փափաքէն ու նպատակէն դուրս չէր։ Մեր այս կարծիքն առաւելագոյն հաւանականութիւն կ'առնու անով որ ինչուան 'ի Հռոմ ալ դեգերելով՝ չուզեցին Թարգմանիչք մեր յամել անդէն. վասն զի իրենց դիտմանն ու ձեռնարկին օգտակարութիւն մը չգտան հոն. ուր լեզուն իրենց ոչ այնչափ ծանօթ, եւ սուրբ գրոց կիրառութիւնն էր հերոնիմեան թարգմանութեամբ եւ լատինական լեզուով։

րասիրին, սակայն դեռ եւս հեթանոսական կրօնից և իմաստասիրութեան վրայ յաղթանակ տանող քրիստոնեայ գիտութեան՝ հաւատացելոց և հեթանոսաց սիրտն ու աչքը հաւասարապէս գրաւող քաղաք մ՚էր. ուր դեռ եւս կը լսուէին ու պատկառանօք կը մեծարուէին՝ Որոգինեայ, Կղեմայ Աղեքսանդրացւոյ և իրենց նմանեացն անուն, հռչակն և համբաւ: Սուրբըն Սահակ և Մեսրովպ իրաւամբ կը փութային ղըկել հոն զոմանս ՚ի կրտսերագոյն Թարգմանչաց, աշակերտիլ այն դպրոցին զոր փառաւորեր էին՝ բաց ՚ի վերը յիշուածներէն, Աթանաս մեծն, Գրիգոր Աստուածաբան, Յուլիոս Ափրիկանոս, Հիսիքիոս, սուրբն Կիւրեղ, Սինեսիոս, ամենքին մեծարոյ և պատուական իրենց առաքինակրօն քաղաքավարութեամբ և իմաստութեամբ: Խորենացի՝ որ այդ ճանապարհորդութիւնն ընողներէն մէկն էր՝ ընդ Եդեսիա և ընդ Աթէնս մանելով Լիբէաստանի պատմական հողը և յԱղեքսանդրիա, սխրացեալ անոր փառացը վրայ, յիշելով անոր հեթանոս անցեալը, և քրիստոսական կրօնից հոն գործած սքանչելահրաշ փոփոխութիւնը. «Այժմ ոչ անցեալ նստի, կ՚ըսէ, Պղետոնիոս հնգակատար գագաթամբն՝ զանսպառ աշխարհ պատելով, այլ Մարկոս աւետարանական քարոզութեամբն. և ոչ վիշապազին դիւցազնականաց գերեզմանք, այլ սրբոցն վայելչական վկայարանք... զյաղթող նահատակին գովել, և օտարաց տանել ընդունելութիւն և յաղքատս տուրս: Եւ ոչ զոհել չար դիւին Սարապեայ, այլ զՔրիստոսի արիւնն մատուցանել պատարագ. և ոչ խնդրել հրաման պատասխանւոյ ՚ի տանգարամետապետէն Պրոտէիդայ, այլ ուսանել զօրութիւնս պէսպէս իմաստից ՚ի նոր Պղատոնէն, յիմն ասեմ վարդապետէ, որում ոչ արժան գայոյ աշակերտ, և ոչ անկատար վարժմամբ՝ յանդգնեալ իմաստից ինքնացոյ»:

ուստի և հետևաբար ենթադրութիւնք կամ գուշակորէն մեկնաբանութիւնք։

Ինչ էր արդեօք այն արուեստ՝ որուն Սահակ և Մեսրովպ անգէտք էին. և յորում Թերութիւն գործոյ Թարգմանութեանն որ այդ արուեստին պակասութեան հետևանք էր. որն էր այդ վերաբանութեան ճեմարանը, ուր Թարգմանիչք մեր կրթուեցան՝ այդ իրենց վարդապետաց անծանօթ արուեստին գիտութեամբ, աստուածաշունչ գրոց 'ի հայ փոխադրութեան կարելի ու փափաքելի կատարելութիւնն տալու համար։

Կանխեցինք ըսել, — ժամանակակցաց վկայութեամբքն ալ հաւատարմացընելով մեր խօսքը. — Թէ յունական լեզուի և ուսմանց Թերութիւն կամ անբաւականութիւն անկարելի էր ենթադրել 'ի Նոսա, մանաւանդ 'ի սուրբն Սահակ. որ — հարկ է միւսանգամ մէջ բերել զՓարպեցին, — «յոյժ առլցեալ անցուցանէր վարժիւք զբազում գիտնովք Յունաց»։ Ուստի այդպիսի մեծարոյ անձի մը նախաձեռնութեամբ և գլխաւոր աշխատակցութեամբ կատարուած գործ մը կարօտութիւն չէր կրնար ունենալ սրբագրութեան 'ի ձեռն երկրորդ դասու Թարգմանչաց, որոնց լեզուին՝ իրենց անունը կրող երկասիրութեանց և աստուածաշունչ գրոց մէջ տարբերութիւնն՝ մեծ է և զգալի։

Բնական կ'երևնայ ուրեմն ենթադրելը Թէ Աղեքսանդրիա՝ հռչականունն առ նախնիս իր ուսմամբքն և բազմահարուստ մատենադարաններով, արևելից և արևմտից մէջ եզական դիրքովը միակ քաղաք մը նեպուած էր՝ ուսմնասէր հետազօտութեանց, և նշանաւոր իմաստասիրական դպրոցներովը։ Որչափ ալ Թարգմանչաց ժամանակի Աղեքսանդրիա՝ ոչ եւս էր այն ինչ որ առ ժամանակօք յաջորդաց մեծին Աղեքսանդրի՝ Պտղոմեայ առաջնոյն, Սոտերի, Եղբայ-

Աւելորդ է յիշեցընել թէ աստուածաշունչ գըրքերէ զուրս և անոնց անմիջական մասն չսեպուած անվաւեր և անհարազատ գրոց, — որոց վրայ համառօտիւ խօսեցանք, — Թարգմանութեան ժամանակը չենք ուզեր հանել բարձրացընել մինչև 'ի հինգերորդ դար։ Նոյն իսկ անոնց ոճը՝ յայտնապէս կը հռչակէ թէ հինգերորդէն ետքը, — և ոմանց անկէ ոչ այնչափ հեռու, — զարուց և ժամանակաց երկասիրութիւնք են։ Փափաքելի էր կարող ըլլար ճշգել և սահմանել, զոր յօժարափոյթ՝ յոյն և մանաւանդ ասորի լեզուաց և դպրութեան հմտագունից և ձեռնհաս բանասիրաց փութոյն և ուսմանը կը յանձնենք։

# ԺԳ. ՀԱՅ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

## ՎԵՐՋԻՆ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆ

---

Ուրիշ կարևոր և մտադրութեան արժանաւոր խնդիր մը ընդ առաջ կ'ելլէ մեզ։

Ի՞նչ կը նշանակեն Խորենացւոյն խօսքերը, որ սուրբ Գրոց երկրորդ և 'ի Բիւզանդիոյ բերուած ստոյգ և հաստատուն օրինակաց վրայ կրկնակի աշխատութեամբ եղած Թարգմանութեանն աւարտումը պատմելէն ետքը կը յաւելու. «Բայց քանզի անգէտք էին մերում արուեստի, 'ի բազում մասանց թերացեալ գործն գտանէր, վասն որոյ առեալ մեծին Սահակայ և Մեսրովպայ զմեզ՝ առաքեցին յԱղեքսանդրիա 'ի լեզու պանծալի, 'ի ստոյգ յօդանալ ճեմարանին վերաբանութեան »։

Մութ են հայ պատմահօր այս խօսքերը, և ցարդ ոչ ստուգութեամբ հասկըցուած անոնց իմաստը,

մը կրել կամ տարակուսական ըլլալ. բայց ասիկայ պատճառ մը չէ ենթադրելու որ Թարգմանութիւննին ալ ժամանակաւ կրտսեր ըլլայ, մինչդեռ անոնց լեզուի գեղեցկութիւնն և յստակութիւնը բաւական է այսպիսի տարակոյս մը փարատելու։

***

Բայց կրնայ առարկուիլ թէ ոմանք 'ի մերոց պատմըչաց՝ Գրիգորի Վկայասիրի կուտան աստուածաշունչ գրոց պակասը լեցընելու աշխատանքը։ Կ'աւանդէ Ուռհայեցի. «Սա անհանգիստ թարգմանութեան էր պարապեալ. և զամենայն պակասութիւն կտակարանացն Աստուծոյ առ մեզ՝ կարգաւ կատարեալ զարգարեաց 'ի Յունաց և յԱսորոց թարգմանութեան հոգս տարեալ. անդադար խորհրդով և ամենայն պայծառութեամբ սուրբ գրոց էլից զեկեղեցի Հայաստանեայցս ... Էր սա նմանեալ առաջին իմաստնոցն Հայոց ... դիւրաւ առնոյր զծածկոյթ երեսաց հին և նոր կտակարանացն Աստուծոյ»։ Շնորհալին 'ի ձեռնագրութեան ճառին. «Մինչեւ 'ի Գրիգորիոս՝ որ և Վահրամ նախաձայնեալ և 'ի Բասիլիոս. որք ... նաև լցողք (եղեն) եկեղեցւոյ լուսաւորութեան յետ նոցին աստուածաշունչ գրոց կտակարանաց թարգմանութեանց. և ամենայն բարեմասնութեամբք յաստուածայինս յառաջացեալ՝ 'ի նուազեալս վերջնում դարու ժամանակի»։

Թէ ինչ և որպիսի էին Գրիգորի Վկայասիրի աշխատութիւնքն, պիտի տեսնենք 'ի կարգին։ Հոս միայն այնչափ ըսենք որ մէջ բերուած խօսքերն չեն ակնարկեր ամենեւին թէ աստուածաշունչ գրոց վրայ մասնաւոր աշխատանք մը ունենայ. և այս կը բաւէ մեզ առժամս, մեր նիւթէն և առաջադրեալ նպատակէն չուզելով խոտորիլ։

լով Եղիազարու, Ցուգայի Մակաբեայ և իր արխական հարազատաց յիշատակը, երկնից ու հայաստան հողոյն նահատակներ կը պատրաստէր զանոնք [1]:

Որո՞նք են արդ այն գրքերն՝ որոց Թարգմանութիւնն թանագատուինք յետագայ դարուց յաւելցընել, կամ ո՞ր դարուն մէջ զետեղել, և որո՞ց ընծայել անոնց Թարգմանութիւնը: Իսկ ի՞նչ ըսենք Սիոսէ կաթուղիկոսին օրով յազգային ժողովին որ 'ի Պարտաւ սահմանուած ու վաւերացած սուրբ Գրոց ցուցակին. « Եւ եղիցի ձեզ ամենեցուն՝ եկեղեցականացդ և աշխարհականաց պաշտելի գիրք սուրբ հին և նոր կտակարանացն. Մովսիսի գիրք Ծննդոցն, Ելից, Ղեւտականք, Թիւք, Երկրորդ Օրէնք, Յեսու Նաւեայ, Դատաւորք և Հռութ, Թագաւորացն չորս, Մնացորդաց աւուրքն երկու, Եզրի երկու բանք. գիրք Յովբայ, Սաղմոսաց գիրք առաջին, Սողոմոնի երեք, գիրք երկոտասան մարգարէիցն, Եսայի, Երեմիա, Եզեկիէլ, Դանիէլ: Եւ արտաքուստ պատգամաւորեսցէ առ 'ի յուսուցանելոյ զձեր մանկունս զուսումն բազմամանն՝ Սիրաքայ իմաստութիւն »: Ընթերցողը կը տեսնէ որ հազիւ քանի մը գիրք դուրս կը մնան այս ցուցակէն. ինչպէս Մակաբայեցիք, Եզրի երրորդ, Եսթեր, Տովբիթ, Յուդիթ, Սողոմոնի Իմաստութիւն, որք ընդհանրապէս երկրորդականոն սեպուած գրոց կը վերաբերին:

Կրնար ասոնց ընդունելութիւնը դժուարութիւն

[1] « Ինքն իսկ տեղեակ էր 'ի մանկութենէ իւրմէ սուրբ չորեքանոցս: Զոր 'ի ձեռն առեալ զքաջ նկարագիրն Մաքաբայեցւոց ընթեռնոյր 'ի լսելիս ամենեցուն... Թէ որպէս մարտուցեալ կռուեցան 'ի վերայ աստուածատուր օրինացն ընդդէմ Թագաւորին Անտիոքոսի... Նա և զայն եւս յուշ առնէր զօրականացն, Թէ որպէս ազգատոհմն Մատաթիայ քաջեալ բաժանեցան 'ի միաբանութենէ նոցա. դարձան 'ի հրաման Թագաւորին, շինեցին մեհեանս, մատուցին զոհս... իսկ Մատաթի և որ ընդ նմայն էին՝ ոչինչ Թուլացեալ լքան »:

է վասն յստակութեան և գեղեցկութեան լեզուին անուանել զնա գլուխ և պսակ դպրութեան հայ լեզուի։ Գիտել արժան է սակայն զի բուն կանոնական գիրք, որպիսի են, ըստ եկեղեցական աւանդութեան, Հնգամատեանն, Յեսու, Դատաւորք, Հռութ, Թագաւորք և Մնացորդք, առակաքերթողն Յոբ, Սաղմոսք, Գիրք Առակաց, Ժողովողի և Երգոց երգոյն, Մարգարէք, Նեէմի, Եզրաս, Եսթեր, որպէս և Նոր կտակարանն բովանդակ, են թարգմանեալ խնամով բառ առ բառ, մինչ Իմաստութիւնն և Մակաբայեցիք են ազատ թարգմանութիւն, յորս թարգմանիչն, առ 'ի ցոյցս իւրոյ հմտութեան 'ի հայ լեզուի, ջանայ հնարի հեղուլ զեղուլ զամենայն զարդս լեզուին, որպէս թէ զՀոմերոս և զՀերոդոտոս թարգմանիցէ »[1]։

Այս է ազգային բանասիրութեան կարծիք՝ մեր մատենագրութեան այսպիսի էական խնդրոյ մը մէջ։ Մովսիսի Հնգամատեանն, Դատաւորք, Թագաւորութիւնք՝ ոսկեղէն դարու լեզուին ամէն նշանակը և որոշիչ դրոշմը կը կրեն վրանին։ Մարգարէութեանց ամենընտիր թարգմանութիւնք՝ հրաշալիք մ'են և բովք հայ լեզուի հարստութեան և ճոխութեան, և իրաւամբ կը սքանչացընեն զմեզ։ Սողոմոնի գրքերն, և 'ի մասնաւորի Առակք, արդէն Խորենացւոյ և Կորեան վկայութիւնն ունին թէ Մեսրոպեայ բարերար և շնորհաշնորհ ձեռաց պարգեւք են, ինչպէս նաև Նոր կտակարանք։ Մակաբայեցւոց գրքերուն համար ալ՝ Եղիշէ կը վկայէ թէ պատերազմի դաշտաց ու վտանգաց ատեն՝ անոնց ընթերցմամբը կը խրախուսէր և կը քաջալերէր իր զօրաց բազմութիւնը մեծն Վարդան Մամիկոնեան։ և անոնց Աստուծոյ և հայրենեաց սիրով վառուած սրտերուն մէջ նորոգե-

[1] Ճառք ասացեալ դպրանոցին, 1887։

տռնազանութիւն։ Մեզի, – և այս խնդրոյս մէջ համամիտ և համաձայն կը գտնենք ընդհանրապէս՝ հայկական լեզուի ուսման և մատենագրութեան հետամուտ բանասիրութիւնը, – կ՚երևնայ թէ հաւանականաբար ամէնքն ալ մի և նոյն դարու՝ Սահակայ և Մեսրոպայ և իրենց աշակերտաց աշխատասիրութեան արդիւնք են. Գլխաւոր պատճառ այսպիսի ենթադրութեան՝ նոյն իսկ աստուածաշունչ գրոց կարևորութիւնն կը կարծենք. և անշուշտ տարօրինակ պէտք է երևնայ թէ եռանդաշնորհ Թարգմանիչք որ այնչափ գրոց թարգմանութեամբ ճոխացուցին զազգային լեզու և զդպրութիւն, և որոց մէջ կրնան գտնուիլ նաև այնպիսիք որ երկրորդ կամ երրորդ տասնեակի կարևորութիւն մը ունէին նկատմամբ ազգին նոյն ժամանակուան անմիջական պիտոյից, անհոգ և անտարբեր երևցած ըլլան սուրբ գրոց նըման առաջնակարգ գրքի մը ամբողջ թարգմանութեանն։ Ոճոյ և լեզուի տարբերութիւն տեսնողք՝ արով իրարմէ կրնան զանազանուիլ. անոր այլևայլ մասունք, իրաւացի պատճառ մը կրնար սեպուիլ նաև ժամանակաց տարբերութիւն ենթադրելու, եթէ հինգերորդ դարու ամէն մատենագրաց մէջ ոճոյ հաւասար միակերպութիւն տեսնելը անհրաժեշտ սեպէինք. Եզնիկ, Եղիշէ, Խորենացի, Անյաղթ և Փարպեցի՝ այդ նկատմամբ իրարմէ շատ հեռու կը մնան. թէպէտև մի և նոյն դարու անձինք, և մէկ դպրոցի մը աշակերտք. այսպէս նաև իրենց աշակերտակիցք։

Դեռ նոր հրատարակուած բանասիրական հմուտ ամսագրի մը մէջ հետևեալ տողերը կը կարդանք. « Զլեզուէն Թարգմանութեան Գրոյն այսչափ ինչ լեցի ասել՝ թէ զոր օրինակ հմուտքն և ձեռնհասք յեւրոպացի քննչաց իսկ կոչեցին զԹարգմանութիւն մեր « Թագուհի Թարգմանութեանց » վասն ճշգրտութեանն և հմտութեան, նոյնպէս պարզ և պաճուճ

կարծիքս կը հաւաստարմանայ նաև անով որ բաց 'ի մեզի արդէն ծանօթ ու սովորական Թարգմանութենէն՝ ուրիշ Թարգմանութեան մ'ալ հանդիպած ենք, որ իւիք կը տարբերի 'ի միւսմէն, և մեզի հաւանական կ'երևնայ կարծելը թէ ասիկայ ըլլայ հնագոյնն։ Օրինակն գրչագրեալ է 'ի ՌԽԸ, և կը գտնուի 'ի Մատենադարանի սրբոյ Երուսաղեմի։ Բանասիրաց հետաքննութեանն համար կը դնենք աստէն յառաջին գլխոյ քանի մը տող միայն 'ի բաղդատութիւն։ « Ի Յովհաննէ՝ եւթն եկեղեցեաց որ յԱսիայ են, շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յԷէն, և որ էն, և որ գալոցն է. և յեւթն հոգւոյն որ են առաջի աթոռոյն նորա, և 'ի Յիսուսէ Քրիստոսէ՝ որ վկայ է հաւատարիմ, նախածինն մեռելոց և իշխանն թագաւորաց երկրիս. սիրողին և լուծողին զմեզ 'ի մեղաց, արեամբըն իւրով. և արար զմեզ արքայութեանն արժանիս. քահանայս Աստուծոյ և հաւր իւրոյ. նմա փառք։ Ահաւասիկ գայ ամպօք, և տեսցեն զնա ամենայն ակն որ խոցեցին զնա, և կոծեսցին վասն նորա ամենայն ազգք երկրի։ Այո՛, ամէն. ես եմ ալփն և օմն. ասէ տէր Աստուած էն, և որ գալոցն է ամենակալն »։

* * *

Մէկդի առնլով ուրեմն 'ի հին կտակէն Սաղմոսաց գիրքը՝ որուն առաջնութիւն տուինք, և զՍիրաք և զԵզր երրորդ, և 'ի Նորոյն Յայտնութեան գիրքը, որոյ Թարգմանութեան կամ կրկին սրբագրութեան պատմական հաւաստիք մը պէտք է սեպուին նոյն իսկ մեծանուն Թարգմանչէն հիմա յիշատակուած քացայայտ խօսքերը, կը մնայ հետաքննելի թէ արդեօք աստուածաշունչ մատենին միւս ամէն մասունք ալ հաւասարապէս հինգերորդ դարու Թարգմանութիւնք են թէ կայ 'ի նոսա ժամանակաց և դպրոցի

սեցաւ հրամանաւ տեառն Յովհաննէս բարուն, և ձեռամբ մեղաւորի Բարսղի »։

Յայտնի է գարձեալ յինքնագիր յիշատակարանէ, թէ Լամբրոնացին Ներսէս եղած է Թարգմանիչ Յայտնութեան գրոցն Յովհաննու. ինչպէս և մեկնութեան նորա յԱնդրէէ Կեսարացւոյ. « . . . Պատուեալ կ'ըսէ, եկեղեցի՝ ըստ նոցին հաւանութեանն (հարցն սրբոց) գտեալ 'ի կարգ գրոց աստուածաշունչ աւետարանաց. որոց եղեալ և մեք ընթացանիք՝ 'ի սուրբ եկեղեցւոյ մանկունս աւանդեցաք զսոյն՝ 'ի գաւառակարգութիւն առաքելական մատենից, որպէս արդարև զառաքելական յայտնութիւն. և ստուգաբան արարաւ վերստին երիւրեալ 'ի հելլենացւոցն՝ իմով նուաստ Ներսէսի թարգմանութեամբ. ընդ որ և զքննութեամբ մեկնութիւն սորին ածի յեկեղեցիս Հայոց »։ Նոյն Լամբրոնացի կը գրէ առ Ոսկան. « Զինչ ասեմք և զերանելի աստուածաբանին Յովհաննու սքանչելի Յայտնութիւնն 'ի վերայ Թագաւորական քաղաքին ... Զոր ես ինքն Թարգմանեցի յօրինակէ Աթանասի քաղաքին (Անտիոքայ) հայրապետի »։ Դարձեալ 'ի փառս Լամբրոնացւոյն 'ի յառաջաբանի մեկնութեան Սաղմոսաց. « Յետ այսր փութացաւ 'ի լեառն որ առընթեր մեծին Անտիոքու 'ի վանորեայսն որ 'ի լատինացւոցն և 'ի հելլենացւոցն պայծառանայսն անդ աստուածահաճոյ կարգօք և կրօնիւք. և բնակեալ անդ աւուրս ինչ՝ թարգմանեաց զմեկնութիւն Յայտնութեան Յովհաննու »։

Ոմանք 'ի նախնեաց, և Վարդան պատմիչ աղօտ իմն կ'ակնարկէ թէ Յայտնութեան գրոցն Թարգմանիչն եղած ըլլայ Մանդակունի. որով՝ հարկ կ'ըլլայ ըսել թէ Լամբրոնացւոյ ժամանակ արդէն թարգմանուած էր այն, և ինք պարզ սրբագրիչ մ'էր թերեւս 'ի գրչաց և 'ի ժամանակէ աղաւաղեալ օրինակին։ Այս

Յովհաննէս Գառնեցւոյն, որոյ յիշատակարանն գրած էր այսպէս. Ես Յովհաննէս Գառնեցի գնացի 'ի սուրբ ուխտն Հաղբատ, և երկրպագեցի սուրբ խաչին և սուրբ գերեզմանին, մեծ և տեսանող Հայոց սուրբ վարդապետին Յովհաննիսի՝ մականուն Սարկաւագ. այն որ զսաղմոսն բազում ճգամբ 'ի Թարգմանչացն սաղմոսարանէ գաղափարեաց։ Եւ ես նորին սաղմոսարանի հանդիպեցայ 'ի ձեռն յիմար մարդոյ. առեալ համբուրեցի, և գրեցի զսա յիւրմէն ամենայն ստուգութեամբ, զբանն, զգիրն, զնշանցուկն, զհանգիստքն, զաւանն, զկէտն, զստորն։ Արդ ես 'ի սրտէ խոցեալս՝ Կարապետս վարդապետս՝ գրեցի զսա ըստ իմում կարի» ...։

***

Սիրաքայ գրոց այլեւայլ թարգմանութիւնք կ'երեւին 'ի մեր դպրութեան։ Առաջինն՝ ինչ որ սովորական կը գտնուի մեր գրչագրաց մէջ, և որ գրուած է 'ի Զօհրապեան տպագրին՝ 'ի կարգի Յաւելուածոց. երկրորդն թարգմանութեամբ Ոսկան վարդապետի, զոր և հրատարակեց յԱմստերտամ. և երրորդն՝ ընտիր և հաւաստարմագոյն՝ հին շարագրութեամբ և ոճով, որ փառանձինն տպագրեալ է 'ի տպարանի մերում, և յԱստուածաշնչի (1860)։

Եզր երրորդ գրոց թարգմանութեան համար ալ հետևեալ ծանօթութիւնը կը գտնենք՝ 'ի գրչագրի Աստուածաշունչ գրոց վասն Յոհաննու եպիսկոպոսի Արքայեղբօր. «Զառաջին Եզրասն գրեցի և զերկրորդն յաւժարեցայ 'ի կարգ այլ աստուածաշունչ բանիցդ հաւասարել, որ յանկարծիքս է. զի մի ինչ թերի մնասցէ 'ի բանից որք ունին վկայութիւն 'ի վերայ իւրեանց յառաջնոց մեր սուրբ հարց. զի նոքա գրեցեն զԵզրաս Ա և Բ ընդ առաջնոյն. և երկրորդս հի-

քըն, յինչ պէտս եղած կրնայ ըլլալ այդ, եթէ ոչ 'ի պէտս ժամանակարգական աղօթից»:

***

Աւելցընենք 'ի ձեռագրաց հանուած քանի մը յիշատակարան վասն Սարկաւագ վարդապետին և իր գըրած և ծաւալած Սաղմոսաց գրքին վրայ. «Սա է գաղափարն գերունակ սուրբ վարդապետին և մեծ սոփեստեսին սուրբ ուխտին Հաղբատայ՝ Սարկաւագին: Այս Սարկաւագ՝ այր սուրբ և տեսող և զուարթերես՝ լի հոգւով ... սա մշտացեալ էր 'ի բազում ժամանակս վասն այլայլմանս Սաղմոսիս. և ոչ գիտէր զելս իրացն թէ ո՛ւստ ուստէք ճշգրտեսցէ. և ապա մտեալ 'ի յարկեղս գրեանն որ 'ի Հաղբատ՝ զամենայնն որոնեաց. և ապա հուսկ քան զամենայն գըրեանս 'ի ներքոյ՝ եգիտ Թարգմանչագիր սաղմոսարան ջինջ և նուազ գրով. և առեալ զայն խնդութեամբ՝ համբուրեաց, և եդ 'ի վերայ աչաց իւրոց. և ապա արկեալ ձեռն 'ի գործ՝ բացայայտեաց անտի զծածկեալ գանձն և զխցեալ աղբիւրն. և ցրուեաց ընդ ամենայն սահմանս Հայաստանեայց զայս օրինակ» ...:

Գառնեցին Յովհաննէս իր ուղղագրեալ Սաղմոսարանին յառաջաբանին մէջ կը գրէ. «Ապա ճանապարհ արարեալ գնացի 'ի մայրաքաղաք մենաստանն 'ի Հաղբատ. և գտի Թարգմանչաց գրած սաղմոս. զոր առեալ սուրբ վարդապետին Սարկաւագ կոչեցեալ, այն որ զառումարն երեւեցոյց զհին Հային, և նասահմանեաց զայս ուղիղ և ուղղորդ սաղմոս, որ ոմանց այլևայլ երևի սա»:

1680 Թուականին գրուած գրչագրի մը յիշատակարանին մէջ ալ կը կարդանք. «... Եկայ 'ի Համշէն, անդ հանդիպեցայ ընտիր օրինակի Սաղմոսարանի

որ քան զայս աւելի նշանաւոր է, և 'ի վեր անդր կարգաբանեալ պատմութեանս հետ մեւթն 'ի լոյս համաձայնութիւն մը կ'երևցընէ, է այն հետաքրքրական հատուածիկը զոր Բեւլարմինոս և Յակոբ Գրեթցերոս յոյն գրչագրէ մը հանած Միւնիխի մէջ 'ի մէջ կը բերեն. « Առ ինքնակալութեամբ Թէոդոսի (?) և առ թագաւորութեամբ Պարսից (?) Վռամշապհոյ. որովհետև չէկայր մէկը 'ի Հայս որ զՀոռոմ լեզուն գիտենայր, համարձակեցան 'ոմանք ընդդէմ պատուիրանաց մեծին Գրիգորի (Լուսաւորչի) իրենք իրենց 'ի հայ լեզու թարգմանել զՍաղմոսս. և եկեղեցական պաշտամանց մէջ 'ի կիր առնուլ։ Թէոդոս կայսրն զայս լսելով՝ կարի զայրացաւ և պատժեց զՀայս, փոխանակ զի սրբոյն Գրիգորի հրամանէն անցան »[1] :

« Այս ներքին և արտաքին վկայութեանց վրայ և զայս վերջին խորհրդածութիւնս աւելցընեմ իբր ոչ աննշան դիտելու պարագայ մը, որ այն մատենից մէջ, որոց թարգմանութիւնը հաւանական կ'երևի որ յառաջ եղած ըլլայ քան զթարգմանութիւն աստուածաշունչ մատենին, 'ի նոսա ընդհանրապէս Սաղմոսաց գրքէն բերուած վկայութիւնք համաձայնք են մեր այժմու բնագրին, մինչդեռ 'ի միւս գրոց վկայութիւնք ոչ այնպէս. օրինակ, Եւսեբեայ Եկեղեցական պատմութիւնն, և այլն :

« Եթէ ուրեմն, — ինչպէս կարի հաւանական թուի մեզ, — նախապէս թարգմանուած է Սաղմոսաց գիր-

[1] Կը դնենք յոյն բնագրին լատինական թարգմանութիւնը. Imperante Theodosio, et regnante apud Persas Bramsapo, cum nulli in Armenia reperirentur, qui Romanam (h. e. *Græcam*) linguam perspectam haberent, extiterunt nonnulli, qui contra formam a magno Gregorio præscriptam, sibimet ipsis Armenica lingua a Psalmos et literas et cantiones transtulerunt. Quod audiens Theodosius Imperator valde succensuit Armeniis, eo quod traditionem a S. Gregorio acceptam violassent.

և Սահակեան) Թարգմանութեանց. նոյնպէս այդ անտարակուսելի է որ այդ Սաղմոսաց գրոց վրայ, — և այդ գրոց վերայ միայն կ'ըսեմ, — յիշատակութիւնք գոն բաղդատականք, եթէ 'ի մեր հին և եթէ յօտար մատենագիրս՝ որ կրկին Թարգմանութիւնս ունեցած ըլլայ։ Ո՞չ յայդ ակնարկէ Թովմայ Արծրունեաց այնչին Խոյթ լերին բնակչաց համար, թէ «Գիտեն ըզՍաղմոսն զհին Թարգմանեալսն վարդապետացն Հայոց, զոր հանապազ 'ի բերան ունին»։ Նշանաւորագոյն ևս 'ի հնագոյնն քան զԱրծրունեաց, 'ի Ղազար Փարպեցի կը գտնենք, ուր տեղ մը Սաղմոսաց գրոց կրկին Թարգմանութեանց յիշատակութիւնը կ'ընէ, անոնցմէ հետաքրքրելի տարբերութիւն մը ընթերցուածոց 'ի մէջ բերելով. «Որ զմնացորդս ժահահոտ չարակամ խորակին իւրոյ եհեղ զաւակին իւրոյ, ըստ գրեցելումն 'ի վեշտասաներորդումն սաղմոսին Դաւթեան կերպակրօք. որ միւս Թարգմանիչ՝ խոզենեաւ ասէ»։ Եւ զայս երկրորդ ընթերցուածը որոնելով յայլևայլ արևելեան Թարգմանութիւնս, որ կրնար ծանօթ ըլլալ Փարպեցւոյն, չեմ գտած ուրեք. և Փարպեցւոյն այդ միւս Թարգմանութեան ինչ լեզուաւ ըլլալն չյիշատակելովն, շատ հաւանականութեան տեղիք կու տայ, որ յիշատակեալ Թարգմանութիւնն իրօք ըլլայ այն զոր ունէին Հայք 'ի Նախ-Սահակեան ժամանակէ։

«Թէ արդարև յառաջ քան զՍահակեան Թարգմանութիւն սուրբ Գրոց՝ կայր Սաղմոսաց Թարգմանութիւն մը առ Հայս, ոչ փոքր հաստատութիւն կ'ընծայէ 'ի վերայ նախակարգեալ բանիցս՝ և այն աղօտ և չփոթ տեղեկութիւնը զոր կու տայ Յովհաննու Ոսկեբերանի վարուց անանուն յոյն պատմիչը. Թէ Հայք սուրբ Գրոց Թարգմանութիւնը 'ի Սաղմոսաց սկսան յորդորմամբ սրբոյ Հայրապետին, երբ նա 'ի կողմանս նոցա աքսորուած էր 'ի փոքր Հայս։ Բայց

րենք հմուտ ու բանիբուն բանասիրի մը հետեւեալ տեսութիւններն, ազգային հանդիսարանէ մը քաղելով[1].

« Սաղմոսաց գիրքն կայր արդեօք, – կը հարցընէ, – 'ի հայերէն թարգմանուած նախ քան զգիւտ այբուբենին և նախ քան զՍահակեան թարգմանութիւն սուրբ Գրոց։ Զխնդիրս 'ի հանգիտութենէ (par analogie) նախ ուղելով քննել, կը տեսնենք որ բազում մանրամասն հին յիշատակութիւնք կորսուած լինելով հանդերձ, այս պարագային ճշմարտութիւն վկայեալ է ընդհանրապէս, որ Սաղմոսարանին թարգմանութիւնը կանխեալ է քան զսուրբ Գրոց լիակատար թարգմանութիւն. այսպիսի եղած են համեմատականն 'ի Հերոնիմեայ սրբագրեալ. հին գաղղիականն, ոլպաւեանն կամ հին ռուսականն։ Այս հանգիտութիւնք պիտի բաւականէին իմն ենթադրել որ և մեր Մեսրոպ՝ ընազդմամբ իմն՝ յետ այբուբենն յօրինելու, փոխանակ զԱռակաց գիրսն թարգմանելու՝ զՍաղմոսաց գիրսն թարգմանէր. բայց որովհետև պատմութիւնն հակառակն աւանդէ, ինձ կասկած կու տայ որ ոչ այնչափ վասն խորհրդաւորութեանն էր, իբրու խօսս տուօ մանկունս աշակերտեալս իւր, – ինչպէս կ'ըսէ Կորիւն, և անոր բանից հետեւելով՝ Խորենացի, – որ զԱռակաց գիրսն թարգմանելու նախասաւ Մեսրոպ, որչափ զի Սաղմոսաց գիրքըն կայր արդէն թարգմանեալ, և Առակացն՝ անոր յաջորդողն էր ըստ կարգին»

« Արդարեւ չեմ կարող այժմ համարձակօրէն հաստատելու թէ մանր տարբերութիւնքն, որ կը տեսնուին ցարդ յընթերցուածս 'ի մէջ Ժամակարգական և աստուածաշնչական Սաղմոսարանացն, ըն-լան նշան նոյն իսկ կրկին հին և նոր (Նախ–Սահակեան

[1] ՊԱՏՈՆԵԱՆ (Յ. Վ.). Ուսումնաթերթ բանասիրական հանդէս,

# ԺԲ. ԱՐԴԵՕՔ Ս. ԳԻՐՔ ԱՄԲՈՂՋ

## Ի ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ ԹԱՐԳՄԱՆՈՒԱԾ ԷՆ Ի ՀԱՅ

---

*Կը մնայ հիմա քննել ուրիշ խնդիր մը, թէ սուրբ Գրոց հայ Թարգմանութեան մէջ չկա՞յ զանազանութիւն կամ հեռաւորութիւն ժամանակաց և դարու, և ամենքն հաւասարապէս մի և նոյն հինգերորդ դարու և մէկ դպրոցի (Թարգմանչաց) արդիւնք են և աշխատութիւն։*

*Ասոր վրայ կրնան տարբերիլ կարծիք և ենթադրութիւնք. ոմանց 'ի գրոց ընծայելով զանազանութիւն Թարգմանութեան և այլոց զյետադասութիւն, նկատելով նաև անոնց անմիջական կամ անհրաժեշտ, ու այլոց երկրորդական կարևորութիւնը։*

*Առ նախնիս քրիստոնէայս ամփոփաբար և ընդհանրապէս գործածական գիրք յեկեղեցական պաշտամունս էին սաղմոսերգութիւնք։ Հայաստան աշխարհի քրիստոնէական կրօնքն ընդունելուն և Սահակայ և Մեսրոպայ մէջ եղած ժամանակի միջոցը՝ բաւական երկարատև էր. և ոչ յոյժ անհաւանական ենթադրութիւն մը կրնայ համարուիլ որ գէթ այս գրոց հայկական Թարգմանութիւնն ընծայած ըլլան ազգերնուս մեր նախնի և երախտաւոր հայրապետքն որ կացին յառաջ քան զսուրբն Սահակ. զի և դըժուարին աշխատութիւն մը չէր. և եթէ յատուկ [illegible] ալ չըլլային, սակայն ասորի և յոյն տառերը՝ որովք գրուեցան «անբաւ զրուցաց մատեանք» կրնային օգտակար ըլլալ նաև սաղմոսաց Թարգմանութեան մը։ Այս խնդրոյն վրայ՝ մէջ բե-*

Քաթենաւորի և իր աշակերտին Իմաստասիրի խօսքերէն կը հասկընանք թէ բաւական հնութիւն ունին։ Հին ձեռագրաց պակասութիւնք չեն թողուր մեզ աւելի համոզիչ բան մը ըսել այս նկատմամբ։ Մարկուարդ վարդապետին աշխատութիւնն զոր յիշեցինք, Այրիվանեցւոյն խօսքերով, մեծ կարևորութիւն կրնան տալ մեր խօսքին և ենթադրութեանս։ Աւելի հնագոյն երկասիրութեան մը մէջ ալ հետեւեալ հատուածին կը հանդիպինք, որ թէպէտ քիչ մը մութ կերպով, այլ թուի թէ ակնարկել կ'ուզէ որ ինչուան այն ատենէն կայր առ մերոնս սուրբ գիրքը գրչագրելու արուեստէն զատ՝ նաև անոր ընթերցուածոց ուղղութեան հետամտութիւն և փոյթ. « Գայր, կ'ըսէ, և իշխանն Բագրեւանդեայ և Արշարունեաց՝ Աշոտ որդի Սմբատայ 'ի վանքս. և տայ զՄնաւոտկոյս հաստատուն գրով. և զոսկոյն 'ի Վանդոյս՝ 'ի պէտս վարդապետացն որ զգրչութեան արուեստն ունէին, և զսուրբ գիրսն յաւրինէին. որք էին երեսուն ու վեց վարդապետք »։ Օրինակողք և գրչագրողք ալ յաճախ մէջ կը բերեն 'ի յիշատակարանս իրենց կամ այլոց ջանքը՝ 'ի սրբագրութիւն, և կամ կրած աշխատանքը յընտրութիւն ընթերցուածոց։ Այդ խօսքերն և աշխատանք աւելորդ պէտք էին սեպուիլ եթէ աստուածաշունչ սուրբ գրոց գրչագրաց անկեղծութեան և յամենայնի հաւատարմութեան վրայ տարակոյս չունենայինք։

տըն՝ անխծից քրտանն բարձումն. զերկիւղն՝ մահուան երկիւղին ազատումն. զչարչարանսն՝ չարչարանացն փրկումն. զմահն բարձող 'ի կենացն փոխանակ՝ անմահութիւն. զպարտութիւն՝ սկզբանն կարօտեալ լինելութեան դարձումն. զհամբարձումն՝ զկնի պահպանութեան պատուիրանին խոստման ծանօթութեան » ։

Յետոյ մէջ կը բերէ այլևայլ աւանդութիւններ, որոնցմով հակառակորդք կը ջանային անվաւեր ցուցնել Ղուկայ աւետարանագրին այդ համարը։ Կ'ըսէին. « Ոչ ոք տաժանեալ զերկս՝ արիւն քրտնաքրտանի. և եթէ մարդամ, ասեն, ոչ բաղձանայ, զհամբերեցէք զՅիսուսէ զորդւոյն Աստուծոյ իշխեսցէ ոք զայս բերանաբացել։ Արդ խօլացեալք 'ի չարափառութեանդ, յումմէ՞ լուար զանհնարդ գործոյդ լսարգրումն աւետարանին որպէս արեան ասաց տարացուցարանութեամբ քիրտն, այլ ոչ թորումն անզենահար արեան » ։ Մայրագոմեցի և իր հետեւողք՝ մեծ անձնաւորութեան մը վկայութեան ապաւինելով, կ'ըսէին թէ սուրբն Լուսաւորիչ իր վարդապետութեանը մէջ « զահաւոր քրտնելն և ոչ յատուկ ձայնիւ նշանակեաց. ուստի յայտ է, ասեն, թէ հնապատմութիւն աւետարանին ոչ է ընդունակ։ Եւ եթէ ոք քան զնախաքարոզն Գրիգոր խորհեսցի լինել իմաստուն, և այլ ինչ նորաձեւեսցէ ձայնել, դատապարտեալ է, ասեն » ։ Իրենց այս ենթադրութիւնն ալ կը հերքէ Քաթենաւոր. և որոն խօսքին մէկ մասն արդէն յառաջ բերինք Պաւղոսի առ Կորնթացիս երրորդ թղթոյն առթիւ.

Ոչ ինչ նուազ ծանր խնդրոյ մ'ալ նիւթ է իրաց կնոջն շնացելոյ, որ ըստ մեր բաղդատութեան գրչագրաց սրբոյն Յովհաննու աւետարանին բնագրէն հանուած և միայն 'ի վերջ նորին զետեղուած է. և այս թերաման պատճառը կը ծանուցանէ Վարդան 'ի Մեկնո-

ութեան Հայաստանեայց, կը վկայէ թէ Մայրագո-մեանք ինչ կերպով վարուեցան սուրբ Գրոց ընծա-գրին հետ. « Եւ սակայն լիրբ և չար լինելով՝ զամ-պարշտութեանդ ոչ գիտացեր զյագուրդ... Յոր-ժամ տեսանես զմարդկային ինչ ուրուք Ճառեալ զՔրիստոսի կրկին, յանդգնիս ամենիշխանաբար 'ի գրե-ցելոց անտի՝ որ զայնն քարոզէ, 'ի բաց ջնջել զբանն. և տես որոմնացան մշակացն է զայդ սերմանեալ. Որ ոչ միայն է անհաւանական՝ զոր ասեսդ, այլ և անհաւատալի. Յորժամ չար մշակքն 'ի վերայ բարի սերմանն՝ որոմնացանուք լինել հանդիսանային, ա-մենեքին առհասարակ եկեղեցականացն 'ի բաց բար-ձեալ եղեն հոգաբարձուք. անտէրունչ 'ի Քրիստո-սի առ մի հաւաքեալ գաւիթ շրջէին հօտիցն բազմու-թիւն. ո՞չ ոք տեսանէր և ո՞չ այն որ լսէր. Արդ եթէ էին ոմանք, այլ և այլովք եւս կենդանի մնացեալք, զիա՞րդ էր եթէ զթերութիւն արտահալած առնե-լով զաւանդիչս, զիւրեանցն 'ի ձեռս նոցա տային առ 'ի թիւրել զաւելասացութիւն »:

***

Բայց դառնանք առ Քաղթենաւորն. Ոչ միայն կը վկայէ թէ Մայրագոմեցի Քրիստոսի արիւն քրտնե-լուն համարը կը զեղչէ, այլ նաև իր Ճառին գլխաւոր նպատակն ըրած է՝ անոր նկատմամբ եղած ընդդիմա-սացութիւնն խորտակել ջնջել. Խօսելով երկիւղի կամ վախի վրայ, որուն սկզբնաւորութիւնն կը հանէ մինչև 'ի ջրհեղեղն և 'ի դրախտն եդեմական, ցուցը-նելու համար թէ խոտելի կամ պարսաւոր կիրք մը չէ, որովհետև Աստուած հաստատեց զայն 'ի մարդն, և թէ երկիւղ՝ սկիզբն է զգօնութեան, կը յաւելու թէ Քրիստոս ամէն կրքերն ընկալաւ, բաց 'ի մեղաց, առ փրկութիւն մարդկան. « Ընկալաւ, կ'ըսէ, զքիր-

կարծիքն՝ ու վարդապետութիւնք ընդունելի ընել տալու համար՝ զայն խորդախելու անարգական միջոցին ալ ձեռք զարկած ըլլան։ Մեր ենթադրութիւնք հետեւեալ դէպքերէն մեծագոյն հաւանականութիւն կ'առնու, ինչպէս կարծենք ցուցնել։

Մայրագոմեցին բազմաթիւ հակառակորդք և ընդդիմամարտք ունեցաւ իր կարծեացը՝ նոյն իսկ իր հայրենեաց հողոյն վրայ և իր ժամանակակցացը մէջ։ Եթէ հնութիւնն իրենց ամէն երկասիրութիւնքը չէ հասուցած, բայց կը գտնուի նշանաւոր գրուածք մը յօրինեալ 660–710 թուականաց միջոցին. թերեւս նոյն իսկ 'ի կենդանութեան Մայրագոմեցւոյն։ Ասիկայ է միայնաւորի մը, ինչպէս կը կոչեն զինք գրչագիրք, Թէոդորոսի Քռթենաւորի, որուն գրուածոց ոճէն յայտնապէս կ'երեւնայ թէ իր ժամանակին երեւցած մոլորութեանց և մոլորեցուցչաց դէմ կը խօսի։ Իր Ճառին յառաջաբանը կազմող քանի մը տողերէն ետքը անմիջապէս խօսքը կ'ուղղէ առ Մայրագոմեցի և առ համախոհս նորա. «Արդ չարահաւեալ, կ'ըսէ, զխորհուրդս իւրեանց՝ սկզբնականեն մատենագրել այսպէս։ Ոչ սակեն տկարութեամբ, այլ կարողութեամբ յաղթեաց մարտի թշնամւոյն. իւրական վկայեն բանք. Ոչ աւարի տուն սկայի, եթէ ոչ նախկին հզօրն կապի։ Եւ եթէ այս ճշմարիտ է՝ յայտ է, ասեն, թէ անընդունակ է առաջքարգեաւորութիւն անապականութեան, որ յաղօթակացութեանն զահաքրտնութիւնն պատմեն ամենակարողի Բանին Աստուծոյ, և զ'ի հրեշտակէն քաջալերելն»։ Որով յայտնի և սորա կ'երեւնայ թէ Մայրագոմեցի և իր հետեւողք՝ սրբոյն Ղուկայ այդ համարը հանած էին, որ կայր յառաջին Թարգմանութեան ըստ վկայելոյ Քռթենաւորին, և զոր անընդունելի ուզեցին սեպել։

Թէոդորի աշակերտն Յովհան Իմաստասէր կամ Աւձնեցի որ 718ին բարձրացաւ 'ի հայրապետական

տեառն մերոյ 'ի Գեթսեմանի այրին քրտնիլն : Հայ-կական հին եկեղեցւոյ աւանդութիւնք և մատենա-գրութիւն . հաւաստի կը ցուցընեն թէ մեր աստուա-ծաշունչ մատեանք 'ի հինգերորդ դարու ունէին զայն համարներ . և թէ ժամանակ անցնելէն ետքը վերցուելով յոմանց 'ի գրչագրաց , այնպէս հասաւ մինչ առ մեզ , ոմանց պահելով զայն 'ի բնագրին , այ-լոց 'ի լուսանցս կամ 'ի ստորեւ էջիցն , և յոմանց բոլորովին զեղչուելով : Նոյն իսկ այսպիսի անհամա-ձայնութիւն , և եւսեբեան կանոնաց մէջ մուտ գտած փոփոխութիւն զայդ կ՚ակնարկեն : Այս ենթադրու-թիւնք կը հաստատարմին նաև 'ի պատմութենէ : — Եփեսոսի ժողովէն անմիջապէս ետքը՝ Պարսից իշխա-նութեան տակ եղող Նեստորականք՝ սկսան ետևէ ըլլալ ծաւալելու իրենց մոլորութիւններն 'ի Հայաս-տան . յորոց զմերսն զգուշացընելու համար՝ սուրբն Պրոկղ պատրիարքը Կոստանդնուպոլսոյ գրեց՝ եկե-ղեցական մատենագրութեան մէջ արդէն հռչակ-ուած Թուղթը : Այդ նամակ՝ իր գրած վախճանին հասաւ : Երբեք խորարմատ չհաստատուեցան Նես-տորի վարդապետութիւնն և կարծիքը 'ի մէջ Հայոց . որով ազգին լրութիւնը ընդհանրապէս ազատ մնաց այդ հերձուածէն : Գտնուեցան ոմանք հետևողք այդ մոլորութեան . բայց ոչ բազմաթիւ և ոչ զօրաւոր կուսակցութիւն մը կազմելով : Սակայն նոյնը չհան-դիպեցաւ նաև Քաղկեդոնի ժողովոյն դաւանութեանէն ետքը . և յայտնի են 'ի պատմութեանց թէր ու դէմ գրութիւնք , ժողովք՝ մրցութիւնք և գործք որք այն առթիւ յուզեցան և յուզեցին զՀայաստան : Թէ որչափ մաս և ազդեցութիւն ունեցաւ այն խնդրոյն մէջ Մայրագոմեցին Յովհան , յայտնի է կարդալ 'ի պատմութեանց . և հաւանական կ՚ե-րեւի , ինչպէս քիչ ետքը պիտի տեսնենք , որ թէ ինք և թէ համախոհքը՝ սուրբ Գրոց խօսքերով իրենց

Աւելի բացայայտ, ու ինչպէս սովոր է ըսուիլ՝ գրեթէ պատմական օրինակներ մէջ բերենք ՚ի հաւաստիս մեր ենթադրութեան։ Յայտնի է ամենեկեաց թէ Մարկոսի աւետարանին վերջին գլխոյն այն մասը՝ յորում Յիսուսի՝ Մագդաղենացւոյն և առաքելոց երևնալը կը պատմուի, ՚ի բազմաց հակառակութիւն կրած է՝ իբրև ոչ հարազատ, և յոմանց նաև ՚ի սպառ մերժուած։ Այսպէս մեր գրչագրաց մաս մը՝ իբրև յաւելուած և ոչ մասն ընդունելով զայն աւետարանին, և եկամուտ, կամ ՚ի սպառ զանց կ՚ընեն, և կամ կը գնեն զայն յետ վերջացընելոյ զհարազատ բանս աւետարանին։ Սակայն մեր աստուածաշունչ գրոց թարգմանութեան վրայ աշխատող, որոնք Սահակայ և Մեսրովպայ գործակիցքն և վաստակակիցքն՝ Եղնիկայ ինքնագիր մէկ երկասիրութեան, որուն հարազատութիւնը տարակոյս չվերցըներ, Ընդդէմ աղանդոց գրքին մէջ, յայտնապէս կը տեսնենք որ Քրիստոսի 420-30 թուականին արդէն ծանօթ և ընդունելի էր այն մեր նախնեաց։ Բագրեւանդայ եպիսկոպոսին հետևեալ տողերը կը հաստատարմացընեն զայն. «Այլ ճշմարտից հաւատացելոց՝ ոչ սատանայ փորձութեամբքն կարէ սասանել, և ոչ կախարդք՝ դիւաց, որպէս և ինքն տէրն ասաց ցիւր աշակերտան եթէ Ահա ետու ձեզ իշխանութիւն կոխել զօձս և զկարիճս, և զամենայն զօրութիւն թշնամւոյն։ Եւ դարձեալ թէ Նշանք հաւատացելոց այս են. զդեւս հանիցեն և օձս ՚ի ձեռս առցեն և զդեղ մահու ըմպիցեն և ոչ մեղանչիցէ»։

***

Ուրիշ խնդրոյ և մանրամասնին խուզարկութեանց նիւթ եղած են՝ որոնք Ղուկայ աւետարանագրի ԻԲ. 43-44 համարներն, յորս կը պատմուի Քրիստոսի

ակզբնական օրինակին վրայ։ Ինչո՞ւ զարմանանք եթէ այսպիսի այլայլութիւնք ընթերցուածոց գտնուին նաեւ առ մեզ։ Որ եթէ յաճախ կրնան պատահիլ յանձնարարութենէ կամ 'ի պատճառս ոչ այնչափ հմտութեան ընդօրինակողաց, սակայն ինչպէս յառաջագոյն ալ առիթ ունեցանք յիշատակելու, զանազան հեռաւոր՝ ըսենք իսկ թէ երբեմն նաեւ պարտաւոր դիտմամբք՝ սուրբ Գրոց ընթերցուածոց մէջ մուտ գտած են փոփոխութիւններ։ Մերթն ալ երբեմն,— առանց պատասխանատու սեպելու զանոնք.— այդ փոփոխութիւնները մտուցեր են իրենց օրինակաց մէջ. կամ դիմացնին գտնուող օրինակին հետեւողութեամբ վարուեր են։ Այս ընթերցուածոց կամաւոր կամ անմտադիր փոփոխութիւնք մերթ բարոյական տեսակէտ մը ունին, մերթ ալ մեկնողականք (exégetique), մերթ պատմականք և մերթ ալ աշխարհագրականք։

Քանի մը օրինակով հաստատացընենք մեր խօսքը։ Առջիններէն՝ Վատիկանեան, Սինայական օրինակք՝ Մարկոս աւետարանագրին ԺԱ գլխէն համար մը պակաս ունին, քսանեւվեցերորդը. «Զի եթէ դուք ոչ թողուցուք, և ոչ հայրն ձեր որ յերկինս է՝ թողցէ ձեզ զյանցանս ձեր»։ Յիշեալ գրչագրաց կը հետեւին մեր ձեռագիր աւետարանաց օրինակք ալ, 'ի բաց ձգելով այդ համարը։ Սակայն անոնցմէ կը տարբերին՝ երբ Մատթեան աւետարանին մէջ (ԺԹ. 9) կ'ընդունին անոնց դուրս ձգած հետեւեալ խօսքերը. «Եւ որ զարձակեալն առնէ՝ շնայ»։ և 'ի Մարկոս (Թ. 29). «Այս ազգ ոչ ելանէ եթէ ոչ պահօք և աղօթիւք»։ ուր առաջինքն կը զեղչեն պահօք բառը։ Ասոնք միայն քանի մը օրինակներ. որոնցմով մարթ է հաստատացընել թէ ուրիշ զանազան հին օրինակաց ընթերցուածոց՝ երբեմն նաեւ վրիպանաց ենթարկուեր են նաեւ մեր օրինակք։

ռեն Թարգմանչացն. զթուղթս զայս 'ի հայ բարբառ, 'ի [illegible], 'ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն »:

## ԺԱ. ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ

### ՀԱՐԱԶԱՏՈՒԹԻՒՆ

---

Արդեօք ստուգածագումն դրոց հայ թարգմանութիւնք չե՞ն կրած երբէք, դարերու երկար ընթացքին մէջ, այլեւայլ ընթերցուածոց փոփոխութիւնք կամ այլայլութիւնք, և Թարգմանչաց մեծարգի և բազմարդիւն աշխատասիրութիւնն հասե՞ր է մինչև առ մեզ անարատ, իր նախկին կերպարանքովը:

Որչափ ալ ուզենանք, նաև օտարազգի եւրոպէացի հմտից և քննադատից վկայութեամբն հաւաստել և հաստատել թէ այս նկատմամբ մեծ երկիւղածութիւն պահած ըլլան գրիչք մեր և գրչագիրք, որով և իրաւամբ հայկական թարգմանութիւնն պատուականագոյն սեպուած 'ի մէջ պատուականաց և հռչակուած, բայց և այն անտարակուսելի է թէ մարդկային որ և իցէ գործ և ձեռնարկ չիկրնար բոլորովին անբասիր ըլլալ 'ի թերութեանց: Զայս թէ Թարգմանչաց, և աշակերտացն անոնց վաստակը ընդօրինակութեամբ յետագայից աւանդողաց համար կրնանք և հարկ է ըսենք, առանց ուզելու բիծ կամ արատ մը դնել վրանին, կամ պախարակել այն մեծարանօք լի երախտագիտութենէն զոր նոցա կը պարտիմք:

Յունական, ասորի և լատին ամենէն աւելի հնագոյն գրչագրաց մէջ կը գտնուին ընթերցուածոց իրարմէ տարբերութիւնք, որով և փոփոխութիւնք

վայն 'ի սրբութիւն կոչարանին ընթեռնուլ Թուղթս ղաստուածաքարոզ առաքելոյն Պաւղոսի։ Եւ 'ի նորաստառեալ գրութեանն զնոյն շարագրութիւն վերառեալ է։ Իսկ բարեպրուստելին Գրիգոր զայս 'ի հարցն լսեալն, և ոչ մակագրեալ 'ի նոր Թարգմանութիւնս՝ վկայաբանութեամբ ժառանգեաց, Թէ Անօրէն իշխանն իբրև աստուածանալն կամեցաւ, առէ Առաքեալն, զամենեսին ընդ մեղօք գրաւեաց»։ Նոյն սուրբ վարդապետ՝ հետևեալ խօսքերովը կը ծանուցանէ Թէ ինչու կամ որոց ձեռքով դուրս ընկած է այս Թուղթը 'ի բնագրէ սուրբ գրոց. «Այլ այս ուսուցմն՝ վարդապետաց տանն Բարդեծանու է. և վասն այսորիկ ոչ Թողին Բեծանացիքն զայս Թուղթ յառաքեալ իւրեանց»։

Հանգիստ սրբոյն Յովհաննու առաքելոյ. Միւս այլ համառօտ, բայց հնութեան ամէն հետքը վրան կրող պատուական աւանդ մը 'ի կարգէ Անյայտից. որուն մեկնաբանութիւնն ալ ըրած է սուրբն Ներսէս Լամբրոնացի։ Բանասիրաց մանաւոր ուշադրութեանն կը յանձնենք բաղմահմուտ, և իր այլևայլ գիտնական երկասիրութեամբք ազգին արդէն հանրածանօթ անձի մը, Գաթըրճեան վարդապետի, քննադատական կարևոր գրութիւնն, ասոր հնութեան և հարազատութեան վրայ [1]։

Թուղթ Բառնաբայ. զոր ըստ ինքնագիր յիշատակարանին Թարգմանեց 'ի յունէ Ներսէս Լամբրոնացի, Թէպէտև ինչաւան հիմայ յայտնուած չէ։ Լամբրոնացւոյն յիշատակարանն կը գտնուի 'ի հելլէն ձեռագրի Թղթոյն Բառնաբայ, որ 'ի Վատիկանեան մատենադարանի 'ի Հռոմ, և է հետևեալն. «Ես Ներ-

[1] Հանգիստ Երանելւոյն Յոհաննու, առաքելոյ եւ աւետարանչին, հանդերձ ծանօթագրութեամբք հայ և լատին, 'ի Հ. Յովսեփայ վարդապետէ Գաթըրճեան, 'ի Մխիթ. ուխտէն. Վիեննա, 'ի տպ. Մխիթ. 1877։

տպաւորութիւն երկնած, և 'ի Հայս՝ երբ Պաւղի-կեանք, որ հին Մանիքեցւոց մէկ ճիւղն էին, ծաւա-լէր էին իրենց վարդապետութիւնք այն երկիրնե-րուն մէջ։ Կորնթացւոց առ Պաւղոս ենթադրեալ նամակին մէջ յիշուած Սիմոնի ու Կղէոպասի ըն-ծայուած մոլորութիւնք՝ նոյն են Պաւղիկեանց քա-րոզած վարդապետութեանց հետ։ Ուստի ինծի կ'ե-րեւնայ թէ հայ մ'է ասոնց հեղինակը, այս հերձուա-ծողաց դէմ մաքառելու համար»։

Այսչափ Ղազրոս։ Բայց այս ենթադրութիւնը իր ոյժն ու հաւանականութիւն կը կորսնցնէ նաև ա-նով որ սուրբն Եփրեմ Խուրի ասորի՝ սրբոյն Պաւղո-սի սուրբ Թղթոց հետ ասոր ալ մեկնաբանութիւնն յօրինած է, որուն թէպէտ բնագիրն կորսուած է, բայց հայկական հին և ընտիր թարգմանութեամբ հինգերորդ դարու հասած առ մեզ, և որ անծանօթ էր Ղազրոսի և իր ժամանակակցաց։ Երկրորդ՝ որ մեր ամենայն վստահութեան և հաւատարմութեան ար-ժանաւոր անձինք, սուրբն Գրիգոր Լուսաւորիչ և Թէոդորոս Քռթենաւոր անկէ վկայութիւն կը բե-րեն իրենց երկասիրութեանց մէջ։ — Լուսաւորչի խօսքերն են 'ի վարդապետութեան իւրում առ Ա-գաթանգեղայ. «Որպէս և առաքեալն Աստուծոյ որ հմուտն և տեղեակն էր աստուածային խորհրդ-ոյն, քանզի և ասէ իսկ. Անօրէն իշխանն իբրև աս-տուածանալն կամեցաւ, ձեռն արկանէր, և զամե-նայն մարդիկ մեղօք կապէր»։ Եւ են բանքն նոյն ընդ-բանից Պաւղոսի առ Կորնթացիս երրորդ 'ի համարն 16. «Իսկ որ անօրէն իշխանն էր իբրև աստուածա-նալ կամեցաւ, ձեռն արկանէր 'ի նոսա, և զամենայն մարդիկ մեղօք կապէր»։ Քռթենաւորն ալ կ'ըսէ. «Որթոտոքսական, վերադիտող, քրիստոսազգեստ նախահարքն գումարեալք 'ի Նիկիապոլիս՝ կանոնա-դրեցին, երկակի հնգեակ և եզակի քառեակ թուով

որ և յետոյ թարգմանուելով 'ի գերման լեզուաւ, զա-
նազան ուսումնական և կրօնական հանդէսից մէջ ալ
հրատարակուեցաւ։ Գուլիելմոս և Գէորգ եղբարք
Ուիսթոն իրենց Հանգով տպագրուած Խորենացւոյ
պատմութեան լատինական թարգմանութեան վերջը
աւելցուցին նաև այս թղթերը (Լոնտրա, 1736). և
զոր նոյնը գերմանացի ուրիշ բանասէր մը իր 'քննա-
դատական տեսութեանց նիւթ ըրաւ զանոնք[1]։
1805ին հրատարակուեցան 'ի կարգի Ցուցլուածոց
Աստուածաշունչ գրոց, 'ի Ս. Ղազար Վենետիկոյ,
ուր յետոյ ուրիշ տպագրութիւնք ալ եղան, նաև
թարգմանութեամբ յանգղիական բարբառ։ Հայտէլ-
պէրկի համալսարանին ուսուցիչներէն մին՝ Ռինք,
թարգմանելով 'ի գերման լեզու, մանաւոր գրուած-
քով ('ի 1823) պաշտպան ու ջատագով երևցաւ ա-
նոնց վաւերականութեանն. բայց իր կարծեաց հա-
կառակեցաւ ուրիշ գիտնական բանասէր մը, Ուլ-
ման, նոյնպէս գերմանացի[2]։

Լաքրոզ՝ զոր արդէն յիշեցինք, հետևեալ տեսու-
թիւնն կ՚ընէ այս թղթերուն վրայ. « Անոնց հայկա-
կան լեզուն, կ՚ըսէ, չունի աստուածաշունչ գրոց
հին թարգմանութեանն գեղեցկութիւնն ու վայել-
չութիւնը, որ իր տեսակին մէջ գլուխ գործոց ու
միակ սեպուած է։ Այնպիսի բառեր կը գտնուին,
կ՚ըսէ, անոնց մէջ, որ 'ի հին լեզուի գործածական
չէին, և կամ ուրիշ իմաստով 'ի կիր առնուած առ
նախնիս։ Ես այնպէս կը համարիմ թէ զանոնք յօրի-
նողն 'ի վերջ տասներորդ դարու կամ 'ի սկիզբն մե-

[1] Epistolæ duæ apocriphæ, altera Chorinthiorum ad Paulum Apostolum, altera Pauli Apostoli ad Chorinthios, quæ dicitur perisse, ex cod. ms. armen. nunc primum editæ separatim, græceque et latinæ versæ, et additio Guil. atque Geor. Wisthoniorum notis. prefat. et animadversionibus auctæ. Lipsiæ, 1776.

[2] Haidelberg Jahrb. 1823, թիւ 34։

բանին Նիկոդիմոսի »: Նաև 'ի Գործոց Պիղատոսի հատուածք կ'երևնան. « Թուղթ Պիղատոսի առ Տիբերիոս կայսրն Հռոմայ վասն Քրիստոսի. — Պոնտիոս Պիղատոս՝ թագաւորի մեծի խնդալ. Ուժգնակի իրք »: — « Պատմութիւն դատապարտութեան Պիղատոսի զՔրիստոսէ »: Փաբրիկիոս կը յիշէ և մէջ կը բերէ յանուն և 'ի գլխոյ զատուածոյն գրուած երկու թղթերը[1] :

***

Թուղթ Պաւղոսի երրորդ առ Կորնթացիս, և Կորնթացւոց առ Պաւղոս. — Աստուածաշունչ գրոց Հայկական Թարգմանութեան մէջ կը գտնենք զԹուղթ մի գրեալ 'ի Կորնթացւոց առ Պաւղոս առաքեալ, և սորա պատասխանին՝ որ կ'ըլլայ երրորդ Թուղթ առ Կորնթացիս: Այս երկին Թուղթք որ միայն 'ի գըրչագիրս մեր կը գտնուին՝ առաջին անգամ հրատարակուեցան լատին Թարգմանութեամբ յարևմուտս անցեալ դարուն սկիզբները՝ հետևեալ խորագրով. Epistolæ S. Pauli ad Chorinthios, et Chorinthiorum ad S. Paulum armenice, ex museo viri clariss. Philippi Massonii, versionem latinam accurante D^r Wilkins, Amstelodami, 1715. Փաբրիկիոս ալ արտագրեց զանոնք իր Նոր կտակարանաց անհարազատ գրուածոց հատորին մէջ. (Հատ. Գ. 666). Աւելըններով Ուսթըրէքթի համալսարանին ուսուցչի և հռչակաւոր հայագէտ Լաքրոզի դիտողութիւնները այս երկու Թղթոց վրայ: Ուրիշ հրատարակութիւն մ'ալ ըրաւ նոյն Թղթոց Մասսոն՝ 'ի Քննական պատմութիւն ընդհանուր դպրութեանց կոչուած գրոց մէջ.

[1] Ա. Փաբրիկիոսի. « Rélation transmise a Tibère sur la passion de Jésus-Christ ».

որդւոյ Սիմէոնի կամ Շմաւոնի․ որոնք 'ի մեռելութենէ զարթուցեալ 'ի կեանս՝ կը պատմեն զիջանելն Քրիստոսի 'ի դժոխս, և որ ինչ անդ անցին յայնժամ 'ի մէջ իշխանացն խաւարի, նահապետաց արդարոց և փրկողին Յիսուսի։

Համանմանաբար 'ի Հրէից քրիստոնէութեան սուրբ կրօնքն ընդունող մէկու մըն է այս երկասիրութիւնը՝ որ իւրեն նպատակ դրած է նախկին հաւատակցաց խստասրտութիւնն ու անհաւատութիւնը պարսաւել՝ վկայութեամբ ժամանակակցաց Քրիստոսի․ ոմանք կ'ենթադրեն թէ հինգերորդ դարուն մէջ ապրած ըլլայ հեղինակը․ իսկ այլք՝ աւելի հնութիւն կու տան անոր․ ինչպէս չեն համաձայնիր նաև գրութեան համար գործածած լեզուին վրայ։ Յունաց մէջ Նիկոդիմեայ աւետարանին յիշատակութիւնն ընդ և ըստ մասնեայ հրատարակողաց մէջ առաջինն է Լևոն Ալլատիոս (De Libris Ecclesiasticis Græcorum) և առ լատինս յառաջ քան զնա Գրիգոր Տուրոնեցի եպիսկոպոս (Tours) յիւրում Գաղղիական պատմութեան․ Վինկենտ Բելլովիգենացի ալ յարգէն յիշատակեալ 'ի մէնջ 'ի Պատմական հայելի մատենին։ Մեր մատենագրութեան մէջ ինչուան հիմա առաջին մասին մէկ քանի հատուածոց հանդիպեր ենք, որ և կը կրեն զանուն Նիկոդիմեայ։ Իսկ երկրորդն՝ ինչպէս ըսինք, նաև ըստ հմտագոյն քննադատնեից, առաջինէն բոլորովին տարբեր երկասիրութիւն մ'է, և որուն հետքը դեռ չենք տեսած ոչ 'ի մեր և ոչ յայլ ազգային Մատենադարանաց ցուցակս։

Եւրոպացւոց ծանօթ Նիկոդիմեայ գրութեան հետեւեալ յառաջաբանն՝ որ առ մեզ կը պակսի, այս խօսքերն կ'ամփոփէ․ « Ես Հենէաս յազգէ Հրէայ, վարդապետ օրինաց 'ի մէջ հեբրայեցւոց, հմուտ աստուածային գրոց, հաւատովք աշակերտեալ գրութեանց տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, նուիրա-

Նոյն սրբոյն Յակոբայ կրտսերոյ ընծայուած կը գտնենք՝ 'ի կարգի անհարազատ գրութեանց, նաև հետևեալ խորագրով ուրիշ գրուած մը. « Պատմութիւն չարչարանաց Քրիստոսի տեառն մերոյ 'ի ժամանակս Պոնտացւոյ Պիղատոսի դատաւորին Հրէաստանի. և քահանայապետացն Աննայի և Կայիափայ, շարագրեալ 'ի ձեռն երանելւոյն Յակոբայ առաքելոյ եղբօր Տեառն և որդւոյն Յովսեփայ »։ Այսպիսի գրուածի մը յիշատակութեան չհանդիպեցանք առ Մինիէի (Dictionnaire des Apocryphes) և այլուր, եթէ մասն չէ այն աւետարանին որ առ նոսա կ'ընծայուի սրբոյն Յակոբայ մեծին։

***

Նիկոդիմեայ անունով աւետարան մ'ալ կայ, նոյնպէս 'ի կարգի Անյայտից։ Գործք Պիղատոսի (Acte) կոչուած գրութիւն մը՝ անդատին 'ի նախկին ժամանակաց քրիստոնէութեան մեծ հռչակ ունեցած էր. սուրբն Յուստինոս, Տերտուղիանոս, Եւսեբիոս և այլք 'ի Հարց յաճախ անոնցմէ վկայութիւն բերած են իրենց գրուածոց մէջ։ Իրենցմէ մէջ բերուած ու յիշատակուած դէպք և հատուածք, իբրու քաղուած 'ի Գործոց Պիղատոսի, կը գտնուին Նիկոդիմեայ ընծայուած աւետարանին մէջ, որ յերկուց իրարմէ տարբեր մասանց կը բաղկանայ. առաջինն՝ մինչև 'ի գլուխն վեշտասաներորդ, և կը պատմուին 'ի նմա դատապարտութիւն, չարչարանք, թաղումն և յարութիւն Քրիստոսի. յարմարեալ և յօդեալ ըստ աւետարանագրաց, 'ի Գործոց Պիղատոսի, ու երբեմն նաև յառասպելախառն աւանդից. իսկ երկրորդ մասն 'ի վեշտասաներորդէն մինչև 'ի վերջինն՝ 'ի քսաներորդ եօթներորդ գլուխն, կը պարունակէ զհետաքննական պատմութիւն Կարինոսի և Լեւկիոսի

ԺԶ. Վասն գնալոյ նորա փախստեամբ ի Փիլիպպէ որ է Փռիւգիա։

ԺԷ. Վասն խորտակելոյ զկուռսն և զգլուխ և զքուրմս Եգիպտացւոց։

ԺԸ. Վասն դառնալոյ նորա հրամանաւ. Հրեշտակին յերկիրն իւրեանց։

ԺԹ. Գալ յերկիրն Ասորիս. խորտակեաց զկուռսն և կենդանացոյց զմեռեալն։

Ի. Երթալ յերկիրն Քանանու առնէր սքանչելիս ի ծածուկ և կենդանացոյց զմեռեալն։

ԻԱ. Երթալ նորա յերկիրն Իսրայէլի, և տալ զՅիսուս յուսումն դպրութեան։

ԻԲ. Երթալ նորա ի քաղաքն Արիմաթեայ՝ առնէր սքանչելիս և կենդանացոյց մեռեալս։

ԻԳ. Երթալ նորա ի քաղաքն Տաղարի և տալ զնա յուսումն ներկարարութեան և սքանչելեացն որ եղև անդ։

ԻԴ. Վասն գալըն նորա յերկիրն Գալիլեացւոց և զոր առնէր ընդ մանկունսն Եբրայեցւոց և այլ սքանչելի գործոցն։

ԻԵ. Եւ եւ ի գիւղն Եմաուս և բժշկէր զհիւանդսն։

ԻԶ. Վասն բազում բժշկութիւնս զոր կատարեաց Յիսուս ի քաղաքն և ի գիւղն և յայլ տեղիս զոր առնէր բժշկութիւն Յիսուս։

ԻԷ. Վասն մարգարէիցն աւանդութեան զգրեալն կատարելոյ և օրինացն զոր առնէր Յիսուս։

ԻԸ. Վասն դատաւորութեան զոր առնէր (Յիսուս) ի մէջ երկու զինուորաց։

* * *

Բաղդատելով հայկական մատենագրութեան այս հին աւանդը՝ ընդ հրատարակելոցն յեւրոպէացի հմտից, մեծ տարբերութիւն կը գտնենք անոնց և մեր հայերէն թարգմանութեան մէջ. և եթէ հայրենեաց սէրը զմեզ չխաբեր, կ՚ախորժինք նախամեծար սեպել զմերն, և չենք տարակուսիր թէ կարևոր ծառայութիւն մը հնութեան և մեծապէս հաճոյական պիտի ըլլայ իմաստունն Եւրոպիոյ՝ եթէ օրինակաց բաղդատութեամբ և քննադատութեամբ հրատարակուի հայկական բնագիրն՝ իրենց ծանօթ լեզուի մը թարգմանութեամբ։

մանութիւն մը ըրաւ և հրատարակեց 'ի 1870. իսկ զլոյնն' ուրիշ օրինակի մը հետ բաղդատելով տպագրութեամբ 'ի լոյս ընծայած էր Նէանտէր 'ի 1864։ Սրբոյն Յակոբայ կրտսերոյ ընծայութիւն ու Նախաւետարան կոչուած Փոլթէլի հետոք կ'ենթադրեն բանասէրք, որովհետև իրենց գրչագրաց մէջ երբեք այդ անունով կոչուած չէ։ Բայց 'ի Մերում Մատենագրութեան նոյն անուամբ կը յիշատակուի, և խորագիրն է. «Պատմութիւն յաղագս մարդեղութեան Քրիստոսի մարմնացելոյն 'ի սրբոյ Կուսէն Մարիամայ. զոր և Յակոբոս եղբայր Տեառն աւանդեալ է որ 'ի սկզբանէ ականատես էր Բանին Աստուծոյ»։ Այսպէս կը խորագրէ չորեքտասաներորդ դարուն սկիզբը գրուած գրչագիր մը (ՁՄԹ). և յիշատակարանն կը ծանուցանէ «գրեալ յիշատակ Գէորգ կրաւնաւոր քահանայի ... ձեռամբ Յոհաննու գծագրող քահանայի, 'ի հայրապետութեան Զաքարէի Հայոց կաթողիկոսի, և յառաջնորդութեան գերահռչակ սուրբ ուխտիս Վարագայ' համաշունչ եղբարց տէր Սարգսի և տէր Պետրոսի որք հեղութեամբ և հանդարտութեամբ հովուեն զբանաւոր հաւտս ... Գրեցաւ 'ի գաւառին Վանայ 'ի գեղջս Աւանց ընդ հովանեաւ սուրբ Յովհաննու կարապետին և սրբոյն Գրիգորի Հայոց լուսաւորչին»։ Ի Մատենադարանին Էջմիածնի գտուածներն ալ հետևեալ խորագրով կը յիշատակուին 'ի տպագիր ցուցակին. «Պատմութիւն մարդեղութեան Փրկչին 'ի Յակոբայ Տեառնեղբօրէ». (Թիւ գրչ. 1726)։ «Պատմութիւն սուրբ Կուսին' 'ի Յակոբայ Տեառնեղբօրէ». (Թիւ գրչ. 1727)։

Երկու օրինակք Մանկութեան աւետարանին կը գտնուին 'ի Մերում Մատենադարանի. յորոց մին' ընտրելագոյն գրչութեամբ, բայց պակասաւոր 'ի սկզբանն և 'ի վերջն, և զոր կը լրացընէ միւս օրինակն։

իր քարոզման կոնքը։ Դիշէնտորֆ ալ գիտել կու տայ որ Մանկութեան աւետարանին հեղինակը հետեւած է Յակոբեան և Թովմայի անուամբ գտնուած անհարազատ ու աւետարանի անունը կրող գրուածոց. միեւնոյն միջոց 'ի գլուխն իններորդ և միւսոյն երեսներորդ վեցերորդ գլխէն առնէին. իսկ միւսոյն մասն հաւաքուած է այն աւանդութիւններէն որ տարածուած էին Ասորւոց, Պարսից և Եգիպտացւոց մէջ։ Առասպելախառն գիրքեր ու գիրքեւանց շարք մը. մեծապէս ընդունելի և հաճոյ եղած էին զայն յիշեալ արևելեան ժողովրդոց։ Հաւանականաբար ասորի ժողովրդոց մէջ եղած է անոր առաջին երևումը. որովհետև Յունաց Թուականն՝ որ կը յիշուի երկրորդ գլխոյն մէջ, Քրիստոսի ծննդեանն Թուականը որոշելու մախմանաւ, Ասորւոց մէջ սովորական գործածուածն էր, և արաբական օրինակն ալ այնպիսի դէպքեր կը բովանդակեր որ յասորւոյն Թարգմանուած կը համարուին։ Դժուարին է այս գրուածին յօրինման ժամանակն ճշդել. Դիշէնտորֆ կը կարծէ որ յառաջ ըլլայ քան զերեւումն օրէնագրին Արաբացւոց[1]։

***

Առ արեւմտեայս ցարդ հրատարակուած Մանկութեան աւետարաններն երկու են, գէթ որչափ մեզի

[1] Կղեմէս Աղեքսանդրացի (Կոչ. Ընծ. Դ). «Իսկ 'ի նորոց կտակարանաց անտի՝ չորք աւետարանք միայն. այլ այլք՝ սուտ անուանեալ գրեալ. և մեծաս ընթերցեալ ընթեռնլեաց։ Այլ գրեցին և Մանիքեցիք Թովմայի գլուխ աւետարան, որում անուշահոտ աւետարանացն անուանեալ կարգան՝ ծեփկեալ շաղախ առ տպականել զոգիս միամտաց»։ Կամ բացայայտ եւս ըստ յունին. «Իսկ նորոյ կտակի չորք աւետարանք միայն. իսկ այլքն սուտ անուամբ վերնագրեալ և մեծամասամբ գտանին։ Գրեցին և Մանիքեցիք ըստ Թովմայի աւետարան. որ անուշահո-

լանալով խնամով պահել և ուսանել Յիսուսի փրկ-չին ընծայուած խօսքերն և գործեր։

Ադրիանոսի և Անտոնինեանց խաղաղասէր կայսե-րութեան ժամանակներն, մոգութեան տարօրինակ ուսմունք, կապալական գիտութիւնք, և կարծեցեալ հոգեւորաց անուրջք՝ սկսան մուտ գտնել և խառ-նուիլ իմաստասիրական և կրօնական կարծեաց և վարդապետութեանց հետ, որոնք կը յաճախէին թիւք աղանդաւորաց, և որոց բնական և անհրա-ժեշտ հետեւանք էին հակառակութիւնք և հեր-ձուածք։ Այն ատենով սկսան երեւնալ և տարածուիլ անհարազատ գրութիւնք։ Անոնցմէ ոմանց վրայ ա-ռաքելոց մէկուն կամ միւսին անուանք կը գրուէին. ոմանց ալ Յիսուսի անմիջական աշակերտաց առաջին յաջորդներուն։ Կեղծանուն պատմագիրք, որ կ'ա-ւանդէին ամէն մէկը իրենց ուզած կերպով, իրենց վարդապետաց ենթադրեալ քարոզութիւններն, ճա-նապարհորդութիւններն և կրած արկածք. և որոց հետ կը խառնուէին անհաւատալի ու երբեմն նաև ՚ի ճշմարտանմանութենէ օտար դէպք և գրուածք։

Այսպիսի գրութեանց մէջ ամենէն աւելի մտա-դրութեան արժանաւորք պէտք է սեպուին իրա-ւամբ այն աւետարանք որ այլեւայլ առաքելոց ա-նուանքը կը կրեն անհարազատաբար. յորս նախ ա-ռաջին՝ Քրիստոսի Մանկութեան կոչուածը։ Մէոհ-լէր կ'ըսէ թէ հեղինակն խոհական և առողջ քննա-դատական մեծ հաւաստիք չիտար այս գրուածքին մէջ. անանկ որ եթէ իր բարեմտութիւնը կարելի ըլ-լար տարակուսի տակ ձգել, պիտի ըսէինք թէ Քրիս-տոսի սքանչելեաց համբաւն ու մեծութիւնը նուա-ղեցընելն եղած ըլլայ իր նպատակն, տարօրինակ չա-փազանցութեամբն զոր կը ցուցընէ պատմութեանը մէջ։ Բայց ինչպէս ըսինք՝ հեղինակին այսպիսի մտա-ծութիւն մը չենք կրնար տալ. յայտնի տեսնելով

մասն ըլլայ։ «Մենք մեծապէս հաւանական կը համարինք, կ'ըսէ յիշեալ բանասէրն, որ այս անվաւեր գրութիւնք տակաւին կը գտնուին՝ դեռ ոչ ըստ արժանւոյն հետազօտուած հայկական աստուածաշունչ ձեռագրաց մէջ. և հայագիտաց մասնաւոր մենագրութիւնն կը հրաւիրենք այս կէտին վրայ, որոց ձեռք կը գտնուին հայերէն սուրբ գրոց ձեռագիրներ։ Այսպիսի գիւտի մը կարևորութիւն քաջայայտ է ամենեցուն»։

## Ժ. ԱՆՎԱՒԵՐ ԳԻՐՔ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԻ

### Ի ՀԱՅ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ

---

Անցնինք 'ի տեսութիւն Նոր կտակարանաց պատկանող անհարազատ և ոչ վաւերական գրութեանց, որոց կը հանդիպինք 'ի հայկական թարգմանութեան աստուածաշունչ մատենի։

Ասոնց մէջ առաջին պէտք է սեպուին՝ կանոնական և յԵկեղեցւոյ արդէն ընդունուած և վաւերացած չորս աւետարաններէ դուրս՝ այլևայլ կեղակարծ և կասկածելի գրութիւնք, նոյն սուրբ աւետարանաց յորջորջումը կրելով։ Բայց այս ընդհանրապէս անհարազատ՝ կամ ոչ իբրև աւետարան ընդունուած գրութեանց մէջ արժան է զանազանութիւն դնել, անոնց որ խաբեբայ անձանց արտադրութիւնք են, և անոնց որ 'ի վերջ առաջին դարու քրիստոնէութեան կամ 'ի սկիզբն երկրորդին ետևէ եղան աւելի բարեպաշտութեամբ քան առողջ քննադատութեամբ 'ի մի հաւաքել այն աւանդութիւններն որ կը վերաբերէին քրիստոնէական կրօնից սկզբնաւորութեան,

**Ենովքայ տեսիլքն. — Կտակ նախահարց. — Ասինեթի աղօթքն։ Յետոյ Տովբիթ, Յուդիթ, Եսթեր. և ապա Եզր Սաղաթիէլ։ Յետ Եզրի՝ Յովբ. Երկոտասան մարգարէք, Սաղմոսք, Առակք, Եսայի, Երեմիա, Եզեկիէլ։ — Մնացորդք. — Վասն Երեմիայի 'ի Բաբելոն. — Մահ մարգարէիցն. — Յեսուն Սիրաք։**

Ինչպէս կը տեսնէ ընթերցողն, հոս այլազգ է սուրբ Գրոց դասակարգութիւնն քան սովորաբար ընդունուածէն նաև 'ի մեր գրչագիրս. սակայն այս ցուցակին համեմատ ալ գրչագիրք կը գտնուին, որ կարգադրուած էր երկու հարիւր տարի յառաջ քան զԱյրիվանեցի, և որուն պատմութեանն մէջ այսպիսի խորագրով մը կը գրոշմուի. « Կարգադրութիւն գրոց սրբոց, որք ստուգաբանեցան 'ի Սարկաւագ վարդապետէն և գրեցան յինէն 'ի տէր Մխիթար վարդապետէս 'ի մին տուփ յաւուրս ԾՀ »։

Այս երկու յիշատակարաններին կը հետևցընէ Գարրիէր թէ Հայք չորեքտասաներորդ դարուն մէջ ունեցած ըլլան այս ամէն անհարազատ գրուածներն, և յոյս կը տածէ որ օր մը կարենան երևան ելլել. և յորոց մին ևեթ ցարդ հրատարակուած է կ'ըսէ, Եզրի չորրորդ գիրքը։ Կը վրիպի հմուտ ուսուցիչն՝ երբ Էջմիածնի Մատենադարանին մէջ յիշատակուած Ադամ գիրքն այն անունով յիշուած անհարազատ գրութեանց հետ կը նոյնացընէ, մինչ արդէն ծանօթ է մեզ անոր հեղինակն, և վերջին դարուց երկասիրութիւն մը ըլլալը։ Դանիէլի Եօթն տեսիլքն կը գըտնուի կ'ըսէ 'ի Լոնտոն՝ Լամպէթի արքեպիսկոպոսական մատենադարանին մէջ, այսպիսի վերնագրով. « Եօթներորդ տեսութիւն Դանիէլի, և զՆեռէն »։ Այս գրուածք մեզի անծանօթ է, և կը կասկածինք որ Հիւպպողիտոսի կամ Անթիպատրոսի Բոստրացւոյ ընծայուած անհարազատ երկասիրութեանց մէկ

Սինէյի, Պատուէրք հրեշտակին առ Դանիէլ, Պատմութիւն կամ անվաւեր մարգարէութիւնք, Մեկնութիւն երազոց, և այլն։

***

Նոյն Այրիվանեցին Մխիթար, — ինչպէս ըսինք, — իր պատմութեանը մէջն յիշելով հռչականուն Սարկաւագ վարդապետին ձեռքով եղած տոմարի նորոգութիւնն 'ի 1085 թուականին, աստուածաշունչ գրոց ցուցակ մ'ալ կը դնէ՝ ըստ կարգաւորութեան նոյն Սարկաւագայ. յորմէ կ'ենթադրուի թէ հայերէն սուրբ Գրոց ճիշդ կանոնն կամ որոշակի սահմանուած չէր, կամ դեռ եւս հակառակութիւն կը կրէր նաև ԺԱ դարուն վերջերը։ Հին սուրբ Գիրք երեք դասակարգութեան վերածուած են. այսինքն 1.° Նոր կտակարան; 2.° Հին կտակարան, և 3.° Նուրբքըն կոչուածներն. ակնարկելով այն գրքերն՝ որոց ընթերցումը թոյլ տրուած էր կամ յանձնարարուած։ Հին կտակարանին պատմական գրքերն այնպիսի կարգաւ դասաւորուած են այս ցուցակին մէջ, որ Իսրայելի ժողովրդեան անընդհատ ու շարունակեալ պատմութիւնը կը կազմեն, Ծննդոց գրքէն մինչ 'ի Մակաբայեցիս. և անոնցմէ ետքը կը յիշատակուին հետևեալներն.

Յովսեպոս՝ որ է Կայիափայ քահանայապետ[1]. —

[1] Առ արևելեայս ընդհանրապէս վիպական կարծիք մը տարածուած էր թէ Յովսեպոս պատմիչն նոյն ըլլայ ընդ Կայիափայ որուն 'ի հանդիպոյ երեցաւ Տէրն մեր 'ի դատաստան։ Կ'աւանդեն թէ Քրիստոսի սուրբ յարութենէն ետքը ընդունած ըլլայ անոր սուրբ հաւատոց ճշմարտութիւնը։ (Առ. Ասեմանեայ, յԱրեւելեան Մատենադարանի, Հատ. Գ. 522)։ Աստուածաշունչ գրոց գրչագիր մը՝ յետ Երրորդ Մակաբայեցւոց կը յաւելու. «Չորրորդ Մակաբայեցիսն ոչ գտի, և ոչ զՅովսեպոսն որ գրեալ էր 'ի գիրս»։

ծը, Թէպէտ յանուն Ենովքայ. « Սորա երկուքն յարձանագրութեանցն՝ ընդդէմ երկուց հանդերձելոցն, որպէս ասէ Յովսէպոս. Թէպէտև ուրն անյայտ » : Միայն առաջին գիրքն կը գտնուի 'ի Մատենադարանին Էջմիածնի (Թիւ 924) հետևեալ խորագրով. « Տեսիլ Ենովքայ արդարոյ հանդերձ մեկնութեամբն 'ի հրեշտակէն » : Ուրիշ գրչագրի մը մէջ ալ 'ի գրատան Երուսաղէմի անմիջապէս յետ գրոցն Եզրի. « Ենովքայ արդարոյ տեսիլ. Երեւեցաւ ինձ այր մի յանդիման Լիբանան լերին » :

Գիրք երկոտասան նահապետաց կոչուածն՝ իրենց անուամբ գտնուած կտակքն են, զոր յիշեցինք. ինչպէս նաև Աղօթքն Յովսեփայ:

Վերացումն Մովսեսի զոր կը յիշատակէ Փաբրիկիոս (Հատ. Ա. 839). Որոգինէս ալ աս գրքէն վկայութիւն կը բերէ. Նիկիոյ առաջին ժողովոյն գործոց մէջ ալ ասոր յիշատակութիւնն կ'ըլլայ, և կ'երևնայ թէ Կղեմայ Աղեքսանդրացւոյն ալ ծանօթ էր, ուստի քաղուածներ ալ ըրած ըլլալը կը կարծուի: Ըստ Նիկեփորայ՝ 1400 տողէ կը բաղկանար:

Էլդադ և Մովդադ. Առ Փաբրիկիոսի (Հատ. Ա. 801): Կը յիշուի այս գրուածք նաև 'ի Հովիւ գիրս Հերմասայ:

Սողոմոնի սաղմոսք. Սողոմոնի անուամբ ութեւտասն սաղմոսք: Առ Փաբրիկիոսի (Բնագիրք հին կտակ. 917):

Եղիայի ժամուշկքն կամ ինչպէս առ այլս կը կոչուի Յայտնութիւն: Պրիսկիլլեան աղանդաւորաց մէջ տարածուած գրութիւն մը, զոր կը յիշէն Որոգինէս և սուրբն Հերոնիմոս: (Առ Փաբր. 1072):

Դանիէլի տեսիլքն. Դանիէլ մարգարէին անուամբըն ալ այլևայլ անհարազատ շարադրութիւնք երեցած են: Ասոնցմէ են Այրիվանեցւոյն յիշատակած տեսիլքն, և անկէ դուրս Գուշակութիւնք Դա-

Այրիվանեցւոյն ցուցակին մէջ յիշատակուած այս ամէն գրքերն, բաց 'ի Մահ երկոտասանն մարգարէից կոչուածէն, կը գտնուին առ յոյնս, ասորիս, առ լատինս, և ոմանք նաև առ հրեայս և արաբացիս։

Ադամայ ընծայուած այլևայլ երկասիրութիւնք կան, զորս կը յիշատակէ Փաբրիկիոս. ինչպէս Ծնունդք կամ Արարածք, Յաղագս մշակութեան կոչուած գիրք մը, Ապաշխարութիւն Ադամայ, Սաղմոսք Ադամայ և Եւայի, յետ անկման իւրեանց. Յայտնութեան գիրք, Մարգարէական գուշակութիւնք 'ի վերայ տևողութեան աշխարհի, Յաղագս ստուգաբանութեան, Պատերազմ Ադամայ և Եւայի, Կտակ Ադամայ, և այլն։ Այսչափ գրոց խուռն բազմութեան մէջ՝ որոշակի չենք կրնար ըսել թէ որն է Այրիվանեցւոյն գրոց մէջ յիշուածը, որուն թարգմանութիւնն եղեր է 'ի հայ լեզու։ Յիշենք միայն ինչ որ հանդիպեր ենք 'ի հայ մատենագրութեան հետևեալ խորագիրը կրող գրուածը. «Պատմութիւն վարուցն Ադամայ և Եւայի նախաստեղծիցն որ յայտնեցաւ հրամանաւն Աստուծոյ 'ի ձեռն Միքայելի հրեշտակապետին՝ մեծ մարգարէին Մովսեսի, որ զաստուածագիծ տախտակն ընկալաւ։ Զոր նոր թարգմանեաց հոգևոր տէրն Սիմէոն յԵրուսաղէմ». և սկզբնաւորութիւնն է. «Զկնի ելանելոյ նոցա 'ի դրախտէն փափկութեան» [1]։

Ենովքայ գիրք. Այս սուրբ նահապետին անուամբըն ալ այլևայլ անհարազատ երկասիրութիւնք կան. ինչպէս Գիրք զոր եբեր հրեշտակն առ Ենովք, Աղօթք, Մարգարէութիւնք, Յայտնութիւնք, Տախտակք, և այլն։ Բայց վերջինքս դեռ 'ի մերում լեզուի և մատենագրութեան յայտնուած չեն։ Թերևս ասոնց մէկուն վերաբերի առ Խորենացւոյն յիշատակուա-

[1] Տես Monumenta Sacra et Profana, հրատարակեալ 'ի Միլան 'ի 1868 յԱմբրոսեան վարդապետաց։

գաւորութեամբ Սարկաւագայ 'ի շարս աստուածաշունչ գրոց հայ թարգմանութեան անցած.

Ադամայ.
Ենովքայ.
Երկոտասան նահապետք.
Աղօթք Յովսեփայ.
վերացումն Մովսիսի.
Ելդադ. Մովդադ.
Սողոմոնի սաղմոսքն.
Եղիայի ծածուկքն.
Դանիէլի եօթն տեսիլքն:

Այս ցուցակ իր դասաւորութեամբ և նիւթերով մեծ նմանութիւն ունի Նիկեփորոսի անուանը կրող Stichometria գրոց մէջ գտնուած և Անյայտից կոչուած ցուցակին հետ. միայն յետինս առաւելութեամբ ունի կտակ Մովսիսի, Աբրահամու, Սոփոնիայ մարգարէի ... Զաքարիայ հօրն Յովհաննու Մկրտչի ընծայուած գիրք մը, և մասն մի Բարուքայ, Ամբակումայ և Դանիէլի անուանքը կրող, որոնք կը պակսին 'ի հայ ցուցակին. մինչ հայն ալ ունի Գիրք Ադամայ, Սիբիլլայն, Սողոմոնի սաղմոսքն, և որոնք բաց 'ի Սիբիլլայի գրքէն, կը գտնուին ուրիշ աւելի ուղղագոյն Անվաւեր գրոց ցուցակի մը մէջ՝ զոր հրատարակած է բազմահմուտն Փիդրա՝ ծիրանաւոր գաղղիացի[1]:

Այրիվանեցին այս ցուցակէն ետքը անմիջապէս կը յաւելու. «Զայս ես և Անանէ գրեցաք 'ի վիմի քաղաքին, ուր եկեղեցի օրհնեցաք». որով հնասէրք կ'ախորժին ենթադրել թէ այս յիշատակուած անվաւեր գրոց թարգմանութիւնք կային 'ի մեր մատենագրութեան, մինչև յերեքտասաներորդ դար, յորում ապրած և գրած է Մխիթար. բայց այս կարծիք այնչափ հաւանական չերևնար, մեր գրչագրաց մէջ անոնց շատին հետքն անգամ չգտնելով:

[1] J.-B. Pitra; Juris ecclesiastici Græcorum historia et monumenta. Romæ, 1864, I. 100:

գովէ աղօթիւք առ Աստուած դառնալն ու ապաշխարութիւնը, եթէ ոչ զայս՝ ասոր նման ուրիշ ընտիր և աստուածահաճոյ զղջման և հառաչանաց ձայն մը բարձրացուցած պիտի ըլլար, 'ի քաւել զմեղսն։ Հաւանականաբար յեբրայեցի լեզուէ թարգմանուած է 'ի յոյն և 'ի լատին. իսկ 'ի մերս 'ի յունէ։ Ոմանք՝ հեբրայեցի լեզուով գտնուած կամ յիշատակուած չըլլալուն՝ զյոյնն սկզբնագիր կը համարին, իսկ այլք զլատինն. և գրութեան ժամանակը քրիստոնէութեան երրորդ դարուն կը պատշաճեցընեն, նոյն ատեններն յարմարցուած Առաքելական Սահմանադրութիւնք կոչուած գրուածին մէջ հանդիպելով անոր յիշատակութեան։

Մահ երկոտասան մարգարէից, որ կը տեսնուին ոչ միայն յաստուածաշունչ գիրս մեր, այլ նաև 'ի ճաշոցս՝ իրենց տօնին սեպհական օրը իբրու պատարագի ընթերցուած նշանակուած և ընդունուած։ Բաց յերկոտասան փոքր մարգարէից, կը հանդիպինք նաև մահուան Եսայեայ, Երեմիայ, Եզեկիելի և Դանիելի մարգարէից։ Ոչ առաջիններուն և ոչ ասոնց յիշատակութիւնը կայ ուրիշ ազգաց քով գտնուած ու անհարազատ սեպուած գրութեանց մէջ. որով և հաւանական կ'երևնայ ենթադրելը թէ 'ի մերոց յօրինուած ըլլան։ Ճառընտրի մը մէջ նշանակուած կը գտնենք յանուն սրբոյն Եպիփանու. «Անուանք երկոտասան մարգարէիցն թէ ուստի էին, և որպէս վախճանեցան և կամ ուր թաղեցան, Եպիփանու եպիսկոպոսի ասացեալ»։

***

Առ Մխիթարայ Այրիվանեցւոյ, ինչպէս յառաջ ալ յիշատակեցինք, հետևեալ անվաւեր կամ ոչ հարազատ գրոց ցուցակը կը գտնենք, իբրու թէ կար-

Թիւն մ'ալ միոյ եւեթ մասին, չորրորդ և վերջին գլխոյն, հանդերձ գաղղիական թարգմանութեամբ եղած է 'ի ձեռն Գարրիէր բանասիրի, ուսուցչի հայ լեզուի 'ի Փարիզ, հանդերձ հմուտ յառաջաբանով և տեղեկութեամբք՝ յորմէ վերը դրուած քանի մը տեղեկութիւններն քաղեցինք [1]:

***

Որիշ են այս գրուածէն Աղօթք Յովսեփայ և Աղօթք Ասանեթայ կոչուածներն, և որք կը գտնուին յասորի, 'ի յոյն և յայլ լեզուս. իսկ մեր հայ մատենագրութեան մէջ դեռ յայտնուած չեն: Միայն անոնց յիշատակութիւնը կայ առ Մխիթարայ Այրիվանեցւոյ պատմչի, որ Գիրք Հրէից ծածուկքն կոչուած անվաւեր գրուածոց մէջ կը յիշէ բաց յայլոց նաև Աղօթք Յովսեփայ անունը կրող գրուած մը: — Նոյն պատմիչն՝ Սարկաւագ վարդապետին ձեռքով եղած սուրբ Գրոց ցուցակին կարգաւորութիւնն յիշատակած տեղն՝ ուրիշ անհարազատ գրութեանց հետ կը յիշէ նաև Ասենիթի աղօթքն:

Մանասէի աղօթք. որ ոչ լոկ սուրբ Գրոց յաւելուածոց մէջ, այլ և 'ի հասարակաց աղօթս և 'ի ժամագիրս մեր մուտ գտած է. և է հանրածանօթ Տէր ամենակալդ սրտառուչ մաղթանքն: Սուրբ Գրոց կանոնէն դուրս ձգուելուն պատճառն ուրիշ բան չէ, բայց տարակուսական ըլլալն թէ արդեօք սոյն Մանասէ արքայի շարագրածն է թէ յայլոց գրուած և իրեն ընծայուած: Ապա թէ ոչ, համաձայն աստուածաշունչ գրոց պատմութեան, որ այս յանցաւոր թագաւորին մեղքն պատմելէն ետքը, կը յիշէ ու կը

[1] Une version arménienne de l'Histoire d'Asseneth, par A. Carrière, professeur à l'école des langues orientales vivantes. Paris.

մնացած յոյն հատուածն։ Կը գտնուին 'ի նմա քանի մը զանցառութիւնք, բայց ոչ այնչափ էական և կարեւորք. և անշուշտ արդասիք գրչաց կամ ընդօրինակողաց անմտադրութեանն։ Լեզուին նայելով, հին թարգմանութիւն կ'երևնայ, սակայն հաւանականաբար առանց պատկանելու մեր մատենագրութեան ամենէն աւելի ծաղկած և բարգաւաճ ոսկեդարուն։

Հին կտակարանի անհարազատ գրոց քննադատութեամբն ու հետազօտութեամբ զբաղող անուանին Տիլման՝ 1883էն 'ի վեր յայտնած էր որ այս պատմութեան ասորական մէկ օրինակը կը գտնուի 'ի Բրիտանական մուսէոնին. մտադրութիւն չընելով անշուշտ թէ արդէն այդ թուականէն շատ յառաջ՝ 1870ին, հրատարակած էր զայն տպագրութեամբ Լանտ, գտնելով ուրիշ հետաքննական գրուածոց հետ « Զաքարիայի Մելիտինեցւոյ պատմութիւն եկեղեցւոյ » կոչուած գրքի մը մէջ։ Երկու ձեռագիրս գտնուած հատուածներն իրարու քով դնելով և միացընելով, կրցաւ Լանտ գրեթէ ամբողջութիւն տալ գրուածին. բաց 'ի մէկ պարապ մնացած կտորէ՝ երկու կամ չորս էջ։ Ասորի թարգմանութիւնն եղած է 'ի վեցերորդ դարու. սակայն շատ աւելի համառօտ քան զհայկականն. կամ այն պատճառաւ որ հայ թարգմանչին ունեցած օրինակը ամբողջ էր, և կամ ասորին համառօտած է զայն, որպէս ամփոփութիւն և ազատութիւն յաճախ կը տեսնուի այդ ազգին թարգմանչաց քով։ Սակայն անով հանդերձ շատ տեղ կ'ուղղէ զհայկականն, որն որ իր կողմանէ ասորի թարգմանութեան բազմապատիկ սխալ ընթերցուածներն կը լուսաբանէ։

Հայկական թարգմանութիւնն ամբողջ հրատարակուած է 'ի մեր տպարանի[1]. նորագոյն հրատարակու-

[1] Բազմավէպ, 1885, 86։

կտակ Դանայ, վասն ամբարտաւանութեան։
կտակ Նեփթաղիմայ, վասն բնական բարութեան։
կտակ Գադայ, վասն ատելութեանն։
կտակ Ասերայ, վասն երկդիմութեան և առաքինութեան։
կտակ Յովսեփայ, վասն նախանձու։
կտակ Բենիամենի, երկոտասաներորդ։

***

Ասոնցմէ ետքը կու գայ Պատմուշրիշն Յովսեփայ և Ասանեթայ։ Ասանէթ՝ որպէս յայտնի է 'ի սուրբ Գրոց, դուստր էր Պուտիփարայ Եգիպտացւոյ, զոր տուաւ Փարաւոն 'ի հարսնութիւն Յովսեփայ։ Այս գրուածին լատին համառօտութիւնն հրատարակեալ է 'ի Պատմական հայելի կոչեցեալ գիրս Վինկենտի Բելլովիգենացւոյ և առ Փաբրիկիոսի, յիւրում Մատենադարանի։ Նոյն Փաբրիկիոս հրատարակած է 'ի Codex pseudepigraphus Ասանեթայ պատմութեան սկզբնաւորութիւնն 'ի յոյն լեզու, որ առ մեզ հայկական լեզուով պահուած ամբողջ գրութեան գրեթէ քառորդ մասն է. բայց շատ աւելի ընդարձակ ոճով քան զլատինականն հրատարակեալ 'ի Բելլովիգենացւոյն։ Յունական սկզբնագրին չարունակութիւնն կամ ամբողջութիւնք ինչուան հիմա գտնուած չէ, և անանկով Ասանեթայ պատմութիւնն անկատար մնացած, թէպէտև հնագոյն և աւելի հարազատագոյն կերպարանքով մը։ Հայ թարգմանութիւնն, որ հաւանականաբար յունականին վրայ եղած է, ամբողջ գրուածքն հասուցած է մինչև առ մեզ, բաց 'ի մէկ կտորէն՝ որ կամ դիտմամբ զեղչուած է, և կամ ձեռագրին կրած մէկ արկածից հետևանք է։ Թարգմանութիւնն է հարազատ և ճիշդ ընդ բնագրին և ընտիր լեզուով. և շատ տեղ կրնայ ուղղագրել

Կրապի ենթադրութիւնը թէ յառաջ քան զՔրիստոս հրէի մը ձեռքով շարագրուած ըլլան, և ապա 'ի քրիստոնէից այլևայլ փոփոխութիւններ կրած ․ վասն զի ոճոյն միակերպութենէն յայտնի կը գուշակուի, կ'ըսէ, մէկ անձի մը երկասիրութիւն ըլլալը ։ Հաւանական կը սեպէ դարձեալ որ հրեայ մը ըլլայ յօրինողն և ոչ հեթանոս. և զոր կը հաւատարմացընէ գործածած յոյն լեզուի ոճովն և 'ի հրէական այլևայլ աւանդութեանց՝ զոր կը քաղէ Ենովքայ անունը կրող մարգարէական գրքէն ։ Մեր գրականութիւնն հասուցած է առ մեզ ասոնց հաւատարիմ և ընտիր ոճով պատրաստուած թարգմանութիւն մը ։ Կը գտնենք հետաքննին բանասիրաց համար ասոնց գլխակարգութիւնքը ։ Ամենուն ալ սկըզբնաւորութիւնը գրեթէ նոյն է ։

Գիրք Մնացորդաց. խօսք Ռուբէնի, կտակ առաջնոյն. « Հրաման կտակի Ռուբէնի զոր պատուէրեաց որդւոց իւրոց, զկնի երկրորդ ամի վախճանելոյն Յովսեփայ »[1] ։

Կտակ Շմաւոնի, վասն նախանձու երկրորդ ։

Կտակ Ղեւեայ, վասն քահանայութեան և ամբարտաւանութեան ։

Կտակ Յուդայի, վասն արութեան և արծաթսիրութեան ։

Կտակ Իսաքարայ ։

Կտակ Զաբուղոնի ։

[1] Գրչագիր մը կը յաւելու.

... « Մի ոք թուեսցի շաղփաղփ այս բանք
Կամ հէքիաթ զըրոյց անցանք.
Աստուածաշունչ է այս դարմանք,
Հոգւոյ մըտաց կենդանականք ։
Զի ճանապարհ է այս վերին
Հիմն և առաջնորդ օրինին
Վըկայք պատմիչք անեղ Բանին
Մարդեղութեանըն կուսածին »... ։

Բայց մեր վախճանէն դուրս ըլլալով ասոնցմով զբաղիլն ու զբաղեցընելը, բաւական սեպենք համառօտիւ յիշատակել՝ ինչ որ այս նկատմամբ աւանդած ու հաստատուած է առ մեզ հայ գրականութիւնն։

Ասոնց մէջ առաջին է կարգաւ և ժամանակաւ, — որովհետև յաճախ գրչագիրք անմիջապէս Ծննդոց գրքէն վերջը կը կարգեն զայն —

Կտակք երկոտասան նահապետաց կոչուածը։ Հաւանական կ'երևնայ թէ քրիստոնէութեան առաջին դարուն՝ կամ 'ի սկիզբն երկրորդին շարադրուած ըլլան՝ նոյն սուրբ կրօնքն ընդունող հրէի մը ձեռքով որ Յակոբայ որդւոց բերանը կը դնէ Մեսիայի վերաբերեալ մարգարէութիւններն։ Կտակք կոչուելուն պատճառն է՝ որ իւրաքանչիւր ոք յորդւոց աստուածատեսն Իսրայելի՝ մահուանն անկողնոյն շուրջը բոլորուած որդւոցը իմաստուն խրատներ, և ընտիր պատուէրներ կ'աւանդէ՝ յայտնելով իրենց զ'ի ռաքուն գիտութիւն ապագայից։

Քրիստոսի աստուածութեան վրայ ամենընտիր վկայութիւնք ամփոփուած են 'ի նոսա, կարևորք իրենց հնութեամբ. լեզուն ալ քերթողական բացատրութեամբք ճոխ. և հեղինակն՝ հմուտ 'ի գիտութեան գրոց սրբոց, անոնց հոգին լաւ ըմբռնած է և կը բացատրէ. երէց է ժամանակաւ քան զՈրոգինէս, որ 'ի գիրս իւր այլևայլ տեղուանք անոնց յիշատակութիւնը կ'ընէ, թէպէտ և ոչ դասելով 'ի շարս կանոնական գրոց. և որովհետև Երուսաղէմի կործանման յիշատակութիւնն կ'ըլլայ անոնց մէջ և հրէական ժողովրդեան պատուհասին, անտարակուսելի կ'ըլլայ որ Քրիստոսի 30 թուականէն ետքը գրուած են։ Գերմանացին Մէօհլէր իր Գիտութիւն Հարց (Patrologie) գրքին մէջ կ'ըսէ թէ ամենայն ինչ 'ի նմա յայտնապէս կը ցուցընէ թէ քրիստոնէի մը հեղինակութիւն է, և անընդունելի կը համարի

մասունքն յորդորամիտ ըրին զինք՝ իր ըրածէն տարբեր և լաւագոյն աշխատասիրութեան մը ձեռք զարնել, որ առաւել շուտեկան ըլլայ ընթերցողաց, խուսափելով անոր պակասներէն։ Ուստի վրիպեցաւ բազմահռչակ վարդապետն արևմտեան եկեղեցւոյ Հերոնիմոս 'ի կարծելն թէ Եւսեբեայ գրածը հետևողութիւն է Ամոնիի և ոչ այլ ինչ [1]։

## Թ. ԱՆՅԱՅՏ ԿԱՄ ԱՆՎԱՒԵՐ ԳԻՐՔ

### Ի ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԻ

Աստուածաշունչ գրոց մէջ՝ բայց առանց անոնց մասն սեպուելու՝ կը գտնուին նաև բոլորովին անհարազատ գրութիւնք, որք երբեմն իբրու անոնց մասունք՝ շատ գրչագրաց մէջ ալ անցած են։ Այսպիսի թէ հին և թէ նոր կտակարանի պատկանող երկասիրութիւնք բազմաթիւ են առ այլս 'ի քրիստոնեայ հին ազգաց, բայց նաև առ մեզ ոչ աննշան թուով ու խրատամբք հետաքննականք։ Ընդհանուր և առհասարակ ընդունելի կարծիք մ'է՝ թէ ասոնցմէ շատերն յօրինողք և յերիւրողք՝ քրիստոնէական կրօնքն ընդունող հրէայք եղած ըլլան՝ հին կտակարանին մասն ենթադրուածներն, հասարակաց թուականութեան առաջին դարերէն. նորոյն ալ՝ Գնոստիկեան աղանդաւորք՝ ունենալով իրենց մասնաւոր դիտումն ու նպատակը թէ առաջինքն և թէ վերջինք։

[1] Canones quos Eusebius Cæsarensis episcopus, Alexandrinum secutam Ammonium, in decem numeros ordinavit, sicut in græco habentur, expressimus. Ուրիշ տեղ մ'ալ. Ammonius evangeliis Canones excogitavit, quos postea secutus est Eusebius Cæsarensis.

գրոց բանին։ Ընծայական թղթոյն սկզբնաւորութիւնը հետեւեալն է.

« Եւսեբի՝ Կարպիանոսի սիրելի եղբօր 'ի տէր ողջոյն։ Ամոնի Աղեքսանդրացւոյ բազում աշխատութեամբ և ճշգրտիւ փոյթ 'ի մէջ առեալ, զառ 'ի չորեց եթող մեզ զաւետարան Մատթեան աւետարանին՝ զհամաբարբառս այլոց աւետարանչացն զգլուակըս եդեալ առընթեր միմեանց։ Որպէս զի 'ի հարկէ դիպել կարգի շարի կարգի երիցն եւս ապա կանոնելոց որչափ ըստ միայար ընթերցուածոյն։ Արդ զի ողջանդամ և զայլոցն եւս զբնաւ մարմնոցն և զշարի ունիցիս գիտել զյանցնիւրսն ըստ իւրաքանչիւր աւետարանի 'ի տեղիս յորս նոքին ածան, ասել ճշմարտասիրութեամբ 'ի յաշխատասիրութենէ յառաջագոյն ասացելոյ առնն առեալ պատճառս ըստ այլում գումարութեան կանոնս տասն թուով, գրոշմեցի քեզ ներքնակարգեալս »։ Հայերէն թարգմանութեան մութ տեղուանքն աւելի դիւրիմաց ընելու նպատակաւ՝ կը դնենք 'ի ծանօթութեան զյոյն բնագիրն * ։

Այս է ահաւասիկ Ամոնի Աղեքսանդրացւոյ համաբարբառ երկասիրութեան նկարագիրը, զոր կուտայ 'ի յիշեալ թղթին առ Կարպիանոս։ Չըսեր թէ էրմէ առած է գլխակարգութեանց (κεφάλαια) գրութիւնն. այլ միայն թէ անոր երկասիրութեան թերի

* Αμμωνὶος μὲν ὁ Αλεξανδρεῦς, πολλῆν, ὡς εἰκος, φιλοπονίαν καὶ στουδὴν εἰσαγηοχὼς, τὸ διὰ τεσσάρων ἧμῖν καταλέλοιπεν εὐαγγέλιον, τῳ κατὰ Ματθαῖον τᾶς ὁμοφώνους τῶν λοιπῶν ευανγελιστῶν περικοπὰς παραθεις, ὡς εξ ὂναγκης συμϐῆναι τὂν τῆς ἀκουλουθίας εὗρμὸν τῶν τριῶν διαφθαρῆναι, ὅσον ἐπὶ τῳ ὗφει της ἀναγνώσεως. Ἵνα δε σωζομένου καὶ τοῦ τῶν λοιπῶν δἱ ὅλου σώματός τε καὶ ειρμοῦ, εἰδέναι ἒχοις τοῦς οἰκείους ἒκοτον εὐανγελιστοῦ τόπους, ἐν οἷς κατὰ των αὐτῶν ἠνέχθησαν φολαλήθως εἰπεῖν, ἐκ τοῦ πονήματος τοῦ προειρημένου ἀνδρὸς εἰληφὼς ἀφορμας, καθ᾽ ἑτέραν μέθοδον κανόνας δέκα τον ἀριθμὸν διεχάραξα σοι τοῦς ὑποτεταγμένους.

***

Ինչպէս ուրիշ ազգաց Նոր կտակարանաց թարգմանութեանց մէջ, այնպէս 'ի մերումս կան Նախագրութիւնք չորից աւետարանաց, զոր արդէն յիշեցինք, և կանոնք կամ գլխակարգութիւնք՝ համեմատութեամբ չորից ընդ միմեանս, և որ աւելի սովորական անուամբ Համաձայնութիւնք կամ Համաբարբառք (Διάτεσσάρον) կը կոչուին։ Հին քրիստոնէութեան պատմութենէ և յաւանդութենէ գիտեմք թէ չորս աւետարանքն 'ի մի զուգելով և դէպքերն իրարու համաձայնեցընելով, համաբարբառ. վկայութեամբ աւետարանագրաց՝ Քրիստոսի վարքը յօրինած էր Տատիանոս յերկրորդ դարու։ Հատուածք այս նշանաւոր երկասիրութեան գտնուեցան յասորական–քրիստոնեայ մատենագրութեան. և հմուտք՝ անոնց բաղդատութեամբն կարծեցին, և ընդհանրապէս ընդունելի ըրին հնագիտաց և հետամտից պատմութեան եկեղեցւոյ թէ Եփրեմի Խուրի ասորւոյ Համաբարբառի մեկնութիւնը՝ որուն ասորի սկզբնագիրը կորսուած, և միայն հայկական թարգմանութեամբն ծանօթացած է բանասիրաց, Տատիանոսի երկասիրութեան վրայ և անոր համեմատ եղած գըրաւոր արտադրութիւն մ'է։

Այս կարծեաց գլխաւոր պաշտպաններէն մէկն է հմուտ ասորագէտն՝ և հայկական լեզուիս ոչ անտեղեակ աւստրիացի վարդապետն Մէօսինկէր (+ 1881)։ Եւսեբեայ՝ որ ինչպէս յայտնի է, ժամանակաւ կըրտսեր է քան զՏատիանոս, երկասիրութիւնն այս չէ. այլ ցուցակ մը համեմատութեան՝ ամէն մէկ իջի վըրայ, չորս աւետարանագրաց բովանդակութեանը, չորս սիւնակի մէջ ամփոփելով. զոր մասնաւոր նամակաւ մը կ'ուղղէ առ Կարպիանոս ոմն՝ անշուշտ խըն-

տանքը, զոր և ինքն իսկ կ'ակնարկէ 'ի յառաջաբանի առաքելական Պրակաց, զոր յօրինած է ըստ ոմանց 'ի 490 և այլոց 'ի 462 [1]. « Ահաւասիկ իմ իսկ, կ'ըսէ, զառաքելական գիրս տուն առ տուն ընթերցեալ և գրեալ, կանխագոյն առաքեցի առ ոմն ըստ 'ի Քրիստոսէ հարցն մերոց, սակաւ ինչ իմովանն ակարութեամբ ջանացեալ. իբրև զաւանակ մի [2] անվարժ նորուսումն ընդ անապատ ընդ անկոխ ճանապարհ անցանել մտանել 'ի հրահանգս հրամայեալս»: Քիչ ետքն ալ ուղղելով խօսքն առ Աթանասիոս՝ իր Թղթակիցն, կը յաւելու. « Արդ որպիսի օրինակաւ պարտ իցէ ընթերցուածասէր լինել և աննխազ զնորին պարտն մեծարել, մանաւանդ մեզ իսկ զօրհանապազ, և 'ի մօտոյ ինձ իսկ գլխովին, որ զԳործոց առաքելոց գիրս, միանգամայն և զԹղթոցն կաթողիկեայց մատաբերեցի ընթեռնուլ ըստ գլխոցն և ըստ տանցն, և եթէ որչափ պարտ իցէ ընտրել զգլուխս և զատենս, և զատանել զմիտսն 'ի միմեանց մանր մասամբք, որպէս հրամայեցեր մեզ, եղբայր սիրելի Աթանասիէ *»:

[1] Ուղղագոյն կ'երևնայ մեր ձեռագրաց մէջ յիշատակուած թուականն, «ՆԺ (410) Եւթաղի աղեքսանդրացի յօրինեաց ցցանկ Առաքելոցն և զԳործոց». և որ աւելի կը յարմարի ժամանակի հայկական թարգմանութեան սուրբ Գրոց:

[2] Յոյն բնագիրն ունի. իբրև ըհամբաւ մի:

* Τοῖος τοιγαροῦν φιλόλογος ἄγαν ὑπάρχων τὸν τρόπον, ἀλικτως τε ταῦτην, ως φίλος, γεραίρων, ούχ ἥκιστα δέ ἀν ευφημῶν ἑκαστοτε, ἔναγχος ἐμοι γε τήν τε τῶν Πράξεων βίβλον ἅμα, καὶ κἀθολικῶν Ἐπιστολῶν ἀναγνῶναίτε κατὰ προσῳδίαν, καὶ πως ἀναπεφαλαιωσασθαι, καὶ διελεῖν τουτων ἑκαστης τυν νουν λεπτομερῶς, προσεταξας, ἀδελφὲ Αθανάσιε προσφιλέστατέ ... κ. τ. λ.

եթէ ըստ աւետարանականաց՝ նմանօրինակ բաժանմանց վերածել նաև առաքելական Գործքն ու Թուղթերը, քիչ տարբերութեամբ անոնցմէ. և են նախ՝ տիտղոսաց կամ ինչպէս ինքն Եւթաղ կը կոչէ՝ գլխոց դասաւորութիւնն կամ յօրինուածութիւնը, աւելի երկարօրէն յառաքելական Գործս և 'ի Թուղթըս՝ քան զորս ենն յաւետարանս, և Սկիզբն գլխոց Աւետարանին Մարկոսի... կ'արձանագրուին ըստ ձեռագրաց: Եւթաղի գլխակարգութիւնք ոչ միայն անոնց նման համառօտք չեն՝ այլ մերթ մէկէն աւելի ստորաբաժանումն ալ ունին:

Ոմանց թուեցաւ թէ Եւթաղ օգուտ քաղած ըլլայ իրմէ յառաջընթաց եղող ուրիշի մը նման աշխատասիրութենէն. բայց իր խօսքերը, որուն զուգընթաց կ'երևնան նաև իրաց հաւաստիք, աւոր հակառակ վկայութիւնը կու տան. «Զի ոչ ոք յայնցանէ, կ'ըսէ, որ աստուածեղէն բանին եղեն պատգամաւորք մինչև ցայսօր գիտէի թէ վասն գրոցս այսոցիկ փոյթ յանձին կալեալ եցոյց զկերպարանս աշխատութեան. քանզի ոչ ինչ այնպէս յանդուգն և ժպիրհ էի, եթէ զայլոյ ջան վաստակոց յիս առեալ անխնայ թշնամանէի տկարութեամբ՝ սակաւ գիտութեանս մերոյ զընթերցուածոցն ընտրութիւն»:

Եւթաղի երկասիրութեանն երկրորդ մասն՝ աւելի կարևորն է և հետաքննական. — ստիքերոնը: Ընդհանրապէս քերթուածոց տող առ տող գրուելուն կը վերաբերի այս բառին նշանակութիւնը: Նախնիք մեր զայն արմատն στίχος թարգմանած են կարգ, տող, ոտանաւոր, ստիք, պարիսպ, տողն աղօրից, և այլն. իսկ στιχήρης-ρος, ոտանաւոր, ստիքերոն, տողն չափով: Եւթաղ մեծ նորութիւն մը եմոյծ 'ի սուրբ Գիրս. բայց այս նորութիւնը հարկ չէ փնտռել գլխակարգութեանց և տիտղոսներու մէջ, այլ ստիքերոնի դրութեան մէջ արժան է նկատել իր աշխա-

Աղերսը, որ ծանօթ է նաև արևմտեայց. և հրատարակուած առ Մինեի (Dictionnaire Diplomatique) և 'ի գիրսն Zaccagni, Vetera monumenta Collectio).

Քրիստոնէութեան առաջին դարերու մէջ՝ սուրբ Գրոց վրայ եղած մեկնաբանական երկասիրութեանց գլխաւոր նպատակ եղած են Աւետարանք։ Վասն զի հրէութեան, հեթանոսական կրօնից ու նոյն իսկ անդրանիկ քրիստոնէութեան մէջ երևցած հերձուածոց դէմ՝ հարկ էր զանոնք պաշտպանել, ծանօթացընել և պահպանել։ Տատիանոս, Ամմոնիոս ու Եւսեբի՝ եղած են մեզի ծանօթ իմաստուն մեկնիչք որ իրենց ջանից և ուսման գլխաւոր առարկայ ըրին զաւետարանն ու անոր պաշտպանութիւնն։ Յետ Եւսեբեայ՝ համեմատաբար քիչ աշխատանք մնացած էր կատարուելիք այդ սուրբ և նուիրական գրոց վրայ. առ առաւելն՝ մարթ էր կատարելագործել, աւելի պարզութիւն տալ իր կանոնական գրութեանն և ոչ ինչ այլ աւելի։ Եւ այնպէս ալ եղաւ։

Աւետարաններէն ետքը՝ կարգը առաքելական Գրակաց և Թղթոց կու գար։ Նոր կտակարանաց այս մասին վրայ էական և գլխաւոր աշխատանքը՝ հինգերորդ դարու մէջ, Եւթաղի կը պատկանի։ Իր վարուց վրայ այսչափ միայն գիտենք որ սարկաւագ էր, ու յԵգիպտոս՝ հաւանականաբար յԱղէքսանդրիա ապրեցաւ. Թէ եպիսկոպոսական աստիճանի ալ բարձրացած ըլլայ, ինչպէս ոմանք կարծեցին, պատմական ստուգութիւն չունի։ Եւթաղի երկասիրութիւնը երկուքի կը բաժնուի. յորոց մին է այն գըլխակարգութիւնք կամ բաժանմունք՝ որ իր անուամբ Եւթաղեան կը կոչուին. և երկրորդն՝ տողից չափը կամ տողաչափութիւնն (stichometrie), ստիքիրոն կամ տունք չափով արարեալ ինչպէս կը թարգմանեն զայն նախնիք մեր։ Առաջինն ուրիշ բան չէր, բայց

Առաքելական Պրակաց կամ Գործոց և իրենց անունը կրող Թղթոց նախադրութիւնքն ալ Եւթաղէ ընծայուած են, որուն ժամանակը ոչ յոյժ հեռի է 'ի Թարգմանութենէ սուրբ Գրոց 'ի հայ լեզու։

Խօսինք նախ Եւթաղի վրայ։

Իր անձին վրայ 'ի գրչագիրս մեր հետևեալ տեղեկութեանց կը հանդիպինք. «Արկադիոս և Ոնորիոս, որդիք Թէոդոսի մեծի, ամս քսան և չորս (թագաւորեցին)։ Ի սորա երկրորդ ամին եղև Եւթաղ երանելի Աղեքսանդրացի, որ հրաշազան յօրինուածովք զսուրբ զառաքելոցն և զկաթուղիկեայց զեւթանացունց Թղթոցն զառաջաբանն և զմանաւորսն և զընթերցուածսն կարգեաց, սակս հերձուածոցն որ էին յայնմ ժամանակի. Կաղորբոսի և Կարպոկրատեայ, Կաթարոսի և Ենկղարոսի, որք սոսկ մարդ ասէին զՔրիստոս. և զհին կտակարանսն ոչ ընդունէին, և զվկայութիւնսն որ վասն Քրիստոսի խօսէին»։ Այսպէս յիշատակուած կը գտնենք 'ի Կայսերաց կոչեցեալ գիրս։

Ուրիշ տեղ մ'ալ. «Եւթաղ գրէ առ Ճգնաւոր ոմն Աթանաս անուն, որ խնդրէր 'ի նմանէ զցանկ առաքելոցն, ընդդէմ եղծանողաց զսուրբ գիրս։ Ոչ այն է՝ որ զցանկ Գործոցն խնդրեաց. այլ այլ ոմն Թագաւորազն»։ Միւս այլ յիշատակագիր. «Ցաւուրս Արկադեայ և Ոնորեայ սուրբն Եւթաղի Աղեքսանդրացի արար զցանկ առաքելոյս 'ի խնդրոյ մեծի հաւրն Թէոփիլոսի. նաև զԳործոցս և զկաթուղիկէից, 'ի խնդրոյ Թագաւորազն կրաւնաւորին Աթանասի համահաւասակի. յաղագս հերձուածոյն Կղէոբոսի և Կարպոկրատեայ, որք զվկայութիւն մարգարէիցն որ վասն Քրիստոսի հանել եղծանէին 'ի նոր կտակարանացս»։ Ուրիշ գրչագիր մ'ալ կ'ազդէ. «Այլ է այս՝ և այլ այն որ զԳործքն է խնդրել»։ Յայտնի է 'ի վախճան սուրբ Գրոց իր անունը կրող

իբրև 'ի տուչութենէ զայս ինչ» : Ի Նախադրութեան առաջին Մակաբայեցւոց. «Ի միջոցս յայս 'ի Յովսեպայ և յԱփրիկանեայ առեալ Եւսեբի զանուանս քահանայապետից՝ որ տիրէին ժողովըրդեանն, նշանակէ 'ի կանոնս ժամանակաց» : Սըրբոյն Աթանասի գրուածոց մէջ կը յիշատակուին Աստուածաշունչ գրոց նախադրութիւնք կամ յառաջաբան տեղեկութիւնք յօրինեալք 'ի նմանէ, սակայն չեն 'ի կարգի հարազատ երկասիրութեանց սուրբ հայրապետին, և չունին նմանութիւն առ մեզ գըտնուածներուն հետ : Ուստի հաւանականաբար կըրնանք կարծել թէ 'ի մերոց յօրինուած ըլլան, և կամ նմանողութեամբ յոյն լեզուով շարագրուած նման գրուածի մը՝ որ կամ իսպառ անհետացած է, և կամ դեռ յայտնուած չէ : Յօրինման և շարագրութեան ոճն թուին հաւատարմացընել թէ բուն ազգային ըլլան [1] :

***

Բայց ոչ նոյնպէս և Նոր կտակարանի գրոց Նախադրութիւնք. վասն զի 'ի գլուխ չորից աւետարանագրաց գրուած Նախադրութիւնք՝ թարգմանուած են 'ի յունականէ. և յոմանց կ'ընծայուին արդէն մեր ընթերցողաց ծանօթ Պամփիլեայ վկայի, իսկ յայլոց Կեսարացւոյն Եւսեբեայ. համաբարբառքն ալ՝ կամ համեմատութիւնք չորից աւետարանաց ընդմիմեանս՝ Ամմոնի Աղեքսանդրացւոյ, զորս յետոյ յընտրելագոյն կարգ վերածեց նա ինքն Եւսեբի :

[1] Մեզմէ շատ յառաջ ըսած է Գեր. Սոմալեան. Ristretto degli argomenti di ciascun libro e di ciascuno capitolo della Bibbia. Opera maestrevolmente composta e tradotta nell'idioma armeno; quantunque non si conosca fino ad ora l'autore. *(Quadro delle Opere anticamente tradotte in armeno)*.

ազգային ժողովոյ մը մէջ 'ի Պարսաւ' սահմանուած և վճռուած է անոնց թիւը։ Այսպիսի խնդիրք' մեր գրուածքիս նպատակէն դուրս են, որ քննասիրականն եւեթ ունի տեսակէտ։

Հետաքննելին այն է որ աստուածաշունչ տառից բովանդակութեան մէջ, 'ի ցուցակս գրոց' յորոց օրինակ մը մէջ բերինք, կան այնպիսի մասունք որ նոյն սուրբ մատենին հետ երկրորդական վերաբերութիւն ունին։ Այս գրութեանց ներքին և մատենագրական արժէք կը բռնադատեն զմեզ համառօտիւ, — երկասիրութեանս տանելոյն չափ, — խօսիլ վրանին, 'ի հմտութիւն ազգային և օտար բանասիրաց։

Նախ այն Նախադրութեանց վրայ որ 'ի գլուխ ամէն մատենից աստուածաշունչ տառից հնոյ կտակարանին կը գտնուին ընտիր և իմաստուն յօրինուածով և շարադրութեան գեղեցիկ ոճով. հետազօտելով նախ թէ արդեօք սկզբնագիրք են առ մեզ, եթէ թարգմանութիւնք յօտար լեզուաց։ Երկրորդ, ունի՞ն արդեօք զայն հնութիւն, ինչ որ սուրբ Գրոց թարգմանութեան կու տան ստուգահաւատ աւանդութիւնք և պատմութիւն։

Այս Նախադրութեանց ու անոնցմէ ետքը անմիջապէս դրուած ցանկերուն յունական սկզբնագիրը դեռ գտնուած չէ։ Ոմանք Եւսեբեայ Կեսարացւոյ կ'ընծայեն զայնոսիկ. բայց անհաւանական կը թուի այս ենթադրութիւն, որովհետև անոնցմէ մի քանիին մէջ կը յիշատակուի նա ինքն Եւսեբի, և 'ի Քրոնիկոն գրոց նորա կամ' 'ի ժամանակականացն վըկայութիւնք մէջ կը բերուին։ Այսպէս, օրինակ իմն, 'ի Նախադրութեան գրոցն Եսթերայ, « Ժամանակ իրացն Եսթերայ ... ոմանց առ Երկայնաձեռն Արտաշիսիւ թուեցաւ լինել. այլ եւ ոչ առնում յանձն' ասէ Եւսեբի » ։ Դարձեալ 'ի Նախադրութեան գրոցն Յուդթայ. « Ասէ Եւսեբի 'ի Քրոնիկոնին'

'ի պէտս ամենայն ազգիս Հայոց. վասն զի յամենայն ազգս Հայոց՝ որ է շատ և բազում՝ ճորով թէ գըտնուի քսան աստուածաշունչ ընդ ամէնն. և կու նըստի գինն 200 կամ 300 ֆ''լի մէկն, և չգտնուիր. և յոյժ պիտանի է վարդապետաց և հայրապետաց և քահանայից»: Այնչափ աւելի իրաւամբք կը փութայր 'ի դարմանն, որ բաց 'ի յիշեալ պատճառաց՝ նաև գրութեան դժուարութիւնք և ծախք որ ըստ օրէ մեծագոյն եւս կ'ըլլային ազգին վրայ ծանրացող աղետից ու անոնց բնական հետևանք աղքատութեան համար:

## Ը. ՀԱՅ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ Ս. ԳՐՈՑ

### ԿԱՐԳ ԵՒ ԴԱՍԱՒՈՐՈՒԹԻՒՆ

Այս նկատմամբ քիչ և համառօտ է մեր ըսելիքը: Աստուածաշունչ գրոց մատենական դասակարգութիւնը՝ ընդհանրապէս ժամանակագրական-պատմական է՝ թէ յեբրայական և 'ի քաղդէացի բնագրին և թէ 'ի յոյն Թարգմանութեան Եօթանասնից: Մեր Թարգմանութիւնն ալ այս վերջնոյս վրայ եղած ըլլալով, այդ բնական կարգը պահուած է 'ի նմա, առանց դնելու խտիր ընդ նախականոն և ընդ երկրորդական կոչեցեալսն, և այնպէս գրչագրաց 'ի գրչագիրս փոխանցուելով հասած են առ մեզ: Անշուշտ և առ նախնիս մեր, որպէս առ այլ ազգս քրիստոնէական հնութեան, յուզուած են խնդիրք և տարակոյսք՝ նախականոն և ոչ նոյնպիսի գրոց ընտրութեան և ընդունելութեան յեկեղեցւոջ. և ազգային եկեղեցական պատմութենէ գիտենք թէ ինչուան

բարեաց յիշատակի զբարեպաշտ արքայն Հեթում և զորբահօգի Թագուհին իւր Զապէլ դուստր Լեւոնի արքայի, և Աստուծով զորդիս նոցա զպարոն Լեւոն և զպարոն Թորոս և զամենայն նախնիս իւրեանց որք և անուանին Ռուբինեանք։ Յիշել աղաչեմ և զԹագաւորահայրն պարոն Կոստ՛նդին ուստերաւք և դստերաւք և ամենայն զարմիւք։ Յիշեսջիք և զերջանիկ հայրապետն Հայոց տէր Կոստանդին և զհայր իւր Վահրամ և զմայր իւր Շուշիկ և զեղբարսն իւր զԳորգ և զԳրիգոր, և զպարկեշտուհի քորսն իւր Շուշանիկ և Վահենի...»։

***

Մեր թերեւս քիչ մը յերկարեալ՝ բայց բանասիրական տեսակէտով հետաքննական ցուցակին՝ նպատակն էր ցուցընել սրբագիր բանասիրութեան հետամուտ եղողին՝ որ ոչ յԷջմիածին, ոչ յԵրուսաղէմ, ոչ առ մեզ և ոչ մեզի ծանօթ ազգային գրչագրաց ուրիշ հաւաքմանց մէջ՝ չկան երևելի հնութիւն ունեցող աստուածաշունչ գրոց օրինակք. հաւասար՝ կամ գէթ ժամանակաւ մերձաւոր յոյն, ասորի ու նաև լատին գրչագրաց։ Որչափ ցաւալի, բայց զարմանալի չէ այս՝ տեղեկաց քաղաքական անցից մեր տարաբաղդիկ և բազմապատիկ յարձակմանց և արշաւանաց նպատակ և նշաւակ հայրենեաց։ Մեզմէ գրեթէ երեքհարիւր տարի յառաջ՝ Ազարիա կաթուղիկոս Սսոյ, տեսնելով զնուաղութիւն օրինակաց աստուածաշունչ գրոց 'ի հայաստան աշխարհի, թերեւս քիչ մը չափազանցութեամբ, կը գրէր առ Գրիգոր ԺԳ քահանայապետ Հռովմայ. «... Կուղրկենք այս գրովս զՅովհաննէս վարդապետն և եպիսկոպոս ... Աստուածաշունչ գրքով մի Հայոց. վասն զի քո Սրբութիւնդ հրամայեսցէ որ պատմուի

բերութեանս Հայկազեան տոմարի, յաստուածապահ գրեալս Հռոմկլա ընդ հովանեաւ սուրբ տաճարապետիս սուրբ Փրկչին մերոյ և սուրբ Աստուածածնին և սուրբ Լուսաւորչին, հրամանաւ և ծախիւք երջանիկ հայրապետին Հայոց տեառն Կոստանդեայ որ զաստուածահաճոյ վարուց իւրոց և բարի անուան համեմատ ունէր զպատմութիւն » ... ։

27.° « ... Ցանգ եղեալ աւարտեցաւ մատեանս աստուածախաւս աստուածաւունչ երկրպագելի և պաշտելի սուրբ աւետարանս յեւթն հարիւր և տասներորդի (= 1262) ամի Թուաբերութեանս Հայոց յաշխարհամուտ աթոռս Հռոմկլա ընդ հովանեաւ աստուածաբնակ տաճարայս որ յանուն սուրբ Փրկչին և սրբոյ Աստուածածնին և սուրբ Լուսաւորչին մերոյ և այլոց բազմահաւաք սրբոց ։ Ի ժամանակս աստուածասէր և բարեպաշտ արքային Հեթմոյ և 'ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ կաթողիկոսի որ սրբազան վարուք իւրովք առ հասարակ զարմացուցանէր զբազումս ... Ուստի և եղբաւրորդին իւր Թորոս քահանայ 'ի նմանէ ուսեալ՝ լինէր գրասէր և աստուածասէր. զմտաւ ածեալ թէ ամենայն որ ինչ յերկրէ ընծայեալ նիւթքն ընդ նոյն կորնչել ունին, և որ մնայ յաւիտեան՝ բան տեառն է ։ Վասն այնորիկ եռափափագ սիրով ստանայր մատեանս աստուածաշունչս 'ի հին և 'ի նոր կտակարան, և զամենայն գոյս իւր և զարարս գոգջիր եթէ ջանայր դնել 'ի վերայ նոցա և այլ ևւս զարդուց սրբոյ եկեղեցւոյ. վասն զի յոյժ տաւնասէր էր այրն և պայծառացուցիչ եկեղեցական կարգաց. նմին իրի ստանայր կրկին անգամ զմատեան սրբոյ աւետարանիս յիմմէ անարժանութենէ Թորոսէ Ռաւսլին կոչեցելոյ ... Վասն որոյ աղաչեմ զձեզ, ով աստուածասէրք, որք հանդիպիք սմա և որք ժառանգէք զսա, յիշել աղաւթիւք 'ի Տէր զարժանաւորսն ամենայն

Լեւոնի որդւոյ Թորոսի և 'ի կրաւնաւորութեան Յոհաննիսի, և 'ի հայրապետութեան Գրիգորի գիտապետի »... ։

22.° « ... Յանգ եղեալ աւարտեցաւ աստուածախաւս մատեան կենարարին մերոյ տեառն և Աստուծոյ, 'ի լաւ և յնտիր աւրինակէ յաշխարհամուտ աթոռս Հռոմկլա ընդ հովանեաւ սրբոյն Գրիգորի և սրբոյ Նշանի Վանկոյ, և այլ բազմահաւաք սրբոցս որ պաշտին աստ. 'ի Թուականութեանս Հայոց ՈՂԳ (= 1244) 'ի յառաջնորդութեան երջանիկ հովուապետին տեառն Կոստանդեայ, և 'ի թագաւորութեան Հայոց Հեթմոյ քրիստոսապսակ թագաւորի »... ։

23.° « ... Ի Թվականութեանս Հայոց ՉԼԲ (= 1283) գրեցաւ տիեզերաքարոզ և գերահռչակ սուրբ աւետարանս ձեռամբ անարհեստ և անարժանի Յոհաննէս երիցու, որ ապաւինեալ 'ի ներողութիւնն Աստուծոյ և 'ի բարերարութիւն նորին' իշխեցի մերձենալ 'ի հրակէզս և 'ի բոցաձաձանչ փայլուածս, որ պատմէ զանքնինս, զխորս խորոցն Աստուծոյ »... ։

24.° « ... Հասոյց զանարժանս և զմեղաւորս 'ի վերջս գրոյս սուրբ աւետարանիս, 'ի Թվիս Հայոց ՉԿԲ, յամսեանն 'ի սեպտեմբերի ութ, 'ի թագաւորութեան Հայոց Աւշինի, և 'ի կաթողիկոսութեան տեառն Կոստընդնի »... ։

25.° « ... ՈՁԷ (= 1238) գրեցաւ, ձեռամբ անիմաստ գրչի Գրիգորիսի յանապատիս Անգուլ կոչեցեալ 'ի ժամանակիս յորում բարեպաշտ թագաւորն Հեթում և աստուածասէր թագուհին Զապէլ անուանեցին զսա իւրեանց Հովանոց ... » ։

26.° « ... Շնորհիւ տեառն սկսեալ և ողորմութեամբ նորին յանգ եղեալ աւարտեցաւ մատեանս աստուածային երկրպագելի և համբուրելի սուրբ աւետարանս յամի ՉԺ և Է երորդի (= 1267) Թուա-

վարժ և կիրթ յամենայն գիրս աստուածային՝ հնոցն և նորոցս և արտաքին փիլիսոփայիցն գեր 'ի վերոյ. որ և 'ի ժամանակիս մեր և 'ի թագ" Լևոնի և 'ի հայրապետութեան Յակոբայ » ... ։

20.° « Յանկացող եղեալ սայսմ լուսաւոր ական և մեծագին մարգարտի և գանձի աստուածայնոյ, երկու հարազատ եղբարքս Թադէոս և Հայրապետս, ստացաք զսա մեծաւ յուսով 'ի մեր արդար վաստակոց և 'ի յիշատակ բարերարաց մեզ և կատակ անջնջելի առ Աստուծոյ. տուաք գրել և նկարել Իգնատիոս գրչի ոսկւով և երանգերանգ խառնուածով զարդարեալ. 'ի վանքս որ կոչի Հաւուց Թառ, ընդ հովանեաւ սուրբ կաթուղիկէիս և մեծահռչակ սուրբ Նշանիս Ամենափրկիչ անուն կոչեցեալ, յառաջնորդութեան սուրբ ուխտիս հեզի և ամենաբարւոյ Պաւղոս վարդապետի, և այլ սուրբ և ճգնազգեաց համակամ եղբարց, որոց ողորմեսցի Քրիստոս Աստուած. ամէն։ Ի տէրութեան տեղւոյս Իւանէի և 'ի կաթողիկոսութեան Հայոց տեառն Յովհաննէսի։ •.. Եւ գրեցաւ 'ի Թուիս Հայոց ՈԿԳ, (= 1214) ձեռամբ Իգնատիոս մեղաւորի » ... ։

21.° (Յովհաննու Արքայեղբօր 'ի Մոնաքոյ Պաւարիոյ). « Քրիստոս Աստուած ...։ ողորմեաց Սիր Աւշնին հոգւոյն Պայլոնց որ ստացաւ զսուրբ աւետարանս Քրիստոսի 'ի մասն հոգւոյ իւրոյ. և 'ի յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց և որդեկաց իւրոց ... մեղաց թողութիւն հայցեցէք Աստուծոյ Սիր Աւշնին. վասն զի հանգեպեցաւ կոչումն սորա 'ի վերուստ 'ի յԵգիպտոս 'ի գաղն մեծ խանին Խազանին. և իւր ուղիղ յետմնացքն գնեցին զսուրբ աւետարանս Քրիստոսի 'ի յիր հոգւոյ մասնէն 'ի յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց և քնաւ զարմից իւրոց ... Արդ եղեւ տուրեւառութիւն սուրբ աւետարանիս 'ի մեծ Թվիս ՉԽԱ (= 1278) և 'ի Թագաւորութեան

ամաւք. իսկ 'ի ծագմանէ Բանին Աստուծոյ, հազարի միոյ և երկուց հարիւրից, երեսուն և երկուս յաւելեալ ամաւք (= 1230-2). 'ի հոյակապ և 'ի հռչակաւոր քաղաքս Թէոդպոլիս, ընդ հովանեաւ սրբոյ Յարութեանս »... :

17.° « Ի Թուաբերութեանս Հայոց ՉԽԶ (= 1297) 'ի Թագաւորութեան Կիլիկեցւոց նահանգիս Սմպատայ, և 'ի դիտապետութեան Հայոց տեառն Գրիգորի, 'ի մեծ ժողովարանս Սկեւռայ, ընդ հովանեաւ սուրբ Փրկչի և մաւր իւրոյ Աստուածածնի և կենսունակ սուրբ Նշանի մերձ յանմատոյց դղեակս Լամբրունի » :

18.° (Ի Սեբաստիա). « ... Այս երանելի Սմպատս որ ատեաց զաշխարհ և սիրեաց զՔրիստոս և սիրեցաւ 'ի նմանէ, որ ատեաց զքաղաք, զդեաւղ, և զագարակ, և սիրեաց զեկեղեցի և զաղաւթս և զնապատս, և եթող զմարմնաւոր Թագաւորն և զիշխանսըն, և սիրեաց զերկնաւոր Թագաւորն և զաւրութիւնս երկնից. և եթող զգեղեցկազարդ և զվայելչազուարթ եղբարս իւր զԱսպետ և զԿոստանդին, և փափաքեաց յաւիտենական կենացն ... մեծ յոյս ունէր զաւետարանս, և ետ 'ի մեզ 'ի նուաստ ծառայս Աստուծոյ 'ի Յակոբ, որ զորդէր և զպատկասանքն ընուլ, և զպատկերս աւետարանչացն նկարէի և կազմէի. և նա ոչ ժամանեաց, այլ փոխեցաւ առ փափաքելին իւր Քրիստոս 'ի Թու. ՈԿԵ ... (= 1216) » :

19.° (Ի Բրիտանական մուս. Թիւ գրչ. 18549). « Գրեցաւ 'ի Թուիս Հայոց ՉԻԹ (= 1280) 'ի եաւթըն հարիւր քսան և ինն 'ի մայրաքաղաքս Սիս ընդ հովանեաւ սուրբ Հոգւոյն, որ յայսմ ամի վերստին նորոգեցաւ պատուական քարամբք քերեալ 'ի Ճարտարաց, ձեռամբ Ստեփանոս Վահկայցւոյ և ծախիւք և հրամանաւ Սոսթենէս րաբունոյ, որ էր

*սի։ Եւ մեր ընդ հովանեաւ լեալ Ընծայեաց սուրբ Աստուածածնիս'ի գաւառիս Վասպուրականիս» ...։*

**13.°** *«...Գրեցաւ սուրբ աւետարանս 'ի Թուիս* **ՈԾԲ (= 1203)** *'ի գաւառիս Հայոց Նիկոյպաւլիս, որ և Ախշար յորջորջի և մականուն Մելիտոյ պետդ. 'ի քաղաքիս որ կոչի Խաւմ ընդ հովանեաւ սրբոյն Ստեփաննոսի» ... ։*

**14.°** *Աւետարան. « ... Ցանկ ելեալ աւարտեցաւ լուսայեղձ և փրկագործ սուրբ աւետարանս 'ի Թուին* **ՉԵ (= 1256)** *'ի գաւառին Կիլիկեցւոց, 'ի Թագաւորութեանս Հայոց Հեթմոյ աստուածասիրի և բարեպաշտի. և 'ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ, ձեռամբ Յոհաննեսի յոգնամեղի. 'ի խնդրոյ աստուածասէր և բարի պատանւոյն Սիր Լեւոնի, որ է որդի պարոն Լիկոսի եղբաւր Թագաւորին Հայոց Հեթմոյ» ... ։*

**15.°** *«...Գրեցաւ սա 'ի նշանաւոր ժամանակի ... 'ի Թագաւորութեան բարեպաշտ արքային Հեթմոյ, և յիշխանութեան որդւոյ իւրոյ Լեւոնի, այն ինչ նորընծայ 'ի պարոնութիւն. և 'ի հայրապետութեան Յակոբայ, յորում էր Թիւ տոմարին* **ՉԺԸ (= 1269)**։ *Արդ 'ի սոյն ամի եղեւ սկսեալ աստուածախաւս այս մատեան, 'ի մեծանուն եղբայրանոցն Մաշկաւոր կոչեցեալ առ դուռն սուրբ Կարապետի. և աւարտեցաւ 'ի գերահռչակ ուխտս Անդրիասանց մերձ յանառիկ դղեակն Բարձր անուն կոչեալ, յառաջնորդութեան տեառն Սիմէոնի, և այլ միաբան եղբայրութեանս. 'ի դուռն մաւրս Սիոնի և կենսակիր և աստուածընկալ սուրբ նշանիս» ... ։*

**16.°** *« ... Եղեւ կատարումն կտակիս, մանաւանդ Թէ քրիստոսաձիր մատենիս, 'ի ժամանակս վերջին յորում քննեալ գտաք 'ի հանդիպման ամս լինել յելիցն Ադամայ 'ի դրախտէն մինչեւ առ մեզ՝ հազարաց վեցից և չորից հարիւրից երեսուն յաւելեալ*

9.° «... Յամի վեցհարիւրերորդի ութսներորդի երկրորդի (=1233) Հայոց տոհմիս տումարի գրեցաւ անուշահամ և աստուածախաւս կենաց կտակս, որ է աւետարանութիւն տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, ձեռամբ Յակոբայ սուտանուն կրաւնաւորի և անարհեստի գրչի ... յաշխարհիս Կիլիկեցւոց, 'ի Նահանգիս Տարսոնի, առ ստորոտով լերինն Տաւրոսի, յանմատոյց գղեակս Լամբրուն, 'ի փոքրիկ ագարակիս որ Յովանի կոչի. վայրաքնակ լինելով ինձ գրչիս ըստ Նախնեացն ձայնի թէ աւտարք և պանդուխտք եմք յերկրի : Ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ, և 'ի թագաւորութեան քրիստոսապսակ և բարեպաշտ թագաւորին Հայոց Հեթմոյ » :

10.° « ... Գրեցաւ սուրբ աւետարանս Քրիստոսի 'ի թուին Հայոց ՉԳ (=1254). 'ի մեծ և յանուանի և յակնագիտակ և 'ի հռչակաւոր քաղաքն Հռոմ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ առաքելոցս Պետրոսի և Պաւղոսի, 'ի խորանին սուրբ Պետրոսի : Ով սուրբ եղբարք որք հանդիպիք այսմ աստուածային քնարի, որ յերեսս անկեալ աղաչեմ յիշեսջիք զիս և զծնողսըն իմ և զեղբարս. զՄաթէոս որ աւգնական եղեւ 'ի նիւթ սորին. նաեւ զՅակովբ և զՄակառն և զՍտեփանոս և զՂազար յիշեսջիք սրտի մտաւք » ... :

11.° « ... Գրեցաւ սուրբ աւետարանս 'ի թուին Հայոց 'ի ՈԾԲ (=1203) 'ի գաւառիս Կամխայ, մերձ 'ի գեաւղս Սիմա, 'ի յանապատս որ կոչի Եղիվանք, ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս և սրբոյ Աստուածածնին, 'ի վայելումն Մովսիսի և Յովհաննիսի որ ստացան զսա » :

12.° « ... Աւարտեցաւ սա 'ի թուին Հայոց ՉԻԵ (=1276) ... 'ի թագաւորութեանն Հայոց Լեւոնի որդի Զապել թագուհւոյ, դստեր Լեւոն թագաւորի, և 'ի թագաւորութեան տեառն Ստեփաննոս-

*Թեմք հաստատուն մեալ Թագաւորութեան 'ի փառս Աստուծոյ » :*

6.° *Աւետարան Ծոխաթու վանաց. « Ի Թուիս* ՈՂԹ (=1254) *'ի կաթողիկոսութեան տեառն Կոստանդեայ և 'ի Թագաւորութեան Հեթմոյ որդւոյ Կոստանդեայ, և 'ի կաթողիկոսութեան տեառն (անունը ջնջուած) հայրապետին Ասորւոց յոյժ ծերի և աստուածասիրի և բարի համբաւի, գրեցաւ սուրբ աւետարանս Մատթէոսի և այլ Մարկոսի, Ղուկասու և Յովհաննու՝ սակաւ սակաւ, 'ի խնդրոյ սրբասնեալ և պատուական հայրապետին վանացն որ կոչի Ծոխաթ, յոյժ հաչակաւոր և բազում զարդարանաւք պայծառացեալ... » :*

7.° *« Ի Թուականութեանս Հայոց* ՈՀԱ (=1222) *'ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ և 'ի Թագաւորութեան Փիլիպպոսի Նորընծայ արքայի, որ յայսմ ամի պսակեցաւ և ընկալաւ զաթոռ Թագաւորութեան տանս Հայոց, գրեցաւ սուրբ և կենսակիր աւետարանս ձեռամբ Յովհաննիսի բազմամեղի 'ի քաղաքն Սիս, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս որ յանուն սրբուհւոյն Մարինէի » :*

8.° *Մագաղաթեայ ('ի Բրիտանական մուզէոնի). « Գրեցաւ սա և աւարտեցաւ ձեռամբ մեղապարտ Խաչենեցի Վարդան աբեղայի 'ի* ՈՁԸ *Թուաբերութեան հայկազեան տումարիս, 'ի տիեզերական մայրաքաղաքն Հռոմ, ընդ հովանեաւ սուրբ առաքելոցն Պետրոսի 'ւ Պաւղոսի, և քրիստոսեան սուրբ պատկերին զոր Դաստառակ ասի. 'ի հանգստարանիս Հայոց, 'ի դրան սրբոյ մաւրս լուսոյ Սանթա Մարէ 'ի միջ ·միեղէն եղբայրութեանս, որք վասն սիրոյն Քրիստոսի և սրբոց Առաքելոց, և վասն յուսոյն արքայութեան՝ յանձին ունին զկամաւոր աղքատութիւն: Որոյ է առաջնորդ տանս և եղբարցս՝ Սարգիս Մարմաշինեցին »... :*

նիւթ՝ Թէպէտ և փոքրագոյն ինչ էր, 'ի գիրս աւետարանի. յաղագս կատարեալ սիրոյն զոր ունէր առ փրկիչն մեր Քրիստոս և առ սուրբ հրամանս նորա, ետ զսա գրել և վայելչացուցեալ յոսկւոյ սրբոյ և պատուելի երանգոց, սիրելի առնել զնա ներքոյ և արտաքոյ: Եւ ես ըստ կարի իմում լցի զփափաք նորա. և աւարտեալ զսա 'ի սուրբ և յաշխարհամուտ աթոռս 'ի Հռոմկլայ... 'ի թուականութեանս Հայոց ՈՂԸ (=1249) 'ի թագաւորութեան Հայոց Հեթմոյ բարեպաշտի, և որդւոց նորա բարի շառաւիղաց Լեւոնի և Թորոսի, և սրբահոգի Թագուհւոյ իւրոյ Զապելի »... :

2.° Մագաղաթեայ (Ի Նոր Նախիջեւան). «... Ի թվ. Հայոց ՁԻԳ (=1274) և 'ի հայրապետութեան տեառն Յակովբայ, և 'ի թագաւորութեան Հայոց Լեւոնին, գրեցաւ իմով ձեռամբ Կոստանդեայ քահանայի, սուրբ աւետարանս 'ի յղորդ և յընտիր աւրինակէ »:

3.° Մագաղաթեայ (յէջմիածին). «Երջանիկ արանցդ բանասիրաց և աստուածասիրաց պաղատիմ հողս դատապարտ ծառայակիցս Յոհ" եպ" արքայեղբայր ստացողս սուրբ աւետարանիս և կիսոյ սորին գրող»:

4.° Մագաղաթեայ (յէջմիածին). «...Գրեցաւ սա 'ի թուականիս Հայոց ՁԻԱ (=1272), 'ի հայրապետութեան տեառն Յակովբայ և 'ի թագաւորութեան Հայոց Լեւոնի բարեպաշտ արքայի »:

5.° «... Ի թուիս ՁԻԳ (=1274) գրեցաւ ձեռամբ Թորոսի սարկաւագի՝ 'ի սուրբ ուխտս Մեծքար. 'ի հայրապետութեան տեառն Յակոբայ և 'ի թագ" Լեւոնի բարեպաշտի. յորում ամի բազում երկպառակութիւն եղեւ 'ի ստանայէ 'ի զաւրս Հայոց. ուստի ոմանք ապստամբեցան 'ի թագ" չար խորհրդովք, որք և չարաւ սատակեցան. և մեք մաղ-

ծեան մատեանս. ընթեռնոյր աւր ըստ աւրէ. և յաւելայր 'ի թիւ կարգաւորաց եկեղեցւոյ վարդապետաց, երաժշտաց և քահանայից. կազմէր և անաւթս պատուականս 'ի սպաս պիտոյից սրբոյ աթոռոյս. յորոց և անաւթս այս պատուական աստուածավայելուչ մատեան, որ իմով ձեռամբ գծեալ Գրիգորի մեղապարտի և անկատար միացեալ. զորոյ զպակասութիւնն լցեալ իմ հրամանաւ կաթողիկոսի Հայոց Գրիգորի Տղայի, 'ի թուականիս ՈԻԳ (= 1174):

« Զերկրորդ ստացիչ սուրբ աւետարանիս զՊարոն Կոստանդին զթագաւորահայրն Հայոցս զարմից Նորընծայ թագաւորին Հեթմոյ. որ այն ինչ ամաց մետասանից ընկալեալ զթագաւորութիւն 'ի Բարձրբերդն, և 'ի թուականութեանս մերոյս ամին ՈՁԵ ստացաւ զսա Պարոն Կոստանդին թագաւորահայրն և իշխեցաւղն ամենայն Հայոցս զարմից. և ընձեռեաց Եկեղեցւոյս իւրոյ սուրբ Փրկչին՝ զոր ինքն շինեաց բազում ծախիւք 'ի յիշատակ իւր և աստուածապարգեւ շառաւիղացն իւրոց »...:

Ե.° Աւետարան գրեալ 'ի ՈՀԹ (1130). « Ի հայրապետութեան տէր Գրիգորի գրեցաւ սուրբ աւետարանս երկիրս Գեղամայ 'ի սուրբ ուխտս որ կոչի Հայրոյ Ոհան 'ի դառն և նեղ ժամանակի »:

Երեքտասաներորդ դարու. 1.° Աւետարան երկաթագիր մագաղաթեայ, որ կը պահուի 'ի սուրբ Լուսաւորիչ Նոր Նախիջեւանի. « Շնորհիւ ամենախնամ ողորմութեան Աստուծոյ յանկ ելեալ աւարտեցաւ սուրբ մատեանս աստուածային հրամանաւ և ծախիւք սուրբ և երջանիկ կաթողիկոսին Հայոց տեառն Կոստանդեայ: Քանզի տեսեալ զլաւ և զընտիր նիւթ մագաղաթիս՝ հրամայեալ իմում նուաստութեան ընուլ զփափագ նորա. և որպէս զբովանդակ ինչս իւր և զկեանս նուիրեալ էր տեառն, նոյնպէս և զայս

նեցի զաւետարանս 'ի քաղաքն Մանազկերտոյ՝ 'ի քահանայէն Ստեփանոս 'ի գեւղս որ անուն կոչի Խաղխուղք. և անուն եկեղեցւոյն սուրբ Սիոն և սուրբ Գէորգ » :

9.° (յԵրուսաղէմ՝ 'ի սուրբ Յակոբ). « Զստացաւղ սուրբ աւետարանիս զԳագիկ Շահանշահ որդի Աբասայ և զԳորանդուխտ Թագուհի և զՄարեմ յիշեսջիք 'ի Քրիստոս Յիսուս » :

Երկոտասաներորդ դարու. 1.° Երկաթագիր ('ի Նոր Նախիջեւան). « ... Յամի վեցհարիւրերորդի քառասներորդի երկրորդի (=1193) հայկազեան տումարի 'ի հայրապետութեան տեառն Գրիգորի կաթողիկոսի Հայոց, և յիշխանութեան բարեպաշտ իշխանին Լեւոնի ... գրեցաւ սա յանապատիս որ կոչի Պաւղոսական, մերձ առ ամուր տղեկիս Կատինոյ » :

2.° (Ի Բրիտանական մուզէոնի). « Ի Թուիս Հայոց ՈԼԲ (=1183) 'ի հայրապետութեան Գրիգորի Հայոց վերադիտողի » ... :

3.° Երկաթագիր արծաթապատ 'ի Լէմպերկ. « ... Ի Թուականիս Հայոց ՈԽԷ (=1198-9) յընծայեալ Թագաւորութեան Հայոց Լեւոնի քրիստոսասիրի որ յՌոբինեանց, և 'ի հայրապետութեան տեառն Գրիգորի կաթողիկոսի գրեցաւ յերկու հըռչակաւոր ուխտս՝ որ առընթեր ամուր դղեկաց, 'ի ստորոտ լերինս Տաւրոսի, և 'ի դլուխ մայրաքաղաքին Տարսոնի. սկզբնաւորեալ 'ի մեծանուն անապատս Մըլիճի. ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնին, որ է դամբարան իշխողաց ամուր տղեկի Պապառանի, և կատարեալ առընթեր անառիկ ամրոցի Լամբրանի, յաւթեվան հռչակաւոր ուխտ Սկեւռա, առաջի սրբոյ սքանչելագործ նշանի և փրկչին տաճարի » : ...

4.° (յԵւդոկիա). « ... Եւ ապա 'ի հանդարտե ընծայաբերից յառաջ բերէր (Գր. Տղայ) զաստուա-

3.° Երկաթագիր մագաղաթեայ. « Ի թուականութեանս Հայոց ՆՁԷ (= 1038) գրեցաւ աւետարանս ձեռամբ Թորոսի նուաստ և տրուփ կրաւնաւորիս »:

4.° Երկաթագիր. « ...Գրեցաւ չորեքվտակեան դրախտս այս ձեռամբ Յուսկան մեղաւոր և անարժան քահանայի և յետին գրչի 'ի կաթողիկոսութեան տեառն Պետրոսի Հայոց վերադիտողի, 'ի թուականութեան Հայոց ՆՂԳ » (= 1048).

5.° Երկաթագիր. « Զարքափայլեալ ճառագայթ կ գերապայծառ և անհաս իմաստութիւն անեղ և հրաշատեսիկ եղականայս տարբերութեամբ իմացեալ տեսանեմք 'ի ձեռն սուրբ առաքելոցս .. Ի ՇԺԳ (= 1064) թուականութեանս Հայոց գրեցաւ ցանկալի և սուրբ աւետարանս, 'ի հայրապետութեան տեառն Գրիգորիսի, և յինքնակալութեան Յունաց թագաւորին Տուկծի, 'ի վանքս կոչեցեալ Շուխրանտառես ընդ հովանեաւ սուրբ Սիօնի. յառաջնորդութեան հաւր Թովմասու ... »:

6.° ...Գրեցաւ աստուածային և կենարար աւետարանս 'ի թուիս Հայոց 'ի ՈԼ (= 1081) 'ի տիեզերահռչակ վանս Հոռոմոսի ընդ հովանեաւ սուրբ Յովհաննիսի, 'ի հայրապետութեան տեառն Բարսղի և յառաջնորդութեան ուխտիս Խաչատրոյ »:

7.° Մագաղաթեայ երկաթագիր. « ... Ի թուականութեան Հայոց ՇԽԸ (= 1099) գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Ահարոնի ... 'ի հայրապետութեան տեառն Գրիգորի և յինքնակալութեան Հոռմայեցոյն ազգիս արիական՝ որ են փռանգս. յորժամ շարժեցան և եղեն անթիւ բազմութեանց 'ի վերին խնամոց ազդմամբ ամենակալին Աստուծոյ ... »:

8.° Մագաղաթեայ երկաթագիր անթուական. « Ի թուականութեանս Հայոց 'ի ՇԺԹ (= 1070) ... գր-

2.° Մագաղաթեայ երկաթագիր՝ հաւանականաբար տասներորդ դարու մէջ գրուած. կը պահուի 'ի Բրիտանական մուզէոնի 'ի Լոնտոն։ Ի վերջ Մատթէի. «Զտէր Եղիսէ զհրամանողս սուրբ աւետարանիս, որք ընթեռնույք՝ յաղաւթս յիշեսջիք»։

3.° Երկաթագիր, 'ի Մատենադարանի Անտոնեան հարց. «Սարգիս անարժան քահանայ գրեցի զսուրբ աւետարանս ՆԺԵ (= 960) թուականիս թագաւորելոյ 'ի վերայ մեր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»։

4.° Երկաթագիր մագաղաթեայ 'ի Սեւան. «...Արդ ես ծառայ Քրիստոսի և աղախին անպիտան Համայս դուստր Մամիկոնին, որ ոչ դուստր ունէի և ոչ որդի. յիշեցի զիմ մահին աւրն և զահեղ դատաստանն Քրիստոսի, և արարի ինձ յիշատակարան և գնեցի 'ի հալալ արդեանց իմոց զսուրբ և զհոգելից և զաստուածային տառս զսուրբ զաւետարանս, և տուի Բարձրաքաղիս սուրբ ուխտին և սքանչելագործ սուրբ Գրիգորին, 'ի ձեռն սուրբ և աստուածանման հայրապետին տէր Վահանայ, և սուրբ և ընդրեալ միաբանից. յառաջնորդութեան սուրբ ուխտին տէր Վահանայ»։ (Վահան նստաւ յաթոռ կաթուղիկոսութեան յամի 966)։

Մետասաներորդ դարու. 1.° Երկաթագիր մագաղաթեայ. «...Կիրակոս... անարժան գրիչ համարձակեցա և գրեցի զսուրբ աւետարանս զայս 'ի թուականութեանս Հայոց ՆԾԶ (= 1011) 'ի գաւառին Մակեդոնիոյ 'ի քաղաքին որ կոչի Անտանապաւլիս, 'ի թագաւորութեան Վասլին որ ունի զաթոռն Կոստանդնուպոլսի... Եւ ես Յովհաննէս Պատուակաթար թագաւորի և պռոքսիմոս դուկիս Թոթորակնիս Ճորտս, որ գրել ետու զսուրբ զաւետարանս իմ հոգեւոյս յիշատակ»...։

2.° Երկաթագիր մագաղաթեայ. «...թուական սուրբ աւետարանիս ՆԾին» (= 1005)։

նագիր երկաւք ստացաւ զգիրս Ծննդոցն, զԴատաւորացն և զԹագաւորութեանց։ Եւ վասն ոչ բերելոյ տկար մարմնոյն զերկս գրութեանն, աւժանդակեաց մնուցիչ Նորին և քեռի աստուածապաշտ քահանայն Աստուածատուր. և սակս աղքատութեան կարծեաց՝ Նախ զնոր կտակարանս ետ գրել իբրև զլոյժ հարկաւորս. և դարձեալ յԱստուած խրախուսեալք իմով ձեռամբ Ստեփանոս Գոյներ երիցանց փցուն գրչի՝ ստացան զաստուածային գիրս սրբոց մարգարէիցն և զսրբագրաց ոմանց, յ'ՉԼԷ թուականիս»...։

***

Իսկ Նոր կտակարանաց գրչագիրք, մանաւանդ սուրբ աւետարաններուն, ինչպէս յառաջ ալ ակնարկեցինք, շատ աւելի բազմաթիւք են և հնագոյնք։ Ասոր յայտնի պատճառը՝ իրենց մեծագոյն կարևորութեան և յաճախակի գործածութեան մէջ է։ Միայն Էջմիածնի Մատենադարանին մէջ հարիւր քառասունուերկու է անոնց թիւը ըստ տպագիր ցուցակին. առ մեզ գրեթէ հարիւրիւ չափ, նոյնպէս և յԵրուսաղէմ, և յայլ վանօրայս և յեկեղեցիս։

Երկասիրութեանս առաջին մասին մէջ [1] համառօտիւ յիշատակած ենք ամենէն աւելի պատկառելի հնութիւն ունեցողներէն մէկ քանին։ Անոնցմէ զատ մէջ բերենք քանի մը գրչութիւնք տասներորդ, մետասաներորդ, երկոտասաներորդ և երեքտասան դարուց։

**Տասներորդ դարու գրչութիւնք.** 1.° Երկաթագիր, 'ի սուրբ Ցօլհան վանաց Սպերոյ փոխադրեալ 'ի Կարին. «Ի ՆԼԵ (= 986) յունուարի Ա Հայոց՝ ես Եղիա քահանայս ստացայ զսուրբ աւետարանս»։

[1] ՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ. Բ. փղ. 61։

4.° Բոլորգիր՝ ազնիւ պատկերօք զարդարեալ, գրեալ 'ի ՌՀԱ և աւարտեալ 'ի ՌՁԱ յընթացս իբր տասն ամաց. 'ի խնդրոյ Բարսեղ վարդապետի Արծրունւոյ 'ի Մարմանա գեղջէ։

5.° Փոքրագիր, մանր բոլորագիր՝ 'ի յԱմիթ քաղաքի 'ի Թուականին Հայոց ՌՁԴ։

Ուրիշ տեղուանք յիշատակուածներն։ Բոլորգիր, 'ի Կտուց անապատի «գրեալ 'ի Թուին Հայոց ՉԼԴ (= 1285) 'ի Թագաւորութեան Հայոց Լեւոնի որդւոյ Հեթմոյ որդւոյ Ռուբինեանց 'ի յաստուածապահ դղեակս Անարզաբա»։

Ի Ս. Գէորգ Եւդոկիոյ. «Գրեալ ձեռամբ Ստեփաննոս Գոյներ երիցանց 'ի ՉԽԶ (= 1297) 'ի Թագաւորութեան Հայոց Սմպատայ և 'ի կաթողիկոսութեան տեառն Գրիգորի»։

Ի Պրուսա Բիւթանացւոց «... Ի ժամանակս աստուածապաշտ արքայի Լեւոնի որդւոյ Հեթմոյ, և 'ի նորուն աստուածասէր անդրանկի Հեթմոյ տէրութեան աստուածապահ բերդիս Լամբրունի, և 'ի կաթողիկոսութեան աստուածահաճոյ կրկին ծերութեամբ պատուեալ տեառն Յակովբայ ՉԼԴ Թուականիս Հայոց գրեցաւ տառս յաստուածապահ սրբարանս մեծի ուխտիս Սկեւռայի, ընդ շքով Թեւոց աստուածապահ սուրբ Նշանիս և սրբոց Փրկչիս յառաջնորդութեան տեառն Մինասայ ...

— «Ըստ բանի սրբոյ ուրումն, որում բաղձայ ոք՝ նմին և հասանել ջանայ. վասն զի բուռն է քան ըզմահ սէր, զոր ջուրք բազումք ոչ կարեն շիջուցանել, մանաւանդ յորժամ յԱստուած իցէ տարփումն։ Այսպիսեաւ երանելի ըղձիւք առ ստացումն աստուածաշունչ տառիցս վառեալ սրբամիտն պատանին Խաչատուր, Թելադրութեամբ Գէորգեայ վարդապետի առ որում կայր 'ի վարժս կրթութեան բանի և գրոց՝ ուսումնասէր դպիրն Խաչատուր, ինք-

սոցա 'ի նոր քո աւետարանս, որ նորոգութիւնդ ես մեզ, տէր մեր և աստուած »....: — Ի վերջ Կարուզգիկեայ թղթոց և Աղերսին Երզաղի․ « Ո՛վ սուրբ առաքեալք Պետրոս և Պաւղոս և ամենայն խումբք սուրբ առաքելոցդ բարեխաւսեցէք առ տէր Յիսուս Քրիստոս աստուած մեր, վասն Գէորգեա վարդապետի որ զԳործքս գրեաց․ և վասն բազմամեղիս Թորոսի և ծնաւղաց իմոց և զարմից․ և այնոցիկ որ յիշեն զմեզ 'ի մեղաց թողութիւն »:

Մեր այս ցուցակին մէջ, – ինչպէս կը տեսնէ ընթերցողն, – միայն այն գրչագիրքն յիշատակեցինք՝ որոնք թուականաւ աւելի հին, ընտրելագոյն և հաւատարիմք են յընթերցուածս, և կարևորք իրենց յիշատակարաններով, զորս ջանացինք համառօտել 'ի գիտութիւն բանասիրաց:

***

Երուսաղեմի Մատենադարանին մէջ գտնուածներէն՝ մէջ բերենք հետևեալքն, որ մեզի ծանօթ են․

1.° Բոլորագիր և ըստ մասին պատկերազարդ․ գրեալ 'ի խնդրոյ առաջնորդին Վարագայ Մարտիրոսի վարդապետի ... 'ի թուականիս Հայոց ՌԿԴ, 'ի քաղաքին Մոկաց, 'ի թաղն որ Դաշտ կոչի ընդ հովանեաւ սրբոյն Յակովբայ Մծբնայ հայրապետի:

2.° Բոլորագիր և պաճուճազարդ, գրեալ 'ի ՌՀԳ թուականիս Հայոց 'ի խնդրոյ Մոկացի Կարապետ վարդապետի 'ի Հիզան քաղաքի 'ի դուռն եօթն տաճարաց, ձեռամբ Կիրակոս քահանայի:

3.° Բոլորագիր, ընտիր պատկերօք և նկարուք, ոսկեգիր գլխատառիւք, և 'ի լուսանցս խիտ և հոծ մանրանկար պատկերօք և համակ ոսկեդրօշմ․ գրեալ 'ի Պոլիս 'ի ՌՃԺ թուականի Հայոց, 'ի խնդրոյ Մարտիրոս վարդապետի Ղրիմեցւոյ:

չիւր ներողութիւնս ոչ դարձուցեր ամաչեցեալս, այլ արարեր առ նոսին զողորմութեան քո զառատութիւն, 'ի պատկառանս թշնամեաց իւրեանց և 'ի լեբերան գոհութիւն փրկելոյն, այց արա և մեզ որ կամք 'ի ներքոյ պատուհասի մեղաց մերոց, Թորոսի և ծնողաց մերոց և եղբարց և քեռ և ուսուցչի մերոյ Թորոսի ...» : — Սաղմոսաց Դաւթի. «Ո՛վ սուրբ Դաւիթ, բարեխաւսեա առ տէր Յիսուս Քրիստոս աստուած վասն բազմամեղիս Թորոսի և ծնողաց իմոց և եղբարց ... և Մարիամ տիկնի և Վասակի» ... : — Եզեկիէլի. «Աւրհնութիւն քեզ գովութեամբ և փառք երկրպագութեամբ տէր իմ Յիսուս Քրիստոս, որ խաւսեցար 'ի ձեռս գրոց սըրբոց քոց մարգարէիցս զխորհուրդս քո հրաշալիս: Զոր և եկեալ 'ի լրումն ժամանակաց արարեր զկամս Հաւր քո, և լցուցեր զգրեալսս յաւրէնսս Մովսէսի և 'ի մարգարէսս և 'ի սաղմոսս վասն քո. չարչարեալ վասն մերոյ փրկութեան և յարուցեալ մտեր 'ի փառս քո, և շնորհիւ առաքելոց սուրբ Հոգւոյդ կոչեցեր առ քեզ զեկեղեցի քո սուրբ ապաշխարութեամբ և յանուն քո մեղաց քաւութեամբ յամենայն ազգաց, 'ի ձեռն առաքելոց քոց, յորոյ արգանդէ ծնեալ, և կրկնաբուղխ ստեամբքն սնեալ, յանարգութենէ յառաջ կոչեցեալ, և քո աւծութեամբ շնորհի արժանի եղեալ տառապեալս Թորոս վերջինս 'ի բարեաց, և վերջինս և անբարի աւուրցս ծնունդ, վասն առաւել դառնութեանց աւուրցս ընտրեցի զլռութեամբ նստել 'ի տան և սպասել անսպառ քո ողորմութեանդ որ բաժին իմ ես յամենայն էիցս, և նուիրեցի քեզ որ անկարաւտդ ես զայս ձեռահիւս լռութեամբ կրող զնախաճառութիւն սրբոց քոց մարգարէիցն. ընկա՛լ, ընկա՛լ, ո՛վ որ քաղցր է քեզ մարդկան տուրեւառութիւն. և տուր զաւրութիւն շարամանել և յեռուլ 'ի սա զլրումն ելից աւետեաց

գլուխն, յերկրորդն և յերրորդս. վասն որոյ և
ձանձրացեալ՝ զթիւքդ կարճեցի. զնոյն և ես գծա-
ղըս. մի մեզ դներ ընթերցաւղ աղաչեմք» : — Եզրի
երկրորդ և Նեեմեայ. «Ով տէր աստուած հզաւ-
րակաց յոյս ամենեցուն որ յուսան 'ի քեզ, ողոր-
մեա քո մեղաւոր ծառայիցս Թորոսի և ծնաւղաց ի-
մոց և եղբարց և քեռ. և մանրեղբաւր Վասլի և
Ստեփաննոսի քահանայի և ծնաւղաց իւրոց վասն զի
զգիծ ուսուցանէ, և որ զմեզ յիշէն» : — Եսթերի.
«Տէր Ներսիսի Լամբրոնեցւոյն.

«Հայեաց ի հրաշս որ պատմեցան,
Ով ընթերցող ի յԵսթերայն.
Զի ի յուսոյն ունայն չդարձան,
Որք աղերսիւ յԱստուած յեցան.
Իսկ մեր միջնորդ խաղաղութեան,
Յիսուս Քրիստոս Հաւր ծոցոյն բան,
Լիցուք ի նոյն յոյսն ապաստան,
Եւս ընդունել շնորհ աւգնութեան :
Որոյ նուէր զկեանս մարմնական,
Տուեալ ի վարս ճգնութեան,
Առնումք թագ արքայական,
Ի հանդերձեալ կեանս անվախճան» :

— Տովբիթայ. (Թուլի Լամբրոնեցւոյն). «Որ երեկ
և այսաւր և յամենայն ժամ նոյն ես տէր մեր Յի-
սուս Քրիստոս, և ոչ ամաչեցուցանես զյուսացեալսն
'ի քեզ. զբուծեալքս արեամբ քո քաղցու և խրա-
տեալքս 'ի նժդեհութիւն կենցաղոյս փորձանաւքս.
ժողովեալ 'ի նաւահանգիստ երկնային խորանացդ
արասցես մասնակից լուսոյ վիճակի ժառանգութեան
սրբոց քոց. ով անարգամեծար տէր և փառաւո-
րեալ 'ի շնորհս քո, զի և մեք լի բերան գոհասցուք
զքէն 'ի յանվախճան յաւիտեանսդ» : — Մակա-
բայեցւոց երրորդ գրոց. «Ով տէր հաստարակաց
յոյս՝ որ զամենայնս որ յիշեցին զքեզ յուրաքան-

*քեզ պատարագ յինքնավստահ երկոց ։ Ո՛վ Տէր տուող աւրհնաց և լցուցանող զհաճեալս ընդ աւրհնս քո և զդերեալս յաւրհնս մեղաց՝ ապրեցո՛յ 'ի մարմնոյ աստի շնորհաւք, և հասո՛յ յիմանալեացդ քաղաքակցութիւն ողորմութեամբ* » ։ — Գրոց Յիսուսայ Նաւեայ. « *Ո՛վ սուրբ Յեսու և Եղէազար և Փենեէս, բարեխաւսեցէք առ Քրիստոս Աստուած, վասն Թորոսի բազմամեղիս, և ծնաւղաց իմոց և եղբարց և քեռ, և այնոցիկ որ յիշեն զմեզ և մեղաց թողութիւն խնդրեն յԱստուծոյ* » ... Դատաւորաց. « *Թորոսի Նուաստ ստացաւղի զաստուածային մատեանս հոգի՝ ընթերցաւղացդ աղաւթից յանձն եղեցի, զի արժանասցուք զընդհատելի աւրհնակացս ճշմարտութիւն վաելել պաշտաւնեայքս ընդ պաշտեցեալն 'ի մէնջ Քրիստոս Յիսուս տէրն և Թագաւորն* ... » ։ — Չորրորդ թագաւորութեանց. « ... *Յիշատակագրութիւն նախնեաց դատաւորաց և Թագաւորաց Իսրայելի, որք նստան 'ի գլուխ ժողովըրդեանն 'ի ժառանգելն նոցա զՊաղեստին ։ Արդ գրեցաւ 'ի ձեռն բազմամեղի Թորոսի և Բարսղի. 'ի յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց՝ և եղբարց իմոց և քեռ իմոյ ։ Արդ որք ընթերցմամբ մխիթարիք 'ի սուրբ պատուիրանէս լուսաւորեսցէ Աստուած զհոգիս ձեր. և 'ի շնորհ աղաւթից ձեր հանգուսցէ զվերոյգրեալքս 'ի սմա ընդ վերին մշակացն ըստ մեծի ողորմութեան իւրոյ յերկնից խոստացեալ արքայութիւնն, և նմա փառք* » ։ — Առաջին Մնացորդաց. « *Զտարժանեալս և պատնիշապատեալս յարտաքին թշնամեաց և 'ի ներքին դրժողաց զԹորոս և զծնաւղսըն իմ և զեղբարսն և զքեռ յիշեցէք 'ի բարի վայելողք 'ի ըզբաւսանս նեղութեանս 'ի խոշորագիծ ձեռահիւս մատեանս սուրբ* » ։

Ի գիրս Նեեմեայ, *'ի ստորեւս իջիցն.* « *Տէր Ներսիսի երիցս է կրկնեալ այս ազգահամար յառաջին*

*
* *

Նորագոյն տպագրուած գրչագիր մ՚ալ կայ առ մեզ որքագիր տառից, ընտիր գրչութեամբ և պատուական հնութեամբ, յորում մեզի ծանօթ ուրիշ յառատուած աչքունչ գրոց տարբեր նորութեան մը կը հանդիպինք. զի ուր այլք ընդհանրապէս ՚ի գլուխ իւրաքանչիւր գրոց սովոր են կարգել զնախադրութիւնս, աստ մէջ ամէն նախադրութիւնք ՚ի սկզբան դրուած են միահետ և միայար. ուելցընելով նաև զմահ չորս գլխաւոր մարգարէից՝ Եսայեայ, Եզեկիելի, Դանիէլի և Երեմիայ, բաց ՚ի փոքր կամ ՚ի կրտսեր կոչեցեալ մարգարէից, որոնց մահուան համառօտ աւանդութիւնք ամփոփուած են ՚ի ստորև ելից իրենց մարգարէութեան։

Թերի մնալովը ՚ի վերջոյ, բուն ընդարձակ յիշատակարանին պակասի, որով անծանօթ կը մնայ նաև ստոյգ ժամանակ գրչութեան. բայց բազմաթիւ են համառօտքն, գրեթէ ՚ի վերջ ամենայն գրոց, և երբեմն նաև մեծապէս հետաքննականք, երբ Լամբրոնացւոյն Ներսէսի թէպէտ և քանի մը տող՝ այլ մեզի համար մեծապէս սիրելի նոր երկոց կը հանդիպինք։

Քաղենք այդ յիշատակարաններէն։ Ի վերջ Ծննդոց կամ Արարածոց. «Թորոսի պատուական քահանայի ստացողի գրոյս, յիշատակ լիցի յնթերցողդ. ընդ նմին և տառապեալ ոգւոյ Ստեփ" և ծնողաց մերոց»։ Այսոր նման ուրիշ մանր յիշատակք դոյզն տարբերութեամբք բառից՝ ուրիշ տեղուանք։ Իսկ ՚ի վախճան գրոցն Երկրորդմանն օրինաց. «Փառք քեզ Քրիստոս աստուած մեր վասն ամենայնի, որ զաւրացուցեր զտառապեալ քո Թորոս ՚ի մէջ ծանրութեան մեղացս հոգոց զայս ձեռահիւս տառս առ

*իւրոյ Յոհաննէս սարկաւագի հանգուցելոյն առ Քրիստոս ... Նաեւ զանարժան հողիկս զՅով՛էս անպիտան գրիչ որ զսակաւ գիրս ցանցառ գրով ձաբռատեալ գրեցի և կազմեցի. ոչ յարուեստ ինչ վստահանալով, այլ ըստ հարկեաց և յօժարութեան կամացն Պօղոսի. վասն որոյ չմեղադրել խնդրեմ և յիշել 'ի տէր միով տէր ողորմայիւ » : « Վարդապետ Ներսէս, յիշեա յաղօթս զԹորոս ծաղկող եղպայն իմ Սիար և զհայրն իմ Սարգիս քահ". և զմայրն իմ Մարիամ 'ի քաղաքէն Մշոյ » :*

*Պատմական կարևորութիւն ունի նաև հետևեալն. « ... Յիշեսջիք 'ի մաքրափայլ աղօթս ձեր զառաջնորդ սուրբ ուխտիս զտէր Պօղոս եպիսկոպոս. զի 'ի ժամանակիս յայսմիկ՝ որ էր Թիւս Հայոց ՊՁԸ, էր սա առաջնորդ սուրբ ուխտիս Առաքելոց. և 'ի սորին աւուրս չքահանայ ոմն անուն Վարդան եղև գործօղն նման Յուդայի. և մատնեաց զամենայն սրբութիւնք անօրինաց, զխաչ և զսկի. և բազում խաւար էած ազգիս Հայոց ... Ձի յայսմ ամի տիեզերալոյս և քաջ րաբունապետն Թովմա փախստական եղեալ էր յազգէն Նետողաց 'ի գաւառէն Արճիշոյ. և եկեալ հանդիպեցաւ 'ի սուրբ ուխտն Առաքելաց՝ երկու վարդապետօք, և բազում գրոց աշակերտօք. և ետես զպատուհաս ցասման. զի ... ամիրայն Մարաց որ 'ի Մուշ նստէր, յաւուր միում բազում զօրօք եկն 'ի վանքն, և սուտ քահանայն Վարդան ընդ նոսա, և ըմբռնեցին զքահանայքն. զոմն տանջեցին և զոմն ահաբեկ առնէին. մտին յեկեղեցին, և հանին բազում խաչ և սկի և սրբոց նշխարք և տարան 'ի քաղաքն: Եւ սուրբ վարդապետքն և աշակերտքն ... զգիշերն ամենայն արթուն կացեալ խնդրեցին յԱստուծոյ զազատութիւն սրբութեանցն: Եւ 'ի վաղիւն եկեալ երեց ոմն Մելքիսեդ անուն և եբեր մասն ինչ 'ի խաչերոյն, և բազում խաչ և սկի կորեաւ » :*

զաւուրս քառասուն և եւ ցիս. և իմ ուրախացեալ դէմ եդի գնալ յերկիրն Տարաւնու, և ամենևին ոչ ունի խարձ ձանապարհին. յայնժամ ծախեցի զփիլոն և զհողաթափն վասն խարձի: Արդ զայս գիտասջիք, եղբարք, որ գնալս և գալս զոր ասացի 'ի բազում տեղի էր 'ի մէջ բարբարոս ազգաց... որ բռնացեալ ունին զաշխարհս Հայոց վասն մեղաց մերոց. և յամենայն տեղիս օգնեց ինձ սուրբ Աստուածածին, և անվնաս մնացի. և զամենայն թերի զոր ունէի՝ ելից և կատարեաց, բայց խարձն որ եղեւ այս աստուածաշունչ գրոցս ընդ ամենայն միահամուռ երկու հազար երկու հարիւր դրամ է »:

Յ՚էջն 499. « Զստացող սուրբ գրոցս զՆերսէս պատուական վարդապետ և զանպիտան ծրողս զԳաւիթ յիշել 'ի տէր Յիսուս աղաչեմ: ԹՐՍ »:

Յ՚էջն 717. « Ի թուին Հայոց տոմարի ՊԻ կոչի 'ի յադմանէ չարին վասն ծովացեալ մեղաց մերոց և 'ի հարկապահանջութենէ այլասեռից աւերեցաւ երկիրս Տարօնոյ, նաեւ սուրբ ուխտս Ղազարու, զոր և կրօնաւորք սուրբ Առաքելոցս տարաշխարհիկ լինէին անցանելով յայլ գաւառս. և կացեալ սուրբ տառս աստուածաշունչ 'ի պահեստի 'ի բազում աւուրս եղծեաւ այլ եւս բազում սուրբ գրեանք և զգեստիք. և եղեւ յոյժ տրամութիւն վանացս: Զոր յետ աւուրս ինչ յորում էր ԹՎ՛ ՊԻԷ, ոմն յազնուական տոհմէ, բարեմիտ և սրբասէր կրօնաւոր Պօղոս անուն, եղբօրորդի գոլով երջանիկ րաբունւոյն Յոհաննիսի փոխեցելոյն առ Քրիստոս, որ ստացեալ ունէր զայս աստուածաշունչ: Վասն որոյ Պօղոս եւս առաւել հոգ յանձին կալեալ վերստին ետ նորոգել զգիրքս զայս բազում աշխատութեամբ անձին և ընչիւք իւրովք վասն վայելման ինքեան և յիշատակ Յոհ՛՛ վարդապետին և Պօղոս աբեղայի որ եղեւ նպաստ կրկին նորոգմանս և եղբօր

րում մասն յիշատակի. Մլեհն ..: իմ առեալ գնացի յաշխարհն Պարսից 'ի քաղաքն Թավրէժ յաղագս քարտիսի. և բազում ահ և աշխատանք կրեցի 'ի Ճանապարհն, և յոլով նախանձ և նեղութիւն յագահ և 'ի մնապարծ քահանայից և 'ի հակառակող աշխարհականաց: Եւ անտի ողորմութեամբն Աստուծոյ՝ յարուցեալ գնացի միւսանգամ 'ի Գայլեձորն, և կալայ միջնորդ զՅոհաննէս Մշեցին զեղբայրն իմ հոգեւոր որ առնէր միջնորդութիւն ընդ իս և ընդ երկու դրադիր, ընդ Եփրեմ և ընդ Դաւիթն որ էին կուսան քահանայք. և ապա 'ի բազում աւուրս հազիւ կարացաք կարել գրելն առանց խարճի ՌՇԾ դր. բայց յետո զրկեց զիս Դաւիթն, քանզի խիստ ագահ էր և արծաթասէր. և ԳԾ դր. այլ եւս յինէն. վասն որոյ Թողցէ Աստուած զանցանցն նորա: Եւ ես յայնժամ յարեայ անտի և գընացի 'ի սուրբ առաքելն Թադէոս, առ տէր Ջաքարէ արքեպիսկոպոս. և նա ետ ինձ Շ դր. և յետ բազում աւուրց դարձայ վերստին 'ի Գայլեձոր բազում նեղութեամբ, քանզի ձմեռն էր աւուրքն, և վճարեցի զմնացեալ պարտքն յաստուածաշունչ գրոցն և դարձա 'ի սուրբ Առաքեալքն և դադարեցի անդ սակաւ աւուրս. և կայր աստուածաշունչս անկազմիլ. և ես Թշուառականս կայի հիւանդ հոգով և մարմնով. ապա խնդրեցի 'ի սուրբ Աստուածածնէն, և նա զաւրացոյց զիս և յարուցեալ պնդեցի զմէջս իմ. և ուղղեալ գնացի 'ի Քռնայ առ սուրբ եպիսկոպոսն տէր Բարդողիմոս, և առ վարդապետքն Հայոց առ նմա կային յայնժամ. և Մարուգէ վարդապետն չէր անդ որ կազմող էր գրոց, այլ գնացեալ էր 'ի Ճահուկ. և 'ի ներգործութենէ չարին ես հիւանդացա մերձ 'ի մահ զաւուրս քառասուննևհինգ. և Քրիստոս յարոյց զիս և գնացի 'ի Ճահուկ առ Մարուգէ վարդապետն. և նա յանձն առեալ կազմեաց

Օրինակ ԺԲ. Յիշատակարանն. «Փառաւքն հաւր ամենակարողի ... աւարտումն եղեւ այսմ աստուածաշունչ հին և նոր կտակարանիս. յորժամ էր թիւն ըստ շրջագառութեան ժամանակի 'ի մարդեղութենէն Քրիստոսի ՌԳՃԼ. և 'ի թուականութեան հայկազեանս տոհմի ՉՉԱ. և 'ի հայր''ութեան տեառն Հանոսի, մեծի Հռոմոց պապին, և 'ի պատրիարգութեան տեառն Յակոբա Հաոցնաւհանգի. և յեպ''սութեան տէր Զաքարիայի սուրբ առաքելոյն Թադէոսի վերագիտողի, և 'ի վարդապետութեան Իեա (Եսայեայ) բաբունապետի, որ այժմ կա 'ի Կայեձորի, և յաշխարհակալութեան Ղանպ'ամիափ, և 'ի թագաւորութեան Հայոց Լեւոնի որդոյ Աւշնի, զաս սկսեալ 'ի դեկաընբերի, աւարտեցաւ 'ի հոկաընբերի և 'ի ձեռն երկու քաջ քարտուղարի: Ես Ներսէս անուամբ վարդապետ՝ բայց գործով վերջացեալ հող և մոխիր վարդապետաց, որդի Վահրամա, յաշխարհէն Տարաւնու, 'ի գաւառէն Սանսնու, 'ի վանացն Ղազարու, 'ի գեղջէն որ կոչի Կոռ. եղէ ցանկացող ուսման և ընթացա յարևելս, 'ի գաւառն Վաուձոր, 'ի վանքն Գայլիձոր, և եօթն ամ աշխատեցա 'ի վարժումն հին և նոր տառից սրբոյ բանին. յայնմ ժամանակի եմուտ 'ի հոգիս իմ ցանկութիւն մեծ վասն աստուածաշունչ գրոց. և ես էի աղքատ, և ոչ ունի? և ոչ փող մի, բայց միայն զՔրիստոս: Ապա ուխտ եդեալ 'ի մտի իմում ասացի թէ տա ինձ Աստուած իրք՝ նախ ես յԱստուածածնի անուն տամ գրել: Յորժամ զայս խորհուրդս 'ի միտս իմ արարի յայն գէմ եդեալ գնացի յերկիրն Ուռնու 'ի գեղն որ կոչի Խանակահ, առ եղբարքն իմ և ամենայն արեան մերձաւորքն խնդրել աւգնութիւն 'ի նոցանէ: Իսկ նոքա շարժեալ սիրով և լի սրտիւ ողորմութեամբ սուրբ Աստուածածնին, ետուն 'ի ծախս աստուածաշնչիս իւրաքանչիւր ըստ կարողութեան իւ-

զգիրքս աստուածաշունչ ինքնայօժար կամօք սուրբ Նշանին Վարագայ և նորին եկեղեցւոյն՝ տուրք մըշտընջենաւոր և յաւիտենական ... Արդ ես նուաստ Եփրեմ քահանայ, որ ունէի զգիրք աստուածաշունչ 'ի հօրէ իմմէ 'ի Գրիգոր քահանայէ, նուիրեցի և ետու զսա ուխտիս Վարագայ սուրբ Նշանին, և ետու այնու գաշամբ, զի միաբանք սուրբ ուխտին և քահանայք նորա, յորժամ հասցէ գիրքս առ նոսա, զկարգ քահանայթաղմանն կատարեսցեն բովանդակ, և արասցեն զգիշերային պաշտօնն, և ածցեն խաչ սուրբ յանուն հօր իմոյ Գրիգոր քահանայի: Եւ զէօթն աւուր ընթերցմունքն և զաղօթսն կատարեսցեն կարգաւ ... Այսուհետև հաստատեմ՝ զի ոչ որ եպիսկոպոս կամ հայրապետ վանաց կամ եկեղեցւոյն կամ քահանայ կամ սարկաւագ և կամ այլ որ կարասցէ հանել զգիրքս 'ի սուրբ եկեղեցւոյն Վարագայ սուրբ Նշանին, ոչ ծախելով և ոչ ընդ գրաւականս դնելով և ոչ օտարելով և ոչ գողանալով ... Եւ դարձեալ պարտ է զյիշատակարանս զայս 'ի յամենայն աւագհինգշաբթի օր 'ի յատենանս եկեղեցւոյն 'ի լսելիս ամենեցուն ընթեռնուլ» :

Թ. օրինակ. Հին կտակարանն միայն յորում կը նշանակին և համարք Փռանկաց: Գրիչն յ'էջ 105. « Զմեղապարտ գրիչ Եզեկիել սկ. բարի մտօք յիշել 'ի տէր յերեսս անկեալ աղաչեմ զընթերցօղդ » : Իսկ յ'էջ 191.

« Մեծ դիտապետն սըրբազան
Եւ քաջապետն արհիական,
Որ զօրինակս ետ մեզ ի բան
Քրիստոս պահէ զինքն անսասան,
Հանդերձ իւրովք միաբան
Այժմ և յաւէտ և յապագայն.
Նա եւ զգրիչս արէք արժան
Բարի կամօք ի տէր յիշման »:

***

Զ. օրինակ. Աստուածաշունչ ընտիր մանր բոլորագիր մագաղաթեայ, ամբողջ. հանդերձ թղթով Կորնթացւոց առ Պաւղոս և սորա պատասխանին առ Կորնթացիս. և 'ի վերջն Հանգիստ Յովհաննու, ունելով և զգլխակարգութիւնս, ինչպէս կ'ըսէ, « Ֆռանկ աստուածաշնչի » :

Ը. օրինակ. Աստուածաշունչ ամբողջ՝ գրեալ 'ի զանազան գրչաց. « Զստացող աստուածագումար տուիս զամենրջանիկ և զձոխացեալն ամենայն իմաստութեամբ զերանաշնորհ զքահանայն Գրիգոր... նաև զնկարակերտող սորա զաւագէպ ... ընդ նոսին և զփցուն գրիչս զԿար". (Կարապետ):

Յ'էջն 448 յիշատակարան երկայն. « ... Աձապարեալ ստանալ զսա վեհիմաստ քահանայն Աստուծոյ Գրիգոր ... և բաղում աշխատութեամբ ստացաւ զսա 'ի հալալ արդեանց իւրոց յիշատակ իւր և ծնողաց իւրոց, և 'ի ժառանգութիւն զաւակի իւրոյ պատուական քահանային Եփրեմի, և 'ի Թուականութեանս Հայոց ՋՂ. 'ի յաշխարհակալութեան փոքր Տեխհասանի և հիւպատոսութեան և սպարապետութեան Հայոց Բիւրթէլին 'ի քաղաքն Սուլտանիայ. 'ի քորեպիսկոպոսութեան Սրտուի տէր Սարգսի և եպիսկոպոսութեան տէր Գրիգորի: Արդ յամի ծննդեան Փրկչին մերոյ 1354ի և 'ի Թուականութեանս Հայոց ՊԳ. և յամսեանն սեպտեմբերի ԻԵ և 'ի մարերի Է, 'ի մայրաքաղաքս Բաղտատ. 'ի յաշխարհակալ բռնաւորութեան մեծ Տեխհասանի, և 'ի հայրապետութեան ամենայն Հայոց տէր Մխիթարի և 'ի քորեպիսկոպոսութեան այսմ Նահանգի տէր Սարգսի, Եփրեմ քահանայ որդի հարազատ Գրիգոր քահանայի ստացողի գրոցս, պարգեւեաց

Ի քաղաքս աստուածախնամ Լոռէ կոչական.
Հայրապետիս մերոյ ազգիս արքեթական,
Տէր Մելքիսեթ կաթողիկոսն արեւելեան,
Ի յարեւմուտս տանն Սսոյ ազնուական
Տէր Յովաննէս կաթողիկոսն աստուածաբան.
Որպէս լուսին եւ արեգակն ի յերկինս կան
Այնպէս սոքա են ի յերկիրս ի Հայաստան.
Սրբազան քահանայից որ այժմս կան,
Որ անդադար տիւ եւ գիշեր առ տէր կարդան.
Ըստեփաննոս եպիսկոպոսն Ծերալեան
Եւ տէր Գասպար աւագերէցն պատուական.
Տէր Խաչատուր, տէր Զաքարիան ազնուական,
Տէր Թորոս, տէր Յովաննէս վարպետք մանկան.
Տէր Գրիգոր կրօնաւորն վանական,
Եւ տէր Մարգարն ի հետ նըմին ընկերական.
Աստուածասէր տանուտէրացըն լոռական
Բան Գաբրիէլ եւ բան Թորոսքն երեսփոխան.
Եւ հասարակ են դատաւորք երկոտասան.
Որ արարիչն հաստատ պահէ եւ անսասան:
Ի ժամանակս սոցունց եղեւ յայս յանգական՝
Հոգխաքուխ աստուածատունկ այս բուրաստան.
Ես իմ ձեռամբ եղէ սորա աշխատական
Եւ զնիւթն յառաջ պատրաստեցի աննիազական.
Ետու ի ձեռս Թորոս դպրի երագագրեան,
Տալով զվարձս ձեռաց նորա առատական.
Բազում եղբարս յորդորեցի եւ ետու բան
Զի եւ նոցա ջանիւքն առնել աւարտական,
Մինչեւ ի չորս տարին եղաք աշխատական,
Հազիւ հանաք աստուածաշունչս աւարտական.
Ետու ի ձեռս Անդրեայ դըպրին եղբայրական
Որ կապեաց զսա ի մի ի տուփ հաւաքական.
Որոց տացէ տէր մեր Յիսուս վարձս յաւիտեան,
Զոր ինչ աշխատ եղեն նոքա երագական.
Վասն որոյ ես կրսեր ձեր ծառայական
Արտասուալից հայցեմ ի ձէնջ պաղատական,
Յաղօթս ձեր յիշել զմեզ միշտ սըրտական,
Ոչ մոռանալ յարեւանցի տեսողական.
Զիս զՂազարս Բաբերթացիս նըժդեհական,
Նախ սիրուն զծնողսն իմ հանգուցական...։

ցա և եթէ տղայք գոցա որպէս ըղձնագոյն աթենա-ցիսն հարցասէրք գոլով: Զի օրէն է յայսմ երկրի, յորժամ լինի 'ի մէջ իւրեանց հարցափորձութիւն, նա կու ժողովին 'ի սդադիրոն տեղիսն, կամ 'ի տաճարն յԱստուծոյ, և առարկանեն 'ի մէջ իւ-րեանց խրթին բան մի, և հարցաքննութիւն կու առնեն երկուց կողմանց օրով շաբթով և ամսով. մինչև ոմն քաջագոյն յաղթող երևեսցի և զընդդիմակողմ-սըն յաղթահարեսցէ աստուածային գրոց վկայու-թեամբ ...» :

Յէջ 14 գրչագրին. « Գրիգորի եռամեծի, որ այս-պէս շարահիւսեալ զհին և զնոր կտակարանս » : « Ո՛րքան են և ո՛րք գիրք սուրբք հին և նոր կտակա-րանք » ... յորում կ'ըսէ. « Եւ որպէս ասէ Կղեմ և Անանիա Դամասկացի, թէ վեց գիրք այլ ընկալայք յեկեղեցի, որ է Ընթերցուածն Յակոբայ, Կանոնք առաքելոցն, բանք Յուստոսի, Գիրք Դիոնիսեայ Ա-րիսպագացւոյ, Քարոզութիւն Պետրոսի առաքե-լոյն » ...

Յէջն 309 յիշատակարան. « Ով հարք և եղբայրք ընթերցողք սուրբ տառիս, և զմեղսամած և զտա-տանեալ Մարկոս սարկաւագն զգրող սորին, մտօք խաւար բարեաց ունայն մեղօք զարդար երևական » : Կը գտնէ ցանկ մը « Ի վերայ այբուբենից աստուածա-շունչ սուրբ մատենիս, ըստ հայկական թուոց » . և ապա միւս այլ ցանկ. « ըստ լատինացւոյ թուոց » :

Յէջն 631 ոտանաւոր յիշատակարան.

« Աւարտ եղեւ աստուածաշունչս այս սիրական
Հին և Նոր կտակարանքն լիական.
Թուականիս Հայոց մեծաց և աքեթեան
ՌԿԸ յաւելի յարաբարդեան,
Ի յամիսն ի յապրիլի ըստ Հռոմական.
Որ վեշտասան եղեւ զատիկ մեր հայկական:
Ի յերկիրս յԸռուզաց և Լեհաստան,

դից, և ըստ այբուբենից 'ի վերայ շարադրեցաք վասն այլ առաւել դիւրագիւտ լինելոյ ուսումնասիրացդ. և միւս ցանկն որ զկնի նորին արարի, առի զօրինակն 'ի լատինացւոց, նաև զգլխահամարքն և զփոքրահամարքն, և զայբուբենդիմդայքն, և զաստղանշանսն, նաեւ զվկայութիւնսն համաձայնութեամբ, որ միմեանց կոչ համեմատին. իբրև զշարս մարգարտաց ընդ ականց պատուականաց, և գծագրեցի իմ հողանիւթ մատամբս 'ի լուսանց աստուածաշունչ մատենիս: Բայց զփոքր համարն կարմրագրով արարի, զի մի շփոթեսցին համարագիրքն մեր ըստ գրութեան նախնեացն մեր. զի մեր համարքն յառաջ կ'ընթանայն ըստ մերում ոճին, և նոցայն կ'ընթանայ ըստ իւրեանց կարգին. և թէ գլխաւոր համար՝ սեաւ եմք գրեալ. բայց Ֆ 'ի վերայ նոցա դնելով ցուցանէ թէ ֆռանգաց է գլուխն. զի նոցա աստուածաշունչն բոլոր այսպիսի համարագրովս կ'ընթանայ, որպէս որ տեղեակ և գիտակ եմք ... և զբաշմաչխատ նըւաստ Ղազարս յաղօթս ձեր մի մոռանայք. զի և մեք վասն այն աշխատ եղաք 'ի վերայ սորին զօրն և զգիշեր ... Զի յերկիրս այս յորում մեք բնակեալ եմք, են այլևայլ ազգք և ազինք, և անհաւատ եբրայեցիք բազում. զի են քաջ ուսումնասէրք, բանիբուն փիլիսոփայք, և եօթն արհեստին կատարեալ գիտողք. այլ և զբոլոր աստուածաշունչ մատեանն 'ի բերան առեալ ունին, եթէ արք նոցա և եթէ կանայք նոցա, եթէ երիտասարդք նոցա և եթէ կուսանք նոցա. զի են յոյժ ուսումնասէրք և հարցասէրք, և խորին աստուածային պատուիրանացն քննօղ. զի չունին մեծամեծ հարկապահանջութիւնս, որպէս յերկրիս մերում Հայաստանեաց է. և ոչ են ամենեքեան մարմնաւոր արհեստից պարապեալ՝ որպէս ազգս մեր. զի դոցա արուեստն է կարդալն և ուսանիլն, և միայն սմին են պարապեալք, և եթէ մեծամեծք դո-

— « Պատուեալք յԱստուծոյ և 'ի Քրիստոս եղբարք սուրբք, որք յինչև իցէ պատճառս հանդիպիք սուրբ այս գրոցս, զմեղաւորս Յոհաննէս որ շատ աշխատութեամբ ստացայ զսա, յիշեցէք առ ողորմածն Աստուած » ... :

Բ և Գ. Թուանիշը կրող գրչագիրք՝ չունին ոչ նըշանաւոր հնութիւն և ոչ ալ կարևոր յիշատակարանք բանասիրական կամ պատմական նկատմամբ. ուստի և հարկ մը չենք տեսներ խօսքերնիս յերկարել անոնց վրայ :

***

Դ. օրինակ, պատկերազարդ և ծաղկէնկար, մագաղաթեայ բոլորգիր ընտիր. ամբողջ հին և նոր կտակարանն. յորում և « Պատմութիւն Յովսէփայ Գեղեցկանն և Ասանեթին », այսպիսի սկզբնաւորութեամբ. « Եւ եղեւ յամին յառաջնում, որ աւր եւթն էր ամսոյն » :

Ի սկիզբն Աստուածաշնչին. « Համառօտ գումարումն քառից յաստուածաշունչ գրոց յումեմն յԵրեմիայէ ». Յիշատակարանն. « Շնորհիւ տեառն սկըսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զայս հոգիաբուղխ և աստուածաշունչ սուրբ կտակարանս՝ յորում խանդակաթ սիրով ցանկայի և բաղձայի և տենչայի 'ի մանկութենէս 'ի վեր. և այժմ հասի փափաքանաց իմոց զոր սիրեաց անձն իմ ... մանաւանդ որ ցանկով և համարագրով և ոսկեգիր այբուբենգիմդայով զարդարեցաք զսա վասն դիւրագիւտ լինելոյ բանիցս աստուածային: Զի թէպէտ գոյր մեզ յառաջագոյն կարճառօտ ցանկեր 'ի նախնեաց մեր և 'ի տէր Դաւիթ իմաստուն քահանայէն, բայց ցիր և ցան գոլով յայլևայլ տեղիս. բայց մեք աշխատութեամբ ժողովեցաք 'ի մի տուփ իբրև զփունջ մի վար-

— « Զամենամեղս Յոհաննէս զստացաւղս աստուածաշունչ տառիս աշխատանաւք և գրչութեամբ իմոյ ձեռինս, և այս՝ զի պակաս եմ յարուեստ գըրչութեանս, այլ սիրոյն որ 'ի սա՝ զի ես ինձէն մոռացայ. ոչ վասն մարմնական ինչ շահից, այլ միայն զի 'ի հանդիպաւղացդ վայելից յաղաւթս, աղաչեմ վասն սիրոյն Աստուծոյ յիշեցէք 'ի տէր Թողուլ զանեզր յանցանս իմ ⁖ » ։

— « Զվաղնջուց 'ի մահուչափ գրաւեալ 'ի մեղս, և որ դեռ ևս 'ի նոյն շարաւահոտ բազմախղխայթ վէրս պայեկեալ նստիմ. զՅոհաննէս որ խարեալս եմ մտացս խղճիւ, որ 'ի չար ժամու անիմաստ անձամբ պակաս 'ի գրչութեանն արուեստէ, վասն սոյգ աւրինակացս ստացայ զսա առ 'ի յիշատակ ինձ և ծնողացն իմոց և հարազատացն Սմբատայ և Վասլի, և որ զկնի մեր արժանի լինիցին ժառանգել զաստուածաշունչ տառս, յիշեցէք 'ի Տէր » ։

— « Զաստուածային սիրոյ հրոյն՝ բոցակիզեալ անձինսդ, զծերացելոցդ իմաստիւք և հասակաւ, և զմանկագունիցդ զաւրեղաց յիրս և 'ի բանս՝ որ Աստուծոյ է հաճելի, զսուրբ գարշապարացդ՝ յամենայն զաւրութենէ մեղաւորս Յոհ՞ և ոչ արժանիս յիշատակի, սուրբ սիրով և հաստատ յուսով բուռն հարեալ կախիմ զգոքոք, և աղերսիւ Թաւալիմ առաջի, ներեցէք աղաչեմ. և վասն իմ նուէր տուք Աստուծոյ զաղաւթս ձեր. և մեղաց իմոց Թողութիւն խնդրեցէք » . . .

— « Զկարաւտս ողորմութեան զՅոհաննէս ստացաւղ աստուածաշունչ տառիս իմոյ ձեռինս աշխատութեամբ, յիշման 'ի բարի արժանի արարէք . . . Ով եղբարք, Թէ 'ի մեղաւոր գրողիս աշխատանքն՝ որ խեղաթիւր է և անարուեստ, մարդկաբար նայիք, ապա վայ է զիս 'ի լեզուէդ ձեր ։ Այլ ներեցէք և Տէր ձեզ » ։

զկնի ցանկք բովանդակութեան ընթերցուածոց, և Յառաջագիր և վկայութիւնք, և ապա չորեքտասան թուղթք: Յետ առ Փիլիմոն թղթոյն հետևեալ տողերն. «Գրեցի և կարգեցի ըստիքերոմս, զգիրս Պաւղոսի առաքելոյ, յաւրինեալ և դիւրահաս ընթերցուածովք եղբարցդ մերոց. յորոց յամենեցունց չմեղադրութիւն յանդգնութեան իմոյ հայցեմ, զի աղաւթիւք որ վասն մեր լինիցին, զզիջանելն ձեր ընդ իս ընդունիցիմ»: — «Ընդաւրինակեցաւ գիրքս այս ըստ Կեսարացւոց աւրինակաց որ կան յարկեղս գրոց սրբոյն Պամփիլեայ իւրովք ձեռաւք գրեալ»: **Թեղադրութիւն** (կարմրագիր է). «Գըլխաւոր եմ և աստուածեղէն կրաւնիցն վարդապետ. եթէ ունէք զիս յանաւթ տայցես, աղնիւ աւրինակ փոխանակ ընդ իմ առնուցուս. զի հատուցանաւղքն չարք են»: **Պատասխանն** (կարմրագիր). «Գանձ ունիմ զքեզ հոգևոր բարութեանց, և ամենայն մարդկան ցանկալի յաւրինուածովք և պէսպէս զարդուք զարդարեալ. այս ասեմ ճշմարտութեամբ, ոչ տաց զքեզ վայրապար ունէք յանաւթ. և ոչ դարձեալ նախանձեցայց ընդ աւգուտ ուրուք. այլ յորժամ տաց զքեզ յանաւթ սիրելեաց իմոց, աղնիւ աւրինակ քո փոխանակ առից»:

**Նաւարկութիւն Պաւղոսի առաքելոյ 'ի Հռովմ.** «Հարիւրապետին որ տանէր զՊաւղոս 'ի Հռովմ՝ Յուլիոս անուն էր»:

**Թուղթ Կորնթացւոց առ սուրբ առաքեալն Պաւղոս**, որուն կը չարայարէ և զպատասխանին Պաւղոսի «առ եղբարս Կորնթացիս»:

Այլևայլ մանր յիշատակարանք, ցրիւ 'ի զանազան տեղիս. «Զկարաւտս ողորմելոյ կատամահ 'ի մեղաց լեալս՝ զՅոհաննէս յարդար գործոց նուազեալս՝ զսուրբ մարգարէիցս մեղաշաղախ ստացաւղըս, յիշեցէք ... ԶԿԸ»:

Եւսեբի Թուղթ առ Կարպիանոս, վասն համաբարբառոյն աւետարանաց. «Եւսեբի՝ Կարպիանոսի սիրելի եղբաւր 'ի տէր ողջոյն». սկզբնաւորութիւնն. «Ամոնէի աղեքսանդրացւոյ բազում աշխատութեամբ և ճշգրտիւ փոյթ 'ի մէջ առեալ՝ զառ 'ի չորիցն եթող մեզ զաւետարանն մատթեան աւետարանին...»։ Կը յարէ ապա զսովորական ցուցակ համաձայնութեանց։

Չորք Աւետարանք. և 'ի վերջն Մարկոսի երբ անջատ և որիշ 'ի բնագրէ աւետարանին կը գնէ զհատուածն. «Յարուցեալ Յիսուս առաւաւտուն առաջին միաշաբաթուն երևեցաւ Մարիամու». իսկ աւետարանն կ'աւարտի բանիւքս. «Եւ ոչ ումեք ինչ ասացին՝ զի երկնչէին»։ Այսպէս և իրք կնոջն շնացելոյ հատուածն՝ զետեղուած է յետկոյս ամենայն աւետարանաց. և 'ի ստորև նոյն էջին նշանակուած է 'ի գրչէն. «Այս բանս յ'ՁՁ համարն է». անշուշտ ըստ ցուցակի համաբարբառին։

Գիրք Գործոց Առաքելոց, յորոյ 'ի կատարածին եդեալ է դարձեալ թուական գրչութեանն ՉԿԸ. և 'ի լուսանցսն կը յաւելու մեկնիչն զնշանակութիւն բառից ինչ. ինչպէս՝ ուր կը գնէ բնագիրն «մինչև յօրգոստայն Ապփիայ» կը մեկնաբանէ, «տանձավաճառաց». թերևս 'ի յոյն բառէն ἄππος, որ է տանձի։ Ի Պրակացս առաքելոց սկսեալ կը նշանակէ թէ քանի՛ ստիքս եղան (տողք σδο:χο:) և տունք և ընթերցուածք։

Թուղթ կաթուղիկեայց եւթանեցունց.

Աղերս Եւթաղի, և յետոյ համառօտ յիշատակարան մը գրչին, ինչպէս 'ի վեր անդր։

Յայտնութիւն Յովհաննու առաքելոյն, յարելով և զյիշատակարան Թարգմանութեան Ներսիսի Լամբրոնացւոյն։

Թուղթք Պաւղոսի առաքելոյ. Յառաջաբան, յորոյ

« Արդ առեալ աւէ Սամուէլ զսրուակ եւղոյն, և աւծ զԴաւիթ թագաւոր »:

Սաղմոսք Դաւթի.

Առակք Սողոմոնի.

Ժողովողն.

Երգ երգոց. որ է Աւրհնութիւն աւրհնութեանց, ասացեալ Սողոմոնի արքայի Իսրայելի.

Իմաստութիւն Սողոմոնի.

Գիրք Յովբայ.

Մարգարէութիւն Եսայեայ.

Մահ Եսայեայ մարգարէի.

Երկոտասան մարգարէք: Ի Յովէլ գնի. « Պատգամ տեառն որ եղեւ առ Յովէլ Բաթուէլի Յաւելի. յաւուրս Եզեկիայ »:

Մարգարէութիւն Երեմիայ.

Թուղթ Բարուքայ.

Ողբք Երեմիայ.

Մահ Երեմիայ մարգարէի.

Մարգարէութիւն Դանիէլի.

Մարգարէութիւն Եզեկիէլի.

Մահ Եզեկիէլի մարգարէի. և 'ի վերջն յիշատակարան. « ... Ես մեղաւորս Յոհաննէս ըստ կարի զփափաքս իմ լցի յանկ ելանելովս. և այս եղեւ ներելովն Աստուծոյ. զի յանարժանէս թերեւս արժանաւոր այս գործ եղեւ յանկեալ. և զայս ոչ ասեմ վասն գեղապաճոյճ շարագրութեանցս, այլ վասն աղնիւ աւրինակիս զոր սուրբ և երանեալ վարդապետին Գէորգեա ձեռացն շարահիւսեալք էին. աղաչեմ զժառանգաւղսդ և զհանդիպաւղսդ ներեցէք սխալմանս 'ի սմա, և սիրով ուղղեցէք. և միոյ տէր ողորմի արժանի արարէք զողորմելի գրիչս Յոհ" և զծն" իմ և զեղբ" »: Ապա 'ի ստորեւս իջիցն կարմըրադեղով նշանակուած. « Աւարտի սա, (որ է հին կտակարանն ամբողջ) 'ի մայիսի ժ և 'ի ե »:

« Թագաւորք աստուածածանք,
Սուրբ և զգալի իւղով աւծեալք…
Իբր աւրինակ տպաւորեալք
Զերկնաւորին անունն առեալք,
Լաւքն աստուածապաշտք
Գոն ճահաւորք պատկերացեալք.
Զարքն և խոտորեալք՝
Մեծ հարուածովք եղեն տուժեալք,
Պահանջի ի Նոցանէ
Կարծեմ բարի գոլ յանուանէ.
Ոչ խոտորեալ իսկ ի տեառնէ
Եւ ոչ պատժել իսկ ի Նմանէ.
Բայց թէ չար գոլ պատահէ՝
Ըստ արժանեացն և չար կրէ,
Ցուր յոյան ժամանէ
Մարդկան փրկիչն և ազատէ »։

Եւ ապա յիշատակարան. « Զմեծ յանցանաւք առղորկեալս զՑոհաննէս որ փափաքանաւքս տոչորեալ ստացայ զսա։ Աղաչեմ յամենայն սրտէ իմմէ զամբիծ ընթերցաւղքդ և զհոգւայցեալ լսաւղքդ՝ միոյ տէր ողորմայիւ յիշել զեղկելի գրիչս և զծնաւղսն իմ և զեղբարս »։

Երկու գիրք Մնացորդաց.

Երկու գիրք Եզրի.

Գիրք Նեեմեայ, զոր 'ի ստորեւս իջեցն կը կոչէ Երրորդ Եզր.

Եսթերայ գիրք.

Յուդիթ.

Տովբիթ.

Ա. Բ. Գ. Մակաբայեցւոց գիրք.

Երանելւոյն Եպիփանու եպիսկոպոսի Կիպրացւոյ յաղագս երգոց Սաղմոսարանի. « Զամենայն ինչ զոր ասաց հայրն մեր Աթանաս, զոր լուեալ էր նորա 'ի հոգեկիր ծերոյն »։

Եպիփանու Կիպրացւոյ յաղագս Սաղմոսաց Դաւթի.

ԺԴ. Յովբ.

ԺԵ. Դաւիթ.

ԺԶ. Առակաց, զոր նոքա Մաղասովթ կոչեն.

ԺԷ. Եկղեսիաստես, զոր նոքա Սեհեղեթ անուանեն.

ԺԸ. Աւրհնութիւն աւրհնութեանց, զոր նոքա Սիրասիրիմ կոչեն.

ԺԹ. Դանիէլին.

Ի. Դաբրէիովմինն, որ նշանակէ զբանս աւուր. բայց յայտնագոյնս ասիցէ ոք պատմութիւն ժամանակական, որ գիրք Մնացորդացն անուանի.

ԻԱ. Եզրին, և այն առ 'ի Յունաց և 'ի Հռովմայեցւոց յերկուս գիրս բաժանեալ է.

ԻԲ. Եսթերայն»[1]:

Այս ցուցակէն ետքը կը շարայարէ նոյն յօրինող Յառաջաբանին. «Այսպէս գումարին. միանգամայն հնոյ աւրէնսդրութեան գիրք քսանևերկու ընդ ամենայն. Մովսիսի՝ հինգ. մարգարէիցն՝ ութ. սրբագրացն՝ ինն: Բայց ոմանք և զՀռութ և զԿինովթ ընդ մարգարէսն կարգեն ... Բայց արդ պարտ է գիտել յասացելոցս, զի որ արտաքոյ քան զայս գումարութիւն գիրք գտանիցին, ընդ անուանեալ յայտնութիւնս հարկ է համարել: Եւ Իմաստութիւն Սողոմոնի՝ զոր բազումք նորա անուանեն, և Յեսու Սիրաքայ և Յուդիթ և Տուբիա և Հովիւն չեղեն արժանի կանոնի: Բայց զՄակաբայեցւոցն զառաջին գիրսն գտաք գրեալ եբրայեցերէն, և զերկրորդն յունարէն, որպէս անդստին 'ի խաւսիցն է նշանակել»:

Ա. Բ. Գ. Դ. Թագաւորութեանց. և յետոյ տառանաւոր ողբս.

[1] Տես ԵՒՍԵԲԻ, Պատմութիւն Եկեղեցւոյ, Զ. ԻԵ:

Գիրք Զորից Թագաւորութեանց, ուր յառաջ քան զսովորական և զծանօթ նախադրութիւն առաջին Թագաւորութեան գրոց, կայ ուրիշ նախաբանութիւն մ'ալ յաղագս բաժանելոյ զաստուածաշունչ գիրս 'ի քսան և երկուս, հետևեալ վերնագրով. « Յառաջաբան նախակարգեալ Թագաւորութեանց: Վասն 'ի յերկուս (զոր պարտ է ընթեռնուլ 'ի Ի քսան և յերկու) գիրս առ 'ի հեբրայեցւոց զպատմութիւնն բաժանելոյ, զի քսան և երկու նշանագրաւք վարին եբրայեցիք » ... և ապա կը թուէ մի առ մի զգիրս սուրբս ըստ հեբրայական տառից յորջորջման, այսպէս.

Ա. զառաջինն անուանեն Բրեսիթ զոր մեքն Արարածք կոչեմք.

Բ. զերկրորդն Էլլեսմոթ, զոր մեք Ելս ասեմք.

Գ. զերրորդն Ուայիքրա, զոր մեք Ղեւտական անուանեմք.

Դ. զչորրորդն Ուայեդաբբեր, զոր մեք Թիւս ասեմք.

Ե. զհինգերորդն Դաբարիս, զոր Երկրորդումն օրինաց կոչեմք.

Զ. Յեսուեբեն, Յեսուայ որդւոյ Նաւեայ.

Է. Զուփիմն որ է Դատաւորացն, 'ի նոյն յարեն և զՀռութ.

Ը. Սամուէլ, զոր մեք առաջին և երկրորդ Թագաւորութիւն համարիմք.

Թ. Մաղաքիմ, որ է Թագաւորութեանն, որ յերրորդում և 'ի չորրորդում Թագաւորութեանց կատարի.

Ժ. Եսայեայն.

ԺԱ. Երեմիային.

ԺԲ. Եզեկիելին.

ԺԳ. Երկոտասան մարգարեից, զոր Թարեասար կոչեն.

Գիրք Յեսուայ որդւոյ Նաւեայ. և 'ի վերջն ոտանաւոր բան.

« Որ ես փրկիչ զարմանագործ տէր մեր Քրիստոս,
Դրոշմեցեր քեզ գրծագիր զՆաւեայն Յիսուս.
Որ եկաց յետ Մովսեսի Հրէից յոյս
Ճահաւոր քեզ աւրինակ մաքուր և կոյս.
Աքանչելեաւք դարձոյց զգետն մշտահոս,
Զարեգակն ստնակապեաց աւուրս երկուս.
Քաջութեամբ մաշեաց ի սուր զհեթանոսս,
Բաժանեաց իսրայելի վիճակս արգոյս:
Այլ դու տէր և պարգևւիչ բարեաց նորոյս
Սուրբ խաչի քո զաւրութեամբ՝ յոր բազմեալ գոս.
Հալածեա հերքեա զդժնեայն՝ մեր չարախաւս,
Զի հասցուք մեք վիճակի սրբոցն ի լոյս »:

Գիրք Դատաւորաց, յորոյ յաւարտն դարձեալ դոյզն բան ոտանաւոր.

« Փրկիչ անուն և դատաւոր,
Որ Քրիստոսի են բնակաւոր,
Յեսուայ եգաւ լոկ տըպաւոր
Ուրոց կարգաւ են դատաւոր.
Զի անուանքս այս խորհրդաւոր
Յայտնեն խորհուրդ մեզ ահաւոր.
Թէ որ փրկիչն երախտաւոր
Յետոյ գալոց է դատաւոր »:

Գիրք Հռութայ. և 'ի վերջ մատենին կը յաւելու ընդօրինակողն.

« Կինս այս Հռութ ի դստերացըն Մովաբու
Ուրացեալ էր կռոց անտի ազգի իւրոյ.
Հաւատով դիմեալ յԱստուածն Աբրահամու,
Գրեցաւ մեծ նախամամ տեառն ըստ մարմնոյ »:

Յետոյ կը յարէ. « Զներկեալս մեղաւք զՅոհաննէս, սուրբ մատենիս ստացաւղ, յիշեցէք աղաւթիւք 'ի տէր ով սուրբ ընթերցաւղք և լսաւղք. և տէր զձեզ յիշէ 'ի բարի »:

Վասն սրբոյ Աստուածածնի
Դիր զեղկելս երանելի։
Մոյծ ընդ թուով գաւազանի
Զյոռիս ընդ լաւսն'ի քում հաշուի.
Որ զՌահաբեան թուես ի գրի.
Քեզ ամենայն ծունր կրկնի»։

## Ե. Երկրորդ Աշրէնք. և 'ի կատարածն.

« Զարհուրիմ ի քոց փառաց տէր իմ Մովսէս
Անկանիմ առ ոտս քո ծառայապէս։
Յաւարտել հինգ գիրս ըզքո ըզսուրբ աւրէնս
Գոհանամ քև զԱստուծոյ բարեմտապէս,
Ներբողեան քեզ ընծայեմ աղքատապէս
Նահապետ մարգարէիցն՝ աստուածատես.
Զահաւոր փառան տեսեր՝ արժանապէս,
Միջնորդաք ոչ խաւսելով՝ այլ բացերես.
Զերեսաց քոց ճառագայթ փայլակնապէս
Նշմարել ոչ ժուժէին Հրէիցն հանդէս.
Ըզբոլոր տիպ Յիսուսի պատկերապէս
Բովանդակ ի քեզ ցուցեր խորհրդապէս.
Եւ զերկրորդ աւրէնս գրեալ դատողապէս
Ըզգուշանալ պատուիրանին սիրողապէս.
Զի զաւրհնից կամ զանիծից՝ մըշակապէս
Ըզթոշակ վարձուց առցես արդարապէս.
Յետ որոյ իսկոյն փոխեալ քո յաշխարհէս
Յերկնայնոցըն յաւելար՝ ահեղ հանդէս.
Զի այսու իբրեւ ի քնոյ զմեզ զարթուցես
Իմանալ զհանդերձեալն սուգապէս.
Թէ յերկրորդ գալն Յիսուսի աստուածապէս
Փոխելոց է զմեզ ի կեանս անմահապէս.
Ընդ մարմնով՝ վարուց տալ բան՝ անխաբապէս
Եւ գործոց առնուլ վճար արժանապէս.
Անսըրբոց միշտ ի խաւար գոլ բոցակէզ,
Արդարոց հանգչել ի լոյս խրախճանապէս։
Այլ ցածո՛ կանուխ զԱստուած միջնորդապէս
Որպէս յայնժամ ընդ Հրէից կարեկցապէս.
Մի՛ ջնջել զմեզ ի կենաց դպրութենէն
Զդեգերեալքս ի սուրբ դպրոցս աշխատապէս.
Եւ գրչիս գլխաւորել զտառիցս հանդէս
Զընթերցողսն յիմաստ ու ի գործ զաւրացուցես »։

Զի գայցէ մեծն և մնացական.
Եղեր մարմնով կցորդ մարդկան
Մեծ քահանայ Աստուծոյ տան.
Գեր քան զչափն Մովսիսեան
Ըստ կանխագոյն բանին երդման.
Դու քահանայ ես յաւիտեան
Մելքիսեդեկ ճշմարտութեան,
Ուր ընդ անձին՝ այլ ընդ մարդկան
Մին պատարագն էր բաւական.
Նըստիս ընդ Հաւր միշտ յաւիտեան
Բարեխաւսես վասն մարդկան.
Զմերս ընծայեա հաւատոյ բան
Զի փրկեսցուք ի հրոյն կիզման »:

Դ. Թիւք, և 'ի վերջն հետևեալ տողերը.

« Զրոյց Թուոցըս մատենի
Լրումն խոստմանն որ է յայտնի
Թէ զաւակ քո յոյժ բազմասցի
Իբրև զաւազ որ ոչ չափի:
Կարծեմ խորհուրդ իմն այլ ունի
Զորմէ խուզել չէ անտեղի:
Ի Թուել ցեղին Իսրայէլի
Քան ըզվաթսուն բեւրն աւելի,
Զմըտին ի Թիւըն հանդիսի.
Որք չեւ էին քսանամենի:
Ահա Թուելով բոլորն ազգի,
Մնացին անԹիւ անգիտելի.
Զինչ իմասցուք արդ հաւաստի
Զորոց չեղեն հարեալ զգրի:
Թուի Թէ այնու այս յայտ լինի,
Թէ չատ ինչ մեզ չէ գիտելի.
Իցեն մարդկան ոք հաճելի
Առ Աստուծոյ ոչ գովելի:
Զի իւր միայն իւրքն յայտնի
Որք մարդկան չեն ճանաչելի:
Այժմ ծածուկ յայսմ աշխարհի
Յետոյ փառաւք հըռչակելի.
Վա՜յ զիս որ աստ կարծիմ բարի
Յետոյ անարգ և եղկելի:
Այլ տէր գըթած յամենայնի
Թող զոր յանցեայ քեզ ի մարմնի.

Ժամանեցո ի լրումն քոց սուրբ մատենից։
Ժառանգեցո Լուսաւորչին պայազատից,
Դայեկաբար ջամբեցողաց զկաթն իմաստից.
Որոց նըստին ասեմ յաշխարհն արեւելից
Ուր ապրեցաւ սուրբն անվնաս ի մէջ աւձից։

Բ. Ելք. եւ 'ի վերջն ոտանաւոր քերթուած.

« Տէր որ ի տիպ մեծ փրրկութեանս որ ի վերջոյ
Ղուար յԵգիպտոս ըլկեցելոցն գոշելոյ.
Առաքեցեր զՄովսէս փրկիչ տան Յակովբու,
Ազատեցեր զՀինն Իսրայէլ ի խիստ կաւոյ։
Զնեղիչ նոցին ընկղմեցեր ի խորս ջրոյ,
Եւ զնեղեալսն ափոփեցեր ի սիւն ամպոյ.
Ըզմանանայն հեղեր ի տիպ քո սուրբ մարմնոյ,
Ըզվիմաբուղխ ջուրն արբուցման հոգւոյդ սրբոյ։
Առեր առ քեզ զմեծն Մովսէս ի մէջ հրոյ,
Ետուր նովաւ ազգի մարդկան զաւրէնս քո։
Մաղթեմ, տէր, լոյծ՝ զհոգիս ի խիստ մեղաց կապոյ,
Քեզ հետեւել յելս վերին կառաւք ամպոյ »։

Եւ կը յաւելու։ « Զմեղաւոր հոգիս Յոհաննէս՝ ըզգրաւղս սուրբ տառիս, եւ զծնաւղսն իմ, եւ զեղբարս իմ զՍմբատն եւ զՎասիլ, եւ զամենայն ազգատոհմս իմ յիշեցէք ով սուրբ ընթերցաւղք եւ տեսաւղք. եւ Տէր զձեզ յիշէ. եւ անուն մի՛ քերէք, զի չար սովորութիւն է. եւ թէ արժանի էք, գրեցէք եւ զձեր անունդ յայլում տեղւոջ » ։

Գ. Ղեւտակաւ. եւ 'ի վերջ գրոցն համառօտ բան չափական.

« Քրիստոս Փրրկիչ աստուածըրդ բան
Աւծեալ մարմնով յեւղ ցընծութեան,
Որ ի պաշտաւն երիցութեան
Առեր ըզտունն Ահարոնեան,
Պաշտել զըստուերն աւրինական
Զփոփոխելին եւ զառաւրեայն.
Ի հասանել այնր վախճան

***

Ասոնք թուականաւ հին և ընտրելագոյն գրչագիրք յէջմիածին. իսկ 'ի մեր Մատենադարանի

Ա. Թուանշանը կրող աստուածաշունչ գրոց օրինակն է բոլորգիր ընտիր մագաղաթեայ քառասուն և հինգ թերթ, և իւրաքանչիւր թերթն՝ տասուերկու թուղթ կամ քսանըչորս էջ. ամէն մէկ էջ 'ի կրկին սիւնակս բաժնուած, և ամէն մէկ սիւնակին վրայ յիսունուիրեք տողք. Երեսունևհինգ թերթն հին կտակարանէն և տասն 'ի նորոյն, միօրինակ գրեալ ճարտար գրչաւ, և 'ի լուսանցսն տեղ տեղ աւելցընելով Սիւմմաքոսի, Ակիւղասայ և Թէոդիտոնի ընթերցուածոց տարբերութիւններն, մանաւանդ 'ի գիրս Թագաւորութեանց: Եւ այսպիսի է դասաւորութիւն մատենից 'ի նմա:

Հնգամատեանն Մովսիսի. Ա. Ծննդոց. յորոյ 'ի կատարածին հետևեալ չափաբերական տողք.

« Աստուած անեղ անմահ և տէր յաւիտենից,
Որ կամեցար և հաստեցեր գոյս յոչնչից.
Ըզմարդն ի դրախտն եդեր զգալեաց տիրել ընաւից՝
Եւ վայելել բաց ի միոյն յամէն փայտից՝
Ըզյանցաւորն եղեալ կենաց քոցն բանից,
Ուղիղ դատմամբ հաներ յաշխարհս այս անբանից.
Այլ հաճեցար որք ի ծննդոց նորին զարմից,
Քեզ մատուցին կըրկին ընծայ հոտ անուշից:
Փոխել զոմանս ի մահացու այս կայանից,
Զայլս պահել ի ջըրով հեղձնուլն համայնից:
Ի կռապաշտել հանուր մարդկան հետ ոչընչից
Երևեցար Աբրահամու մէջ քաղդէից:
Եդիր ըզնա՝ հայր հաւատով քրիստոնէից,
Թէ և մարմնով իցեն յազգաց անթըլփատից:
Ով տէր ընկալ զայս քեզ ընծայ հիւսուած տառից
Ի մեղաւոր ձեռացս ցոյցք հոգւոյս ըղձից:
Յուսով սկըսեալս ի կատարիչդ բոլորից,

խնդրոյ Ֆրանչիսկոսի վարդապետի 'ի Յովհաննիսէ 'ի կարգէ Դոմինիկեանց 'ի Թուին Հայոց ՊԾ (1401) սկիզբն Ծննդոց մինչ Ելից՝ յերկրորդ Թագաւորութեանց չորրորդ. 'ի տեղիս տեղիս պակասեալ և կաղմատեալ» ։

Թ. 157. (ԺԱ). Աստուածաշունչ միջակ բոլորագիր ութածալ, գրեալ 'ի Թուղթ բամբակեայ ըստ խնդրոյ ստացողի գրոցս Յովհաննիսի երանաշնորհ րաբունապետի և տիեզերալոյս վարդապետի 'ի Թուին Հայոց ՋԺԴ (1465). բաց 'ի գրոց Ծննդոց, Ելից, Ղեւտացւոց, երկրորդ Օրինաց, Յեսուայ, Դատաւորաց, Հռութայ, Եսթերայ, Յուդիթայ և Տոբիթայ՝ մնացեալքն պակասին » ։

Թ. 158. (ԺԲ). « Աստուածաշունչ փոքր բոլորագիր ութածալ գրեալ 'ի Թուղթ բամբակի 'ի վայելումն Խարբերդցի Մկրտիչ վարդապետի 'ի Միքայելէ Թոխաթցւոյ, 'ի Թուին Հայոց ՌԿ (1611). ունի զնախադրութիւն Սիրաքայ և զգիրք Սիրաքայ » ։

Թ. 159. (ԺԳ). « Աստուածաշունչ փոքր բոլորագիր քառածալ, գրեալ 'ի Թուղթ բամբակեայ 'ի վայելս տէր Յովասափ քահանայի Արծրունեցւոյ 'ի ժամանակս հայրապետութեան սրբոյ Էջմիածնի տեառն Փիլիպպոսի կաթողիկոսի՝ 'ի Թագաւորութեան տաճկաց սուլթան Իբրահիմի. գրեալ է 'ի քաղաքն Տիգրանակերտ 'ի Թուին Հայոց ՌՁԹ (1640)։ Ի վախճան իւրաքանչիւր գրոց հնոյ կտակարանի ցգիրք Յովսեփայ գրեալ կան ստանաւոր բարոյական խրատուք ըստ մտաց այնց գրոց, որք որպէս նկատին՝ են վաստակք Շնորհալի քերթողին Հայոց » ։

Այսոնցմէ զատ կը նշանակուին 'ի ցուցակին նաև այլք բազմագոյնք, յետին դարուց գրչութիւնք, զորս աւելորդ կը սեպենք մէջ բերել. ինչպէս նաև սուրբ Գրոց մասնական գրչագիրք երեքտասան կամ չորեքտասան դարերու ։

եկին մահմետական զաւրքն 'ի Շամբէն. և առին սի-րով զբերդն Թիլ. և ուխտազանց եղեալ գաշանցն կոտորեցին զորս գտին անդ. և բազումք փախստա-կան եղեալ 'ի Նոցանէ ջրասոյզ եղեւ 'ի մեծ գետն Ջահան »....:

Թ. 154. (Ը). « Աստուածաշունչ փոքր բոլորա-գիր քառածալ, գրեալ 'ի վերայ Թղթոյ բամբակեայ 'ի Թուին Հայոց ՉԾԷ (1308). 'ի սկզբան մատենին են գրեալ Նախադրութիւնք և գլխակարգութիւնք մատենից 'ի Ծննդոց սկսեալ ցվերջն Մակաբայեցւոց, առանց յիշեալ գրեանց, իսկ 'ի Սաղմոսացն սկսանին գրեանքն հանդերձ նախադրութեամբ և գլխակար-գութեամբ իւրովքն »:

Թ. 155. (Թ). « Աստուածաշունչ փոքր բոլորա-գիր քառածալ սկսեալ 'ի Ծննդոց ցԱւետարանսն. գրեալ է յաւետարանայն ցԹուղթ Պաւղոսի առ Հռովմայեցիս 'ի վայելս Յովհաննէս րաբունապետի 'ի յանապատ Նորշինայ, որ Մանուկ սուրբ Նշան կոչեն. գրեալ է 'ի Թղթոյն Պաւղոսի առ Հռովմայե-ցիս ցՀանգիստն Յովհաննու 'ի գաւառին և քաղա-քին Հիզան կոչեցեալ, 'ի հայրապետութեան Կիլի-կեցւոյ Տ. Կարապետի. և 'ի հայրապետութեան Ուշտունեաց որ յԱղթամար (տպ. աղթամար) Կղզի Դաւթի եղբօրն տեառն Զաքարիայի. 'ի Յովհան-նիսէ, Պետրոս աբեղայէ, և Յովհաննիսէ, 'ի Թուին Հայոց ՊԼԹ-ՊԽԹ, (1390-1400): Զկնի Ծննդոց են և կտակք որդւոց Յակովբայ, և պատմութիւն Յով-սեփայ և կնոջ նորա Ասանեթայ, նախադրութիւն Դանիէլի արարեալ Վարդան վարդապետի 'ի Լուսա-ւոր մեկնչաց: Ի վախճան մատենին գտանի և յիշա-տակարան՝ յորմէ առեանի մատեանս գրեալ 'ի ժա-մանակս Թամուր-Լանգի »:

Թ. 156. (Ժ). « Աստուածաշունչ փոքր բոլորա-գիր ութածալ գրեալ 'ի Թուղթ բամբակեայ ըստ

Թ. 153. (Է). «Աստուածաշունչ փոքր բոլորագիր քառածալ գրեալ 'ի վերայ բամբակեայ թղթոյ 'ի վանքն կոչեցեալ Գռներ (տպագիրն վրիպակաւ կը գնէ գանէր) որ մերձ 'ի Բարձրբերդ Կիլիկիոյ 'ի Մարտիրոս վարդապետէ յաշակերտէ Գէորգ վարդապետի Սկեւռացւոյ 'ի թուին Հայոց ՉԾԲ (1303), անթերի »:

Ի վերջ Գ. Թագաւ. «Ես Մարտիրոս սպասաւոր աշակերտս գրոց, ըստ ըղձի և փափաքման սրտի գրեցի զսա 'ի վանքս հռչակելի որ Գռներ կոչի մերձ 'ի Բարձրն կոչեցեալ բերդ. 'ի մեծ թուականիս Հայոց ՉԾԲ, և յամսեանն մայիսի ըստ հռովմայեցւոց անուանց ամսոյս, որ աւր ԺԵ էր սորին ամսոյ. յորում լուաք 'ի նոյն աւուր չար համբաւ. զի տէր երկրիս մերում չոքաւ 'ի Շամըն կոչեցեալ աշխարհ. հանդերձ Մուղուլն կոչեցեալ զաւրաւքն: Եւ ըստ մեղաց մերոց յաղթեալ յանաւրինաց՝ փախըստեայ եղեւ յաշխարհս Բաբելացւոց առ խանն Խազան կոչեցեալ: Եւ աշխարհս մեր յոյժ 'ի տարտարոս անկաւ »:

Ի վերջ Ս. Մնացորդաց. «ԶՄարտիրոս վարդապետ աշակերտ Գէորգայ Սկեւռացւոյ զգրաւղ գրոցս յիշեցէք 'ի Տէր: Ընդ նմին և զվարդապետն իմ և զուսուցիչ զԳէորգ րաբունապետ »:

Ի վերջ Ա. Եզրի. «ԶՄարտիրոս վարդ" և զգրիչ սորա յիշեցէք յաղաւթս ով եղբարք որք հանդիպիք: Գրեցաւ սա 'ի Գռներս, 'ի թուականիս Հայոց յեւթըն հարիւր յիսուն և երկուքն. յուլիս ԻԹ »:

Ի վերջ թղթոյն Յուդայի. «Զմեղապարտ վարդ" Մարտ" աղաչեմ յիշել 'ի տէր Քրիստոս: Գրեցաւ սա 'ի թուականիս ՉԾԳ յամսեանն յուլիս յերկիրս Կիլիկիոյ մերձ 'ի բերդս Բարձր յԱնապատս Խաչատրոյ 'ի վերայ գետոյս Շըըրկայ 'ի քարանձաւ և 'ի նեղ տեղիս, 'ի դառն ժամանակիս, յորում ամեան

տայրն իւր զպարոն Ճուֆրի զքաղցրն, զհեզն, զողորմածն, զաղքատասէրն և զեկեղեցասէրն յիշեսջիք. զի Քրիստոս Աստուած զպարոն Ճուֆրի ընդ իւր սուրբ իշխանացն դասեսցէ. ամէն։ Եւ զմեղաւոր երէցս զԹորոս զգծողս այլ յիշեսջիք Աստուած ողորմեսցի։ Ով մեզ լի սրտիւ Աստուած ողորմի ասէ, Աստուած մեկին հազար իր պատրաստէ»։

Թ. 150. (Դ). «Աստուածաշունչ փոքր բոլորագիր քառածալ ընտիր գրեալ 'ի վերայ մագաղաթի 'ի Ստեփանոս քահանայէ Գոյներ 'ի Թուին Հայոց ՉԽԱ (1292). ունի զբան Աթանասի եպիսկոպոսի Աղեքսանդրացւոյ, և Եպիփանու յաղագս երգոց Սաղմոսարանի։ Ի մատենիս իւրաք ժամանակագրութեան, տօնացոյց, աղօթք և քարոզք ժամերգութեանց, պատարագամատոյց, աղօթք Յովհաննու Ոսկեբերանի 'ի սուրբ Երրորդութիւն, աղօթք 'ի Վարդավառն, տումար. պակասին 'ի սմա Աբդիու, Սիրաքայ և Մանասէի»։

Թ. 151. (Ե). «Աստուածաշունչ փոքր բոլորագիր քառածալ ընտիր, գրեալ 'ի վերայ մագաղաթի 'ի վայելս Հեթմոյ արքային Հայոց. 'ի վախճան մատենին գտանի չափաբերական ծանօթարար բան Հեթում արքային մերոյ յաղագս ստացման մատենիս. 'ի վերջ ոտանաւորի գուցէ գոլով տեղի կնքոյ արքային մերոյ քառանկիւնի ձեւով կտրեալ հանեալ են 'ի բաց. 'ի Թուին Հայոց ՉԽԴ (1292). պակասի Նախագրութիւն Ծննդոց»։

Թ. 152. (Զ). «Աստուածաշունչ փոքր բոլորագիր քառածալ գրեալ 'ի վերայ Թղթոյ ըստ խնդրոյ Ներսէսի ումեմն եպիսկոպոսի 'ի Յովհաննէս քահանայէ 'ի Թուին Հայոց ՉԽԶ (1277). 'ի վերջոյ մատենին գտանի ողջական ոտանաւոր Վարդան վարդապետի. գրեալքն են Թերի և դասաւորութիւնք խառն 'ի խառն»։

Իմ աղբայր ի քեզ անձնի
Որ էր որդի տեառն Հեթմի
Հայոց մեծաց Զամբլայի,
Պարոն Ճուֆրէ անուն կոչի
Եւ էր գիտնու նա գըրգուելի.
Աղքատաց այնէր բարի
Եւ ուսուարացն էր սիրելի,
Կեցաւ ինքն ի յաշխարհս ԼԴ տարի
Փոխեցաւ ի յաշխարհէս ԻԱ ի մայիսի.
Ի թուին Հայոց ԸՃԷ ամի.
Ես Կոստանդինս զայս գրեցի
Որ եմ աղբայր հետ իր զկնի,
Որ եփ իմ աղբայրն ի միտքս ինկնի
Արցունք ին դվայք կու վաթի.
Քրիստոս Աստուած ինձ ողորմի »:

Ի վերջ Միրաքայ. « Զեղկելիս ոգի, զՄիրաքայս գրող և զատաւիս ստացող զմեղապարտ ծառայս Աստուծոյ և ամենայն ծառայիցդ նորա զՅովհաննէս եպիսկոպոս զեղբայր բարեպաշտ արքային Հայոց Հեթմոյ, և զորդիս մեծին Կոստանդեայ, աղաչեմ զվայելողսդ սորա և զժառանգողսդ, և որք լուսաւորիք սոքաւք. յիշել սրտի մտաւք զմեղ ծնաւղաւքն մերովք և համայն ընտանեաւք և երախտաւորաւք, թողութիւն և ողորմութիւն և հանգիստ գտանել 'ի Քրիստոսէ Աստուծոյ, այժմ և յապագային. զի կարաւտ եմք ձերդ բարի յիշման որպէս և Տեառն ողորմութեան » ...:

Ի վերջ Ցայսմաւուրքեան գրոց. « Զմեղաւոր երէցս զԹորոս Ռուբինեանցս յիշեա՛ իմ բարի Պարոն: Ո՛վ սուրբ եղբարք, որք հանդիպիք սմա՝ տեսութեամբ կամ աւրինակելով, յիշեսջիք յաղօթս եւ զստացող աստուածաշնչիս, զիմ քաղցր և բարի Պարոնն և զիշխանաց իշխանն զպարոն Կոստանդին. զի Քրիստոս Աստուած ընդ երկայն աւուրս պահեսցէ զնա. և յետ աստեացս՝ երկնից արքայութեան արժանի արասցէ. ամէն: Եւ զ՚ի Քրիստոս հանգուցեալ եղ-

Թագաւորութեան Հեթմոյ առաջին 'ի Միքայէլ քահանայէ և 'ի Ղրիմեցի Յովհաննիսէ 'ի Թուին Հայոց ՉԲ (?) ՊՉԴ (1253, 1255): Պակասին 'ի սմա Ա և Բ Մնացորդաց, Բ Եզրասայ, Ա Մակաբայեցւոց, Սաղմոսաց, Առակաց, Ժողովողի, Երգերգոց, Իմաստութիւն, Աբդիու, Բարուքայ, Երեմիայ, ողբ Երեմիայ »:

Թ. 149. (Գ). « Աստուածաշունչ միջակ բոլորագիր մեծագիր գրեալ 'ի վերայ Թղթոյ վասն Յովհաննու արքեպիսկոպոսի եղբօր Հեթմոյ արքային Հայոց: Յանկ մատենիս հրամանաւ իշխանաց իշխան Կոստանդնի գրեալ է 'ի Բարսեղ Ռուբինեանցէ, 'ի Թուին Հայոց ՉԺԹ (1270). պակասին 'ի սմա Աբդիու, Բարուքայ, Մանասէի, Թուղթ Կորնթացւոց առ Պաւղոս, Հանգիստ Յովհաննու, երրորդ Թուղթ Յովհաննու » : — Յիշատակարանք են.

Ի վերջ Ծննդոց գրոցն. « Զառաջնորդ տառիս զտէր Յովհաննէս րաբունի զեղբայր Թագաւորին՝ յիշեսջիք 'ի Տէր. և զծնաւղսն նորին ամենայն զարմաւք իւրովք. ընդ նմին և զանպիտան գծողս ԲՂ (Բարսեղ) և զծնաւղսն իմ և զամենայն հաւատացեալս 'ի Քրիստոս » ... :

Ի սկիզբն Ղեւտականին. « Ով սուրբ եղբարք, որք կարդայք և աւրինակէք զաստուածաշունչս՝ յիշեսջիք յաղաւթս ձեր զստացող գրոցս, զիմ քաղցր և բարի պարոնն և զիշխանաց իշխանն, զպարոն Կոստանդինն, զհեզն և զխոնարհն, և զաստուածասէրն և զեկեղեցասէրն, և զքահանայասէրն. զի Քրիստոս Աստուած ընդ երկայն աւուրս պահեսցէ, առողջ հոգւով և մարմնով ... ընդ նմին և զմեղաւոր իրէցս զգծաւղ ցանքերոյս զԹորոս Ռաւբինեանս » ...

Յաւարտ Առակաց գրոց.

« Աստուածածին սուրբ կոյս բարի
Ամէն աշխարհս քենով բարձի.

է, կը բռնադատուինք հիմիկու հիմայ մեր ունեցած ծանօթութեամբք գոհ ըլլալ, նշանակելով նախ զհնագոյնս յօրինակաց որ կը գտնուին 'ի Մատենադարանին Էջմիածնի, որ ամենէն ճոխագոյնն է մեր ճանչցած հայկական գրչագրաց հաւաքմանց մէջ: Կը քաղենք 'ի տպագիր ցուցակէն Կարինեան բանասիրի[1], ուր տեղ տեղ հրատարակչին կողմանէ արուած տեղեկութիւնք պակասաւոր և սխալագիր կը թուին, և չենք տարակուսիր որ անոր տպագրութենէն 'ի վեր շատ յաւելուածներ եղած ըլլան նաև օրինակաց աստուածաշունչ գրոց: Ընթերցողը պիտի տեսնէ որ հոս ակնարկուածներուն մէջ ամենէն հնագոյնք՝ չեն յառաջ քան զերկոտասաներորդ դար, ուր ութ և աւելի դարու կը կանխէ ժամանակ թարգմանութեանն:

Թիւ գրչ. 147. (Ա). « Աստուածաշունչ փոքր բոլորագիր քառածալ գրեալ 'ի վերայ մագաղաթի 'ի ժամանակս թագաւորութեան Հեթմոյ որդւոյ Լեւոնի նախ (?) 'ի գաւառն Կիլիկիոյ 'ի Մովսիսէ և 'ի Ներսիսէ 'ի թուին Հայոց Ո (1151): Ունի զխորհրդածութիւնս երանելոյն Եպիփանու եպիսկոպոսի Կիպրացւոյ յաղագս երգոց Սաղմոսարանի. պակասին մարգարէութիւն Աբդիու, Բարուքայ, Յայտնութիւն և Հանգիստ Յովհաննու, Սիրաքայ, Մանասէի, և աղերս Եւթաղի »:

Թ. 148. (Բ). « Աստուածաշունչ փոքր բոլորագիր քառածալ գրեալ 'ի վրայ թղթոյ 'ի ժամանակս

[1] Մայր ցուցակ ձեռագիր մատենից Գրադարանի սրբոյ աթոռոյն Էջմիածնի, տպագրեալ հրամանաւ տեառն Մատթէոսի ընդհանրական հայրապետին ամենայն Հայոց. ծախուք 'ի Կարնոյ գաղթական Յակոբայ վարժապետի Կարինեանց յօգուտ դպրոցի ժառանգաւորաց սրբոյ Էջմիածնի, 'ի 1863 ամի, 'ի Թիփլիզ, 'ի տպարանի Ներսիսեան ազգային հոգեւոր դպրոցի Հայոց:

գեղը հնութեամբն ալ, ոմանք 'ի նոցանէ վերաբերելով իսկ հինգերորդ և չորրորդ դարերու, իրարմէ կը զանազանուին և յընկալեալ օրինակաց աստուածաշունչ գրոց ոչ գոյզն տարբերութիւններ կը ներկայացընեն ։ Իսկ որ աւելի հետաքննականն է մեզի համար՝ հայերէն օրինակք ալ մերթ ատոնցմէ մէկուն և մերթ միւսին համաձայն կը զուգընթանան, և թէպէտ չունին անոնց հնութիւնը 'ի գրչութեան, բայց յաճախ աւելի հաւատարմագոյն ընթերցուածներ կ'ամփոփեն, որով մեծապէս կ'առաւելու մեր թարգմանութեան և անոր վրայ երկասիրողաց յարգը՝ նաև եւրոպական իմաստուն և լուսամիտ բանասիրութեան քով ։ Բայց այս խնդրոյն ձեռք չզարկած, մէջ բերենք նախ հայերէն աստուածաշունչ գրոց ինչուան առ մեզ հասած գլխաւոր օրինակներու հնութիւնն, նախ իրենց ամբողջութեան մէջ, և յետոյ նոր կտակարանի գրչագրաց առանձինն ։

## Է. ՀՆԱԳՈՅՆ ԳՐՉԱԳԻՐՔ Ս. ԳՐՈՑ

### Ի ՀԱՅ ԼԵԶՈՒ

---

*Գրչագիրք 'ի Մատենադարանին որ յէջմիածին ։ — Ի Մատենադարանի Մխիթարեանց 'ի Ս. Ղազար վենետիկոյ ։ — Ուրիշ տեղուանք գտնուած կամ յիշատակուած հին օրինակք աստուածաշունչ գրոց ։*

Փափաքելի էր մեզ և անշուշտ մեծապէս հաճոյական ամէն բանասիրաց յայսմ մասին աւելի մանր և լիակատար տեղեկութիւններ ունենալ և հաղորդել ։ Համոզուած թէ լաւագոյնը՝ յաճախ լաւին արգելք

քանչիւր աւետարանաց. Նոյնպէս նաև զԱմմոնեան բաժանմունս, բայց ոչ և զԹուագրութիւն Եւսեբեան կանոնաց, որ կրնան նաև առ հնութեան ժամանակաց անհետացած ըլլալ, որովհետև սովորութիւն էր կարմրագեղով նշանակել զայնոսիկ, և որք հեշտեաւ կրնան ջնջուիլ։ Ամենևին բաժանմունք մը չիգտնուելով 'ի Գործս և յառաքելական Թուղթս, հաւանական կը թուի որ գրութիւնն եղած ըլլայ յառաջ քան զԵւթաղ, կամ գէթ իրեն ժամանակակից։ Կրկնագիր ձեռագիր ըլլալուն, հազիւ նոր կըտակարանին գրեթէ երեք մասին մէկը կը բովանդակէ յինքեան. որով կը պակասին 'ի նմա երկրորդ կաթուղիկեայն սրբոյն Յովհաննու, Պաւղոսի երկրորդն առ Թեսաղոնիկեցիս, երկրորդն առ Տիմոթէոս, և Թուղթն առ Տիտոս։ Կը պակասին դարձեալ երեսունևեօթն գլուխք յաւետարանաց, տասն յառաքելական Գործոց, երեսունևութ 'ի Թուղթս և ութ գլուխք 'ի Յայտնութենէն Յովհաննու. որով յերկու հարիւր յիսուն գլխոց նորոյ կըտակին կը պակասին հարիւր չորս գլուխք։

***

Ե. Բասիլեան գրչագիր ութերորդ դարու. Հռովմայ մօտ 'ի Կրօթթա Ֆերրաթա Բասիլեան յունածէս կրօնաւորաց մատենադարանին մէջ գտնուած ըլլալուն համար այսպէս կոչուած. իսկ հիմա կը պահուի 'ի Վատիկանեան գրատան։

Ասոնք են գլխաւորք և հնագոյն գրչագիրք սուրբ Գրոց, 'ի յոյն լեզու, առանց յիշելու և զայլս որ առաջիններուն ժամանակի հնութիւնն չունենալնուն, չունին հարկաւ հաւասար կարևորութիւն, ուստի և աւելորդ յիշատակել և զնոսա աստէն։ Մտագրութեան գլխաւոր կէտ մը այն է, որ իրենց պատկա-

Չկան 'ի նմա ոչ Ամմոնեան բաժանմունք, ոչ Եւսեբեան կանոնք և ոչ Եւթաղի ստիքերոնք. ոչ գլուխք, ոչ վերնագիրք կամ տիտղոսք. իսկ 'ի Նոր կտակարանս նոր բաժանմունք մը ունի, որ ուրիշ հին գրչագրաց մէջ չեն տեսնուիր, բաց 'ի Զակինթեան կոչուած օրինակէն: — Վատիկանեան օրինակը շատ տեղ կը տարբերի յընկալեալ և 'ի վաւերացեալ օրինակէն, մեծ խնամքով գրուած՝ ըստ գեղագրական տեսութեան, բայց ընդհանրապէս աւելի սխալագիր, զեղչմամբք, կրկնութեամբք՝ որոց թիւը՝ ամենամանր խուզարկութեամբ և խղճագատութեամբ գրեթէ երեքհարիւրի կը հանեն քննադատք:

***

Դ. *Եփրեմեան օրինակ* (Codex Ephræmitanus), գրչագիր հինգերորդ դարու, յազգային Մատենադարանին Փարիզու. և այս անունը կրելուն պատճառն է որ կրկնագիր ձեռագիր մ'է, աստուածաշունչ գրոց հին և Նոր կտակարանին վրայ երկրորդ գրչութիւն ունենալով զմատենագրութիւնս սրբոյն Եփրեմի: Փոխադրեալ է յարևելից 'ի ձեռն Անդրէի Յովհաննու Լասքարիս, և նախ գրուած 'ի Մատենադարանն Մէտիչի 'ի Փլորենտիա Իտալիոյ, ուստի բերուած 'ի Փարիզ նոյն աղխիւ տոհմէն հռչականուն Կատարինէ Թագուհւոյն հետ († 1589): Բաղդատուած ու համեմատուած ընդ այլոց գրչագրաց յայլ և այլ հմտից, վերջին անգամ հրատարակեցաւ 'ի Դիշէնտորֆէ. Նոր կտակարանին մասն 'ի 1843, իսկ հինն երկու տարի ետքը: Առանց բաժանման 'ի սիւնակս, տողերն միայար գրուած են, ընդհանրապէս քառասունևմէկ, բայց մերթ ալ քառասունըվեցէն մինչև վաթսուն տող ամէն մէկ էջին վրայ: Ունի ըզգլուխս, զտիտղոսս կամ զվերնագիրս 'ի գլուխ իւրա-

տեսնուին գլխակարգութիւնք ( κεφάλαια )։ Գրչութիւնն չէ յառաջքան զվախճանել սրբոյն Աթանասի, բայց և ոչ յետ մահուան Եւթաղի. որոյ ձեռքով 458-490 թուականներուն եղած բաժանմունք յաստուածաշունչ գիրս՝ անմիջապէս ընդունելի ըլլալով սկսան գործածուիլ։ Զհին կտակարանն ըստ Աղեքսանդրեան օրինակի տպագրութեամբ հրատարակեց նախ Կրապ ( 1707-1720 ), յետոյ Պապեր (1816-1828). իսկ զնորն Վոյիդ (Woide) 'ի 1786 հմտական տեղեկութիւններով. և Գուբըր (1860) նորէն բաղդատեց ընդ գրչագրին և հրատարակեց։

Հին գրչագրաց մէջ իր ընթերցուածներով ամենէն աւելի համաձայն է Աղեքսանդրեանն ընդ ընկալեալ օրինակի աստուածաշունչ գրոց, թէպէտ և ունենալով իսկ ոչ սակաւ տարբերութիւններ։

***

Գ. Վատիկանեան օրինակ, գրեալ 'ի չորրորդ դարու, և որ կը գտնուի համանուն քահանայապետական Մատենադարանին մէջ 'ի Հռովմ, և ստացուած է հնգետասաներորդ դարու վերջերն։ Նորագոյն և ընտրելագոյն հրատարակութիւն գրչագրիս եղած է 'ի Հռովմ 'ի ձեռն Վերչելլօնէ, Գոզզա և Ֆապիանի հմուտ եկեղեցականաց. իսկ անոր վրայ աշխատողք բազմաթիւք են, սկսեալ յԵրասմոսէ, 'ի Միլլէ, 'ի Պենթլէյէ մինչև 'ի Դրէկէլ և 'ի Դիշէնտորֆ։ Եօթնհարիւր յիսունևինն թերթք են, յորոց հարիւր քառասունուերկու նոր կտակարանն ամփոփողք, բաց 'ի Յայտնութեան գրքէն և Պաւղոսի առ Հեբրայեցիս թղթոյն վերջին մասէն, սկսեալ իններորդ գլխոյն 14դ համարէն, և 'ի չորից վերջին թղթոց կաթուղիկեայց։ Ամէն էջք երեք սիւնակաց բաժնուած, բաց 'ի նորոց կտակարանաց որ միայար տողք են։

ամբողջ տողերով գրուած են՝ առանց բաժանման 'ի սիւնակս։ Պաւղոսի Թուղթն առ Հեբրայեցիս զետեղուած է յետ առ երկրորդ Թեսաղոնիկեցիս Թըղթոյն. իսկ բովանդակ Թուղթք առաքելոյս՝ յառաջագաս են քան զԳործս առաքելոց. 'ի լուսանցսն կը տեսնուին Ամմոնեան կոչուած բաժանմունք և Եւսեբեան կանոնաց Թուանշանք, ձեռագրին ժամանակակից անձէ մը, կամ նոյն իսկ գրչին ձեռօք։ Բաց յընդօրինակողէն, Դիշէնտորֆ տասուերկու իրարմէ տարբեր ուղղագրողաց սրբագրութիւններ ալ նկատած է, յորոց չորք՝ չորրորդ, վեցերորդ և եօթներորդ դարուց։

***

Բ. Աղեքսանդրեան օրինակ. Հինգերորդ դարու գրչագիր մը՝ զոր 'ի 1628 պատրիարքն յոյն Կիւրեղ Լուկար՝ Կարոլոս Անգղիոյ Թագաւորին ընծայած է. իսկ հիմա կը գտնուի 'ի Բրիտանական մուսէոնին։ Աղէքսանդրեան օրինակն հռչականուն եղած է նաև այնու՝ վասն զի ամենէն յառաջ 'ի նմա գտնուած է սրբոյն Կղեմայ հռովմայեցւոյ Թուղթն առ Կորընթացիս։ Եօթնհարիւր եօթանասունուիրեք Թերթերէ կը բաղկանայ գրչագիրն, յորոց վեցհարիւր երեսուն Թերթ հին կտակարանին, և միայն հարիւր երեսուն և չորս նորոյն։ Կը պակասին 'ի նմա Մատթէի աւետարանէն ԻԴ գլխոյն 6դ համարը. 'ի վեցերորդ գլխոյ Յովհաննու համարն 50դ և յութերորդէն 52դ։ Հաւանական կ'երևնայ թէ չկայր 'ի նմա շնացեալ կնոջ պատմութիւնն։ Առ Կորնթացիս Թըղթէն 15դ համար չորրորդ գլխոյն, և 6դ երկոտասաներորդին։ Կան 'ի նմա Ամմոնի Աղեքսանդրացւոյ բաժանմունք, բայց ոչ Եւթաղեանքն, և կանոնք Եւսեբեայ։ Ամենէն աւելի հին գրչագիրն է՝ յորում կը

դէնկսի արքիմանտրիդին ձեռքով ու ջանքով փոխադրուած էին 'ի Ռուսաստան։ Արդէն իր խարդախած ձեռագիրներովը ուսումնական աշխարհի շատ իսկ ծանօթ յոյն բաղդախնդիրն Սիմոնիդէս՝ ուզեց Դիշէնտորֆի գիւտին փառքն աղօտացընել, իրեն վերագրելով այդ աստուածաշունչ գրոց հին ու ամբողջ գաղափարի մը գիւտը՝ իբր երեսուն տարի յառաջ քան զիմաստուն գերմանացին։ Սակայն իր այս խաբէութեանը մէջ ալ չյաջողեցաւ։

Այլևայլ ականաւոր անձինք, մեծարոյք և պատկառելիք իրենց սրբազան և հնախօս գիտութեամբ, զբաղեցան Դիշէնտորֆի այս կարևոր գիւտով, և բազմաթիւ հետաքննական երկասիրութիւնք լոյս տեսան, քննելով, բաղդատելով ու պարտուպատշաճ յարգանքն ընծայելով գերմանացի խուզարկուին ջանքով եղած գիւտին և անոր հրատարակութեան։ Ասոնց մէջ ամենէն աւելի նշանաւորք և հետաքննականք կը սեպուին Notitia editionis Codicis Sinaitici. – Bibliorum Codex 'Sinaiticus Petropolitanus, 1862. – Novum Testamentum Sinaiticum, 1863, 65 և 69. Տպագրութեան արժանաւոր երկասիրութիւն մ'ալ սոյն նկատմամբ է հետևեալը. F. H. Scrivener. A full Collation of the Codex Sinaiticus, Cambridge, 1864.

Եօթնհարիւր յիսուն թերթերէն կամ 'ի հազար չորս հարիւր վաթսունուիրեք իջից, զորս ունէր Սինայական գրչագիրն իր ամբողջութեան մէջ, երեքհարիւր ութսուն և ութ թերթք հասած են առ մեզ անկորուստ, անոնց մէջ սեպելով նաև Փրեդրիկ Աւկուսթանոսի գտած քառասունուիրեք թերթերն. երկու հարիւր քառասունուերկու թերթք 'ի հին կտակարանաց և հարիւր քառասուննեօթն թերթք 'ի նորոյն. ամէն մէկ էջին վրայ չորսական սիւնակք, բաց 'ի հին կտակարանի քանի մը գրքերէն որոնք

ներուն մէջ մասնաւոր մատգրութեան արժանաւորք էն գլխաւորաբար Սինայականն (Sinaïtique), Աղեքսանդրեանն (Codex d'Aléxandrie), Վատիկանեանն (Codex du Vatican), Եփրեմեանն, Բազիլեանն, և այլն։

Ա. **Սինայականն**, (գրչութիւն չորրորդ դարու) կը գտնուի 'ի կայսերական Մատենադարանին որ 'ի Փեթրպուրկ Ռուսիոյ, և կ'ամփոփէ յինքեան զմեծ մասն Հնոյ կտակին, զնորն ամբողջ, Բառնաբայ առաքելոյ ընծայուած Թուղթը, և զառաջին մասն Հովիւ գրոց Հերմեայ։ Այս վաղեմի և պատուական գրչագիրն գտնուեցաւ յամի 1844, Դիշէնտորֆ անուանի գերմանացի հնախուզին ձեռքով 'ի վանս սրբուհւոյն Կատարինեայ որ 'ի Սինա լերին. և որուն յարգին ու ազնուութեան անտեղեակ կրօնաւորք' կը գործածէին ուրիշ թղթոց ու մագաղաթներու հետ, ինչպէս կ'աւանդէ ականատես գտնողն. իրենց վառարանին կրակ տալու։ Դիշէնտորֆ առանց մեծ դըժուարութեան կրցաւ սատնալ' հրոյ ճարակ պատրաստուած այդ թերթերը' և ապրեցընել սրբազան գիտութեան և ուսմանց ցաւալի կորուստէ մը, որուն արդէն զոհ եղած էին ուրիշ թերթերն։ Յաջողեցաւ գաղափարել ուրիշ հատուածներ ալ, և զորս հրատարակեց 'ի 1855 Սրբազան անտիպ յիշատակարանք (Monumenta Sacra inedita) կոչուած երկասիրութեան մէջ։ Իսկ Աստուածաշունչ գրքին ամփոփող քառասուն և հինգ թերթերն, — վասն զի այնչափը միայն կրցաւ ապրեցընել, — տպագրութեամբ հրատարակուեցան 'ի 1846։ Երկրորդ ճանապարհորդութեանն առթիւ' զոր նոյն գիտնական գերմանացին ըրաւ 'ի 1859, Ռուսաց կայսեր հովանաւորութեամբն յաջողեցաւ այս պատուական յիշատակարանին դեռ անկորուստ մնացած ուրիշ մասունք ալ ձեռք բերել. Ծննդոց ու Թուոց գրքերէն այլ և այլ հատուածներ, որ 'ի 1845 Պորփիւր Ուզ-

## Զ. ՀՆԱԳՈՅՆ ՕՐԻՆԱԿՔ Ս. ԳՐՈՑ

### Ի ՅՈՅՆ ԼԵԶՈՒԻ

---

*Ա. Սինայական կոչուածը։ — Բ. Աղեքսանդրեան օրինակ։ — Գ. Վատիկանեանը։ — Դ. Եփրեմեան գրչագիր։ — Ե. Բասիլեան գրչագիր։ — Ուրիշ գրչագիրք 'ի յոյն բարբառ։*

Ուրիշ տեղ առիթ ունեցած ենք յիշատակելու թէ ինչո՛ւ աստուածաշունչ գրոց գրչագիրք առ մեզ՝ ոչ այնչափ բազմաթիւք են համեմատութեամբ, բայց 'ի Նորոց կտակարանաց և մանաւանդ յաւետարանաց, և ոչ այնչափ հին։ Մեր քաղաքական պատմութեան բազմապատիկ և բազմագլխի արկածք բռնադատեր են զնախնիս ոչ միայն իրենց հետ մինչև հեռաւոր երկիրներ գաղթեցընել զանոնք, այլ շատ անգամ ծածկել և ընդ հողով ամփոփել՝ իրենց սրտին և հաւատոցն ամենէն աւելի մերձաւոր և սիրելագոյն այդ գրքերն, որպէս զի չըլլայ թէ անոնց յարգն ու արժանաւորութիւնն չճանչցողաց ձեռքն իյնալով՝ արհամարհուին կամ նախատուին, զոր իրաւամբ նախատինք կը սեպէին կրօնից սրբութեան։ Դեռ ինչուան մեր օրերը կը լսենք ու կը կարդանք, որ աւերակ մնացած եկեղեցեաց հիմանց տակ ու որմոց մէջ թաղուած մնացած կը յայտնուին այդ սուրբ գիրք։

Որչափ ալ այս պակասը ուրիշ հին ազգաց քով ալ հանդիպինք, բայց անոնց մէջ կը գտնուին նաև մերիններէն հնագոյն թուական կրող աստուածաշունչ մատեանք։ Յոյն լեզուով և գրչութեամբ գտնուած

գործոյն հանգամանք, մինչև գոգցես՝ բառ առ բառ և ոճ առ ոճ պատշաճեցուցեալ, ըստ որում առ այն ոչ սակաւ օժանդակէր, նաև մերձաւորութիւն հայկականս սովորութեան ասից ընդ հելլենականին, որպէս՝ 'ի բարդութիւնս անուանց և 'ի շարամանութիւնս ձայնից, և այլն ևս։ Այլ և 'ի վերայ այսորիկ՝ չքնաղ և վայելչաբան յօրինուածով ընտիր հայկաբանութեամբ՝ այնպէս անվթար յերիւրեցին 'ի մերս հայրենի բարբառ, մինչև համարձակիմ ասել. զի եթէ 'ի նմա զբառ ինչ կամ զգրախեց մի կամիցի ոք փոփոխել, կամ յաւելուլ և կամ նուազեցուցանել, արդարև չմարթի առանց խանգարելոյ զսքանչելի ներդաշնակութիւն շարագրութեանն յայն ձեռնամերձ լինել։ Ասացելոյս ճշմարտութեան 'ի վերայ հասեալ վկայեցին նաև այնոքիկ 'ի հնախնդիր հմտացելոց անտի այլալեզու Եւրոպացւոց, որոց միանգամ դէպ եղեւ ըստ կարի տեղեկանալ հայկականս դպրութեան. և գոյզն մի առեալ զճաշակ մերումս թարգմանութեան, Հաւատարիմ աւանդ քաղուցեալ 'ի հայկական բարբառ համարեցան զնա. և սքանչացեալ Դշխոյ համօրէն թարգմանութեանց սուրբ գրոց իշխեցին կարդալ զնոյն, 'ի սակս պէսպէս մասանց կատարելութեանցն »։

ստոյգ օրինակ գրոց։ Զոր և պատմելով Կորիւն ասէ․ Հաստատուն օրինակօք ստուգաճառուք գրոցն... գային երևելով յաշխարհին Հայոց։ Ապաքէն 'ի պատմութենէ Թարգմանութեան սուրբ գրոց առ մեզ... գրեթէ աներկբայ ունիմք իմաստասիրել՝ լինելոյ այնմ 'ի հաւատարմագունէն 'ի հելլենական գաղափարս, որ 'ի հինգերորդ դարու անդ նախամեծար յածէր 'ի Թագաւորեալ քաղաքին, յոյր սակս Խորենացին և Կորիւն կոչեն զնա ստոյգ և հաստատուն օրինակ։ Այլ եթէ սոյն այս էր ածանցեալն 'ի վեցիջեան օրինակէ անտի Որոգինեայ... իբր ակներեւ հաւաստեն մեզ հետք որոգինեան աստեղանշանացն և բրդաձևաց՝ որ 'ի գրչագիրս մեր երևին այսօր․ ըստ որում իմանամք զգուշութեամբ նշանակեալ 'ի Թարգմանչաց անտի մերոց 'ի հայկականս՝ որպէս զիարդ և զատին 'ի հելլենական գաղափարի իւրեանց... Թէպէտ և 'ի վերայ այսր ամենայնի անտեղի էր մեզ կարծել, եթէ այնչափ և այնոքիկ միայն՝ զորս ըստ տեղեաց տեղեաց նշմարեմք 'ի գրչագիրս մեր, իցեն որոգինեան նշանագրութիւնք ճշգրտիւ գրոշմեալք։ Քանզի ոչ միայն 'ի հայկական մատեանս մեր, այլ և 'ի նոյն 'ի հելլենականն՝ օրինակաց յօրինակս փոխագրեալ 'ի միջոցս բազում դարուց՝ 'ի պակասութենէ աշալուրջ խնամոց գրչաց, յոլովս այլայլեցան այն նշանք... որով ընդ երկբայութեամբ անկանին նաև նշանագրութիւնքն այնոքիկ՝ որ 'ի հելլենական գըրչագիրս երևին այսօր։ ...

« Երանելի Թարգմանիչք մեր քաջ հմտացեալք և 'ի հելլենականն, որպէս է տեսանել յարդեանց վաստակոց նոցա, զայսպիսի ընտրելագոյն գաղափար յանդիման ունելով, այնուհետև փոյթ յանձին կալան յեղուլ զայն 'ի հայկականս բարբառ՝ գլխովին խնամով և զգուշութեամբ ըստ ճիշդ կանոնաց հաւատարմութեան, զոր օրինակ պահանջէր կարեւոր

ջանքով և փութով մթերեալ ուսմանց և հմտութեանց հաղորդ ընել զլրութիւն իրենց սիրելի ազգին։ Եւ ինչպէս պատշաճը կը պահանջէր, Սահակ և Մեսրովպ գրին անոնց առջև սուրբ Գիրքը. հետերնին միաբան աշխատելով՝ ընծայել հայկական ընտիր ու աննման Թարգմանութիւնը, որ երեքտասան երկար դարերէ 'ի վեր իրաւամբք գլխաւորագոյն պարծանքը սեպուած է հայ մատենագրութեան։

Այսպէս ահաւասիկ 'ի գլուխ ելաւ երկրորդ և կատարեալ Թարգմանութիւն Գրոց սրբոց 'ի հայ լեզու, 'ի Կոստանդնուպոլսոյ բերուած ընտիր օրինակաց վրայ։

Հոս մտադիւր կուտանք խօսքը՝ իրենց այս անզուգական երկասիրութեան առաջին հաւատարիմ հրատարակող տպագրին «ըստ ճիշտ և անվթար օրինակի գրչագրաց Նախնեաց» Զոհրապեան Յովհ. վարդապետի.

«Ի խնամոց Բարձրելոյն առ հինգերորդ դարու բարգաւաճեալ ուսման իմաստից 'ի մերումս հայաստան աշխարհի, սատարութեամբ ճառագայթաւէտ լուսաւորաց ազգիս՝ սրբոցն Սահակայ և Մեսրոպայ, առաջին փոյթ եղև նոցա բազմաշխատ հայթհայթանօք յօրինուած գրոյ հայկականս բարբառոյ, առ 'ի զԹարգմանութիւն աստուածային մատենից անսայթաք կատարելոյ, որպէս ցուցանէ պատմութիւնն։ Յայն սակս 'ի ձեռնարկել նոցին երկրորդ անգամ կատարելագոյն Թարգմանութեան 'ի հելլենականն բարբառոյ, 'ի բաց թողեալ զառաջինն զոր սկսեալն էին առնել յասորի օրինակաց. իբրև դէպ եղև նմին երբ 'ի Թագաւորեալ քաղաքն Կոստանդնուպոլիս առաքել զաշակերտս իւրեանց 'ի խնդիր ընտրելագոյն հելլենական գաղափարի, 'ի Մաքսիմիանոսէ պատրիարքէ ժամանակին աւանդեցաւ 'ի ձեռս մերոց դեսպանաց, ըստ գրելոյ Խորենացւոյն, (Գ. ԿԳ)

րերը, իրենց ու բովանդակ հայրենեաց փափաքելի գանձը աւանդելով. — զստոյգ և զհաստատուն օրինակս աստուածաշունչ գրոց. և երանելի Թարգմանիչք՝ հասած իրենց նպատակին ու վախճանին, հոգեզուարճ ու անպատում ուրախութեամբ կը դառնային 'ի ցանկալի հայրենիսն, առ բազմերախտ դաստիարակս, յորոց մարմնով միայն անջատուած զատուած առ ժամանակ մի, անոնց անձկաւն ու սիրով կը տոչորէին:

Քանի՜ հոգեզմայլ ու գորովալիր այն խանդաղատական ողջագուրանք, ու որպիսի՜ երկնապարգև օրհնութիւն մեր հայրենեաց՝ այն փոխադարձ գրկախառնութեանց և երկուստեք թափուած բարերար և արգասաւոր արտասուաց մէջ. երբ դաստիարակք կը հանդիպին իրենց սիրելի աշակերտաց բազմակարօտ կրկին տեսութեան. որոնք գիտցեր էին մեծապէս օգտակար ընել այն երկար դեգերանքն, զարդարելով իրենց միտքն ու հոգին ամենապատիկ ուսմամբք և նորանոր գիտութեամբք, և առաւելով 'ի ներվարժմունս յունական լեզուի և դպրութեան:

## Ե. ԵՐԿՐՈՐԴ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ Ս. ԳՐՈՑ

### Ի ՅՈՒՆԱԿԱՆԷ

---

*Թարգմանչաց դարձը 'ի Բիւզանդիոնէ: — Իրենց հետ բերուած ստոյգ և հաստատուն օրինակք աստուածաշունչ տառից: — Երկրորդ թարգմանութիւն և անոր հաւատարմութիւնը:*

Այնուհետև թէ՛ վարժողաց և թէ՛ վարժեցելոց միակ նպատակն պիտի ըլլար այնչափ ու այնպիսի

դեռս հաճելիք, հարցասէրք, բանասէրք, ընթերցասէրք, ուսումնասէրք, տքնասէրք, ժրասէրք, երկասէրք. և այսպէս ջանային, արիանային, խիզախէին, զօրանային, հանդիսանային. պատրաստելով, կռուելով, ժողովելով, յօդելով, բարդելով բեռինս մեծամեծս և դժուարակիրս, զգրեանց բազմութիւնս և զուսումն իմաստութեան. բազմաց փափաքելիս՝ բաղձալիս, ցանկալիս, հեշտալիս, սիրելիս »:

***

Հասան յերիցագոյն Թարգմանչաց ոմանք 'ի Բիւզանդիոն, զորս Սահակ և Մեսրովպ սահմաներ էին առ գործն դիտեալ. մանաւանդ թէ անոնց ժամանելէն յառաջ՝ այլք յընկերակցաց նոցա՝ որ 'ի վարդապետացն զրկուեր էին յԵդեսիա, աւելի իրենց երիտասարդական եռանդեան՝ քան պարտուց ձայնին անսալով, և կասկածանօք և 'ի համբաւուց ուստեք տեղեկանալով թէ զայլս յաշակերտակցաց որոշեր էն երթալ 'ի կայսերական քաղաքն, առանց իրենց վարդապետաց նախընթաց հաւանութիւնն առնլոյ՝ փութացին հանել 'ի գլուխ զգործն հաւատացեալ նոցա, և լռելեայն անցան գնացին 'ի Բիւզանդիոն: Ասոնք էին Յովսէփ և Եզնիկ: Նախանձեցան Ղեւոնդ և Կորիւն. և նոքա ալ իրենց կողմանէ գնացին 'ի Բիւզանդիոն. այսպէս փութաջան և կանխաժամն երեւնալով 'ի քաղաքին՝ յառաջ քան զՅովհան և զԱրձան՝ զսահմանեալսն 'ի սրբոյն Սահակայ, « որոց յուլաբար ուղեւորեալ և ծուլաբար գեգերեալ 'ի Կեսարիայ » ուր ուրեմն հասին 'ի Կոստանդնուպոլիս:

Ծիրանածին Թագաւորն Թէոդոս և պատրիարքն Մաքսիմինոս՝ արքայաշուք պատուով ընդունեցան այդ ամենայն սիրոյ և մեծարանաց արժանաւոր հիւ-

փաքը, փութալ 'ի կայսերական քաղաքն, որուն
հռչակն մեծ՝ գրգիռ մ'էր իրենց երիտասարդ աշ-
խուժին և եռանդեան. և թէ որպիսի յօժարու-
թեամբ այդ ուղեգնացութիւնն կ'ընէին, հնութեամ-
բը ու մատենագրական ոճով ոչ աննշան գրուածք
մը՝ քերթողական բացատրութեամբ կը նկարագրէ.
« Մերքս ամենեքեան գումարէին հանդերձէին կազ-
մէին, պատրաստէին, յուղի անկանէին, երկայնաձիգ
ճանապարհորդէին, 'ի ծովս ընթանային, 'ի թեւս
թեթեւս թռչէին, յերիվարս փայտակերտս ելա-
նէին, զերասանակս լայնալանջս ըմբռնէին, զխարա-
զանս օդապարածս յածէին, 'ի սաստանոտ դաշտս ան-
հաստատս արշաւէին, զմահ քան զկեանս մերձ ըն-
տրէին, աներեւոյթ նպատակի ուշ ունէին. զորոց
զկնի բազումք յիւրաքանչիւր դարս և 'ի ժամանակս
հանդիսանային, նախանձաւոր գործեաց բարեաց
լինելով, և 'ի վաստակս և 'ի ջանս պատրաստելով զան-
ձինս ժրանային՝ աքնէին, աշխատէին, հարցասէր լի-
նէին ուսանելով, կրթելով վարժելով վաստակելով,
պատրաստելով զանձինս 'ի յերկս օգտակարս, և 'ի
գործս շահաւէտս. ոմանք զտառից գծագրութիւնս
շահաւորեալ, ոմանք զիմաստս հաւաքեալ, զուսում-
նականն, զբնաբանականն, զերկրաչափականն, զհա-
մարողականն, զերաժշտականն, զաստեղաբաշխա-
կանն, զքերականն և զքերթողականն, զգործնականն և
զտեսական զիմաստասիրութիւն և զմասունս նոցա
որք են թուով երկոտասան: Ոմանց հաւասարէին գի-
տութեամբ. քան զոմանս վեհագոյնք երևէին, ո-
մանց զարմանալիք թուէին, ոմանց բաղձալիք լինէին,
ժրութեամբ, ուշիմութեամբ, իմաստութեամբ,
խոհեմութեամբ, ուսումնասիրութեամբ, գիտու-
թեամբ, բանագիտակութեամբ: Ընդ ոմանս դասէին
քննութեամբ, զոմանս պատասխանւոյ արժանի ոչ
համարէին, առ ընկերակիցս գովելիք, առ վարդա-

երբ տեսնէն Հայոց և Յունաց իրարու հետ սերտ միաւորութիւնը։ Սրբոյն Սահակայ աշակերտաց ապագայ յաջողութիւնն 'ի Բիւզանդիոն և այլուր՝ Մեսրովպայ նախընթացաբար այն կողմերն երևնալն ու ամենուն սիրտը գրաւելն էր. որ և անտարակոյս խօսեցաւ կարգագրեց անոնց առաքման գործը, հասկըցուց նպատակն, ու պէտք եղած վստահութիւնն տալով և ընդունելով, երբ դարձաւ միւսանգամ առ հայրապետն Սահակ, երկուքին միանգամայն փութացին 'ի գործ դնել իրենց մտաց խորհուրդը։

Զոմանս յաշակերտացն յուղարկեցին նախ յԵդեսիա, որ արդէն նշանաւոր էր՝ իբրու քրիստոնեայ-ասորի ուսմանց և գրաւորական շարժման կեդրոն մը, և որ վերջին անգամ մ'ալ պայծառագոյն կը փայլէր յայսմ 'ի հինգերորդ և մասամբ նաև 'ի վեցերորդ դարու։ Բայց մեզի ուրիշ կարևորագոյն պատճառ մ'ալ կուտան՝ առաջին Թարգմանչաց հոն ղրկուելուն. «Դէպ լինէր, կ'ըսէ Կորիւն, եղբարս երկուս յաշակերտացն առաքել 'ի կողմանս Ասորոց 'ի քաղաքն Եդեսացւոց ... զի յասորական բարբառոյն՝ զնոցին հնոցն սրբոց զաւանդութիւնս՝ հայերէն գրեալս դարձուսցեն»։ Եւ կը յաւելու թէ «Թարգմանչացն (որ էին Յովսէփ և Եզնիկ) հասեալ ուր առաքեցանն, և կատարեալ զհրամանսն, և առ պատուական հարսն առաքեալ. անցեալ գնացին 'ի կողմանս Յունաց»։ Զնոյն կ'աւանդէ և Խորենացի. «Եկեալ և առեալ Մեսրովպայ և մեծին Սահակայ զնոյն աշակերտ, զՅովսէփ և զմիւս ընկեր նմին 'ի Կողբ գեղջէ, որում անուն Եզնիկ կոչիւր, առաքեն 'ի Միջագետս 'ի քաղաքն Եդեսիոյ. զի որ միանգամ գտցի անդ գիրք ասացեալ նոցին սրբոց առաջնոց, թարգմանեալ 'ի մեր լեզու բերցեն փութով. զի յետ այնր 'ի Բիւզանդիոն առաքեսցին 'ի նոյն գործ»։

Այդ էր ընդհանրապէս Թարգմանչաց խմբին փա-

Այս գործոյն յարատեւ ջանիւք զբաղեցան՝ մանաւանդ սուրբն Սահակ:

Սակայն, ինչպէս յառաջագոյն ալ ակնարկեցինք, իրենց միտքը այն թարգմանութեամբ գոհ ըլլալ և ազգը գոհացընել չէր. լաւագունին փափաքը՝ և որչափ հնարաւոր էր անյապաղ գործադրութիւնը, այդ մեծ և անմահական յիշատակի բարերարաց՝ սըրտին և հոգւոյն նուիրական խոստմունքն էր. և ըսինք արդէն՝ թէ իրենց այս մտքին և կարծեաց վրայ ա՛լ աւելի հաստատուեցան՝ երբ թարգմանութեան գործը ՚ի գլուխ հանելէն ետքը՝ իմացան անոր թերութիւններն, որ աւելի դիմացնին գրուած բնագրին կամ սուրբ թարգմանութեան անընտիր ըլլալուն հետեւանքն էր:

Հարկ և պարտք էր դարմանել այդ պակասը:

Այս նպատակաւ էին Մեսրոպայ գեգերանքն մինչև ՚ի Բիւզանդական արքունիս՝ յանձնարարական թղթովք ՚ի թագաւորէն Հայոց և ՚ի կաթողիկոսէն. ուր անոնց գովեստից խօսքերէն աւելի գոհաւորագոյն և ազդու էր՝ իր իմաստութեանն և սրբութեան փայլն ու համբաւ. որով արքունական և պատրիարքական իշխանութիւնք հաւասար փութով զմիմեամբք կը գլէին գնել նմա մեծարանս՝ շուք և պատիւ, թագաւորական դեսպակներով զնա քաղաքաց ՚ի քաղաքս փոխադրելով, և որ մեծն էր և կարեւորագոյն՝ յօժարափոյթ և յօժարակամ դիւրացընելով նմա զկատարումն ամենայն հայցուածոցն և խնդրուածոց: Հոգեւոր և քաղաքական պետք արեւելեան կայսրութեան մեծապէս գոհ էին որ Հայաստան իր այս քայլովը՝ սուրբ գերութեան կապանք ու շղթաները խորտակեց խզեց. և վստահք՝ երկրին աւանդական ու օրինակելի բարեպաշտ աստուածսիրութեան վրայ, չէին տարակուսեր որ Սասանեանք ալ անշուշտ պիտի լքանին ու յետս ընկրկին՝

*
* *

Բնական է ենթադրելը թէ այդ բազմաթիւ աշակերտաց մէջ՝ երիցագոյնքն հասակաւ և առաւելքն 'ի գիտութեան՝ ունեցած են և զառաջնութիւն 'ի գործակցութեան իրենց վարդապետաց մեծ աշխատութեանն։ Եւ զայս կը հաւատարմացընեն դարձեալ իրենց ժամանակին պատմագիրք։

Սակայն յառաջ քան զնոսա, որոց առաջին կամ երիցագոյն Թարգմանիչք անունը տուած ենք, և զոր արդեամբք ալ արդարացուցին, Թարգմանութեան գործոյն ձեռնտու և օժանդակ կ'երեւան, օգնականք և գործակիցք սրբոցն Սահակայ և Մեսրովպայ՝ Յովհան Եկեղեցային, Յովսէփ 'ի Պաղանական տանէ, Տէր 'ի Խորձենոյ և Մուշէ Տարոնեցի, զորս սուրբն Գորիւն օգնական կուտայ Մեսրովպայ, և զորս պատմիչն (Փարպեցի) կը կոչէ «արս բանիբունս և մտացիս 'ի քահանայից Հայոց»։ Աստուածաշունչ գրոց Թարգմանութեան սկիզբը՝ Յովսէփայ և Յովհաննու անուանք կը յիշատակուին առ Կորեան և Խորենացւոյ. «Ի Թարգմանութիւն դառնային, կ'ըսէ առաջինն, հանդերձ արամբք երկու աշակերտօքն իւրովք, որոց առաջնոյն Յովհան անուն կոչէին յԵկեղեաց գաւառէն, և երկրորդին Յովսէփ անուն 'ի Պաղանական տանէն. և եդեալ սկիզբն նախ յԱռակացն Սողոմոնի»։ Զնոյն կը կրկնէ և Խորենացի անմիջապէս յետ գիւտի կամ կազմակերպութեան հայկական նշանագրաց. «Իսկոյն 'ի Թարգմանութիւն ձեռն արկեալ, խորհրդաբար սկսանելով յԱռակաց, բովանդակ զքսանևերկու յայտնիւն և զնոր կտակս հեղուլ 'ի հայ բան, նաև աշակերտք նորա Յովհան Եկեղեցային և Յովսէփ Պաղնացի. միանգամայն և զարուեստ գրչութեան ուսուցանելով իւրոց մանկագոյն աշակերտացն»։

խօսութիւն. և անել թարգմանութիւն»: Անանուն պատմիչ մը իրեք խումբի կը վերածէ զանոնք, յամէն մէկ դասուն գլխաւորացն ու առաւել ծանօթագունից անուանքն յիշատակելով. «Սուրբ պատրիարքն Սահակ, կ'ըսէ, երկնատուր պարգևօքն ընտրէ մանկունս առաքինազարդս, և առաքէ բերել յամենայն ազգաց զարուեստ մատենից. զՅովսէփ, զՂևոնդ, զՅովհաննէս, զԱբրահամ, զԱրձան և ընդ Մուշէ, զԵզնիկ, զԿորիւն և զայլս: Այլա զկնի սակաւուց զՄովսէս, զԴաւիթ, զԵղիշէ, զՄամբրէ զեղբայրն Մովսեսի: Զկնի նոցա զԱրձան Արծրունի, և զԽոսրով և զՂազար պատմագիր, և սոքօք Թարգմանեցին զամենայն մատեանս 'ի սոյգ օրինակացն սրբոյն Ղևոնդի»:

Իսկ Ասողիկ ժամանակն ալ կը ջանայ ճշդել հետևեալ խօսքերով. «Եւ դոքա հանդիպեալ յերկրորդ ամին Արտաշրի արքայի Պարսից՝ զհինգերորդ ամն Վռամշապհոյ արքայի Հայոց: Յորում Մաշթոցն երանելին որ էր 'ի գաւառէն Տարօնոյ, 'ի գեղջէ Հացեկաց, 'ի ձեռն Վռամշապհոյ և մեծի հայրապետին Սահակայ՝ դանիէլեան նշանագրօք զդպրութիւն ըստ հայոցս յօրինէր՝ ընկերօք ոմամբք տուելովք նմա 'ի Սահակայ: Յետ որոյ դարձեալ եւս 'ի վեցերորդումն նորին Վռամշապհոյ, որ է առաջին Վռամայ Կրման արքայի, վերստին աստուածային շնորհատուեալ նշանագրօք՝ զնոյնս յեղանակեալ յօրինէր: Որով և դպրութիւնք և գիրք աստուածաշունչք ուղղեալ Թարգմանին, որպէս պատմէ Կորիւն և Ղազար: Եւ սկիզբն դպրութեանս Հայոց եղև սկիզբն մեծի գիտութեան, և անպայման խնդութեան բազում աշխարհաց»:

տրելագոյն կերպարանք մը տալու փափաքին ու գաղափարին առաջին հեղինակն ինքն էր։ Ուստի և հաստատականաբար միայն նախականոն գրոց Թարգմանութեան զբաղեցաւ, և զայն 'ի գլուխ տարաւ ըստ վկայութեան Փարպեցւոյն։ Այս աշխատութիւնն է՝ զոր պատմիչք մեր յառաջագոյն եղեալ, յանկարծագիւտ Թարգմանութիւն կը կոչեն. և այս բառերուն նշանակութեան մէջ է՝ իրենց ոչ այնչափ գոհութիւնն ընդ այն, և կարևորութիւնն՝ մեծագոյն և աւելի ծանր, բայց կատարելագոյն աշխատութեան մը ձեռք զարնելու։

Երբ սուրբն Սահակ այս մեծ վաստակոց հետ էր, իրեն ու Վռամշապուհ Թագաւորին յանձնարարութեամբն ու ստիպելով, միւս այլ ծանր ու մտատանջ հոգովք կը պարապէր Մեսրովպ.— հայկական տառից գիւտէն ետքը անոնց օրինաւոր կազմակերպութեան և կարգաւորութեան գործով։ Ու երկար ու յորատև ջանքէ, անխոնջ խուզարկութիւններէ, քաղքէ քաղաք վտարանդի՝ բայց սիրելի պանդխտութիւններէ ետքը՝ երբ վերջապէս հասաւ իր փափաքելի նպատակին, ու իբրև նոր Մովսէս մը 'ի սինէական լեռնէ՝ լուսահրաշ փառօք ու փայլմամբ ներկայացաւ սրբոյն Սահակայ և արքունեաց, ա՛լ այնուհետև կատարեալ ու անպատում էր ամենուն հոգեկան սփոփանքն, զմայլումն և ուրախութիւն։

Հայաստան աշխարհի ընտիր և ուսումնատենչ և մտաւոր սննդեան սովատանջ և պապքեալ երիտասարդութիւնը՝ արդէն փութացեր հասեր էր առ նոսա՝ աշակերտելու առ ոտս վեհագոյն վարժապետացն. յորոց առջի բերան կ'ընտրէին վաթսուն «զառաւել ուշիմս, — ինչպէս կ'ըսեն պատմիչք, — զերկարոգիս և զփափկաձայնս». և էին սահմանեալքն յառաքելութիւն «յազգս և 'ի լեզուս օտար գաւառաց, ուսանել իմաստութիւն և արուեստա-

ընդունելին. զի – յառաջ ալ յիշատակեցինք, – գըրժուարին վաստակ կ'երեւնայ, մէկ անձի մը եւեթ զայն գլխաւորելը. մանաւանդ սրբոյն Սահակայ նման բազմազբաղ և ամբողջ ազգին հոգեւորական բեռը կրող արքունական և առաքելագործ հայրապետի մը։ Փարպեցին, յասորւոյն եղած Թարգմանութեան վրայ խօսելով՝ բովանդակ սուրբ Գրոց Թարգմանութիւնն Պարթեւ հայրապետին կուտայ հետեւեալ բացայայտ խօսքերով. «Անվեհեր ջանալով, կ'ըսէ, զցայգ և զցերեկ, Թարգմանեաց զկտակարանս ամենայն, զխօսեցեալսն Ճշմարիտ մարգարէիւք, և հաստատեալ կնքեաց երջանիկ առաքելովքն զնորոց կըտակարանաց զլուսաւոր քարոզութիւնն նովին հոգւով»։ Ուրիշ տեղ մ'ալ նոյն Փարպեցին. «Եւ տարեալ 'ի գլուխ սուրբ հայրապետին Սահակայ զգործ մեծ հոգեւոր վաստակոցն, կարգեցան վաղվաղակի յայնմ հետէ դպրոցք հօտին ուսմանց»։

Այս յայտնի և որոշ խօսքերուն հետ պէտք է յիշեցընենք, ինչ որ արդէն ծանօթ է հմտից և տեղեկաց, որ մատեանք աստուածաշունչք յերկուս ուրոյն դասակարգութիւնս կը բաժնուին. յորոց ոմանք Նախականն և այլք Երկրորդականն գրքեր կը կոչուին։ Բնական է որ Թարգմանական աշխատութեան ձեռք զարնուած ատեն՝ Նախամեծար սեպուէին առաջնակարգ դասաւորութեան պատշաճեալքն, և ջանացուէր նախ անոնց Թարգմանութիւնն ընծայել ազգին։ Եւ եթէ, ինչպէս քիչ ետքը պիտի տեսնենք, երկրորդ և ազնուագոյն աշխատութեանն ատեն՝ Թարգմանիչք ջանացին այս կարգը պահել, եւս առաւել սուրբն Սահակ, որ չունէր անոնց դիւրութիւնը՝ աշխատակցաց բազմութեան, որով և վաստակոց բաժանման. և ինքզինքը այսպիսի մեծ հոգեւոր երկասիրութեան նուիրած ատենն ալ՝ գիտէր որ առժամանակեայ էր՝ և որուն յետոյ ըն-

մանութիւն փութանակի, հաստատէր ճշմարիտ օրինակօքն բերելովք, այսինքն բազում ուրեք ուղղագրէր ըստ ստուգաբան ընտիր օրինակին զոր բերին 'ի Պոլսոյ »։

Այս՝ ըստ կարծեաց հնախօս և բազմահռչակ հեղինակին։

Սակայն մեզի կ'երևնայ որ այս վերջի աշխատութիւնն չըրած՝ սրբոյն Սահակայ աստուածաշունչ գրոց մասնական թարգմանութիւնէ մը զատ է՝ ասոր թարգմանութեան վրայէն ըրած մեծ և ծանր վաստակը։

## Դ. ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԵՐԹՆ Ի ԲԻՒԶԱՆԴԻՈՆ

---

*Ո՞յք են թարգմանիչք սուրբ Գրոց։ — Հանգամանք առաջին թարգմանութեան յասորականէ։ — Աշակերտք սրբոցն Սահակայ և Մեսրովպայ։ — Անոնց դասակարգութիւնը։ — Երիցագոյնքն գործակիցք իրենց վարդապետաց՝ 'ի գործ թարգմանութեանն։ — Առաքումն աշակերտացն յԵդեսիա և 'ի Բիւզանդիոն։ — Պատճառք առաքման նոցա և դեգերանաց։ — Դարձ 'ի Հայաստան՝ հաստատուն և ստոյգ օրինակօք աստուածաշունչ գրոց։*

Որո՞նց կը վերաբերի աստուածաշունչ գրոց թարգմանութիւնն 'ի հայ, զոր Փարպեցի՝ ինչպէս տեսանք, ընդհանրապէս Պարթև հայրապետին կ'ընծայէ, և վարդապետասէր աշակերտն Կորիւն՝ Մեսրովպայ, և Խորենացի՝ երկուքին միանգամայն և իրենց աշակերտաց։ Այս վերջինն է ամենէն հաւանականն և

դատապարտէին, և իրենց հաճոյից ու կամաց համեմատ՝ իր նուիրական աստիճանին պաշտամանց չափըն ու սահմանը իրենք կ'ըլլային որոշող, զվարդապետըն միայն թողլով Սահակայ, և իրեն անարժան հակառակաթոռն Շմուէլի ու Բրքիշոյի տալով զիշխանութիւն ձեռնադրելոյ, չէին կրնար նոյնպէս սաստ և բռնութիւն բանեցընել նաև եկեղեցական պաշտամանց լեզուի և կարգաւորութեան նկատմամբ՝ որոնք կրնային արդէն ընկալեալ և 'ի կիրառութեան եղած սովորութեանց աննման ըլլալ և հակառակ։ Այդպիսի վարմունք մը անկարելի չթուիր մեզ։ Պատմութեանց մէջ յաճախ կը յիշուին նման դէպք, երբ ազգք և ժողովուրդք ունենալով իրենց լեզուն և հասարակաց աղօթից ձեւը, բռնադատուին վրանին տիրող ազգին լեզուով աղօթել յեկեղեցւոջ, երբ ազգաց իրարու հետ ձուլման քաղաքագիտական օրէնք զայն թուին պահանջել։

Բայց ինչպէս ըսինք յառաջագոյն, լոկ ենթադրութիւն մ'է այս կամ կարծիք, զոր կանուխ քան ըզմեզ ունեցած է բազմահմուտ և բանիբուն վարդապետն մեր Ինճիճեան. զի Խորենացւոյն և Կորեան արդէն յիշուած խօսքերն մէջ բերելով՝ կը յաւելու իր ձեռագիր մէկ քաղուածոյին մէջ. « Սուրբն Սահակ կանխաւ 'ի յունականէն 'ի հայ բարբառ թարգմանեալ էր զկտակարանն որ յեկեղեցիս ընթերցեալ լինէր. այսինքն զայն ընթերցուածս գրոց որ 'ի ժամասացութեան և 'ի պատարագի ընթերցեալ լինէր, այս է զոր կոչէ եկեղեցական գրոց գումարութիւն։ Այլ յորժամ Եզնիկ, Ղեւոնդ և նոյն ինքն Կորիւն դառնային 'ի Պօլսոյ հանդերձ հաստատուն օրինակօք աստուածատուր գրոցն, այսինքն ընտիր օրինակօք աստուածաշունչ գրոց՝ զոր ետուն նոցա յարքունական գրատանէ, յայնժամ հանդերձ Եզնակաւ զյառաջագոյն թարգմանեալն՝ որ եղև թարգ-

ծարելոյ՝ որպիսի սուրբն Վրթանէս և սուրբն Յուսիկ, և համբաւեալն 'ի նոսա իբրև բարեկարգիչ եկեղեցեաց մեծն Ներսէս Պարթեւ, զայդպիսի աններելի անհոգութիւն անհոգանային. մանաւանդ զի առ Բիւզանդայ և Մեսրովպայ երիցու կ'ընթեռնումք թէ սուրբն Ներսէս առաւօտեան ժամակարգութիւնն կատարելու վրայ էր, երբ Գնէլայ անպարտական մահուան գոյժն հասաւ իրեն: Մինթէ զսուրբ գիրս բովանդակ 'ի հայ լեզու վերածելու չափ՝ դժուարին ինչ էր նաև զանփոփոխելի օր ըստ օրէական աղօթից ձև մը՝ 'ի հայ լեզու դնել, և 'ի գիր առնուլ յոյն և ասորի տառիւք՝ որք արդէն 'ի գործածութեան էին[1]:

Համաձայնք այս կարծեաց և այդպիսի անտեղութեան մը, սակայն դժուարին թուի մեզ ժամանակակից պատմըչաց բացայայտ վկայութիւնքը տարակուսի տակ ձգել. և այնչափ աւելի՝ որ երեքասան դարուց անջրպետ մը կայ ընդ մեզ և ընդ նոսա, և իրենց ժամանակին հանգամանք՝ դեռ փափաքելի լուսով և ծանօթութեամբք հասած չեն մինչև առ մեզ: Արդեօք Վրթանայ, Յուսկան, Ներսիսի մեծին և իրենց նմանեաց ժամանակի հանգամանք չկրեցին փոփոխութիւն մը. երբ յունական ազդեցութիւնն և իշխանութիւնը սկսան ա՛յլ եւս չափ ու սահման չճանչնալ, և սատանեան պետութիւնը ամէն միջոց օրինաւոր կը գտնէր իր կամքն առաջ տանելու համար: Եւ նոքա՝ որ ուզածնուն պէս կը փոփոխէին մեր թագաւորներն, ազիկամի 'ի գահ բարձրացընելով ու անկէ վար առնելով, — որք սրբոյն Սահակայ հայրապետի պէս անման անձինք 'ի դատ կը կոչէին մինչև իրենց արքունական դուռն, չնայելով ոչ անոնց հասակին և ոչ պատուոյն, և կը դատէին կը

[1] ՊԱՐՈՆԵԱՆ (Ս. Վ.)· Յ'Եր[illegible] հանդիսի Ասիական ընկերութեան...

***

Պատմեցինք թէ սուրբն Սահակ՝ յորդորեալ և խրախուսեալ 'ի բազմապաղատ թախանձանաց թագաւորին, ուխտի եկեղեցւոյն և աշխարհի բազմութեան՝ մեկենիմեկ թարգմանութեան ձեռք զարկաւ՝ առանց սպասելու ստուգագոյն և ընտիր օրինակաց սուրբ Գրոց՝ որ յայնմ միջոցի դեռ ձեռքն հասած չէին։ Ենթադրեցինք՝ Փարպեցւոյն ու Խորենացւոյ խօսքերէն, թէ ինչ որ 'ի վեր քան զամենայն անհրաժեշտ կարևոր էր՝ հայրենի աշխարհին հոգևոր օգտին համար, զայն փութացաւ թարգմանել. եկեղեցական պաշտամանց մէջ կարդացուած և 'ի գործածութեան եղած ընթերցուածներն. որով մեծ կարօտութիւն մը լեցուեցաւ, ու այնուհետև ոչ ևս «Բազմութիւնք ժողովրդոց ունայնք և թափուրք հրաժարեալք գնային յեկեղեցւոյն ... և ոչ զոք յուսումնասէր ժողովելոցն տեսանէին օգտեալս 'ի վարդապետութենէ հոգևոր խրատուցն»։

Ոմանք 'ի բանասէր հմտից՝ ընդհանրապէս յունական կամ ասորի լեզուով եկեղեցական պաշտամանց գործածութիւնն առ մեզ անկարելի կ'ենթադրեն. Հնար է, կ'ըսեն, որ գտնուած ըլլան 'ի Հայաստան կողմանք ուր պաշտամունք եկեղեցւոյ, այսինքն պատարագի սպասարկութիւնն և ժամակարգութեանց աղօթք՝ բոլորովին յոյն կամ ասորի լեզուաւ կատարուէին. բայց աներկբայելի է որ ընդհանուր չէր և չէր իսկ մարթ լինել. քանզի ինչպէս հնար է լինել որ ամբողջ ժողովուրդ մը և ազգ և աշխարհ մի քրիստոնեայ, ճոխացեալ իւր եկեղեցեաւն և իւրեան հայրապետօք բարեզարդեալ, բնաւ ընտանի լեզուաւ աղօթից ձև մի չունենայ։ Եւ ինչ հարկ կար, կ'ըսեն, մերոց սրբոց հարց աստուա-

իմաստուն ընդօրինակողք՝ շփոթութեան և խառնակութեան պատճառ եղեր էին զանոնք գաղափարելու ձեռք զարկած ատեններն։ Այսպիսի ընթացքի մը հետեւանք՝ անպատշաճութիւններն դարմանելու համար՝ սուրբն Պամփիլոս վկայ Բիւրիտոնացի՝ ու իրեն մտերիմն ու աշակերտ Եւսեբիոս Կեսարացի՝ ետեւէ եղան եօթանասնից ընտիր և ստուգահաւատ օրինակի մը գրութեան։ Այլեւայլ օրինակներ գաղափարել տուին, խնամով սրբագրել ու բաղդատել տալով Որոգինեայ հիմա յիշուած Վեցիցեանն ու Քառիցեանն կոչուած երկասիրութեանց սկզբնագրին վրայ, որ կը պահուէին 'ի դարանս մատենից քաղաքին Կեսարացւոց. և այդպիսի խնամքով յղկուած ու սրբագրուած օրինակք՝ Պաղեստինեանքն կը կոչուէին. ուր այս ուղղագրութիւնք ընդունուած էին 'ի հոգեւորական իշխանութենէ գաւառին, և անոնց համեմատ կ'ըլլային հրապարակական ընթերցմունք յեկեղեցիս։ Սրբոյն Պամփիլեայ վկայական մահուընէն ետքը՝ այդ նուիրական ու ցանկալի ժառանգութիւնը՝ իր բարեկամին ու գործակցին Եւսեբեայ մնաց. որուն ձեռքովն ու ջանիւք փոխադրուեցաւ 'ի Կոստանդնուպոլիս։ Բարեպաշտ կայսեր փափաքը կատարելու համար՝ Եւսեբիոս այս ընտիր, վկայեալ ու արդէն գործածուած օրինակը պէտք էր որ նախամեծար սեպէր, ինչպէս որ ըրաւ ալ։

Այսպիսի գանձի մը գոյութիւնն 'ի Բիւզանդիոն՝ անշուշտ անծանօթ չէր մեր դպրութեան նորոգչացը. և զայն ձեռք ձգելը՝ իրենց աշխատութեան վաւերականութիւն ու յարգ տալու համար՝ ամէն բանէ աւելի փափաքելի։ Այս նպատակաւ էր Թարգմանչաց երթն 'ի Բիւզանդիոն։ — Բայց մեք առ այժմ թողլով զիրենք 'ի Ճանապարհորդութեան, դառնանք 'ի Հայաստան՝ առ մեծարեալ վարդապետս Նոցա Սահակ և Մեսրովպ։

Այս պատճառաւ հարկ եղաւ իրենց դիմել առ պատրիարքն և առ կայսրն Կոստանդնուպոլսի։ Նախ ինքն Մեսրովպ անձամբ՝ քանի մը գործակցացը հետ, և յետոյ իրենց աշակերտք փութացին երթալ 'ի քաղաքն Թագաւորակաց։

***

Կ'աւանդէ պատմութիւն թէ Կոստանդիանոս մեծն՝ եկեղեցւոյ պայծառութեան ու բարեկարգութեան համար ըրած ուրիշ զանազան գովելի ջանքերէ զատ՝ աստուածաշունչ գրոց օրինակներուն հաւատարիմ և անխեղծ պահպանութեանն համար՝ Եւսեբեայ Պամփիլացւոյ յանձնեց որ իր անմիջական վերակացութեամբ և ջանիւք՝ ճարտար և իմաստուն գրչաց ձեռքով սուրբ գրոց ստուգագիր օրինակներ փաղափարել տալով բազմացընէ, և զանոնք կայսերական գանձուն մէջ ամենայն զգուշութեամբ պահելով. ուր որ պէտք էր՝ անոնց ընթերցուածոց պարունակածին համեմատ օրինակներ ցրուէ կայսերութեան ընդարձակ գաւառաց մէջ։ Այսանկով սուրբ գրոց մէջ օտար և անհամաձայն ընթերցուածոց մուտք կը խափանէին, որովհետև եկեղեցեաց մէջ գործածուած օրինակք՝ իրարու զուգաձայն և միաբան կ'ըլլային, և շատ կրօնական վէճից և տարաձայնութեանց առջեւը կ'առնուէր։ Որոգինէս՝ եկեղեցւոյ մեծ վարդապետ, և սուրբ գրոց վրայ ըրած աշխատութեամբքն նշանաւոր և մեծարոյ, եօթանասնից և ուրիշ թարգմանութեանց և հեբրայական բնագրին իրարմէ ունեցած տարբերութիւնները քններ, զատեր, ու իրարմէ տարբեր նշանակներով որոշեր էր իր օրրագիր տառից վրայ ըրած հմտական և բազմավաստակ աշխատասիրութեանց մէջ. բայց իրմէ ետքը եկող անընտրող կամ ոչ քաջ մտադիր կամ

բաւական պակասութեան մէջ էր, զոր և կ'ակնարկեն պատմիչք, կամ անոնց հմտութեանն 'ի գիտութեան յոյն և ասորի լեզուաց, զի անոր հակառակ վկայութիւնը կու տան, ինչպէս տեսանք, մանաւանդ նկատմամբ սրբոյն Սահակայ, այլ սուրբ գրոց հաստատուն և ստոյգ օրինակներ չունենալնուն, որք յետոյ բերուեցան 'ի Թարգմանչաց. և իրենց երկիւղած զգուշաւորութիւնն չէր ներեր' առանց այդ ամէն վստահութեան արժանի օրինակներ ունենալու' կատարեալ և անթերի սեպել իրենց մեծ և հոյակապ վաստակը։

Աստուածաշունչ գիրք, թէպէտ գործ գերմարդկային, բայց այլեայլ թարգմանութեանց ու բազմապատիկ ընդօրինակութեանց պատճառաւ' կրած էին զանազան այլայլութիւնք և փոփոխութիւնք իրենց ընթերցուածոց մէջ. զի և ամենայն թարգմանիչք, և մանաւանդ ամենայն գրչագրողք, հաւասար գիտութիւն և երկիւղած զգուշաւորութիւն պահած չեն։ Ի հնոց առ մեզ հասած բազմաթիւ գրչագիրք, և անոնց իրարու հետ մանր ու երկայնամիտ բաղդատութիւն' զայս յայտնի կը ցուցընեն։ Ասկէ զատ, եկեղեցւոյ առաջին դարուց մէջ երևցող հերձուածողք և աղանդապետք' իրենց կարծիքն ու վարդապետութիւնը աւելի հեշտեաւ ընդունելի ընելու, կամ անոնց մեծագոյն կարևորութիւն մը տալու դիտմամբ' դիմած են այս միջոցին' սուրբ գրոց ընթերցուածքը խանգարելու։ Անշուշտ յայսպիսի կասկածելի ձեռնձգութեանց զերծ չէին այն օրինակք' որ սրբոյն Սահակայ և Մեսրովպայ աշխատանաց առաջնորդք եղան. կամ գէթ չէին տեսներ անոնց մէջ' իրենց փափաքելի և մեծապէս հարկաւոր վստահութիւնը. և թերևս այնչափ աւելի հաստատուեցան այս կարծեաց վրայ' որչափ յառաջեցին 'ի վաստակս Թարգմանութեանն։

քըն յառաջադիմութեան։ Եւ նոցա աշակերտ Ղեւոնդ այր սուրբ և ընտրեալ և ճշմարիտ 'ի գործ մըշակութեան Աստուծոյ, և Արձան և Կորիւն և Եզնիկ և արքանեակք նոցուն հանդիսիցն, և ձեռնադրեալք 'ի նոյն սրբոյ կաթողիկոսէն»։

***

Երեք ժամանակակից պատմըչաց խօսքերէն, — որչափ ալ տեղ տեղ մութ, պակասաւոր, զիրար չըբռնող և լուսոյ կարօտ, — յայտնապէս կ'երեւնայ թէ երկու թարգմանութիւնք եղած են աստուածաշունչ գրոց 'ի մեր լեզու։ Առաջինն ըստ մեծի մասին յասորւոյն՝ 'ի ձեռն սրբոյն Սահակայ, և մասամբ ալ 'ի յունէ՝ 'ի սրբոյն Մեսրովպայ։ Սրբոյն Սահակայ ասորական օրինակի մը կարօտ ըլլալուն պատճառներն՝ արդէն յիշատակեցինք, որուն՝ ինչպէս տեսանք, բացայայտ կը վկայեն գլխաւոր պատմիչք դարուն և իրենց աշակերտեալք՝ ամենայն հաւատարիմ վստահութեան արժանաւոր անձինք։ Իսկ սուրբն Մեսրովպ իր թարգմանութիւնն, զոր մեկին և որոշ կը յիշէ Խորենացի, ըրաւ յունականին վրայէն, երբ կը գտնուէր Հայաստանի այն մասին մէջ՝ որ Յունաց իշխանութեան վերաբերելով քաղաքականաբար՝ բընականաբար չէր կրնար ունենալ այն դժուարութիւնը որ բռնադատեց զպարթեւ հայրապետն ասորականին դիմելու, զի դիւրին էր հոն գտնել զբնագիրս սուրբ Գրոց 'ի յոյն լեզու։

Բայց ինչպէս կ'երեւնայ 'ի նոյն պատմըչաց՝ նոյն իսկ աշխատասիրողք իրենց մեծ գործը մասամբ կամ ամբողջ աւարտելէն ետքն ալ՝ գոհ չեղան անոր փափաքելի և իրաւամբ սպասուած կատարելութենէն։ Հաւանականաբար այդ տժգոհութեան գլխաւոր պատճառը՝ ոչ այնչափ թարգմանութեան ա-

կամաց ելին առ նոսա 'ի Բիւզանդիոն։ Ապա ելանեն անդ Յովհան և Արձան, զորս կանխագոյն առաքեալ էր մեծին Սահակայ և Մեսրովպայ. որոց յուղարարուղեւորեալ և ծուլաբար դեգերեալք պատաղեցան 'ի Կեսարիայ. որոց ընդունելութիւն ամենեցուն արար Մաքսիմիանոս եպիսկոպոսն Բիւզանդացւոց» : ... —

« Ապա եկեալ Թարգմանիչքն մեր՝ զորոց անուանքըն յիշատակեցաք յառաջագոյն, գտին զմեծն Սահակ և զՄեսրոպ յԱշտիշատ Տարօնոյ, և մատուցին զԹուղթս և զկանոնս ժողովոյն Եփեսոսի վեց սահմանեալ կանոնաւ գլխով, և զստոյգ օրինակս գրոց։ Զոր առեալ մեծին Սահակայ և Մեսրոպայ՝ դարձեալ Թարգմանեցին զմիանգամ Թարգմանեալն փութանակի, հանդերձ նոքօք վերստին յօրինել նորոգմամբ։ Բայց քանզի անդէտք էին մերում արուեստի, 'ի բազում մասանց Թերացեալ գործն դտանէր։ Վասն որոյ առեալ մեծին Սահակայ և Մեսրոպայ զմեզ առաքեցին յԱղեքսանդրիա 'ի լեզու պանծալի, 'ի ստոյգ յօդանալ Ճեմարանի վերաբանութեան » :

Եղնակ երէց (որ կարծի յեօթներորդ դարու կացեալ). « Առ որով Ասպուրակէս կաթողիկոս. և դարձեալ առ որով ընտրեցաւ Սահակ անուն լինել կաթողիկոս. որ է որդի Ներսեսի առաքինւոյ, Թոռն Աթանագինէ, Թոռն սրբոյն Գրիգորի։ Առ սովաւ և դպրութիւնք Հայոց յաջորդեալ, և կտակարանք եկեղեցւոյ 'ի սմանէ յառաջ Թարգմանեցան. և կարգք գործոցն Գրիգորի նորոգեալ արամբ միով երանելեաւ Տարաւնացւոյ, որում անուն Մեսրովպ Ճանաչէր. որ էառ զձեռնադրութիւն երիցութեան 'ի նմին Սահակայ կաթողիկոսէ։ Սա եգիտ նշանագիր դըպրութեան հայերէն լեզուին վարելոյ ալփաբետացն հանգամանս. յորում ժամանակի լցան նոքօք կարգ-

րանաց ընծայիւք ... Եւ զի միանգամայն իսկ տեսացէց ըստ բանի սուրբ մարգարէին Եսայեայ, թէ լցաւ երկիրս ամենայն Հայոց՝ գիտութեամբ տեառն 'ի հոգևոր վտակաց սուրբ վարդապետին Սահակայ. իբրև զջուրս բազումս որք ծածկեն զծովս » ...

ԽՈՐԵՆԱՑԻ. (Մեսրովպ) « իսկոյն 'ի թարգմանութիւն ձեռն արկեալ, խորհրդաբար սկսանելով յԱռակաց. զբովանդակ քսան և երկու յայտնիսս և զնոր կտակս յեղուլ 'ի հայ բան. նաև աշակերտք նորա Յովհան Եկեղեցացին և Յովսէփ Պաղնացի. միանգամայն և զարուեստ գրչութեան ուսուցանել տալով իւրոց մանկագոյն աշակերտացն ... Եւ վերակացու թողեալ զաշակերտս իւր զՅոփնաթան, միանգամայն և քահանայս կացուցեալ գրանն արքունի, ինքն գնայ 'ի Հայս. և գտանէ զմեծն Սահակ թարգմանութեան պարապեալ յասորւոյն յոյժ լինելոյ յունին։

« Ապա եկեալ և առեալ Մեսրովպայ և մեծին Սահակայ զնոյն աշակերտս, զՅովսէփ և զմիւս ընկեր նմին 'ի Կողբ գեղջէ՝ որում անուն Եզնիկ կոչիւր, առաքեն 'ի Միջագետս 'ի քաղաքն Եդեսիայ. զի որ միանգամ գտցի անդ գիրք սրբոց հարցն առաջնոց, թարգմանեալ 'ի մեր լեզու բերցեն փութով. զի յետ այնր 'ի Բիւզանդիոն առաքեսցեն 'ի նոյն գործ։ Որոց ընկալեալ զհրապուրական թուղթս սուտակապաշտաց ոմանց, իբր թէ պատրաստեն մեծն Սահակ և Մեսրոպ զայլս առաքել 'ի Բիւզանդիոն, վասն որոյ առանց հրամանի վարդապետացն իւրեանց՝ նոյն ընդ նոյն չուեալ գնացին 'ի Բիւզանդիոն, նախանձաւոր բարեաց եղեալ ումանց. և քաջ վարժեալ հելլեն դպրութեամբ՝ ձեռնարկեցին 'ի թարգմանել և 'ի գրել։ Եւ ընդ նոսա նախանձեալ ընկերաց իւրեանց աշակերտակցաց, որոց անուանքն Ղեւոնդ և Կորիւն կարգային, յիւրեանց

նոյն անուն էր, և երկրորդին Կորիւն. և մատուցեալ յարէին յԵզնիկն, իբրև առ ընտանեգոյն անընդակից 'ի Կոստանդինական քաղաքին. և անդ միաբանութեամբ հոգևոր պիտոյից՝ զխնդիրն վճարէին: Որոց յետ այնորիկ հաստատուն օրինակօք աստուածատուր գրոյն, և բազում շնորհագիր հարց յետ այնր աւանդութեամբք, և նիկիական և եփեսոսական կանոնօք գային երևելով յաշխարհին Հայոց. և առաջի դնէին հարցն զբերեալ կտակարանն եկեղեցւոյ:

«Իսկ երանելւոյն Սահակայ զեկեղեցական գրոց թարգմանութիւնն կանխաւ յունական բարբառոյ 'ի հայերէն դարձուցեալ, և բազում ևս զհայրապետաց որոց զճշմարիտ զիմաստութիւնն: Դարձեալ յետ այնորիկ առեալ հանդերձ Եզնակաւ՝ զյառաջագոյն զյանկարծագիւտ զփութանակի թարգմանութիւնս հաստատէր ճշմարիտ օրինակօք բերելովք. և չատ ևս մեկնութիւն գրոց թարգմանէին»:

ՓԱՐՊԵՑԻ. (Ս. Սահակ) «կամաւոր յօժարութեամբ ետ զանձն 'ի գործ՝ պանծացեալ յԱստուծոյ գործակցութիւնն, որ ետ նմա զայսպիսի շնորհ առաւելապէս գիտութեան, և անվեհեր ջանալով զցայգ և զցերեկ՝ թարգմանեաց զկտակարանս ամենայն ըղխօսեցելս ճշմարիտ մարգարէիւք 'ի սուրբ հոգւոյն. և հաստատեալ կնքեաց երջանիկ առաքելովքն զնորոց կտակարանացն զլուսաւոր և զկենսատու քարոզութիւնս նովին հոգւով: Եւ տարեալ 'ի գլուխ սուրբ հայրապետին Հայոց Սահակայ՝ զգործ մեծ հոգևոր վաստակոցն, կարգեցան վաղվաղակի յայնմ հետէ դպրոցք հօտին ուսմանց. բազմացան դասք գրչաց ելևելս առնելով զմիմեամբք. զարդարեցան պաշտամունք սուրբ եկեղեցւոյ»...

«Պայծառացան եկեղեցիք, շուք առին վկայարանք սրբոց, միշտ ծաղկելով 'ի նոսա ուխտ կտակա-

պակս 'ի կառս արքունատուրս։ Եւ մեծաւ շքով և բազում վայելչութեամբ՝ ունէին զճանապարհս արքունականս, և ամենայն քաղաքացն պատուեկելով. 'ի քաղաքին պայծառագոյն երևէին. և մեծամեծ պարգևս գտեալ, գային հասանէին 'ի ժամադիր կողմանս. և անդէն վաղվաղակի պատահեալ սպարապետին Հայոց՝ հանդերձ սակերօք կայսեր յանդիման լինէին։ Եւ նորա առեալ ասկերս կայսերական նշանօք, փութայր վաղվաղակի զհրամանն կատարել. և հրեշտակս արձակեալ այնուհետև 'ի գաւառս կէս ազգին Հայոց՝ յիշխանութեանն կայսեր, բազմութիւն մանկտւոյ ժողովել. և նոցին ուշիկս կարգել 'ի պատեհագոյն տեղիս, յոր և երանելին զվարդապետութիւն իւր 'ի գործ արկեալ, և ժողովելոցն քաղցրացուցանէր ...։

« Յետ այսորիկ ուշ եդեալ երկոցունց երանելեացն զիւրեանց ազգին զպրութիւն առաւել յարգել և զիւրացուցանել, ձեռն 'ի գործ արկանէր 'ի թարգմանել և 'ի գրել մեծն Իսահակ ըստ յառաջագոյն սովորութեանն։ Որոց դարձեալ դէպ լինէր եղբարս երկուս յաշակերտացն՝ յուղարկել 'ի կողմանս Ասորոց 'ի քաղաքն Եդեսացւոց. զՅովսէփ ... և երկրորդն Եզնիկ անուն յայրարատեան գաւառէն 'ի Կողբ գեղջէ, զի յասորական բարբառոյ զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս, հայերէն գրեալս դարձուսցեն։

« Իսկ Թարգմանչացն հասեալ ուր առաքեցանն՝ և կատարեալ զհրամանն, և առ պատուական հարսն առաքեալ՝ անցեալ գնային 'ի կողմանս Յունաց. ուր և ուսեալք և տեղեկացեալք՝ Թարգմանիչս կարգէին ըստ հելլենական լեզուին։

« Ապա յետ ժամանակ ինչ ընդ մէջ անցելոյ՝ դէպ լինէր ոմանց եղբարց 'ի Հայաստան աշխարհէ դիմել իջանել 'ի կողմանս Յունաց, որ և Ղևոնդէս առաջ-

Եւ փութացեալ վնայր հանդերձ աշակերտօք բազմօք, անցանել 'ի կողմանս Յունաց. և վասն առաւելագոյն բարեգործ համբաւոյն՝ յառաջագոյն զնմանէ անդ 'ի հիւսիսական կողմանց հռչակելոյ, առաւել միամտութեամբ ընթանայր յեպիսկոպոսաց աշխարհին, և իշխանաց և 'ի գաւառականացն պատուեալ. մանաւանդ 'ի սպայապետէն աշխարհին, որ անուանեալ կոչէր Անատոլիս 'ի մուտ Ճանապարհին. և զիրս առաջի եդեալ գրով ցուցանէր կայսերն, որում անուն Թէոդոս կոչէին, որդի Արկադու կայսեր. ուստի և հրաման եղանէր, վայելուչ մեծարանօք զսուրբն Ակումիտ անուն կոչելոյ» ...—

«Իսկ նորա զբազմութիւն աշակերտացն տարեալ 'ի քաղաքն Մելիտինացւոցն, յանձն առնէր սրբոյ եպիսկոպոսի քաղաքին, որ Ակակիոսն կոչէին. և գլխաւոր աշակերտացն թողոյր զայն որում Ղեւոնդեան կոչէին, այր հաւատարիմ և Ճշմարտասէր։ Եւ առեալ երանելոյն զպատուական եպիսկոպոսն Դերջանայ, որոյ անուն կոչէր Գինթ, և սակաւս յաշակերտաց անտի, և ելեալ յանարբւոյն դիմոսական և բազում պատիւ գտեալ՝ հասանէին 'ի թագաւորակաց քաղաքն Կոստանդնուպօլիս, զորմէ իսկոյն պատմէին յարքունիսն. և մտեալ առաջի պատուական աթոռոյն՝ յանդիման լինէր աստուածակարգ թագաւորացն, և հայրապետին սրբոյ կաթուղիկոսին աշխարհամուտ դրանն, որում Ատտիկոս կոչէին. յորոց և գտեալ շնորհս, հրամայեալ լինէր ժամանակս ինչ անդրէն 'ի տիեզերական քաղաքին մեծարել զարմանօք կարգելովք յեկեղեցւոյն և յարքունեաց և 'ի պատուական իշխանաց քաղաքին։

«Եւ ապա յետ Պասեքին կատարելոյ՝ ցուցեալ կայսերն զպիտոյից հանդամանս ... և ընկալեալ ողջոյն յեկեղեցւոյն և յերևելի իշխանացն քաղաքին և ամենայն իւրայնովքն յաջողեալք՝ ելանէին 'ի դեռ-

Յովսէփ անուն 'ի Պաղանական տանէն։ Եւ եղեալ սկիզբն նախ յառակացն Սողոմոնի, որ և 'ի սկզբանն իսկ ծանօթս իմաստութեանն ընծայեցուցանէ լինել ասելով եթէ ճանաչել զիմաստութիւն և զխրատ. իմանալ զբանս հանճարոյ։ Որ և գրեցաւ ձեռամբն այսորիկ գրչի, հանդերձ ուսուցանելով մանկունս գրիչս նմին դպրութեան» ... ։ —

« Ի ձեռն առեալ այնուհետև աստուածագործ մշակութեամբ զաւետարանական արուեստն' 'ի թարգմանել, 'ի գրել և յուսուցանել, մանաւանդ հայեցեալ 'ի տեառնաբարբառ հրամանացն բարձրութիւնն, որ առ երանելին Մովսէս եղեալ, վասն ամենայն իրացն եղելոց. յաստուածեղէն պատգամացն բարձրութիւն աւանդելոցն' մատենագրելառ 'ի պահեստ յաւիտենիցն որ գալոց էին ։ ...

« Յայն ժամանակի երանելին և ցանկալի աշխարհս Հայոց անպայման սքանչելի լինէր. յորում անկարծ ուրեմն օրէնսուսոյց Մովսէս' մարգարէական դասուն, և յառաջադէմն Պաւղոս բովանդակ առաքելական գնդաւն. հանդերձ աշխարհակեցոյց աւետարանաւն Քրիստոսի, միանգամայն եկեալ հասեալ 'ի ձեռն երկուց հաւասարելոցն' հայաբարբառք հայերէնախօսք գտան ... Որ և սկսան իսկ սոյնք եկեղեցւոյ' միջամուխ ձեռամբ զգործ աւետարանչացն Քրիստոսի գործել. գումարել 'ի կողմանս, 'ի գաւառս, 'ի տեղիս տեղիս հայաստան ազգին, գաս գաս զաշակերտեալսն ճշմարտութեանն, զչտասուցելոցն 'ի կատարումն գիտութեան, բաւականս և առ 'ի զայլսըն զեկուցանելոյ » ... —

« Եւ յորժամ այսպէս ընդ ամենայն տեղիս լցանէր զսուրբ աւետարանն տեառն, և ամենեցուն զգուշացուցեալ զկենաց ճանապարհն վարելոյ, խորհուրդ առնոյր այնուհետև վասն կէս ազգին Հայոց, որ էր ընդ իշխանութեամբ Թագաւորին Հոռոմոց։

ձեալ՝ թէ երկու դասու կը վերաբերին ասոնք. ոմանք անմիջական գործակիցք և աշակերտք՝ սրբոցն Սահակայ և Մեսրովպայ, և երիցագոյնք և յառաջադէմք սեպուած իրենց աշակերտակցաց մէջ. և այլք կրտսերք կոչուած, որոնք մասամբ այս վերջիններուն ձեռքին տակ և առաջնորդութեամբ կըրթուած էին: Սուրբ Գրոց Թարգմանութեան մէջ աշխատակցութեան գլխաւոր արդիւնքն՝ երիցագոյնիցն էր. ինչպէս միաբան կը վկայեն Կորիւն, Փարպեցի և Խորենացի: Միայն այդ պատմըչաց խօսքերուն մէջ՝ երկբայութեան մասն որ մեզի ընդ առաջ կ'ելլէ յայնմ է թէ սրբոցն Սահակայ և Մեսրովպայ՝ և իրենց աշակերտացն 'ի Թարգմանչաց այսր որո՞ց կը վերաբերի սուրբ գրոց Թարգմանութեան այս կամ այն մասը. զի կամ հասարակաբար՝ կամ մերթ եւս իրարու հակառակ երևոյթ ունեցող խօսքերով կը թուին աւանդել՝ մեզի համար մեծապէս հետաքննելի այս կէտը:

***

Կարելի եղածին չափ լաւագոյն խելամուտ ըլլալու համար՝ այդ յիշուած երեք ժամանակակից անձանց արդէն ծանօթ և շատ անգամ մէջ բերուած խօսքերը միւսանգամ ներկայացընենք ընթերցողաց.

ԿՈՐԻՒՆ. « Հրաժարեալ (սուրբն Մեսրովպ) յեպիսկոպոսացն սրբոց հանդերձ օգնականօքն իւրովք իջանէր 'ի քաղաքն Սամոսատացւոց, յորում մեծապատիւ իսկ յեպիսկոպոսէն և յեկեղեցւոյն մեծարեալ լինէր. և անդէն 'ի նմին քաղաքի գրիչ ոմն հելլենական դպրութեամբ Հռոփանոս անուն գտեալ ... 'ի Թարգմանութիւն դառնային հանդերձ արամբք երկուք աշակերտօքն իւրովք, որոց առաջնոյն Յովհան անուն կոչէին՝ յԵկեղեաց գաւառէն, և երկրորդին

հանջէր իր հովուական պաշտօնը, — այդ հոգեւոր մխասուն դարման մը մատուցանել։ Անշուշտ զայս կ'ուզեն ակնարկել սրբոյ Կորեան հետեւեալ խօսքերը. «Երանելւոյն Սահակայ, կ'ըսէ, զեկեղեցական գրոց գումարութիւնն կանխաւ յունական բարբառոյն 'ի հայերէն դարձուցեալ»։ Ուր եթէ ուզենանք ենթադրել դրչի վրիպակ մը, և ինչպէս հաւանականագոյն և ճշգրտագոյն կրնայ համարուիլ, յունական բառը ասորականի փոխենք, կրնանք հետեւցընել թէ որովհետեւ եպիսկոպոսաց և եկեղեցւոյ պաշտօնէից տագնապն ու գանգատը գլխաւորապէս անոր համար էր որ եկեղեցական պաշտամանց մէջ կարգացուած գրքեր՝ ասորի և յունական լեզուով ըլլալնուն, ժողովրդեան մէջէն շատին անիմանալի որով և անօգուտ կ'ըլլային, սուրբն Սահակ զեկեղեցական գրոց գումարութիւնն, այս ինքն եկեղեցական պաշտամանց ատեն կարդացուած գրքերը փութաց թարգմանել 'ի հայ բան և 'ի գիր։ Բայց եթէ մեկն չառնու յանձն Կորեան խօսքին այդ փոփոխութիւնը՝ և թողու այնպէս, մեր ենթադրութեան բուն իմաստին հակառակած չըլլար. միայն փոխանակ յասորականէ՝ 'ի յունէ եղած կը համարի թարգմանութիւնը։

Սակայն այդպիսի մեծ ձեռնարկ մը՝ սուրբ Գրոց ամբողջ թարգմանութեան, լոկ անձի մը համար ծանր էր և դժուարին աշխատանք, մանաւանդ գլխաւորելը որչափ կարելի էր 'ի սուղ ժամանակի, ինչպէս կը պահանջէր ազգին և հայաստան եկեղեցւոյ կարօտութիւնն։ Հարկ էր նաև այլոց գործակցութիւնն. և այս վախճանաւ գումարեցան աշակերտք որք արդէն հռչականուն են իրաւամբ մեր ազգային մատենագրութեան պատմութեան մէջ, Թարգմանիչք անունով. և որոց կը պարտիմք մեր դպրութեան մեծագոյն և ազնուագոյն մաս մը։ Ծանօթ է մեզ գար-

ուր ազգին պէտքն՝ անհամբեր ըրած էին զամենե-սեան. օր մը, ժամ մը յառաջ իրենց իրաւացի ցան-կութիւնը կատարուած տեսնելու փափաքանօք վա-ռուած էին ամենքեան: Այդ պատճառաւ սուրբն Սահակ հարկ սեպեց որ ասորի Թարգմանութեան մը վրայէն սկսի իր աշխատութիւնը. որովհետև ինչ-պէս քիչ յառաջ առիթ ունեցանք յիշելու՝ հաւա-տարմութեամբը մեծարոյ ու ազգին արդէն ընդու-նելի Թարգմանութիւն մ'էր այն: Կը վկայէ Խորե-նացի. « Դառնայ (Մեսրովպ) և գտանէ զսուրբն Սա-հակ 'ի Թարգմանութեան պարապեալ յասորւոյն՝ յոչ լինելոյ յունին: Քանզի նախ 'ի Մերուժանայ այրեալ լինէին ընդհանուր աշխարհիս յոյն գիրք. դարձեալ 'ի բաժանել զաշխարհս Հայոց՝ չտային պարսիկ վերակացուքն յոյն ուսանել դպրութիւն ումեք յիւրեանց մասին, այլ միայն ասորի »:

***

Սուրբ կամ աստուածաշունչ Գրոց որ մասին Թարգմանութեան նուիրեց արդեօք մեծն Սահակ իր նախկին աշխատանքը: — Հաւանականաբար անոր՝ որուն աւելի կարօտ էր ազգը. և այդ մեծ կարօտու-թիւնն խիստ լաւ բացատրեց հօտասէր հովուա-պետին թէ ինչպէս եկեղեցւոյ պաշտամանց ընթեր-ցուածոց հոգեկան մխիթարութենէն զուրկ կը մնար ազգը. զի թէպէտև յոյն լեզուին դպրութիւնն և ուսում՝ 'ի Պարսից կրած հալածանքովը հանդերձ դեռ եւս ազգին մէկ մասին ծանօթ էր, բայց ոչ մե-ծամասնութեան. որով շատերը, — եկեղեցեաց մէջ գումարուած խուռն բազմութիւն, — լսող միայն կ'ըլլային աստուածային բանին՝ առանց անկէ օգուտ մը քաղելու: Բնական էր որ սրբոյն Սահակայ առա-ջին փոյթն ու ջանքը պիտի ըլլար, — զի զայն կը պա-

կանուխէնէն, յաղագս քո առաքինասէր և պարկեշտ վարուցդ որ նմանեալ ճշգրտապէս օրինակեցեր 'ի քեզ զվարս երանելւոյ հօր քոյ Ներսիսի »։

Աշխարհապաղատ թախանձանք մ'էր, բովանդակ ազգի ընդհանրութեան կարօտութիւնն լսելի ընող ձայն՝ եկեղեցական ու աշխարհական առաջնորդութեան և բազմութեան ժողովրդոց, միաբերան և միախորհուրդք. խառնելով իրենց աղերսանաց հետ նաև զարտասուս. յորում մի է ամենուն նպատակը, զոր Կորիւն, Փարպեցի և Խորենացի միաբան կ'աւանդեն։ Հայկական այբուբենին՝ արդէն մտածուած և յօրինուած կազմակերպութիւնն՝ գեղեցիկ պատեհ և առիթ մ'էր իրենց խնդրուածոց կատարումը փութացընելու, և սուրբ հայրապետին աշխատանքը դիւրին գործելու։ Այսչափ ու այսպիսի իրաւացի թախանձանաց չէր կրնար անլսող երևնալ աստուածասէր ու հայրենեաց բարւոյն փափաքով վառուած սիրտը։ Մտադիւր յանձն առաւ իրեն եղած առաջարկութիւնը. ու անով ամէն իրեն դիմող սրտերը սփոփեց ու քաջալերեց. և վտանգն՝ զոր ինչպէս ըսինք, վերահաս և սպառնալից կը նկատէին՝ ոչ ևս այնպէս խիթալի և անհրաժեշտ կ'երևնար։

Բայց այդ անթիւ բազմութեան մէջ ամենէն աւելի սփոփուածն էր Մեսրովպայ սիրտը. իր մեծ գիւտին, և անոր համար կրած ամէն տագնապներուն, ճգանց ու վաստակոց լիուլի հատուցումն ու վարձքը արդէն ընդունած կը սեպէր։

Սակայն սուրբ Գրոց ստուգահաւատ և ամենայն վստահութեան արժանի յոյն օրինակ մը գտնելը 'ի Հայաստան՝ դիւրին չէր. արդէն ըսինք թէ Մերուժանայ ազգադաւ կրից ու սուրբ կրօնից դէմ ունեցած ատելութեան զոհ եղած էին. անոնց 'ի խնդիր ելլել, մինչև 'ի սահմանս Յունաց և 'ի կայսերանիստ Բիւզանդիոն խնդրակք յղել՝ ժամանակի կարօտ էր,

Թոյլու, զոր զարթոյց աստուածային շնորհն 'ի ցան-
կութիւնս յայս, կարգել զվաղնջուց գրեալ շարա-
գիրս տառիցն, զորս ոչ ուրուք էր հոգացեալ ար-
կանել 'ի կիր․ այլ ասորի մեծաջան և անօգուտ ուս-
մամբքն աշխատեալք յոխորտ, յորոց բազմութիւնք
ժողովրդոց ունայնք և թափուրք հրաժարեալք գը-
նային յեկեղեցւոյն․ և ուսուցիչքն հանելով յո-
գւոց և հառաչելով՝ զղջանային զունոտի ջանս իւ-
րեանց․ յորում ոչ զոք յուսումնասէր ժողովելոցն
տեսանէին օգտեալս 'ի վարդապետութենէ հոգևոր
խրատուցն, որ է կերակուր և պարարումն իմաստ-
նախնդիր անձանց․ մինչ գտաւ գիր, և յաջողելով
Քրիստոսի եկեալ յաճումն տակաւին զօրանայ: Համ-
մայն և զայս վաստակոյս կարգումն, և քոյինդ առա-
քինութեանդ գիտութեամբ եղիցի․ և կատարեաց:
Արդ որպէս և սուրբ նահատակն Քրիստոսի Գրի-
գորիոս պահեալ 'ի խոշտանկանսն անմեռս աջով
Հզօրին 'ի լուսաւորութիւն գիտութեան աշխար-
հիս Հայոց տուաւ, պահեալ շնորհեցաւ և քեզ նո-
րին շառաւիղ՝ վիճակ ժառանգութեան պայծառու-
թեան պաշտամանս այսօրիկ․ սկիզբն առնել գործոյ
մշակութեան այսմիկ, և լինել նմանող սուրբ նախ-
նոյն քում, որ յանգիտութենէ 'ի ճշմարիտ աս-
տուածգիտութիւն առաջնորդեաց աշխարհիս Հա-
յոց: Արդ և դու յանօգուտ մուրողաբանութենէն
'ի սոյդ հոգէշահ եկեղեցազարդ բանաւորութիւնս
առաջնորդեա բազում ժողովրդոց աշխարհիս մեծի․
լնուլ զպակասութիւնս զայս մնացեալ 'ի սուրբ նախ-
նեացն քոց, զոր պահեաց քեզ Աստուած․ զոր ոչ
ումեք այլում 'ի Հայաստան աշխարհիս մարդկան
գոյ հնար ձեռն արկանել յայդպիսի գործ մեծ:
Վասն զի և ոչ կարացաք հմուտ լինել և տեղեկանալ
այդչափ արուեստաւոր ումանցդ, որպէս և քեզ
տուաւ զօրութիւն ճարտարութեան 'ի վերին օգնա-

## Գ. ԱՌԱՋԻՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ Ս. ԳՐՈՑ

### ՅԱՍՈՐԱԿԱՆԷ

---

*Ազգին յորդորեան աղերսք առ Ս. Սահակ վասն թարգմանութեան Ս. Գրոց 'ի հայ լեզու։ — Սուրբն Սահակ ձեռք կը զարնէ այս աշխատանքին յասորականէ։ — Ո՞ր մասին թարգմանութեան նուիրեց նա իր նախկին աշխատանքը։ — Սրբոյն Մեսրովպայ և երիցագոյն աշակերտաց գործակցութիւնը։ — Հանգամանք այս նախկին թարգմանութեան։*

Հայրենեաց վտանգը վերահաս էր։ Հարկ էր փութալ 'ի դարմանն։

Նոյն բարենշան ու նախանձելի դարու պատմըչաց մէկը, Փարպեցին Ղազար, սրտաշարժ ու անմոռանալի տեսարանի մը կը հրաւիրէ զմեզ։ Անոնցմէ գրեթէ տասնըչորս դարու հեռու մնացողքս, դեռ չենք կրնար անկարեկիր ու անարտօսր նկատել զայն։ Թողունք Փարպեցւոյն որ խօսի.

« Ժողովեալ ամենայն ուխտ քահանայք աշխարհին Հայոց, հանդերձ երանելեաւն Մաշթոցիւ, և ամենայն նախարարք աշխարհիս Հայոց և մեծամեծ տանուտեարք՝ առ Թագաւորն Հայոց Վռամշապուհ, և հանդերձ Թագաւորաւն սկսան աղաչել զսուրբն Սահակ՝ արկանել զանձն յաշխատութիւն հոգևոր, և թարգմանել զաստուածաշունչ կտակարանն 'ի յոյն լեզուոյ 'ի հայ բարբառ։ Եւ դասք ուխտ քահանայից ասէին ցսուրբ քահանայապետն, թէ Մեք որ կամք առաջի քո, հանդերձ երանելեաւն Մաշ-

հաթմբիր բռնադատ նիրհմանէ մը արթըննալը, և այն՝ այնպիսի եռանդեամբ, փառօք և արդասեօք, որ տեւեց, խիստ սակաւատեւ եղաւ։

Տեսան ասոնք, կորովաբիր աչքեր և հեռատես միտք, թէ ասորի ազգ, լեզու և դպրութիւն՝ արդէն իրենց ժամանակն անցընելու վրայ էին. ալ ոչ անոնց դպրութենէն և ոչ ալ քաղաքական դիրքէն՝ իրենց հայրենեաց ապագային համար ակնկալութեան տեղ մը մնացած չէր. հարկ էր՝ իրենց երկրին ու աշխարհին վրայ կռուող երկու ազգերէն՝ նախ առաջին պարսիկ իշխանութեան որ ըստ օրէ աւելի սպառնական դիրք մը բռնող ուժը խորտակել ջախջախել, ու անով սրբութեան կրօնից վտանգը հեռացընելէն ետքը, յոյն գիտութեամբ և դպրութեամբ՝ այլ եւս պասքեալ և կարօտ չթողուլ ազգ մը՝ որ իրենց արիւնն, սիրտն ու սէրն էր. և առ այս՝ հարկ էր դիմել և մերձենալ առ յոյնն այնպիսի չափով և խոհականութեամբ՝ որչափ իրենց անհրաժեշտ օգուտը կը պահանջէր. ազգային երիտասարդութիւնն հելլենացընել մտքով, հանճարով ու գիտութեամբ, և հայ պահել սրտիւն և հոգւով։

Թէ որչափ աշխատեցան այս բարեգործ դիտմանն հասնելու՝ մեր երկասիրութեան առաջին մասին մէջ արդէն յիշատակած ենք համառօտիւ. ջանալով մի առ մի, որչափ գիտցեր ու կրցեր ենք հաւաքել 'ի պատմութեանց և 'ի յիշատակարանաց, թուելով իրենց մեծ և սուրբ հոգին ու սիրտը կրող արժանաւոր աշակերտները, ուշիմ՝ երկարոգի, ու մեր հայրենեաց ու իրենց վարդապետաց անմահական պարծանք հինգերորդ դարու ուսումնասէր և ուսումնախնդիր երիտասարդութիւնն։

փոխել վերցընել այն կապն որ զՀայս արեւելեան կայսերութեան ու անոր քաղաքագիտութեան հետ միացընելու կամ անոր հաւատարիմ պահելու զօրաւոր միջոց մ'էր. բնաջինջ ընել զքրիստոնէութիւն՝ եկեղեցեաց աւերակներուն վրայ ատրուշաններ ու կրակի տուներ բարձրացընելով: Այս նպատակին հասնելու համար հարկ էր ընտելացընել իրենց պարսիկ լեզուն, և ծաւալել զայն ընդ բովանդակ Հայաստան. և ուր հարկ ըլլայ՝ ամէն բռնական և անիրաւ միջոց գործածել, յոյն և ասորի լեզուն և դպրութիւն անկէ տարագիր ընելու: Այս միջոցին յաջողութեանը մէջ կը յուսային տեսնել իրենց յաղթանակը: Փառասիրական ձգտումներ և տենչք, նոյն իսկ հայ հողոյն վրայ բնակող՝ բայց հայրենասանգտրխութիւն, սէրն և անձնանուիրութիւն չկրող ազգայնոց, Մերուժաններու, Վասակներու և անոնց նմանեաց, ծածուկ կամ յայտնի գործակիցք, սատար և օգնական ըլլալ կը խոստանային անոնց ջանից: Սրտերնուն հետ՝ նաև ձեռքն ու սուրը անարգ գնով կը վաճառէին, հայրենեաց կրօնքն ու ազգային իշխանութիւնն տապալելու:

***

Հայաստան հայրենեաց կրօնական ու քաղաքային պատմութեան ճգնաժամի մը մէջ՝ սրբոյն Գրիգորի աթոռոյն վրայ բազմած կը ցուցընէ պատմութիւն՝ զմեծն Սահակ Պարթեւ. ոչ լոկ երկնապարգեւ սիրտ ու հոգի մը, այլ մանաւանդ աստուածախնամ տեսչութիւն, ամենափայլ արեգակն մեր ազգային եկեղեցական տարեգրութեանց մէջ: Իրեն ու իր անմահանուն ամոլակցին սրբոյն Մեսրոպայ, և զինքենք քաջալերող ու խրախուսող մեծին Վռամշապհոյ արքային ջանից արդիւնք է՝ Հայաստանի դպրական մա-

մէջ կ՚աւանդեն թէ սուրբ գրոց ընթերցուածոց համար յեկեղեցիս՝ ասորի և յոյն լեզուներով վարուելու սովորութիւնն ունէին մերքն, անտարակուսելի կրնայ համարուիլ թէ պատարագի պաշտամանց մէջ գործածուած երկու լեզուաց համաձայն կ՚ըլլային նաև ընթերցուածք ՚ի սուրբ գրոց, մերթ յասորին և մերթ ՚ի յոյնն։

*
* *

Սակայն այդ երկու լեզուաց ընթերցմամբն ալ չէր օգտուեր ժողովուրդն, վնասուելով մանաւանդ թէ հոգևոր և թէ ազգային շահուց տեսակէտով. և այս երկու վնասն ալ, — ինչպէս ուրիշ անգ ակնարկեցինք, — ծանր ու դժընդակ էր հայրենեաց հոգևորական ու ազգային շահերով տոչորող աստուածամերձ ու հայրենասէր սրտից և ոգւոց։ Երկու լեզուքն ալ ունէին իրենց գոռ և ընդդիմամարտ թշնամիք․ Յոյնք՝ զասորականն կը ջանային վանել մերժել ու ատելի ընել Հայոց, զի արդէն անոնց երկրին մէկ մասին տիրողք, միւս մնացածին վրայ ալ կ՚ուզէին իրենց ազդեցութիւնը զօրացընել, և անով ալ աւելի ընդարձակել քաղաքական իշխանութեան սահմանը. օգնութեան նպաստից խոստմանց մէջ դիւրաշարժք և յօժարափոյթք, գործադրութեան միջոց՝ կարծես թէ քաղաքային նիւթական շահէն զատ ամէն բան կը մոռնային, բռնադատելու համար զազգն որ իրենց իշխանութեան լծոյն տակ խոնարհի՝ մոռադիւր զոհելով իր ու հայրենեաց ինքնօրինութիւնը։ Այսպիսի քաղաքականութեամբ վարուեցան Յոյնք մինչև Շնորհալւոյ ատեններն և անկէ ալ անդին։ Իսկ Պարսիկք, բռունք և մոլեռնախոնդք, քաղաքական իշխանութիւննին ընդարձակելու մտածութենէն ու փափաքէն զատ՝ կրօնական դիտում մ՚ալ ունէին.

***

Կանխեցինք ըսել թէ ասորի ժողովուրդն ունէր անդստին յառաջին դարէ քրիստոնէութեան իւր յատուկ եկեղեցական պաշտամունքը, որով նաև զպատարագամատոյց գիրս։ Անհնարելի ըլլալով ենթադրել քրիստոնէական հաւատոց բարգաւաճմունք և յարատև չարունակութիւն՝ առանց սուրբ պաշտամանց, անտարակուսելի է որ առաքելոյն Թադէոս ասորի լեզուով աւանդած ըլլայ զայն, և անշուշտ զայն սահմանող նուիրական գրոց մէջ ամենէն աւելի պատկառելի հնութիւնն ունեցողը՝ ու Յակոբայ առաքելոյ Տեառնեղբօր սուրբ և մեծարելի անունը կրող Պատարագամատոյցը, որուն վրայ յետոյ դարձեալ առիթ պիտի ունենանք խօսելու. վասն զի այդ պատարագամատուցին ալ հայկական թարգմանութիւնն պահուած է 'ի մեր մատենագրութեան, և հասած մինչև առ մեզ. բայց թէ որ դարուն կը վերաբերի այդ փոխագրութիւնն, երբ և որչափ ատեն տեւած է անոր գործածութիւնն, ինչպէս նաև խափանումը, չենք կրնար որոշակի բան մը ըսել։ Յիշեցընենք միայն որ անոր հետ կը գտնենք 'նաև ուրիշ պատարագամատոյց մը հետևեալ խորագրով. «Պատարագ Աստուծով՝ սրբոյ հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչի». որ հաւանական ենթադրութեամբ սըրբոյ Լուսաւորչին ձեռքով՝ անշուշտ յետ ձեռնադրութեանն 'ի գործին 'ի Կեսարիոյ բերուած է, և 'ի ժամանակին յոյն եկեղեցւոյ մէջ արդէն 'ի գործածութեան էր։ Ասով կ'ըլլան երկու պատարագամատոյցք, մին յասորի եկեղեցւոյ և միւսն 'ի յունականէն փոխադրուած առ մեզ և հրատարակուած, և ըստ տեղւոյ և ըստ ժամանակի 'ի կիրառութեան առ հինն մեր։ Եւ որովհետև հինգերորդ դարու պատ-

*ւաւորաց ուսուցիչն ու վարդապետ, չունեցաւ առիթ ու պատեհութիւն՝ ուղղագիր ու աստուածաշունչ տառից հայկական թարգմանութեամբ օժտել այն ազգն՝ որուն փրկագործ լուսաւորութեանն համար իր արիւնն ու կեանքը տուաւ: Հայաստան աշխարհի՝ իր տանիքն ունեցած քաղաքական դիրքն և ուսումը, և թերեւս նոյն իսկ սէրը Հայրապետին անձնական հանգամանք՝ պահելու տոհմին և արեամբ օտար ըլլալով այն ազգին՝ որուն մէջ անմահանուն պիտի մնար իր արդեամբքը՝ կրնան արգելք եղած ըլլալ իրեն զայն ՚ի գլուխ տանելու: Վասն զի ինչպէս յայտնի է ՚ի պատմութենէ, Անակայ պարթեւազին ծնունդ, անդստին ՚ի մանուկ տիոյն փախստական և հալածուած, սնեալ և վարժեալ առ Յոյնս, ու հաւատոց հետ նաև զշնորհս ձեռնադրութեան անոնցմէ ընդունած, բաւական սեպած պիտի ըլլայ անշուշտ՝ ազգին արդէն ծանօթ և ընդունելի թարգմանութեան վրայ՝ ընդելացընել նաև զայրն՝ զայն գիտցողաց ու հասկցողաց համար. մանաւանդ որ ինչպէս գիտենք, որչափ ալ հայ ազգն ունէր յայնժամ իր բարգաւաճ ծաղկեալ լեզուն, այլ զայն գրաւոր պատմուճանաւ ու կերպարանօք ներկայացընելու էական ու գլխաւոր տարրը կը պակսէր. հայկական յատուկ և ազգային նշանագրաց կամ բոլորովին բացակայութեան և կամ անոնց անկատարութեան պատճառաւ:*

*Այս պակասութեան համար՝ բանադատուած էր քրիստոնէութիւնն ընդունող ու սիրող հայ ազգն՝ փոխանակ իրեն սեպհական լեզուով սուրբ գրոց թարգմանութիւն մը ունենալու, ուրիշ երկու օտար՝ իրեն ծանօթ ու դրացի ազգաց թարգմանութեանց կիրառութեամբն գոհ ըլլալ առժամանակ մի:*

քրիստոնէական կրօնք ունեցան և կրեցին իրենց հալածանք. ինչպէս նաև երկնից ընծայուած վկայից ու մարտիրոսաց ոչ աննշան թիւ մը. երբ այնչափ վառեռանդեամբ և զարմանահրաշ սրտով քարոզուած և ընդունուած շնորհաձիր երկնաւոր վարդապետութեան կառուցած տաճարաց և եկեղեցեաց աւերակներուն վրայ՝ հեթանոսական մոլեգնակրօնութեամբ միաւանդամ բարձրացան գէթ մեհեաններ և բագինք:

Ընդդիմամարտ կռիւ մ'էր՝ հեթանոս ու քրիստոնեայ կրօնից, խաւարի վերջին յուսահատ ճիգն լուսոյ դէմ: Չէր հարկ, չէր արժան տարակուսիլ թէ ով պիտի տանէր փափաքելի յաղթանակը:

Երեքհարիւր և երկու թուականն էր Քրիստոսի լուսաբեր ծննդեան:

Երկնապարգև և աստուածահրաշ թուական մը, Հայոց երկրին լուսաւորութեան, երբ մթին ու մահահոտ վիրապէ մը դուրս կ'ելլէր՝ Հայաստանի հոգևոր կենաց լուսաւորիչը. մահուան արհաւիրքն իրմէ հեռացնելով կենդանի պահուած սուրբն Գրիգոր՝ կը քարոզէր ու կը տարածէր զԼոյս հաւատոյ, զԼոյս անմահութեան, իր երկնաւոր վարդապետին Յիսուսի հոգեհրատ լեզուովը, սրտովը ու խօսքով:

Սուրբ հաւատոց 'ի Հայաստան քարոզութենէն ետքը, անոր աստուածահրաման պատուէրներն, խոստացած մխիթարութեանց երկնաբաղձ ակնկալութիւնքն վառ պահելու, և զայն՝ յօժարակամ և յօժարափոյթ սրտով ընդունողաց սրտին ու մտաց մէջ անեղական ընելու. համար՝ անհրաժեշտ հարկ ու պէտք մ'ալ կայր. — Աստուածաշունչ գիրքը՝ ժողովրդեան ծանօթ ու ընտանի լեզուով ընծայել իրեն:

Սուրբն Գրիգոր Լուսաւորիչ, Հայաստանեայց աստուածագութ ծնողն, սրտիւն՝ արեամբ ու հրապարակաքարոզ վարդապետութեամբ՝ այս սուրբ հա-

քով միւսներուն ժամանակ անցներէն եալը։ Ասիկայ մեծ ապացոյց մ'է, ինչպէս ըսինք, ասորական պարզ կամ անպաճոյճ կոչուած թարգմանութեան հնութեանը։

Ասորական Փեշիտտա թարգմանութեան մեծ յարգ մ'ալ իր ընթերցուածոց հարազատութիւնն է, որուն թերեւս տակաւ կարենան հաւատարիլ. և հաւանականաբար այս այլ պատճառ մ'է մեր նախնեաց զայն նախընտրի ընելուն 'ի թարգմանութեան սուրբ գրոց։ Այս հարազատութիւն արդիւնք է ոչ միայն լեզուին կազմաւորութեան և գրութեան՝ որ աւելի մտագրութիւն կը պահանջէ, այլ նաև այն ընդհանուր մեծարանաց զոր կը վայելէր բովանդակ ասորի լեզուն գործածող ժողովրդոց մէջ։

Երկասիրութեանս առաջին մասին մէջ առաջ բերած ենք Վարդանայ վարդապետի գրութիւնն առ Հեթում Թագաւոր Թադէի ընծայուած սուրբ գրոց թարգմանութեան վրայ. հոս երկրորդելը աւելորդ կը համարինք[1]։

* * *

Հաւանական է ուրեմն ենթադրելը թէ Աբգարու ընդունած, և ըստ աւանդութեան, իր հրամանաւ ասորական թարգմանութեան վերածուած սուրբ Գիրք՝ ծանօթ և գործածական եղած ըլլան նաև Հայոց, որոց վրայ կը թագաւորէր. և որ ունեցաւ իր շարունակութիւնն՝ մինչև որ յատուկ իրենց լեզուով ունեցան թարգմանութիւն մը։ Այս վերջին դէպքին՝ ու Թադէի 'ի Հայաստան գալուն և քարոզութեան մէջ եղած միջոցը՝ չորս երկար դարերու միջոց մ'է. յորում մեր հայրենի հողոյն վրայ ալ

[1] ՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՆ ՄԱՏԵՆԱԳՐ., Բ, եր. 152։

ծագմամբ տօհմին, դիւրաւ կու տայ որ երբեք որոշակի յայտնի եղած չէ թէ ով է անոր բուն թարգմանիչը։ Երբ չորրորդ դարուն վերջերը անծանօթ էր թարգմանիչը, բնաւ է որ դարերով առաջ եղած պիտի ըլլայ այդ աշխատանքին ձեռք զարնողը, ապա թէ ոչ, իր անուան այդպէս անծանօթ մնալու բնականօրէն պատճառ մը չէր ըլլար։ Սուրբն Եփրեմ՝ որուն կենաց վախճանը ճիշդ այն ատեն կը հանդիպէր յորում և ծնանէր Մոպսուեստացի, բաց 'ի Փեշիտայէ ուրիշ սուրբ թարգմանութիւն չիճանչնար. այլ զայն կը գործածէ և կը մեկնաբանէ։ Կը յիշատակեն դարձեալ զայն սուրբն Մելիտոս եպիսկոպոս Սարդիկեայ (160-170). և իրմէ քիչ յառաջ կամ ժամանակակից սուրբն Հեգեսիպպոս առ Եւսեբեայ[1]. «Յաւետարանէ անտի հեբրայեցւոց և ասորւոց. և առանձինն ինչ ինչ եդ նա 'ի լեզուէ հեբրայեցւոց»։

Ուրիշ պարագայ մ'ալ որ կը ցուցընէ թարգմանութեանս հնութիւնը՝ այն է որ երկար ժամանակ պակասէին յայնմ թարգմանութեան երկրորդականոն կոչուած կաթուղիկէ թուղթք առաքելականք. ինչպէս Պետրոսի երկրորդը, երկրորդն և երրորդ Յովհաննու, և թուղթն Յուդայի։ Ոչ եթէ արևելեան եկեղեցեաց՝ ասորւոց, հայոց, մելքիդայ, յակոբիկեանց, նեստորականաց և մարոնեաց անընդունելի էին այս սրբազրոշմ գիրք, այլ վասն զի ասորական թարգմանութեան ատեն այս թղթերն դեռ ևս ամէն տեղ Աստուածաշունչ գրոց կանոնին մէջ անցած չէին. և յայլուստ յայտնի է որ եկեղեցւոյ կարծիք և որոշմունք անոնց վրայ յամր եղան, քան մնացած երեք կաթուղիկէայց. որով նոր կտակարանին գրչագրաց մէջ միշտ այս վերջիններն կ'անցնէին,

[1] Պատմ. Եկեղ. Դ. ԻԲ։

հանելով թարգմանեցին հին կտակարանը 'ի հեբրայեցւոց լեզուէ յասորականն. իսկ եօթանասնից վրայէն եղածը՝ երկասիրութիւն է Պաւղոսի եպիսկոպոսի Թէլլա Մաւզալաթ քաղաքի»: Բար-Հեբրայ այս վկայութեամբ՝ երկու թարգմանութիւնքըն ալ՝ թէ հին և թէ նոր կտակարանի՝ ժամանակակիցք և իրարու մերձաւորք կը հանդիպին: Եւ յայտնի է 'ի պատմութեանց որ ինչպէս Հայք, ասանկ նաև Ասորիք ունեցած են իրենց թարգմանչաց դարը. այս տարբերութեամբ միայն՝ որ վերջինքս երեք դարու կանխած են քան զմեզ:

Քրիստոնէութեան առաջին դարերէն 'ի վեր կայր Ասորի եկեղեցի, որ ունէր իր յատուկ եկեղեցական պաշտամունքը, և սահմանակցական քաղաքական յարաբերութեամբքն՝ մեծ ազդեցութիւն մը Հայաստանի վրայ, քանի որ այս վերջինս իր բուն ազգային մատենագրութիւնն չունէր՝ մինչև ցսկզբնաւորել հինգերորդ դարու: Ասորի եկեղեցին այսպէս կերպաւորուած՝ հարկաւ պէտք պիտի ունենար նաև սուրբ Գրոց թարգմանութեան, և ամենէն աւելի և յառաջ՝ սուրբ Աւետարանին: Բայց անկէ, ընդհանրապէս ընդունուած աւանդութիւն մը, մեզի կը սորվեցընէ թէ սուրբն Մատթէոս իր աւետարանը շարադրած ըլլայ արամէական լեզուով, այսինքն այն լեզուով՝ որուն արդի ասորականն մէկ ճիւղն կամ անոր մէկ բարբառն է: Գիւրըլթոն այս կարծիքն յայտնապէս վաւերացուցած է իր Քննութիւնք 'ի վերայ հին թարգմանութեան չորից աւետարանաց յասորի լեզու կոչուած գրքին մէջ. (Remains of y very ancient recension of the four Gospels in syriac; London, 1857).

Հինգերորդ դարուն սկիզբը կամ 'ի վերջ չորրորդին, Թէոդորոս Մոպսուեստացի, որ քաջածանօթ էր Փէշիտտա թարգմանութեան, վասն զի ասորի էր

և հաւատարիմ թարգմանութիւն մը՝ ինչպէս է աստորին. ուստի և անշուշտ ոչ Հրէից՝ այլ այն կողմերը գտնուող քրիստոնէից համար եղած է այն փոխադրութիւնը, և այն ալ 'ի սկզբան քրիստոնէական թուաբերութեան։ Նոր կտակարանին թարգմանութեան մասը կը կարծուի թէ առաջին դարու երկրորդ կիսուն կամ յառաջին քառորդի երկրորդին եղած ըլլայ յԵդեսիա կամ 'ի վերին Միջագետս։ Առ մեզ հասած ամէն վկայութիւնք կ'ընծայեն զայն Ադդէի կամ իւր աշակերտաց. ոմանք ևս Աբգարու թագաւորի, թէպէտև նախնական քրիստոնէութեան ժամանակէն մնացած սուրբ գրութեանց չգտնուելուն՝ դժուարին կ'ըլլայ որոշակի բան մը սահմանելը։ Սակայն հայ և ասորի պատմչաց ոմանց մէջ գտնուած տեղեկութիւնք՝ կրնան գէթ մասամբ լուսաբանել այս խնդիրը, որուն համաձայնին 'ի մերոցն մեծն Վարդան և յասորւոց Բար-Եբրէոս երեքտասաներորդ դարու մատենագիրք, Մ. Բար-քեփաս որ մեռած է 'ի սկիզբն տասներորդ դարու (913). Իշու-տատ յիններորդին և Յակոբ Եդեսացի յութերորդին (+ 710)։ Բար-Եբրէոս և Բար-քեփաս՝ Եդեսացւոյն վկայութեամբ կը հաստատեն իրենց կարծիքը. «Արժան է գիտել, կ'ըսէ Բար-քեփաս իր վեցօրէից մեկնաբանութեան դրոցը մէջ. որ երկու թարգմանութիւնք կան հին կտակարանի 'ի մեր ասորական լեզուի. յորոց մին Փեշիտտա կը կոչուի, զոր կը կարդանք յեկեղեցւոջ. և հեբրայականին վրայէն եղած փոխադրութիւն մ'է. իսկ միւսն եօթանասնից՝ որ յունարէնին վրայ թարգմանուած է։ Փեշիտտա կամ յեբրայականէն եղածը Աբգար թագաւորին ժամանակէն է. ինչպէս կ'աւանդէ մեզ Մար-Յակոբ Եդեսացի թէ առաքեալն Ադդէոս և հաւատարիմ արքայն Աբգար մարդիկ ղրկեցին յԵրուսաղէմ և 'ի Պաղեստին. որոնք հան

պորզ կամ անպաճոյճ կոչուելուն պատճառը՝ ուրիշ թարգմանութիւններէ զանազանելու համար է. որ յետոյ քան զայն յեօթանասնից թարգմանութենէ կամ Որոգինեայ Վեցիցեանի վրայէն եղած են. որոնք աւելի յղկուած ու զարգարուն ոճով և լեզուով եղած էին համեմատութեամբ Փէշիտտայի, որուն ոճը աւելի անզարդ, բայց բնական և ընտրելագոյն էր, և ասորի լեզուի հեանւողութեան օրինակ մը համարուած ։

Փէշիտտայի թարգմանութեան ճիշդ ժամանակը յայտնի չէ։ Հին կտակարանին թարգմանութիւնը ոմանք մինչուան Սողոմոնի ժամանակէն եղած կը համարին։ Ասիկայ է Իէշու-Դատ (Եհուատա) Հատէա քաղաքի ասորի եպիսկոպոսին (յութերորդ կամ յիններորդ դարու ապրած) կարծիքը։ Սուրբ գրոց դժուարիմաց տեղուանքը մեկնաբանելու դիտմամբ յօրինած երկասիրութեանն մէջ կ'ըսէ թէ Հնգամատեանն, Յեսու, Դատաւորք, Հռութ, Սամուէլ, Դաւիթ, Առակք, Ժողովող, Երգերգոց և Յոբ՝ Սողոմոնի ժամանակ թարգմանուեցան Տիւրոսի Քիրամ թագաւորին խնդրանօք։ Իսկ հին կտակարանին ատոնցմէ դուրս մնացած գրքերը, – կը յաւելու նոյն եպիսկոպոս, – Նոր կտակարանին հետ թարգմանուեցան Եդեսացւոց թագաւոր Աբգարու ատեն 'ի ձեռն Ադդէի և այլոց առաքելոց։ Ընդհանրապէս կը կարծուի թէ քրիստոնէական կրօնից առաջին դարուն կը պատկանի այս թարգմանութիւն, եբրայական բնագրին վրայէն եղած։ Դժուարին է ենթադրելը թէ այն հեբրայեցւոց գործածութեանն համար եղած ըլլայ, որ կամ իբրև գերեալք և կամ առևտրոյ պատճառաւ բազմութիւ ասս անդ ցրուած էին յԱսորիս և 'ի Միջագետս։ Վասն զի եթէ Հրէից համար սահմանուած ըլլար՝ հաւանականաբար աւելի յարասնկան՝ Թարկումի ոճ պիտի ունենար՝ քան ճիշդ

ժողովրդեան առաջի՝ զԱրտաշատ և զՄարգարէս և զԱւետարան. և զԹուղթս Պաւղոսի զոր ետ բերել Սիմոնէ Պետրոս 'ի Հռովմ քաղաքէ, և զԳործս առաքելոցն՝ զոր ետ մեզ բերել Յովհաննէս որդին Զեբեդեայ յԵփեսոս քաղաքէ: Զայն իսկ զայս գիրս ընթերցջիք յեկեղեցւոջ Քրիստոսի. և այլ աւելի քան զսոսա մի ընթեռնուցուք. քանզի չիք այլ ինչ յորում գրեալ զՃշմարտութիւն. բայց 'ի գիրս զոր ընկալարուք հաւատովք յոր կոչեցարուք»: Լաբուբնեայ գրոց այս հատուածը իրաւամբ եկամուտ կը սեպուի 'ի հմտից, ասորի և անհարազատ. և այս կարծեաց յայտնի պատճառը՝ ինչպէս ըսինք, այն առեն Նոր կտակարանին և ոչ մէկ մասը դեռ գրի առնուած չըլլալն էր. և Թադէի յետ համբարձմանն Քրիստոսի 'ի Հայաստան անմիջապէս առաքելութիւնն՝ մերժուել է յԵւսեբեայ և յայլոց. և 'ի առհմային պատմչաց:

Առ. Ասորիս աւանդութիւն է թէ Աբգարոս հրամանաւ՝ Թադէի կամ իր աշակերտաց ձեռքով եղած ըլլայ հին կտակարանին Թարգմանութիւնն յասորի բարբառ: Նոյն լեզուով չորս այլևայլ և իրարմէ տարբեր Թարգմանութիւնք կան գրոց սրբոց. և են Ա. Փէշիտտա կոչուածը: Բ. Փիլոքսեան – Հերակլեան: Գ. Գիւրըթանի անունը կրող Թարգմանութիւնն, իր ձեռքով գտնուած և հրատարակուած ըլլալուն, և Դ. Երուսաղէմին:

***

Հնագոյնն ասոնց մէջ ըստ արևելագիտաց հմտից՝ է Փէշիտտա Թարգմանութիւնն: Որոշ չգիտցուիր թէ ինչ կը նշանակէ այս անունն. բայց ընդհանրապէս կը Թարգմանուի պարզ կամ անպաճոյճ, և հաւանական կ'երևնայ թէ ասորի այս Թարգմանութեան

## Բ. ԱՍՈՐԻ ՀԻՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՔ

---

*Ասորւոյ հին թարգմանութիւնք Ս. Գրոց յառաջ լեզու։ — Փէշիտտա կոչուածը։ — Ժամանակ թարգմանութեանն։*

Մեր օրերէն քիչ յառաջ յիշատակած խօսքը՝ հարկ է մէկանգամ երկրորդել՝ թէ ինչպէս ասորի լեզուն և գրութիւն մեզ գտնելով ծառայած և ընտանի եղած էր առ մեր նախնիս՝ գլխաւորապէս այն պատճառաւ որ աշխարհագրական դիրքովը այն լեզուն գործածող ժողովրդոց մերձաւոր էր, ու երբեմն նաև մասը այն երկրին և իշխանութեան աթոռն վրայ Աբգարներ կը տիրէին։ Հայաստանի առաքելային սրբազան ալ 'ի վերնատան իր առաքելակցաց հետ լեզուաց պարգևն ընդունելուն հաւատանք, և Լամբրոնացւոյն հետ չտարակուսինք թէ «Հայոց մեծաց բանաքն վայելուչ զբանս իւր յօդէր», բայց պատմական հաւաստիք մը չունինք թէ աստուածաշունչ խօսքերը ինչ լեզուով իրենց ընտանեցուցած ըլլայ. և թէպէտ ուրիշ առաքելոց աւետարաններն ալ հետերնին տարին, Քրիստոսի խօսքին ու վարդապետութեան հետ, բայց Թադէի համար նոյնը չենք կրնար ըսել. անմիջապէս յետ համբարձման Փրկչին երևնալով 'ի Հայաստան, յորում ժամանակի դեռ աւետարանք գրի վրայ առնուած չէին։

Աբգարու թղթոյն մէջ՝ որուն հեղինակն է արդէն մեզի ծանօթ դիւանագպիրն Լերուբնիա, հետևեալ խօսքերուն կը հանդիպինք 'ի վարդապետութեան Թադէի. «Զինչ զոր ընթեռնուցուք յեկեղեցւոջ

Աւելորդ կը համարինք այլոց նշանաւոր և պատկառելի հարց եկեղեցւոյ և վարդապետաց վկայութիւնն 'ի մէջ ածել։ Յիշենք միայն 'ի մերոց փառքն Ներսէս Շնորհալի, որ կ'ըսէ (Մեկն. Մատթ.) «Բայց զայլն ամենայն արժանի հաւատարմութեան եւթանասունքն էին. որոց յոլովագոյն ամօք յառաջ քան զՆնունդն Քրիստոսի 'ի միասին գումարելով գրեցին. որք և ազատ իսկ են յամենայն կարծեաց՝ նախ ժամանակաւն և ապա բազմութեամբն, և զի զմի բան ասացին ամենեքեան»։

Մեր ազգն Թէպէտև ունեցաւ գաղթականութիւն մը 'ի Հրէից՝ առհմին ազնուութեամբ և պատմութեամբ բարգաւաճ Բագրատունեաց ցեղը, որք որչափ ալ ջանացին և ուզեցին առջի բերան պահել իրենց ազգութիւնն, բայց ապա բռնադատուած 'ի հարկէ և 'ի հանգամանաց ժամանակին, չուշացան հայ ազգին հետ ձուլուիլ բոլորովին. որով մինչ 'ի Քրիստոս գրեթէ ամենևին կամ ամենաքիչ յարաբերութիւն ունեցան մերքին ընդ Հրէից, անծանօթ մնալով նաև անոնց գրաւոր օրինաց։ Իսկ երբ Թադէոս ու Բարթողիմէոս սուրբ առաքեալներն աստուածահրաշ քարոզութեան լոյսը բերին 'ի Հայաստան, ու իրենց առաքելաջան արդիւնաւոր վաստակօք ծաւալեցին, հարկ եղաւ նաև հին կտակարանն ալ ընդելացընել այն ժողովրդեան՝ որ ո՛չ ևս երկրպագէր, իր յոյսը երկրաւոր և ունայնաւոր աստուածներէն վերցընելով՝ կը հաստատէր միակ ու ճշմարիտ Աստուծոյն վարդապետութեանց ու խոստմանց հաստատուն հիման վրայ։ Բայց թէ ո՛ր լեզուով կը մատուցուէր իրեն այս պարգևը, պիտի տեսնենք համառօտիւ։

զուի կատարեալ հմտութիւնն մեծ յարգ և արժէք ունէին իրենց աշխատանաց. և որուն ազնուագոյն գովութիւնն է՝ որ նոյն ինքն Բանն մարդացեալ՝ որ իր հոգւովն ազդեց և խօսեցաւ մարգարէից բերնով, ինչպէս նաև իր սուրբ առաքելովքն նոյն թարգմանութիւնն գործածեցին, որպէս քաջայայտ է յաւետարանաց և յառաքելական թղթոց:

Հետևաբար նոյն յարգն ու մեծարանք ցուցին նաև քրիստոնէութեան առաջին դարերն հարք ու վարդապետք եկեղեցւոյ. և երբ ժամանակ անցնելէն ետքը սուրբն Հերոնիմոս ուզեց նոր թարգմանութիւն մը ընծայել 'ի հեբրայականէ 'ի լատին, անոնց շատին, — մանաւանդ իր ժամանակակցաց, — դժկամակութեանն ու թարգմանչին կրած հալածանաց պատճառ եղաւ:

Կը վկայէ Նաւերի (Չ'ի Քրոնիկոնին). « Յամենայն կողմանց իսկ յայտ է, թէ եւթանասնից թարգմանութիւն 'ի հին և յանախառն օրինակաց Եբրայեցւոց թարգմանեցաւ … մանաւանդ զի և եկեղեցի իսկ Քրիստոսի՝ որ ընդ ամենայն ափեզերս տարածեալ է, զնա միայն կրէ, զոր և կենարարին մերոյ առաքեալք և աշակերտք 'ի բնէ աւանդեցին 'ի կիր արկանել »: Իրմէ յառաջ՝ սուրբն Իրենոս եպիսկոպոս Լուգդունի. « Առաքեալք միաձայնին ընդ նախասացեալ թարգմանութեան, և թարգմանութիւնն համաձայնի առաքելոցն աւանդութեան: Քանզի և Պետրոս և Յովհաննէս և Մատթէոս և Պաւղոս, և այլք զկնի և նոցին հետևողք, զմարգարէութիւնս ամենայն այնպէս ճառեցին, զոր օրինակ ունի ծերոցն թարգմանութիւն: Վասն զի մի և նոյն հոգի Աստուծոյ, որ 'ի մարգարէս կանխաւ քարոզեաց, թէ ո՛ր և որպիսի՛ նիցի գալուստ տեառն Քրիստոսի, և 'ի ծերս բարւք թարգմանեաց զբարւոք մարգարէացեալն, նոյն ինքն և յառաքեալս աւետարանեաց »:

րը. «Եւ երբեւ հասու եղեւ (Թագաւորն) զի եւթանասունքն ոչ միայն նովին մտօք, այլ եւ նովիմբք վարեցան բառիւք, եւ ոչ իսկ ցմի բառ օտարացան յառ միմեանս միաձայնութենէ, այլ եւ զնոյնս եւ զնոցին իրաց գրեցին, յապշութիւն կրթեցաւ. եւ հաւատացեալ թէ աստուածային զօրութեամբ գրեցաւ թարգմանութիւնն, ամենայն պատուոյ արժանիս զնոսա վարկաւ, որպէս արս աստուածահաճոյս. եւ բազում պարգեօք հրաման ետ նոցա դառնալ 'ի հայրենիս իւրեանց. եւ ընդ գիրսն սքանչացեալ՝ որպէս արժանն էր, եւ աստուածային մեծարանօք պատուեալ, անդանօր զետեղեցոյց: Զայսոսիկ ոչ ձեզ առասպելս, արք հելլենացիք, եւ ոչ մտախաբ պատմութիւնս ճառեմք. այլ քանզի յԱղեքսանդրիա հանգիպեալ, եւ զհետս սենեկացն 'ի Փարոս տեսեալ տակաւին մնացեալս, 'ւ յորոց անդն կային, իբրեւ 'ի հայրենի իւրոյն աւանդապահաց լուեալ, զայսոսիկ պատմեմք. զորս եւ յայլոց 'ի դէպ է ձեզ ուսանել, եւ առաւելապէս յորոց վասն սոցին իրաց պատմագրացաց, յիմաստուն եւ յերեւելի արանց, 'ի Փիլոնէ եւ 'ի Յովսեպոսէ եւ յայլոց յոլովից [1] »:

***

Առանց ուզելու այս պատմութեան յարակից հանգամանաց եւ աւանդից ստուգութեան վրայ վիճել, որ մեր նպատակէն դուրս է, բաւական կը սեպենք ըսել թէ եօթանասունուերկու թարգմանչաց երկասիրութիւնը մեծապէս հաճոյացաւ Թագաւորին. եւ իր մատենադարանին մէջ պատուով ու զգուշաւոր խնամօք պահել տուաւ զայն: Արքունական հաճութիւնը, ու թարգմանչաց հեբրայական եւ յոյն լե-

[1] Յորդոր առ Հելլէնս:

***

Հինք Արիստէասի կ՚ընծայեն զայս մանրամասն գրութիւն. զոր անհարազատ կը համարին՝ բազմագոյնք յարդի քննադատից։ Բայց իրմէ զատ յառաջ և յետոյ, գրեթէ նոյնպիսի պարագաներով կ՚աւանդեն և այլ հինք և ամենայն հաւատարմութեան արժանաւոր անձինք, որք և ժամանակաւ մերձաւորք էին Պտղոմէոսի Փիլադելփեայ. ինչպէս Արիստոբուլոս աղեքսանդրացի, որ կը յիշատակուի Մակաբայեցւոց գրքին՝ մէջ. Փիլոն հեբրայեցի, և եկեղեցւոյ հին և սուրբ վարդապետներէն՝ Յուստինոս Վկայ, Իրենէոս, Կղեմէս աղեքսանդրացի, Կիւրեղ Երուսաղեմի, Եպիփան և այլք։ Սակայն հաւանականագոյն կ՚երեւնայ թէ այդ պարագայից մեծագոյն մասը՝ որ օտարանալ թուին 'ի ճշմարտութենէ՝ Հրեայք աւելցուցած ըլլան, եօթանասուն ռաբունեաց այս թարգմանութեան յարգն բարձրացընելու համար, նոյն իսկ սրբոյն Յուստինոսի օրերէն (յերկրորդ դարու քրիստոնէութեան); որով աւելի առասպելապատում կերպարանք մը տուած այդ նշանաւոր և իրական դէպքին։ Սուրբն Յուստինոս առանց ամենեւին տարակոյս մը ցուցընելու, – և կ՚երեւնայ թէ իր ատենին ալ կային յերկմիտք, – կ՚աւանդէ թէ յԱղեքսանդրիա գտնուած ատեն Հրեայք պատմեցին իրեն թէ Թագաւորը եօթանասուներկու թարգմանիչքը առանձին սենեակներու մէջ փակել տուած ըլլայ, և թէ անոնցմէ ամէն մէկը ամբողջ սուրբ Գրոց Թարգմանութեան անդադար պարապելով, երբ իրենց աշխատանքը աւարտելով իրարու քով եկան, մանաւոր սքանչելեօք ամենուն Թարգմանութիւնն բառ առ բառ, տառ առ տառ բոլորովին մէկմէկու համաձայն գտնուեցաւ։ Յառաջ բերենք իր խօսքե-

Փառուն կղզւոյն յանդիման Աղեկսանդրի. ուր շինեաց երեսուն և վեց սենեակ, երկու երկու արգելեալս յայգուէ մինչև ցերեկոյ. և երեկոյին զնոսա 'ի նաւուկսն հանեալ և անցուցեալ յայնկոյս յապարանսն Պաղոմեայ Թագաւորի, և ընդ նմա ընթրել ... զի մի կարասցեն խորհել ընդ միմեանս, այլ առանց իւրեարց գիտելոյ թարգմանեսցեն: Եւ այնպէս թարգմանեցին երկու երկու արգելեալք 'ի սենեակ. և երկու երկու մանկունս ընդ նոսա արգելեալս 'ի սպասաւորութիւն նոցա և պատրաստել զդարմանն նոցա, վասն փութանակի գրելոյն. և սենեակ կըրկնակի շինեաց, և պատուհանս 'ի կողմանէ ոչ եթող, 'ի վերուստ 'ի ձեղուանէն լուսանցս եբաց. և այնպէս արգելեալք ընդ փակով յայգուէ մինչև ցերեկոյ թարգմանեցին զամենայն կտակարանս երկու երկու զոյգ զմի գիրս, սկսեալ յԱրարածոյն, և 'ի կատարել առաջին զուգին զգիրսն, տային ցերկրորդն, և յերկրորդէն ցերրորդն. այնպէս շուրջ եկեալ մի մի գիրք երեսուն և վեց, և թարգմանեցաւ կտակարանքն՝ որպէս վերագոյն ասացաք: Եւ յորժամ կատարեցաւ, նստաւ Թագաւորն 'ի բարձր աթոռ, և երեսուն և վեց ընթերցողքն առաջի նորա. նախանձ ունելով երեսուն և վեց գրոյն միմեանց միաբան գտանել, և հաւասար Եբրայեցւոյն, առընթեր ունելով զեբրայեցի օրինակն, և միոյն ընթերցեալ՝ այլոցն ամենեցուն միտ դնելով յանդիման Թագաւորին, և ոչ գտաւ ամենեւին երկբանութիւն»:

Այս հատուածը գրեթէ բառ առ բառ կ՚ընդօրինակէ Վարդան վարդապետ 'ի Մեկնութեան սաղմոսաց, ընծայելով զայն Եպիփանու Կիպրացւոյն:

տաղէմ, և գրեն վարդապետքն և փութաքեն առ քեզ·
զի զայն գիցես 'ի քում բարեպաշտութեան գրա-
նոցիդ ։

« Յայնժամ գրէ Թուղթ օրինակ զայս. — Թագա-
ւոր Պտղոմէոս որ յԵրուսաղէմ վարդապետք Հրէից
յոյժ խնդալ. Գրանոց է իմ կազմեալ, և բազում
գրեանս ժողովեալ յիւրաքանչիւր ազգաց և 'ի նմա
'ի ներքս եդի. բայց լուեալ թէ առ ձեզ գոն գրեան
մարգարէիցն որ վասն Աստուծոյ և աշխարհագոր-
ծութեան ցուցանեն. և զայդ հանդերձ այլովք ա-
ռանց նախանձու ցանգացեալ գրեցի առ ձեզ. զի
առաքիցէք ինձ վասն պատուոյ, և ոչ քինու և չարա-
կամութեամբ, զի ոչ եմ այդպիսի իրաց 'ի խնդիր·
այլ վասն հաւատոց և ձեր օգտի զդասս խնդրեմ·
և վաղնջուց 'ի մէնջ առ ձեզ լեալ բարեմտութիւն
զմտաւ ածէք ...

« Եւ Թուղթս առաքեցաւ. նմանապէս և ընծայքս։
Եւ նոցա ընդալեալ զԹուղթս և ընթերցեալ, և զորս
առաքեացն անսեալ, յոյժ ուրախ եղեն. և առանց
յապաղելոյ՝ զգրեանսն ոսկով եբրայեցի լեզուաւ
գրեալ առաքեցին քանեերկու գիրք որ յայանի
օրինաւորք էին, և եւթանասուն և երկու որ 'ի
ծածուկք էին։ Իսկ Թագաւորն ընկալեալ և յա-
ռեալ 'ի նոսա, և ոչ կարացեալ ընթեռնուլ, վասն
զի գիրն եբրայեցի էր և բանն եբրայեցի՝ գրեալ երկ-
րորդ Թուղթ ... Արժանի արարէք Թարգմանիչս
մեզ առաքել որ յերկոտասարդական հաւասի իցեն.
և ճշգրտութեամբ եբրայեցի և հելլենացի լեզուաւ
իմաստացեալ, և վարժ ուսմամբ։ Եւ յայնժամ զա-
ռացեալս զեւթանասուն և երկու այս Թարգմանիչս
ընտրեալս 'ի վարդապետացն Հրէից առաքեցին, ըստ
օրինակին զոր արար Մովսէս յորժամ ել 'ի լեառն
հրամանաւ տեառն ... ըստ սմին օրինակի և սոքա
առաքեցան որք Թարգմանեցին զհին կտակարանս 'ի

թելադիր լինէին նոցա Հեբրայեցիքն, զթարգմանու-
թիւն քան և չորս մատենիցն։ Եւ իբրև յամբոկ
գործոյն հասեալ ժամանեցին, ածէր կացուցանէր
զնոսա Եղիազարոս առաջի թագաւորին. և 'ի համե-
մատութիւն արկեալ, գտանէին միաբան և միախոր-
հուրդ զթարգմանութիւնն»։

***

Աւելի մանրամասն, թերևս ոչ այնչափ ստուգա-
պատումով, ուրիշ հին գրութեան մը մէջ ալ, որոյ
թարգմանութիւնն 'ի նախնեաց հասած է մինչև առ
մեզ, մերթ անանուն՝ և մերթ Եպիփանու ընծայե-
լով։ Դնենք և զայն՝ համառօտելով, իբրու հետա-
քննելի և հաճոյական բանասիրաց։

«...Պտղոմէոս թագաւորեաց յԱղեքսանդրիա,
որ կոչեցաւ Եղբայրասէր, և այր իմաստասէր. որ
գրանոց կազմեաց ժողովել զամենայն գիրս որ 'ի վե-
րայ երկրի. գրել թուղթս և յօժարեցուցանել
զամենայն թագաւորս երկրի... Եւ իբրև իրքն յա-
ջողեցան, և գրեանն ամենայն աշխարհաց ժողովե-
ցաւ, եհարց թագաւորն որում զգրեանն հաւատա-
ցեալ էր՝ 'ի միում աւուրց. քանի՞ գիրք ժողովեալ
են 'ի գրանոցին. և նա ասէ՝ չորք բիւրք և ութ հա-
րիւր մի աւելի կամ պակաս. բայց լսեմ թէ աւելի
գիրք գոն յաշխարհի 'ի կողմանս Եթէովպացոց,
Հնդկաց և Պարսից և Ելիմացոց և Ասորեստանեաց
և Բաբելացոց և Քաղդէացոց. առ Հռոմայեցիս և
Փիւնիկեցիս, յԵլլադայ, այլ և յԵրուսաղէմ և 'ի
Հրէաստանի գոն աստուածային գիրք մարգարէիցն,
որ պատմեն վասն Աստուծոյ և աշխարհագործու-
թեանց, և այլ ամենայն հասարակաց օգտութեան
վարդապետութիւն։ Արդ եթէ հաճոյ թուի քում
թագաւորութեանդ առաքել վասն այսոցիկ յԵրու-

կը պատմուի Մակաբայեցւոց չորրորդ գրոց մէջ՝ որ է 'ի կարգի անյայտ և անվաւեր գրոց հին կտակարանի, և որոյ Թարգմանութիւնն չկայ առ մեզ. « Պտղոմէոս Մակեդոնացի իբրև դադարեաց զտեղի կալաւ յԵգիպտոս, և հռչակեալ զօրացաւ համբաւ գիտութեան նորա և իմաստութեան. միաբանեցին Եգիպտացիք կարգել կացուցանել զնա Թագաւոր 'ի վերայ աշխարհին: Եւ յորժամ նստաւ նա յաթոռ Թագաւորութեանն, այնուհետև զամենայն փոյթ և ջան 'ի մէջ առնոյր՝ յադեցուցանել լնուլ զտենչանս գիտութեանն, և հրաման պատուիրանի 'ի վերայ դնէր՝ գումարել 'ի մի վայր ժողովել զամենայն գիրս իմաստնոց: Ցանկացաւ ունել 'ի դիւանս մատենից իւրոց նաև զքսան և չորս գիրս սուրբս. և գրեաց Թուղթ առ քահանայապետն մեծ Երուսաղեմացւոց քաղաքին, հանդերձ ընծայիւք պատարագաց. աղաչէր խնդրէր՝ արս եւթանասուն և երկու 'ի Հրէից յղել առ նա, 'ի զարգացելոցն հաստակաւ և գիտութեամբ օրինաց: Զոր ընկալեալ քահանայապետին զԹուղթն արքունի, վաղվաղակի որոշէր ընտրէր եւթանասուն հմուտս և աջողակս, և առաքէր յԵգիպտոս՝ կարգեալ նոցա առաջնորդ զԵղիազարոս, ոչ ինչ ընդհատ 'ի նոցանէ անուանի առաքինի վարուքն, գիտութեամբ և իմաստութեամբ գրոց սրբոց: Թագաւորն Պտղոմէոս իբրև ետես զնոսա ժամանեալս հասեալս, պատուէր հրամանի տայր ածել 'ի սենեակսն զորս յարդարեալ պատրաստեալ էր, եւթանասուն ըստ Թուոյ նոցա. և դպիրս ատենակալս միոյ միոյ 'ի նոցանէ յիւրոցն, հարկանել 'ի գրի առնուլ հելլենացի տառիւք ըզԹարգմանութիւն նոցա: Եւ արգելոյր խափանէր զտեսութիւն նոցա ընդ միմեանս, գուցէ երբէք միաբանեսցին ածել մուծանել փոփոխութիւն 'ի գիրս իւրեանց: Եւ դպիրքն ատենակալք գրեցին՝ որպէս

պատուիրանքը բովանդակելուն՝ Աստուածաշունչ և Սուրբ Գիրք կը կոչուին, հրէական աստուածընտիր ժողովրդեան մէջէն առնուած մարգարէից ձեռքով, և Հրէից համար մասնաւորապէս հեբրայական, (ու երբեմն նաև քաղդէական) լեզուով շարագրուած են: Անոնց գրուելէն, և որոց համար գլխաւորապէս շարագրուած էին՝ ընդհանուր ըլլալէն շատ ետքը, ինչպէս կ'աւանդուի, Եգիպտացւոց Պտղոմէոս Փիղադելփոս (Եղբայրասէր) Թագաւորն ուզելով իր ջանքովը Աղեքսանդրիոյ մէջ հաստատած մատենադարանն ընտիր, օգտակար և հետաքննական գըրուածներով ճոխացընել, իր մատենապետին՝ Դեմետրեայ Փալերացւոյ յանձնեց Հրէից օրինապատուած գրոց մէկ օրինակն, ու անոր յունական Թարգմանութիւնն ձեռք ձգել: Դեմետրիոս ալ Թագաւորին կողմանէ գրեց առ Եղիազար քահանայապետ յԵրուսաղէմ, ու նուիրակութեամբ երեք անձինք ու մեծագին ընծաներ ղրկելով, խնդրեց իրմէ Մովսիսի գրոց մէկ օրինակը, և հմուտ Թարգմանիչք յԵբրայեցւոց, որ կարենան փոխել զայն 'ի յոյն: Արիստէոս, այս դիպաց պատմիչը, երեք նուիրակաց մէկն էր:

Քահանայապետը սիրով ընդունեցաւ Պտղոմեայ Թագաւորի առաջարկութիւնը. ու Մովսիսական օրինաց և բովանդակ Աստուածաշունչ գրոց մէկ ոսկեգիր գաղափարը յանձնեց եօթանասուներկու հմուտ և վարժ Թարգմանչաց, զորոնք արքայն Եղբայրասէր արժանաւոր պատուով մեծարելով, Աղեքսանդրիոյ մօտ Փարոսացւոց կղզւոյն մէջ տեղ և բնակութիւն տուաւ անոնց և ամէն դիւրութիւն, ուր պարապելով անդադար իրենց յանձնուած աշխատանքին՝ ըստ աւանդելոյ ոմանց, եօթանասուներկու օրուան մէջ գլխաւորեցին զայն:

Այս պատմութիւնը՝ հետևեալ պարագաներով

Դ. Թարգմանչաց երթն 'ի Բիւզանդիոն։

Ե. Երկրորդ Թարգմանութիւն 'ի յունէ։

Զ. Հնագոյն օրինակք սուրբ Գրոց յարևելս և յարևմուտս։

Է. Հնագոյն գրչագիրք հայկական Աստուածաշունչ մատենից։

Ը. Կարգ և դասաւորութիւն սուրբ Գրոց՝ 'ի մեր գրչագիրս։

Թ. Հին կտակարանաց մէջ Անյայտ կամ Անհարազատ սեպուած գրքեր։

Ժ. Նոյնք 'ի Նոր կտակարանս։

ԺԱ. Հարազատութիւն և ընտրութիւն հայ Թարգմանութեան։

ԺԲ. Արդեօք ամբողջ Աստուածաշունչ գրոց Թարգմանութիւն հինգերորդ դարո՞ւ մէջ եղած է։

ԺԳ. Հայկական Թարգմանութեան վրայ վերջին աշխատութիւն 'ի հինգերորդ դարու։

ԺԴ. Ցարդ հայ Թարգմանութեան։

## Ա. ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ ԵՕԹԱՆԱՍՆԻՑ

---

Պտղոմեայ Եղբայրասիրի խնդիրն առ քահանայապետն Հրէից։ — Եօթանասնից երթն յԱղեքսանդրիա Եգիպտոսի։ — Պատմութիւն թարգմանութեանն և առանցք։ — Անոր յարգն և ազնուութիւնն։

Քրիստոնեայ աշխարհ և սրբազան դպրութեանց հետամուտք արդէն գիտեն քաջ թէ աստուածախօս և հոգեշունչ գիրք, որ ընդհանուր անուամբ՝ աստուածային ներշնչութեամբ գրուած և իր խօսքն ու-

Ամէն ժամանակակից և կրտսերագոյն պատմիչք այս մեծ գործոյն և ծառայութեան բովանդակ արդիւնքը կուտան Թարգմանչաց, և մանաւանդ իրենց մեծ և բազմահռչակ վարդապետաց՝ Սահակայ և Մեսրովպայ։

Ասոնց անուանք, — որչափ հասեր է առ մեզ 'ի պատմութեանց և 'ի յիշատակարանաց, — իրենց սըրբասուն և աստուածահաճոյ վարք և հայկական մատենագրութեան մատուցած ծառայութիւնք և արդասիք արդէն ծանօթ են մեզ։ Ուստի առանց յերկարելու 'ի բանս անոնց անկարօտ գովութեան, փութանք իրենց ձեռքով մեզի ընծայուած Թարգմանութեանց վրայ դարձընել մեր ընթերցողաց մըտադրութիւնն։ Այդ հոգեւանդն սրբոց և աստուածապարգև վարդապետաց մեզի աւանդած բազմաթիւ և բազմատեսակ, ու իրաւամբք իմաստնոյն Եւրոպայ զարմանքն ու նախանձը յաճախող վաստակոց մէջ՝ ինչպէս պարունակութեամբն՝ ասանկ ալ լեզուի արուեստովը, Թարգմանութեան հաւատարմութեամբ, գեղովը ու վայելչութեամբ նախամեծար պէտք է սեպուին Աստուածաշունչ գրոց հրաշափառ Թարգմանութիւնք, զոր առանց չափազանցութեան կրնանք հայկական հին և նոր Թարգմանութեանց անզուգական և ամենընտիր երախայրիք սեպել, մեր գրականութեան ամենէն գերազանց երկասիրութիւնն, և անոր վրայ աշխատողներուն գլուխ գործոց և անմահական պարծանք։

Խօսինք համառօտիւ որչափ երկասիրութեանս չափն ու նպատակը կրնայ տանիլ.

Ա. Եօթանասնից կոչուած Թարգմանութեան վրայ, որուն համեմատ եղած է հայկականն։

Բ. Ասորական հին Թարգմանութիւնք։

Գ. Առաջին Թարգմանութիւն սուրբ Գրոց 'ի հայ լեզու յասորականէ։

Ճառընտրաց մէջ կը գտնուին նաև վկայաբանութիւնք սրբոց՝ յանուն Եւսեբեայ, ընտիր թարգմանութեամբ նախնեաց, և հաւանականաբար 'ի յունէ, արտաքոյ Եկեղեցական պատմութեան, որ թերևս քաղուած են հեղինակին ուրիշ երկասիրութիւններէ: Այսպէս. « Ի յիշատակի սուրբ հայրապետին Պետրոսի և Աքխողոմեա, երանելւոյն Եւսեբեայ յԵկեղեցական պատմութենէ, Կեսարու եպիսկոպոսի, յառաջին Դպրութենէն ». և սկզբնաւորութիւնն է. « Ընդ ժամանակս իսկ իբրև եկաց Փիլիպոս յեկեղեցւոջ անդ Հռովմայեցւոց, զհինգ ամ... զարդարեցաւ պսակաւ վկայութեանն ». որ համառօտութիւն է Եւսեբեայ Եկեղեցական պատմութեան եօթներորդ դպրութեան՝ վերջին գլխոյն. և որում հետ Ճառընտիրք կը կցեն ուրիշ ընդարձակ և մեր մատենագրութեան ոսկեղէն դարու արժանաւոր լեզուով գրուած վկայաբանութիւն մը « սրբոյն Պետրոսի եպիսկոպոսի Աղեքսանդրացւոց », այսպիսի սկզբնաւորութեամբ. « Ի թագաւորութեանն Դիոկղետիանոսի կայսեր Հռովմայեցւոց՝ էր հայրապետ եկեղեցւոյն Աղեքսանդրացւոց երանելին նահատակն Պետրոս մարտիրոս »[1] :

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ ԳԻՐՔ

---

Անցնինք հիմայ մեր ազգային եկեղեցական պատմութեան ու հայկական գրականութեան ամենանշանաւոր դէպքին. — Աստուածաշունչ գրոց 'ի մեր լեզու փոխադրութեան.

[1] Եւսեբեայ Եկեղեցական պատմութիւնը՝ հանդերձ նորոգ թարգմանութեամբ 'ի յունէն հրատարակուած է 'ի Վենետիկ: Տես 'ի ՀԱՅԿԱԿ. ՄԱՏԵՆԱԳԻՏ., 184:

Խորենացւոյն պատմութեան մէջ յիշատակուած ուրիշ դիպուած և անցից յիշատակութիւնք ալ՝ յԵւսեբեայ առնուած, յայտնի հաւաստիք մ'են թէ արդէն իրեն ծանօթ էր մեր ձեռքն գտնուած թարգմանութիւնը, որ և կը ճշդէ նաև այս ամենընտիր երկասիրութեան հայ թարգմանութեան ժամանակը։ Հաւանականաբար յոյն սկզբնագրին հետ բաղդատուիլը՝ և այն կերպարանքն առնուլը, որով հասած է առ մեզ, յետոյ է քան զթարգմանութիւն Գրոց սրբոց և յառաջ քան զպատմագրել Խորենացւոյն։

Ինչպէս հնութենէ առ մեզ հասած շատ երկասիրութիւնք, ասանկ ալ Եւսեբեայ Եկեղեցւոյ պատմութեան հայկական այս թարգմանութիւնն զանազան կերպարանափոխութիւններ կրած պէտք է ըլլայ՝ ըստ տեսութեանց և քննադատութեան հըմտագունից։

Հայկական թարգմանութեանս օրինակք թէ՛ առ մեզ և թէ յայլ ազգային մատենադարանս, — որչափ ծանօթ է մեզ, — ոչ հին են ժամանակաւ, և ոչ բազմաթիւ. և հաւանականաբար ամենքն ալ մի և նոյն օրինակէ գաղափարուած։ Ասոր բնական հետևանք է՝ յամենեսին միօրինակ այլևայլ պակասք կամ ընդհատութիւնք (lacune) 'ի կարգի պատմութեան։ Ասանկ՝ առաջին Դպրութեան մէջ երրորդ գլխէն քանի մը տող, չորրորդն ամբողջ, ու հինգերորդին սկզբնաւորութիւնն։ Հինգերորդ Դպրութեան մէջ ալ՝ մասն մի քսաներորդ գլխոյն, և գլուխք քսաներորդ առաջին, քսաներորդ երկրորդ և քսաներորդ երրորդ, որք և նշանակեալ են 'ի ցուցակին որ 'ի գլուխ գրոց հինգերորդ Դպրութեանն՝ այսպէս. « ԻԱ. Թէ որպէս վկայեաց Ապողոնիոս 'ի Հռոմ քաղաքի։ — ԻԲ. Թէ որ եպիսկոպոսք երևելիք էին ընդ այն ժամանակաւ։ — ԻԳ. Վասն խծբծին՝ որ եղեւ յայնմ ժամանակի վասն զատկին »։

մանիչն՝ որուն յանձնուեցաւ այդ աշխատանքն՝ դեռ այնչափ վարժ չէր յոյն լեզուի և դպրութեան, և կամ նոյն գրոց յունական սկզբնագիրը չգտնուելով առ մերոմն, բռնադատուեցան ասորականին կարօտ ըլլալ. և այնպէս հայկական եկեղեցական մատենագրութեան մէկ պակասը լեցընել: Եւ պէտք չէ զարմանալ. որովհետև ինչպէս գիտենք՝ քրիստոնէական հաւատոց գիտութեանն և ուսման վերաբերեալ ամէն յոյն գրեան՝ հրոյ ճարակ և բնաջինջ բարձուած էին 'ի ձեռն Մերուժանայ. որով հարկ եղաւ սրբոյն Սահակայ, ինչպէս քիչ ետքը պիտի տեսնենք, նաև Աստուածաշունչ գրոց թարգմանութեան ձեռք զարկած ատեն՝ առ 'ի չգոյէ յունին՝ ասորի լեզուով գտնուած օրինակի մը վրայէն սկսիլ իր թարգմանութիւնը: Կրնանք դարձեալ ենթադրել որ Թարգմանչաց ոմանց յԵդեսիա ղրկուած ատեն՝ ձեռք զարկած ըլլան այս աշխատութեան: Բայց հաւանական կ'երևնայ որ ինչպէս ուրիշ շատ գրոց՝ Եւսեբիոսի այս գրքին ալ յունական սկզբնագիրն բերուեցաւ յաշակերտացն սրբոյն Սահակայ և Մեսրովպայ, ու բաղդատուելով համեմատեցաւ ասորականին վրայ արդէն եղած հայ թարգմանութեան հետ, յորմէ հելլենաբանութիւնքն զոր ակնարկեցինք, թէպէտ միշտ պահելով ասորական նախկին դրոշմը. մանաւանդ յատուկ անուանց փոխադարձութեանց մէջ, որք այդչափ կը զանազանին 'ի յունէն: Թէ Խորենացւոյն յիշատակածը նոյն է ընդ թարգմանութեանն որ հասած է առ մեզ, յայտնի է բերած վկայութենէն, Աբգարու վրայ խօսած ատեն կը յիշէ անոր թղթակցութիւնքն առ Քրիստոս և առ այլս. և 'ի դիմաց Փրկչին տրուած պատասխանը. զորոնք նոյն կը գտնենք ընդ յառաջբերելոցն յԵւսեբեայ (Ա. Դպր. ԺԲ.) 'ի յիշատակարանաց և 'ի դիւանաց Եդեսիոյ հանուած, ինչպէս պատմիչն ալ կ'ակնարկէ:

# ԵՒՍԵԲԻՈՍ ԿԵՍԱՐԱՑԻ

*Եւսեբեայ Եկեղեցական պատմութիւն: — Թարգմանութիւնն յասորւոյն: — Թարգմանութեան ժամանակն և հատուածք առ Խորենացւոյն: — Մատենախօսականք:*

Մինչ այլ յասորի լեզուէ մեզ ընծայուած ընտիր և հաճոյական պարգև է Եւսեբի Կեսարացւոյ Եկեղեցական պատմութիւնը, թարգմանեալ անմիջական յանձնարարութեամբ և յաշակերտաց սրբոյն Մեսրոպայ: Կը կարդանք առ Խորենացւոյ. « Վկայ քեզ 'ի մասոյ երաշխաւորեսցէ Եկղեսիաստէ գիրք Եւսեբի Կեսարացւոյ, զոր ետ թարգմանել երանելի վարդապետն Մաշտոց 'ի հայ լեզու »: Եւսեբիոս արդէն աշխարհահռչակ պարծանք մ'է հայ մատենագրութեան, պահպանելով իր բազմահմուտ ժամանակական կանոնաց կամ Քրոնիկոնին՝ ամբողջ և ընտիր թարգմանութիւն մը՝ որ հին պատմութեան վրայ պայծառ լոյս մը սփռած է: — Այս նշանաւոր գրուածքին, ինչպէս ետքը պիտի տեսնենք, 'ի յունականէ թարգմանուած ըլլալը անտարակուսելի է. ինչպէս Եկեղեցական պատմութեանն ալ յասորւոյն, թէպէտև այլևայլ հելլենաբանութեամբք, ըստ վկայութեան տեղեկաց:

Ինչո՞ւ այսպիսի զանազանութիւն՝ մի և նոյն մատենագրի գրուածոց թարգմանութեան մէջ. յոյն բնագիրը՝ մէկուն համար անտես ընելով, ու յասորականէ փոխադրելով 'ի մեր լեզու: Ասոր պատճառը հաւանականաբար կամ այն կ'երևնայ որ Թարգ-

« Ո՞վ է այս եկեղեցական. զանունն չգիտեմ. այլ ազգութիւն քաջ կը նշմարեմ, որ է Ասորի։ Այնպիսի դէպքեր, այնպիսի յիշատակութիւններ անձանց և իրաց ադուցած է այս եկեղեցականս Փաւստոսի գրոց մէջ և այնքան խոր տեղեկութեամբ՝ որ. իբր անջնջելի կնքով դրոշմած է իւր Ասորի ազգութիւնն վեր 'ի վայր 'ի մատենին »։

Եւ 'ի ստուգութիւն կարծեացն այլևայլ ապացոյցք մէջ բերելէն ետքը կը յաւելու. Փարպեցւոյն խօսքերէն ալ կը տեղեկանանք « որ նոյն իսկ հինգերորդ դարու ընթերցողք ոմանք Բիւզանդարանի՝ նշմարած են անոր մի մասին միւս մասին հետ ունեցած մեծ աննմանութիւնը և կասկած յղացած են անհարազատ յաւելուածոց 'ի Պատմութեանդ. և Փարպեցին հեղինակ անհամոյ և անպատշաճ բանից Բիւզանդարանի կ'ուզէ ճանաչել զԱսորի ոմն։ Ես զատեցի զաշխարհական և սթափական մասունս մատենին 'ի հոգևոր և յերկիւղազարդ մասանցն, և ցուցի թէ հակառակ կարծեաց Փարպեցւոյն՝ անպատշաճութիւնքն են բաժին Փաւստոսի, և թէ Ասորին ուրիշ բան ըրած չէ, բայց եթէ սրբութիւններ մտցընել Յոյն պատմաբանին գրոց մէջ... Այս Ասորին, – որ միայն եկեղեցական կամ աբեղայ ոմն կըրնայ ըլլալ, և թերևս Գլակայ վանական, – պարտէր անշուշտ վերցընել զամենայն անդէպ հատուածս Փաւստոսի, եթէ քննադատական գիտութիւնն ծաղկած ըլլար յիւրում ժամանակի »...։

րուածոց խմաստ կուսայ, — ինչպէս են արդարեւ այլ պատմագրեանք Ստորին կայսերութեան, որ սոյն անուամբ կը կոչուին La Byzantine, — և Պատմութիւնք յոգնակի ձեւն, կը ներեն ենթադրել թէ նախնաբար երկու կամ երեք զանազան Բիւզանդացի մատենագրոց պատմութիւններ ամփոփեալ էին 'ի միում տփի 'ի վեց գիրս, կամ որ նոյն է՝ 'ի դըպրութիւնս: Ես այնպէս հաւանեալ եմ թէ օտար ոմն հանած է այս տփէն միայն զ'Գ, զ'Դ, զ'Ե և զ'Զ չորս դպրութիւնս Փաւստոսի որ զՀայոց կը ճառէին, պահելով 'ի վերայ զԲուզանդարան Պատմութիւնք մակագրութիւն խմբագրին. այլ ձեւելով զյունական բնագիրն զինչպէտ և զինչկամք: Հայ Թարգմանչին ձեռքն ընկած օրինակն ոչ այլ ինչ էր ըստ իս եթէ ոչ այս փոփոխեալ օրինակն, որոյ սորի ըլլալն շատ նշաններէ կը մանուի: Բիւզանդարանի Ա և Բ դպրութիւնք եթէ 'ի բաց թողեալ են 'ի վերոյ նշանակեալ օտարէդ, որով և 'ի Հայ Թարգմանչէն, պատճառն այն է անշուշտ զի այդ կրկին գիրք, գործ այլ մատենագրի կամ մատենագրաց, չէին խօսէր զՀայոց: ...

« Անհնարին է մտադրութեամբ կարդալ զԲիւզանդարանն և չնկատել 'ի նմին երկու այլակերպ և իրարու բոլորովին աննման գրիչներ: Մին սիրող է չափազանցութեան, խեղկատակութեան. միւսն սնեալ և տոգորեալ սուրբ Գրովք՝ կ'ախորժի վարդապետել, խրատել, կշտամբել զԹուլութիւն Հայոց 'ի քրիստոսական կրօնս: ... Նա՝ ճշմարիտ աշխարհական մ'է, ... սա կատարեալ եկեղեցական մը ... Այս աշխարհականս է ստուգիկ բուն հեղինակ գրոց՝ Յոյնն Փաւստոս Բիւզանդ. և այս եկեղեցականս է անանուն ոմն, զորոյ Ասորի ըլլալն պիտի հետազօտենք: Զզարմանանք ուրեմն երբ 'ի տեղիս տեղիս Բիւզանդարանի՝ հակասութեանց կը հանդիպինք:

րորդ գլուխներին (Փաւստոս եպիսկոպոսին և Նորա եղբօր նուիրած)՝ մենք կը տեսնենք որ հետևեալ գլուխների թիւը ուղիղ տան է: — Անցնենք երկրորդ խնդրին: Բիւզանդը յունարէն է գրել, որովհետև «յունաց ժամանակագիր» է անուանվում (Ա դպրութեան վերջը): Յունարէն է գրել՝ որովհետև գրել է Մեսրոպեան գիւտից առաջ, կամ գոնէ Մեսրոպեան գրերի գործածութիւնից (կիրառութիւնից) առաջ: Իսկ յունարէն և ասորերէն գրերով հայերէն չէին գրում չորրորդ դարում: (Ապացոյցները դժբաղդաբար երկար լինելով, չեմ կարող մէջ բերել): Վերջապէս գալով վերջին խնդրին՝ պէտք է նկատել՝ որ Փաւստոսը գրել է և մի հին հայկական պատմութիւն՝ ըստ որում իր պատմութեան Գ դըպրութեան առաջին գլխի մէջ նա ասում է. «Է ինչ մեր պատմութիւն որ առաջին է. և է ինչ որ վերջին է: Իսկ որ միջին ինչ եղև՝ այն 'ի ձեռն այլոց գրել գրեցաւ»:

Ուրիշ բանասէր[1] մ'ալ, հմտական հետազօտութեամբք կը ջանայ ցուցընել թէ երկու տարբեր գրիչներ կան 'ի Պատմութեան Փաւստոսի, մին՝ Յոյնի և աշխարհականի (Փաւստոս), միւսն Ասորւոյ և եկեղեցականի (անանուն). և կը խոստանայ ուրիշ հատուածով մը համեմատել զգիրս Փաւստոսի ընդ հայերէն թարգմանութիւնս հինգերորդ դարու յասորի լեզուէ, և նշանակելով զամենայն ասորաբանութիւնս որ 'ի մատենին, հետևցընել թէ թարգմանեալ է յասորւոյն:

Համառօտենք իր կարծիքը. «Բիւզանդայ գիրքն, կ'ըսէ, կոչուած է 'ի մատենագրէն, կամ թերևս 'ի հաւաքողէն, Բուզանդարան պատմութիւնք ... Բուզանդարան բառն՝ որ խմբագիր կամ ժողովածոյ գը-

[1] ՔՆՆԱՍԷՐ, Ինքնագրութիւնք Նորայրի, Պրակ Ա. 1887:

իր գիրքը մեր ձեռքն հասած հայկական լեզուի բարձր, ընտիր և արքունական ոճը, շատ հեռի պիտի գտնուինք ասորւոյն գրոշմը անոր վրայ տեսնելէն. մինչդեռ յայտնապէս կ'երևնայ այն ուրիշ նոյն լեզուէ եղած Թարգմանութեանց մէջ, թէպէտև ընդհանրապէս վայելուչ և գեղեցիկ ոճով և շարադրութեամբ։ Բայց ինչպէս ըսինք՝ խնդրոյն լուծումը ժամանակի և բանասիրական աւելի մանր հետազօտութեանց արգասիք պիտի ըլլայ անշուշտ։

Ռուսահայ բանասէր մը[1], մասնաւոր քննադատական յօդուած մը նուիրած է Փաւստոս Բիւզանդի անձին և իր երկասիրութեան, և հրատարակած 'ի 1885–86 յԱրձագանք շաբաթաթերթն Թիֆլիզի. Այդ յօդուածներն տեսած և կարդացած չենք, բայց զանոնք հրատարակող բանասէրն ինքնագիր մէկ նամակաւն (Մոսկուա, 26 յունուարի 1887) կը ծանուցանէ թէ այդ գրութեամբ «ապացուցանում եմ որ Բիւզանդը ազգաւ հոռոմ է. մատենագրել է յունարէն և գրել է և Հայոց հին պատմութիւնը՝ որ մեր ձեռքը հասած չէ։ Փաւստոսը հոռոմ է. որովհետև վեցերորդ դպրութեան ցանկում նա ասում է. «ստորոտ ամենայն պատմութեանց յաղագս իմ տեղեկութեան՝ որք միանգամ զմատեանս ընթեռնոյք՝ տուինք տասն համարական թուօք»։ Այս գրոց լեզուով գրած հատուածը մինչեւ օրս ազգային գիտնականք սխալ են թարգմանել։ Այդ հատուածի իմաստը այս է իմ կարծիքով. Փաւստոսը ասում է. «Իմ մասին հաղորդած տեղեկութիւնից յետոյ ընթերցողը կը գտնէ թուով տասն գլուխ»։ Արդարև, եթէ բանանք Փաւստոսի պատմութեան վեցերորդ դպրութիւնը, և համարենք այն գլուխները՝ որոնք հետևում են հինգերորդ և վեցե-

[1] Եղիշէ Մատաթեան։

և գրականութեամբ զբաղողք. յեկեղեցիս և 'ի պաշտամունս անոր կիրառութիւնը կը շարունակուէր. ալփաբէտք՝ ազգին մէկ մասին մէջ դեռ գործածական էին. և քանի որ յունական ուսումն և դպրութիւն փափաքելի բարգաւաճանքն ունեցած չէին, ասորին դեռ կը սորվուէր և կը սորվեցուէր։

* * *

Փաւստոս Բիւզանդի անունն ու պատմագրին երկասիրութիւն՝ ծանօթ է մեր մատենագրութեան մէջ[1], և աւելի մեծարուած՝ քան ինչ որ մեզմէ քառորդ դարու յառաջագոյն։ Որչափ այդ հետաքննական գրուածին ներքին արժէքն բարձրացած, ըստ պատմութեան և մատենագրական ոճոյ և հմտութեան, բայց իր անձին և ինչ լեզուով գրած ըլլալուն՝ դեռ ինչուան հիմայ գոհացուցիչ կամ ապահով լուծումն մը տրուած չէ 'ի բանասիրութենէ։ Եւ որովհետև յասորականէ 'ի հայ թարգմանութեանց վրայ կը խօսինք, հոս զայս միայն յիշատակենք՝ որ բաց 'ի զանազան կարծեաց այս խնդրոյն նկատմամբ, ունեցեր են ոմանք զկարծիս թէ ասորի լեզուով շարագրուած ըլլայ սկզբնագիրն։ Եթէ Փաւստոսի՝ իր անձին համար ենթադրենք պատմութեան գրոցը մէջ (Դպր. Զ. գլ. Ե. Զ) համանուն անձի մը և իր Աւոստոմ եղբօր յիշատակութիւնը, և յաւելուածը թէ «էին սոքա լեալ ազգաւ հոռոմ» դժուարին կ'երևնայ համոզուիլ թէ փոխանակ իրեն յատուկ յունականին՝ ասորի լեզուն գործածած ըլլայ 'ի գրելն զիւր պատմութիւն, մինչ առջինն ալ երկրորդիս հաւասար ծանօթ էր ազգին յայնմ դարու։ Եթէ ասոր վրայ աւելցնենք

[1] ՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ. Բ. տպ. 222–236։

*տակարանք։ Բրքիշոյ և Շմուէլ կաթողիկոսաց, անարժան յաջորդաց սրբոյն Սահակայ Պարթևի, անուանքն և արարք յայտնի են 'ի պատմագրաց այնր ժամանակի. «Խնդրեցին, կ'ըսէ Փարպեցի, այնուհետև իւրեանց նախարարքն Հայոց յարքունուստ կաթողիկոս. և Թագաւորն Վռամ ետ նոցա զԲրքիշոյ զոմն անուն, ասորի յազգէ այր, որ եկեալ յաշխարհն Հայոց իւրովք գաւառակցօք. որք էին լոյծ կրօնիւք, եկեալք ընդ նմա յԱսորեստանէ ... և ոչ կէին ըստ սուրբ ամբիծ կրօնիցն, զոր եդեալ էր և կարգեալ յամենայն եկեղեցիս Հայոց՝ սրբոյ նահատակին Գրիգորի»։ Շմուէլի համար ալ կ'ըսէ. (Վռամ) «տայր նոցա կաթողիկոս այլ ասորի, որում անուն էր Շամուէլ. որ եկեալ յաշխարհն Հայոց կայր և նա նոյնպէս ըստ կրօնիցն Բրքիշոյի»։ Մեր այս ըսածին մէկ ապացոյցը կը գտնենք եօթներորդ դարու պատմագիր Մամիկոնեանի գրուածոց մէջ, որ ինչպէս յայտնի է՝ Զենոբայ պատմութեան շարայարութիւնն ըրած է մասամբ. և 'ի վերջ գրոցն գտնուած յիշատակարանին մէջ կ'ըսէ. «Ժամանակագրութիւնս այս սկսեալ առ սրբով Գրիգորիւ Զենոբայ ասորւոյ ... իւրաքանչիւր հայր գրեալ զիւր ժամանակին՝ Թողոյր. և աճեալ՝ Պատմութիւն Ասորւոց կոչի. զի այն հարանց անուանք որ գրեալ կան մինչև 'ի Թոդիկ՝ ամենեքեան ասորիք էին. և տունն այն ասորի գրով և պաշտամամբ է վարեալ, մինչև 'ի Թոդիկ, և նա փոխեաց զամենայն կարգս, և զԱսորոց ցեղսն բնաւ հալածական արար 'ի վանացըն»։*

*Բայց այս ընդդիմութիւնն՝ ասորի ազգին, լեզուին և ուսման դէմ, ժամանակաւ և յարդեանց դիպուածոց ա՛լ աւելի զօրացած պէտք է սեպել, և ոչ մէկէնիմէկ սկիզբն առած և շուտով ընդհանրացած։ Ասկէ է որ դեռ ևս կը գտնուէին նոյն ուսմամբ*

յաստան և 'ի մէջ Հայկազանց. քիչ շատ ծանօթացած ըլլայ նաև լեզուին, կամ ուրիշ ժամանակակցի մը երկասիրելո՞ւն: Ասիկայ երկրորդական խնդիր մը կրնայ սեպուիլ, ուր մեզի համար կարևորն և անտարակուսելին յասորականէ 'ի հայ թարգմանուած ըլլալն է: Հեղինակս 'ի գրչագիրս իւր պատմական գրութեանն միշտ Ասորւոց եպիսկոպոս կը կոչուի. կամ պարզապէս ասորի մակդիրով կը յիշատակուի. երկասիրութիւնն ալ անգամին 'ի ժամանակաց սըրբոյ Լուսաւորչին և իր բացայայտ կամօքն Ասորւոց գրոց պատմութիւն կոչուած է:

Որչափ գրուածքն ամփոփ, բայց զայն ալ աւելի համառօտողներն ալ գտնուած են՝ անշուշտ սուրբ եկեղեցեաց մէջ կարդացուելու համար՝ 'ի յիշատակ յուշարար մեծի և ոգանչելահրաշ գործոյն: Այսպէս հանդիպած ենք հնագիր Ճառընտրաց մէջ գրուածքին միոյ մասին համառօտութեանն՝ 'ի տօնի սրբոցն Անտոնի և Կրօնիդեայ, հետևեալ խորագրով. «Պատմութիւն Զենովբայ եպիսկոպոսի զոր արարեալ է վասն Անտոնի և Կրաւնիդեայ և այլոց Ճգնաւորաց»:

Մեր թէ՛ հինգերորդ և թէ հետևեալ դարուց պատմագրաց գրուածոց մէջ՝ բաց 'ի Յովհաննու Մամիկոնենէ, գրեթէ ամենևին չենք հանդիպիր Զենոբայ անուան կամ իր պատմական գրուածոց յիշատակութեան: Ասոր պատճառ կրնայ սեպուիլ երկասիրութեանն համառօտութիւնը, և կամ՝ որ թերևս հաւանականագոյն է, և արդարացեալ նաև 'ի պատմութեանց, որ Գրիգորի սրբոյ այնչափ փափաքանօք խնդրած և մինչ 'ի Հայաստան փոխադրած անձինք, կամ իրենց և կամ ազգին կողմանէ չկրցան երկար ատեն և շարունակ վայելել նախկին սէրն ու համարումը, որով ինչպէս լեզուին՝ սանկ նաև իրենց անձինք սկսան խորշելի ըլլալ Հայոց, անսիրելի ընելով նաև իրենցմէ մնացած յիշատակքն և յիշա-

Սաստ՝ քէ յառաջ 'ի ծանօթութեան յիշուած երկասիրութեան մէջ, (յ'էջ 33), textus noster armeniacus erroribus ac mendis tali modo sit deformatus, magnopere optandum est, ut curis Mechitaristarum quorum de literis armeniacis merita immortalia sunt, nova eius editio ad archetypum Siriacum potissimum emendata in lucem prodeat.

## ՁԵՆՈԲ ԳԼԱԿ — Փ. ԲԻՒԶԱՆԴ

---

*Զենոբ Գլակ և իր պատմական գրուածը։ — Ասորի ազդեցութեան կամաց կամաց պակսիլն առ մեզ։ — Անոր պատճառները։ — Փաւստոս Բիւզանդ, և անոր քանաստեղծական կարծիք և ենթադրութիւնք իր արդէն ծանօթ երկասիրութեան վրայ։*

Չորրորդ դարու հայկական մատենագրութեան կը պատկանի Զենոբայ Ասորւոյ համառօտ պատմական գրուածքը, և որուն վրայ արդէն խօսեր ենք երկասիրութեանս առաջին մասին մէջ[1]։ Ինք ասորի ազգաւ, ինչպէս նաև անոնք որ Հայաստանի լուսաւորութեան պատմութիւնն խնդրեցին իրմէ, տարակոյս չի մնար թէ նոյն ասորի լեզուաւ եղած է նաև մատենական շարադրութիւնը։ Գրուածքին ծանօթ՝ բայց միանգամայն նաև հետաքննական նիւթը՝ փափաքելի պիտի ընէր հայկական թարգմանութիւն մը, և որ անշուշտ գործադրուած է հեղինակին օրէրէն, կամ նոյն իսկ իր ձեռքովը, որովհետև հաւանական կ'ենթադրուի որ երկար ապրելովը 'ի Հա-

[1] ՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ. Բ. եր. 214։

գրոցն և առաջին ձառից՝ պակասին վերնագիրք՝ Լուսաւորչի ենթադրուած աղերսական թղթոյն առ Յակոբ Մծբնայ, և սորայս առ սուրբն Գրիգոր։ Օրինակն երրորդ գաղափարեալ է յընտիր և 'ի զգուշաւոր բոլորագիր օրինակէ, որ կը պահուի, — կ'ըսէ ընդօրինակողն, — յեկեղեցւոջ Աստուածամօր 'ի Ղարասու Տաւրիոյ, և կը բովանդակէ զինն ձառս եւեթ. և 'ի սկիզբն ձառիցն այսպէս կը նշանակուի. «Խօսք սրբոյն Յակոբայ Մծբին քաղաքի եպիսկոպոսի... (ցեցակեր յօրինակին) սրբոյն Գրիգորի Պարթեւեան տոհմին, յաղագս օրինակաց հաւատոց, առ 'ի զգայութիւն պատուիրեան ծարաւելոց կատարեցաւ վասն հաւատոց օրինակի սիրոյ 'ի բանն տեառն, օրինակ Հաւատոց»։ Ձեռագրին մէջ տեղ տեղ կը յանձնուի յիշել «զՎարդան վարդապետ զԲաղիշեցի, և զաշակերտն իւր զԱբրահամ վարդապետ զՀամթեցի, և զՊօղոս գրիչս» առանց ակնարկութեան թըւականի։ Երրորդ օրինակն է նոտրագիր, ուր 'ի վախճան վերջին ձառին նշանակուած կը գտնենք. «Գրեալ է թուղթս այս 'ի քաղոց ամսեան, որ ամ ՌԾԵ էր թագաւորութեանն Աղեքսանդրի որդւոյ Փիլիպպեայ Մակեդոնացւոյ, և էր ամ երեսուն և հինգ Շապհոյ արքայի Պարսից»։ Իսկ միւս օրինակք են նորագիրք. կը գտնուին նոյն ձառք կամ ձառից հատուածք ցրուեալք ուրիշ գրոց մէջ։

Երկու տպագրութիւնք եղած են Մծբնացւոյ կամ Ափրաատայ ընծայուած ձառից թարգմանութեանն 'ի հայ, 'ի Հռովմ (1756) և 'ի Պոլիս (1824)[1]։ Որչափ ալ այս վերջինս ընտրելագոյն ըստ ընթերցուածոց, բայց տպագրաց ու ձեռագրաց բաղդատութեամբ նոր հրատարակութիւն մը ցանկալի ու փափաքելի է բանասիրաց. Quum igitur, կ'ըսէ

[1] ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ ՀԱՅԿԱԿԱՆ, 192։

Իսկ եթէ հետեւելով եւրոպական բանասիրութեան, Աֆրահատայ երկասիրութիւն սեպենք այս ճառերը,— առանց կարող ըլլալու ճշդել հայ թարգմանութեան ժամանակը,— հաւանականաբար՝ նկատելով լեզուին ընտիր ոճը և հանգամանքը. Թարգմանչաց ժամանակին կրնանք վերագրել զայն, որոնք 'ի վարդապետաց իւրեանց առաքեցան յԵդեսիա և այլուր՝ 'ի կողմանս Ասորւոց. և ինչպէս սրբոյն Եփրեմի, ասանկ ալ Աֆրահատայ ճառք այն առթով և 'ի նմին ժամանակի թարգմանեցան 'ի հայ, 'ի կէս կամ յառաջին քառորդի հինգերորդ դարու:

Այսչափ համառօտիւ նշանակելնէս ետքը, բանասիրական և ազգային–մատենագրական տեսութեամբ նշանաւոր խնդրոյս լուծումը՝ ժամանակին և իմաստուն քննադատութեան կը յանձնենք:

***

Մծբնացւոյն ընծայուած այս երկասիրութեան մեզի ծանօթ գրչագիրք են՝ հինգ 'ի Մատենադարանին Էջմիածնի (ըստ տպագիր ցուցակին). յորս հնագոյնք 'ի ՌՃԹ և ՌՃԻԴ թուականներու. իսկ միւս երեք՝ անթուականք և նորագիրք: Իսկ 'ի մերումս՝ հինգ օրինակք. յորոց մին նոտարագրի գրչութիւն Վարդան եպիսկոպոսի Յունանեան, անհարազատ, և որոյ վրայէն եղած է տպագիրն Հռոմայ, առ 'ի չըգոյէ յայնժամ ընտրելագոյն օրինակի: Երկրորդ օրինակն է բոլորագիր, և միայն ինն ճառք. և վերջինն թերի. ընտիր գրչութիւն, բայց առանց յիշատակարանի: Միայն նշանակութեան արժանի է որ 'ի գլուխ

summos in philosophia honores ab amplissimo Ordine Philosophorum Lipsiensi rite impetrandos scripsit C. I. Franciscus Sasse Rheinensis (1878). Մենք այս հմտական գրուածքէն օգտուեցանք՝ Աֆրահատայ ընծայուած համառօտ տեսութեանս մէջ:

իբրև վերանալ անձնային շինուածն և պսակի և կատարի. — մարդ որ փառաւոր է և պատուական. — վասն անօրինաց և ամբարշտաց, և այլն։ Այսոնցմէ աւելի երկարագոյն յաւելուածք, խօսքին իմաստը պարզագոյն և դիւրըմբռնելի ընելու դիտմամբ՝ կը գտնուին 'ի հայ թարգմանութեան, և զորս աւելորդ կը համարինք մէջ բերել։ Նշանակենք միայն հռովմէական տպագրին և Վրայցի հրատարակութեան համեմատական էջերը (20=9-11)—(42=8-11)—(78=10-14), 'ի հաւատարմութիւն մեր խօսքին։ Տեղ տեղ ալ համառօտուած կը գտնենք 'ի հայ թարգմանութեան ասորականին խօսքերը. վասն զի ուր բնագիրն կ'ըսէ (Վրայց. 196). «Յովսէփ ընտրեցաւ 'ի հօտէ ոչխարաց՝ իշխան լինել 'ի վերայ Եգիպտացւոց 'ի ժամանակի նեղութեան. Մովսէս 'ի հօտէ ոչխարաց, դատել զժողովուրդ իւր և հովուել, և Դաւիթ 'ի հովուութենէ վերառեալ յառաջնորդութիւն և 'ի թագաւորութիւն 'ի վերայ Իսրայելի ... և Մովսէս ոչ դարձ արար միւսանգամ առ ոչխարս իւր, և ոչ եթող զհօտն հաւատացելոց նմա. նոյնպէս և Դաւիթ ոչ եւս յաւելոյր դառնալ առ ոչխարս հօրն». հայ թարգմանիչն հետեւեալ խօսքերուն մէջ կ'ամփոփէ այս իմաստը (յ'էջ 286 ըստ տպագրին Հռովմայ). «Յովսէփ, Մովսէս, Դաւիթ՝ 'ի խաշանց անտի ընտրեցան առաջնորդել ժողովրդեան. և ոչ դարձան առ խաշինս անբանս»։

Ասորագէտք՝ բնագիրն ու հայ թարգմանութիւնը իրարու հետ բաղդատած ատեններնին, յաճախ ընտրելագոյն և իմաստից աւելի պատկանաւոր կը գտնեն զմերն, և բազմաթիւ օրինակներով կը հաւաստարմացընեն զայս [1]։

[1] Ասորի դպրութեան հմուտք կրնան տեսնել զայս՝ հետեւեալ երկասիրութեան մէջ. Prologomena in Aphraatis Sapientis Persæ Sermones Homileticos. — Dissertatio inauguralis quam ad

Այս տարբերութեանց խնդրոյն վրայ՝ քիչ ետքը նորէն խօսելու առիթ պիտի ունենանք, 'ի պատմութեան Թարգմանութեան Աստուածաշունչ գրոց։

Սրբախօս գիտութեան համար թերեւս ոչ անկարեւոր սեպուի նշանակել՝ որ վկայութիւն բերուած գիրք 'ի հին կտակէն՝ ենք հինգ գիրք Մովսիսի, Յեսու, Դատաւորք, չորս Թագաւորութիւնք, Եզր, յերկրորդ գրոց միայն, և այն մէկ վկայութիւն եւեթ (Ա. 3), Յոբ, Սաղմոսք, Առակք, Եսայի, Երեմիա, Եզեկիել, Դանիել, Ովսէ, Յովէլ, Ամովս, Յովնան, Միքէ, Նաւում, Սոփոնիա, Անգէոս, Զաքարիա և Մաղաքիա։ Իսկ 'ի նորոյն՝ չորս Աւետարանք, և 'ի Պաւղոսի թղթոցն՝ առ Հռովմայեցիս, առ Կորնթացիս առաջին և երկրորդ, առ Գաղատացիս, առ Եփեսացիս, յառաջին թղթոյն առ Թեսաղոնիկեցիս, յառաջին թղթոյն առ Տիմոթէոս, առ Հեբրայեցիս, և յառաջին թղթոյն Յովհաննու։ Այսպէս մի ըստ միոջէ նշանակուած կը գտնենք 'ի տպագրին Հռովմայ ('ի հայ և 'ի լատին)։

* * *

Հայ Թարգմանիչը մեծ հմտութիւն կը ցուցընէ ասորականին, և ծայրագոյն ճշդութիւն և ճոխութիւն իր բնիկ լեզուին մէջ, այնպիսի ոճեր և դարձուածք գործածելով՝ որ այս վերջինոյս յատուկ են, և կը պակսին 'ի բնագրին։ Կը գտնուին նաև փոխադրութիւնք՝ թէպէտև սակաւաւորք թուով, սխալ ընթերցմամբ բնագրին. և թէպէտ ամենայն փոյթ և խնամք կը տեսնուի 'ի հաւատարմութեան, բայց Թարգմանիչն կը գործածէ երբեմն նաև ազատութիւն՝ 'ի համառօտել կամ յընդլայնել զբանս և զիմաստս բնագրին։ Այսպէս ուր ասորին մէկ բառով մը միայն գոհ կ'ըլլայ, հայն կ'ըսէ. չինի և պատկի, և

| ԸՍՏ ՄԵՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ | ԱՌ ՄԾԲՆԱՑԻՈՑՆ |
|---|---|
| « Հանից զվէմն ժառանգութեան, զհաւասարութիւն շնորհաց շնորհել նմա ». (Զաք. Դ. 8)։ | « Տեսի ես զվէմն հաւասարութեան »։ |
| « Լուսաւոր արարէք ձեզ զլոյս գիտութեան. խնդրեցէք զՏէր. (Ովս. Ժ. 12)։ | « Լուցէք ձեզ ճրագ, և խնդրեցէք զՏէր »։ |
| « Եղիցի յաւուր յայնմիկ. ոչ եղիցի լոյս. և ցուրտ և պարզ եղիցի օր մի. և օրն այն յայտնի տեառն. ոչ տիւ լիցէ և ոչ գիշեր. և ընդ երեկս եղիցի լոյս ». (Զաք. ԺԴ. 6-9)։ | « Եղիցի յաւուր յայնմիկ, ասէ Տէր, շիջուցից զարեգակն 'ի միջօրեայ ժամանակի. և խաւարեցաւ երկիր յաւուր լուսոյ »։ |
| « Եւ լինէին ձեռքն Մովսիսի հաստատեալք՝ մինչև ցմտանել արեգականն ». (Ելք ԺԷ. 22)։ | « Հաւատով տարածեալ կային բազուկքն Մովսիսի մինչև ցմտանել արեգականն »։ |
| « Արդարութեան անսացեալ և ոչ մեկնեցայց. զի ոչ գիտեմ զանձին գործեալ զանպատեհս ». (Յովբ. ԻԷ. 5)։ | « Զանմեղութիւն իմ ես յինէն ոչ մերժեցից. և 'ի ճշմարտութիւն հաւատոց իմոց հաստատեալ կայցեմ »։ |

կրնար յառաջագոյն Հրահատ (Ափրաատ)[1] կոչուիլ. ու յետոյ եկեղեցական պաշտամանց բարձրացած ատենն՝ փոխել զանունն 'ի Յակոբ. և այնպէս միացընել այս երկու անձինքը. մանաւանդ որ Բիւզանդայ ատենէն ալ պարսիկ համարուած ըլլալն կ'ուսանինք 'ի պատմութենէ նորա. «Զայնու ժամանակաւ, կ'ըսէ, խաղաց գնաց մեծ եպիսկոպոսն Մծբնացւոց, այր սքանչելի ծերունի, վաստակաւէր 'ի գործ ճշմարտութեան, որում անուն Յակոբ, փոխանակ ազգաւն պարսիկ կոչէր»: Վարդանայ պատմըչի հետեւեալ խօսքերն ալ՝ չեն զերծ 'ի կարեւորութենէ. «Ոմանք ասեն Զգօն ոմն կոչեցեալ Յակոբ. թէ նա է եղբայր Գրիգորի. բայց Յակոբ որդի է քեռն Անակայ՝ Խոսրովուհեայ, որ էր կին Տիրանայ արքայի՝ զոր սպան թագաւորն Լփնաց Աւիդէս. և Յակոբ առեալ զքոյր իւր զՍադէն՝ որդւովն իւրով Հրաչէիւ՝ զկնի մահուան ծնողացն գնաց յերկիրն Գթաց, ուր և թագաւորեաց Հրաչէն 'ի բարի պատահմանէ»:

Հայ թարգմանութեան ուրիշ հնտաքննական կէտըն ալ՝ 'ի սուրբ գրոց գործածած ընթերցուածոց մեծ տարբերութիւնն է՝ մեղի ծանօթ ընթերցուածներէն: Ասոր հաւանական պատճառ կրնայ ենթադրուիլ որ թարգմանութիւնն երէց ըլլայ ժամանակաւ քան զԱստուածաշունչ գրոց՝ յօրինակէ Եօթանասնից, այլ հետեւողութեամբ նախնականին որ եղև 'ի սրբոյն Սահակայ: Քանի մը օրինակ մէջ բերենք 'ի համառօտութիւն մեր խօսքին՝ առջի ճառէն քաղելով.

[1] Մեր Մատենադարանին ձեռագրի մը մէջ, թուականաւ ոչ այնչափ հին, հանդիպեր ենք Փրաատես վարդապետն Հայոց կոչման մը, թէպէտ և չենք գիտեր թէ զո՞ 'ի մերոցն ուզած ըլլայ ակնարկել, և որչափ ստուգութեամբ:

Իսկ ասորին հրատարակեալ 'ի Վրոյդէ կը յաւելու յետ իննևտասներորդին՝ Ճառ

Ի. Վասն պահպանելոյ զկարօտեալս.
ԻԱ. Վասն հալածանաց.
ԻԲ. Վասն մահու, և վասն յետին ժամանակաց.
ԻԳ. Վասն հատոյ խաղողոյ։

***

Մեր ինչուան հիմա ըսածներն թէպէտ և փափաքելի լոյս մը չսփռեն խնդրոյն էական մասին վրայ, այսինքն՝ Մծբնայեցւոյն թէ Ափրատայ վերագրելու է զայս աշխատասիրութիւն, – տեղի տալով դեռ ևս վիճից կամ երկբայութեանց, – բայց գրուածքին յասորականէն 'ի հայ թարգմանութիւնն անտարակուսելի պէտք է սեպուի խօսից և ոճերու կերպէն, և մանաւանդ 'ի թաւ յասորական հնչմանց յատուկ անուանց։ Այս ասորի թաւ հնչմանց թէպէտ և կը հանդիպինք երբեմն նաև 'ի թարգմանութեան սըրբոյն Եփրեմի գրուածոց, բայց Զգօն գրոց մէջ յաճախագոյն յորդութեամբ. այսպէս Յահով Յամեղեան՝ փոխանակ մեզի աւելի ընտանի հնչմամբ ըսելու՝ Յէու որդի Ամեսսեայ. – Շափատեանց. = որդի Սափատայ. – Ախաբ. = Աքաաբ. – Վաշթեայ տիկին. = Աստինէ տիկին. – Ծաար. = Սեգովր. – Խողդէ. = Ողդան. – Անայել կին Որարայ. = Յայել կին Քաբերայ, և այլն [1]։

Ոմանք թերևս ուզենան ենթադրել թէ սկզբնագիրն ասորի լեզուով շարագրուած ըլլալն ընդունելով ալ, կարելի է դարձեալ հեղինակ սեպել զՄծբընացին, որ անշուշտ տեղեակ էր ասորականին, և

[1] Բազմավէպ, 1875 յէջ 15։

*սումն սրբազան տառից, քրիստոնէից դէմ մաքառելու վախճանաւ։ Ինքն Ափրատտ ալ՝ որէից րաբունեաց հետ վիճաբանութիւններ ունեցաւ, ինչպէս կ'ակնարկուի 'ի սկիզբն քսաներորդ երրորդ ճառին. և բովանդակ գրոցը մէջ՝ մեծ հմտութիւն կը ցուցընէ եբրայական աւանդութեանց։ Իսկ ճառն չորեքտասաներորդ (կամ իննևտասներորդ ըստ Հայկականին), յօրինուած չերևնար յընդդիմագրութիւն Հրէից. այլ 'ի հաստատութիւն խաղաղութեան յեկեղեցւոջ Քրիստոսի. — զոր անհարազատ կը սեպէ տպագիրն Հռովմայ. — և երկմտութեան գլխաւոր պատճառ զայն կը սեպէ, որ անոր յիշատակութիւնը չկայ 'ի գենադեան ցուցակի ճառից Մծբընացւոյն. և երկրորդ որ ոճը բոլորովին տարբեր է ուրիշ ճառերէն. և այս պատճառաւ ընդօրինակօղն իսկ տարակոյս ցուցընելով անոր հարազատութեանը վրայ, ամենէն վերջ կը յեռու զայն՝ նախընթաց մասնաւոր յաւելուածով մը ակնարկելով զաւարտումն ճառից հայրապետին Մծբնայ։ Ասոր վրայ կրնանք, կ'ըսէ, յաւելուլ և զայն որ ժողովական թուղթ մըն է, և յանուն բազմաց գրուած, և ոչ լոկ սրբոյն Յակովբայ։*

*Եւ յիրաւի, այս ճառերէն ետքը կը յաւելուն հայերէն թարգմանութեան օրինակք. « Աւարտեցան պատասխանական թուղթք սրբոյն Յակովբայ Մծբնայ՝ առ սուրբն Գրիգոր Լուսաւորիչ » ։ Այս կը դրուի վերը յիշուած ճառ, կամ շրջագայական ընդարձակ թուղթն 'ի դիմաց եպիսկոպոսացն գումարելոց 'ի Սելեւկիա և 'ի Տիզբոն, այսպիսի խորագրով. « Վասն հակառակութեան և հերձուածոց որք լինին ընդ գաւառս ուրեք ուրեք։ Եւ վասն հպարտութեան և ամբարտաւանութեան, և վասն մարտի մաքառման բարձրաձգութեան գլխաւոր իշխանութեան » ։*

***

Գլխակարգութեանցս ցուցակէն կ'երևնայ որ առաջին տասն Ճառք կը պատկանին քրիստոնէական հաւատոց և առաքինութեանց, և այն բարի գործոց որ անհրաժեշտ կարևորք են 'ի հաստատել 'ի նոյն հաւատս և 'ի պատրաստել: Միայն Ճառն հինգերորդ, որ Օրինակ պատերազմի կամ ըստ Գեննադիոսի վասն թագաւորին Պարսից և հալածանաց քրիստոնէից մակագիրն կը կրէ, ուրիշ նպատակով յօրինուած կ'երևնայ։ Աստեմանի այլաբանական նկարագիր մը կ'ուզէ տալ իբրու հոգևորական մարտի. (Մատենադ. արևելեան, Ա. 557)։ Բայց Ափրաատ անշուշտ սոյն Ճառովս Պարսից Շապուհ Բ Թագաւորին ընդդէմ Կոստանդիանոսի մեծին տուած պատերազմը կ'ակնարկէ, և իր բարեկամ կայսրը՝ եղած չարեաց վտանգներուն համար սփոփելու դիտմամբ կ'ուզէ ապացուցանել թէ 'ի Պարսից չյաղթուեցան Հռոմայեցիք։ Եւ որպէս զի այս վերջիններուս ցուցուած յայտնի բարեկամութենէն՝ քրիստոնէական կրօնից նոր վնասակարութիւնք չերևնան 'ի թշնամութենէ Պարսից, ոչ զՇապուհ և ոչ զՀռոմայեցիս իրենց բուն անուամբ մէջ կը բերէ. այլ դանիէլեան մարգարէութեանց խօսքերով՝ խոյի պատկերով զՇապուհ կ'ակնարկէ, և չորրորդ գազանն ըսելով զՀռոմս կ'իմանայ։

Հետևորդ երկոտասան Ճառից (ԺԱ–ԻԳ) յօրինման մէջ՝ Ափրաատայ գլխաւոր դիտումը կ'երևնայ քրիստոնէական կրօնքը ու անոր եկեղեցական արարողութիւնները պաշտպանել ընդդէմ Հրէից, որք 'ի ժամանակին յԵդեսիա, 'ի Մծբին, 'ի Նուհատրա և յայլ քաղաքս մերձաւորս բնակութեան Ափրաատայ՝ մեծ յաջողակութեամբ կը պարապէին յու-

| ՀԱՅ | ԳԵՆՆԱԴԵԱՆ | ԱՍՈՐԻ (Վրայք) |
| --- | --- | --- |
| ԺԳ. Օրինակ ցուցանելի վասն ընտրութեան կերակրոց. | (պակասէ). | Վասն շաբաթու. |
| ԺԴ. Վասն զատկաց. | (պակասէ). | Վասն պատճառաց հերձուածոց. |
| ԺԵ. Վասն հեթանոսաց մտանելոյ փոխանակ ժողովրդեան հրէից. | Վասն դարձի հեթանոսաց. | Վասն հեթանոսաց որ են փոխանակ ժողովրդեան հրէից. |
| ԺԶ. Ցուցանի թէ Քրիստոս է որդի Աստուծոյ. | ԶՔրիստոսէ, զի որդի է Աստուծոյ համագոյակից Հօր. | Վասն Քրիստոսի զի որդի է Աստուծոյ. |
| ԺԷ. Օրինակ ցուցանելի ընդդէմ հրէից՝ վասն կուսութեան և սրբութեան. | Յաղագս կուսութեան և սրբութեան ընդդէմ հեթանոսաց. | Ընդդէմ հրէից՝ վասն կուսութեան և սրբութեան. |
| ԺԸ. Ցանդիմանութիւն ընդդէմ հրէից՝ զի ասեն թէ կայ մեզ ժողովել: | (պակասէ). | Ընդդէմ հրէից՝ զի ասեն թէ կայ մեզ ժողովել: |

| ՀԱՅ | ԳԵՆՆԱԴԵԱՆ | ԱՍՈՐԻ (Վրոյտ) |
| --- | --- | --- |
| Ա. Վասն հաւատոյ. | Վասն հաւատոյ. | Ընծայութիւնք հաւատոյ. |
| Բ. Վասն օրինակի սիրոյ. | Վասն սիրոյ, և առանձին՝ սիրոյ ընկերին. | Վասն սիրոյ. |
| Գ. Օրինակ պահոց. | Վասն պահոց. | Վասն պահոց. |
| Դ. Օրինակ աղօթից. | Յաղագս աղօթից. | Վասն աղօթից. |
| Ե. Օրինակ պատերազմի. | Վասն Թագաւորին Պարսից և հալածանաց քրիստոնէից. | Վասն պատերազմաց. |
| Զ. Օրինակ ուխտաւորաց. | Յաղագս համբերութեան. | Վասն կրօնաւորաց. |
| Է. Օրինակ ապաշխարութեան. | Յաղագս ապաշխարութեան և հատուցման. | Վասն ապաշխարութեան. |
| Ը. Վասն յարութեան մեռելոց. | Յաղագս յարութեան և հանդերձեալ կենաց. | Վասն յարութեան մեռելոց. |
| Թ. Վասն խոնարհութեան. | Յաղագս խոնարհութեան. | Վասն խոնարհութեան. |
| Ժ. Վասն հովուաց. | (պակասէ). | Վասն հովուաց. |
| ԺԱ. Վասն թլփատութեան ընդդէմ հրէից. | Վասն թլփատութեան. | Վասն թլփատութեան. |
| ԺԲ. Վասն շաբաթու ընդդէմ հրէից. | (պակասէ). | Վասն պասեքին. |

գոյն յիշեցինք, Մծրնացւոյն ընծայուած երկասիրութեան խօսքն կ'ըլլէ. մէջ բերելով նաեւ զգլխակարգութիւնս ճառին, որ մասամբ կը տարբերին 'ի հայկականէն. մինչ այս վերջնոյս մէջ կը գտնուին այնպիսիք՝ որ պակասին 'ի գեննադեան ցուցակէն, ինչպէս նաեւ ճառք որ միայն ասորականին մէջ կ'երեւնան: Հետաքննական կը համարիմք այս երեքին գլխակարգութիւնքն իրարու դիմաց նշանակել աստէն:

Թերցողին արդէն քաջայայտ է, թէ անհարազատ է այս թուղթն, և անուան զարմանալի փոփոխութեամբ մը՝ սրբոյն Գրիգորի մծարոյ և Նուիրական-անունն մուտ գտեր է. և 'ի գրչաց իրարու աւանդուելով՝ այնպէս հասեր է մինչև առ մեզ։ Հաւանական կարծեօք Գրիգոր անունով մէկը եղած է խնդրող Ճառիցն, որ յետոյ շփոթուեր է ընդ անուան Լուսաւորչին։ Ասորի բնագրին մէջ ալ չգտնուիլը՝ յայտնի ապացոյց մ'է եկամուտ ըլլալուն։ Նոյնպիսի վրիպմամբ յոմանց 'ի մերոյն, ինչպէս վերը տեսանք, սուրբն Արիստակէս կարծուեր է խնդրող Ճառիցն[1]։

***

Առաջին Ճառը, ընծայականէն անմիջապէս ետքը, առ սուրբն Գրիգոր ուղղուած վերնագրով մը կը սկսի, և որ բնականաբար կը պակսի դարձեալ յասորի բնագրին. «Սրբոյն Յակոբայ Մծբնայ եպիսկոպոսի, պատասխանի թղթոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին»։ Ասորականին սկզբնաւորութիւնն է. «Ընծայութիւն առաջին, վասն Հաւատոյ»։

Այս Ճառք՝ որ ըստ մեծի մասին իրարու հետ կապուած ունելքին վերաբերութիւն ունին, նամակի ձևով շարագրուած են, և նպատակնին է քրիստոնեայ եկեղեցւոյ վարդապետութեան դրութիւնն ու պաշտպանութիւնը։ Գեննադիոս, ինչպէս յառաջա-

[1] Ֆեռլէօ Նէվ, հայագէտն և ասորագէտ պելճիացի, իր նոր մէկ հրատարակութեան մէջ (L'Arménie Chrétienne) կը գրէ. On avait imprimé en 1756 la version arménienne d'une vingtaine d'homélies attribuées à St. Jacques de Nisibe avant d'en retrouver et d'en publier l'original syriaque. Ces homélies, portées au nombre de vingt-trois, ont été restituées à leur véritable auteur, Aphraate, dit le Sage Persan, moine et peut-être évêque du IV siècle, originaire probablement d'un pays situé aux frontières de la Syrie et de la Perse.

ներ այս Թղթոյն։ Ենթադրելով ալ, ընդդէմ գրեթէ ընդհանուր և ընդունելի կարծեաց արդի բանասիրութեան, որ Մծբնացւոյն հարազատ երկասիրութիւնն ըլլան այս Ճառք, Լուսաւորիչ Նիկիոյ ժողովքէն քիչ ետքը կատարեց իր աստուածահաճոյ կենաց և սրբութեան ընթացքն, յերկնաւոր հայրենիքն փոխադրուելով. և որ զբովանդակ աշխարհն Հայաստանեայց լուսաւորեր էր աստուածահրաշ վարդապետութեամբն, չէր կրնար կարօտ ըլլալ այնպիսի ուժով աղերս կամ խնդրուածք մը յայտնել սորվելու՝ ամենիմաստն և աստուածուսոյց։ Այսպիսի անպատշաճութեան մը վրայ յիրաւի տարակոյս յայտնելով լատին Թարգմանիչն՝ 'ի ծանօթութեան իւրում ապագրին կ'ենթադրէ, — անշուշտ պարզ ենթադրութիւն մը ըրած ըլլալու համար, — թէ սուրբն Գրիգորիս Աղուանից եպիսկոպոսն ըրած ըլլայ այս խնդիրն։ Զէ հաւանութեան և ոչ այս կարծիք. զի որպէս սրբոյ Լուսաւորչին, ասանկ և ոչ իր աստուածարեալ և սրբասուն Թոռան, որուն ընդարձակ աշխարհի մը հովուութիւնն հաւատացուած էր, կրնանք պատշաճեցընել հետևեալ խօսքերն. « Յառաջ քան զամենայն ինչ, որ կարի պիտոյ է ինձ գրեսցես. և խելամուտ արասցես զիս վասն հաւատոյ մերոյ, թէ զիարդ իցէ, և որ հիմն նորա, և որպէս շինուած շինի նա, և որպիսի իրօք հաստատի, և որպիսի գործք պիտոյ են նմա։ Այլ ես այսպէս եմ հաւատացեալ, թէ միայն իցէ Աստուած որ արար զերկինս և զերկիր 'ի սկզբանէ, և զարդարեաց զաշխարհս կազմուածով իւրով... Յայսմ ամենայնի, եղբայր, ես այսպէս հաւատացեալ, աղաչեմ զքեզ զի գրեսցես և խելամուտ արասցես զիս, թէ որպիսի գործ պիտոյ է այսմ հաւատոյ մերոյ, և հանգուսցես զիս » ։

Աւելորդ է անդրադարձընել, ինչ որ ողջամիտ ըն-

կուԹիւնն, որ կը պակսի 'ի Գեննադեան ցուցա-
կէն, և ամբողջ է 'ի ձեռն և յասորին։ Իր Թըղթոց
կամ խօսից ժամանակը նշանակած կամ ճշդած չէ
Աֆրաատ. և զայս կարելի է Թերեւս ենԹադրու-
Թեամբ գուշակել՝ հայելով 'ի ժամանակն յորում
ապրեցաւ, և 'ի բանիցն յորս ակնարկուԹիւն կ'ըլ-
լայ հալածանաց զոր կրեց եկեղեցի։ Յաճախ իւր խօս-
քերն ուղղուած են ընդդէմ Հրէից, և որք անշուշտ
իր գլխաւոր ընդդիմամարտքն էին, գուն ուրեք յի-
շատակուԹիւն կ'ըլլայ հերձուածոց որք տառապե-
ցուցին զնախնական եկեղեցի, « 'ի սուտ վարդապե-
տուԹեանն և յանօԹս չարին » ինչպէս կ'ըսէ. օրի-
նակ, յերրորդ ճառին կը յիշատակէ զՄարկիոն,
զՎաղենտինոս, զՄանիքեցիս, զորդիս խաւարին,
զվարդապետուԹիւն չարին Մանեայ, որ բնակէ 'ի
խաւարի նման օձից, և առնէ կախարդանս « կրօնս
Բաբելոնի »։ Արիոսի՝ որ իր դարուն գլխաւոր հե-
րետիկոսապետն էր, և 'ի Նիկիոյ ժողովոյն՝ յորում
էր և սուրբն Յակոբ Մծբնայ, դատապարտեալ մեր-
ժեցաւ՝ ամենևին յիշատակուԹիւն չըներ. որով մարԹ
է ենԹադրել՝ Թէ այն դարուն մէջ որ Աֆրաատայ
հոգևոր տեսչուԹեանն և խնամոց յանձնուած էին
Արիոսի վարդապետուԹիւնն դեռ մուտ գտած կամ
արմատացած չէր։

***

Ասորի բնագրին մէջ չենք տեսներ այն Թուղթն՝
իբրու Թէ գրուած 'ի Գրիգորէ Լուսաւորչէ առ
սուրբն Յակոբ Մծբնայ, զոր ունի հայերէն օրինակն
հետևեալ խորագրով. « Թուղթ սրբոյն Գրիգորի մե-
րոյ Լուսաւորչին՝ առ սուրբն Յակոբ Մծբնայ եպիս-
կոպոս »։ Ոչ մեք, և ոչ այլ ոք՝ հմտագոյնք և բանի-
բունք, պատճառ կամ պատշաճուԹիւն մը չենք տես-

նաբար իր ծնունդը դնելով Քրիստոսի 280 թուականներն. որով կրտսերագոյն կը համարուի ժամանակաւ քան զՅակոբ Մծբնայ, և երէց քան զսուրբն Եփրեմ: Գէորգայ արաբացւոյ եպիսկոպոսի վկայութեամբն, զոր քիչ յառաջ յիշատակեցինք, միայնակեաց և կրօնաւոր էր նա, ունելով նաև զաստիճան եկեղեցական. հաւանականաբար բարձրացած յեպիսկոպոսական աթոռ, որով կրցաւ 'ի Սելեւկիա և 'ի Կտեսիփոն գումարուած ժողովոց հարց հետ բաղդիլ յամի 344. և իր սրբութեան և գիտութեան համբաւովը մեծարուած յամենեցուն, իրեն յանձնուեցաւ ժողովոյն կողմանէ շրջաբերական թղթոյն շարագրութիւնը, զոր կը գտնենք նաև 'ի հայ թարգմանութեան (տպ. Հռովմայ յ'էջ 403), որոյ սկզբնաւորութիւնն է. « Առցուք զխորհուրդ 'ի մէջ հաստարակաց մտօք. իբր ժողովեալ իցեմք ամենեքին ամփոփ միաբանութեամբ, գրել զթուղթ զայս առ ամենայն եղբարս մեր մանկունս եկեղեցւոյ որք իցեն ընդ գաւառս. եպիսկոպոսունս, երիցունս և սարկաւագունս, ամենայն ուխտս եկեղեցւոյ Աստուծոյ՝ հանդերձ ամենայն ծննդեամբք իւրովք սիրելիս և անձկալիս, մանաւանդ որ 'ի Սկեղ (Սելեւկիա) և 'ի Տիսպոն 'ի տէր աստուած կենարար մեր. որ 'ի ձեռն Քրիստոսի իւրոյ կեցոյց զմեզ և մերձեցոյց զհեռաւորութիւն մեր առ իւր, որոց ամենեցուն ողջոյն յոյժ »: Այս կերպով և լեզուով՝ եպիսկոպոս մը միայն կրնար խօսիլ և գրել, ինչպէս նաև երբ կ'ըսէ « Վասն ձեռնադրութեան զոր առնուն 'ի մեկից մարդիկ », որով հաւանականութիւն կ'առնու բանասիրաց ոմանց ենթադրութիւնն՝ որ եպիսկոպոս և առաջնորդ կը համարին զնա 'ի վանս սրբոյն (Մար) Մաթէի:

Այս կարծիքը կը հաստատրմայընեն անշուշտ տասներորդ Ճառն Վասն հովուաց և անոր պարունա-

րաատ անունով «հին» պարսիկ վկայ մը, յառաջ քան զժամանակս Պար-Սաբայի և Շահդոստայ, որ են հինգերորդ և տասներորդ եպիսկոպոսունք Սելեւկիոյ և Կտեսիփոնի, և նահատակեցան ճիշդ այն ամենին յորում «իմաստունն պարսիկ» յօրինած էր իր վերջին ճառը։ Զենք կրնար նոյն համարել «զիմաստունն պարսիկ» ընդ Ափրաատայ զոր կը յիշատակէ Թէոդորետոս յԵկեղեցական պատմութեանն, որ փախստեայ երթալով յաշխարհէն Պարսից, հաստատեց նոյն զբնակութիւն իւր յԵդեսիա, և ապափոխագրուելով յԱնտիոք՝ տեսաւորեցաւ հոն արիոսեան Վաղէս կայսեր հետ յամին 375-377։ Իբրև սուրբ մեծարուած է յեկեղեցւոջ Յունաց, և իրենց Յայսմաւուրաց մէջ յիշատակուի անունն 'ի 29 յունուարի. իսկ 'ի հռովմէական վկայաբանութեան յ'1 ապրիլի։ Ոմանք կը համարին թէ Ափրաատ նոյն ըլլայ ընդ միում 'ի վկայից որ Պարսից Շապուհ Բ թագաւորին ժամանակ նահատակեցան 'ի Պարսս, և որ կոչէր նաև Յակոբ։ Ի Նիտրիոյ յԱնգղիա փոխադրուած գրչագրաց մէկուն մէջ յիշատակութիւն կ'ըլլայ զճառից «Մար Յակոբայ իմաստնոյն 'պարսկի». և ժամանակը կը դնէ յամի 512, որ ամենևին չյարմարիր Մծբնացւոյն։ Վրայդ կը համարի թէ Ափրաատ՝ քրիստոնէական սուրբ կրօնքն ընդունելէն ետքը սկսած ըլլայ կրել և զանունն Յակոբ, և կրօնակիցքն ալ դադրած ըլլան զինքըն առաջին անուամբը կոչելէն, և ասոր ապացոյց կը համարի՝ որ 'ի լուսանցս իրմէ հրատարակուած ասորի հին գրչագրին՝ գրուած է և անուն «Տեառն Յակոբայ»։

Հիմնական բանասիրութեան և քննադատութեանց կարծիք Ափրաատայ անձին և ժամանակին վերայ հետևեալքն են։ Կը ծաղկէր նա յառաջին կամ յերկրորդ քառորդի չորրորդ դարուն, հաւանակա-

՚ընծայեն, ըստ թուոյ՝ ինչպէս կ՚ըսեն, նշանագրաց (Ասորւոց). Մծբնացւոյն անունը կրող գրոց մէջ ճառքն միայն եօթնևտասն են թուով։ Վրայթ, որ, ինչպէս ըսինք, Ափրաատայ ճառից բնագրին տպագրութիւնն ըրաւ 'ի Լոնտոն (1869)[1], կը համարի որ յասորի գրչագրէն ընծայուած ճառից կամ խօսքից մէջ՝ զորս ինքն հեղինակն Ընծայութիւնք կամ Վարդապետութիւնք կը կոչէ, ինչպէս նաև 'ի գրչագրին և 'ի Թուղթն Գէորգայ եպիսկոպոսի, տասն միայն շարագրեալք են յամի 337. իսկ միւս երկոտասան ճառք՝ կրտսերագոյն են ժամանակաւ՝ առջիններէն տասը տարի ետքը. մինչդեռ վերջինն՝ մակագրեալն յասորի բնագրին թեօիրա տիրօրիրա յօրինուած է 'ի 345։ Մծբնացին վախճանեալ էր արդէն յամի 338, նախկին ճառից շարագրութենէն տարի մը ետքը. և զոր իրաւամբ զօրաւոր ապացոյց կը համարին քննադատք, դէթ վերջիններն Ափրաատայ ընծայելու։

***

Ո՞վ էր Ափրաատ կամ Փրաատ, «իմաստունն պարսիկ»։

Քրիստոնէութեան նախկին դարուց մէջ՝ ոչ անծանօթ էր անունս առ Պարսիկս և առ Հայս (Հրահատ). և աստի հին վկայաբանութեան մը մէջ որ կարծի շարագրեալ 'ի 412, կը յիշատակուի Ափ-

[1] The homilies of Aphraates, the Persian Sage. Edited from Syriac manuscripts of the fifth and sixth centuries, in the British Museum. Vol. I. Syriac text. Այս գրուածքէն ութ ճառ (Ա, Բ, Գ, Դ, Է, ԺԲ, ԺԸ, ԻԲ) համառօտ յառաջաբանով մը Ափրաատայ վարուց և գրուածոց վրայ՝ գերմաներէն թարգմանութեամբ 'ի լոյս ընծայեց (1874) հմուտ բանասէրն Պիքէլ (Bickell) 'ի Մատենադարանի Հարց Եկեղեցւոյ (Bibliothek der Kirchenväter)։

չին քսաներորդ երրորդէն, որ կան 'ի ձեռագրին, և որ ըստ ասորական բնագրին Թահուրիթօ կը կոչուին, իսկ 'ի Հայ Թարգմանութեան՝ ընդհանուր անուամբ ճառ։

Անգղիացի բանասէրք ոմանք և Հնախոյզք՝ պետական օժանդակութեամբ և ծախիւք քիչ տարի յառաջ՝ ասորական բարբառով բազմաթիւ հին ձեռագիրք գտան 'ի Նիտրիա, և փոխադրեցին 'ի մուսէոնն Բրիտանական Լոնտոնի։ Գերմանացի բանասէրն Տըլակարտ, ասորի լեզուին քաջահմուտ և հայկականին ոչ անտեղեակ, 'ի հեռաւոր արևելից բերուած այդ ձեռագրաց քննութեանն պարապելով, գտաւ և հրատարակեց նամակ մը Գէորգայ ուրումն եպիսկոպոսի արաբացւոյ՝ առ քահանայն միայնակեաց Իշուա կամ Յեշով անուն՝ բնակեալ յԱնապ գեղջ. որ փափաքելով ուսանել և գիտել Թէ ով էր կոչեցեալն իմաստունն պարսիկ, գրեր էր առ Գէորգ եպիսկոպոս խնդրելով՝ որ այս անձին վրայ գիտցածն հաղորդէ։ Արաբացի եպիսկոպոսն ալ այն նամակաւ հարցասէր խնդրողին փափաքը կը կատարէ։ Բայց ոչ ծննդեան տեղւոյն կամ ազգին վրայ, և ոչ ալ եկեղեցական ինչ աստիճանի վերաբերելուն ընկատմամբ չի կրնար որոշ բան մը զրուցել։ Կ'երկբայի տարակուսանօք անոր 'ի Մծբին քաղաք բնակած ըլլալուն. և յայտնապէս հաւաստեօք կը ցուցընէ Թէ սրբոյն Եփրեմի աշակերտը չէ, ինչպէս ոմանք ժամանակագրական վրիպակաւ մը ունեցեր էին այդ կարծիքը։

Ի Նիտրիոյ բերուած գրչագրաց մէջ և «Ափրաատայ իմաստնոյ պարսկի» անունն կրող ճառերը՝ նոյն են արդէն մեզի ծանօթ Մծբնացւոյ ընծայուած ճառերուն հետ, միայն Թուոյն և դասակարգութեան մէջ տարբերելով. զի ուր Փրաատայ գիրքը, և զայն յիշատակողք, քսանուերկու ճառս կամ խօսս իրեն

թաղմահաչակ Մատենադարանի գրոց երրորդ հատորին մէջ (Մատ. Ա) կը հրատարակէ Էպէտ-Էշուա Նեստորական եպիսկոպոսին յօրինած եկեղեցական գրոց կամ մատենագրաց ցուցակը, յորս կը յիշատակուի «ամեներջանիկն Ափրատէս, իմաստունն պարսիկ, որ շարադրեաց կրկին հատորս, ճառս ըստ կարգի նշանագրաց»։ Զայս ծանօթութիւն տուած էր կանխաւ և Գրիգոր Բար-Եբրէոս, յԵկեղեցական պատմութեան իւրում (Բ. Գիրք) թէպէտ և փոքրիկ զանազանութեամբ յ'Էպէտ-Էշուայ, հետևեալ խօսքերով. «Ի սոյն աւուրս (Պապայ) եկաց հռչակաւոր իմաստունն պարսիկ, որոյ անուն էր Փարհատ, որ գրեաց ճառ յորդորական, և թուղթըս (կամ խօսս) քսան և երկու՝ ըստ նշանագրաց կարգի»։ Վրայդ՝ իմաստուն ասորագէտն անգղիացի, որ Ափրատայ գրոց բնագրին առաջին տպագրութիւնն ըրաւ՝ Պապայ համար կ'ըսէ թէ ութերորդ եպիսկոպոս էր Սելեւկիոյ՝ որ ըստ Ասսեմանեայ եպիսկոպոսական օծումն ընդունած է 'ի թուին Յունաց 577, այն է ամն Տեառն 266. և ընկեցաւ կամ մերժեցաւ յաթոռոյն 'ի 637 (326 ամ Տեառն)։

Գրիգոր Բար-Եբրէոս նոյն Եկեղեցական պատմութեան մէջ կը յաւելու թէ յերրորդ դարու յառումկեցին և հռչակեցան Աթանաս Աղեքսանդրիոյ, Եւսեբիոս Եմեսացի, Եփրեմ Ասորի, Յուլիանոս Սաբայի և Աբրահամ Գիտունս, «ծաղկէր և Բուզիթիս, իմաստունն պարսիկ, որ էր ուղղափառ. և շարադրեաց զգիրս Ցուցմանց»։ Ըստ Վրայդի՝ Բուզիթիս անունն վրիպակ է գրչագրաց, փոխանակ գրելոյ (Ա) Փրատիս. «Գիրք Ցուցմանց» կոչուածն ըստ ասորականին կը նշանակէ ժողովածոյ կամ հաւաքմունք մը քսան և երկու թղթոց կամ խօսից ասորի այբուբենից թուովն ու կարգաւ, բաց 'ի վեր-

հետազօտութեանց հետեւանք և գիւտ. – Մծբնացւոյն այս գրուածքը Ափրաատայ ընծայուելուն խնդիրը և հաւանականութիւնը։

***

Հմուտն Յ-Ս. Ասսեմանի՝ մինչ դեռ եւս տեղեկութիւն չունէր թէ սրբոյն Յակովբայ Ճառից թարգմանութիւնք կը գտնուին 'ի հայ. լեզուի և 'ի մատենագրութեան, և Մծբնացւոյն թէ անձին և թէ գրուածոց յիշատակութեան չհանդիպելով առ Հերոնիմոսայ, ինչպէս և ոչ առ Թէոդորետայ. Փոտայ և այլոց Յունաց և Ասորւոց՝ որ նախ քան զՀերոնիմոս և յետ նորա աւանդեցին եկեղեցական մատենագրաց անուանքն և անոնց ընծայուած երկասիրութիւնքը, ժխտեց Մծբնացւոյն Ճառից գոյութիւնը, և իր Արեւելեան Մատենադարանին մէջ յայտնապէս հաստատեց թէ անուանց չփոթութենէ յառաջ եկած ենթադրութիւն մ'է, Յակոբայ Սրուճ կամ Սարուկեցւոյ գրուածքն ընծայելով Մծբնացւոյն։ Բայց երբ տեղեկացաւ 'ի Հայոց՝ որ Սարուկեցւոյն գրուածներէն ուրիշ են Մծբնացւոյ ընծայուածները, որոց այլ և այլ գրչագիրք՝ բաց յայլ տեղեաց կը գտնուին և 'ի Վենետիկ առ Մխիթարեան հարս, կարծիքը փոխեց Ասսեմանի և սխալման մէջ գտնուիլը հրապարակաւ ալ յայտնեց նոյն Արեւելեան Մատենադարանին առաջին հատորոյն մէջ (յ'էջ 557). վկայելով թէ ստուգապէս Մծբնացւոյն են Ճառքն. և իրեն այդ կարծիքն ընդունեցաւ Բոլլանդեանն Կառներ[1]։

Նոյն Ասսեմանի վերը յիշուած բազմահմուտ և

[1] Assemanus, censet ea, quæ in prædicto Codice Armeno inveniuntur, genuini Sancti Jacobi Nisibeni scripta esse; ego in hac re opinioni illius non adversabor.

կարկեաց. և զհերձուածողականն խոտոր դաւանութիւն, ամենայնիւ իսկ ըմբերանեաց»։

Ի Լատինաց կը յիշատակէ զՄծբնացին Գեննադիոս եպիսկոպոս Մասիլիոյ, որ 'ի հինգերորդ դարու. «Յակոբ, կ'ըսէ, որ յորջորջեալն էր իմաստուն (Sapiens - Զգօն) եպիսկոպոս Մծբնայ, գրեաց խօսս 'ի քսան և վեց գիրս»․ և սրբոյն Հերոնիմեայ եկեղեցական մատենագրաց թուոյն մէջ անոր յիշատակութիւնը չընելուն պատճառ կու տայ՝ որ դեռ եւս անտեղեակ էր ասորի բարբառոյն Հերոնիմոս, երբ այդ երկասիրութիւնը շարադրեց, ուստի գոհ կ'ըլլայ միայն քանի մը ասորի հեղինակաց յիշատակութեամբ՝ որոց գրուածք ծանօթ էին իրեն լատինական թարգմանութեամբ. հետեւաբար գուցէ կը մնայ Մծբնացւոյն անունը՝ որուն գրուածք դեռ ուրիշ լեզուի փոխուած չէին [1]։

Յունաց վկայագիրք յայտնապէս կը յիշատակեն թէ «շարագրեաց գիրս շահեկանս և օգտակարս» և կ'աւանդեն թէ Թէոդորետոս եպիսկոպոսն Կիւրոյ այդ գրուածոց յիշատակութիւնն ըրած ըլլայ իր Եկեղեցական պատմութեան մէջ։

Աւելորդ կը սեպենք թէ 'ի մեր մատենագրաց և թէ յօտարաց վկայութիւններ յաճախել, որոց բանք և կարծիք զուգաձայն և զուգընթացք են ինչուան հիմա մէջ բերուածներուն։ Կը մնայ ուրիշ կարեւորագոյն կէտի մը քննութիւնն, նոր բանասիրութեան

[1] Jacobo, cognomento *Sapiens*, Nisibena nobilis Persarum modo civitatis episcopus, unus ex numero sub Maximiniano persecutore confessorum, et eorum, qui in Nicœna Synodo Arianum perversitatem Omousi oppositione damnarunt. Hunc enim B. Hieronymus in libro Κρονικῶν, velut magnorum virtutum hominem nominans, in catalogo scribarum cur non posuerit, facile excusabitur, si consideremus, quod ipsos tres, vel quatuor Syros, quos potuit, interpretatos in Græcum se legisse testetur. Unde constat, eum illo tempore ignorasse Syram linguam, vel literas.

կարի վարժ. պարտ է յիւր ինքնախօս գիրսն իմանալ և ճանաչել՝ զոր Զգօն կոչեն. և կարի հմտագոյն գրոց նորա եղեալ վասն լուսաւոր մարգարէացն որ 'ի նմա խորագոյն արտաճառի. զոր այս յաջորդն յիւրում կարգին 'ի ճառս արտաճառէ պարզաբար, եթէ Տէր կամեսցի »: Դարձեալ. « Այգ եղև սքանչելիքն առ սուրբն Արիստակէս հարազատ իւր. բազում պաղատանս արձակէր վասն աշխարհին Ռըշտունեաց, լուծանել 'ի կապանաց, և զգիրսն տալ զխնդրելին, զոր ինքնախօս արարեալ Զգօն կոչեցեալ »: Աստուածաշունչ գրոց նախադրութեանց մէջ ալ, — որ ինչպէս եօքը պիտի տեսնենք, — ազգային գրչի երկասիրութիւնք են հաւանականաբար, և հընութիւնն անտարակուսելի, Եսթերայ գրոց նախադրութեան մէջ կը կարդանք. « Իսկ զՀաման Ամադովլթեանց Ագագեանց, որ էր փառաւոր 'ի դրան Արտաշիսի, և կամէր սպանանել զՄուրթքէ և ջնջել զՀրէայսն, ասէ սուրբն Յակոբ Մծբնայ 'ի գիրսն որ կոչի Զգօն, թէ էր Համան Ամաղեկացի յազգէ Ագագայ՝ զոր ապրեցոյցն Սաւուղ, և սպան Սամուէլ »: Եւ զայս կը գտնենք յիշատակուած 'ի Զգօն գիրս, 'ի ճառն երրորդ՝ Յաղագս պահոց՝ հետևեալ խօսքերով. « Եւ ընդէր, սիրելի, խնդրեաց Համան պարգևս յարքայէ անտի՝ զի կորիցեն ամենայն Հրէայք. այլ զվրէժ որդւոց ազգին իւրոյ կամեցաւ խնդրել և ջնջել զանուն որդւոց Իսրայելի, որպէս և ջնջեցաւ յիշատակ Ամաղեկայ 'ի ներքոյ երկնից. և մնացեալ էր Համան մնացորդ Ամաղեկացւոց անտի, որպէս և գրեալ է. Համան Համաթաթեանց մինչդեռ 'ի տան Թագաւորութեանց Արշաւրայ արքային էր, պատուական և փառաւոր էր »: Նարեկացին Գրիգոր 'ի Ներբողենին առ սուրբն. « Սոփերս օգտակարս և աշխարհակեցոյցս մատենագրեաց. որով սահմանաւ կշռութեան բանի՝ զչարախօսաց բերանն

***

Այս խնդիրը մեր գրուածքին նպատակէն դուրս է։ Մեզի համար աւելի հետաքննականն և հետազօտելի այն է որ նոյն խնդիրք և տարակոյսք եղած են և կ՚ըլլան իր անունը կրող և հայերէն լեզուով մեզի ծանօթ և սիրելի երկասիրութեանն ալ նկատմամբ։

Այս գիրքն է, ինչպէս ըսինք, Զգօն կոչուած ճառից հաւաքում մը, զոր հինք՝ մանաւանդ մերքն, և երկար դարուց վկայութիւնն և աւանդութիւն՝ կ՚ընծայեն Մծբնացւոյն. իսկ այլք՝ և առաւելապէս մեր ժամանակաց բարգաւաճ գիտութիւն, ուսումնական հետազօտութիւնք և հնախուզական գիւտք՝ Ափրաատայ կամ Փրաատայ Ասորւոյ կուտան։ Որչափ ալ բանասիրական նկատմամբ և արդի գիտութեան առջև անհակառակելի ու անվիճելի երևնայ այս կարծիք և ենթադրութիւն, սակայն մեզ հարկ է յիշեցընել որ թէպէտ հնագոյն պատմիչք յազգիս՝ Բիւզանդ և Խորենացի, Մծբնացւոյն առաքինի և աստուածահաճոյ վարուց վրայ կը խօսին, առանց անոր գրաւոր երկասիրութեան յիշատակութիւնն ընելու, բայց սրբոյն Յակոբայ վարուց գրիչք առ մեզ յայտնի ու բացարձակ խօսքով իրեն կը վերագրեն այս գրուածքը։ Անոնցմէ ստուգապատում և բաւական հնութիւն ունեցողներէն մին, — ինչպէս կ՚ենթադրուի գրութեան կերպէն և ոճէն, — կ՚ըսէ, թերևս քիչ մը մթին բացատրութեամբ. «Աստուածային պատմութեանցն հոգ տարեալ, և հնապատմութեանցն կարի յոյժ հմտացեալ, զոր յիւր գիրսն իմանի Զգօն կոչեցեալ. զոր յաջորդն ցուցանէ զնսծմտագոյն տառն որ 'ի բայսն է»։ Նոյնն դարձեալ յընթացս պատմութեան վարուցն. «Գիտակ գրոց

քայ Մծբնացւոյ անուամբն գանուած և ինչուան առ մեզ հասած Զգօն գիրքը։

Մծբնայ սուրբ և մեծահռչակ հայրապետին ազգին, տոհմին և ցեղին վրայ այլևայլ կարծիք և տարակոյսք յուզուած են, ոմանց ազգականն և հօրաքեռորդի կոչելով զնա սրբոյ Լուսաւորչին, և այլոց՝ չընդունելով այդ ազգակցութիւնն. այդպիսի տարակոյսք նաև առ հինս եղած են. մերոց՝ այդ տոհմակցութեամբ՝ թէ սրբոյ Լուսաւորչին, և թէ իրմով քրիստոսական հաւատոց երկնապարգև ժառանգութիւնն ստացող և վայելող ազգին պատիւն փափաքելով յաճախել. այնպիսի նշանաւոր և եկեղեցւոյ պատմութեան մէջ հռչականուն անձի մը՝ որուն դիմաց կը խոնարհէր արքունի ծիրանեօքն և փառօք կայսրն մեծ Կոստանդիանոս, «և հրապարակախօս եղեաւ, — ինչպէս կ'աւանդի 'ի պատմութեան վարուց սրբոյն, — առէր 'ի լուր առակի գաղտակալեալ դրոհիցն. Երեք սիւնք են 'ի մէջ ընդ երկինս և ընդ երկիր. Անտոն յԵգիպտոս, Սեղբեստրոս առ մեզ, և սուրբն Յակոբ 'ի Մծբին քաղաք յերկրին Ասորեստանեայց»։ Բայց որչափ ալ կայր ու կը անէր այս տարաձայնութիւնն, մանաւանդ 'ի մէջ Հայոց և Ասորւոց, առաջինքն ամենայն ջանք ըրած են այդ փառքը չօտարացընել՝ հայաստան աշխարհի ընդարձակութեան մէջ շատ տեղ իրեն պատուոյն վանքեր ու եկեղեցիներ կառուցանելով, ու ներբողենիւ, երգովք ու շարականօք յաճախելով զդրուատիս նորա. և իր հին պատմագրաց մէկն՝ նշանաւոր հնութեամբն և ոճոյ գեղեցկութեամբ, կը վկայէ թէ «Ոմանք հակառակին՝ ոչ ասելով զնա յազգէն Արշակունեաց, կամ հօրաքեռորդի սրբոյն Գրիգորի, զոր մեք սերտ գտեալ և հաւանեալ 'ի գրոց Ասորւոց»։

ծոց Թարգմանութիւնք՝ ոչ աննշան թուով էին նաև հայ մատենագրութեան [ինչուան վերջին դարուց մէջ, կը վկայէ նոր գրչագիր մը մէջ բերելով հետևեալ-ներն. Աղամայ կտակն. — Ծիսն օրհնութեան. — Փի-փիանն. — Գորտոսանին. — Կիրակոսանին. — Ղուկիանոսն. — Պետրոսի տեսիլն. — Դիապիկն. — Աստուածածնի պատմութիւնն. — Սեքիոսն. — Փիւռիկոնացիքն. — Ման-կութեան աւետարանն. — Մանեայ մեկնութիւնն աւե-տարանի: Ասոնց վրայ կը յաւելու գրչագիրն նաև աւելի նորագոյն երկասիրութեանց յիշատակու-թիւն. Լուսաւորչի տեսիլն. — Զանքաքելն (?) մա-տեանն և Գրիգորիսի և Բարսղի հարցմունքն, և կը ծանուցանէ. «Այս են անուանք ութևտասն սուտ գրոց որ եկեալ ՚ի հերձուածող Ասորւոց և ոչ յուղ-ղափառաց Ասորւոցն»:

## Ս. ՅԱԿՈԲ ՄԾԲՆԱՅ

### (ԱՓՐԱՏ)

Ս. Յակոբ Մծբնայ և իր ազգութիւնը: — Իրեն ընծայուած Զգօն գիրք: — Յ-Ս. Ասեմանի և իր կարծիք այս գրոց վրայ: — Աֆրաատ, և եւրոպա-կան արդի քննասիրութեան կարծիք: — Իր անուանց զանազան ձևեր: — Գլխակարգութիւնք և նիւթ ճա-ռից: — Ժամանակ անոնց յօրինման: — Ատրի թը-ւագիրն և հաշիւկանն: — Իրարու հետ համեմատու-թիւնք: — Հայ թարգմանութեան ժամանակը և ար-ժէք: — Մատենախօսական տեղեկութիւնք:

Մեր վերը յիշատակած գրուածներէն զատ առան-ձինն քննադատութեան և մատենագրութեան արժա-նաւոր պէտք է սեպուի արժանապէս սրբոյն Յակով-

և ծանօթագոյն եղած են անուամբ և առաքելական վաստակօք, ինչպէս սրբոյն Բարթուղիմեայ՝ որուն հետաքննական մէկ վկայաբանութիւնն կը գտնուի առ մեզ՝ նաև երկաթագիր ընտրելագոյն գրչագրաց մէջ, որ և այն միւս նշանակ մ'է հնութեան և հարազատութեան. Թող նոյն իսկ գրուածոց ընթացքին մէջ յաճախ յիշուած և յեղյեղուած հեթանոսական աւանդից, դիպաց, աստուածոց անուանց ու անոնց պաշտաման յիշատակութիւնք. և որոց վրայ աւելի ընդարձակագոյն պիտի խօսինք՝ մեր մատենագրութեան մէջ գտնուած Անվաւեր կամ Անհարազատ կոչուած երկասիրութեանց վրայ ընթերցողին մտադրութիւնն հրաւիրած ատեննիս։ Անցողաբար յիշատակենք առ տեղեաւս՝ թէ հաւանականաբար՝ նաև ըստ կարծեաց սրբախօս հին բանասիրութեան, նախնական քրիստոնէութեան վերաբերեալ այս գրուածոց շատերն՝ մեծ հնութիւն պէտք է ունենան. կամ յառաջ քան զժամանակ Թարգմանչաց՝ և կամ անոնց դարուն պատկանելով. Թէպէտև, — հարկ է խոստովանիլ, — յաճախ աղաւաղեալ, որով շատ անգամ նաև հարազատութիւնքն ըստ մասին կեղակարծ, շատ ձեռքերէ և 'ի գրչաց անցնելնուն յայտնի պատճառաւ։ Երկրորդ հաւանական կարծիք մը՝ որ առանց կարող ըլլալու ժամանակն ճշգել՝ յասորականէ թարգմանուած ըլլան 'ի մերս. զի այդպիսի անհարազատ երկասիրութեանց յաճախութիւնք՝ քրիստոնէութեան երկրորդ դարուն իրենց երևումն և զարգացումը ունեցած են 'ի Գնոստիկեան աղանդաւորաց, և ասոր լեզուով. և ինչպէս ուրիշ հին ազգաց, ասանկ նաև 'ի մեր լեզու փոխադրուելով մասամբ հասան և առ մեզ, և որոց վըրայ գրիչք և ընդօրինակողք իրենց կողմանէ յաւելուածներ ալ ըրած կ'երևնան։

Թէ այդպիսի անհարազատ և անվաւեր գրուա-

վերոյիշեալ Շաճէն եպիսկոպոսն իցէ Շահակ կամ Զաւէն, որք նստան կաթուղիկոս յառաջ քան զսուրբն Սահակ Պարթեւ. և եթէ այս Կիւրակոս իցէ այն որ եպիսկոպոս եղև Տայոց, և կոչեցաւ Շահակ ըստ պատմելոյ Բիւզանդայ, այս գիւտ նշխարաց լինի քանի մի ամօք յառաջ քան զկաթողիկոսանալ սրբոյն Սահակայ». որով գրուածքին հնութիւնն կը յայտնուի։

* * *

Սրբոյն Թադէի և Նահատակակցաց վկայութեան պատմութիւնն, հին և ստուգապատում, բնականաբար կը հրաւիրէ մեր մտադրութիւնն նաև ուրիշ նման գրուածոց վրայ, որոնք հնութեան և հարազատութեան յայտնի և անհակառակելի հետք և նշաններ կը կրեն վրանին, և իրաւամբ փափաքելիք քննադատից և հնասիրաց։

Ինչպէս ուրիշ շատ հին ազգաց քով, ասանկ և առ մեզ կը գտնուին սուրբ առաքելոց և աշակերտաց Քրիստոսի վկայաբանութեանց պատմութիւնք և յիշատակարանք։ Ակնարկ մը ձգելով անոնց վրայ, կը համարձակինք ըսել թէ յաճախ ուրիշներու քով գտնուածներէն շատ աւելի ամբողջութեամբ և ըստուգապատում հարազատութեամբ հասած են առ մեզ անոնք։

Այսպիսիք են Պրակք կամ Գործք սրբոց առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի կոչուած գրութիւնք, որոց բոլորովին համաձայնք կամ ըստ մասին ոճով ու նիւթով տարբերող երկասիրութիւնք կը գտնուին նաև առ այլ հին ազգս արևելեայս, և մանաւանդ յասորականն. նոյնպէս ուրիշ սրբոց առաքելոց վըկայաբանութիւնք, յորս ընդարձակագոյնք և յաւելուածներով՝ որոց մեր ազգին հետ աւելի մերձաւոր

տալն 'ի Քրիստոս և Թադէի աշակերտելը․ խոստ-
րանք և անդուլ Թագաւորին բարկութիւնն 'ի սա-
դրելը « քրմաժողով դիւցակաստար պաշտօնէից » և
ետր սերոյ և սրտին անհման գանձը՝ 'ի բանս և 'ի
մեծ գառապարանքը․ բազմաց հաւատալն 'ի Քրիս-
տոս և համարձակաձայն դաւանելը զհաւատոն ճըշ-
մարտութեան՝ զոր Սանատրուկ ամէն ճգամբ կ'ուզէր
բնաջինջ անհետ ընել յաշխարհէն Հայոց․ և Սան-
դրխտոյ նահատակուիլն՝ ինչպէս կ'ըսէ Խորենացի․
'ի ճանապարհի՝ մինչև հասեալ 'ի տեղի վկայական
մահուանն, ուր նաև Թադէի վկայական մահը․ « Եւ
պատառեալ վիմին՝ ընկալաւ զմարմին սուրբ առաքե-
լոյն 'ի ներքս, և դարձեալ կնքեցաւ » ։

***

Կը գտնուի 'ի Ճառընտիրս նաև ուրիշ հին գը-
րուածք մը հետևեալ խորագրով․ « Թադէոսի առա-
քելոյ և Սամուելի և Իսրայելի և այլոց որ բազում
ժամանակս կացին ծածկեալ և էին ամբողջ․ և յայտ-
նեցան առն ուրումն ճգնաւորի և սքանչատեսի՝ որ
'ի մանկութենէ վարժեալ էր արժանաւոր կարգօք
Կիւրակոս անուն » ։ Խորենացին յիշատակեց՝ մեր
վերը յառաջ բերած հատուածին մէջ, թէ գրուած
ըլլայ յայլոց նաև սրբոյն Թադէի և այլոց նահատա-
կակցաց սուրբ ոչխարաց յայտնութիւնն ։ Հաւանա-
կան կ'երևնայ թէ զայս գրուածն ուզած ըլլայ ակն-
արկել, թէպէտ և ոչ ամբողջ հասած առ մեզ․ ինչ-
պէս կ'ակնարկեն նաև Սոփերաց հրատարակողք․
նշանակելով միանգամայն թէ « Ոչ է մեզ յայտ ով
իցէ Կիւրակոսդ և ով Դաւիթդ․ Անյայտ եղթն արդեօք
թէ այլ ոք » ։ Յովհան եպիսկոպոսի մ'ալ անուն կը
յիշատակուի այս պատմութեան մէջ․ և Չամչեանն
('ի ծանօթութիւնս պատմ․ Հայոց) կ'ըսէ․ « Եթէ

նուան 'ի վերայ սուրբ Լուսաւորչին մերոյ տայցէ, Թերեւս ոչ սխալէ. զի նմա առաւել 'ի դէպ գայ ա-ստացուածք՝ եւ ոչ ամենայն Հայաստան աշխարհին, որ և է առաջին կարգադիր հին տօնից մերոց. բայց թէ՝ և զի յորդւոց և 'ի թոռանց նորա, կամ յեպիսկո-պոսաց եղելոց առ նոքօք իմացիս, տակաւին է պատ-ճառի հնութիւն. այս թէ 'ի ժամանակս Թարգման-չաց գիցէ ոք՝ եթէ յառաջ քան զգիւտ գրոյն և եթէ զկնի, թէպէտ և լինի տակաւին հնութեամբ երեւե-լի, բայց համաձայն մեկնութիւն տանի յայնժամ ասելն թարգմանեցի. այս ինքն կամ յայլ գրոյ 'ի հայ գիր, և կամ յայլ բարբառոյ 'ի հայ բարբառ »։ Այսպէս եթէ անկեալ իցէ 'ի մատենէ յատուկ անուն եպիսկոպոսին, ժամանակն յայտնեսցէ յայլ օրինա-կաց զայն անուն » — ինչպէս որ եղաւ ։

Այս ենթադրութեան հաւանականութիւնը՝ եր-կու գրուածոց իրարու համեմատութեան մէջ պէտք է փնտռել։ — Կը յիշէ Խորենացի յայլոց գրեալ զգալուստ Թադէի 'ի Հայս և զհաւատալ Թագաւո-րին և բազմաց։ Սրբոյ առաքելոյս վկայաբանութիւ-նը, որ քննութեանս նիւթն է, յայտնապէս կը հա-ւատարմացընէ մեր Պատմահօր խօսքը. « Սուրբ առ-աքեալն առնոյր զաշակերտսն և փութով հասանէր յաշխարհն Հայոց առ Թագաւորն Սանատրուկ, 'ի գաւառն Արտազ, 'ի քաղաքագեղն Շաւարշան, յա-պարանս արքունի, ուր էին հովոց գետինք Թագա-ւորացն Հայոց։ Եւ քարոզէր անդ զբանն կենաց, և առնէր նշանագործութիւնս 'ի դրան արքունի 'ի համ-աշխարհազարդ բանակին ... Եւ եկեալք բազումք յարքունական դրանէն առ սուրբ առաքեալն, լսէին 'ի նմանէ զքաղցրաբարբառ քարոզութիւն աւետա-րանին և տեսանէին զնշանսն ... Եւ տեսեալ զամե-նայն սքանչելիս՝ բազումք հաւատացին 'ի Քրիստոս »։ Կը պատմէ նաև արքայադստերն Սանդխտոյ հաւա-

կին և թէ Թարգմանչացն նկատմամբ: Աւգերի խնդրոյն համար կը կարդանք 'ի յառաջաբանին. «Ոչ յետ բազմաց զկնի եկեալ արարցս՝ կարծեմք գրել և զվկայաբանութիւնս յաշակերտաց Թադէի, և 'ի ընկեցքն. ոսկեակ դարու մերոյս Թարգմանութեանն՝ փոխաբերեալ 'ի հայ գիր և 'ի բան. որոյ և Թարգմանն յիշատակի յաւարտ ճառին. և 'ի ծանօթութիւնս յիշեցի և առ 'ի մէնջ 'ի վերջ մատենիկանս»: Այս խոստացուած յիշատակութիւնն է հետևեալը. «Սամուէլս այս յայտ է թէ Թարգմանչաց զվկայաբանութիւնս յառաջ քան զպատմագրել Խորենացւոյն. քանզի յիշէ սա այլոց յառաջ քան զինքն գրեալ զԹադէէ և զՍանդխտոյ. իսկ զի առէ տուեալ զայն յընթերցուած ամենայն Հայաստանեայց, թուի թէ մեծաթոռ ոք էր եպիսկոպոսն, և գուցէ նոյն ինքն Շմուէլն տարբի, որ առ մեծաւն Սահակաւ կացուցաւ հակառակ նմին»:

Աւգերեան վարդապետ 'ի ծանօթութիւնս վարուց աբգոր ('ի Հատորն Դ) Խորենացւոյն մեր արդէն յիշատակած հատուածը մէջ բերելէն ետքը՝ կը յաւելու. «Ահա սոյն այս պատմութիւն է որ գրի 'ի Ճառընտիրն Բ (մատենագարանի մերոյ). ըստ որոյ կարգեցաք և զվկայաբանութիւնս. կայ և այլ օրինակ ուրեք ուրեք փոքր ինչ համառօտեալ... իսկ եթէ որչափ հնագոյն իցէ քան զԽորենացին՝ եթէ վկայաբանս, և եթէ գտիչն կամ գրիչն գիւտի նշխարաց, փափաքելի է մեզ գիտել: Իցէ՛ թէ լինէր ինձ ոք և անվրէպ Թարգման մնաց կարևոր յիշատակարանին, զոր ընթեռնումք 'ի կատարած վկայաբանութեանս». և որովհետև իր ձեռքն եղած օրինակին մէջ Սամուէլ անունը կը պակսէր, զոր մեք ունիմք այժմ յայլմէ 'ի հնագոյն և յամենընտիր գրչագրէ, ուստի նոր ենթադրութիւն մը մէջ կը բերէ Աւգերեան. «Ուր եթէ ոք, կ'ըսէ, զեպիսկոպոսն տանից յատուկ ա-

Ո՞վ էր Սամուէլ եպիսկոպոսն, և երբ իւր ժամանակը: — Խնդիր մը՝ զոր մասամբ կրնանք պարզել Խորենացւոյն խօսքերէն 'ի պատմագրութեան (Բ. ԼԴ). «Գըտանի, կ՚ըսէ, որ ինչ առ սոցա ժամանակաւ՝ յառաջագոյն գրեալ յայլոց, զգալուստ առաքելոյն (Թադէի) 'ի Հայս. և հաւատալ Սանատրկոյ և թողուլ զհաւատն յերկիւղէ նախարարաց Հայոց. և կատարումն առաքելոյն և որք ընդ նմա 'ի գաւառին Շաւարշան, որ այժմ կոչի Արտազ. և պատառումն քարին և յիրար գալ և ընդունել զմարմին առաքելոյն. և առնուլ անտի աշակերտացն, և թաղել 'ի դաշտին. և մարտիրոսանալ թագաւորի դստերն Սանդխտոյ հուպ 'ի ճանապարհն. և սուտ սուրբս յայտնել նշխարաց երկոցունց, և փոխել յառապարն: Այս ամենայն, որպէս ասացաք, այլոց պատմեալ յառաջագոյն քան զմեզ, ոչ ինչ կարեւորագոյն համարեցաք նորով երկրորդել: Դոյնպէս և որ ինչ վասն կատարման Ադդէի աշակերտի առաքելոյն յԵդեսիայ յորդւոյն Աբգարու, գտանի այլոց պատմեալ յառաջագոյն քան զմեզ»:

Խորենացւոյն այս խօսքերը երկմտութեանն տեղի չեն ձգեր թէ իրմէ յառաջ գրուած ու աւանդուած էր յայլոց Թադէի վկայութիւն: Խնդիրը կը մնայ թէ արդեօք այս գրուածքն է, որով կը զբաղինք և կը զբաղեցընենք ընթերցողը, եթէ ուրիշ նման երկասիրութիւն մ՚է: Այս տարակոյսը հարկաւ կը տանի զմեզ Սամուէլի Թարգմանչի անուանը կրող վըկայաբանութեան:

Արդէն տպագրուած ըլլալով այս երկասիրութիւնն 'ի կարգի Հայկական Սոփերաց[1]՝ տեսնենք նախ հրատարակողաց կարծիքն թէ գրութեան ժամանա-

[1] ՀԱՏՈՐ Ը. Վկայաբանութիւն Թադէոսի առաքելոյն քարոզութեանն և գալստեանն 'ի Հայս և կատարմանն որ 'ի Քրիստոս:

գաղղիական տպագրութեանց յառաջաբաններուն և 'ի ստորեւս էջից գրուած ծանօթութեանց մէջ. — յայտնապէս կը հռչակեն թէ յասորի բնագրէ եղած է թարգմանութիւնն 'ի մեր լեզու. թերեւս յառաջ իսկ քան զժամանակ Թարգմանչաց, և կամ աւելի հաւանականաբար՝ անոնց արդիւնաւոր վաստակոց նախընծայ երախայրեաց մէկը։

***

Դառնանք մեր ակնարկած միւս գրուածին վրայ խօսելու, որ գրեթէ առաջինին հաւասար, և թերեւս անկէ ալ համառօտ երկասիրութիւն մըն է, և տպագրութեամբն արդէն ծանօթ ընթերցողաց։ Ինչպէս կանխեցինք ըսել, սոյն Թադէի 'ի Հայս քարոզելութեանն ու վկայական մահուան պատմութիւնն է. և իրեն ընկերակից վկայակցաց, որոնց մէջ առաջինն է իր արքունական տոհմէ սերելովը և անմահախառն փառօք՝ Սանատրկոյ թագաւորի դուստրըն Նախավկայուհին Սանդուխտ։ Ուրիշ ազգաց քով չհանդիպելով այս սիրելի ու զարմանահրաշ սրբուհւոյն վարուց, մանաւանդ թէ և ոչ անուանն յիշատակութեան, թերեւս կարելի ըլլար ենթադրել թէ ազգային գրչի մը երկասիրութիւնն է, իբրև զայլս նմանիս և բազում՝ յաւելեալս յետ ժամանակաց և դարուց 'ի գանձարան եկեղեցական պատմութեան ազգիս։ Բայց գրուածքին վերջը դըրուած ծանօթութիւն կամ յիշատակարան մը այս ենթադրութիւնը կը փարատէ, վկայելով թէ թարգմանութիւն է և ոչ ինքնագիր։ Այսպէս իր խօսքերը. « Ես Սամուէլ եպիսկոպոս անարժան ծառայ Քրիստոսի, թարգմանեցի զվկայութիւնն սուրբ առաքելոյն Թադէոսի, և զսրբոյ կուսին Սանդխտոյ, և ետու ամենայն Հայաստան աշխարհի »։

-ղու հասած են առ մեզ, որոց վրայ որչափ ալ ժա-մանակաց հնութեան արգասիք կամ անհրաժեշտ հետեւանք՝ յաւելուածք, զեղչմունք, կերպարանափոխութիւնք ենթադրելու ըլլանք, և թերեւս ոչ առանց պատճառի, բայց նախնական դարուց հնութեան դրոշմն ու կնիք վրանին կրելնին անտարակուսելի է։ Այս երկու գրուածքն են Աբգարու թուղթը, Լաբուբնիա կամ Ղերուբնիա արքունական դիւանագպրի գործ և երկասիրութիւն, և միւսն՝ որ ըստ իմիք առջինին շարունակութիւն կամ մասն կրնայ սեպուիլ, թէպէտև յայլմէ շարագրուած, սրբոյն Թադէի առաքելոյ Վկայաբանութիւնն։

Աբգարու թղթոյն վրայ՝ մեր երկասիրութեան առաջին մասին մէջ բաւական երկար խօսած ենք [1]. և մեզմէ շատ աւելի թէ՛ ազգային և թէ օտար բանիբուն և հետազօտող հմուտ քննադատք, զորս արդէն յիշատակած ենք, և որոց վրայ կ'աւելցընենք նորագոյն գրուած մը 'ի գերման լեզու, հրատարակեալ 'ի 1880 'ի Բրունշվայկ Գերմանիոյ։ Այս երկասիրութեան խորագիրն է Lipsius (Richard Adalbert). Die Edessianische Abgar-Sage։ Զայս միայն յիշեցընել հարկ համարիմք առթիւս թէ որպիսի՛ և որքան կարևորութիւն տուած են այս համառօտ գըրուածքին եւրոպական իմաստունք, որով արժէքը բազմապատիկ կ'ըլլայ. և թէ ինչպէս ամէնքն համաձայն են յասել և 'ի վկայել թէ ասորական է գըրուածքիս առաջին աղբիւրն, և անտի 'ի հայ փոխադրուած. զի արդէն գտած են ասորի բնագիրը, և իրենց քննադատութեանց և հմտական տեսութեանց նիւթ ըրած։ Հայկական թարգմանութեան ոճն ու լեզուն և անուանց տառադարձութիւնք, — ինչպէս ըստ բաւականին և հմտաբար ակնարկուած է հայ և

[1] ՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ. Բ. տպ. 161-170։

զուին՝ որուն համար ինչուան երկոտասաներորդ դարու մատենագիրք մեր վկայած են թէ «Շաղփաղփ և այլատարրախառն գոյ լեզուն ասորի՝ 'ի մերս արամեան ազգ. և լեզու» . և այս խօսքերը՝ հեռաւոր և գարէ դար անցած արձագանգ մ'են հինգերորդ դարէն 'ի վեր յաճախուղած և կրկնուած . և Փարպեցի յայտնապէս կը վկայէ թէ իր ժամանակակցացն համար՝ ասորի լեզուն տանջանք մ'էր, և բռնադատուած էին «բազմաժամանակեայ գեղգեղմամբք մաշել զաւուրս իւրեանց 'ի դպրոցս ասորի գիտութեան» . և որ այնչափ սերտ դպրեալ և ծանրատաղտուկ կ'ըլլար՝ որչափ առ 'ի չգոյէ փութոյ և ջանից՝ նոյն ուսման և դպրութեան սէրն նուազելով, ղայն հասկացողք և իմացողք որ ըստ օրէ կը պակսէին։ Այս տանջանքն գլխաւոր առիթ մը եղաւ՝ սուրբ Գրոց անզուգական Թարգմանութեան պարգևով մը օժտել և ճոխացընել հայերէն լեզուն և դպրութիւնն։

Այսու՝ հանդերձ մեր դրաւորական պատմութեան և բանասիրութեան մէջ՝ մտադիր դիտողութեան արժանաւոր կէտ մ'է որ յասորականէ Թարգմանութիւնք 'ի մեր լեզու՝ կանուխ և երիցագոյն են ժամանակաւ քան զյունականսն։ Նոյն իսկ սուրբ Գրոց Թարգմանութեան առաջին փորձը յասորականէ եղած է . և յետոյ իբրու անկարևոր կամ ոչ այնչափ կատարեալ՝ 'ի բաց ձգուած, ինչպէս քիչ ետքը առիթ պիտի ունենանք յիշատակելու։

Ասոր պատճառը՝ ասորական - քրիստոնեայ գիտութեան և ուսման կանխելն է առ մերսն՝ յառաջ քան զյունական դպրութիւն և լեզու։

***

Քրիստոնէութեան առաջին դարուն պատկանող կրկին երկասիրութիւնք Թարգմանուած 'ի հայ լե-

կրնայիր համարուիլ։ Եթէ քաղաքագիտական այդպիսի հեռաւոր նպատակ մ՚աւելցուցանենք ընծայել մեր լուսաւորութեան սուրբ հօրը, բայց իրական ճշմարտութիւն մը և օրինակ է որ տարրական լեզուին և մատենագրութեան ուսումը՝ ոչ անշուք տեղ մը գրաւած է մեր մատենագրութեան պատմութեան մէջ. չորրորդ դարէն մինչև յերեքտասաներորդն՝ և անկէ ալ անդին ունենալով իր միջամտութիւնն։ Այսչափ յերկարատև տարրի գոյութեան կեանք մը, հարկաւ պէտք է ունենայ իր նախընթացը. զոր Աբգարու և իրմէ առաջ կամ յետոյ համանուն Թագաւորաց Ոսրոենայ և Եդեսիոյ, ըստ այլոց նա և Հայաստանի մէկ մասին վրայ թագաւորութիւնը կրնայ աւելի լուսաբանել, և հաւանականաբար հետևցընել թէ քրիստոնէութեան առաջին դարէն 'ի վեր, և թերևս յառաջ ևսկ քան զայն՝ տարրական բարբառն և անոր գործածութիւն չէր անծանօթ առ մեզ։

* * *

Արդեօք սիրուած էր 'ի նախնեաց մերոց և մեծարուած այդ լեզուն և անոր ուսումը։

Թէպէտև սուրբն Գրիգոր, ինչպէս կը վկայէ Ագաթանգեղոս, կը փութայր քրմաց որդիքը յերկուս դասս բաժնելով, «զոմանս յասորի դպրութիւն կարգել և զոմանս 'ի հելլէն», և աշակերտաւէր վարդապետն Մեսրովպ՝ յուսումնախնդիր պանդխտութեան յԵդեսիա, յԱմիթ և 'ի Սամուսատ, «զոմանս յաշակերտացն յասորի դպրութեանն կարգեր, և զոմանս յունական», ինչպէս կ՚աւանդէն Կորիւն և այլք. բայց եթէ ուզենանք բացառութիւններն մէկդի առնուլ, ընդհանրապէս ոչ այնչափ յարգողք և սիրողք թուին մեր նախնիք այդ լե-

կը վերադառնայ յասպարէզն աստղագիտութեան իւրոյ: Անոնց 'ի Հայաստան աշխարհի աստուածահաճոյ վաստակոց արդիւնքն նկատելով, շնորհակալութեամբ կը գրէ առ սուրբն Ղեւոնդ թէ «իբրև զանգիւտ մարգարիտս համարիմ տուեալս զնոսա ինձ»: և կը խնդրէ «վասն մտերմական սիրոյդ զոր ունիս ընդ իս, աղաչեմ զի զմիւս այլ ընծայն շնորհեսցես... զի հանեսցես մշակս 'ի հունձս յայսոսիկ: Յորոց մինն 'ի քաջ մշակաց զոր ես խնդրեմ 'ի քէն՝ Եղիազարոս Նիսարիացւոց եպիսկոպոսն՝ որ էր եղբայր Զենոբայ եպիսկոպոսի. զոր ընդ իս ածեալ ձեռնադրեցի երկրիս Մամիկոնէից: Արդ և զդա յղեսցես հանդերձ այլ մշակօք մանկաւուք. մանաւանդ թէ զՏիմոթէոս Ագոնացւոց եպիսկոպոս յղեսցես, զոր դու իսկ գովեիր զիմաստութիւն դպրութեանն, որ յոյժ պիտանի է երկրիս այսմիկ»: Կեսարիոյ եպիսկոպոսն ալ կը կատարէ՝ սորոյ Լուսաւորչին խնդիրքը. «զԵպիփան աշակերտ Անտոնի, կ'ըսէ, հաւանեցուցի գալ առ ձեզ, ունելով ընդ իւր այս քառասուն ճգնաւորս և խարազնազգեստս, պարկեշտք 'ի վարս և հրաժարեալք յաշխարհէս, զոր առեալ կացուսցես զԵպիփան՝ հայր վանացդ Զենովբայ»: — Ինչո՞ւ ոչ Յոյնք, այլ Ասորիք. և այն այսչափ յաճախութեամբ թուոյ և այդպիսի թախանձանօք: — Տարօրինակ կրնայ սեպուիլ իրաւամբք Գրիգորի այս ընտրութիւնը, եթէ ուրիշ պատճառ մը չուզենանք նկատել:

Այս պատճառը՝ ըստ կարծեաց ոմանց, երկու ընդդիմամարտ ազդեցութեանց, Պարսից և Յունաց ճնշումէն զՀայաստան յապագային փրկելու դիտմամբ կրնար եղած ըլլալ. ուր Ասորիք արդէն կորսնցընելու վրայ ըլլալով իրենց նախկին պատմական կարևորութիւնը՝ ոչ քաղաքական դրիւք և ոչ ուրիշ որ և իցէ նկատմամբ՝ զՀայաստան այդ բռնադատ հարկին հոսանաց կամ յորձանաց մէջ ձգելէն հեռու

բանք, և անոց ձեռքով և գրչով ընծայուած ինքնուրոյն մատենագրութեանց և թարգմանութեանց յարգը. հանճարութեամբ ունենալով անոնց մէջ՝ հայկական լեզուի ոսկեղէն և խնկաշնորհ դրոշմը:

# ՉՈՐՐՈՐԴ ԴԱՐ

—

Ս. Գրիգոր Լուսաւորիչ, և իրմէ յառաջ ասորական մատենագրական ազդեցութիւն՝ի Հայաստան, որ անոր մնացորդք հասած մինչև առ մեզ: — Թուղթ Աբգարու: — Թադէի առաքելոյ վկայաբանութիւն: — Ուրիշ հին՝ բայց ոչ բոլորովին հարազատ գրութիւնք, ասորի մատենագրութեան դրոշմն կրողք:

Թարգմանչաց դարէն յառաջ՝ ուրիշ անմիջապէս նախընթաց դար մ'ալ ունինք մեզի ծանօթ հայ գրականութեան. — չորրորդ դարը: Ասոր մէջ ապրած ու-գործած են սուրբն Գրիգոր Լուսաւորիչ, Զենոբ Գլակ, Յակոբ Մծբնայ, Բիւզանդ Փաւստոս և այլք: Ասոնց գրուածքը, — գէթ ոմանց, — նաև ըստ կարծեաց հմտագունից, յունականէն դուրս և օտար ազդեցութեան մը դրոշմը վրանին կը կրեն:

Սուրբն Լուսաւորիչ քրիստոնական հաւատոց աստուածապարգև լոյսը քարոզելէն և ընդ ամենայն Հայաստան սփռելէն ետքը կ'երթայ 'ի Կեսարիա՝ եպիսկոպոսական ձեռնադրութիւնն ընդունելու. և 'ի դարձին՝ կը խնդրէ և կ'ընդունի 'ի սրբոյն Ղեւոնդեայ հայրապետէ քանի մը սուրբ սրբասուն և առաքինակրօն անձինք. և անոնց ընկերակցութեամբ

հրաժարիլ նաև հեղինակ կոչուելու օրինաւոր փա-
ռաւորութենէն. որուն եթէ ուզենային անսալ՝ թե-
րեւս սահմանափակ մի ըլլար իրենց մատուցած
ազգին ծառայութիւնը. որովհետև՝ աւելորդ է ըսե-
լը, հեղինակութիւնն աւելի դժուարին և ժամանա-
կի կարօտ աշխատանք է քան զթարգմանութիւն.

Երկրորդ և գլխաւոր պատճառ մ՚ալ էր յոյն — ա-
րեւելեան եկեղեցւոյն այն ատենուան լուսափայլ
գիրքը, բազմաթիւ նուիրական հայրապետաց և աս-
տուածարեալ հարց յաճախութեամբ: Սահակ և
Մեսրովպ՝ որդէն ծանօթք իրենց, սիրողք և սխրա-
ցող այն նախանձելի աստուածապարգև և աստուած-
իմաստ ճոխութեան, ծանօթացուցին և սիրելի ը-
րին զայն իրենց աշակերտաց, վարժեցընելով յոյն
լեզուին ուսման և դպրութեան, ճանապարհորդել և
երկար ատեն դեգերել տալով՝ ուր աւելի բարգա-
ւաճ էր ուսումն և գիտութիւն, և անշուշտ յորդոր
և քաջալերութիւն ալ ընդունելով 'ի կայսերէ և 'ի
պատրիարքաց Կոստանդնուպոլսի, յունական եկե-
ղեցւոյ գիտութեան և ուսմանց հետ՝ նաև իրենց քա-
ղաքական իշխանութեան ազդեցութիւնն աւելի փա-
փաքելի և ընդհանուր ընելու յուսով և փութով:

Իրենց աշխատասիրութեամբ յառաջ բերուած ար-
դեանց՝ նաև 'ի հայրենիս սիրելի ըլլալուն դէպքն ալ՝
մեծագոյն քաջալերութիւն մ՚էր եւս քան զեւս
խրախուսելու 'ի ջանս և 'ի վաստակս. և հաւանա-
կան կը թուի թէ Հայաստան աշխարհ պակաս չըլ-
լայ յերախտապարտ և 'ի շնորհընկալ մեծարանան՝
առ բազմարդիւն դաստիարակս իրենց հոգւոյն և
մտաց, քանի որ իրենց անընդունելի և ոչ հաճոյ նո-
րութեան մը ջանքն ու փոյթ դեռ չէին տեսներ վրա-
նին. որով առաջին Թարգմանչաց, սրբոյն Սահակայ
և Մեսրովպայ նախկին աշակերտաց վրայ առաւելա-
գոյն կ'երևնայ համարումն, և արժանաւոր մեծա-

վրանին հրաժարելով։ Նազիանզացւոյն ; Բարսղի և այլոց խօսքերն՝ որով մերթ անանց իսկ ուղեղը՝ բռնադատուած են գովել ՚ի հեռաւոր Հայոց եկած աշակերտակիցքն, հաւատարմութիւն են մեր խօսքին ։ Աստուածաբանն Գրիգոր՝ յԱրձանականի Բարսղի ՚ ուսմանակցի և մտերմի, կը վկայէ. « Ոչ պարզամիտ ազգ գտանեմ, կ՚ըսէ, զՀայոցն. այլ և յոյժ թագուցանողք և ներնդաժողք։ Յայնժամ ՚ի յուղովից նմա ՚ի ուսումնականացն և ՚ի սիրելեաց՝ ոմանք առ ՚ի հօրէ և յառաջնոցն ընկերութենէն, վասն զի յայնմանէ ՚ի դպրոց եկեալք հանդիպէին. մերձեցեալք առ նա անդ ստեղծական բարեկամութեամբ։ Բայց էին մախանք և ոչ բարեմտութեան մերձաւորութիւն ... իսկ ես աթենասէրս՝ և վայրապար ոչ ազգայի զմախանոն ... իսկ նա (Բարսեղ) վաղվաղակի ազգայր զլեալն. վասն զի և էր իսկ արագամիտ՝ որպէս ոչ այլ ոք. և յօժարամտութեամբն լեալ՝ զի կատարելապէս զնա զեկուցից, ընկրկէր բանիւք ըղքաջսն զայնոսիկ » ։ Նազիանզացւոյն են նաև հետեւեալ տողերը, ուղղեալ առ Հայս՝ աշակերտակիցն իւր և մրցակիցս.

« Ի զուր վիճիս, հայկազնըդ, զուր զօդըս կոծես նանրախօս.
Ի՞ըր յաւակնեալ ակն ունիցիս ի հակաճառըս բանից
Յաղթահարել զայնպիսւոյ առըն թեւակից զԳրիգոր »։

***

Սրբոյն Սահակայ և Մեսրովպայ նախ իրենց և յետոյ աշակերտաց միաքն ու դրիչը թարգմանութեամբ պարապելուն և զբաղեցընել տալուն գլխաւոր պատճառը՝ ազգին՝ որուն նուիրած էին ինքզինքնին և իրենց ամէն ծառայութիւնը, անհրաժեշտ պէտքն էր. և այդ բուռն և սիրելի հարկին առջև ստիպուած էին

հակառակ բոլորքս ձայն կը վերցընէ մեր հին Թարգմանչաց անձնականութիւնն, ուսումն և արտադրած արդիւնք:

Անոնց անձանց, հմտութեանն ու գիտութեան արժանաւոր գովութեամբ լեցուած կը գտնենք ոչ միայն իրենց ժամանակակից և հետագայ ազգային պատմչաց էջերը, այլ և յաճախ կը հանդիպինք յօտարոց տրուած աննախանձ գովուատանաց: Թէ որչափ մեծ էին սորոյն Սահակայ և իրեն գործակցին՝ անմահանունն Մեսրովպայ աշակերտի քաղաքավարութեան և ուսմնասէր ջանից համարումն և մեծարանք ոչ միայն առ Յոյնս, այլ նաև առ Ասորիս և 'ի դրան Պարսից, արդէն յայտնի է մեր ընթերցողաց, և աւելորդ է հոս կրկնել՝ յիշեցընելով իրենց ընծայուած պատուոյ անուանք, մեծարանք, գովեստք յեկեղեցական և 'ի քաղաքական աւագութեանց, 'ի պատրիարքաց և 'ի կայսերաց Բիւզանդիոնի: Պրոկղ հետևեալ խօսքերն կ'ուղղէր առ Սահակ հայրապետ. « Երանի որ հանապազորդ լինիցին 'ի տեսիլ աստուածագեղ երեսացդ. և զի՞ ասեմ հանապազ. այլ գոնեա յաւուրս կամ յամիս և 'ի տարեկանս... Եւ ուստի՞ ինձ այդ լինիցի. բայց եթէ յաղօթից սըրբոյդ. զոր մեծ պատերազմաւ միշտ 'ի վերայ արժանաց և անարժանաց ամենասուրբն Աստուծոյ հատուցանես »:

Իրենց անուամբ ինչուան առ մեզ հասած և արդէն մեզի ծանօթ երկասիրութիւնք՝ անհակառակելի վկայք և հաւաստիք են իրենց մտաց կորովութեան, իմաստախնդիր հմտութեանց և գիտութեան ընդարձակութեանը. և անով յաջողեցան ոգևորել, ճոխացընել նաև իրենց աշակերտաց միտքն, ու սրել անոնց հանճարը. որով հաւասար իրենց՝ ամենուրեք հռչակեցան հայրենի երկրին մէջ՝ և մանաւանդ անկէ դուրս, ամենուն մտադրութիւնն ու զարմանքը

թիւն թէ իմաստասիրական գրութիւնք և վարդապետութիւնք կանխագոյն են ժամանակաւ առ եգիպտացիս քան առ հելլէնս. և յոյն իմաստասէրք և Պղատոն նոքնին և Արիստոտէլ օգտուեցան այն հնագոյն իմաստասիրութենէն, առանց ուղղակի կամ ամբողջապէս անոնց յատուկ գրութիւնքն թարգմանութեամբ ընծայելու իրենց հայրենակցաց. որով տարբեր գրութիւնք են եգիպտականքն՝ և այլ յունականքն. թէպէտ և շատ կարծեաց մէջ իրենց հիմունքը կամ սկզբնաւորութիւնն պարաբեկան ըլլալով առաջնոյն: Նոյնը կը տեսնենք յետ Յունաց նաև առ Լատինս, որոց մատենագրութիւնը որչափ ալ ըստ մեծի մասին հելլենականին հետևողութիւն ենթադրուի, բայց ոչ է թարգմանութիւն: Օրինակ մը 'ի Վիրգիլ, որ իր աննման քերթուածոց մէջ ներշնչուած է 'ի Հոմերէ, Հեսիոդեայ, 'ի Թէոկրիտեայ և յայլոց. բայց չենք գտներ անոնց քերթուածոց հին թարգմանութիւնն 'ի լատին բարբառ:

*
* *

Իսկ մեր ազգային մատենագրական պատմութեան մէջ՝ կրնանք ըսել թէ բոլորովին ասոր հակառակ ուղղութեան մը հետևած կը տեսնենք զնախնիս. որով քան զիսկական և զյատուկ շարագրութիւնս շատ աւելի են թարգմանութիւնք յայլոց, մանաւանդ թէ անհամեմատ առաւելութեամբ:

Ի՞նչ է արդեօք ասոր պատճառը:

Եթէ, ինչպէս ըսինք, ուրիշի ձոխութեան կարօտ ըլլալը՝ յատուկ հարստութեան նուազութիւն կամ բոլորովին պակասութիւն կ'ենթադրէ, հարկ է արդեօք նոյնը ըսենք՝ այսպիսի տարօրինակ երևոյթ մը մեկնաբանելու համար:

Բայց այսպիսի ենթադրութեան մը, եթէ ըլլուի,

դրաց. սահմանամերձ այլոց աշխարհաց. և ոճերութեանց՝ կամ 'ի բանութենէ զինուց զօրաւորագոյն ազգի մը և կամ 'ի պատճառս առևտրոց՝ կը գտուին անհաղորդական անջրպետ մը ըլլալէ. Եթէ քիչ են այս հաղորդակցութիւնք, համեմատական կ'ըլլան նաև այսպիսի մասնաւորական արդեանց իրարմէ փոխանցութեան արդասիք:

Մեր արդի ժամանակաց գիտութեանց և ուսմանց անընդհատ ծաւալման դարուց մէջ, յառաջադիմութեան անքաւ պիտոյից առջև, յորում հանապազօրեայ ճարակ կը փնտռուի մտաց և անյագաբար կը սպառուի, խիստ շատ են Թարգմանութիւնք ամէն բարգաւաճ ազգաց և ժողովրդոց մէջ: Բայց նոյնը չենք առներ նաև առ հինսն. ոչ լոկ այն պատճառաւ որ գիտութիւնք չունէին այն ընդհանրութիւնը, և զանոնք իրարու հաղորդական ընելու դիւրութիւնն, այլ զի իւրաքանչիւր ազգք ընդհանրապէս միայն իրենցմով գոհ ըլլալու և ընելու գիրքին և ուղղութեան մէջ ապրելու սովոր էին. որ և այն ունէր անշուշտ իր օգուտներն, առիթ և խրախոյս տալով ծաղկեցընելու իրենց յատուկ և տոհմային մատենագրութիւնը: Օրինակով մը բացատրելու համար, Եգիպտացիք հնագոյնք էին 'ի քաղաքակրթութեան և 'ի գիտութեան քան զԱսորեստանեայս, և առաջ քան զՅոյնս: Եւ թէպէտ առջի երկուքէն մատենագրական նշանաւոր արտադրութիւն մը հասած չէ առ մեզ, բայց և ոչ յիշատակ մը թէ անոնց մէջ զարգացած գիտութեանց և ուսմանց պատկանող գրութիւնք՝ Թարգմանութեամբ անցած ըլլան առ Յոյնս. որ պարզապէս հետևողք եղան առաջնոց, և անոնց գրուածներէն, և մանաւանդ պատմական յիշատակարաններէն օգտուեցան, քաղելով ու մթերելով ինչ որ կարևոր տեսան իրենց տոհմային գրականութեան ճոխութեան համար: Կ'աւանդէ պատմու-

դալուն հետեւանքն է գոհացընել զայն կամ յատուկ քերթերով և կամ արտաքուստ ընդունուած ար-դասեօք։

Թարգմանութիւնք՝ ժողովրդոց մատենագրու-թեան մէջ անկէ ծագում առած, և համեմատական արտագրութիւն կամ բարգաւաճանք ունեցեր են։

Մեր ազգային գրականութեան մէջ, ուսմանց յա-ռաջադիմութիւնն, ինչ որ աւանդուած կը տեսնենք 'ի պատմական յիշատակարանաց, չորրորդ դարու մէջ գրաւոր սկզբնաւորութիւն առած, և 'ի հին-գերորդին յառաջադիմութեան ծայրն հասած է. բայց այսպիսի ցանկալի ու երանաւէտ նախանձելի բարգաւաճանաց անակնկալ անկումն ալ մէկէն վը-րայ հասեր է նոյն հինգերորդ ոսկեղէն դարուն եր-կրորդ կիսուն մէջ։ Քանի մեծ փայլը, և որչափ ողբ-ալի անկումը. և ինչպէս առաջինը՝ իրական ու էա-կան փառք մը սեպուած է ազգային պատմութեան անցելոյն ու ապագային առջև, յորմէ մասն մի եւեթ, և աւաղ, փոքրիկ մասն՝ դարք իրարու աւանդելով հասուցին առ մեզ, այնպէս անկումն ալ, և այդչափ շուտով, մեծ ցաւ և կորուստ է թէ ազգային և թէ օտար բանասիրութեան։

* * *

Ինչպէս բուն յատուկ արտագրութեանց՝ սանկ նաև թարգմանութեանց ամենէն նշանաւոր դարն է առ մեզ հինգերորդը։

Լեզուաց փոփոխակի ուսմանն և անոնց կիրառու-թեան՝ արդիւնք և հետեւանք են թարգմանութիւնք. բայց այս ուսումնական փոխադարձ ծանօթութենէ, և յառաջ քան զմտաւորական հաղորդակցութիւն կը կանխէին յաճախ քաղաքային և վաճառականական յարաբերութիւնք, որոց առջև բնական կամ բանա-

# ՀԱՅԿԱԿԱՆ
# ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՔ
## ՆԱԽՆԵԱՑ

~~~~~~~~~~

## ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ

*Թարգմանութիւնք ընդհանրապէս ։ — Հինգերորդ դար հայկական մատենագրութեան ։ — Յաճախութիւն թարգմանութեանց ու անոր պատճառք ։*

Ազգաց ու ժողովրդոց մասնաւոր հարստութիւնն կամ գրականութիւնը՝ համեմատական և յարաբերական է ընդհանրապէս իրենց երկրին աշխարհագրական դրից, պատմական անցից, մերձաւոր վերաբերութեանց, բնակչաց թուոյն, ուսմանց բարգաւաճ վիճակին, յառաջդիմասէր ջանից, կրթական հաստատութեանց առաւելութեան կամ նուազութեան և անոնց շատ կամ քիչ բարեկարգութեան ։ Հետևաբար բաւական կամ գոհացուցիչ են՝ բուն ազգային մասնաւոր կամ ինքնաստեղծ արտադրութիւնք հոն ուր քիչ կարօտութիւն կայ ներածութեան. իսկ ուր նուազ, մեծագոյն և շատ անգամ անհրաժեշտ է պէտքը՝ 'ի մերձաւոր ու երբեմն նաև հեռաւոր՝ ուսմամբք բարգաւաճ ժողովրդոց և ազգաց փոխ առնուլ զայն՝ որուն Թերութիւնն կամ նուազութիւնը զգալի ըլլայ իրենց մէջ ։ Մասնաւոր սնունդն ալ՝ նման ենթականին. անոր պէտքն ու կարօտութիւնը ըղ-
~~~~~~~~~~

պուլֆարաճ ասորւոյ մէկ աստեղախօսու-
թիւնը կը թարգմանէ 'ի հայ.

1292 Երզնկացին Յովհան կը թարգմանէ զգիրս որբոյ Ակուինացւոյն՝ Յաղագս խորհրդոց եկեղեցւոյ.

1294 Բժշկարան գրեալ վասն Հեթմոյ տեառն Կոռիկոսի.



1185-6 Լամբրոնացի կը թարգմանէ զնոյն գիրս.
1189 Թուղթ Կղեմայ Գ առ Լեւոն Թագաւոր և առ կաթողիկոսն՝ զորս կը թարգմանէ Լամբրոնացի.
1190 Լամբրոնացի կը թարգմանէ զԹագաւոր-օրհնէքն.
1193 Գէորգ Սկեւռացի՝ Լամբրոնացւոյ տես-չութեամբ կարգի կը գնէ զՀարանցվարս.
» Լամբրոնացի կը թարգմանէ զԲիւզանդա-կան օրինագիրս.
1196 Լամբրոնացի կը թարգմանէ զՁինուորա-կան օրէնս: Իրեն թարգմանութիւնք են՝ Գրիգորի Մեծին՝ Հռովմայ «Վանքա-քաղաքավարութեան հարցն որ յ'Իտալիա փայլեցին: — Սրբոյն Բենեդիկտոսի սահմանք ընթացից կրօնաւորաց: — Վը-րընջէրի Սահմանք վանից».
1198 Կը վախճանի Լամբրոնացի.

## ԴԱՐ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

1200 Կը վախճանի Միխայէլ պատրիարք Ասոր-ւոց. իր Պատմութիւնը կը թարգմա-նուի 'ի հայ յայսմ դարու.
1211 Հեթում Հեղի կը թարգմանէ զՃարա-գրութիւն կայսերաց և զքահանայա-պետաց Հռովմայ.
1226 Հեթում որդի Կոստանդեայ Պայլի՝ թարգ-մանել կուտայ զգիրս արուեստից յարաբ կամ'ի պարսիկլեզուէ.
1264 Թէոդոր Սմաքրեանց Սսեցի՝ Գրիգորի Ա.

1103 Վկայասէր Թարգմանէ զվկայաբանութիւն սրբոցն Ղամպէոսի և Ղամպէուհւոյ, և զվարս Ոնուփրիոսի Ճգնաւորի.

1105 Գրիգոր Վկայասէր վախճանի: Բաց 'ի յիշատակելոց՝ Թարգմանեց Վկայասէր ըզվարս Գրիգորի Աստուածաբանի, Գէորգայ զօրավարի, Լաւրենտի և Ագրիպպայ, Վարվառեայ և Յուլիանեայ, Պարասքեւի կուսին, Գենարիոսի եպիսկոպոսի, և այլն:

1116 Սարկաւագ վարդապետ նորոգէ զտումարն Հայոց.

1127 Վախճանի Կիրակոս Թարգմանիչ.

1137 Յիշատակագրութիւն Շնորհալւոյ յ'Առորս գիրս.

1141 Շնորհալի սրբագրէ զԹարգմանութիւն Ճառից Սրճեցւոյն, և զՀրաշափառն Ոսկեբերանի.

1153 Ծնունդ սրբոյն Ներսեսի Լամբրոնացւոյ.

1157 Շնորհալի Թարգմանէ զվկայաբանութիւն Տարագոսեանց.

1158 » Թարգմանէ կամ սրբագրէ զվկայաբանութիւն Ս. Սարգսի.

1163 Թարգմանութիւն մեկնութեան կաթողիկեայ Թղթոց 'ի Դրազարկ.

1173 Վախճանի սուրբն Ն. Շնորհալի.

1175 Սուրբն Ներսէս Լամբրոնացի ձեռնադրի եպիսկոպոս.

1179 — Թարգմանէ զՄեկնութիւն Յայտնութեան գրոց.

» — Ի Սիմանակլայ կը քննէ զգիրս յոյնս.

1184 Լուսինոս Գ քահանայապետ կը գրէ առ Գրիգոր Տղայ, յղելով և զգիրս Կարգաց եկեղեցւոյն Հռովմայ.

## ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԴԱՐ

1058 Մեռանի Գր. Մագիստրոս: Թարգմանութիւնք նորա. Պղատոնի Մինովս, Փեդոն, Եւթիփրոն, Սոկրատայ պաշտպանի. Տիմէոս: Եւկղիդեայ երկրաչափութիւն:

1065 Գրիգոր Վկայասէր կաթողիկոս.

1066 Երթայ 'ի Պոլիս.

1067 Նստի 'ի Կարմիր վանս կամ յԱրեգի.

1069-70 Շրջի յուխտս.

1070 Սկիզբն յօրինուածոյ Տօնամակաց.

1075 Վկայասէրն երթայ 'ի Պոլիս և 'ի Հռովմ.

» Երթայ յԵգիպտոս.

1076 Գրիգոր քեռորդի Վկայասիրի՝ եպիսկոպոս յԵգիպտոս.

Թարգմանութիւն մեկնութեան Գործոց առաքելոց 'ի Պոլիս.

1078 Թարգմանութիւնք Ճառից սրբոյն Եփրեմի, և վկայաբանութեանց.

1092 Գրիգոր Վկայասէր 'ի Մելիտինէ: Թարգմանէ զվկայաբանութիւն Եւգոքսեանց.

## ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԴԱՐ

1101-2 Թարգմանութիւն վարուց Ոսկեբերանի, 'ի Վկայասիրէ, և վկայաբանութեան սրբոյն Ստեփանոսի Հռովմայ հայրապետի.

1102 Ծնունդ Ս. Ներսեսի Շնորհալւոյ.

Թղթոց։ — Նեմեսիոսի յաղագս կազմութեան մարդոյ։ — Աթանասի հինգ ճառից։ — Գերմանոսի Թղթոյն առ Հայս։

718 Յովհաննէս Դ. Իմաստասէր.

Թարգմանութիւնք յութերորդ դարու. Գէորգ Պիսիդէս։ — Հիւսիքոս։ — Թէոդորոսի Անկիւրացւոյ ճառք։ — Եւագր։ — Անթիպատրոս Բոստրացի։ — Յովհաննէս Կլիմաքս։ — Տիտոս Կրետացի և այլոց.

## ԻՆՆԵՐՈՐԴ ԴԱՐ

836 Բագարատ Բագրատունի իշխան.

837 Նանա սարկաւագապետ, մեկնիչ աւետարանին Յովհաննու։ Թարգմանութիւն գրոց նորա.

880 Յովհաննէս բժիշկ, թարգմանիչ վարուց Արիսպագացւոյն.

897 Մաշտոց կաթողիկոս։ — Յովհաննէս Զ պատմաբան.

## ՏԱՍՆԵՐՈՐԴ ԴԱՐ

934 Շինի վանքն Հոռոմոսի.

935 Շինի վանքն Նարեկայ.

936 Անանիա Շիրակացի.

937 Վարդուկ հայր, Կարմիր հայր, Դաւիթ Մաշկոտն, Դաւիթ Մոկացի.

961 Ծնունդ սրբոյն Գ. Նարեկացւոյն.

973 Ս. Գրիգոր Նարեկացի ծաղկի.

## ՎԵՑԵՐՈՐԴ ԴԱՐ

680 Կիւրիոն կաթողիկոս Վրաց.
694 Աբրահամ կաթուղիկոս Ա.
Թղթակցութիւնք Կիւրիոնի ընդ Աբրահամու.
Թուղթ նորա առ Սմբատ մարզպան.

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ԴԱՐ

643 Սարգիս աշակերտ Մայրագոմեցւոյն թարգմանէ զգիրս Աղեկսանդացւոյն.
654 Յովհան Մամիկոնեան պատմիչ: — Զենոբայ Գլակ պատմութեան թարգմանութիւն.
648 Դաւիթ փիլիսոփայ Բագուանցի.
662 Անանիա Շիրակացի և աշակերտք նորա.
663 Թէոդորոս Քռթենաւոր.
684 Գրիգոր եպիսկոպոս Արշարունեաց.
Փիլոն Տիրակացի, թարգմանիչ Եկեղեցական պատմութեան Սոկրատայ.

## ՈՒԹԵՐՈՐԴ ԴԱՐ

716 Ստեփաննոս Սիւնեցի՝ և Դաւիթ կինաարքունի թարգմանիչք հետևեալ գրոց.
Դիոնեսիոս Արիսպագացի: — Ղեւտականի մեկնութիւն: — Նիւսացւոյն յաղագս բնութեան մարդոյ: — Կիւրղի Աղեքսանդրացւոյ՝ Գանձուց, Պարապմանց և

461 Յորէն խոստովանող վախճանի.

463 Աբրահամ խոստովանող գաւառայ 'ի Հայս.

465 Գիւտ կաթողիկոս.

466 Մամբրէ և Դաւիթ Անյաղթ.

Թարգմանութիւնք կրտսերագոյն թարգմանչաց. Պատմութիւն Աղեքսանդրի: — Նոննոսի մեկնութիւն առասպելաց: — Եպիփանու գրուածք՝ ըստ մասին: — Գրիգորի Աքանչելագործի ճառք: — Գ. Նիւսացւոյ յ'ինն երանութիւնս: — Նարին 'ի ժողովողն: — Մեկնութիւն Երգոց երգոյն: — Ճառք: — Աստուածազգեցի թուղթք: — Դիոնեսիոսի Թրակացւոյ քերականութիւն: — Պորփիւրի Ներածութիւն: — Արիստոտելի երկասիրութիւնք: — Դիոնեսիոսի Աղեքսանդրացւոյ ճառք: — Կիւրղի Աղեքսանդրացւոյ ճառք: — Թէոփիլեայ Աղեքսանդրացւոյ ճառք: — Թէոփիլեայ աշակերտին Ոսկեբերանի ճառք: — Տիմոթէոսի Աղեքսանդրացւոյ ճառք: — Հիւպպողիտեայ Բոստրացւոյ ճառք: — Եւթաղի գրուածք, և այլն:

480 Վախճանի Եղիշէ.

486 Վահան Մամիկոնեան նորոգէ զաշխարհն Հայոց.

486 Ղազար Փարպեցի.

429 Աքսոր սրբոյն Սահակայ.

432 Դարձ սրբոյն Սահակայ յաքսորանաց.

433 Կրկին թարգմանութիւնք Աստուածաշունչ գրոց. (յասորւոյն և 'ի յունէ).

434 Երիցագոյն աշակերտք յուղարկեալք յուսումն հելլենականին.

436 Պրոկղի թուղթ առ Հայս.

440 Վախճան սրբոյն Սահակայ.

» Թարգմանութիւն վարուց սրբոյն Անտոնի յԱթանասէ (յԵրուսաղէմ).

441 Վախճան սրբոյն Մեսրովպայ: Յովսէփ Ա. յաջորդէ.

442 Դարձ աշակերտաց յԱթենայ.

Առաջին թարգմանութիւնք ոսկեղէն դարու. — Ոսկեբերանի յաւետարանադիրն Մատթէոս: — Մեկնութիւն թղթոցն Պաւղոսի: — Մեկնութիւն Եսայեայ: — Նորին այլ և այլ ճառք: — Բարսղի ճառք 'ի վեցօրեայ արարչութիւն: — Նորին զանազան ճառք: — Ճառք Սեբերիանոսի: — Կիւրղի Երուսաղեմի' Կոչումն ընծայութեան: — Եւսեբեայ Քրոնիկոն կանոնք ժամանակաց: — Եփրեմի' մեկնութիւնք Աստուածաշունչ գրոց: — Փիլոնի ճառք և մեկնութիւնք: — Հարանց վարուց առաջին և մասնական թարգմանութիւն: — Աթանասի մասն ճառից: — Գրիգորի Աստուածաբանի ճառք: — Արիստիդեայ իմաստասիրի ջատագովականք, և այլն.

443 Խորենացի և ընկերք ծաղկին.

451 Կատարումն Վարդանանց.

454 Կատարումն Ղեւոնդեանց.

456 Նախարարք Հայոց դառնան 'ի կապանաց.

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՑՈՒՑԱԿ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆՑ

---

### ՉՈՐՐՈՐԴ ԴԱՐ

390 Ս. Սահակ Պարթեւ.

396 Սկիզբն քարոզութեան սրբոյն Մեսրովպայ.

### ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՐ

402 Ժողով Վաղարշապատու Գ.
Ակակայ Թուղթ առ Սահակ հայրապետ.

403 Դանիէլեան նշանագիրք.

406 Կարգաւորութիւն հայկական գրոց.

407 Սկիզբն հայ Թարգմանութեանց: — Յովսէփ Պաղնացի, Յովհան Եկեղեցացին: Սողոմոնի առակք, Նոր կտակարան, և այլն.

425 Երիցագոյն Թարգմանիչք.

426 Եզնիկ, Կորիւն, Ղեւոնդ, Թաթուլ և այլք.
Թարգմանութիւնք Եւսեբեայ պատմութեանն եկեղեցւոյ, Պատարագամատոյցք, եկեղեցական պաշտամանց գիրք.

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՑՈՒՑԱԿ

### ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆՑ

---

## ՉՈՐՐՈՐԴ ԴԱՐ

390 Ս. Սահակ Պարթեւ.
396 Սկիզբն քարոզութեան սրբոյն Մեսրովպայ.

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՐ

402 Ժողով Վաղարշապատու Գ.
Ակակայ Թուղթ առ Սահակ Հայրապետ.
403 Դանիէլեան նշանագիրք.
406 Կարգաւորութիւն հայկական գրոց.
407 Սկիզբն հայ թարգմանութեանց։ — Յովսէփ Պաղնացի, Յովհան Եկեղեցացին։ Սողոմոնի առակք, Նոր կտակարան, և այլն.
425 Երիցագոյն թարգմանիչք.
426 Եզնիկ, Կորիւն, Ղեւոնդ, Թաթուլ և այլք.
Թարգմանութիւնք Եւսեբեայ պատմութեանն եկեղեցւոյ, Պատարագամատոյցք, եկեղեցական պաշտամանց գիրք.

խոյս՝ մեծ և անուրանալի տարր մ՛է յառաջադիմութեան. առանց անոր՝ շատ գրիչք կը ջախջախին կը փշրին։

***

Դժուարութիւն մ՛ալ, մանաւանդ ազգերնուս մէջ դժբաղդաբար ընդհանուր դարձած աղքատութեան պատճառաւ, այսպիսիաշխատութեան մը անհրաժեշտ կարևոր գումարն է՝ 'ի շարադրութիւն և 'ի տպագրութիւն։ Այսր դարման՝ մենք պիտի առաջարկենք՝ հոյակապ և քաջանուն ազգասիրին՝ Իզմիրեանց Գրիգորի կտակին գործադրութեան Մնայուն Յանձնաժողովոյն, որ իրմէ թողուած դրամագլխոյն գէթ քանի մը տարուան շահն ու հասոյթ՝ այս նպատակին ու վախճանին գործածուի։ Զենք կարծեր որ մեծախոհ Բարերարին մտաց ու սրտին օտար ըլլայ այս առաջարկութիւնը, որուն քաջալերիչ պարգևն՝ հայկական մատենագրութեան բարգաւաճանքն ունէր իրեն նպատակ։

***

Մեր վերջին խօսքն՝ շնորհակալութեան անկեղծ պարտք մ՛է այ́ն ազնուամիտ ուսումնասիրաց՝ որ յօժարեցան օժանդակել մեզ, կարևոր տեղեկութիւններ հաղորդելով։ Քիչ են թուով, անոր համար մեծագոյն նաև մեր երախտագիտութիւնն։

Հ. ԳԱՐ. Զ.

նօտր)․ գրչութեան թուականքն, եթէ ունին, յիշատակարանք, պատկերք, զարդագրոց ոճն և ձեւ, և ամէն մէկուն պարունակութեան նիւթերն՝ զատ զատ։ Այս ոճով և նիւթին կարևոր հմտութեամբ յօրինուած է Փարիզու ազգային մատենադարանին մէջ գտնուած հայկական գրչագրաց ցուցակը՝ բանիբուն ու բազմահմուտ բանասիրի մը ջանքով, և որ օրինակ կրնայ ըլլալ ուրիշ մատենադարանաց ցուցակներու յօրինման։ Հրատարակուած է նոյնպէս տպագրութեամբ Լազարեան ճեմարանին թանգարանին մէջ պահուած հայ ձեռագրաց ցուցակը, որուն միակ թերութիւնն՝ նկատմամբ մեր առաջարկութեան՝ համառօտութիւնն է, և յիշատակարանաց պակասութիւնը։

Այս յիշատակուած մատենադարաններէն դուրս կը մնան՝ մեր բուն հայրենեաց, Հայաստանի բազմաթիւ եկեղեցեաց ու վանքերու մէջ գտնուած կամ պահպանուած հաւաքմունք, զորս կարգի դնելու և ցանկելու համար պակաս չեն բանիբուն, հմուտ ու կարող անձինք, Շահնազարեան, Մխիթարեան Աբէլ և Պետրոսեան Պօղոս նախօրինակ վարդապետաց նման անձինք մեզմէ յառաջ ինքնանուէրք յառաջամատոյցք, և մեր օրերուն՝ Փիրղալէմեան, Աղանեան և մանաւանդ Սրուանձտեանց Գարեգին, հայրենավառ սիրտ, ոգի և գրիչ, որ գիտէ ընծայել Մանանայ, Համով հոտով, Թորոս աղբար, Գրոց ու բրոց, Հնոց և նորոց նման և իրաւամբ ազգին լրութեան հաճոյական ընտիր հատորներ։ Ազգին կը մնայ քաջալերել զայդպիսիս, և խրա-

հետաքննին ուսումնասիրութեան ներկայացուած աշխատասիրութեան մէջ, և որուն, — ինչպէս ըսինք, — կատարելութեան մէկ պակասն ալ փափաքելի միջոցաց թերութեան մէջ կը տեսնէինք։ Ուրախութեամբ կարդացինք՝ մանաւանդ ռուսահայոց պարբերականաց մէջ, այլևայլ բանասիրաց կողմանէ եղած գրեթէ նմանօրինակ առաջարկութիւններ, առանց նախընթաց տեղեկութիւն մը ունենալու մեր դիտաւորութեան։

Այսպիսի առաջարկութիւն մը 'ի գլուխ հանելու համար՝ շատ դժուարութիւնք կան. այլ անոնց յաղթելու մէջ է արիութիւնն և արդիւնքը։ Մեզի կ'երևնայ թէ մեծապէս կը դիւրանայ այսպիսի բազմաշահ ձեռնարկ մը՝ եթէ առ այն բաւականութիւն և հմտութիւն ունեցող համամիտ ու համախոհ անձինք փնտռուին մեր վերը յիշած վանական միաբանութեանց մէջ, ու ձեռնհաս իշխանութեան կողմանէ այդ բանիբուն և կարող անձանց յանձնուի անոր գործադրութիւն։ Յօրինման կերպն ու ոճն ալ՝ առ այն սահմանեալ Յանձնաժողովն կրնայ խմբագրել, ու տպագրութեամբ հրատարակել, յառաջ քան զձեռնամուխ լինելն 'ի գործ, որպէս զի կարելի եղածին չափ միակերպութիւն երևնայ յաշխատութեանն. Նոյն ըլլայ տպագրութեան դիրքը, տառք, թուղթ, և այլն. ուր նշանակուին՝ բաց 'ի գրչագրաց թուանիշէն՝ անոնց ինչ նիւթի (մագաղաթ, թուղթ) վրայ և որչափ էջերու մէջ գրուած ըլլալը. տառից որպիսութիւնն (երկաթագիր հին, միջին երկաթագիր, բոլորգիր,

*
* *

Հայկական գրչագրաց հաւաքմանց մէջ գլխաւորներէն կրնան սեպուիլ

Ա. Էջմիածնի աթոռոյն մատենադարան.

Բ. Երուսաղեմի պատրիարքական աթոռոյն.

Գ. Մխիթարեանց 'ի Ս. Ղազար Վենետկոյ.

Դ. Նոյն ուխտին 'ի Վիէննա.

Ե. Անտոնեանց, 'ի Միջագիւղ Պոլսոյ.

Զ. Փարիզու ազգային մատենադարանին։

Ասոնք, գէթ ըստ մեր ծանօթութեան, ուրիշ տեղուանք եղածներէն աւելի ճոխագոյն և պատկառելի վեց հաւաքմունք, յորոց միայն Էջմիածնի մատենադարանին գրչագրաց ցուցակ մը հրատարակուած է՝ գրեթէ քսանըհինգ տարի յառաջ, 'ի ձեռն բանասէր Կարենեան ուսուցչի, 'ի Թիֆլիզ։ Թողլով ցուցակին տպագրութենէն ետքը՝ յայլևայլ եկեղեցեաց և 'ի թեմական առաջնորդաց աւելցած գրաւորական ճոխութիւնք 'ի նոյն մատենադարան, շնորհակալութեամբ իսկ զայն գործածողն թերևս ամենէն աւելի կիմանայ յօրինուածոյն թերութիւնները, անճշդութիւնքն, վրիպական ընթերցուածք, և ոչ գոհացուցիչ դասակարգութիւն։

Արդէն մեր դիտաւորութիւնն էր գրչագրաց ընդհանուր ցուցակի մը յօրինման և հրատարակութեան՝ լոկ մեր կողմանէ առաջարկութիւն մը ընել երկասիրութեանս յառաջաբանին մէջ, որուն անհրաժեշտ պէտքը՝ լաւ կ'ըմբռնէինք մեր այս դուզնաքեայ՝ և իբրև փորձ մը եւեթ

անդարման կորուստներով ալ, մեծապէս սփոփական է գիտնալը թէ դեռ եւս տասն հազար և աւելի հայկական գրչագիրք կան ընդ ամենայն Հայաստան և անկէ դուրս գտնուած մատենադարաններու մէջ։

Ո՞րչափ է այսպիսի ծանրակշիռ հաւաքման մը օգտակարութիւնը՝ և տոհմային մատենագրութեան մատուցած ծառայութիւնը։ — Համեմատաբար խիստ քիչ, չըսենք՝ գրեթէ աննշան, պատճառաւ անոնց անծանօթ մնալուն։ Ասով չենք ուզեր ժխտել՝ միաբանական ուխտից և մասնաւորաց ջանքով եղած բազմաթիւ հրատարակութեանց արդիւնք, որք յաճախ շատ հեռի են ենթադրուածին համեմատ շահաբեր ըլլալէն. և փորձառուք գիտեն՝ իրենց նիւթական մնասովը, թէ 'ի մեզ բազմաթիւ են խօսքով անոնց լոյս տեսնելուն փափաքողք, և տրուածը չի փնտռողք։ Ազգերնուս այս դիրքին մէջ կարելի չէ յուսալ և սպասել որ 'ի նախնեաց մնացած ամէն երկասիրութիւնք տպագրութեամբ ընդհանուր և հասարակաց ժառանգութիւն մը դառնան։ Սակայն իրաւամբ փափաքելի է որ գէթ գլխաւոր մատենադարանաց մէջ պահուած ամէն հայերէն գրչագրաց ընդհանուր և կարգաւորեալ ցուցակներն հրատարակուին։ Աւելորդ է ըսել թէ այդպիսի հետաքըննական և օգտակար աշխատասիրութեամբ որչափ պիտի շահին հայկական մատենագրութիւն, և անոր հետամուտ բանասէրք։

*

էջերէ ծաւալ ունեցող հատոր մը։ Կը համարինք թէ երկրորդ տպագրութիւն մը մեր յաջորդաց ջանքով և աշխատութեամբ, շատ աւելի ընդարձակութեան կրնայ ընդունակ ըլլալ։



Այսպիսի փափաքելի կատարելութեան միջոց մ'ալ մեր կողմանէ պիտի համարձակինք առաջարկել՝ ազգային դպրութեանց յառաջադիմութեան հետամուտ և սիրող սրտերու. և վստահութիւննիս մեծ է թէ սիրայօժար ընդունելութիւն ալ պիտի գտնէ։

Մատակարարուած նիւթոց և աղբերաց առատութեան կամ նուազութեան համեմատական կ'ըլլան նաև հմտութիւն և տրուած տեղեկութիւնք։ — Գիտենք թէ մեր նախնեաց ինչպէս ինքնագիր երկասիրութեանց, առանց նաև թարգմանութեանց ալ, մասն մի և եթ, — և այն փոքրիկ մասն, — հասած է առ մեզ. աւերմունք, ամայութիւն, պատերազմունք, հուր և սուր, տարերաց բռնութիւնք, ժամանակաց տգիտութեան և նախապաշարմանց հետ՝ ձեռք ձեռքի տուած, անդարձաբար շատ բան կապտեր յափշտակեր են մեզմէ. ինչուան Գրիգորի Մագիստրոսի ժամանակ դեռ անկորուստ՝ Ողոմպիոդորայ, Կալլիմաքեայ, Անդրոնիկեայ և այոց քերթուածք և իմաստասիրականք, զորս մեծանուն բանասէրն տեսեր ու կարդացեր էր, չհասան առ մեզ։ Բայց այսչափ աղետալի և

ժամանակակցաց, Փիլոնի ճառից, Արիստիդեայ փիլիսոփայի հատուածոց, Սեբերիանոսի, Ոսկեբերան հայրապետի, Անսիգաց Անտիոքայ՝ և ուրիշ ասոնց նման կորուսեալ երկոց Թարգմանութիւնք։ Այսպիսի անակնունելի գրաւորական գիւտք, և բազմագոյնք որ դեռ ևս տպագրութեան լոյս տեսած չեն, փափաքելի կ'ընէին թէ՛ ազգային և թէ օտար բանասիրաց, լիագոյն ծանօթութիւն մը՝ 'ի մեր բազմավաստակ Նախնեաց Թարգմանութեամբ մեզի աւանդուած գրուածոց։ Յօժարութեամբ ու սիրով ձեռք զարկինք այս աշխատութեան։

Աշխատութիւն մը՝ աննշան թերևս ըստ երևութին. բայց ոչ այնչափ դիւրին՝ որպիսի կրնայ երևնալ հարևանցի կերպով ակնարկողի մը։ Խստապահանջք, — և չեն սակաւաթիւք նաև մեր մէջ, — անշուշտ իրենց գիտութեանն և ըղձից համեմատ փափաքելի կատարելութեան հանգամանք չգտնեն մեր այս երկասիրութեան մէջ ալ։ Այսպիսեաց 'ի դէպ է յիշեցընել թէ գրուածներ կան որոց յամենայնի կատարելութիւնը երկասիրողին կամքէն կախում չունի, այլ ժամանակին և նորանոր հետազօտութեանց արդիւնք և հետևանք պիտի ըլլայ այդ։ Ներուի մեզ անդրադարձընել — խոստովանութեամբ մեր չափաւոր հմտութեանն, — թէ այս հրատարակութիւնս ալ ասոնց կարգէն է։ Աշուընուս առջև ունեցած նախնական ու ընդունելութեամբն քաջալերիչ գրուածը, ինչպէս ըսինք, համառօտ տետրակ մ'է. իսկ մեր հրատարակածը՝ գրեթէ ութհարիւր մանրագիր

*
* *

Այսպիսի է իմաստնոյն Վիլֆռուայ դատաստան և կարծիք՝ նախնեաց թարգմանութեանց վրայ, և որուն արձագանգ եղած է ընդհանրապէս իրմէ ետքը, և յառաջ քան զնա երևցող հայագէտ եւրոպական քննադատ բանասիրութիւն։ Բայց որչափ աւելի պիտի ըլլար իրենց զարմանքն և մեծարանք՝ եթէ ուրիշ մատենադարանաց մէջ գտնուած, և դեռ եւս անծանօթ մնացած գրուածոց վրայ տեղեկութիւն ունենային։

Հայկական ուսմանց համար մեծապէս կարևոր այսպիսի ծառայութիւն մը փափաքեցանք մատուցանել մեր այս հրատարակութեամբ, իբրև լրումն և ամբողջութիւն իր հին մատենագրական պատմութեան։

Սակայն փութանք ըսել՝ թէ երկասիրութեանս ոչ մտածութիւնը, և ոչ նախկին գործադրութիւնը մերն է։ 1825էն 'ի վեր՝ Մխիթարայ Ուխտիս առաջնորդ և արքեպիսկոպոս, Գեր. Սոմալեան, սոյնպիսի վախճան ու նպատակ ունեցող գրուածք մը հրատարակեց, յիտալական լեզու, և զոր կոչեց Պատկեր նախնական թարգմանութեանց 'ի հայ բարբառ։ Այս համառօտ՝ գրեթէ քառասուն տպագրական էջերու մէջ ամփոփուած ծանօթութիւնը՝ մեծապէս հաճոյ և հետաքննելի եղաւ՝ հնախօսից և իմաստախընդիրն Եւրոպիոյ. մանաւանդ երբ հետզհետէ իրենց լեզուներով հրատարակուեցան Եւսեբեայ

դրութեանհետ. որովոմանք՝ արքունական բարձրութեան անարժան չսեպեցին խոնարհիլ յուսումն քերականականին, և 'ի վարժս բանաստեղծութեան։ Ամբողջ ազգին այս բերումը 'ի մտաւորական արդիւնս և 'ի գեղեցիկ դպրութիւնս՝ անուանի թարգմանիչներ ալ երևցուց իր ուսումնական անձանց և նաև հայրապետաց մէջ։ Այս միջոցով յաջողեցան Հայք գտնել ըզգաղտնիս աւանդապահ ըլլալու գիտութեանց Եւրոպիոյ և Ասիոյ. իրենց Հոմերոսը՝ 'ի վեցաչափ տաղս Եւսեբիոս՝ ամբողջագոյն քան զմերն, Կայսերաց պատմութիւնը, — մեծագին երկասիրութիւնք՝ որոց գիւտին յաջողութենէն պէտք չէ յուսերնիս կտրենք, — պիտի արդարացընեն մեր մեծարանք զոր ունինք այս ազգին ճարտար թարգմանչաց վրայ»։

Ուրիշ տեղ մ'ալ նոյն բանասէրն. «Այն սէրը զոր ունեցեր են Հայք 'ի գիտութիւն և յուսումն հռչակաւոր լեզուաց զոր յիշեցինք, պատուական և մեծապէս սիրելի պէտք է ընէ մեզ այդ ազգը։ Վասն զի այն միջոցով իրենց մէջ երևցած իմաստունք՝ նոյն լեզուներով գտնուած ընտրելագոյն երկասիրութիւնները թարգմանելով, ամենէն ամելի իմաստուն գրոց աւանդապահ ըրին զՀայաստան աշխարհ»։

Յունաց և Արարաց. կը յաջողի, քիչ մը ատենուան համար, թօթափել զսարխս գերութեան, և դառնալ 'ի ժառանգութիւն իր նախնեաց թագին. բայց այդ ինքնօրինութեան միջոցին ալ՝ աւելի իշխեալ քան իշխեցող, կը բռնադատուի ուր ուրեմն ամփոփել ծրագրել իր սահմաններն՝ մինչև յանձուկս աշխարհին կիլիկեցւոց։

«Այս փոփոխակի իրարու յաջորդող՝ կարճատեւ յաջողութեանց և երկարժամանակեայ աղէտից մէջ, Հայք չեն դադրիր մշակել զգիտութիւն և զդպրութիւն՝ անհաւատալի եռանդեամբ, մինչև 'ի նախանձ գրգռել զՅոյնս, որոց գերազանց կը հանդիսանային 'ի հմտութեան և յուսմնական յաջողութեան նոյն իսկ հինգերորդ դարու մէջ, եթէ արժան է հաւատս ընծայել իրենց ազգին ամենէն աւելի նշանաւոր և մեծարոյ մատենագրաց միոյն՝ Շնորհալւոյ, որ 'ի վիպասանականին կը վկայէ իր ազգակցաց համար՝

Մինչ զի Յունաց գերազանցեալ։

«Իրենց մեծանուն հայրապետք՝ ոչ միայն փառք եղան ազգին խորհմաստ խոհականութեամբ, այլ և գիտութեամբ, ճարտարխօսութեամբ, և յաճախ քերթողական հանճարով։ Թագաւորք և իշխանք՝ չհամարեցան թէ գիտութիւնք, և նոյն իսկ աստուածաբանականին ուսումն՝ չկարենան անհամաձայն և զուգընթաց ըլլալ՝ տէրութեան հասարակաց գործոց և պաշտաման բարեկարգութեան անհրաժեշտ մտա-

գրկուած ըլլալնուս վրայ՝ իրաւացի ցաւ կ'ազդեն։ Այս ցաւը՝ կը մեղմանայ յուսով։ Ով որ անգէտ է թէ Ֆլէօրի ծիրանաւորին առատամիտ փութոյն՝ պարտըկան է արքունի մատենադարանը իր այս նոր ճոխութիւնը. և դպրութեանց հետամուտ անձինք իրաւունք ունին յուսալու թէ իր եռանդուն ջանքը պիտի չդադրի 'ի յառաջադէմ զարգացումն հայկական ուսմանց։ Իրմէ ընտրուած երիտասարդ ազնուական մը՝ արդէն 'ի Կոստանդնուպոլիս հասած է, ուստի պիտի անցնի 'ի Հայաստան՝ հայերէն լեզուն սորվելու։ Բարեբաստիկ սկզբնաւորութիւն մը, առհաւատչեայ մեր վստահութեան թէ պետական այս մեծ պաշտօնէին տեսութիւնք և փափաք՝ պիտի շարունակեն ճոխացընել զմեզ, տալով ինչ որ դեռ ևս ցանկալի և յուսալի է մեզ յարևելից, մեր իմաստնագոյն թագաւորին երջանկաւէտ իշխանութեան օրովը։

« Եւ ո՞վ կրնար կարծել թէ այդ աւերեալ ու ամայի գաւառներէն, ուստի մերժուած են գիտութիւնք և մատեանք, կարելի պիտի ըլլար գտնել այդչափ ու այդպիսի պատուական գանձեր։ Ի՞նչ աւելի հետաքննելի և շահագրգիռ քան զպատմութիւն այդ հռչակապանծ թագաւորութեան որ մերթ յաղթական և մերթ ընկճուած, կը տարածէ կը ձգէ իր աշխարհակալութիւնը անդր քան զԵփրատ. կը տիրէ Աղուանից և Միջագետաց։ Հինգ դարուց միջոց, հինգերորդէն մինչև 'ի տասներորդն՝ կրօնական բաժանմանց և երկպառակ տարաձայնութեանց նշաւակ, կը հեծէ ընդ ծանր լծով Պարսից,

* * *

Վերջի երկու դարերու մէջ երեւցած եւրոպացի բանասիրաց ընդհանուր կարծիքն է այս, որոնք քիչ շատ պարապեցան հայկական ուսմամբ։ Բայց մենք անոնցմէ մէկուն միայն հետեւեալ խօսքերը մէջ բերելով գոհ ըլլանք։

Վիլֆռուա, անցեալ դարու անուանի գաղղիացի բանասէրն, ու իր ժամանակին հայագիտաց պարագլուխ, սիրող մեր պատմութեանն ու դպրութեան, Փարիզու արքունական մատենադարանին մէջ գտնուած հայ գրչագրաց ցուցակին 'ի գլուխ՝ իրմէ գրուած ծանօթութեանց մէջ կը գրէր. «Չորեքտասաներորդ Լուդովիկեայ Թագաւորութենէն ետքը, կարծես թէ իմաստուն աշխարհի համար՝ նորագիւտ բան մը երեւնալու յոյսն ալ մնացած չէր. այդչափ հեռու տարեր էր գրականական աշխարհակալութիւնը՝ այդ յաւերժական յիշատակաց արժանաւոր մեծ իշխանը։ Սակայն անշուշտ նոր աշխարհ մը պիտի հանդիսացընէ մեր ընթերցողաց աչքին այս ցուցակն՝ որ ոչ միայն 'ի Գաղղիա, այլ թերեւս բովանդակ Եւրոպիոյ մէջ միակ ու ամենէն ճոխ հաւաքումն է հայկական գրչագրաց։ Եւ սակայն կազմուելի մատենադարանի մը այս լոկ սկզբնաւորութիւն մ'է։ Հոն կը գտնենք՝ ինչուան հիմա խիստ քիչ ծանօթ, բայց ուսումնասիրաց հետաքննին փութոյն ու սիրոյն մեծապէս արժանաւոր գրուածներ. Եւ որոնք առաւելագունին ծանօթութենէն

մամբ ըրած փնասուն հետ, մեծագոյն ու բարեբար ազդեցութիւն մ'ալ ունեցած են հայ մատենագրութեան վրայ։ Այսպէս եղած են ասորի, յոյն, պարսիկ և արաբացի, և վերջին դարերու մէջ լատին և գաղղիական լեզուք. յորոց ամենէն ալ ունեցեր ենք, ժամանակաց բերմանցն ու հանգամանաց համեմատ, այլևայլ թարգմանութիւններ։ Համառօտ գրուածքիս վրայ ակնարկ մը ձգողին՝ տարակոյս չի մնար այս խօսքին ստուգութեանը։ Կը տեսնէ թէ ինչպէս նախապատուութիւնն՝ ասորական լեզուի տրուած է, և որուն անմիջապէս յաջորդեր է յոյնն՝ իր արտադրութեանց անհամեմատ առաւելութեամբ թէ թուով և ազնուութեամբ և թէ փայլով։ Երբ արաբական արշաւանք և իշխանութիւն մուտ կը գտնեն 'ի մեր աշխարհ, իրենց լեզուէն ալ ունեցեր ենք քանի մը թարգմանութիւնք. ինչպէս երբեմն նաև 'ի պարսից։ Խաչակրաց յարևելս երևնալուն առթիւ՝ կը ծանօթանան լատինն և գաղղիական, և յորոց այլևայլ փոխադրութիւնք 'ի հայ։ Այսպէս յօտար մատենագրութենէ 'ի փոխ առնուած գրեթէ տասն դարուց երկք մթերեցան 'ի մերում մատենագրութեան, և իրենց աղէտալի ու անդարման կորըստեամբք ալ պատուական ու նախանձելի մթերք՝ որ իրաւացի գովութեամբ՝ արդարակշիռ զարմանաց գաղափար մը ընծայեր են եւրոպական արդի բանասիրութեան՝ մեք նախնեաց ընտիր ախորժակին, աշխատասէր ուսումնասիրութեան, և արևմտից մատուցած անհամեմատ ծառայութեան։

արգասիք են, ինչ որ այսօր մեր տոհմային մա-
տենագրութեան ամենամեծ ճոխութիւնն ու
փառքն է. այնչափ մտաւոր երկք և թարգմա-
նութիւնք որ կը զարմացընեն, յաճախելով մեր
պարծանքը նաև օտար բանասիրութեան առջև։

Դժբաղդաբար խիստ կարճատեւ եղաւ իրենց
բազմարդիւն գրաւորական գործունէութեան
ժամանակը։ Սակայն հետևորդ դարուց մէջ ալ
պակաս չեն նախանձաւորքն և հետևողք, թէպէտ
ոչ միշտ նոյն ոսկեղէն գրչովն և հմտութեամբ,
այլ ոչ նուազ եռանդեամբ և ջանիւք։ Քաղա-
քական իշխանութիւն մերթ ընդ մերթ կորսըն-
ցուց իր նախկին փայլն և զօրութիւն, և այն
պատճառաւ որչափ ալ թարգմանչաց ձեռքով
վառուած ուսումնասիրական գովելի փոյթ՝ ա-
ղօտացաւ ու երբեմն նաև անշքացաւ, այլ հայ-
կական դպրութիւնք չիջելափառ չանհետացան.
և հինգերորդին ոչ անարժան երևցան ութե-
րորդէն մինչև երեքտասաներորդ դարք, յորս
սիրուեցաւ ու մեծարուեցաւ փառաւոր ան-
ցեալ մը. և գովելի ջանքեր ալ եղան անոր ար-
ժանաւորք երևնալու, նորանոր ճոխութիւններ
աւելցընելով 'ի գանձարանս հայկական բանա-
սիրութեան։

Ազգերնուս մասնաւոր բարեմասնութեանց
մէկն ալ՝ օտար լեզուաց մէջ յառաջադէմ յա-
ջողակութիւնն է։ Թէպէտ և մեր հայրենեացաշ-
խարհագրական դիրքին անհրաժեշտ հարկ մը
կամ բռնադատ հետևանք ալ ենթադրուի, այլ
անտարակուսելի է թէ սահմանակից ազգաց լե-
զուք՝ մեր բնիկ լեզուին յստակութեան նկատ-

րու մէջ. և իմաստասէր ու աստուածասէր սիրտք և բարերար ձեռքեր՝ աւերակաց կոյտերու մէջ կը փնտռեն, ու կը յաջողին գտնել իրենց գրեթէ մոռացեալ ու անշքացեալ հանգըստարան՝ անմահութեան պատուանդան գերեզմաններն, ու իրարու վրայ թաւալեալ կործանեալ քարինքն ժողվելով, տաճարք և խորանք կը բարձրանան 'ի պատիւ նոցա և 'ի փառս։

Պատիւ և փառք իրենց անմահախառն յիշատակին, և գովութիւն այդպիսի ազնուախոհ մտածութեանց։

*
* *

Սակայն սրբոցն Սահակայ և Մեսրովպայ՝ մեծագոյն արդիւնք մ'ալ այն ընտիր, քաջուսումն, երկարոգի աշակերտաց խումբն է, զորս հայրենեաց և ազգի օգտակար ընելու համար՝ նուիրեցին իրենց ամէն ճիգն ու աշխատութիւն, կրթեցին իմաստուն թելադրութեամբ և ուսմանց ջանիւք, քաջալերեցին ու խրախուսեցին իրենց աննման ու նախանձելի օրինակաւ, և եղան ժառանգք իրենց մեծ ոգւոյն և սրտին։ Ասոնք են արդէն մեզի ծանօթ և սիրելի թարգմանիչք, որ երկնից և երկրաւոր հայրենեաց հոգեհրատ ու անծախական սիրով և հրով վառուած, մոռցան աշխարհի ամէն վայելք, պատրանք և հրապոյր, իրենց կեանքն, քիրտն ու աշխատութիւն բոլորանուէր ընծայելով Աստուծոյ և ազգին։ Այս երկու մեծ և սիրալի նուիրմանց արդիւնք և

դապետին, որ տուին մեզ գիր և դպրութեան ոսկեղէն դար մը, և մեր Հայրենեաց՝ սասանական բռնութեան տագնապի ու արհաւրաց օրերուն, վերահաս և անկանգնելի կրօնական կործանմանէ մը փրկիչք եղան, պարգևելով ըզԹարգմանութիւն աստուածաշունչ մատենից, և զանհամեմատ գիրս ազգային եկեղեցական պաշտամանց։ Իրենց վաստակասէր ջանիւք՝ հեռաւոր դարերու սերունդքս, հոգւոյն և սըրտից որդիք, իրենցմէ սորվեցանք լսել մեր բնիկ լեզուով՝ զձայն և զխրատ երկնահրաւէր պատուիրանաց, ընդունելի ընել մեր աղաչանքն ու պաղատանք առ Աստուած, և հաճոյական մեր արտասուքն ու հառաչանք։

Այսպիսի առատաբաշխ պարգևաց մեծութիւնն արժանապէս ըմբռնողք՝ լաւագոյն եւս կ՚իմանան վրանին ծանրացող ոչ ինչ նուազ փոխարինութեան պարտք մը։ Ուստի և իրաւամբք անդստին 'ի ժամանակակցացն՝ երախտագիտ և վարդապետասէր աշակերտք, սխրալի գրչով և լեզուով փութացան աւանդել մեզ անոնց անարատ վարքն ու քաղաքավարութիւն, պատմեցին և հռչակեցին զորդիսն՝ որոց առաջին վայելողքն ըլլալու բաղդն ունեցան։ Այս յօժարափոյթ և յօժարակամ հարկ երախտաճանաչ սիրոյ՝ դարէ դար յանձնուելով հասաւ մինչև առ մեզ. և դեռ վերջի տարիներու և ամսոց մէջ ալ ուրախութեամբ կը լսենք և կը կարդանք թէ ինչպէս Աշտիշատայ և Օշականի հին ու սիրալիր յիշատակք կ՚արթըննան 'ի հայրենիս և անկէ դուրս գտնուող ազգայնոց սրտե-

Հնգետասան երկար դարերէ 'ի վեր՝ Հայաստան աշխարհ ու եկեղեցի, ինչպէս իր փառաց ու մեծութեան, ասանկ տառապանաց ու արտասուաց անշքութեան օրերուն, հաւասար զգածմամբ երախտապարտ սրտից ու մեծարանաց՝ կը յիշէ իրաւացի պարծանօք երկու անուանք, անցելոյն ու ապագային մէջ իր անկապուտ փառաց և սփոփանաց երկնապարգեւ ու աստուածահրաշ առիթք, որ մահուան ու մոռացութեան աշխարհի մէջ՝ անմահանուն պայծառացան սրբափայլ ու սրբակրօն վարուք, աստուածանուէր և ազգասէր եռանդեամբ, ու իրենց բազմապատիկ արդեամբք՝ ճշմարիտ բարերարք երևցան այն հայրենեաց, ուր «մահկանացու ծնեալ՝ անմահական թողին յիշատակ»։

Հա՞րկ է արդեօք երկրորդել մեր հայրասէր և հայրենասէր ընթերցողաց՝ այս երկու անմոռանալի յիշատակաց արժանաւոր անուանքն, զմեծին Սահակայ Պարթեւի և Մեսրովպայ վար-

# ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

# ՀԱՅԿԱԿԱՆ

# ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆՑ

## ՆԱԽՆԵԱՑ

(Դար Դ— ԺԳ)






ՎԵՆԵՏԻԿ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1889

# CATALOGUE

## DES ANCIENNES TRADUCTIONS ARMÉNIENNES

## (SIÈCLES IV—XIII)

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՔ ՆԱԽՆԵԱՑ

